# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

եւ

## ԻՒՐ ԲԱԶՄԱԴԱՐԵԱՆ ԳԱՂՏՆԻՔՆ

# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

ԵՒ

# ԻՒՐ ԲԱԶՄԱԴԱՐԵԱՆ ԳԱՂՏՆԻՔՆ

ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ

Հ. ԲԱՐՍԵՂ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

Ի

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ









ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1890

# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

ԵՒ

# ԻՒՐ ԲԱԶՄԱԴԱՐԵԱՆ ԳԱՂՏՆԻՔՆ

ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ

Հ. ԲԱՐՍԵՂ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

Ի

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ









ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1890

GraeC
E.REIV
552
1.11.99

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ



ՀԱՅՈՑ դպրութեան անդրանիկ ծնունդն և ամենէն աւելի հոյակապ և գեղեցիկ երկասիրութիւնը, զոր բազմադարեան հնութեան հետ՝ մեծագոյն դէպք ևս, այսինքն է, Հայաստանի դարձն 'ի քրիստոնէութիւն՝ 'ի ձեռն մեծի Լուսաւորչին, նուիրական գործեցին՝ է Պատմութիւնն Ագաթանգեղայ: Ցիրաւի, այս բանիս ոչ ոք տարակուսած է երբէք. մանաւանդ թէ այս մեծագոյն և փառապանծ յօրինուածութեան համեմատ՝ միշտ մեծ եղած է և տոհմային մատենագրաց համարումը, որուն կը ձայնակցին այսօր 'ի մասնաւորի նաև քննասէրք ուսումնատենչ Եւրոպիոյ: Բայց թէ Ագաթանգեղոս, որուն ընծայած են նախնիք մեր այս գրուածքս՝ իցէ՞ ստուգիւ լեալ ժամանակակից և ականատես գրիչ այն դիպաց՝ որք կ'աւանդին աստ, եթէ ոչ. — արդեօք նորա աւանդածներն իցե՞ն բովանդակապէս երրորդ դարուն վերջերն և չորրորդին սկիզբներ կատարուած պատմական և հարազատ իրողութիւնք, եթէ ընդհակառակն՝ կան յայնմ նաև յետնագոյն ժամանակաց եկամուտ անհարազատութիւններ: — Երկասիրութիւնս այս գրեցա՞ւ ստուգիւ հայերէն բարբառով և վասն Հայոց, եթէ ա՛յլազգ ամենևին եղեն 'ի սկզբանէ ելք իրացն: Արդ այս բաներուս վրայ տարակոյսներ յայտնելու և ուշի ուշով քննելու, ոչ միայն լիուլի իրաւունք՝ այլ և պարտքն անգամ ունի յանձին ժամանակիս քննադատութիւնն, ևս առաւել ազգային մատենագրութեամբ պարապող քննասէրք. որովհետև ոչ միայն քրիստոնեայ Հայաստանի եկեղեցական պատմութեան և վարդապետութեան, այլ նոյն իսկ հեթանոսիկ Հայաստանի դից և դիցանուէր աւանդութեանց հիմն այն է: Ի՞նչպէս կարէ ոք այն աւանդութեանց վրայ վստահել

և լեր 'ի վերայ հիման հետզհետէ նորանոր շէնքեր են շինել՝ հայկական դպրութեան հրաշակերտը վեր բարձրացնելու աղագաւ, առանց լաւ գիտնալու, թէ որչափ հաստատութիւն ունի այդ հիմը: Հայկեանս զրոհի նորախայծ և ուսումնատենչ սերունդն ինչպէս պիտի կարենայ յագեցնել անտի իւր մտաց ծարաւն, եթէ ապահով չլինի, թէ արդեօք այդ երկասիրութեան մեզ աւանդածներն յականակիտ և անխառն յաղբերաց յառաջ գան, եթէ 'ի խարդախելոց: Ահաւասիկ առաջին պատճառ կամ շարժառիթ իմ այս Քննադատութեանս: Երկրորդ պատճառն եղած է տոհմային և օտարազգի մատենագրաց այլևայլ ժամանակաց մէջ իրարմէ տարբեր կամ միմեանց դէմ թէ գլխովին իրարու հակասող կարծեօք և ենթադրութեամբ զմիտս բազմաց շփոթելն. այնու զի հինք յաճախ իրենց ժամանակին և նպատակին յարմար դիւրահաւանութեամբ՝ քան թէ նորոգ իմն և աչալուրջ քննութեամբ իբրև արդէն իսկ ապացուցուած ընդունեցան զամենայն, նոյն իսկ զոչ արժանիս հաւատարմութեան. իսկ նորք՝ ընդհակառակն, քան զչափն կարի անաչառութեամբ և յանդուգն դատմամբ բոլորովին հակառակ արդիւնքներ և վճիռներ արտաբերեցին, որոնց վնասն և աւերմունքն աւելի եղան քան կարծեցեալ նորոգութիւնները:

Բարոնիոս, Պապեբրոգ և 'ի մասնաւորի Ստիլտինգ[1] եղան, որք զառաջինն տարակուսեցան Ագաթանգեղոսի և նորա պատմութեան հարազատութեան վրայ: Վերջինն՝ Մետափրաստէսի ձեռքով մեզի թողած Ագաթանգեղեայ յոյն օրինակը՝[2] լատիներէն հրատարակութեամբ ծանոյց ուսումնասիրաց, և անաչառութեամբ կոչելով զայն ի դատ՝ իւր ընտիր ծանօթութիւններովն և սուր դիտողութեամբքը մեծ արդիւնք ունեցաւ, այնպէս որ կարելի է ասել, թէ Ագաթանգեղոսի գրոց քննութեան առաջին քայլը նա ըրաւ:

Յետ նորա եկաւ արդի հայ պատմաբանից հայրն Հ. Միքայէլ Ջամչեան[3], որ իւր ընդարձակածաւալ հմտութեամբը՝ ջանաց ոչ միայն Ագաթանգեղոսի վաւերականութիւնն հաստատել՝ անոր յաջորդող տոհմային պատմագրաց վկայութիւններով, այլ նոյն իսկ իւր ժամանակի հորիզոնէն վեր հեռատեսութեամբ լուծել իւր նախորդին անլուծանելի կարծուած դժուարութիւնքը. բայց յամենայնի պաշտ-

1. Bolland. Acta Sanctorum. Septemb. 30 Tom. VIII, pag. 320 et seq. Acta Sancti Gregor. auctore Agathangelo; ex Bibliotheca Medicæa Florent. S. Laurentii, interprete Ioanne Stilting.

2. Πρόλογος Αγαθαγγέλου, ἐν οἷς καὶ τὸ μαρτύριον τοῦ ἁγίου Γρηγορίου.

3. Պատմ. Հայոց հտ. Ա. էջ 668:

պանողական ղրութիւնն 'ի վար արկանելով, այնպէս որ նորա հայրենասիրութիւնն և ազգասիրութեան պարծումն աւելի դեր խաղացեր են անդ քան թէ ժամանակիս անաչառ քննութիւնն և լոկ ճշմարտասիրութիւնն: Այս վերջին պարագայս եթէ ազգային մատենագրաց համաճարակ ախտ համարիցի ոք և եթէ առանձին ճարտարութիւն իմն բազմահմուտ Մխիթարեանին 'ի զգեստնել զախոյեան իւր, պէտք է ըսել թէ այնքան զօրեղ է և համոզեցուցիչ, որ եթէ Ցիտուսեան անպարտելի գիտնականը սորա գրութիւնն իւր դիմացն ունենալու բաղդին հանդիպած լինէր յառաջագոյն, գուցէ թէ այնուհետև ոչ տարակուսէր Ագաթանգեղայ պատմութեան հարազատութեան վրայ և կամ կարի չափաւորէր իւր տարակուսանաց թիւն. որովհետև Ստիլտինգ ինքնին որոշակի կը խոստովանի թէ արտաքին մատենագրաց համաձայնութիւնք բաւական ապացոյց են նորա հարազատութեան, եթէ ժամանակաւ մերձաւոր եղած լինէին, բայց դժբախտաբար դաքական խտրոցն նոցա հետ՝ զիս ևս կը թուի հեռացնել անտի: Իսկ Զամչեան այդ մեծ խտրոցն իսկ ջանացեր է հարթել զրէթէ Ագաթանգեղայ ժամանակակից և կամ ժամանակաւ մերձաւոր հայ մատենագրաց խումբ մի 'ի վկայութիւն կոչելով: Սակայն այսու հանդերձ, պէտք է ասել, թէ տոհմային մատենագրութեան այդ ճոխ զինարանն իսկ՝ արդի քննութեան առջև իբրև ժանգահար զէնքեր կը ներկայացնէ Զամչեան, որոնք չպաշտպանելէն զատ՝ կարող են վնասաբեր ևս լինել գործածողաց. որովհետև նոցա հարազատութիւնը յառաջագոյն չէ ապացուցած: Բաց աստի, նա իւր ժամանակի սահող և սայթաքող հոսանքներէն մղուելով շատ և շատ էական խնդիրներ (յորոց մին է Ագաթանգեղոսի բնագրի և թարգմանութեանց խնդիրն) հարևանցի նկատած է. կամ լաւ ևս գլխովին առանց նկատողութեան թողած, որոնք ցայսօր եղան ոմանց քար գայթակղութեան և այլոց իբրև նեցուկ ապախնութեան:

Ցամին 1843 Մխիթարեան Հարց ձեռքով և Թովմասէոյ իտալացւոյն սրբագրութեամբ եղած Ագաթանգեղոսի իտալերէն հրատարակութեան յառաջաբանի հեղինակը, թէպէտ և մի քանի օգտակար տեղեկութիւններ կը թուի յաւելուլ Զամչեանի պաշտպանած դատին 'ի նպաստ, բայց գրոց բնագրի և թարգմանութեան խնդրոց մասին՝ անկէ աւելի քայլ մի առած չէ. այլ պարզապէս նորա ընտրած դաշտին վրայ կենալով՝ միայն որոշակի իւր դրօշը ցուցել է, ասելով թէ հայերէն գրուած է այն: Ենթադրութիւն մի՝ որ չկարէ գոհացնել զոք. ասութիւն լոկ՝ առանց ապացուցութեան:

Զամչեանի կրօնակից վիեննական Մխիթարեանց նշանաւոր Հարց

մին, այսինքն է, հանրածանօթ Հ. Ց. Գաթրճեան[1] իւր աչալուրջ և ճշդող միտք ունելով 'ի միում ձեռին քննասիրութեան կարկինն, իսկ ի միւսումն՝ արդէն իսկ Զամչեանէն ձգուած տոհմային և օտարազգի պատմագրաց միութեան լարը պատշաճեցնելով Ագաթանգեղայ բազմակողմեան յօրինուածութեան և նորա գլխաւոր դիպաց, քաջ չափեց զանոնք և պահպանել ուզեց ոչ միայն օտար յարձակմանց դէմ, այլ յետագայից իսկ լուսատու լամբարներ պատրաստեց՝ քայլ մի ևս յառաջնելու Ագաթանգեղոսի պատմութեան խորհրդաւոր մթութեան և լաբիւրինթոսի մէջ. սակայն նորա բնագրի և թարգմանութեան խնդիրներն, մանաւանդ Գրիգորի կարծեցեալ վարդապետութեան հարազատութեան կամ անհարազատութեան քօղն և ոչ իսկ ծայրիւ մատին ուզեց պարզել. այլ նորա իմաստից և խորհրդոց համառօտ տեսութեամբը միայն գոհ եղաւ, գուցէ ոչ այնքան իւր ժամանակի պահանջմանց հետևելով, որքան իւր մտաւորական հորիզոնին վերայ ապագայ քննադատութեան նորանշոյլ աստղը դեռ պայծառ ծագած չլինելուն պատճառաւ. կամ մանաւանդ իւր առաջարկեալ գրութենէն օտար վարկաւ զայնս:

Զկնի ապա յասպարէզ եկաւ Վ. Լանգլուայ[2]: Գաղղիացի հայագիտիս համար կարելի է ըսել թէ ստուգիւ մի նոր քայլ առաւ, երբ իւր հրատարակութեան նախաշաւղի մէջ ուղղակի շօշափել ուզեց Ագաթանգեղեայ հարազատութեան կամ անհարազատութեան, բնագրի և թարգմանութեան նշանաւոր խնդիրներն, յորմէ կը կախուի, ըստ իս, Գորդեան հանգոյցէն աւելի Ագաթանգեղեայ գրոց բազմակնճիռն հանգոյցի լուծումը: Նորա կարծեօք ոչ այժմու յունարէնն և ոչ հայերէնը կարեն լինել բնագիր, — հայերէնը՝ ոչ թէ Դ. դարու դիւանական պատմութիւն է, այլ Ե. դարուն սրբոց վարուց խմբագրութիւն մի:

Գաղղիացի գիտնականին կարծիքն մասամբ մի եթէ ստոյգ և հաւանիք, սակայն և այնպէս պէտք է ասել, ըստ առածին, «Մի թէ բանիւ ինչ պատերազմն վճարիցի՞», ուր ոչ մի ապացոյց մէջ բերուած չէ. այլ որոտընդոստ պատգամք բանից՝ գաղղիական թափով արձակեալ:

Ցամին 1877 ելաւ Գերմանիոյ հռչակաւոր քննադատն Ա. Գուտ_

1. Ցիեզ. Պատմ. հտ. Բ. էջ 476 տպ. Վիեննայի 1852:

2. Agathange, Hist. du règne de Tiridate et de la prédication de S. Grég. Illuminateur, avec suppression dès passages purement religieux, sur le texte Arménien accompagné de la version grecque. Paris, 1867.

շմիդ. որ թէպէտև իւր առանձին երկասիրութեանը[1] մէջ Լանգլուայի առաջին կարծեաց հակառակ՝ Մխիթարեան Հարց հինաւուրց կարծիքն ընդունեց, այսինքն թէ, Ագաթանգեղեայ գիրքն ի սկզբան անդ հայերէն գրուած էր. սակայն Գաղղիացւոյն լոկ բանիւ արտայայտած երկրորդ կարծիքը՝ Գերմանացին անսովոր կորովով մտաց և մեծ հմտութեամբ քաջ բարգաւաճեց և ջանաց ապացուցանել, իրարմէ տարբեր եկեղեցական և աշխարհական աղբիւրներ յայտնելով Ագաթանգեղեայ գրոց մէջ: Գուտշմիդ թէ այս աղբերացս յայտնութեամբ և թէ Կորեան հետ նմանաբան հատուածոց ուշիմ բաղդատութեան մէջ մեծ արդիւնք ունեցաւ. սակայն պէտք է ասել, թէ նորա տեսողական յարձակման և անձնական ենթադրութեանցը շատ պատմական ճշմարտութիւններ և Հայաստանեայցս եկեղեցւոյ նուիրական աւանդութիւնք եւս առաթուր եղան. որոց մասին եթէ մենք եւս ուզէինք լռել, տոհմային պատմութիւնը պիտի բողոքէր ընդդէմ նորա: Նիւթս չի ներեր և ես իսկ չեմ ուզեր 'ի ներածութեան աստ՝ նորա քննադատութեան բովանդակութիւնն ընել. բայց յընթացս երկասիրութեանս և ըստ պահանջելոյ հարկին՝ մէջ պիտի բերեմ նորա առանձին տեսութիւններն, որպէս զի մէկ կողմէն իրք 'ի հիմանց քննուած լինին, և միւս կողմէն այլ ընթերցողացս գաղափար մի տուած լինիմ նորա գրութեան և կարծեաց մասին:

Հ. Գարեգին Վ. Զարբհանալեան՝ իւր Հայկական հին Դպրութեան[2] մէջ, 181–213 յէջս ընդարձակաբար և մեծ հմտութեամբ խօսած է Ագաթանգեղոսի վրայ, համառօտելով նոյնպէս ներկայ քննադատութեան յարուցած կարևոր հարցերն և տուած վճիռները. բայց նոցա լուծումն և իւր առանձին պատասխանին վերոյիշեալ Դպրութեան նախկին տպագրութեան և իւր ուխտակից նախորդաց հնաւանդ կարծեաց համաձայն ուզած է տալ: Ի նպաստ յունարէն թարգմանութեան մէջ բերուած նորա ապացոյցներն՝ ըստ բաւականին են հիմնաւոր և եզրակացուցիչ. բայց ոչ նոյնպէս և անոնք, որովք զհայերէն Ագաթանգեղոսն 'ի սկզբան անդ հայերէն լեզուով գրուած կը համարի 'ի Դ դարու: Սակայն մոռնալու չէ, թէ մեծապատիւ հեղինակին սոյն այս գրութեան նուիրական նպատակն և իւր պահպանողական զգուշաւորութիւնն ստիպած են իւր յառաջագոյն յայտնած կարծիքը վերստին պաշտպանելու՝ յետ նորանոր յայտնութեանց Գուտշմիդի:

1. Agathangelos von Alfred Gutschmid, Leipzig, 1877.
2. Երկրորդ տպագրութիւն յաւելուածներով և փոփոխութեամբք, Վենետիկ, Մխիթարեան տպարան, 1886:

Յիշելու ենք դարձեալ Կարապետ Թովմայեանի փոքրիկ բայց գովելի երկասիրութիւնը[1]. յորում ինչպէս վերնագրէն իսկ կը տեսնուի, հեղինակը Ագաթանգեղայ պատմական մասերէն աւելի՝ վարդապետականին քննութեամբքը պարապեր է: Սակայն նախընթաց գլխոց մէջ՝ ըրած է սրամիտ դիտողութիւններ նաև Ագաթանգեղոսեան գրոց բնագրին և աղբերաց մասին, յաճախ ընթանալով զկնի շաւղաց Գուտշմիդի, և ուրեք ուրեք սեփական կարծիս արտայայտելով. սակայն կ'երևի թէ կամ ընդարձակ քննութեան միջոցներ և կամ ժամանակ չունենալով պարտապատշաճ փաստերով զանոնք ապացուցած չէ: Իսկ քանի մի վարդապետական կէտերու մասին տուած մեկնութիւնքը օտար են ի բնագրէն:

Ծանօթ է ինձ նաև յամին 1886 լոյս տեսած Փելիքս Նէվի երկասիրութիւնն[2], որ հայկական Մատենագրութեան բովանդակութեամբը մի նշանաւոր գործ է. սակայն Ագաթանգեղոսի և նորա պատմութեան մասին ամենևին նոր բան մի չընծայեր. այլ տոհմային գրագէտ դասուն մէջ շրջող և հասարակային կարծեաց արձագանգներ աևթ կու տայ մեզ, բայց 'ի մասնաւորի Զարբհանալեանի Դպրութեան պատմութեամբ ներշնչուած:

Մինչև ցարդ մէջ բերուած գրութիւններէն դատելով՝ կը տեսնենք, որ Ագաթանգեղոսի գրոց մասին եղած քննադատք երկու տարբեր կուսակցութեանց բաժնուած են: Օտարք Լանգլուայի և Գուտշմիդի հետ յարձակողական մի նոր դեր խաղալով. իսկ տոհմայինք և տոհմային լեզուին ծանօթ Եւրոպացիք ոմանք՝ Մխիթարեան Հարց հետ պաշտպանողական դրութեամբ յառաջելով՝ կը կռուին և մրցին, ունելով 'ի միջի զոսկեխնձոր և զոսկեգրիչ երկն Ագաթանգեղայ գրոց: Վերջիններըն՝ իւրեանց հայրենի հնաւանդ յիշատակարանաց վրայ յարեալ և պանծացեալ՝ վարկպարազի յոմանց զուցէ թէ հնամոլք իսկ կոչեցան յայսմ՝ որպէս և յայլ հրատարակութիւնս նախնեաց. սակայն առաջնոց քմահաճոյ աւերմունքը չգործել զատ, ինչպէս փորձն ինքնին ցուցուց, ժամանակին աչակցութեամբը մեծամեծ ծառայութիւններ ևս մատուցին մինչև ցայսօր տոհմային մատենագրութեան՝ և չպիտի դադարին մատուցանել. վասն զի ժամանակեան նորութեանց և հնութեան ճարտար գործիչներ լինելով՝ մէկ նշխար մի կամ նշմար չեն ուզեր վերցնել կամ փոփոխել, առանց նորա տեղ փոխանակելի առձեռն պատրաստ նիւթեր ունենալու:

1. Agathange et la doctrine de l'Église Arménienne en V.ème Siècle, Lausanne, 1879.
2. L'Arménie chrétienne et sa Litterature, Louvain, 1886.

Արդ, յետ գերմանացի քննադատին անցին տասն ամք. այժմ հասած է, ըստ իս, ժամանակն և վճռական վայրկեանը. հրաւիրանաց զանգակը կը կոչէ 'ի գործ. հարկ է որ այս երկու կուսակցութիւններս իրարու միտք լաւ հասկնան և ոտն առ ոտն մօտենալով միմեանց ձեռք կարկառեն, նոր խորհուրդ մի երկնելու և նորակերտ շինուած մի կառուցանելու Ագաթանգեղոսեան զրոց աւանդութիւններէն և կամ զանոնք իւրեանց սկզբնական կացութեանը վերածելու համար, զոր եթէ երանգք դարուց և ժամանակաց ազդեցութիւնք կերպարանափոխեցին երբեք:

Արդ այն ժամանակէն 'ի վեր երբ զառաջինն կարդացի ես Գուտշմիդի քննադատութիւնն Ագաթանգեղոսի մասին, կը խոստովանիմ, թէ մեծ զայրութով սիրտս լեցուեցաւ, մտածելով որ օտարազգի մի կը յանդգնի ձեռներէց լինել յասպարէզ անդր հայկեանս գրականութեան և աղօտացնել մեր ամենէն աւելի պանծալլի և պարծելի հեղինակին և նորա հեղինակութեան արժանիքը առանց հայերէնագիտութեան: Սակայն գիտնալով քաջ, թէ հայրենասիրական զգացմանց ջերմաջերմ հուրն էր որ կը բորբոքէր յիս այդ բոցը և կ'ուզէր շլացնել իմ մտացս աչքերը չնկատել այն նորակերտ աշխարհը, զոր լուսատր յայտնութիւնք ժամանակին ինձ ակներև կը պարզէին, և թէ այդ քննադատը չէր տգէտ ոմն և անճաշակ Հայոց պատմութեան, թոյլ տուի ժամանակ մի որ այդ բոցը հանդարտի. և յետ ժամանակաց վերստին ընթերցայ զայն ամենայն աչալրջութեամբ և առանց նախապաշարմանց: Այս երկրորդ ընթերցումը ոչ միայն նոր գաղափարներ ծնաւ իմ մտացս մէջ, այլ նաև բուռն զօրութիւն մի ձեռք զարնելու այս գործիս: Առ այս յորդորեցին զիս և արտաքուստ գեղեցիկ ակնկալութիւնք երից կամ չորից նպաստից. այսինքն է, նախ մեր Վիեննական եղբարց Ագաթանգեղայ պատմութեան ամենէն հնագոյն և կրկնագիր ձեռագիրն, զոր ոչ ոք մինչև ցայսօր բաղդատելու բաղդն ունեցաւ. սակայն այս ակնկալութիւնս ի դերև ել: Բ. Կ. Պոլսոյ Ցունաց [illegible] ատենապետ և հնագէտ Պապադոպուլոս Կերամևսի նոր գիւտն, զոր զառաջինն ծանոյց ինձ Պիզայի Պրօֆ. Էմիլիոս Տէզա, 1886 Դեկտեմբերին առ իս ուղղեալ թղթով մի, թէ վերոյիշեալ յոյն գիտնականը Մակեդոնիոյ [illegible] մենաստանի գրատան մէջ՝ Ժ. դարում գրուած յունարէն ձեռագրեր փոշիներու մէջէն դուրս բերել է, յորս կը գտնուին յունարէն Ագաթանգեղոսի բազմաթիւ հատուածներ: Անձամբ տեղեկացայ զստուգութիւն եղելութեանս և խնդրեցի 'ի նմանէ այդ հատուածոց ընդօրինակութիւնը, բայց նա պաշտօնով յՆրուսաղէմ հաստատուած

լինելով, չկարաց իմ խնդիրքը կատարել՝ զյոյսն իմ ևեթ տածելով. ճարահատեալ յանձնարարական թուղթ մի ուղղեցի առ միանձունս վերոյիշեալ մենաստանին՝ պէս-պէս խոստումներով. սակայն յետ երկուց ամսոց, չգիտեմ այդ մենաստանին աշխարհքիս երեսէն չընջուելո՞ւն եթէ թղթատարաց շնորհիւ, այդ թուղթն առ իս վերադարձաւ: Այսպէս ուրեմն այս նպատէս կս զրկուեցայ. բայց առանց կասելու շարունակեցի արդէն 'ի վաղուց սկսեալ իմ գործը, ունելով 'ի ձեռին բաց 'ի վենետկեան Ագաթանգեղայ կրկին հրատարակութիւններէն, նաև Կ. Պոլսոյ հին տպագրութիւնն ևս՝ հանդերձ քառաթիւ օրինակաց բաղդատութեանց յաւելուածներով, զոր կը կոչեմ Ա. Բ. Գ. Դ. և Եմ. Տէզայի մի փոքրիկ հրատարակութիւնն, որ է արդիւնք ճարտար և արթնամիտ բաղդատութեան փլորենտեան յոյն օրինակին՝ ընդ տպագրութեան Լանգլուայի: Բաց աստի, ոչ ինչ նուազ նպաստամատոյց եղև ինձ նաև Բարբերինեան մատենադարանի ձեռագրէն օրինակուած լատիններէն Ագաթանգեղոսն, որ 'ի քաղաքն յափսենական:

Հուսկ ուրեմն և 'ի վեր քան զակնկալութիւնն իմ, եհաս 'ի ձեռս իմ Գերմանիոյ, մանաւանդ թէ, Եւրոպիոյ հանրածանօթ և մեծ բանասիրին Պ. Դը Լագարդի դեռ այս ինչ լոյս տեսած և բազմավաստակ բազմագանձ հրատարակութիւնն[1], որ աւելի քան զամենայն նպաստամատոյց ինձ եղև, և պէտք է, որ ամէն ուսումնասիրի՝ բայց 'ի մասնաւորի՝ մերայնոց խորին ուշադրութեան առարկայ լինի: Մեծ գիտնականը վերջին այդ հրատարակութեամբ երկու ամենամեծ ծառայութիւններ մատուցած է Հայոցս. Ա. վերստին 'ի լոյս ընծայելով զյունարէն Ագաթանգեղոսն, բայց ոչ որպէս զնախորդս իւր. այլ իւր լեզուաբանական, աստուածաբանական և պատմական ընդարձակ հմտութեամբը քաջ ուսումնասիրած է վերստին Փլորենտեան ձեռագիրն. մանրակրկիտ զննութեամբ ուղղագրած է նախընթաց հրատարակութեանց սխալ ընթերցմունքը՝ նշանակելով 'ի ստորև իւրոց նոցա տարբերութիւններն, յորս ոչ ինչ ընդհատ կը տեսնուին Պրոֆ: Տէզայի նախնաբար այն ձեռագրին վրայ ըրած սրամիտ և ուղիղ դիտողութիւններն, զորս անաղարտ պահած է Գերմանացին, մրով բանիւ նա լրացուցեր է Լանգլուայի հրատարակութեան պակասաւոր միջոցներն. այնպէս որ կարելի է ասել, թէ մասամբ մի կատարուած է այժմ վերոյիշեալ իտալացի բանասիրին և հայագիտի

1. Agathangelos und die Akten Gregors von Armenien, Göttingen, 1887.

ցանկութիւնը, որ իւր փոքրիկ գրութեան մէջ կը փափաքէր հայերէն Ագաթանգեղոսին առընթեր՝ տպուած տեսնել ն՛ նորա համապատասխանող յունարէն օրինակն: Պարտք կը համարիմ յիշել աստ մեծարգիւն Գերմանացւոյն 'ի վերջկոյս իւր երկասիրութեան յաւելեալ յատուկ անուանց Լուսաբանութիւնն և ի Ս. Գրոց յԱգաթանգեղ կիր առեալ տեղեաց խնամոտ թուակարգութիւնքը, յորս հաւասարապէս կը փայլին հինաւուրց ծերունւոյն՝ անխոնջելի կորովն և զարմանալի նամբերութիւնն: Բ. 'ի լոյս ածեր է զՊատմութիւն գործոց Ս. Գրիգորի Լուսաւորչին՝ վատիկանեան մատենադարանի երեք ձեռագիրներէն, զորս մինչև ցայնվայր ոչ ոք կարող եղած էր ճանաչել, ըստ վկայութեան հեղինակին. և այս իսկ խորին կերպով իմ ուշադրութիւնը գրաւեց, թէպէտ և արդէն 'ի վերջկոյս ժամանեալ էի գործոյս: Այլուր առիթ պիտի ունենամ, սոյն գործի վրայ խօսել, իսկ այժմ թէ՛ երևելի գիտնականն և թէ՛ ես ուժգին կը յանձնենք ազգայնոց գէթ գրագէտ դասուն, ստանալ և ընթեռնուլ երախտապարտ սրտիւ այդ օգտաշատ հրատարակութիւնը, մանաւանդ թէ, ցանկալի էր նորա հայերէն ճիշդ թարգմանութիւնն եւս՝ տեսնել 'ի լոյս ընծայեալ յազգիս:

Ցընթացս գործոյս, մանաւանդ 'ի դժուարակնճիռն լուծումն կարևոր խնդրոց, թէպէտև 'ի խորհուրդ կոչած եմ ստէպ զԳուտշմիդ, բայց նորա կարծիքը լաւ իմանալու համար և ոչ թէ ունելոյ ինձ առաջնորդ. որովհետև 'ի բազում իրս և դէպս տարբեր են իմ տեսութիւնքս և սեփական կարծիք: Ցառաջ քան զձեռնարկ գործոյս՝ իմ առաջին ջանքն եղաւ ուշի ուշով քննել գերմանացի քննադատին թիւր հետևութեանց խարխուլ սկզբունքներն: Նորա դրութեան և քննադատութեան փորձաքարն՝ են Ագաթանգեղոս և ագաթանգեղոսեան գրութեան մէջ պարունակուած ներքին հաւաստիք. այնպէս զի կարելի է ասել, ըստ խոստովանութեան նորա, թէ Ագաթանգեղոսով՝ զԱգաթանգեղոս ուզեր է դատել: Իսկ ես 'ի մեծ զգուշութիւն ինձ և 'ի հաստատութիւն գործոյս՝ իմ քննասիրութեանցս ասպարէզն ընդարձակեցի նաև Դ. Ե և յաջորդ դարուց տոհմային և օտարազգի մատենագրաց վրայ, որոնք սերտ յարաբերութիւն ունին ընդ Ագաթանգեղայ և նորա աւանդութեանց հետ. բայց նախ քան զածելն զնոսա յապացուցութիւն աւանդելոցն յԱգաթանգեղոսէ, նոցա հարազատութիւնը ջանացած եմ ապացուցանել: Այս տաժանելի գործողութիւնը՝ սիրայօժար փափաքանօք կատարեցի, ոչ միայն տպագիր հրատարակութեանց՝ այլ մանաւանդ անտիպ ձեռագրաց վրայ, որոնց իրարմէ ունեցած զանազանութիւններն իսկ մեծ մտատան-

ջութիւն կը պատճառեն քննասիրին, զոյգ ՚ընդ ուրախութեան: Ջանացեր եմ աչքէ անցնել գէթ վանացս ձեռագրատան բոլոր **Ճառընտիրներն**, **Ոսկեփորիկներն**, **Յայսմաւուրքն** և **Տօնապատճառներն**. յառաջագոյն խելամուտ լինելով ձեռնարկած նիւթոյս ծանրութեան. որուն համար նոյնքան ձեռագիրք ևս հարկաւոր են, նորք և առժամայն յայտնեալք ՚ի մատենադարանս ազգիս և առանձնականաց ումանց, և ես մեծայոյս մեծափափաք կը սպասէի նոցա ցժամ առանձին հրատարակութեան գործոյս. յուսալով, թէ չեն զլացուիր՝ զայս յաջող կերպով աւարտելու և այլոց սկիզբն առնելու համար:

Առաջիկայ գործոյս մէջ պարունակեալ և ընդարձակօրէն բարգաւաճուած և լուծուած առանձին դէպք և դժուարակնճիռ խնդիրներ՝ գլխակարգութեանց բովանդակութեանը մէջ պիտի տեսնեն ընթերցողք. իսկ ընդհանուրքն, որոնց վրայ իբրև յառանցքի պիտի հոլովի և յառաջէ քննադատութիւնս, են Ա. Ագաթանգեղոսի իրական գոյութեան կամ ոչ գոյութեան խնդիրն. այսինքն է, Ագաթանգեղոս անուանեալն իցէ՞ լեալ պատմական և ժամանակակից գրիչ Տրդատայ և Գրիգորի պատմութեան, եթէ ընդհակառակն խմանալի է: Բ. Ագաթանգեղայ պատմութիւնն ամբողջապէս իցէ՞ արդեօք գործ քառորդ դարին Տրդատայ և գրեալ ՚ի սկիզբն Դ. դարու, թէ ընդհակառակն յայլ և այլ հեղինակութեանց և գործոց կազմակերպուած խմբագրութիւն մի: Գ. Ստուգիւ հայերէն լեզուա՞վ գրեցաւ այդ երկասիրութիւնդ, ինչպէս կարծեն Գուտշմիդ և այլք ոմանք, թէ ընդհակառակն յունարէն: Դ. Այժմեան յունարէն Ագաթանգեղոսն՝ իցէ՞ արդեօք բնագիր հայերէնի, թէ ընդհակառակն, նորա վրայէն յետոյ ուրեմն եղած թարգմանութիւն: Ե. Լուսաւորչայ կարծեցեալ ընդարձակ վարդապետութիւնն՝ ստուգիւ հարազատ իցէ, թէ գործ յետնագունի ուրումն ժամանակաւ:

Ամենուն քաջածանօթ է այժմ, թէ Ագաթանգեղայ գիրքը յերից մասանց կը բաղկանայ. այսինքն է, առաջինը՝ կը պարունակէ Տրդատայ, Գրիգորի և սրբոց Հռիփսիմեանց նահատակութեան պատմութիւնը. երկրորդը՝ Լուսաւորչայ կարծեցեալ վարդապետութիւնն. հուսկ երրորդը՝ Հայաստանի դարձի պատմութիւնը: Թող ներեն ինձ առ այժմ Հայոց լուսաւորութեան հօր հետ՝ նորա ջերմ որդիքը՝ փոխադրելու այդ միջին կամ երկրորդ մասն՝ ՚ի վերջկոյս երրորդին, խոստանալով որ դարձեալ կարելի է զետեղել իւր տեղ, նորա հեղինակութեան հետ իմիասին՝ զայն բարգաւաճող և օրհնեալ ձեռքն և բերանն ևս մատնանիշ ընելով և անդ ներմուծուելու բուն պատճառն;

# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

ԵՒ

# ԻՒՐ ԲԱԶՄԱԴԱՐԵԱՆ ԳԱՂՏՆԻՔՆ

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

—

### ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

Նախադրուան Ագաթանգեղեան գրոց և նորա անուանց վերնագրութեանն. — Ագաթանգեղոս անունն և նորա գաղտնիքն. — Նախկին չէ մակագրութեան յունարէն բնագրին և սխալ թարգմանութեան նորա. — Լուծումն խորհրդաւոր հանգոյցին:

Անծանօթ երկիր մի՝ կամ ապարան մի մտած ժամանակ՝ կ՚ուզէ մարդ փութանակի և բնական բերմամբ իմանալ, թէ ինչպէս կը կոչուի այն, և ում կը պատկանի: Այսպէս և ես այս բազմադարեան և հոյակապ յօրինուածութեանս նախադուռն հասնելով՝ հարկ կը համարիմ և հարկ անհրաժեշտ, նախ քան զամենայն հարցանել. Ո՞յր է յօրինուածս այս. և անդէն կը լսեմ, մանաւանդ թէ կ՚ընթեռնում անպատիր. «Ագաթանգեղայ»․ ինչ բան. «Պատմութիւն» և ոչ այլ ինչ: Այս բանս մի եզական իրողութիւն է, և բացառութիւն կը կազմէ ընդհանուր ազգաց պատմութեան մէջ: Ցիրուսի, ի ճակատ գրոց Հերոդոտոսի գրուած է Պատմութիւն, բայց յաւելուածով՝ հին ազգաց. Թուկիդիդեայ Պատմութիւն՝ Պեղոպոնեսեան մարտին, Տիտոս Լիւիոսի՝ Պատմութիւն Հռովմայեցւոց, Մ. Խորենացւոյ՝ Պատմութիւն Հայոց, Թապարեայ՝ Պատմութիւն Սասանեանց և Արաբացւոց, այսպէս և առ այլս: Իսկ աստ, ընդհակառակն, կը գտնենք միայն Ագաթանգեղայ Պատմութիւն: Արդ անսովոր վերնագրոյս Պատմութիւն բառն եթէ վերաբերենք Ագաթանգեղոսի իբրև անձի և ներս մտնենք այն յօրինուածութեան մէջ, ուրիշ ոչ այլ ինչ գտանեմք անդ՝ բաց յանուանէ նորա և ՚ի ծննդավայրէն. բայց այնպիսի մի ցառաջաբա-

նի մէջ, որուն հարազատութիւնն իսկ, ինչպէս քիչ յետոյ պիտի տեսնենք, գլխովին տարակուսական է և անհարազատութեան տեղի ունի: Իսկ եթէ ըստ կամս ընծայենք զայն Տրդատայ, նոր վերնագիր մի հնարած կը լինինք, որուն հակառակ կ'ելլեն Գրիգորի և Հռիփսիմեանց՝ աւելի քան զայն առանձնական պատմութիւնք, որոնք յիրաւի, միանալ կը միանան ընդ առաջնոյն, բայց առանձին պահելով իւրեանց բնադրոշմն և աւելի ընդարձակ տեղ գրաւելով. կ'ընթանան 'ի մի կէտ նպատակի՝ բայց տարբեր շաւղօք և եղանակաւ. միով բանիւ՝ թուին բղխել 'ի միոյն աղբերէ, բայց այլազան իրեր առբերելով մեզ՝ տարբեր երանգօք և առանձնայատկութեամբք:

Արդ այս անել լաբիւրինթոսէն ելլելու և շատ մի յանտեղութեանց զերծանելու համար՝ երկու ուղիներ կարելի է բռնել, այսինքն է, կամ ասել, թէ այս վերնագրոյս մէջ « Ագաթանգեղայ պատմութիւն » անմիջապէս կից էր նաև բառս « Տրդատայ », եթէ իրօք նա Տրդատայ քարտուղար եղած և նորա պատմութիւնը գրած էր. բայց յետոյ նախընթաց մի քանի գլխոց հետ՝ որոնք կը գտնուին արդ միայն յունարէնի մէջ, անյայտացած է, և կամ ընդօրինակողաց անհոգութեամբն 'ի բաց թողուած: Եւ կամ ասել թէ անդստին, « Պատմութիւն Ագաթանգեղայ » բառերը միայն կային, բայց բոլորովին այլ ինչ նշանակելով քան թէ յատուկ անուն մարդոյ: Այժմու հայերէնը համարելով միակ բնագիր և մի միայն հեղինակութեան գործ, անտեղի կը թուի ինձ և անընդունելի այդ ենթադրութեանց առաջինը. այնու զի նախ վերոյիշեալ պարագայքը ընդդէմ կը զինին նմա: Բ. Նոյն վերնագրոյն մնացած մասն իսկ Յառաջաբանով հանդերձ գիշատիչ Կռոնոսի անգութ ժանեացը զոհ եղած պիտի լինէին: Ուրեմն կը մնայ երկրորդը: Սակայն յայսմ իսկ եթէ « Ագաթանգեղայ » բառը իբրև յատուկ անուն առնունք, դարձեալ այն նորօրինակ բացառութեան և անտեղութեանը մէջ պիտի անկանիմք, զոր 'ի սկզբան անդ նշանակեցի և արդ աւելորդ է երկրորդել:

Արդ խորհրդական անունս Ագաթանգեղոս կամ Ագաթանգելոս, կազմուած է յունական ἀγαθός **բարի** և ἄγγελος **հրեշտակ** բառերէն, ինչպէս թարգմանած են Կիրակոս և այլք **բարի — հրեշտակ**: Այս իմաստիւք նկատելով հռովմէա — յունական անունս, պէտք է ըսել, թէ քրիստոնէութեան ձեռքով մուտք գտաւ վերոյիշեալ ազգաց մէջ և եղև գործածական իբրև յատուկ անուն: Բազմաթիւ անձինք Ագաթանգեղոս[1] կը կոչուէին առ Հռովմայեցիս և առ Յոյնս, որոնք

1. Պաղաւիոն, 'ի փողոցին Ս. Մառեմայ՝ կայ արձանագրութիւնս T. Præf. T. D. V. A. Antonius. A. F. *Agathangelus*: — Բ. ի Հռովմս կը գտնուին հետևեալ արձանագրութիւնքս. — 1.° M. Sergius C. L. *Agathangelus*. Fecit ex Patre Quinta. sibi et Ocresiæ C. L. Apate. Uxori: — 2.° T. Cæsius. T. L. *Agathangelus* ex Patre quarto sibi et suis: — 3.° D. M. Myrineni C. Vari *Agathangeli*. Filia IC sita est. Vixit A. XXI: 4.° M. Pompili. M. L. Fortunati. Gram. Vixit an LXXIX. M. III. — M. Pompilius M. L. *Agathangelus*: — 5.° Dis. Man. Cossutiæ Arescusæ F. Cn. Cossutius *Agathangelus*, ect: — 6. Առ Մոմսընի, Inscr. 35, կը յիշուի P. Carinatius *Agathangelus*;

ծանօթ են մեզ Փաբրիկիոսի, Մոմսընի և այլոց յունա – հռովմէական արձանագրութեանց հաւաքածոութեամբքը: Կարինացի Ագաթանգեղոսը մասնաւորապէս գրաւեց իմ ուշադրութիւնս, և ես շատ հետամուտ եղայ ընդարձակ տեղեկութիւն մի գտնել նորա մասին առ Մոմսընի և կամ այլուր, բայց 'ի զուր: Կարելի՞ է ասել, թէ մականունս Carinatius, Կարին անուանէն ածանցեալ՝ Կարնեցի բառին լոկ տառադարձութիւն եղած լինի, և թէ նա եկաց քարտուղար թագաւորին Հայոց. եթէ, ընդհակառակն, լատիներէն Carina բառէն ածանցեալ: Վերջին ենթադրութեանն 'ի հաստատութիւն չունիմ փաստս ինչ եզրակացուցիչս, սակայն առաջնոյն ուղղակի կը հակասեն, նախ զի նորա շիրիմն կամ արձանագրութիւնն 'ի Հռովմ կը գտնուի: Բ. Տրդատայ քարտուղարին համար գրուած է, թէ էր 'ի քաղաքէն Հռովմայ:

**Յայսմաւուրքն** Դ. յէջ 80 կ'աւանդէ, թէ յաւուրս հալածանաց Դիոկղետիանոսի և Մաքսիմիանոսի բազումք 'ի հեթանոսաց դարձան և մկրտեցան 'ի ձեռն Ս. Կղեմայ Անկիւրացւոյ, զորս կոտորեց Դիոկղետիանոս. բայց մի ոմն որուն անուն էր Ագաթանգեղոս, որ թարգմանի բարի հրեշտակ, փախստեամբ զերծաւ: Այլ յետոյ կալեցաւ և ածաւ ընդ սրբոյ հայրապետին 'ի Նիկոմիդիա, և հրաշքով ազատեցաւ 'ի մահուանէ: Ապա Մաքսիմիանոս ետ տանել զնա կապանօք յիմիսոն քաղաք առ Դոմետիանոս դատաւոր, և յետ պէսպէս տանջանաց իջուցին զնա 'ի Տարսոն, և անտի յԱնկիւրիա, ուր և նահատակուեցաւ սրով, զոր առեալ հաւատարիմ կինն Սոփիա թաղեց պատուով: Արդ դիտելու ենք նախ, որ այս Ագաթանգեղոս էր Հռովմայեցի, և Կղեմայ ի Հռովմ եղած ժամանակ դարձաւ 'ի քրիստոնէութիւն: Բ. Ս. Կղեմայ պատմութիւնն իսկ շատ նման է Ս. Լուսաւորչայ պատմութեան. զի երկոքեան իսկ ասին 'ի մանկութենէ յանձն արարեալ կնոջ հաւատացելոյ և բարեպաշտի, որ կը կոչուէր Սոփիա. երկոքեան իսկ 'ի Հռովմ գացած. երկաքանչիւրին հետ սերտիւ կապուած է Ագաթանգեղոսդ անուն: Ուստի կարելի է, թէ մէկուն պատմութիւնը՝ միւսոյն անցած լինի, վերաբերութեամբ Հռովմայեցի Ագաթանգեղոսին. բայց թէ որո՞ւն ձեռքով, այս յայտնի չէ:

Մեծանուն հնագէտն Յով. Դէ Ռօսսի՝ յառ իս ուղղեալ մէկ թղթովը կը ծանուցանէ մի այլ Ագաթանգեղոս, պաշտօնով նօտար, բայց կը յաւելու, թէ սորա ժամանակն և տեղին և ազգութիւնն այնպէս որոշ է, զոր չէ մարթ համարել քարտուղար Տրդատայ: Լ. Ալլատիոս[1] ևս խօսելով զհռչականունն Լեպիթեայ՝ կը յիշէ զԱգաթանգեղոս ոմն, յասելն. « Agathangelus (qui adversus Niceporum Gregorium scripsit pro Aristotile) Callistradi filius in « Narrationibus ». Eius verba scriptionis taedio fatigatus, ut animo recreeris, nec invitus, quia rara, et nondum editâ perleges ». Յետոյ այդ-Ագաթանգեղոսի « Պատմութեանց » Narrationibus գրքէն հատուած մի ևս մէջ կը բերէ Լեպիթեայ 'ի զովեստ:

1. Առ Փաբրիկիոսի, Bibl. gr. edit. nuova, T. X, p. 551-824.

Արդ, այս վերջին Ագաթանգեղոսս՝ եթէ նոյն համարինք ընդ նախայիշատակելոյն ի Յ. Դէ Ռոսսեայ, և եթէ որիշ 'ի նմանէ, այս յայտ է, թէ լեալ իցէ ծանրակշիռ հեղինակութիւն մի առ Հոռոմս, զորմէ վիպէ և Լ. Ալլատիոս յերկասիրութեան իւրում: Արդ եթէ աստանօր յիշատակեալ Կալլիստրատոսը, առ Դիոկղետիանոսիւ կատարուած մեծատոհմիկ վկային հետ նոյն համարինք, այնուհետև նորա որդւոյն մասին գէթ ժամանակագրական անտեղութիւնը կը վերնայ, և չէ ինչ անկարելի որ քարտուղար ևս եղած լինի թագաւորին Հայոց և նորա հրամանաւ պատմութիւն մի ևս գրած ունենայ: Բայց թէ Գրիգորի գործոց և Հայաստանի դարձի պատմութիւնն՝ իւր այժմեան ձևով և ամբողջութեամբը, զոր ընծայեն մեզ հայերէն և յունարէն օրինակները, իցէ՞ թէ նոյնպէս նորա ձեռքով գրուած լինին. այս ոչ միայն առանց հաստատութեան, այլ և անկարելի իսկ կը թուի ինձ: Եւ պէտք է ասել, թէ ցայս վայր յիշատակուած Ագաթանգեղոսներու գոյութենէն՝ չէ մարթ հետևցնել Տրդատայ քարտուղար Ագաթանգեղայ գոյութիւնը:

Տոհմային մատենագիրք առ հասարակ, յԺԳ դարէն սկսեալ ցըվերջ կոյս Ե. ին, կը յիշեն զԱգաթանգեղոս իբր քարտուղար և գրիչ Տրդատայ Պատմութեան. մանաւանդ Զենոբայ պատմագրութեան Դ. օրինակն, որ դեռ բաղդատութեամբ հրատարակուած չէ, իւր բազմապատիկ նորութեանց հետ՝ Խորենացւոյն[1] պատիւն ևս կ'ընծայէ Ագաթանգեղայ այսպէս. «Որ ունէր զխաղաղարարութեան պատիւ յարքայէ»: Որոնք որ ագաթանգեղոսեան գրոց գաղտնիքը լաւ հետազօտած չեն և լոկ հեղինակական վկայութիւնը բաւական կը համարին առ ամենայն, տոհմային մատենագրաց այս համաձայն վկայութիւնս առին իբրև մի զօրաւոր և անժխտելի ապացոյց անձնական գոյութեան և հեղինակութեան Ագաթանգեղայ: Սակայն ներուի ինձ ասել, թէ այս երևոյթս ոչ այլ ինչ է՝ բայց եթէ ծառայական հետևութիւն խորագրին գրոց «Ագաթանգեղայ» կամ նորա Յառաջաբանին, և թէ այդ ժամանակէն և անդր, այսինքն է, Ե. դարու առաջին քառորդէն՝ ցերկրորդ կէս Դ. դարուն՝ ոչ ոք, թէ՛ տոհմային և թէ՛ օտարազգի մատենագրաց, երբէք ծանեաւ կամ կը յիշատակէ զԱգաթանգեղոս իբրև պատմագիր և հեղինակ «Գրիգորի գործոց և Հայաստանի դարձի պատմութեան». թէպէտ և են ոչ սակաւք որք այս անուն երկասիրութենէն հատուածս ևեթ 'ի մէջ բերեն: Թողունք զԵղիշէ, զԵզնիկ, զՄեսրովբ և զՍահակ, որոնք քիչ կամ բնաւ առիթ չունեցան յիշատակելու զԱգաթանգեղոս, ինչպէս կարծեն ոմանք. սակայն Բուզանդացին Փաւստոս, մեծն և հնապատումն 'ի պատմագիրս, որ, կարեմ ասել և ապացուցանել, թէ ամենէն աւելի օգտուեցաւ 'ի «Գրոց Ագաթանգեղայ» և նորա շարունակութիւնն եհար 'ի գրի, բնաւ չի յիշեր զԱգաթանգեղոսդ անուն: Պէտք է աւագ աչօք դիտել այս երևոյթս և ոչ վարկպարազի բանիւք անցանել: Այս մեծ խնդրոյն և նորա մասին առարկելի դը-

1. Այս պաշտամանս նշանակութիւնը տես «յԱյրարատն» Հ. Ղ. Ալիշանի, էջ 421;

*ժուարութեանց պատասխանին յետաձգելով, և նորա իսկական մասը միայն 'ի նկատի առնելով, այլազգ ուրեմն հարկ է լուծել զայն։*

*Արդ, իմ կարծիքով, յունա – հռովմէական* Ἀγαθάγγελος *անուան կամ բարդութեան առաջին մասի նշանակութիւնը նոյն պահելով՝* ἄγγελοςին *համար պէտք է ասել, թէ* ἀγγέλλω ( ἀγγελίζω ) *բայէն ածանցած է, որ նշանակէ* **աւետել**. *ուստի միացնելով* ἀγαθός *ածականը* ἄγγελος *կամ* ἄγγελλος *գոյական անուան հետ՝ կը լինի ոչ թէ բարի աւետաբեր, այլ* **բարի աւետիս** *կամ աւետիք: Արդ այդ յառկացուցեալ անունն այսպէս վերլուծելէն յետոյ՝ կ' իշխեմ ասել, թէ « Գրոցս » յունարէն բնագրի հնագոյն խորագիրն կամ մակագրութիւնն եղած է* Ἱστορία τοῦ ἀγάθου ἀγγέλου *կամ ու նոյն է,* Εὐαγγελίου. *այսինքն է, «* **Պատմութիւն բարի աւետեաց** ». *կամ լաւ ևս, «* **Աւետարանին** ». *որովհետև յունական* εὖ *մասնիկն ևս՝ բարի կը նշանակէ, և բազմաթիւ յատուկ անուանք ասով կազմուած են: Սակայն Գրոցս հայ թարգմանիչն և կամ խմբագրողն, որուն ժամանակն և պարագայքը յետոյ պիտի ցուցնեմ, կամ բնագրին եղծուած լինելուն և սղագրութեան պատճառաւ, և կամ ըստ սովորութեան ընդօրինակողաց ծեռագրաց, այդ ածական և գոյական զոյգ անուանք իրարու շարայարեալ գրուած լինելով, սխալ կողմէն առած և իբր յատուկ անուն մարդոյ՝ թարգմանած է « Ագաթանգեղայ Պատմութիւն », հակառակ նորա բովանդակութեան և նիւթին, որ աւետեաց Աւետարանին և Հայաստանի դարձին, և ոչ թէ Ագաթանգեղոսի կամ նորա պատմութեան վրայ կը խօսի: Արդ այս մեկնութեամբս, այսինքն է, վերոյիշեալ յունական եռաթիւ բառերու պարզ թարգմանութեամբը կը կազմուի և պէտք է որ կազմուած լինի հայերէն Ագաթանգեղայ գրոց վերնագիրն. և այնպէս գեղեցիկ կերպով պատշաճած է այդ գրոց պարունակութեան ինչպէս գլուխն 'ի մարմնի: Եւ ով որ այս մեկնութիւնս չի ընդունիր, գէթ զայս ստիպուած է ընդունել, թէ « Ագաթանգեղայ պատմութիւն » յետոյ ուրեմն ի ձեռն այլոց գրուած է և ոչ թէ 'ի նմին իսկ Ագաթանգեղոսէ, եթէ գոյր. որովհետև Ագաթանգեղոսը չէր կրնար իւր պատմութիւնն անուանել զայն՝ առանց յաւելուածոյ այլոց բանից:*

*Այս կարծեացս 'ի հաստատութիւն՝ կան դեռ ուրիշ արտաքին և ներքին ապացոյցներ: Յիրաւի, Նիկողոս Դամասկացի՝ «* **Կեսարու կենսագրութեան**[1] » *մէջ կ'ըսէ.* Ὁ γὰρ Οἰβάρας δύναται Ἑλλάδι γλώσσῃ ἀγαθάγγελος: *Ըստ մեծանուն արևելագիտին Բիւռնուֆի՝ անունս* Οἰβάρας « est certainement un nom d' origine persan... serait exactement en zend hubara, et signifierait celui qui porte le bien, ou le porte-bonheur. Cette signification réponde exactement à celle d' *ἀγαθάγγελος*; traduction grecque du nom persan d' Οἰβάρας ou Soebares, d' après Justin ».

1 *Հրատարակութիւն Դիդոյի*, Vie de César, III, p. 400.

Ապա կը դառնայ ապացուցանել, թէ երկաքանչիւրն իսկ զանդկերէն hubèrèti բառէն կ'ածանցին, և բերէ աւետիս կամ բարի աւետելու գործողութիւնը կը նշանակեն. Quant à légitimité de cette formation, je l'appuie sur l' existence constatée du mot hubereti l' action d' apporter le bien. Voy. Nicolas de Damas, Vie de César, par N. Piccolos, D. M. Paris 1850, Addition, p. 88-90.

Բ. Ապացոյց կը համարիմ ես այս բանիս Ագաթանգեղայ գրոց Ցառաջաբանի էջ 24 հետևեալ խօսքերն, զորս հայկազն խմբագրող Գրոցս զոգցես իմն յոյկամս ստիպած է մէջ բերել՝ յասելն. « Ընթերցեալ զԹորգոմեայ ազգիս և զՀայաստան աշխարհիս աստուածապարգև աւետեաց Աւետարանին քարոզելոյ բանին », այսինքն է, զՊատմութիւն: Եւ յիրաւի, Յառաջաբանս՝ եթէ հեղինակին Գրոցս համարիցի որ, և եթէ թարգմանողին կամ խմբագրողին, այս յայտ է, թէ նորա ընթերցածը Աւետարանի քարոզութիւնը չէր կարող լինել, այլ քարոզութեան պատմութիւնը կամ աւետիսը: Այս բանս խիստ յայտնի կը լինի յաջորդ բացատրութեամբս. « թէ ուստի կամ զիարդ ընկալան (զաւետիս Աւետարանին) և որպիսի արամբ »:

Արդ, իրն յինքեան այսպէս լինելով՝ պյուսհետև չէ ինչ դժուարին ասել, թէ ինչպէս Ագաթանգեղոս անունն՝ ընտելական մի բան դարձաւ տոհմային մատենագրութեան պատմութեան մէջ: Հայերէն Ագաթանգեղոսի թարգմանիչը կամ խմբագրողն յունարէն բնագրի տիտղոսի սխալ հասկացողութեամբը՝ համարձակեցաւ առաջին անգամ ներմուծանել զԱգաթանգեղոս յատուկ անունն իւր նորակերտ և ինքնագիր Յառաջաբանին մէջ եւ, հանդերձ նորա ազգաբնակութեան և այլ պարագաներով. զոր ոչ թէ նորա մասնաւոր Յառաջաբանէն կամ մի այլ յիշատակարանէ առաւ, այլ իւր թարգմանելի բնագրի լոկ յունարէն գրութենէն և Ագաթանգեղայ 89 իջէն մակաբերեց: Աստի սպրդեցաւ ապա Ագաթանգեղոս անունը նաև երկրորդ թարգմանչաց, այսինքն է, Մ. Խորենացւոյ և Ղ. Փարպեցւոյ պատմագրութեանց մէջ, որոնց, յետոյ ուրեմն, ծառայական նմանողութեամբ հետևեցան բոլոր յետագայ պատմագիրք:

Պէտք չէ բնաւ զարմանալ այս եղելութեանս վերայ, եթէ հայերէն Ագաթանգեղայ թարգմանութիւնը՝ Մեսրոպեան նշանագրոց գիւտէն տարիներով յետոյ եղած համարինք. այսինքն է 420–430. յորում ժամանակի Մովսէս դեռ աղածրի մանուկ էր, իսկ Ղազար տակաւին ծնած[1] չէր. այլ տարիներ անցնելէն վերջ հաւաքուեցան և առաքեցան 'ի տար աշխարհս յուսումն յոյն և ասորի դպրութեան: Եւ երբ նոքա իմաստութեամբ առլցեալ ժիր մեղուաց նման իւրեանց

1 Ղազարայ ծննդեան թուականը՝ մերձաւորապէս անկանի 440–443 ամաց մէջ: Գր. Խալաթեանց՝ յամին 1883 'ի Մոսկուա հրատարակուած գովելի երկասիրութեանը մէջ, որուն վերնագիրն է « Ղազար Փարպեցի և գործք իւր ». արդէն ապացուցել է զայս;

*հայրենիքը վերադարձան, իրենց վարդապետներն վախճանած գըտան: Այդ ժամանակին, մէկ կողմանէ Ագաթանգեղայ յոյն բնագիրը աչաց առջև չունենալուն պատճառաւ, միւս կողմէն այլ բազմահոլով ամաց շրջանք և պէսպէս հակառակութիւնք վրայ գալով՝ թոյլ չտուին վերստին աչքէ անցնել զայն, ինչպէս առաջին թարգմանիչք աչքէ անցուցին Ս. Գրոց թարգմանութիւնն և ճշդեցին: Այլ հայերէն թարգմանութիւնն ինչ վիճակի մէջ որ գտան, ըստ այնմ ևս գործածեցին, համարելով զայն ամբողջապէս գործ քարտուղարին Տրդատայ՝ յեղեալ ի հայ, մինչդեռ իրօք 'ի զանազան և յանանուն հեղինակութիւններէ բաղկացած էր այն:*

*Երկու դժուարութիւններ կը թուին՝ ընդդէմ զինիլ ցայս վայր պաշտպանեալ կարծեացս, Ա. «Ագաթանգեղայ գրոց լատիներէն և յունարէն օրինակներն՝ զորս ներածութեանս մէջ դիտեցի, և Մետափրաստէսի խմբագրութիւնը: Բ. Զենոբ Գլակացին, որ, ինչպէս համարին ոմանք, յառաջ է ոչ միայն քան զժամանակ հայերէն թարգմանութեան Ագաթանգեղայ, այլ նոյն իսկ յունարէն բնագրի կազմութեան: Արդ յերեսին գրութիւնս յայսոսիկ կը յիշուի Ագաթանգեղոս իբրև յատուկ անուն հեղինակի գրոցս:*

*Առաջնոյն լուծումը շատ հեշտ է. որովհետև ներկայ յունարէնն և լատիներէնը՝ հայերէնի վրայէն եղած փոփոխ թարգմանութիւններ են, դարերէ վերջ կատարուած, յորոց համառօտեց ապա Մետափրաստէս իւր խմբագրութիւնն. այս՝ յետոյ պիտի ապացուցանեմ: Ուստի մի և նոյն վրիպակն ինչպէս հայ թարգմանչի ձեռքով կարաց մուտ գտնել հայերէն թարգմանութեան մէջ, այսպէս ևս հեշտեաւ և բնականապէս մտաւ երկրորդ անգամ հայերէն Ագաթանգեղոսէն՝ յունարէն և լատիներէն թարգմանութեանց մէջ, մանաւանդ եթէ յունարէն օրինակի թարգմանիչն ստուգիւ հայ եղած համարինք: Երկրորդ, այնպիսի պարագաներով Ագաթանգեղոս անունը ապրած է անդ, որ հակառակ փաստ մի չլինելէն զատ՝ իմ կարծեացս նոր հաստատութիւն մի ևս կու տայ: Նախ և առաջ դիտելու է, որ այդ գրոց ճակտին վրայ առանձինն գրուած է* 'Αγαθάγγελος, *և ապա անդէն կը յարի* Πρόλογος 'Αγαθαγγέλου, ἐν οἷς καὶ τὸ μαρτύριον τοῦ ἁγίου Γρηγορίου. *Այս վերնագիրս, եթէ ճիշդ օրինակուած է՝ հայերէնի վրայէն եղած յունարէն թարգմանութենէն, երկու բան կը պարունակէ Ա.* Πρόλογος 'Αγαθαγγέλου, *որ է նոյն ինքն Ագաթանգեղայ գրոց առաջին մասի Տիտղոսը* « **Պատմութիւն Ագաթանգեղայ** »: *Արդ յոյն թարգմանիչը կամ զարմանալով հայերէնի այդ անսովոր տիտղոսին վրայ և կամ Յառաջաբանն ևս ուզելով մէջ բերել, փոխանակ* 'Ιστορία *բառին* Πρόλογος *բառը դրած է: Բ:* 'Αγαθάγγελος, ἐν οἷς καὶ τὸ μαρτύριον τοῦ ἁγίου Γρηγορίου *է Տիտղոս հայերէնի երկրորդ մասին, որ է այսպէս,* « **Ագաթանգեղոս, Դարձ փրկութեան աշխարհիս Հայաստան ընդ ձեռն առն սրբոյ Նահատակի** »: *Սակայն առաջին բառը* 'Αγαθάγγελος *միայն կը համաձայնի հայերէնի «Ագաթանգեղոսին». իսկ մնացեալին մէջ՝ հայերէն և յունարէն օրինակաց տիտղոսները կը կը տարբերին յիրարմէ: Այս*

*բարեպատեհ տարաձայնութիւնքս առ արտաքս՝ ներքին իմաստիւք կը համաձայնին, իմ կարծիքը վերստին հաստատելու: Եւ յիրաւի, ինչ կը նշանակէ յոյն օրինակին յետ գրելոյ 'ի յուղղական հոլով* Ἀγαθάγγελος *անդէն յարելն* ἐν οἷς Ἡ Ν——, *և ստորակիտիւ անցնիլը միւս նախադասութեամբ* καὶ τὸ *և այլն: Այսպէս նաև Հայերէնը՝ յետ գրելոյ յուղղականն «Ագաթանգեղոս», անմիջապէս կը յարէ. «Դարձ փրկութեան» և այլն: Արդ ինչպէս յոյն թարգմանութեան ἐν οἷς բառերն եթէ* Ἀγαθάγγελος *բառէն անջատ նկատենք և* Ἀγαθάγγελος *յատուկ անունն յուղղական կարդանք՝ նոցա մուտքը կամ իմաստն անհասկանալի կը մնայ, այսպէս և են հայերէն թարգմանութեան «Դարձ փրկութեան» բառերն, եթէ չվերաբերենք «Ագաթանգեղոսի», և եթէ զԱգաթանգեղոս սեռական հոլովով չկարդանք: Ուրեմն պէտք է եզրակացնել, թէ* ἐν οἷς *բառերը զՀայաստան կը յարաբերեն կամ զՀայս. և* Ἀγαθάγγελος *բարի աւետիս կամ զաւետիս Աւետարանին, որոնք իմիասին գալով կու տան մեզ այս հասկանալի վերնագիրս. «***Բարի** *աւետիս (կամ աւետիս Աւետարանին) Հայաստան աշխարհի, և նահատակութիւն սրբոյն Գրիգորի»: Արդ յունարէն Ագաթանգեղոսի Տիտղոսին, ըստ իմաստից, եղած այս թարգմանութենէս՝ բացայայտ կերպով կը տեսնուի հայերէնի տիտղոսին հետևեալ անյարմարութիւնը. «***Ագաթանգեղոս՝ Բարւոյ քրիստոնէութեան Հայաստան աշխարհին** *ընդ ձեռն առն սրբոյ Նահատակի», որ և ուղղագրելի է այսպէս. «Բարի աւետիս (Աւետարանին) Հայաստան աշխարհի, և այլն:*

*Իսկ գալով Զենոբայ հեղինակութեանը, պէտք է ասել, թէ ստուգիւ նորա երկասիրութեան մէջ երկիցս կը յիշուի յանուանէ Ագաթանգեղոս. նախ յէջ 19, ըստ վենետկեան հրատարակութեան, կ'ըսուի առ Աւորի եպիսկոպոսն գրուած պատճենի մէջ. «Եւ դուք մի աղարտէք զսակաւ պատմութիւնս, կամ թէ* **Ագաթանգեղոս** *զայդ ոչ յիշէ, զի ես յառաջագոյն գրեցի քան զնա»: Երկրորդ յէջ 22, խօսելով Ս. Յակոբայ Մծբնացւոյ քեռորդւոյն Գթաց թագաւորին վրայ՝ կ'ըսէ. «Զի սա էր որ եկն 'ի պատերազմ 'ի վրայ Դիոկղետիանոսի արքային Յունաց, որպէս* **Ագաթանգեղոս** *պատմէ զայսմանէ»: Աստ յայտնի հակասութիւն կայ սոյն երկու տեղեաց մէջ, և փոխադարձաբար մէկ զմէկ կ'եղծանեն: Յիրաւի, Ագաթանգեղոսէն յառաջ գրող Զենոբը (եթէ իցէ Զենոբ), ինչպէս կարէր իւր գրուածքի մէջ՝ իւր յետնորդ Ագաթանգեղոսի վկայութիւնը մէջ բերել. այս բանս անհասկանալի է: Բ. Դիտելու է, որ առ Ագաթանգեղ չիք յանուանէ յիշատակութիւն ոչ Դիոկղետիանոսի ոչ Հռչէի: Ուրեմն պէտք է, որ այս երկու տեղերէն մին անհարազատ լինի. և իրօք ես չեմ երկբայիր այս առանձնաշնորհութիւնս երկրորդին ընծայել և ասել, թէ այդ տեղին ուղղակի Մ. Խորենացիէն առնուած է, որ դնէ զՀռչէ կամ զՀրաչէ առ Դիոկղետիանոսիւ: Սորա անհարազատութեան մի այլ նշան է ա՛յն, զի միջանկեալ տող մին է և բնաւ կապ չունի ոչ նախընթաց և ոչ յաջորդ բանից հետ: Երրորդ, պատմականօրէն իսկ մտածելով՝ Գթաց թագաւորին Հռչէի՝ Հռովմայ վրայ*

արշաւելու վէպը տոհմային և այլ ընդ այլոյ ւսանդութենէ մի առ֊նուած և օտար 'ի ճշմարտութենէ համարելի է, և ոչ երբեք առ֊թագաւորութեամբ Դիոկղետիանու կատարուած իր. զի ոչ ոք 'ի ժա֊մանակագրաց Հոռոմոց յիշէ զայն: Յով. Մալալա և Սինկելլոս կը յիշեն արշաւանք ինչ Սկիւթացւոց և Գթաց 'ի ժամանակս Պռոբոսի, բայց ոչ եթէ 'ի վերայ Հռովմայ այլ 'ի սահմանս հռովմէական պե֊տութեան, անցեալ ընդ Իստրիոս, բայց սաստիկ կոտորածիւ ցիր և ցան կացուցեալ 'ի Հռովմայեցւոց անտի:

Սակայն յանուն Զենոբայ մէջ բերուած առաջին տեղւոյն վրայ իսկ տարակուսելու բաւաւոր պատճառներ կան, և ես չեմ ուզեր առանց անոր կեղծուպատիր դիմակը վար առնելու՝ ներմուծանել իմ երկասիրութեան մէջ: Եւ յիրաւի, Զենոբ իւր պատմութիւնը գրած ժամանակ առ Ասորիս, կամ այն է, թէ Աչալթանգեղոս (որ իբրև գրիչ կըյիշուի) գրած էր իւր գիրքը և կամ ոչ. արդ եթէ գրած չէր (ինչպէս նա կը վկայէ), ուրեմն Զենոբայ այս խօսքերը, թէ « Ագաթանգեղոս զայդ ոչ յիշէ » ամենևին նշանակութիւն չունին. արդ բան մի չի գրողի վրայ ոչ Զենոբ և ոչ իսկ Ասորի եպիսկոպոսերն՝ առ որն կ'ուղ֊ղէր նա այդ թուղթը, կարող էին տարակուսիլ. մանաւանդ զի նոքա ազգաւ և աշխարհաւ օտար գոլով և ոչ իսկ Ագաթանգեղոսի ո՞վ ըլլալը գիտէին: Ուստի Զենոբէն մէջ բերուած դժուարութեան հեր֊քումն՝ ընդարձակագոյն ապացուցութեան, կարծեմ, թէ պէտք չունի. իսկ Ագաթանգեղայ մասին եղած գաղտնիքն և իմ կարծեացս հաս֊տատութիւնը՝ դեռ աւելի պիտի պարզուի նորա գրոց Յառաջաբանի քննութեամբը:

## ԳԼՈՒԽ Բ.

**Ագաթանգեղայ գրոց Յառաջաբանն և անոր նորանշան հանգա֊մանքն. — Անհարազատութիւն Յառաջաբանին և նորա հնութեան բնադրոշմը. — Նոր ապացոյց անգոյութեան ենթադրելի Ագաթան֊գեղոսի:**

Առանձին գործ է տարրաբանից, վերլուծել զմարմինս՝ նոցա նախ֊նական տարերքն իմանալու համար. հոգեխօսին՝ վերլուծել զծանօ֊թութիւնս մտաց՝ առ 'ի հասու լինել կարողութեանց հոգւոյն. հնազի֊տին՝ որոնել զնիւթ, զերանգ և զտիպս յիշատակարանաց. իսկ ուրեմն պատմաբանին՝ քննել զանցս և զարարուածս, մարդկութեան անցեալը ճիշդ ներկայացնելու համար. և քննադատին՝ զամենայն միանգամայն: Ուստի ես 'ի մուտս քննադատութեան գրոցն Ագա֊թանգեղայ՝ ստիպուած եմ նոյնպէս վարիլ որովհետև այս գործս յինքեան կը բովանդակէ ոչ միայն նշմարս և նշխարս հնոյն Հայաս֊տանի, այլ և զմեծամեծ անցս դարապատում ժամանակի և վաղըն֊ջական հանգամանաց ազգիս հայկազեան, զորս կերպարանափոխ արարին մերթ առանձնականաց ձեռքեր, և մերթ այլ կրօնական,

*քաղաքական և հասարակային ազդեցութիւնք: Հարկ է անաչառ քննել զայն Ցառաջաբանէն սկսեալ ցվերջաբանը, նորա նախնական տարերքը կամ աղբիւրքն յայտնելու աղագաւ, 'ի մէջ այնքան նկամուտ տարերաց: Առ այս կը ցանկայի, որ նաև իմ պատուարժան ընթերցողներս առանց լռեսի կեղտ անուամ՝ պաշտօնը միայն հարկանէին ազնուախոհ մտօք, հետևելով ինձ քայլ առ քայլ յամենայն 'ի դիտողութիւնս, մանաւանդ թէ, աւելի անաչառութեամբ և աւագ աչօք քան զիմս դիտէին թէ իմ և թէ քննադատութեանս ենթարկուած իրաց վիճակն, որոնց կ'ուզեմ աւելի խօսել տալ՝ քան անձամբ խօսում և ճոխաբան երևել. որպէս զի մի գուցէ իրաց բնական վիճակէն թիւրած և անհասկանալի այլոց լինիցիմ: Խոնարհաբար կը յանձնեմ իմ ընթերցողացս և զայս յետին փափաք սրտիս, որ վաղահաս վճիռներ տալէն աւելի՝ հետևէին ընթացիցս մինչ 'ի վախճան քննադատութեանս. և ուր ես կը դնեմ կնիք գործոյս՝ անտի սկիզբն առնէր իւրաքանչիւր քննասէր իւր դատավճռոյն. և հաճէր ծանրախոհ վարման հետ՝ զուգել նաև ներողամտութիւն առ իմս տկարութիւն. որ ուրիշ նպատակ չունիմ՝ բաց 'ի խուզարկութենէ ճշմարտութեան և ծառայելոյ ազգիս, զոր կը սիրեմ ոգւով չափ:*

*Ագաթանգեղոսեան գրոց յունարէն թարգմանութեան Ցառաջաբանը շատ պարզ է. նորա ակզբնատրութենէն և նաւարկութեան այլաբանական ձևէն իսկ յայտնապէս կը տեսնուի, թէ ստուգիւ հայերէնի Ցառաջաբանութեան համառօտութիւնն է, կամ նորա մի մասն անեթ: Ոչ միայն նոր տեղեկութիւններ կամ պարագայաչյայտներ, այլ մանաւանդ, որ աւելի զարմանալին է, Ագաթանգեղոսի, Տրդատայ և Հռիփսիմեանց մասին եղած բոլոր տեղեկութիւնքը կը պակսին: Այս՝ կարևոր և հերաքրքրական կէտ մի է, և մեծ ուշադրութեան արժանի՝ հայերէնի Ցառաջաբանին քննութեան համար:*

*Ցիրաւի, այս վերջինս, այսինքն է, Ագաթանգեղոսեան գրոց հայերէն Ցառաջաբանը, թէպէտև լեզուաբանական հայեացքով՝ հայկաբանից համար գանձ մն է մեծագին, սակայն պատմաբանից և քննասիրաց տեսութեամբ՝ ծով մն ևսեփ մրրկածուփ, մեծ և ընդարձակ, յորում մերթ սոսկալիթխար կէտերու նման խոշոր հակասութիւնք ասացուածոց, կրկնաբանութիւնք, արևելեան ճապաղ նկարագրութիւնք, և մերթ գոց խեցեմորթներու պէս ժժմակաւոր և խիտ առ խիտ օրինակներ և պէսպէս դիպաց իրարու անյարիր ակնարկութիւնք կը վխտան. այս ամենայն անյարմար կ'երևին ոչ միայն այն գրոց ծրագիր պատմութեան՝ ('ի բաց հանելով զընդարձակ վարդապետութիւնն) այլ և պատմագրին, որ Հռովմայեցի անուանուած է: Արդարև, ինչ կը նշանակէ ասելն յէջ 19. «Արդ հրաման հասեալ առ իս ումն Ագաթանգեղոս* որ 'ի քաղաքէ 'ի մեծն Հռովմայ, *և վարժեալ հայրենի արուեստիւ,* հռովմայերէն և յունարէն առաւել զարգացեալն *». իսկ յէջ 24. «*ընթերցեալ զԹորգոմեայ ազգին զՀայաստան աշխարհին *» և այլն: Զինչ քան զայս հակասական, լինել ազգաւ և հայրենեօք Հռովմայ քաղաքացի և միանգամայն Թորգոմացի և*

Հայ. դիտելով, որ « ազգի և աշխարհի » վրայ դրուած դիմորոշ յօդը « ոչ եթէ «ս» կը նշանակէ, այլ ն. և այս բանս անտի իսկ քաջայայտ է, որովհետև այդ խօսքերէն յառաջ չկը բնաւ յիշատակութիւն Թորգոմայ տանը կամ Հայաստանի, և թէ այն ժամանակ կարելի էր այդ դիմորոշիւ հասկանալ «ս» ցուցականը՝ եթէ նա զէթ իւր երկասիրութեան ճակատը դրոշմած լինէր Պատմութիւն Թորգոմայ ազգին կամ Հայաստան աշխարհի: Երկրորդ յէջ 20, զՀայաստան իրեն հայրենիք կ'անուանէ, որով ամենայն տարակոյս կը վերնայ:

Սակայն դեռ աւելի մեծ են քան զժայռս Սկիւղայ և Քարիւբդայ հետևեալ բացատրութիւնները, յորում կ'ալեկոծի գրիչն Ցառաջաբանիս: Արդ նա կը ծանուցանէ մեզ յէջ 22. «Ոչ եթէ 'ի հին համբաւոյ տեղեկացեալ մատենագրել, այլ մեզէն իսկ ականատես և առընթերակայ գործոցն ». իսկ յէջ 20, թէ « Արդ հասեալ առ իս հրաման 'ի մեծ արքայէն Տրդատայ, կոչել 'ի յձեռնարկութենէ նշանագիտաց[1] ժամանակագրացն պատմել նախ զհայրենեաց գործս »: Կարծեմ թէ առանց երկիւղի վրիպանաց կարող ենք յայսցանէ եզրակացնել, թէ ինչպէս Հռովմայ քաղաքացին և իւր հայրենի արուեստիւ, այսինքն է, հռովմայերէն լեզուով գրողը չէր կարող լինել միանգամայն յազգէ Թորգոմացի կամ հայ, այսպէս և նորա Ցառաջաբանը, եթէ գոյր, պէտք չէ շփոթել սորա եկամուտ բանից հետ: Ցիրաւի, չկայ յոյն կամ հռովմայեցի մեզ ծանօթ պատմագիր մի, որ այնպիսի ծրագիր պատմութեան փոքրիկ մարմնոյն վրայ՝ սոյնօրինակ անհեթեթ գլուխ մի յօդած լինի, զոր չգիտեմ թէ հրէ՞շ անուանելու է, թէ ընդհակառակն, նորահրաշ դէպքի մի կամ ժամանակի ծնունդ. և թէ արևելեան՝ պարսիկ կամ հայ ճաշակը միայն կարէր գրկել և գգուել զայն: Զայս իսկ դիտելու ենք, զի աստ կարի կը դրուատի Տրդատ, իսկ յընթացս պատմութեան, նախատակոծ բացատրութիւնք ևս կը լինին նմա:

Արդ, յետ ուշի ուշով քննելոյ այդ եռապատում եռագլխեան Ցառաջաբանը, պէտք է ըսել, թէ կամ է ամբողջապէս գործ թարգմանչի և խմբագրողի գրոցս. և կամ բաղկացեալ է յերից համառօտագիծ Ցառաջաբանութեանց, յորոց առաջինը, այսինքն՝ է, 18 էջէն « Արդ ջան յանծին կալեալ » պարբերութենէն սկսեալ, մինչև ցէջն 23 « աստուածատուր շնորհօքն տուեալովք » բառերով վերջացած պարբերութիւնը, կը վերաբերի Ագաթանգեղոսեան պատմութեան Ա. գրքին: Երկրորդը, որ կը սկսի յէջ 24, «Ընթերցեալ զԹորգոմեայ ազգիս », և կ'աւարտի յէջ 26, «Նոցա օթևանս պատրաստեաց », կը վերաբերի Բ. գրքին կամ Հայաստանի դարձի պատմութեան, զոր ընդարձակ վարդապետութեան ներմուծողը ստիպուած է առաջնոյն հետ միացնել: Իսկ մնացածն՝ սեփական բնաբրոշմն մի

1. Նշանագիտ ձեռնարկութիւն բառերն այլ ինչ կը նշանակեն, ըստ իս, քան հռովմայեցի նօտարաց համառօտագրութիւը. սակայն, եթէ այնպէս իսկ առնունք, ժամանակագրաց բառովը կը ցուցնէ հեղինակս, թէ յայլոց առնելով կը պատմէ զգրեալսն. որով մնայ միշտ հակասական ընդ առաջին բացատրութեան:

չունի, այլ Ազաթանգեղայ գրոց խմբագրութեան, թարգմանութեան և այլ ժամանակակից պարագաներ կը յայտնէ: Առաջինը՝ **Նախա_բանակին** իմն համարելի է թերևս ազաթանգեղոսեան յոյն բնա_ գրին, բայց ոչ երբէք Յոյն կամ Հռովմայեցի Ազաթանգեղոսի մի, այլ անանուն հայկազն հեղինակին, որոյ ճշմարտութիւնը յետոյ ակներև պիտի դնեմ: Իսկ միւսներն առհասարակ՝ գրոցս խմբագրութեան և թարգմանութեան ժամանակ յօրինուած և ներմուծուած բաներ են, որոնք ազաթանգեղոսեան գրքին բովանդակութենէն աւելի՝ նորա գիւտին, թարգմանութեան և այլ հանգամանքներ կը պարունակեն: Եւ ստուգիւ, այսպիսի մի եղելութեան յայտնի ապացոյցը կը տեսնենք Գրիգորի կարծեցեալ ընդարձակ **Վարդապետութեան** 378, 400, 402, 416, 417 և 418, էջերում, որոնց անծանօթ նեղինակն՝ թէ Հռիփսիմեանց և թէ իւր ժամանակակից Հայոց մասին նման հան_ գամանքներ կը յայտնէ, զորս յետոյ պիտի տեսնենք:

Յիրաւի, այս բաներս դեռ աւելի հաստատուն և լացայտ կերպով կարելի է ապացուցանել, հետևեալ բացատրութեանց հակադրու_ թեամբը: Բնագրի կարծեցեալ յառաջաբանին հեղինակը կ'ըսէ, թէ ինքը հրամանաւ Թագաւորին և ոչ թէ յինքնէ շարժեցաւ գրել իւր երկասիրութիւնն. իսկ յէջ I, պարբերութեան հեղինակն, ընդհա_ կառակն կը ծանուցանէ, թէ « Ըղձիւք ըղձացեալ » և ինքնայօժար ձեռն արկ իւր գործին, հանգոյն ծովային վաճառականաց, որք շահավաճառի համար բիւր նեղութիւն և վտանգ ալեկոծութեան սիրով յանձն կ'առնուն, իրենց ազգատոհմին համար, զանոնք բունա_ տր հարկահանաց ձեռքէն ազատելու աղագաւ: Յէջ 13 կ'ըսուի. « Եւ մեր ջան յանձին կալեալ... **առեալ ձմեռն երկնեալ**, և տուեալ զգեղեցկադիր յարմարումն պատմութեան...: Վասն զի 'ի **խնդրել եկեալ** և **խառնելոյ** 'ի մէջ բերեալ զկարգ պատմութեան ըստ ժամա_ նակի իրացն եղելոց »: Արդ այս բացատրութիւնքս, այսինքն է, զվը_ տանգ մահու յանձն առնուլն և 'ի խնդիր ելանելն պատմութեան՝ ժամանակակից Ազաթանգեղոսի համար անհասկանալի են և առանց նշանակութեան. որովհետև նա բոլոր իւր պատմագրութեան դիպաց ականատես և ականջալուր եղած կը համարի. ուստի ոչ մահուան վտանգ և ոչ այլ խուզիւք փնտռելու հարկ կայր, թող թէ 'ի « Վա_ ճառ հանելու » պէտք առ ունկնդիրս իւր, որոնք քաջ գիտակ էին այն իրաց: Յէջս 11, 12 և այլուր յոգնակի դիմօք կը խօսի, « **ակնարկեմք, նշանակեմք, մեք, գրեր, 'ի մեռն, առ մեզ** ». մինչդեռ յէջ 19 և 20 եզակի դիմօք կը խօսուի յասելն. « Հրաման հասեալ **առ ի**, հասեալ **առ ի** հրամանի »: Յէջ 26 կ'ըսուի. « **Ջերմեալ 'ի կիզի պա_ ղատուն և յաշխարհն Կեսարիոյ, ելեալ** » և այլն: Արդ այս և այսպիսի դեռ ուրիշ բացատրութիւնք, ուրիշ բան չեն ընծայեր մեզ՝ բայց եթէ զթարգմանիչս և զխմբագրողս Ազաթանգեղայ գրոց, որոնք անմի_ ջապէս զկնի գիւտի գրոց՝ նաւարկեցին յաշխարհս հեռաբնակս. այսինքն է, յԱղեքսանդրիա, յԵփեսիա, յԱթէնս և 'ի Բիւզանդիոն, ոչ միայն ուսանելու համար, այլ նաև յունարէն բնագիրներ գտնելու և զանոնք 'ի հայ բարբառ թարգմանելու, ըստ ասելոյ Կորեան. յո_

*լոց մին եղաւ անշուշտ և Ագաթանգեղայ խմբագրութեան այլ և այլ մասունքը 'ի մի հաւաքողն, որոնք՝ խկղբան անդ թերևս առանձին ունէին իրենց գոյութիւնը:*

*Իսկ յ*13 *իջէն, երկրորդ պարբերութեամբ սկսող մասն, որուն սկիզբն է « Իսկ հոգևորացն առաքինութիւն » մինչև ցէջն* 18, *կը ներկայացնէ մեզ ուղղակի սրբոց Հռիփսիմեանց վկայաբանութեան Ցառաջաբանը, կամ լաւ ևս ըսելով, յաւուրս Ս. Սահակայ Պարթևի նոցա Նշխարաց գիւտին և փոխադրութեան առթիւ եղած ներբողեն_ նոյ մի մասն, զոր գրեց եռանդուն ոմն յառաջին թարգմանչաց. որուն նմանեցան ապա Մ. Խորենացի և Կոմիտաս Կաթողիկոս: Ցիրավի, այս բանս անտի խսկ յայտ է, զի համառօտ Վկայաբանու_ թեան հեղինակն, եթէ յոյն Ագաթանգեղոս եղած համարիցի ոք, և եթէ հայազգի ոմն, չէր կարող առանց անտեղութեան այսպիսի մի ճոխ ներբողեան ընել: Իսկ եթէ ընելու ևս լինէր, հարկ էր նախ ծա_ նուցանել յանուանէ իւր ներբողենի նիւթը կազմող գէթ գլխաւոր անձը, որպէս զի յետագայք կարող լինէին հասկնալ, թէ ո՛յք են զորս դրուատէ նա: Իսկ, ընդհակառակն, գրոցս Ցառաջաբանի մէջ չկայ յանուանէ յիշատակութիւն Հռիփսիմեանց, ոչ յառաջ և ոչ յետ ներբողեան բանիցն: Ուրեմն, պէտք է եզրակացնել, թէ ա՛յլ ոմն եղած է հեղինակ այս Ցառաջաբանիս, և թէ այդ Ցառաջաբանը բոլորովին ուրիշ մի ա՛յլ առթիւ կազմակերպուած է, և ոչ թէ Հռի_ փսիմեանց առանձին վկայաբանութեան և կամ ագաթանգեղոսեան յունարէն բնագրի գրութեան առթիւ:*

*Երկրորդ, բաց 'ի Ղ. Փարպեցւոյ և 'ի Մ. Խորենացւոյ,* **Ս. Սահա_ կայ և Մեսրովբայ վարդապետաց** *անծանօթ բայց ոսկեգրիչ հեղինակն խսկ ագաթանգեղոսեան գրոց Ցառաջաբանի վերոյիշեալ կրկին կէտերն Թարգմանչաց ուսումնական ճանապարհորդութեան և Հռիփսիմեանց Նշխարաց փոխադրութեան մասին հասկացած և բարգաւաճած*[1] *է:*

1. Հայկ. Սոփերաց Բ. հտ. յէջս 14, 15, 17, 18, 37 և 38, *Նշանագրոց գիւտն յիշելէն վերջ՝ կը խօսի թարգմանչաց վերայ, յասելն, թէ Ս. Սահակ և Մեսրովբ «Առաքեցին զնոսա յազգս և 'ի լեզուս օտար գաւառաց ուսանել զիմաստութիւն: Ամենեքեան գումարէին, հանդերձէին, յուղի անկա_ նէին, երկայնածիգ ճանապարհորդէին, 'ի ծովս ընթանային, 'ի թևս թեթևս թռչէին, յերիվարս փայտակերտս ելանէին, լայնալանջս ըմբռնէին, զխարազանս օդաստարածս յածէին, 'ի սասանուտ դաշտս անհաստատս արշաւէին, զմահ քան զկեանս միշտ ընտրէին, անհուսոյթ նպատակի ուշ ունէին, 'ի վաստակս և 'ի ջանս ժրանային, կրթելով վաստակելով պատրաստելով զանձինս 'ի յերկս օգտակարս, և 'ի գործս շահաւէտս, ոմանք զտառից գծագրութիւնս շահաւորեալ, ոմանք զիմաստս հաւաքեալ: Եւ այսպէս ջանային, արիանային, խիզա_ խէին, պատրաստելով, կուտելով բեռինս դժուարակիրս, զգրեանց բազմութիւնս և զուսումն իմաստութեան, բազմաց բաղձալիս: Եւ գային հասանէին մեծաւ ուրախութեամբ յաշխարհս Հայոց, վաճառա_ կանք հոգևորք, փարթամացուցիչքն եկեղեցւոյ, խրախացուցիչքն մանկանց Սիոնի, սփրացուցիչքն բազմախումբ ժողովրդոց, զարդա_ րիչքն հռչակահանդէս տօնախմբութեանց, ունելով ընդ ինքեանս բե_ ռինս շահաւէտս և արդիւնարարս, մարգարիտս գեղեցիկս և ականս պատուականս:*

*Այսպիսիք էին վարք երանելեացն, սրբոյն Սահակայ և մեծին Մես_*

Արդ, Խորենացին և Ղազար [1] նմանել նմանած են ագաթանգեղոսեան գրոց Յառաջաբանին, բայց մեզի ծանօթ երկասիրութեամբք իւրեանց ոչ ոք 'ի սոցանէ կարէ լինել հեղինակ այնորիկ: Յառաջաբանիս հեղինակը՝ թէ տիօք և թէ հեղինակութեամբ երիցագոյն ոմն է, որուն հզօրագոյն ազդեցութիւնը կրեցին մեծանուն պատմագիրքս անգամ, և որ գրեց Ս. Սահակայ և Մեսրովբայ մի այլ ընդարձակագոյն պատմութիւն, զոր ծանուցանէ Սոփերքիս վերոգրեալ տողերուն բանաքաղն, ասելով յէջ 37, թէ « Առաւել ևս քան զայն զոր գրեալ է'ի Կատարեալ Պատմութեան նոցա », այսինքն է, Սահակայ և Մեսրովբայ:

Իսկ, թէ ո՞վ արդեօք գրեց այդ կատարեալ պատմութիւնը, Կորի՞ւն թէ Եզնիկ, Խոսրո՞վ թէ Մամբրէ. չկարեմ հաստատել: Թովմաս Արծրունի պատմական երկասիրութիւն մի կ'ընծայէ վերջնոյս. բայց չի ծանուցաներ զայն յանուանէ: Անյայտացած գրչագրաց ցուցակի մի մէջ՝ կը հանդիպինք, Պատմութիւն Մաշտոցի Վարդապետի վերնագրով երկասիրութեան մի. բայց չէ յայտնի, թէ 'ի Ս. Սահակ և 'ի Մեսրո՞վբ, եթէ յայլ ինչ: Ստեփանոս Ռօշքեան՝ իւր բառարանին մէջ հետևեալ պատմական հատուածներս մէջ կը բերէ. « Ըղձիցն իւրեանց փափաքանաց հասին սուրբքն. – ընդ այնքան ժամանակս ոչ փտեցան մարմինք սրբոցն », ոտոնք աւելի սրբոց Հռիփսիմեանց կը պատշաճին, և են նման բանիցն Ագաթանգեղայ, ու յէջն 170:

բովբայ ..... Սոքա ամոլք հաւատոյ, սիւնք եկեղեցւոյ, պարիսպք պահպանութեան հաւատացեալ ժողովրդոց, առաջնորդելով 'ի շաւիղս արդարութեան: Սոքա տունկք անմահութեան՝ արմատացեալ 'ի դէպ ժամանակի զիմանալի պտուղն ոգեկեցոյց, որոյ կերակուրն մնայ 'ի կեանսն յաւիտենից: Սոքա պսակք եկեղեցւոյ և պարծանք նազելիք որդւոց մօր Սիովնի բազում հարս 'ի փառս ածել, համարձակապէս առ Աստուած, ասելով. Ահաւասիկ ես և մանկունք իմ՝ զոր ետ ինձ Տէր: Սոքա աղբիւրք եդեմաբուղք 'ի շնորհաց Տեառն յառաջեալք՝ արբուցանելով զբանական երկիր ծարաւուտ կենդանական վտակօք, որոյ միանգամ արբեալն՝ երկրորդին ոչ կարօտի: Սոքա դայեակք հոգևորք գորովագութ սիրով ստնդիայ Սիոնի, լոյս ջամբելով կերակրելոցն, որք ոչ միայն լուսաւորեալք աշակերտելոցն անձինք, այլ և լուսատուքյոլովից խնդրողաց: Սոքա օրհորդք երկնից արքային անթիւ կուսանաց անձինս առթելով թագաւորին անմահի, առատաբուխ վարդապետութեամբն զորս յորդագոյն հոսէին իբրև զԴկլաթ և զԱրածանի: Սոքա գտակք գրոյ իմաստից ալփապետացն սուղոբայից երկարոգի տառիցն վեհից, որով զանտարրն տարրացուցին և զաննիւթն 'ի նիւթ յեռեցին և զանմարմինն՝ ընդ մարմնոյ կապեցին ».

Արդ այս տողերուս հեղինակ եթէ Սկևռացին համարինք և եթէ ոմն 'ի թարգմանչաց, Ագաթանգեղայ գրոց յառաջաբանին և սրբոց Հռիփսիմեանց ներբողեան ճառի մի ծառայական հետևողութեամբը գրած է: Այս բանս վերջընթեր նախադասութենէն իսկ կը տեսնուի, ուր «Սոքա են օրհորդք երկնից արքային և այլն » խօսքերը, որք նոցա համար ըսուած են՝ կը պատշաճեցնէ Սահակայ և Մեսրովբայ:

1. Զգիտեմ թէ Գր. Խալաթեանն ի՞նչ հիման վերայ հաստատուած կ'ըսէ (Ղ. Փարպեցի և գործք նորա, Մոսկուա, 1883, էջ 116) թէ. « Զորմէ (Յառաջաբ. Ագաթ.) ոչինչ ակնարկէ Ղազար »: Մինչդեռ նա Գ և Դ գլ. էջ 9 և 10, և Ծ գլ. էջ 15, 17 և 18 նմանաձայն հատուածներ ևս մէջ կը բերէ Յառաջաբանէ անտի:

Արդ, ագաթանգեղոսեան Ցառաջաբանին ցայս վայր եղած քննութենէն իսկ՝ ոչ մի դրական փաստ յառաջ չի գար 'ի նպաստ Ագաթանգեղոսի անձնական գոյութեան և Տրդատայ քարտուղարութեան. այլ ընթացք իրաց գլխովին այլազգ են քան զոր ցայսօր համարեալ կարծէաք: Եւ ստուգիւ, այս բանս՝ յետագայ մասանց քննութեան մէջ դեռ աւելի ակներև պիտի տեսնուի, զորս կ'ուզեմ հետ զհետէ բարգաւաճել:

## ԳԼՈՒԽ Գ.

Քննութիւն առաջին իննութեա գլխոյ յունարէն Ագաթանգեղոսի և թերի գոլն հայերէնի. — Գուտշմիդի և Սթիլթինգի կարծիքն և նոցա անհաստատութիւնը. — Այդ ինն գլխոյ նախկին աղբիւրն և հնութիւնը. — Յունարէն թարգմանչի խաղացած դերն. — Յունարէն Ագաթանգեղոսով զհայերէնը, և հայերէնով զյունարէնը լրացնելու է։

Ագաթանգեղոսեան պատմութեան հայերէն օրինակին սկիզբը շատ պակասաւոր է. այնպէս որ, սորա Ա. գլխահամարը կը թուի համապատասխանել Լանգլուայի վերոյիշեալ հրատարակութեան 9 §. գլխահամարին: Արդ հայերէն օրինակի սոյն թերին և հայերէնասիրաց հետաքրքրութիւնը կը լեցնէ յոյն օրինակն իւր իննաթիւ գլխահամարներու մէջ, որուն պակասաւոր պարբերութիւնքն այլ Լանգլուայի նոր հրատարակութիւնը կը լրացնէ: Դարձեալ պէտք է ծանուցանել, թէ սորա Ցառաջաբանն հազիւ թէ կէս երես գրուած է: Նա առանց Ագաթանգեղայ մասին եղած տեղեկութեան, հայերէն Ցառաջաբանութեան առաջին տողերն և վաճառաշահ նաւարկութեան հակիրճ խօսքերը մէջ բերելով, կը ծանուցանէ իւր ընթերցանելեաց՝ անցնիլ 'ի ծով անդր Հայոց պատմութեան։ Այս նորահրաշ երևոյթս կը ցուցնէ, ըստ իս, թէ նոյն իսկ այս գրոցս յունարէն թարգմանուած ժամանակ Ագաթանգեղայ գոյութեան մասին տարակոյսներ յայտնուած էին. և թէ առ Յոյնս եղջերուաքաղ իմն համարուած էր հայ մատենագրաց նորա անձնական գոյութիւնը և Ցառաջաբանը. այն պատճառաւ իսկ թարգմանիչը լաւ վարկաւ 'ի բաց թողուլ զայն՝ Ցառաջաբանի սեթևեթեալ հատուածովք իմիասին:

Պարթև-Արշակունի հարստութեան մեծանալուն, աշխարհակալութեանն և 'ի չորիս ճիւղս բաժանուելուն, այսինքն է, 'ի գահն Պարսից, Հայոց, Հնդկաց և Մասքթաց կամ Կովկասային ժողովրդոց, մասին մեզ մատակարարած նորա տեղեկութիւնքը՝ թէպէտ և համառօտ, թէպէտ և մթին, սակայն մեծ արժէք ունին: Այս գլխոց մէջ տեղն 'ի տեղ, չասեմ զոհացուցիչ պատճառներով, պատմուած են Սասանեան հարստութեան վերականգնումն 'ի ձեռն Արտաշրի, և կործանումն պարթևական հարստութեան՝ մահուամբ Արտաւանայ: Աստ ակներև

կը տեսնուին վերջնոյս պարտութեան աղետալի պարագաները, և առաջնոյն յաղթութեան զօրեղ ազդեցութիւնն և տիրապետութիւնը շրջակայ ազգաց և աշխարհաց վրայ, որոնք ցայն վայր կային ընդ լծով Պարթև - Արշակունի իշխանութեանց:

Արդ, այս կարևոր մասը, որուն բացակայութիւնն այժմու հայերէնի մէջ՝ մեր մոքերն ’ի պէս պէս կարծիս կը տարուբերէ, կը գտնուէ՞ր արդեօք Ե. դարում, նոյնպէս հայերէն Ագաթանգեղոսի կամ գէթ նորա յունարէն բնագրին մէջ: Մ. Խորենացի կարդացե՞լ էր նոցա միոյն կամ միւսոյն մէջ, եթէ ոչ:

Հարցմանցս ուղղակի պատասխանելէն առաջ, դիտելու է, որ այժմու յոյն օրինակի այս մասն իսկ եթէ չունենայինք դիմացնիս, դարձեալ կարելի էր փոքր ’ի շատէ ստանալ նորա մէջ պարունակուած տեղեկութիւնները, քննելով նախ հայերէն օրինակի Ա. գլխահամարին էջերը, որոնք են իբր սերմնարան յունարէնի Ա. գլխահամարին մէջ պարունակեալ ընդարձակ տեղեկութեանց: Երկրորդ, Մ. Խորենացւոյ Պատմութեան Բ. Գրոց ԿԷ, ԿԸ, ԿԹ, Հ, և ՀԱ գլուխները, որոնցմով նա իբրև հաւատարիմ գանձապահ Ագաթանգեղայ վերոյիշեալ աւանդութեանց՝ մեզ օգնութեան կու գայ. որովհետև նա այս գլխոց մէջ մի և նոյն կէտերն փոքր ինչ ընդարձակ պատմելով, կը յիշէ զԱգաթանգեղոս: Եւ ’ի վերջ կոյս ԿԸ. գլխուն կը յարէ այսպէս. « Բայց մի՛ աստանօր բամբասեսցես զմեզ իբր զաւելագործ ոք, որպէս թէ զհնագոյն պատմութեան (յԱզգաբանականէ) դարձեալ ասացաք. այլ գիտեա, զի վասն ախորժելոյ ազգականաց մերոյ Լուսաւորչին կրկնագրեցաք »: Յիրաւի, թէ Մովսէս ըստ հայերէն թարգմանութեան կը ճանչնար զԱգաթանգեղոս, և ոչ ըստ յոյն բնագրին, նորա պատմութեան ԿԷ գլխէն իսկ քաջ կը տեսնուի, յորում զերիս տեղիս ’ի մէջ կը բերէ՝ բառ առ բառ փոխ առնելով յառաջնոյ անտի: Բաց աստի, մի և նոյն գլխուն մէջ Ագաթանգեղոսեան մատենի վերոյիշեալ նիւթոց համկիրճ բովանդակութիւն կ’ընէ ասելով. « Յաղագս սորա (Տրդատայ) և համատոհմիցն (այսինքն է Խոսրովու և Արտաւանայ) կարճ ’ի կարճոյ իմն անցանելով, աջող քարտուղարն Տրդատայ Ագաթանգեղոս, փոքր ’ի շատէ պատմէ զմահն Արտաւանայ Պարսից թագաւորին – և զբառնալ տէրութեան Պարթևաց յԱրտաշրէ որդւոյ Սասանայ — և զնուաճել Պարսից ընդ ձեռամբ նորա — և զփախստական լինել Խոսրովու հօր Տրդատայ — և ապստամբեալ հինից աւերել զաշխարհն Պարսից »: Արդ Մովսիսի այս բացատրութեամբ, այսինքն թէ, «փոքր ’ի շատէ պատմէ զմահն Արտաւանայ », եթէ հայերէն Ագաթանգեղայ Ա գլխահամարին առաջին երեսն հասկնանք, այս աւելի յիշատակութիւն մի է քան թէ պատմութիւն. իսկ եթէ այժմեան յունարէնի ինն գլուխներն՝ այս իւր պատմածէն իսկ աւելի ընդարձակ է և հետաքրքրական: Այլուր, այսինքն է, ՁՁ գլխում ևս կը թուի Մովսէս այլ ինչ աւանդել մեզ յանուն Ագաթանգեղոսի, քան զոր այժմ ընթեռնումք հայերէն օրինակի մէջ: Նա Ս. Նունէի մասին խօսելով՝ կ’ըսէ, թէ, « Խնդրեալ արս հաւատարիմս՝ յղեաց առ Ս. Գրիգոր,

եթէ զինչ հրամայեսցէ նմա գործել »: Բ. թէ « Առաքելունի եղեալ քարոզեաց 'ի Կղարջաց սկսեալ առ Դլամբք Ալանաց և Կասբից մինչև 'ի սահմանս Մազքթաց, որպէս ցուցանէ տեղ Ագաթանգեղոս »: Մովսիսի առաջին տեղին ուղղակի կը համապատասխանի նախ Սոկրատայ և Սոզոմենոսի, որք առ Կոստանդիանոսիւ և առ հայրապետն Հռոմոց գրեալ ասեն: Երկրորդ առ Ագաթանգեղոսի՝ չիք յիշատակ Նունեայ: Իսկ երկրորդ տեղին՝ առնուած է հայերէն Ագաթանգեղոսի 628 իջէն, բայց համառօտ է այնմ. որովհետև աստ Գրիգորի համար կ'ըսուի միայն: Ուստի ինձ այնպէս կը տեսնուի, թէ Մովսէս Աւետարանի քարոզութեան տեղեաց մասին միայն կը կոչէ զԱգաթանգեղոս, և ոչ թէ վասն առաքելուհւոյն Նունէի: Ուստի, այս տեղեացմէ չէ մարթ եզրակացնել, թէ յունարէն բնագիրը կը ճանչնար զնա. սակայն կարող եմ ասել թէ Մովսիսի գործածած հայերէնը կատարելագոյն էր քան այժմեանը: Մովսէս իւր պատմագրութեան Հ. գլխուն մէջ Պահլաւկաց մասին եղած առասպելն ևս մէջ կը բերէ, և Փիլիպպոս (ուղղագրելի է Աղեք. Սևերոս) կայսեր ծեռնտուութիւնն ևս կը յիշէ յարշաւանս Խոսրովու. սակայն այս՝ ոչ Ագաթանգեղայ գրոց հայերէն և ոչ յունարէն բնագրէն, այլ ուղղակի Բարսումայի Սասանեանց վրայ յօրինած Պատմութենէն կ'առնու, զոր յունարէն թարգմանեց Խոռոհբուտ:

Արդ, Ղ. Փարպեցին ևս Մովսիսէն աւելի նոր պարագաներ չի յայտներ Ագաթանգեղայ գրոց պարունակութեան մասին: Սակայն այս երևոյթս բաւական չէ հաստատել, թէ Ագաթանգեղայ գրոց ոչ հայերէնի և ոչ նախկին յոյն բնագրի մէջ կային երբեմն այն տեղեկութիւնքը, զորս այժմեան յունարէնն ընծայէ մեզ: Ցիրաւի, Տրդատով 'ի Հայս կործանեալ Պարթև—Արշակունի թագաւորութեան վերականգնունելուն պատմութիւնը գրող հեղինակին՝ անհրաժեշտ հարկաւոր էր, յիշել նորա կործանման նախընթաց և յարակից պատճառքն և պարագաներն ևս. որովհետև առանց այնց անհասկանալի կը մնար Տրդատայ ազգականութիւնն. և ո՞վ կարէր հաւատալ, թէ էր նա ստուգիւ ժառանգ և օրինաւոր յաջորդ Արշակունի թագաւորութեան, որ դեռ այն ինչ լոյս տեսած, անյայտացաւ 'ի միջոյ. թող զի հարկ էր կամուրջ մի ձգել՝ Տրդատայ պատմութեան անցնելու համար: Բ. Սասանեաց հարստութեանը՝ Պարթևականին յաջորդելու ժամանակակից և մեծագոյն դէպքը, զոր, ըստ վկայութեան Մովսիսի, պատմագիրք առհասարակ Յունաց, Ասորւոց և Պարսից 'ի գիր անցուցին, նա չէր կարող լռութեամբ անցնել, ուր գրութիւնն ինքնին և հանգամանք ժամանակին անգամ զայնս կը պահանջէին: Թերևս փափաքելի լինէր ոմանց, յունարէն օրինակի միջոցով մեզի հասած այն անգին գլխահամարներն, այսրէն իսկ թարգմանուած տեսնել 'ի հայ բարբառ: Սակայն այս օգտաշատ ծառայութիւնս արդէն իսկ մատուցած է Հայկ. Դպրութեան հեղինակն՝ հայ ուսանողաց: Ուստի ես այսքանս կարևոր կը համարիմ ծանուցանել 'ի գիտութիւն մերազնեայց, թէ նոյն իսկ յունարէն օրինակին Ը և Թ գլխոց մէջ դատարկ տեղեր կան, զորս Լանգլուա լատիներէն թարգմանութենէն,

որ կը գտնուի 'ի Նէապօլիս և 'ի մատենադարանին Բարբերինեայ, որ 'ի Հռովմ, լրացուցած է մասամբ: Ես վերջնոյս օրինակութիւնն ունէի դիմացս, յորում յունարէնի յառաջաբանն իսկ Ա. գլխահամարին առաջին տողին հետ կը պակսի, պակասաւոր է և՛ 'ի վերջոյ:

Նշանաւոր դէպքիս, այսինքն է, Սասանեանց հարստութեան կանգնելուն և Պարթևաց կործանման ճիշդ ժամանակամիջոցը նշանակուած չէ ագաթանգեղոսեան գրոց մէջ. ուստի հարկ է զայն ճշդել[1] և դնել իբրև չուակէտ իմն Պատմագրութեանս այսորիկ. այս բանս մեզ իսկ պիտի ծառայէ իբրև փորձաքար քննելոյ և որոշելոյ զհարազատութիւն նորա յարակից միւս աւանդութեանց: Այն վճռական ճակատամարտը, զոր յիշէ ագաթանգեղոսեան գրոց հեղինակն, յորում անկաւ Արտաւան Պարթև, և յաղթանակեց որդին Սասանեկայ, հանդիպեցաւ անտարակոյս, ըստ վկայութեան Նեօլդէքէի, Պարսից Միհր ամսոյն վերջին օրը. այսինքն է, 28 Ապրիլ, յամին 224. իսկ Արտաշրի գահակալութիւնն եղաւ 226 ին, և մահը յամի Տեառն 241, Յուլիսի:

Քննենք այժմ ագաթանգեղոսեան գրոց վերոյիշեալ երկու թագաւորաց և մերոյս Խոսրովու մասին աւանդածները, և տեսնենք, թէ ինչ պատմական արժէք ունին: Յունարէնը՝ § 3. էջ 110, երազով մի և աներջական յայտնութեամբ կը սկսի պատմել Արտաւանայ ձախորդութիւնքը: Այս պատմութիւնս գլխովին արևելեան տիպ ունի, և անկախ է 'ի յունական ազդեցութենէ: § 8. էջ 112, Արտաշրի սիրուհւոյն կու գայ 'ի հանդէս, որ և [illegible] կը յորջորջի, մինչդեռ յետին ժամանակի պատմագիրք Պարսից՝ [illegible] կամ լաւ ևս, Կիւլ–նար կ'անուանեն: Յիրաւի, կանացի ազգի հզօր ազդեցութիւնը մարդկային ազգի պատմութեան մէջ միշտ տեսնուած և շօշափելի ճշմարտութիւն է. սակայն այս անձնաւորութեան՝ աստ մէկէն 'ի

1. Ճշդել ըսի, որովհետև այդ մասին մեծ տարաձայնութիւն կայ հին պատմագրաց մէջ: Յոյն և լատին պատմագիրք որոշ կերպով հաստատած չեն այն դէպքը՝ ճիշդ տարեթւով: Ապուլֆարաճ, Պատմութիւն Հարստութեանց՛ Է. Մասն, Արտաշրի թագաւորութեան տարին կը դնէ Աղեք. Սևերոսի Մամիայ որդւոյն կայսերութեան յ3 ամին. այսինքն է, յամի Տեառն 223: Նորա կը հետևի Նուղիոս Ասսեմանի, Acta Sanct. Marty. Orient. Pars I. LXXVII. Սակայն երկոքեան իսկ կը սխալին: Ըստ Ագաթիասի, 4, 24, որ էր դիւանապետ արքային Պարսից, վերոյիշեալ դէպքն նանդիպեցաւ Սելևկեան թուականին 538, այսինքն է, յամի Տեառն 226, հոկտ. 1, 'ի չորրորդում ամի կայսրութեան Աղեք. Սևերոսի: Ագաթիասի կը թուին համաձայնել 'ի հնոց, Դիոն Կասիոս, Հերոդիանոս, Եղիաս Մծբնացի և Թապարի. իսկ 'ի մերոց կորիւն, Մովսէս Խորենացի և Ղազար, որոնք Յազկերտ Բ ի գահակալութիւնը կը դնեն յամին 439: Առ Յազկերտ Բ էն ցերևելն Արտաշրի կը մնայ 213 տարուան միջոց, զորս բաժնելով հուաքանչիւրին, Արտաշրի գահակալութիւնը կը հանդիպի յամին 226: Իսկ 'ի նորոց՝ Սէն Մարդէն Hist. des Arsacides T. 2. p. 226-1-22: Հ. Մ. Ջամչեան, Պատմ. Հայոց հատ Ա. էջ 603–4: Նեօլտէքէ. Geschichte der Perser und Araber s. 409-411. Արդ 226 տարեթիւն՝ այնպիսի ստոյգ հաստատութիւն առաւ Նեօլտէքէի սոյն հետասիրութեան մէջ բերուած շօշափելի յիշատակարաններով, որուն վերայ տարակուսելն իսկ աւելորդ է;

մէկ գալն 'ի հանդէս, պատմականէն աւելի վիպասանական երևոյթ ունի: Հայերէն օրինակի Ա. գլխահամարին 29 իջէն, և յարտաքին պատմագրութենէն իսկ գիտենք, թէ Սրտաշրի յաջողութիւնքը գլխովին քաղաքային և կրօնական ընդհանուր պատճառաց արգասիք են՝ քան թէ վիպասանական և անրջական դէպքի մի: Ուստի այս տեսակէտովս՝ հայերէնը շատ աւելի հաւատարմութեան արժանի է, որ անդէն 'ի մուտս պատմութեան կը ծանուցանէ եղելութեան բուն պատճառն, ասելով այսպէս վասն Սրտաշրի. «Որ էր նախարար ոմն 'ի Ստահր, գաւառէ, որ եկեալ միաբանեալ զօրօք Պարսից, որք խոտեցին զտէրութիւնն Պարթևաց, և հաճեցան հաւանութեամբ ընտրել զթագաւորութիւնն Արտաշրի որդւոյ Սասանայ:

§8. յէջ 113, վերջին ճակատամարտը կը յիշուի միայն, յորում Արտաւան կը մեռնի և Արտաշիր կը յաղթանակէ և կը տիրէ բոլոր պարթևական թագաւորութեան երկիրներուն. մինչդեռ Ֆիրտուսի և այլք՝ երեք պատերազմներ կը յիշատակեն. և թէ Արտաշիր վերջին վճռական պատերազմը Արտաւանայ դէմ բացած ժամանակ, արդէն իսկ Ատրպատականի և ուրիշ քանի մի նահանգներու տիրած էր: Յէջ 112, կը յիշուին Զինկա և Կարինաս պահլաւունիք, իբրև կրկին համախոհք Արտաշրի: § 9. յէջ 113 և 115, իսկ ըստ հայերէն[1] օրինակին՝ յէջ 32, կը յիշուի Խոսրով թագաւոր Հայոց իբրև եղբայր համահայր Արտաւանայ. մինչդեռ իրօք Դինոն Կասիոսէն, Հռ. 9, գիտենք թէ տարբեր հօր որդիք էին:

Արդ, յունարէն օրինակին մեզ ընծայած այս հետաքրքրական կէտերս, արդէն 'ի վաղուց Ստիլտինգի և Գուտշմիդի պէսպէս մեկնութեանց նիւթեր եղան: Վերջինս ենթադրական այս խախուտ հիման վրայ յեցեալ, թէ հայերէն Ագաթանգեղոսն եղած է բուն բնագիր, և չգտնելով սորա մէջ յունարէնի աւանդածն, եզրակացոյց, թէ այդ մասն պէտք է գործ համարել ուղղակի յոյն թարգմանչի գրչոցս: Գուտշմիդ, այսպիսի մի եղելութեան ապացոյց կը համարի հետևեալ երևոյթն. այսինքն է, յունարենի այդ մասին մէջ՝ դրուատեաց խօսքեր մէջ կը բերուին 'ի վերայ Արտաշրի, որ ցոյց է, թէ յոյն թարգմանիչն այնպիսի ժամանակի մէջ կ'ապրէր, յորում Սասանեանց հզօր ազդեցութիւնը կը ստիպէր զհեղինակն այնպէս խօսել. մինչդեռ հայերէն Ագաթանգեղայ հեղինակն, ընդհակառակն, Խոսրովու վրայ գովեստներ կը շռայլէ: Բ. Թուկիդիդեսէն առնուած երկտող հատուած մի, որ կը գտնուի բարբարիկ լեզուով գրուած այդ յունարէնի մէջ: Արդ ինձ այնպէս կ'երևի, թէ գերմանացի քննադատին այս սրամիտ դիտողութիւններս կը ծառայեն մեզ այս հետևութիւնս միայն առաջ բերել. այսինքն թէ, Ագաթանգեղայ յունարէն թարգ‿

1. Աստ կը ծանուցանեմ իմ ընթերցողացս, թէ ինչպէս մինչև ցայսր՝ այսպէս այլ ցվերջ գրութեանս հայերէն Ագաթանգեղոսի յիշատակութիւնքը, ըստ 1835 վենետկեան տպագրութեան պիտի ընեմ. իսկ յունարէնը՝ մինչև ցկէս գործոյս, ըստ Լանգլուայի տպագրութեան, զի Լագարտի հրատարակութիւնը յետոյ ուրեմն ստացայ:

մանութիւնը յետին ժամանակի գործ է, և ոչ թէ այն թարգմանութեան նիւթը կամ վերոյիշեալ հատուածները։

Իսկ վերջինս, այսինքն է, Ստիլտինգ ուրիշ պատմական իրողութեան մը վրայ հաստատուած, յոյն թարգմանչին իբրև ե՛կամուտ անհարազատութիւն վարկաւ վերոյիշեալ հատուածն. որովհետև, նորա կարծեօք, Արտաշրի և նորա սիրուհւոյն վրայ պատմուած վէպը կը գտնուի Պարսից յետին ժամանակի պատմագրաց Դանիշվէրի, Խոնտէմիրի [1], Ֆիրտուսիի քով իսկ. միայն թէ փոխանակ Արտադխտոյ՝ Գուլնար կը կոչուի նա։

Սակայն յունարէն Ագաթանգեղայ այդ եկամուտ կարծուած մասըն, սկիզբէն ցվերջ պատմութեան, յառաջ էր քան զյունարէն թարգմանութիւնն և կարէր գտնուիլ թէ՛ յունարէն բնագրի և թէ՛ հայերէնի հնագոյն օրինակին մէջ. հետևապէս դիւանական պատմութեան մի մասն համարելի է։ Առ այս դիտելու է, որ Ֆիրտուսի թէպէտ և ժամանակաւ կրտսեր, թէպէտև իւր գործը միպասանօրէն գրած է, սակայն նորա աղբիւրն հին է, և Խոսրովանէ հետ սերտիւ միացեալ, զոր յօրինեց Դանիշվէր յամին 632–636, Պահլաւիկ լեզուով և հրամանաւ Ցազկերտի Գի. և յամին 731 յեղաւ 'ի լեզու արաբական։ Արդ, եթէ յոյն թարգմանիչը յառաջ էր քան զամն 636, ինչպէս կ'ապացուցանէ այլուր Գուտշմիդ, չէր կարող Դանիշվերէն կամ Ֆիրտուսիէն առած լինել այն. ուրեմն այս իսկ յայտնի ապացոյց է, թէ նորա աւանդածը՝ դեռ աւելի հնութեան բնադրոշմն ունի, և թէ պարսկային պատմագիրներէն յառաջ բերած Ստիլտինգի հետևութիւնն առանց հիման և անընդունելի է։

Կարծեացս 'ի հաստատութիւն՝ դեռ աւելի զօրեղ և հաստատուն ապացոյցը կու տայ Մ. Խորենացին։ Այրս այս բազմահմուտ, աւանդապահս այս բիւրազգի գանձուց հնութեանց, իւր պատմութեան Բ. գրոց Հ. գլխուն մէջ խօսելով Պահլաւկաց մասին ծանօթ վիպաց վրայ՝ այսպէս կը գրէ. «Քանզի անտեղի է մեզ այժմ երկրորդել զառասպելսն յաղագս Երուանդայ ծննդոց... առասպելաց յաւաղանաց, որ են քաղդեայք... և դիւցազնական խորհրդոյն Արտաշէսի հանդերձ սպանութեամբքն, և որ ինչ այլն ամենայն»։ Խորենացւոյ այս տեղիս, զոր անգիտացան Ստիլտինգ և Գուտշմիդ, յայտնապէս կը ցուցնէ մեզ Արտադխտոյ վերաբերութիւնն ընդ Արտաշրի. և երազն՝ ախտարմողական մեկնութիւնն և սպանումն Արտաւանայ, զոր աւանդէ մեզ Ագաթանգեղայ յունարէն օրինակն։ Ուրեմն, ըսել է, թէ այս աւանդութիւնս ոչ եթէ վեցերորդ կամ եօթներորդ դարու, այլ նոյն իսկ Ե դարում շատերուն քաջածանօթ վէպ մի էր։ Դիտելու է և այս, որ Մովսէս այս աւանդութիւնքս մէջ բերելէն առաջ՝ երեք հեղինակութիւններ կը յիշատակէ. այսինքն է, զԱգաթանգեղոս, զԲարսումա և զԽոռոհբուդ, որոնք Դ դարու գրիչներ են. ուստի, սոցանէ յորմէ ևս օգտուած համարինք զՄովսէս, դարձեալ միշտ հետևութիւնը մեզ նպաստամատոյց կը մնայ։

1. Herblot, Bibli. Orient. Artaschir Babegan.
2. Görres, II, 404, und Mouradgea D'Ohsson, II, 153.

Արտադուխտ անուան գոյութիւնն իսկ 'ի յունարէն օրինակին՝ կարելի է մի պատմական և լեզուաբանական փաստ համարել նորա աղբեր կամ բնագրի հնութեանը: Ցիրաւի, այս զուտ պարթևական անունս բաղկացած է յԱրտաւան և դուխտ[1] (հ. դուստր) յատուկ և գոյական անուններէն, և կը նշանակէ դուստր Արտաւանայ: Այսպիսի բարդեալ յատուկ անուանս յաճախ 'ի վար արկանէին Պարթևք և Հայք: Փ. Բուզանդացւոյ Գ. Դպրութեան 261 իջում, Զրուանայ պարսկի դուստրը՝ կը կոչուի Զրուանդուխտ. Խորենացւոյ Պատմութեան Բ. գրոց ԼԴ գլխուն մէջ և 'ի հնագոյն վկայաբանութեան Թադէոսի Առաքելոյ՝ Սանատրկոյ աղջիկը կը կոչուի Սանդուխտ: Ագաթանգեղայ գրոց մէջ յէջս 165, 167, 575 և այլն խոսրովածին կոյսը՝ կը կոչուի Խոսրովդուխտ: Այսպիսի են և այլուր Զարմանդուխտ, Շահանդուխտ և այլն: Իսկ Գիւլնուր, ընդհակառակն, փարսի-արաբական անուն մի է և բաղկացեալ է 'ի գիւլ և նուր կամ էնուր գոյական անուններէն, որոնց առաջինը, թուի ինձ, թէ արիական կամ իրանական լեզուաց մէջ ևս վարդ կը նշանակէ. զի մատենագիրք Պարսից և Արաբացւոց, այլ և այլ տեղեր ևս կը յիշեն սոյն արմատէն կազմուած. օրինակ իմն, Գիւլխաթուն աշխարհագրական անունը, որ նոյն է վարդատան: Իսկ երկրորդ վանկը՝ նուր կը նշանակէ, որ գալով 'ի մի՝ կը կազմուի վարդանուր, կամ վարդամատն կեղծ անունը, որ ոչ է պատմական, այլ գլխովին վիպասանական:

Սակայն հարկ կը համարիմ ծանուցանել, թէ Արտադուխտ անուան այս մեկնութեան կը թուին հակառակել նախ Ագաթանգեղայ յունարէն այս խօսքերս, ἥτις τῶν ἐν πρώτοις τελούντων θυγάτηρ υπάρχουσα, συνήθης ἦν τινὶ τῶν μεγιστάνων, որք առնեն զԱրտադուխտ դուստր միոյ ուրումն յիշխանաց: Բ. լատիններէն թարգմանութեանը մէջ, որուն համար ըսուեցաւ, թէ յունարէնի Ը և Թ գլխահամարներուն պակասը կը լեցնէ, երբ Արտաշիր կ'ըսէ 'ի ժամ պատերազմին առ Արտաւան, Meminisse responsi, quod aliquando reginæ dixisti in tabernaculo. Արտաւան կը գոչէ անդէն. Quam gravis res est femina! amor conjugii potius læserit, quam juverit. Արդ եթէ femina բառով Արտաւան՝ զԱրտադուխտ յիշեց և amor conjugii potius læserit բառերով՝ նորա հետ ունեցած ամուսնական սիրոյ վնասը, ինչպէս կարելի է այլ ևս ասել, թէ Արտադուխտ Արտաւանայ աղջիկն էր:

Արդ, ես կարծեմ, թէ femina գոյական անունն՝ ուղղակի զթագուհին կը յարաբերէ, և ոչ թէ նորա աղախինը Արտադուխտ: Երկրորդ եթէ Արտադուխտ ևս իմնանք այնու, դարձեալ Արտաւանայ դուստրը կարէր նոյնպէս ամուսին ևս լինել միանգամայն: Ցիրաւի, այժմու մեզ երևցած անտեղութիւնը յայնժամու սովորութիւնք ազգաց օրինաւոր կ'ընէին. զի Բարդածան ասորին, առ Եւսեբիոսի[2], կը վկայէ,

1. Այս գոյական անունս պահուած է նաև ուրիշ արիական կամ հնդեւրոպական լեզուաց մէջ, ինչպէս գերմաներէն Tochter և Անգղիերէն՝ daughter, և յունարէն θυγάτηρ.

2. Præparationis Evangelicæ, lib. VI,

*թէ* Magusæos non in Perside tantum filias uxores ducere, sed etiam ubicumque degant, acceptas a majoribus leges, eosdemque mysteriorum ritus ac ceremonias retinentes. *Այսպէս ուրեմն և՛ Արտաւան որուն համար կ'ըսուի, թէ մոգ էր և քաղէութեան արուեստին քաջավարժ, յաստեղաց անոր գուշակելով իւր անկումը:*

**Զիկ և Կարէն** *յատուկ անուանքը՝ թէպէտ և, ըստ յունական կիրառութեան, նոր իմն թուին, բայց ըստ պարթևական ձևոյն հնագոյն յոյժ: Մ. Խորենացի Պահլաւկաց ցեղին այլ և այլ բաժանմունքն և անուանակոչութիւնքը պատմաբանօրէն կարգելով՝ Բ. գրոց ԿԸ. գլխուն մէջ* **զԿարէն** *ևս կը թուէ: Զիկասայ տեղ՝ զՍուրէն կը յիշէ. և ՀԱ. գլխում կ'ըսէ, թէ «Երկու ցեղ Պահլաւին՝ որ* **Ասպահապետ** *և* **Սուրէնեան** *'ի* **Պահլաւ** *անուանին, նախանձ պահելով ըստ թագաւորեալ ցեղին իւրեանց հարազատութեան ազգին, որ է Արտաշէսին, կամաւ յանձն առին թագաւորել Արտաշրի որդւոյ Սասանայ: Այլ մտերմութիւն պահելով առ եղբայրութիւն ազգականութեան տանն* **Կարէն Պահլաւին**՝ *ընդդիմացան պատերազմաւ Արտաշրի որդւոյ Սասանայ»: Քիչ յետոյ, կը ծանուցանէ Մովսէս մի և նոյն գլխուն մէջ, թէ ամենայն նախարարք Պարսից միացան ընդ Արտաշրի «բաց 'ի ցեղէն* **Կարենեան**՝ *առ որ հրեշտակ առաքեաց» (Խոսրով): ՀԲ. գլխուն մէջ կը ծանուցանէ, թէ Խոսրովու հրեշտակներէն ոմանք, «որք 'ի* **պատուականագոյն** *ազգն երթեալ էին 'ի Բահլ՝ բերին համբաւ, թէ ազգական քո* **Վեհանան** *հանդերձ* **ցեղիւն իւրով Կարենեան Պահլաւին** *ոչ հնազանդեալ Արտաշրի, այլ 'ի կոչն քո դիմեալ գայ»: Եւ ՀԳ գլխուն մէջ, թէ այս բանս լսելով Արտաշիր, «կոտորեաց զամենայն ցեղ Կարնան Պահլաւին, ջնջելով զամենայն արու, բայց 'ի միոյ տղայոյ, զոր առեալ* **Բուրդ** *փախեաւ յաշխարհն Քուշանաց:»*

*Մովսիսի՝ ՀԱ. գլխում մէջ բերուած կրկին տեղիքը՝ մութ են և գոգցես իմն իրարու հակասական, այնու զի Ասպահապետի և Սուրենի Պահլաւները թէ՛ կ'ուզեն որ Արտաշիրը թագաւորէ և թէ՛ կ'ընդդիմանան նմա պատերազմաւ: Սակայն նորա աւանդութիւնները լաւագոյն և հնագոյն*[1] *աղբերէ մի առնելով, այսինքն է, Պարսից Շապուհ թագաւորին դպիր Խոռոհբուտի պատմագրութենէն, կարեն լուսաւորել Պահլաւկաց*[2] *ցեղին և Ագաթանգեղայ գրոց յէջ 32 անորիշ մէկ տեղին, զոր յոյն թարգմանիչն ուզած է որոշել, բայց չէ յաջողած: Արդ Մովսիսի աւանդած տեղերէն կը տեսնուի, թէ Ա. Ասպահապետի կոչուած Պահլաւը Պարթևաց Արշաւիր թագաւորին դստեր Կոշմէն կը շառաւիղէր. բայց թէ ինչո՞ւ համար այսպէս կոչուեցաւ, արդեօք ազգախառնութեամբ ուրիշ ընտանիքի մի հետ, թէ նորա*

1. *վհհսաճան պահլաւիկ յատուկ անունս իսկ ապացոյց է ստուգիւ աղբերս հնութեանը:*

2. *Թապարի՝ Դրհ. Վշդասպէն կարգեալ 7 ազգապետներ կը թուէ, բայց երեքը միայն յանուանէ կը յիշէ. այսինքն է, Կարէն* Kâren, *Սուրէն* Sûrên *և Սպէնճար* Spendjiâr. *առաջինը կ'իշխէր Նիհավանդայ, երկրորդը՝ Սագաստանի, իսկ միւսը Դայստանի;*

ստանձնած պաշտամանէն կամ պատուանունէն. այս յայտնի չէ: Բ. թէ յետ թագաւորեալ ցեղին Արտաշիսի՝ ամենէն պատուականագոյն ցեղն էր Կարեն պահլաւին, և սոցա բնակավայրն էր ի Բահլ կամ ի Բակտրիա: Գ. թէ այս ցեղս իշխաններն, թէպէտև ի սկզբան առ նախանձու ընդ թագաւորեալ ցեղին Արտաշիսի՝ համախոհ երևեցան Արտաշրի, որպէս զի այն թագաւորող ցեղին բարձմամբը՝ Պարթևական գահակալութիւնը շուտով իրենց վերադառնայ, ըստ օրինաց և դաշինն՝ զոր եդ Աբգար թագաւոր Ասորւոց և Միջագետաց Հայոց. սակայն յետոյ յորդորեալ 'ի քաջէն Խոսրովայ ընդդիմացած են նմա պատերազմաւ, ոյր վասն և կոտորեալ յԱրտաշրէ Սասանեան: Արդ, Մովսիսի աւանդութիւնը ուղղակի կը հակառակի Ագաթանգեղայ յունարէն օրինակի աւանդածին. որովհետև առաջինը՝ զԿարեն Պահլաւ գրեթէ միշտ հաւատարիմ կուսակից կը համարի Խոսրովու, և զՍուրէնեան պահլաւը հակառակ նմին: Իսկ վերջինը, ընդհակառակն, զերկուսեան իսկ արքանեակս առնէ Արտաշրի, մերթ զԿարէն առաքելով առ Արտաւան, և մերթ զԱնակ Սուրէնեան՝ առ մերս Խոսրով 'ի դաւաճանութիւն և յորոգայթ մահու: Արդ, յայսմ կամ Մովսէս կը սխալի, կամ հեղինակն ագաթանգեղոսեան գրոց, և կամ յունարէնի թարգմանիչը: Ես կ'ախորժիմ այս երևոյթս ուղղակի յունարէնի թարգմանչին վերագրել, որ զհայերէնն 'ի .ոյն փոխած ժամանակ, երբ հասաւ յայն տեղին (յէջ 32), ուր Պահլաւկաց վրայ կը խօսուի առանց անուան, նա տգիտաբար Ջիկ և Կարէն անուանքը ներմուծեց. կամ զերկոսեան իսկ առնելով Փաւստոսի Դ. Դպրութեան՝ ԾԵ. գլխէն, և կամ առաջինը միայն առաւ անտի. իսկ երկրորդը՝ Մովսիսի վերյիշեալ տեղերէն: Բայց կամ լուր այդ խարդախութիւնը չի յայտնելու համար և կամ յունական ձև տալու աղագաւ Ջիկը՝ Σηκᾶς ըրաւ և Կարէնը՝ Καρινᾶς: Մենանդրոս իսկ զոյգ ընդ Փաւստոսի կը յիշէ զառաջինը: Փաւստոսէն առաջ՝ ոչ ոք ի պատմագրաց կը յիշէ զՋիկ. ուստի, ինձ կը թուի թէ Պահլաւիկ ցեղերուն հետ վերաբերութիւն չունի: Իսկ զՍուրէն և զԿարէն՝ պարթևական անուանք գործածական էին և ի հնումն, զորս կը յիշեն հնագոյն պատմագիրքն՝[2] յունաց. և ո՞վ կարէ անգիտանալ այն խորամանկ և քաջամարտիկ զօրավարին անունն և ազգանունը, որ զանյաղն և զաններկուն Կրասսոս՝ Պարթևաստանի անապատ աւազներուն տա'կ թաղեց հանդերձ որդւովն:

§ 9. յէջս 113, 114, և 115, որ համապատասխանելոց է հայերէն օրինակին Ա. գլխահամարին 29 և 30 էջերուն, ոչ միայն պակասաւոր է, այլ նոյն իսկ այս տողէս սկսեալ Τὰ δὲ συμβάντα ταῦτα απηγγέλλετο Χὸς... մեծապէս կը տարբերի հայերէնէն, ոչ միայն բանից դասակարգութեանը մէջ, այլ նոյն իսկ նորանոր յաւելուած_

1. Fragm. hist. græc. IV, 206.

2. Պլուտարքոս, ի Կրասսոս: Լիվիոս, Epitome CVI. Florus, 3, II. Տակիտոս, Annal. 6, 42. Ամմիանոս, 30, 2, 5: Զոսիմոս, 3, 15: Թէոդորետոս, Hist. Eccles. 5, 39. իսկ 'ի նորոցս Նէօլտէքէ, Geschichte der Perser und Araber, s. 437, 438, 439, etc.

ներով կամ կրճատմամբ անուանց: Երկիցս Արտաւանայ մահուան լուրը կը հասնի առ Խոսրով թագաւորն Հայոց մեծաց. մի անգամ յԱ. պարբերութեան մէջ, միւս ևս՝ յերկրորդումն: Երկու անգամ ևս կոչելով զԽոսրով Եղբայր[1] Արտաւանայ 'Αρταβάνιν τὸν αὑτοῦ αδελφόν. Նորա անուան առաջին վանկը միայն գրելով Χὸς. զոր Լազարդ ամբողջացուցել է: Դարձեալ, առաջին պարբերութեան մէջ Արտաւանը՝ կոչուած է որդի Վաղերիոսի τοῦ 'Αρταβάνου υἱοῦ Οὐαλερίου, փոխանակ Վաղարշու: Հայերէնն՝ աստ խոտորնակի կ'ընթանայ յունարէն օրինակի հետ. զի առաջին պարբերութեան մէջ Արտաւանայ մահը ծանուցանելէն անմիջապէս յետոյ, կ'ասէ վասն Արտաշրի. « Որ էր նախարար ումն 'ի Ստահր գաւառէ. » մինչդեռ յունարէնը՝ յերկրորդ պարբերութեան մէջ ուր ուրեմն կը դնէ զայն: Այսպէս նաև Պարթև-Արշակունեաց գահոսմ՝ 'ի կարգի երկրորդ լինելուն – Խոսրովու առ Պահլաւս դիմելուն — 'ի նոցանէ ծեռնունայն յետ դառնալուն և Արտաւանայ եղբայրակցութեան հատուածքը՝ խոտոր համեմատութիւն ունին: Արդ այս կրկին օրինակացս մի և նոյն գլխահամարի մէջ եղած բանից, նախադասութեանց և այլ յետևառաջութիւնքը կը ցուցնեն, թէ լոռք զգալի յեղափոխութիւն մի եղած է աստ, չըսեմ թէ ոճիր մի. բայց ով է մեղապարտ, միթէ յոյն թարգմանի՛չը միայն, ինչպէս կարծեց Գուտշմիդ: Ոչ այնպէս. այլ նախ հայերէնին թերութեան և աղաւաղութեան ընծայելի է այն, զոր յունարէնի թարգմանիչն իբրև բնագիր գործածեց: Բ. յոյն թարգմանչի ճարտարութեանը կամ ընդհականն անբաւականութեանը, որ այլազգ չկարենալով այն խրթնացեալ բաւղէն դուրս գալ, ջանացեր է մի և նոյն իրաց մասին ճառող Հայոց հին պատմագիրներէն, այսինքն է, 'ի Փաւստոսէ և 'ի Խորենացւոյ նախադասութիւններ և յատուկ անուանս իսկ փոխառնուլ և ներմուծել անդ, այն պակասաւոր և մութ տեղերը լրացնելու և պարզելու համար: Գ. Վաղերիոս անուան փոխանակութիւնն և Խոսրովի կրճատումը՝ ընդօրինակողաց անհոգութեան ընծայելի են: Իսկ զԱրտաւանը՝ Խոսրովու եղբայր անուանելն ոչ միայն պատմական չէ, այլ և ոչ իսկ ագաթանգեղոսեան յոյն բնագրին ընծայելի. այլ պարզապէս վրիպակ համարելի է թիւր հասկացողութեան յոյն թարգմանչին: Եւ յիրաւի, այս բանիս կրկին և յայտնի ապացոյցք առձեռն պատրաստ կան. Ա. զի հայերէն օրինակին մէջ՝ յէջ 32, փոխանակ Եղբօր՝ եղբայրութիւն գրուած է. և երկիցս ուղղակի ազգատոհմին ընծայուած, և ոչ թէ Խոսրովու: Բ. Մ. Խորենացին, որ ագաթանգեղոսեան գրոց հնագոյն և կատարելագոյն օրինակը դիմացն ունէր, իւր պատմագրութեան Բ. Գրոց ԿԷ. գլխոյն մէջ նոյնպէս հասկացած է, եթէ չասեմ գտած է այլուր: Յունարէնի խնամթիւ գլխահամարներու պարունակութեան մասին այսչափս կը բաւէ. անցնինք յետագայից քննութեան:

1. Այս բանիս զօգցես խմն կը համաձայնի Պրոկոպիոս, որ Յաղագս Շինութեանց Յուստինիանոսի, Գ. Գրոց մէջ կ'աւանդէ, թէ Արտաւան թագաւորեցոյց զեղբայր իւր Արշակ 'ի վերայ Հայոց: Դիտելու է, որ Արշակ իբր աժական արշակունի, կը գործածէ յոյն հեղինակս:

# ԳԼՈՒԽ Դ.

Մասնաւոր բնագրոշմ առանձնութեանց Ագաթանգեղոսեան գրոց և Մովսէսի Խորենացւոյ. — Անուղղութիւն նոցա. — Գաղտնիք Խոսրովեանց և Տրդատեանց. — Հայաստան չէր և ընդ այնքան ժամանակս մարզ Պարսից. — Ճշգրիտ պատկեր 26—30 ամեայ կացութեան Հայաստանի, ըստ արտաքին պատմագրութեան. — Գաղտաշմեղէ կործէինը Խոսրովու մահն և Թեբէի որդեգրութիւնը. — Տեղ կենսագրութեան Տրդատայ. — Կենսագիրն Տրդատայ ոչ կարէ լինել Յոյն կամ Հռովմայեցի։

Բանալով Ագաթանգեղայ պատմագրութեան հայերէն օրինակի 32—49 եղած սակաւաէջ միջոցը՝ կը տեսնենք Մեծին Խոսրովու Հայոց թագաւորի մեծագոյն զայրոյթը վասն մահուն Արտաւանայ — զվայրագասուն ազինս Կովկասու 'ի մի հաւաքելը — տասնամեայ ժամանակաւ և տարևոր արշաւանօք Պարսից երկիրն աւերելն — Արտաշրի յաղթելով մինչև յԱսորեստան և 'ի Հնդիկս փախցնելն — Անակայ ձեռքով կատարուած Խոսրովու եղերելագական մահուան տեսարանը — տիրելն Արտաշրի 'ի վերայ Հայաստանի — նորա որդւոյն Տրդատայ փախստեամբ 'ի Յոյնս զերծանելն — առ Լիկիանոսի կատարած մեծամեծ քաջագործութիւնքը — Կայսերմէ թագաւոր պսակուիլն — վերադարձն 'ի Հայս և զՊարսիկս պատերազմաւ վանելով՝ Արշակունի հարստութեան անդէն վերականգնելն:

Արդ այսքան և այսպիսի բազմադրուագ դէպքեր և արարուածներ, թէպէտև ըստ արտաքին երևութին իրարու ագուցեալ և յօդեալ մի մարմին կը տեսնուին, բայց ըստ իրին՝ բազմագլխեան հիդրայի կը նմանին, որոնց գոյութեան և համեմատութեան գաղտնիքը՝ կարծէք թէ նորա բազմակերպեան եղելութեանցը մէջ կայացած է և կը սղմի, քան թէ այդ մի քանի էջ գրաւած միջոցի մէջ. այնպէս որ՝ եթէ ուզենք զմին ծայրայքաղ առնել՝ միութեան վերածելու համար, միւսները տակաւին կը պահեն իրենց գոյութիւնը, իրարու անտեղութիւնը արտափայլելու համար: Այդ բազմադիմի դէպքերէն՝ քիչեր կան, որք իւրեանց բնական վիճակի մէջ գտնուին. իսկ այլք առհասարակ՝ առասպելեալ Պրոմեթէասի նման այլընդ այլոյ երանգներ և գոյներ զգեցած մեզ կը ներկայանան: Ժամանակագրութեան հսկայաձև վրիպակներ, անուանց փոփոխ կիրառութիւնք. միով բանիւ պատմական ըմբռնման (?) յեղաշրջեալ ընծայութիւնք, այնպէս խոտոր ճանապարհներ կը բանան քննական ատենին դիմաց, յորս իբրև յանել բաւղի մոլորքերնիս կաշկանդուած կը տարակուսի, թէ լինչպէս ելս գտնէ: Այսպիսի ահագին խառնակութեան մէջ կարծեմ թէ, բարեաց աւետաբերն անգամ Ագաթանգեղոս, եթէ իրօք եղած լինէր, դարձեալ կարող չէր լուսաւոր հոռիզոն մի բանալ՝ յասելն թէ. «Վաղ-

վաղակի յետ մահուանն Արտաւանայ 'ի թիկունս հասանէին մեծաւ բազմութեամբ Աղուանք, Լփինք, Ճիղփք և Կասպք»: Արդարև սոցա փյութեամն և ճիշդ այս ժամանակամիջոցին Հայոց և Պարթևաց նիզակակից և հարկատու լինելու մասին՝ ոչ ոք կը տարակուսի, զի պատմաբանօրէն իսկ ապացուցեալ մի անտարակուսելի ճշմարտութիւն է: Սակայն Խոսրով, Արտաւան, Արտաշիր, Կայսրն Յունաց և Լիկիանոս անուանց ընդհանուր յիշատակութիւնքը՝ բաւական չեն ածել զՏրդատ 'ի հանդիսի և ընծայել մեզ ժամանակագրական ճիշդ պատմութիւն մի, առանց որոշ ժամանակագրութեան, ինչպէս ուզած են ընծայել գրոցս հեղինակն և խմբագիրը, որով Խոսրովու և Տրդատայ ընծայուած գործերն և ժամանակը համապատասխանել կարենային Արտաշրի, Դիոկղետիանոսի և Լիկիանոսի ժամանակին. որովհետև պատմութեան մէջ այլևայլ Խոսրովներ, Տրդատներ և Լիկիանոսներ եղած են տարբեր ժամանակաց մէջ:

Ցիրաւի, եթէ բաղդատենք կենսագրին՝ Խոսրովու և Տրդատայ վերայ աւանդածները՝ յոյն և հռովմայեցի պատմագրաց աւանդածներուն հետ, կը տեսնենք ակներև, թէ երկուստեք հազիւ երբէք մերձաւորութիւն կայ. իսկ ընդհանուրին մէջ՝ դէմ ընդդէմ մեծամարտութիւն: Ըստ վկայութեան Դիոն Կասիոսի, Զ. 3, յամին 228 արշաւեց Արտաշիր 'ի Հայս, բայց մեծ ընդդիմութիւն կրելով 'ի Հայոց և նոցա կուսակից Մարաց և յորդւոցն Արտաւանայ՝ ստիպեցաւ յետս նահանջել: Հերովդիանոս, Զ, 5, 6 կը պատմէ, թէ 'ի պատերազմին Աղեքսանդրոս Սևերոսի, յամէն 231–233, Հայք էին դաշնակից Հռովմայեցւոց, և հռովմէական բանակի մի մասն անցաւ ընդ Մարաստան 'ի Հայաստան երթալու համար, տիրելով երկրին և աւերելով զշէնս, առանց կարենալու Արտաշրի՝ լուր հեծելազօրօք արգելուլ զնա, և կ'ըսուի, թէ զօրք Պարսից այնքան տկարացան այս և յաջորդ պատերազմաց մէջ, մինչև ստիպեցան 3–4 տարի զինադադարում խնդրել:

Իսկ Տրդատայ կենսագիրն (լաւ ևս էր Խոսրովու անուանել) զայս ամենայն Խոսրովու վերայ դարձուցեր է՝ յասելն. «Թէպէտև վաղ լուեալ զբօթ Արտաւանայ՝ ոչ ինչ ժամանեաց հասանել յամրոկ գործոյն պատերազմի լրացն պատրաստութեան ... մեծաւ տրտմութեամբ անցեալ եկեալ յաշխարհ իւր. իսկ 'ի գլուխ տարւոյն» դարձեալ զօրաժողով կը լինի Խոսրով և միայն քաջն Խոսրով, տասն տարի անընդհատ և անարգել և մի և նոյն կերպով կ'արշաւէ և կ'աւերէ Պարսից աշխարհն, առանց հռովմէական լեգէոններու օգնականութեան. և նորա շքեղ և պանծալի յաղթանակաց ժամանակամիջոցն է 228–237:

Կարծեմ՝ թէ չենք սխալիր, եթէ Գուտշմիդի հետ գոչենք, թէ կենսագրին այս նորանշան վարմունքն ուրիշ բան չի նշանակեր, բայց եթէ ազգային սնապարծութիւն. որով պատմութեան դէմ կը մեղանչէ: Հռովմէական լեգէոններն և հռովմէական կայսրն են աստ գլխաւոր գործ տեսնողներ, բայց նոցա անունն անգամ յիշուած չէ: Դիտելու է դարձեալ, զի կենսագրէն աւանդուած պատերազմին

սկիզբը կը համապատասխանէ Հերովդիանոսէն նշանակուած տարեթուին. սակայն վախճանն՝ անցանէ անդր քան զանդր 3 կամ 4 տարի: Դեռ աւելի զարմանալին, որ կենսագրի աւանդածները կասկածելի կ'ընէ, է այս. զի Պարթևաց և Մարաց դաշնակիցն և պաշտպանն Խոսրով, Արտաշրի բացակայութեան ժամանակ անտերունչ Պարսկաստանին ոչ կը տիրէ և ոչ պարթևական ցեղէն թագաւոր մի կը վերահաստատէ Արտաւանայ յանիրաւի կործանեալ գահուն վերայ. երբ թէ՛ առիթն և թէ՛ Արտաշիսի ցեղէն զատ ուրիշ երեք ցեղք ևս Պահլաւկաց՝ կը պահանջէին զայն. այլ լոկ աւարով ամէն անգամ գոհ եղած կը վերադառնայ 'ի Հայս:

Հայաստանի նուաճման մասին 'ի կողմանէ Պարսից, պատմագիրք[1] Հոռոմոց կ'աւանդեն, թէ կայսրն Փիլիպպոս յամին 244 խաղաղական դաշամբ ետ զայն Շապհոյ Ա զոյգ ընդ Միջագետաց. բայց յետ սակաւուց յետ առաւ իբրև իւր ինչ սեփական: Գաղղոսի ինքնակալութեան ժամանակ իսկ, այսինքն, է յամին 252–253, կ'աւանդէ Զոնարաս, ԺԲ. 21, համաձայն Դիոնի, թէ Պարսիկք երբ զՀայաստան գրաւելու վերայ էին՝ թագաւորն նոցա Տրդատէս՝ փախաւ 'ի կողմանս Յունաց, և նորա որդիքն անկան 'ի ձեռս Պարսից: Արդ այս երկու հեղինակութեանց երկաքանչիւր աւանդութեանն ևս մեծ կարևորութիւն տալու է, ըստ իս, զի այս յայտնի դիպաց կրկնակի յիշատակութեամբք՝ կրկին անյայտ եղելութիւններ կ'ակնարկեն Տրդատայ գահակալութեանց մասին:

Իսկ ըստ պատմագրին Տրդատայ, յամին 238, երբ Խոսրով դաւաճանութեամբ հօրեղբարցն և Արտաշրի սպանաւ, անդէն և անդ Հայաստան նուաճեցաւ յԱրտաշրէ և Հայոց թագաւորի մատաղ որդին Տրդատ փախստեամբ զերծաւ 'ի կողմանս Յունաց:

Արդ, աստի ևս կը տեսնուի, թէ արտաքին և տոհմային պատմագրութիւնք՝ իրարու կը հակասեն. ուստի երկոքեան իսկ 'ի միասին չեն կարող ճշմարիտ լինել. ուրեմն միոյն կամ միւսոյն աւանդածները պէտք է ու սխալ լինին: Սակայն արտաքնոց վկայութիւնը թէ՛ դահեկաններով և թէ՛ իրերաց համաձայնութեամբ՝ ամենէն ընդունուած և հաւատարմութեան արժանի իրողութիւն է և չէ մարթ առանց անխոհեմութեան մերժել զնոսա: Իսկ կենսագրին աւանդածներն կամ առանձնական և այլ ընդ այլոյ և կամ պարզապէս հայ ժողովրդեան զրոյցներ համարելի են: Բայց համարելով, թէ այս այսպէս ևս իցէ, դարձեալ չեմ համարձակիր մէկէն 'ի մէկ մերժել, առանց խորհրդակցութեան տոհմային միւս պատմագրաց:

Կոչենք առ այս՝ Հայոց հին պատմագրաց հայրը, Մ. Խորենացի, և լսենք նորա կարծիքը: Սա՝ իւր Պատմութեան Բ. գրոց ՀԱ և ՀԲ. գլուխներուն մէջ կ'աւանդէ Խոսրովու արշաւանքն 'ի Պարս՝ համաձայն գրոցն Ագաթանգեղայ, բայց կը յիշէ Հռովմայեցւոց կայսեր Փիլիպպոսի ձեռնտուութիւնն: Արդ Մովսէսի աւանդութեան վերջին մասը թէպէտ և սխալ է, այնու զի Աղեք. Սևերոս՝ էր ժամանակա-

1. Զոնարաս, ԺԲ, 19: – Եւագր, Ե, 7:

*կից Խոսրովու, և ոչ թէ Փիլիպպոս. բայց կը համաձայնի Զոնարասայ և Նեւազրի աւանդութեանն: Իսկ Խոսրովու մահուանէն վերջ հանդիպած դիպաց մասին ցթագաւորելն Տրդատայ՝ կը ծանուցանէ Մովսէս, թէ Փիրմիլիանոսի եկեղեցական պատմութենէն կ'առնու: Սակայն զարմանալի են նորա հետագայ խօսքերը, զի յետ ասելոյ ՀԵ գլխուն մէջ վասն Փիրմիլիանոսի, թէ «Գրէ բազում վկայեալս և 'ի Խոսրովու 'ի մերում աշխարհիս, համայն և յետ նորա օտարք յօտարաց», անդէն կը յաւելու. «Բայց զի* **ոչ ճշմարտութեամբ ստոյգ պատմէ**, *և ոչ զանուանս նշանակէ ... ոչ ինչ կարևորագոյն համարեցաք երկրորդել»: Սոյն բացատրութիւնս այլուր ևս ըրած է Մովսէս՝ Սարաբայ Մծուրնեցւոյն համար, լիբը թէ անոր իմն կակազէ վասն Հայկայ: Փոխանակ ասելոյ, թէ իմ՝ և իմ ազգայնոցս կարծեաց համաձայն չէ, այն պատճառաւ զանց կ'ընեմ: Արդ, զանուանս 'ի լռութեան թողած Փիրմիլիանոսէն՝ ինչպէս իմացաւ Մովսէս Հայոց թագաւորին Խոսրովու անունն և ազգանունն, որ վասն դիմած էր առ նա. այս անհասկանալի է: Ի՞նչպէս կարէր, դարձեալ, յամին 269 վախճանեալ խեղճ Փիլմիլիանոսը՝ յամին 284 թագաւորող Դիոկղետիանոսին և յամին 303 ուր ուրեմն նորա հանած հալածանաց պատմութիւնը գրել. այս անկարելի էր գլխովին՝ մեզ ծանօթ Փիրմիլիանոսի համար: Ցերկրորդ պարբերութեան մէջ՝ դարձեալ առաջնոյն հակառակը կը հաստատէ՝ ասելով. «Իսկ որ ինչ զկնի մահուան Խոսրովու մինչև ցթագաւորութիւն Տրդատայ 'ի ժամանակս անիշխանութեան պատմէ, ստոյգ համարելով երկրորդեմք»: Եւ իրօք Բ. Գրոց ՀԶ գլխուն մէջ կ'երկրորդէ, այսինքն է, կը յիշէ յանուանէ զՎաղերիանոս, Կղոդիոս, Աւրեղիանոս, Կիւնդոս, Տակիտոս և Փլոռիանոս. և ՀԷ գլխուն մէջ կը յիշէ զՊռոբոս, որ զՀայաստանը դաշամբ խաղաղութեան կը թողու Արտաշրի, որուն ապա 26 տարի ևս թագաւորել կու տայ Հայաստանի վերայ, ապա կ'ածէ 'ի հանդէս զՇապուհ «ցթագաւորելն Տրդատայ ամ մի»: ՀԹ գլխուն մէջ կը պատմէ Տրդատայ քաջագործութիւններն առ Լիկիանոսի: Ցայսմ ժամանակի կը թուէ զԿարոս, զԿարինոս, զՆոմերիանոս և հուսկ ուրեմն զԴիոկղետիանոս, որուն գահակալութեան երրորդ տարին, կ'ըսէ, թէ թագ կապեց Տրդատ և եկն 'ի Հայս:*

*Ինչպէս կը տեսնեն ընթերցողք, ոչինչ ընդհատ քան զպատմագիրն Տրդատայ՝ տխուր է և Խորենոյ ծերոյն մեզ ընծայած ժամանակագրութիւնը. բայց բաղդատ կը համարիմ ես զՄովսէս և նորա մեզի ներկայացուցած հռովմէական կայսերաց և Սասանեան թագաւորաց ցուցակը, որով պիտի պարզուի Ագաթանգեղեայ գրոց աւանդածին զաղտնիքն և սրբագրուի տոհմային պատմագրութիւնը: Դնենք Պարսից Վաղարշ թագաւորին ժամանակէն սկսեալ մինչև ցԴիոկղետիանոս՝ հռովմէական կայսերաց անուանց ցուցակին հետ՝ նաև նոցա գահակալութեան և մահուան ճիշդ տարեթիւքը, որոնց ստուգութիւնը դահեկանօք իսկ հաստատուած է, և սասանեան ժամանակակից թագաւորաց ցուցակը, զոր տան մեզ Ագաթիաս և Յ. Եղեսացի. և Վաղարշէն սկսեալ Արշակունի թագաւորաց ցուցակն մինչև ցՏրդատ, ըստ տոհմային պատմագրութեան:*

| Հռոմ. կայսերք | զահակ. | մահ. | Սաս. թագ. | զահակ. | մահ. | Արշ. թագ. | զահակ. | մահ. |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| կարակալլա | 211 | 217 ապրիլ | ... | | | Վաղարշ | 195 | 210՞ |
| Մակրինոս | 217 | 218 յունիս | ... | | | Խոսրով Ա | 210 | 260՞ |
| Անտ. Հեղիոգաբաղ | 217 | 222 մարտ | Արտաշիր Ա | 226 | սեպտ. 240–241 | ... | | |
| Աղեք. Սեւերոս | 222 | 235 աւգ. | ... | | | ... | | |
| Մաքսիմ. թրակացի | 235 | 238 մայ. | ... | | | ... | | |
| Անտ. Գորդիանոս Գ | 238 | 244 փետր. | Շապուհ Ա | 241 | սեպտ. 271–272 | ... | | |
| Ֆ. Փիլիպպոս | 244 | 249 սեպտ. | ... | | | ... | | |
| Դեկ. Տրայանոս | 249 | 251 հոկ. | ... | | | ... | | |
| Գաղղոս | 251 | 253 մայ. | ... | | | ... | | |
| Լիկ. Վաղերիանոս | 253 | 266 | ... | | | ... | | |
| Լիկ. Գաղիէնոս | 259 | 268 մարտ | ... | | | ... | | |
| Աւր. Կղոդիոս Բ | 268 | 270 հոկտ. | Որմիզդ Ա | 272 | սեպտ. 274 | ... | | |
| Լիկ. Դոմետ. Աւրեղ. | 270 | 275 մարտ | Վռամ Ա | 274 | սեպտ. 276 | ... | | |
| Կղոդ. Տակիտոս | 275 | 276 ապրիլ | | | | ... | | |
| | | | | | | Տրդատայ երթն 'ի մարտ | | |
| Աւրեղ. Պռոբոս | 276 | 282 աւգ. | Վռամ Բ | 276 | սեպտ. 293 | 'ի Պաննոնիա | | 282 |
| Աւրեղ. Կարոս | 282 | 283 դեկ. | Վռամ Գ | 0 | սեպտ. ... | » 'ի վերայ Պարսից | | 283 |
| | | | | | | Անցանէ 'ի լիւղ ընդ | | |
| Նոմերիանոս | 282 | 284 աւգ. | Ներսեհ | 293 | սեպտ. 300–302 | Նփրատ գետ | | 284 |
| | | | Որմիզդ Բ | 302 | սեպտ. 309 | ... | | |
| կարինոս | 282 | 285 մայ. | Շապուհ Բ | 309 | սեպտ. 379 | ... | | |
| Դիոկղետիանոս | 284 | 305 մայ. | ... | | | Տրդատ կը զահակալէ | | 286՞ |

Արդ, այս ցուցակէս տեսնուած Արշակունի թագաւորաց թագաւորութեան ժամանակամիջոցը, կամ լաւ ևս ըսելով, տոհմային պատմագրութեան ժամանակագրութիւնը բաղդատմամբ արտաքնոյն հին աւերակաց կամ կիսակործան շինուածոց կը նմանի. և գոգցես խմն առ՚ի չգոյէ այլոց թագաւորաց՝ ջանացեր են մերքս Խօսրովու կենաց տարիները երկնցնել, որպէս զի կամ ՚ի մոռացութեան դատապարտեալ մեզ անծանօթ թագաւորաց պակասը լեցուի, և կամ մի քանի այլ ընդ այլոյ իրողութիւններ մէջ բերելու աղագաւ: Ի՞նչպէս կարէր այլապէս մերս Խօսրով, որ Արտաշրի գահակալութենէն 10–12 տարի վերջ մեռաւ, ըստ Ագաթանգեղայ աւանդութեան, (այսինքն է, յամին 236 կամ 238) մինչև ցամն 260 ապրած լինել. և եթէ ապրած ևս համարինք, ի՞նչպէս կարէր Փիլիպպոսի օգնութեամբ Արտաշրի դէմ պատերազմներ մղել,. մինչդեռ Փիլիպպոս 244 ին դեռ նոր գահակալեց: Իսկ Արտաշիր 241 ին վախճանած էր: Ի՞նչպէս կարէր Արտաշիր, զկնի մահուան Խօսրովու, 26 տարի ևս առանց ընդհատութեան տիրել Հայաստանի, այս ինքն է, ցամն 262. մինչդեռ 241 ին վախճանած էր արդէն: Այս իսկ անհասկանալի է, թէ յամին 238–258 փախստական մանուկն Տրդատ, ի՞նչպէս կարէր սնանիլ և ուսանել առ կոմսին Լիկինիոսի, որ 263ին ուր ուրեմն ծնաւ ՚ի Դակիա ՚ի գեղջուկ ծնողաց, և 286 ին հազիւ կարէր զինուորիլ Դիոկղետիանոսի իբրև սովական զինուոր, քան թէ բարձրանալ ՚ի կոմսութիւն. այլ հաւանօրէն ՚ի պատերազմունս ընդդէմ Վռամայ Բի և Ներսեհի ընդունեցաւ Լիկինիոս կոմսութեան և այլ պատուանուանս: Հ. Ղևոնդ Ալիշան (Այրարատ էջ 374) երկիցս գահակալած կը համարի զՏրդատ. մի յամին 282 առ Պռոբոսիւ, որ պարտեաց զԱրտաշիր և զՎռամ. միւս ևս յամին 297 առ Դիոկղետիանոսիւ: Սակայն ստոյգ լինելով Տրդատայ առաջին գահակալութիւնն, այն ժամանակ թէ նորա մանկութիւնն և սնունդն ընդ խնամակալութեամբ Լիկինիոսի և թէ Պռոբոսի յամին 276–277 Արտաշրի հետ մղած պատերազմն և հաստատեալ դաշինքն անհասկանալի կը մնան. զի այդ ժամանակէն շատ յառաջ մեռած էր Արտաշիր: Զիարդ կարէր յամին 286 ՚ի Հայաստան վերադարձող Տրդատը անդէն և անդ Շապհոյ Ա. հետ չարաչար մարտ մղել, մինչդեռ Շապուհ Ա. յամին 272 վախճանել էր. իսկ Շապուհ Բ. յամին 309 հազիւ ուրեմն գահակալեց: Պարզ այս կէտերուս քննութենէն իսկ կը տեսնուի, թէ կարի մեծ է խորոցն՝ որ ընդ տոհմային և ընդ արտաքին պատմագրութիւնս, սանձուանդ հակասութիւնքը: Սակայն միւս կողմանէ մեծագոյն ևս է պատուարն քան զպարիսպս Չինաստանի, զոր ամբառնան ընդդէմ մեր Խորենացին և Տրդատայ պատմագրութեան հեղինակը, ոչ այնքան ճշմարտապատում իրողութեանց աւանդութեամբ, որքան իրենց ծանրակշիռ հեղինակութեամբը: Ի՞նչ ընելու է ուրեմն այսպիսի մի քննադատական պարագայի մէջ, երբ բազմադարեան աւանդութիւնն ինքնին իբրև զլէմ ծանրացած է ազգային սրտի և մտաց համոզման վերայ, և ընդհանրութեան կարծիքը, թէպէտև անճիշդ, թէպէտև հակասական, բայց յընթացս դա‿

րուց հայ ազգաբնակութեան մէջ խոր կերպով արմատացած է: Ես կը լսեմ, թող խօսի դրական գիտնականներէն մին, այսինքն է Նեօլդէքէ, որուն հեղինակութիւնը շատ աւելի մեծ է քան զատաջինն: Սա իւր վերոյիշեալ գործին մէջ, յէջ 18, կ'ըսէ թէ. «Պարթև կամ պահլաւիկ թագաւորաց ժամանակագրութեան մասին՝ հայ մատենագրաց տուած ընծայութիւնն յարգ չունի»: Նոյնը ցուցուցեր է Գուտշմիդ թէ Ագաթանգեղայ և թէ Մ. Խորենացւոյ պատմութեան քննադատութեանը մէջ: Եւ յիրաւի, այն ժամանակագրական մեծ սխալները կ'ընէ Մովսէս այս ժամանակիս կատարուած դիպաց մասին, զոր ինչ այլուր ըրած է զԿրասոսէ և զմերոյս Արտաշէսէ: Այնպէս որ Շապուհ Ա. ժամանակ կատարուած գործերն՝ մասամբ Արտաշրի ընծայուած են և ըստ մեծագոյն մասին Շապհոյ Բ. որ 70 տարի վերջկու գայ 'ի հանդէս: Այսպէս նաև Տրդատ Ա. ժամանակ կատարուած իրերը՝ դար մի վերջ եկող Տրդատին ընծայած: Ցուցնելու համար, թէ արդարև Շապուհ Ա. եղաւ Հայաստանի տիրողը և ոչ թէ Արտաշիր, շատ է երկու վկայութիւններ մէջ բերել: Դիոն Կասիոս (Mumil, II, 523) կ'աւանդէ, թէ թագաւորն Ֆէրուխան, որ էր ազգական կամ որդի Արտաւանայ՝ յետ մահու նորա ապաւինեցաւ 'ի Հայս, և նոցա հետ միանալով՝ մեծ վնաս հասուցին Արտաշրի. այնպէս որ նա ոչ միայն չկարաց նուաճել զՀայաստան, այլ նոյն իսկ Ատրպատականի տիրելն իսկ տարակուսական է: Բ. Նեօլդէքէ[1] Հանի–ազարի արձանագրութիւնքը մէջ կը բերէ, յորս Արտաշիր լինք զինքը լոկ «Թագաւոր Թագաւորաց Իրանի» կոչած է. իսկ Շապուհ որդի նորա. «Թագաւոր Թագաւորաց Իրանի և ոչ Իրանի» կոչուած է: Գ. Զոսիմոս (Գիրք Ա, ԺԹ.) Շապհոյ կու տայ աւելեան ազգաց, այսինքն, Պարթևաց և Հայոց տիրապետութիւնն: Ուրեմն իրն այսպէս լինելով, կ'ըսենք, թէ Տրդատայ կենսագրին յէջ 42 յԱրտաշրէ «փոխացուցեալ վհերն» և հաստատուած սահմաններն և Մովսիսի Բ. գլ. ՀԵ «արտաշիրական» կոչած քարերը պէտք է դարձեալ յանուն մերոյս Արտաշէսի կոչել արտաշիական:

Բազմահմուտ վարդապետն Զամչեան ինքնին՝ յետ երկայն վաստակոց և ջանից կը խոստովանի[2], թէ անմիաբանելի է Մովսիսի գործածած ժամանակագրութիւնն ընդ այլոց պատմագրաց: Բայց որով

1. Geschichte der Perser und Araber, p. 18.

2. Պատմ. հայոց հտ. Ա. էջ 605 կ'ըսէ. «Մի ինչ է որ բերէ զանհամաձայնութիւն մեծ. իբր զի Խորենացին զկարգ կայսերացն 20 ամօք 'ի վեր շարժէ. քանզի զայն ամ՝ զոր մատենագիրք կայսերաց համարին հինգերորդ ամն Աղեքսանդրոսի Մամեան, Խորենացին համարի իբր չորրորդ ամ Փիլիպպոսի կայսեր. յորոց միջի անցին ամք ի կամ ԻԱ. և ըստ այսմ կարգէ նաև զժամանակս այլոց կայսերաց ցՄեծն Թէոդոս և ցԱրկադէոս: Իսկ 'ի հասանելն 'ի սկիզբն կայսրութեան Թէոդոսի Փոքու՝ կարգէ համաձայն կայսերական ժամանակագրութեանց»: Արդ Զամչեանէն յիշուած՝ բայց ոչ քննադատուած այս վերջին կէտս՝ կը ցուցնէ, թէ Մովսիսի գործածած ոչ ժամանակագրութիւնն և ոչ պատմութիւնն են հասարակային, այլ իւր ինքեան միայն սեփական. ապա թէ ոչ՝ Փոքր Թէոդոսէն վերջ ևս պէտք էր միշտ 'ի վեր շարժել. այլ չի շարժեր, որովհետև աստի և անդր՝ կը հետևի ժամանակագրութեան և

հետև նոյն ինքն Զամչեան տոհմային աւանդութեան աւելի ուզած է կարևորութիւն տալ, այս կրկին հեղինակութեանց հնութեան վերայ հիմնուելով, քան թէ արտաքին պատմագրութեան, որ դահեկանօք կը խօսի և այլ շօշափելի յիշատակարանօք, այն պատճառաւ իսկ նորա յօրինած ժամանակագրութեամբ ևս չէ մարթ կատարեալ համաձայնութիւն մի կազմել ընդ այս և ընդ առաջնոց:

Արդ, ըստ իս, պէտք է խոստովանել, թէ Արտաւանայ կամ Խոսրովու մահուանէն ցգահակալութիւն Տրդատայ (զոր ես կ՚ախորժեմ, մանաւանդ թէ ստիպուած իսկ եմ Գ. անուանել) եղած ժամանակամիջոցին՝ Հայաստանի պատմութիւնը գլխովին տարբեր կերպարանք և հանգամանքներ ունեցած է, քան զոր ընծայեն մեզ Տրդատայ կենսագիրն և Խորենացի. և թէ զայն ճիշդ ներկայացնելու համար՝ պէտք է ընդունել արտաքին պատմագրութեան աւանդածները, որով միայն վերոյիշեալ երեք ազգաց ժամանակակից թագաւորք և դէպք ինքնին ճշգրիտ արարուածովք և տարեթուովք պիտի կարենան իրարու համաձայնիլ և զուգընթանալ:

Արդ, ըստ արտաքին պատմագրութեան [1], առ Սեպտ. Սևերոսիւ, այսինքն է 195–210, Վաղարշ (որդի Սոյեմայ) թագաւորն Հայոց միաբանելով ընդ համանուն թագաւորին Պարսից՝ կ՚ասպատակէին Հռովմայեցւոց տէրութեան սահմանները, երբ կայսրը պատաղեալ էր յԱրևմուտս՚ի մարտ պատերազմի իւր նախանձորդին Աղբինոսի հետ. բայց երբ յաջողութեամբ խաղաց Սևերոս անդրէն յԱրևելս, թագաւորն Հայոց աճապարեց ընդ առաջ, և գանձիւք և պատանդներով, ընդ որս էր և թագուհին Հայոց մայր Տրդատայ Բ, հաշտութիւն խնդրեց, տալով նմա և զգունդս ՚ի քաջ աղեղնաւորաց Հայոց: Եւ ըստ ասելոյ Դիոնի, ՀԵ, Վաղարշու գերեալ եղբայրը կամ զորդին՝ Արտաւան թագաւոր կը դնէ Ծոփաց, և ինքը Հայոց աղեղնաւորօք կը մտնէ ՚ի Պարթևաստան, կը գրաւէ զՄիջագետս և կ՚աւերէ [2] զՏիզբոն: Սակայն յամին 226, երբ Սևերոսի որդին Կարակալլա Պարթևաց թագաւորին Արտաւանայ Դ. դէմ պատերազմ բացաւ, զի իւր դուստրը չետ նմա կնութեան, և ուզեց զՀայաստան առնել մարզ Հռովմայեցւոց, այն ժամանակ զայրացաւ նաև թագաւորն Հայոց Վաղարշ, որ էր ազգական Արտաւանայ: Կարակալլա անկաւ ՚ի նմին պատերազմի. բայց նորա յաջորդը Մակրինոս՝ խաղաղութիւն ընելով թագ ևս ղրկեց Տրդատայ՝ (նորա մօր ձեռքով, որ 11 ամսէ ՚ի վեր պահած էր ՚ի դիպահոջ) թագաւորելու փոխանակ հօրն, որ յամին 217 մեռաւ ՚ի կալանս: Այս Տրդատս, որ տոհմային

պատմութեան մատենագրացն Յունաց: Ուստի ինչպէս Մովսիսի՝ այսպէս ևս Տրդատայ կենսագրին աւանդած ժամանակագրութեան պատմութեան համար ըսելու է, թէ իրենց միայն սեփական է և ոչ Յունաց կամ Հռովմայեցւոց:

1. Հերովդիանոս, Գ. գլ. 73: – Զոսիմոս, Ա. 8:

2. Զայս յայտնապէս կը վկայեն Դիոն, Հերովդ. Դ. 10, 1: Սպարտիանոս, 6: Եւտրոպիոս, Ը, 11: Հռուփինոս, 21: Սևերոսի այս դէպքն է անշուշտ, զոր Տրդատայ կենսագիրը մեծին Խոսրովու վերայ յարմարցուցել է՝ ասելով. « Մինչև ՚ի դրունս Տիզբոնի» ;

պատմագրութեան մէջ անծանօթ է և ուրեք երբէք վրան խօսուած չէ, մեծագոյն ուշադրութեան արժանի է. և ես կ'ախորժեմ կոչել զնա **Տրդատ Բ**, զի առաջինն՝ եկաց առ Ներոնիւ, որ և Տիրիթ ևս կը կոչուի: Գլխովին պատմական համարելու է սորա գոյութիւնն, և չէ ինչ անտեղի դնել զնա անմիջական յաջորդ Վաղարշու, քան զԽոսրով Ա: Այս կէտս տակաւին պիտի պարզենք 'ի յետագայն: Եւ յիրաւի, հետագայ դէպքն իսկ կը թուի պահանջել զայս. այսինքն է, յամին իմր 221–222 ուր ուրեմն, ըստ վկայութեան Պրոկոպիոսի[1], Արտաւան Դ. վերջին ճետ պարթևական հարստութեան 'ի Պարսս, կը թագաւորեցնէ զեղբայր իւր զ**Արշակ** 'ի թագաւոր Հայոց, յետ մահուան Տրդատայ Բ, և թէ առ նա ապաւինեցան ազգականք Արտաւանայ յետ մահուան նորա: Սոյն Պրոկոպիոսի յիշած Արշակն իբրև հասարակ անուն առնելու ենք աստ, ըստ սովորութեան պատմագրաց Յունաց ևս և Արշակունեաց. բայց նորա յատուկ անունն էր **Խոսրով** (Ա.): Այս բանիս քաջ կը համաձայնին թէ՛ Պրոկոպիոսէն նշանակուած ժամանակամիջոցն և թէ՛ հանգամանք տոհմային պատմագրութեան, ըստ Ագաթանգեղոսեան գրոց:

Արդ ինչպէս Արտաւանայ մահը՝ անհաշտ թշնամի յարոյց զԽոսրով ընդդէմ Արտաշրի և նիզակակից կայսերն, այսպէս և Խոսրովու մահը՝ թշնամի րրաւ զՀայս Պարսից միով մասամբ, բայց միւսովն նիզակակիցս Հռովմայեցւոց՝ մինչև զՓիլիպպոս: Այնպէս որ կարելի է ասել, թէ Խոսրովու մահը որ հանդիպեցաւ հաւանօրէն 238 ին[2], Հայաստանի վերայ այնքան աղետալի հետևանքներ չունեցաւ, որքան որ կը նկարագրէ մեզ Տրդատայ կենսագիրն, զի պաշտպանեալ էր 'ի Հռովմայեցւոց. և ըստ Հերովդիանոսի Է. գլ. Բ, և Զոսիմոսի՝ նոցա քաջ աղեղնաւորքն հռովմէական լեգէոնաց հետ պատերազմներ ևս կը մղէին: Սակայն յամին 248–252 յաջորդն Գորդիանու, չկարենալով այլազգ դէմ դնել Շապհոյ Ա, որ կը սպառնայր տիրել հռովմէական սահմաններուն, Հայաստանը զօրութեամբ դաշին առաջին անգամ եղաւ հարկատու Պարսից. և Շապուհ յամին 253 Խոսրովու ազգականներուն հետ եմուտ 'ի դաշն՝ տանել 'ի բաց զմատաղատունկն Տրդատ Գ. իբրև սպասող և տիրել Հայաստանի: Այս է ժամանակակէտ տարման Տրդատայ 'ի տար աշխարհ. բայց թէ ո՛ւր տարուեցաւ. արդեօք յարքունիս արքային Պարսից թէ կայսերն Հռովմայ, յայսմ չեն միաբանիր տոհմային և արտաքին պատմագրութեանց աւանդածներն. թէպէտ և ինձ առաջնոյն վկայութիւնը բանաւոր կ'երևի, զի յաղթողը Պարսիկք էին: Այս միայն ստոյգ է, թէ քիչ ատենէն դարձեալ Հայոց զօրեղ կուսակցութիւնը՝ Հռովմայեցւոց կողմը բռնեց, ունելով իւր բնիկ թագաւորն, իսկ միւս կուսակցութիւնը յամին 260–270, ըստ վկայութեան Տրեբ. Պողիոնի, Դ, հակառակ կայսերն Վաղերիոսի՝ Շապհոյ ձեռք ևս կը

1. Գիրք Գ. Յաղագս շինութեանց Յուստինիանոսի:
2. Իսկ Հ. Ղևոնդ Ալիշան (Այրարատ, էջ 374) յամին 258 եղած կը համարի:

կարկառէ: Բայց թէ ո՞վ էր այդ թագաւորն, մանո՞ւկն Տրդատէս, թէ Արտաւազդ Գ (Մանդակունի) զոր Մ. Խորենացի և կենսագիրս՝ Տրդատայ հետ 'ի կողմանս Յունաց կամ առ Հռովմայեցիս փախուցեալ կը համարին: Առաջինը անհաւատալի կ'երևի, եթէ յամին 253 տակաւին ստնդեայ համարինք զնա: Արդ եթէ Տրդատայ առաջին փախուստն կամ տարումն եղաւ ստուգիւ 'ի Պարսս, ոչ 'ի ստնդեայ հասակի, այլ յետ առաջնոյ գահակալութեան, շատ հաւանական է, թէ նորա առաջին գահակալութիւնն իսկ Պարսից կողմանէ եղած լինի: Բայց յետոյ ուրեմն կամ իւրական պարտութեամբ և կամ 'ի կողմանէ Պարսից պատանդ ղրկուեցաւ առ կայսրն: Արդ այսպիսի մի եղելութեան կը վկայեն նաև համգամանք յայնժամու պատմութեան Հայաստանի. զի առ Վոպիսկոսի[1] կը գտնենք, որ յամին 271 կը պատերազմին Հայք ընդ դրօշու ամազոնական թագուհւոյն Զենոբիայի և կը պատերազմին ընդդէմ Հայոց և Հռովմայեցւոց, ինչպէս կ'ակնարկեն հեղինակիս 28 գլխահամարին վերջին խօսքերը: Ուստի կը տեսնուի, թէ այդ ժամանակ Հայք երկու կուսակցութեանց բաժնուած էին, որոնց մին ձեռք կը կարկառէր Հռովմայեցւոց՝ առ Աւրելիանոսիւ, 600 աղեղնաւորօք Հայոց, իսկ միւսը կը հակառակէր նոցա. ուստի բնական է կարծել, թէ հակա–հռովմէական կուսակցութեան վերայ թագաւորողն օտարազգի ոմն էր և ոչ Արտաւազդ, այսինքն է **վաբալան** որդին Զենոբիայ, որուն ձեռք ևս կարկառեցին միացեալ ընդ Մարաց և Պարսից:

Այս ժամանակիս սկսաւ Գթաց և Սարմատաց արշաւանքն 'ի փոքրն Ասիա և անդր իսկ, որոնց դէմ պատերազմելով ինկաւ Ոդենատոս: Այս ժամանակամիջոցին կը դնէ Տրդատայ կենսագիրը՝ նորա դիւցազնական արութիւնքը, մերթ ընդդէմ Գթաց և մերթ ընդդէմ Պարսից. – մենամարտութիւնը – թագապսակ վերադարձն 'ի Հայս – անհեղ պատերազմներն և աւերմունքը, զորս կը գործէ յերկրին Պարսից: Սակայն նոցա այնքան հաւատք ընծայելու ենք որքան Խոսրովու վերայ պատմածներուն. զի ըստ իրին ոչ այլ ինչ են՝ եթէ ոչ Կարոսի յամին 283 և Գաղերիոսի յամին 295–297, Ներսէհի Պարսից թագաւորին դէմ մղած պատերազմներն և յաղթութիւններն: Տրդատայ մանկութիւնն 'ի Հռովմ անցնելուն վերայ ոչ արտաքին պատմագրութեան մէջ և ոչ նորա կենսագրի քով որոշ տեղեկութիւն կայ: Առ Եղիշէի եղած վկայութիւնն՝ ուղղակի Կոստանդիանոսի ժամանակի երթը կը նշանակէ: Ըստ Ե. Սինկելլոսի՝ **ժամանակագրութեան** էջ 705, Գթաց արշաւանքն՝ եհաս մինչ 'ի սահմանս հռովմէական պետութեան և ոչ թէ 'ի Հռովմ: Կենսագիրը գլխովին մէկդի թողած Տրդատայ թագաւորելուն քաղաքական բուն պատճառներն և համգամանքը, Գթաց թագաւորին Հռչէի հետ ըրած մենամարտութիւնն՝ որ ոչ համդիպած և ոչ յիշուած է յարտաքին պատ_

1. Aurel. 27. " Nobis Persarum auxilia non desunt, quæ jam speramus, pro nobis sunt Saraceni, pro nobis *Armenii.* Եւ 28, " Nam et auxilia quæ a Persis missa fuerant, intercepit et alas Saracenas *Armeniasque corrupit*".

մագրաց, իբրև բուն պատճառ մէջ կը բերէ: Սակայն այն մեծամարտութեան նկարագիրը քաջ քննելով կը տեսնուի ակներև, թէ ոչ այնքան մեծամարտութիւնն եղաւ պատճառք Տրդատայ թագաւորելուն, որքան թագաւորելը՝ Տրդատայ կենսագրի մեծամարտութեան դրուագին: Ցիրաւի, մեծամարտելու համար ի՞նչ հարկ կայ «արկանել զանձամբ զնշան թագաւորութեան (աղամանդ)». ուրիշ շատ մեծամարտութեան օրինակներ ևս կ'ընծայէ մեզ պատմութիւնը, բայց նկարագրելով զզէնս և ոչ զթագն ադամանդակապ:

Ց. Մալալա իւր Ժամանակագրութեան ԺԲ գրոց մէջ կ'աւանդէ թէ «Imperator Probus. bellum adversus Gothos in Sirmia habuit, quo tempore fames ingens per totum orbem grassata est»: Տրդատայ կենսագիրն յէջ 45–46 բոլորովին յեղաշրջելով զայն՝ «խարի, համբարապահաց և լիշենոյ» պատմութիւնն հնարած է յանձին Տրդատայ, որուն անտեղութիւնն անանուն քաղաքի բացատրութենէն իսկ քաջ կը տեսնուի: Երկրորդ, Թէոփանէս՝ 'ի Ժամանակագրութեան իւրում Կոստանդիանոսի համար կը պատմէ այսպիսի մի քաջագործութիւն 'ի Գաղղիա ընդդէմ Ալանաց, բայց յամին 288: Սակայն դիտելու ենք որ միայն այս կէտս չէ, յորում Կոստանդիանոսի գործերն և առանձնայատկութիւնքը կը՛ զուգընթանան ընդ Տրդատայ, կամ լաւ ևս ըսելով, կենսագիրս սեփականած է իւր դիւցազին. այլ նոյն իսկ հռովմէական դիւցազին հսկայազօր զօրութիւնն – Սարմատացւոյ դէմ ըրած մենամարտութիւնն – նորա առաջին կենաց քաջակորով մրցութիւնքն – առիւծուց և ցլուց հետ ունեցած ընդդիմադրութիւնքն – երիվարաւ ճահիճներէն անցուդարձն – նորա բազմամեայ պանդխտութիւնն առ դրան Դիոկղետիանոսի իբրև պատանդ – վերադարձն 'ի հայրենիս – անցնիլն 'ի գլուխս զօրաց և գոռ պատերազմներն: Արդ բոլոր այս քաջադիպութիւնքս անկարելի է դիպուածական համարել. այլ պէտք է ասել, թէ Տրդատայ կենսագիրն՝ ուղղակի Կոստանդիանոսի կենսագրութենէն առած է այս ամենայն, ինչպէս նաև Կոստանդիանոսի մասին պատմածներն, զորս յետոյ պիտի տեսնենք: Արդ համարելով իսկ, ըստ տոհմային պատմագրութեան, թէ իրօք Տրդատ 'ի Յոյնս տարուած ըլլայ, ես կը կարծեմ թէ Նիկոմիդիա եղած լինի նորա բնակավայրը. զի աստ էր այն ժամանակամիջոցին աթոռն կայսեր (Դիոկղետիանոսի): Բ. ըստ վկայելոյ Խորենացւոյն՝ Բ. գլ. ՁԳ. աստ ծանօթացաւ Տրդատ ընդ Կոստանդիանոսի, որ նոյնպէս տարագիր 'ի հօրէն՝ կ'անցնէր իւր գեղեցիկ օրերն յօտար երկրի:

Կենսագրի աւանդածներուն վերայ ըրած այս համառօտ դիտողութենէն վերջ՝ դնենք այժմ Տրդատայ թագաւորութեան քաղաքական բուն պատճառն: Ամմ. Մարկելլոս, ԺԳ. 5, 11 կ'աւանդէ, թէ (յամին 295–297) թագաւորն Պարսից Ներսեհ պատերազմ բացաւ Հռովմայեցւոց նիզակակից Հայոց դէմ: Արդ, այս դէպքս կը ցուցնէ մեզ, թէ Շապհոյ Ա մահուամբը՝ Հայք դարձեալ Հռովմայեցւոց կողմն անցան, ուզելով 'ի կայսերէն զԱրշակունին Տրդատ՝ իրենց թագաւոր, կամ լաւ ևս ըսելով, այս ժամանակիս Տրդատեանք աւելի

զօրացան: Սոյն պատերազմը թէպէտ և 'ի սկզբան ձախող եղաւ, բայց 'ի վախճանի բարեբաստ ելք ունեցաւ Հայոց համար. որովհետև ըստ վկայութեան պատմագրաց[1] Յունաց, Դիոկղետիանոսի զօրավարին Գաղերիոսի վճռական յաղթութեամբը՝ ստիպուեցաւ Ներսեհ խաղաղութեան դաշն խնդրել, որոյ պայմաններէն մին եղաւ Հայաստանի անկախ թագաւորութիւնն, ուննահմանը պիտի լինէր, ըստ ասելոյ Պետրոսի Պատերգուղոսի[2], Մարաց դրակից Զենթայի ամրոցը: Կ'երևի, թէ այս բաղդախնդիր ճակատամարտիս մէջ տիրապարգևն Տրդատ ևս մեծ գործ տեսաւ, ունելով զկողմն ինքնակալին Հռովմայեցւոց. և Տրդատայ կենսագրի՝ յէջ 35 աւանդածը թէ, «Մանաւանդ աւար առեալ զամենայն երկիրն Տաճկաց՝ դարձայ», սոտ միայն կր ճշմարտի. վասն զի Գաղերիոս իւր Մակագրութեանցը[3] մէջ բաց 'ի Պարսից դէմ տարած կրկին յաղթութիւններէն՝ նոցա կուսակից Մարաց, Ադիաբենաց և Հայոց վերայ տարած յաղթութեամբ և տիտղոսներով ևս կը պարծի: Հուսկ ուրեմն, ըստ համաձայն վկայութեան արտաքին պատմագրութեան, իբրև արդիւնք վերոյիշեալ խաղաղական դաշին խաղաղութիւնաբերին Տրդատ, յամին 297 հաստատուեցաւ, ձեռնտուութեամբ հռովմէական կայսեր, յաթոռ կործանեալ կամ լաւ ևս լքեալ և բաժանեալ թագաւորութեան Արշակունեաց, իբր դաշնակից թագաւոր Հռովմայեցւոց: Եւ ըստ հաւաստարիմ վկայութեան ծանրակշիռ հեղինակութեանց[4], Պարսից թագաւորը հրաժարեցաւ այնուհետև Հայոց վերայ ունեցած գերիշխանութենէն: Այնպէս որ Տրդատայ այս գահակալութեանս անմիջապէս յաջորդեցին խաղաղաւէտ տարիներ[5], և ոչ թէ ըստ այլընդայլոյ աւանդութեան կենսագրին «Զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեան աւերէր քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեան». որովհետև եթէ իրօք ուզէր ևս հսկայազօրն Տրդատ՝ չէր կարող իւրովի պատերազմ բանալ, առանց դրժելոյ 40 ամեայ դաշին, զոր եդ կայսրն Դիոկղետիանոս ընդ արքային 'ի Մծբին: Այսպէս ուրեմն պէտք է ողջունել զՏրդատ թագաւոր խաղաղութեան, քան թէ ընծայել նմա ստայօդ պատմութիւնս՝ լի օդաչու յաղթանակօք ընդդէմ Պարսից: Վասն զի Տրդատայ պատերազմներն շատ տարիներ վերջ տեղի ունեցան, և էին գլխաւորապէս ընդդէմ Հիւսիսայնոց և պաշտպանողականք. որոց մասին այլուր առիթ կ'ունենանք խօսելու:

1. Եւտրոպիոս, Թ, 25: Ռուփինոս, 25:
2. Առ Միւլլէրի, հատ. 14:
3. Եւսեբ. Եկեղ. Պատմ. Ը. 17:
4. Զոսիմոս, Եւտրոպիոս, Ամմիանոս և Եւսեբիոս, գիրք Ը, գլ. ԺԸ:
5. Յերոնի, Վիկտոր, De Cæsaribus, Փեստոս, in Breviario և Լիբանիոս, in Basilico կր վկայեն, թէ յամին 297 Ներսեհի հետ դրուած այդ դաշինքն՝ իւր պայմաններով հանդերձ պահուեցաւ մինչև ցամն 337, առ Կոստանդեաւ: Ուստի պահուած չպիտի լինէր, եթէ ըստ Կենսագրին Տրդատայ պատերազմներն ստուգիւ կատարուած համարինք. որովհետև գլխաւոր պայմաններէն մին էր Հռովմայեցւոց նիզակակից Հայաստանի անկախութիւնն և խաղաղութիւնն;

Այս է ահաւասիկ Վաղարշէն մինչև Տրդատ Գ. Արշակունեաց Պատմութեան և Հայաստանի կացութեան բնական վիճակը, զոր աւելի լաւագոյն կերպով կարելի էր պատկերացնել, եթէ ձեռնարկած գրութիւնս ինձ թոյլ տայր: Աստ՝ որքան որ այլազգ են իրք յաւանդելոցն 'ի տոհմային պատմագրութեան, նոյնքան ևս բնական կերպով կ'ընթանան. և ամք թագաւորաց և գործք՝ ժամանակագրական կերպով իսկ գեղեցիկ կը զուգընթանան ընդ ժամանակագրական պատմութեան և գործոց կայսերաց և Սասանեան թագաւորաց: Այսու կը լրանայ Արշակունի թագաւորաց պակասաւոր ազգացուցակը՝ ներմուծմամբ միոյ կամ երկուց անյայտ թագաւորաց, որոնց ներկայութիւնը միայն 'ի պատմութեան բաւական էր փոխել իրաց վիճակը: Այսու դարձեալ կը յայտնուին տոհմային հին աւանդութեանց անյարմար կիրառութիւնքը, որոնց մի մասը 'ի կենսագրէն Տրդատայ և միւսն 'ի խմբագրողէ պատմութեանս պէտք է ներմուծուած համարել: Յիրաւի, որքան անյարմար է և հակապատմական մտածել զԽոսրով յամին 210, իբրև անմիջական որդի և յաջորդ Վաղարշու, և տալ նմա բազմաթիւ արշաւանքներով աւերել զՊարսկաստան մինչև ցամն 260, նոյնքան ևս բանաւոր է դնել յամին 217 զՏրդատ Բ. իբր հարազատ որդի և յաջորդ նմին իսկ Վաղարշու, և ընդ Սեպտ. Սևերոսի տալ արշաւել մինչև 'ի դրունս Տիզբոնի. և հուսկ ուրեմն յամին 222 ածել 'ի հանդէս զորդին Տրդատայ Բ. զԽոսրով Ա. և զոյգ ընդ Աղեք. Սևերոսի տալ պատերազմել ընդ Արտաշրի և յաղթել:

Արդ, Տրդատայ Բի գոյութեանը, զոր տոհմային պատմագրութիւնը շփոթեր է ընդ նորա թոռան Տրդատայ Գի և քրիստոնեայ մեծ թագաւորին հետ, մի այլ ապացոյց կարելի է մէջ բերել Հայոց պարթևազն թագաւորաց ազգագրական ցուցակը, զոր կ'ընծայէ մեզ նոյն ինքն տոհմային պատմագրութիւնը հակառակ իւր: Աստ կը տեսնենք արդարև, զի Տրդատայ Գի որդին փոխանակ իւր հօր անուան՝ որուն անմիջապէս կը յաջորդէ, պապուն անուամբ Խոսրով կը յորջորջի: Այս բանս դիպուած կամ սոսկ երևոյթ չէ, այլ պատմական իրողութիւն, որ կը ցուցնէ, թէ Պարթև–Արշակունի թագաւորաց սովորութեան համեմատ ընդհանրապէս թագաւորող հօր որդին՝ պապուն [1] անունը կը կրէր. որպէս զի մէկ կողմէն առ կենդանութեամբ հօրը՝ շփոթութիւն չլինի. միւս կողմէն այլ 'վախճանեալ պապուն անունն իբրև ընտանեկան մականուն պահուի: Այս

1. Ստուգիւ, այսպիսի մի եղելութեան շօշափելի ապացոյց մի ևս կուտան մեզ Զենոբայ պատմագրութեան երկու ընտիր օրինակներ, այսինքն է, Ն երորդն և Դ րորդ գրչագրերն. յորս խօսելով Անակայ որդւոյն Սուրենի մասին այսպէս կ'ըսուի. «Իսկ միւս մանուկն որոյ զպապունն էին եդեալ Սուրէն», այսինքն է զանուն պապուն իւրոյ: Դ օրինակը բաց աստի մի ուրիշ նուիրական իրողութիւն ևս կը յայտնէ մեզ յոյժ նպաստաւոր. այսինքն է, մեր Լուսաւորչին սուրբ մկրտութեան և յունական անուան առընթեր, նորա հեթանոսական և պարթևական ազգանունն և անունն ինքնին մէջ կը բերէ, ասելով այսպէս. «Եւ մկըրտեալ՝ Գրիգոր, զոր մայր և հայր նորա Անակշատ–Սուրէն կոչէին»:

*պէս ուրեմն նաև քրիստոնեայ թագաւորին՝ Տրդատ անուանակոչութիւնը՝ մատնանիշ կը ցուցնէ մեզ, թէ նորա պապն ևս Տրդատ կ՚անուանէր:*

*Գուտշմիդ՝ նախկին Խորենացի մի գոյութիւնն ևս հարկաւոր կը տեսնայ և ջանացած իսկ է ապացուցանել զայն ՚ի Թեբէ գտնուած մեմնոնեան կոթողի հետևեալ արձանագրութիւնը.* Χοσρόης ʼΑρμένιος ἰδὼν ἐθαύμασα: *Ցիրաւի, թէ քիչ առաջ յիշուած՝ ազգացուցակէն և թէ արտաքին պատմագրութենէն կը տեսնուի այսպիսի մի թագաւորի պակասաւոր միջոցը. սակայն ես չեմ կարծեր, թէ գերմանացի քննադատէն մէջ բերուած և լուսաբանած այդ արձանագրութիւնն՝ իրօք այն հնութիւնն ունենայ, որուն ուզած է տալ Գուտշմիդ: Այլ հաւանօրէն յետին ժամանակի հայազգի ճանապարհորդի մի գրութիւն ըլլալու է. որովհետև թագաւորական տիտղոսը կը պակսի:*

*Արդ, ցայսվայր եղած քննութիւնք կը ցուցնեն, թէ Տրդատայ կենսագրին մեզի աւանդածներէն ոմանք ըստ կամս յերիւրեալ են, և այլք յեղաշրջուած, ըստ ժողովրդական վիպագ և զրուցաց Հայոց. իսկ ընդհանուրին ընթացքը՝ հակառակ է արտաքին պատմագրութեան Յունաց և Հռովմայեցւոց. իսկ որովհետև յոյն կամ հռովմայեցի պատմագիր մի չէր կարող իւր ազգային պատմագրաց ընդհանուր աւանդութենէն դուրս բոլորովին տարբեր բաներ աւանդել և տարբեր ժամանակագրութիւն գործածել, ուրեմն եզրակացութիւնս ամենուն հասկանալի է: Ահաւասիկ միւս այլ շօշափելի ապացոյց Հռովմայեցի Ագաթանգեղոսի կամ Տրդատայ ատենադպրի անգոյութեան:*

## ԳԼՈՒԽ Ե.

Ս. Գրիգորի գործոց կամ կենսագրութեան սկզբնաւորութիւնն և պարագայք. — Տրդատայ պատմութեան նորա հետ առնչուած կող ՚ի կող ընթացքն. — Երկուքին մէջ եղած տարբեր բնագրերն և հակասութիւնները. — Այլ ընդ այլոյ յարմարուած հայկական հին վէպեր. — Արտաշատու բանտին դղեակն և նորա գաղտնիքը. — Ո՞վ էր այրի կինը. — Բամբիշն հայ վիպասանութեան և նորա գոյութեան և կենաց խորհրդաւոր հանգամանքը:

Ի 49 *իջէ անուի ցէջն* 103 *բունած միջոցը՝ կը պարունակէ Ս. Գրիգորի գալուստն ՚ի Հայս ընդ Տրդատայ — նորա քրիստոնեայ յայտնուիլն — թագաւորին հետ ըրած փոփոխ տրամախօսութիւնքը — անտանելի չարչարանքներն և վարդապետութիւնն — և արկանիլն ՚ի խոր վիրապն Արտաշատու:*

*Ե. գլխահամարին Ա. պարբերութիւնը՝ գրեթէ կրկնութիւն է նախընթաց պարբերութեանը՝ յորում կենսագիրը կը ծանուցանէ թէ,*

« Խաղաց գնաց թագաւորն (Տրդատ) ՚ի կողմանս Հայոց ... եզիտ զզօրս Պարսից, զբազումս կոտորեաց և զբազումս փախստականս արարեալ, և զհայրենեաց տէրութիւնն յինքն նուաճեաց » : Իսկ յայսմ՝ վերստին կը ծանուցուի, իբր ՚ի դիմաց այլոյ ուրումն, նորա գալուստն, այնպէս իբր թէ առաջնոյն մէջ բնաւ ծանուցած չլինէր, յասելն. « Յառաջին ամին Տրդատայ արքայութեան Հայոց մեծաց, խաղացին եկին հասին յնկեղեաց գաւառ » : Արդ դիպուածով եղած չէ ամենևին այս կրկնութիւնս. ինչպէս դիպուածով չէ յէջ 42 Ս. Գրիգորի և Տրդատայ ՚ի նմին[1] ժամանակի ՚ի կողմանս Յունաց փախստեան հատուածին ներմուծումը, և յէջ 43 Յունաց կայսեր հալածանաց միջանկեալ հատուածը : Այլ դիտմամբ կանխել է հատուածիս հեղինակը յէջ 42 կամուրջ մի կապել դէպի առ Պատմութիւն Գրիգորի, որ կը սկսի յէջ 42, Բ պարբերութեամբս « իսկ որդի Պարթևին » և այլն, և յառաջ կը վարի 49 իջումը : Այսպէս նաև կայսեր հալածանաց յիշատակութեամբը՝ կը պատրաստէ զմիտս ընթերցողաց առ պատմութիւն հալածանաց և չարչարանաց Գրիգորի, որում հեղինակը՝ Տրդատայ պատմութեան և միջանկեալ հատուածոցս հեղինակներէն տարբեր է :

Արդ ցուցնելու համար, թէ Ն. գլխահամարին Ա. պարբերութեան կամ Գրիգորի գործոց հեղինակը նոյնը չէ յէջ 42 պարբերութեան երեք տող հատուածին, որ է, « Արդ երթեալ սնեալ և ուսեալ Տրդատէս առ կոմսի ումեմն Լիկիանէս անուն կոչեցեալ », յէջ 43 Բ. պարբերութեան՝ որ կը սկսի, « ընդ ժամանակսն ընդ այնոսիկ իշխանն Յունաց » և այլն. և յէջ 48 Գ. պարբերութեան հատուածին՝ որ կը սկսի, « Եւ յետ մարտին յաղթութեան » և այլն հեղինակին հետ, բաւական են հետևեալ դիտողութիւնքը. Ա. Դիտելու է, որ 48–49 էջ պարբերութեան հեղինակը՝ Տրդատայ գալուստն ՚ի Հայս, Պարսից հետ տուած պատերազմներով և կոտորածներով կը նկարագրէ, որ սուտ է և գլխովին հակառակ այտաքին պատմագրութեան, զոր ՚ի վեր անդր ցուցինք : Իսկ Ն. գլխահամարի Ա. պարբերութեան հեղինակն, ընդհակառակն, ոչ միայն առանց պատերազմի կը պատմէ Հայոց նորապսակ թագաւորին մուտքն ՚ի Հայս, այլ և ոչ իսկ Պարսից սահմանները կը մոցնէ : Եւ այս կարի ճշմարիտ է : Յիրաւի, Փոքր Ասիայէն կամ ՚ի Նիկոմիդիոյ՝ (ուր էին արքունիք Դիոկղետիանոսի և ուրանօր կատարուեցաւ Տրդատայ թագաւորութեան հանդէսն) եկող Տրդատն՝ ինչպէս կրնար ՚ի Պարսկաստան մտնել, առանց անցանելոյ նախ յնկեղեաց գաւառ : Բ. 43 իջում յիշուած անանուն կայսրն, եթէ էր ստուգիւ Դիոկղետիանոս, չէր կրնար Տրդատայ թագաւորութեան տարեթուէն, այսինքն է,

1. Այս բանս ամենևին պատմական հիմն չունի. որովհետև Գրիգորի և Տրդատայ հարց մահը թէպէտև մի և նոյն տարին կը լինի, բայց ոչ նոյնպէս և նոցա տարումն ՚ի կողմանս Յունաց ։ վասն զի, ինչպէս տեսանք, Խոսրովու մահուամբը Հայաստան անդէն և անդ չնուաճեցաւ յԱրտաշրէն, ինչպէս վրիպակաւ կ՚ենթադրէ հեղինակ հատուածիս, այլ շատ տարիներ վերջ և ՚ի ձեռն Տապհոյ Ա ։

297 էն առաջ հալածել զեկեղեցին, որովհետև նորա առաջին հալածմանքն եղաւ յամին 303, ըստ համաձայն վկայութեան ամենայն պատմագրաց. իսկ եթէ մի ուրիշ կայսր ենթադրենք, Տրդատայ թագաւորութեան ժամանակամիջոցէն կը խոտորինք: Գ. և մեծագոյն հակասութիւն մի է և այս. զի յէջ 43, դիմել կու տայ հեղինակն հատուածիս՝ Գրիգորի առ Տրդատ, մինչ էր 'ի կողմանս Յունաց, և կայսեր հալածանքն յիշելէն անմիջապէս յետոյ կը յարէ. « Իսկ իբրև զգացեալ Տրդատիոս վասն Գրիգորի՝ թէ քրիստոսական պաշտամանն հաղորդ է, սկսեալ այնուհետև պատուհասակոծ առնէր զնա. և ազգի ազգի արհաւիրս արկանէր 'ի վերայ նորա. բազում անգամ 'ի բանդ և 'ի կապանս տանջանօք նեղէր զնա »: Իսկ յէջն 50, որ է շարունակութիւն Ե. գլխահամարին կամ Գրիգորի պատմութեան, ընդհակառակն Տրդատայ 'ի Հայս վերադարձին ժամանակ՝ եկած կը պատմուի յունատարազն Գրիգոր առ նա. և Տրդատ իբրև « այր մի ծուրական և անաշխարհիկ կ'անուանէ զնա և հեթանոսիկ Հայաստանի բարեացապարտ մօր Անահտայ պատկերին շնորհակալեաց երախայրիս չմատուցանելուն առթիւ՝ [illegible] անգամ կը ճանչնայ, թէ Գրիգոր քրիստոնեայ է, ծանուցանելով իսկ, թէ ցայն վայր գոհ էր 'ի Գրիգորէ, և այն օրէն վերջ կը հրամայէ չարչարել զնա: Դառնանք այժմ Գրիգորի Պատմութեան քննասիրութեամբը պարապելու:

Ագաթանգեղոսեան գրոց այս մասը՝ պատմական տեսակէտով նկատելով՝ կենսագրութեան մի ամենայն արժանիքն ունի, բայց ժամանակակից վկայաբանութեանց սովորական ազդեցութիւններէն գլխովին զերծ չէ. մանաւանդ թէ 'ի բազում ուրեք և ըստ բազմազան պարագայից, վկայաբանութեան կերպարանք առած է. այնպէս որ՝ յառաջ քան զքննութիւն և յետ մանրազնին քննութեան՝ չէ մարթ ըսել, թէ ցայս վայր Տրդատայ մասին պատմագրողն՝ եղած լինի նոյնպէս գրիչ Գրիգորի պատմութեան: Առաջնոյն մէջ իրք առհասարակ և յարաբերութիւնքն՝ են բոլորովին քաղաքական. իսկ 'ի վերջնումն՝ կրօնական և վարդապետական: Տրդատայ պատմութեան մէջ մասնաւոր ջանք մի կը տեսնուի հեղինակին կողմանէ աճել 'ի հանդէս զթագաւորն Հայոց իբրև զդիւցազն, և զամենայն գործս քաջութեան գործեալս յօտարաց կամ յազգակից նախորդ թագաւորաց, այսպէս և զժողովրդական աւանդութիւնս Հայոց զհինս և զժամանակակիցս՝ անծանօրել 'ի Տրդատ: Իսկ ընդհակառակն այս մասիս մէջ՝ Գրիգոր է միակ դիւցազն և դիւցազն քրիստոնէական, որ հրաշաբան բերանով և աներկիւղ հաւատով կը խօսի և կը յաղթահարէ զթագաւորն հեթանոս և զմոլորութիւնս նորա, կ'արհամարհէ նորա 'ամենազգի տանջանքներն, և զնա Յիներա և Զորքինեբա մէջ կը դասէ (հեղինակին բառերովը խօսելով): Տրդատ՝ իբրև զմի 'ի սովորական տանջողաց կամ 'ի կուրացեալ կռապաշտից կը նկատուի, որուն բերանը միայն տանջանաց փոփոխ սպառնալիքներ և անզօր խօսքեր դրուած են: Դիտելու կէտ մի է և այս, զի Տրդատայ անունն՝ հազիւ թէ երկիցս կը կրկնուի այս ընդարձակագոյն խօսակցու-

*թեանն մէջ. իսկ Նուսաւորչին՝ գրեթէ յամենայն 'ի պարբերութիւնս, և միշտ յունարէն ձեւով* **Գրէգորիոս**: *Այնպէս որ այս դէմ ընդդէմ եղելոյթս կամ ձկտումները չտեսնելու և մի և նոյն հեղինակին ընծայելու համար՝ պէտք է կոյր լինել և կոյր մտօք և ոչ աչօք միայն: Սակայն 'ի հետևեալն դեռ աւելի աչքի զարնող և խոշոր պարագաներ կը յայտնուին Գրիգորի պատմութեան մէջ. այսինքն է, եօթն օր անընդհատ Տրդատ կը տանջէ զԳրիգոր, Գրիգոր օդոյ մէջ կախուած կը խօսի և նշանագիրները կը գրեն: Սակայն պէտք է ըսել, թէ ոչ եօթնօրեայ ժամանակի խօսակցութեան և ոչ այլ նշանագրութեան նիւթ պարունակուած կայ աստ: Երկրորդ, մինչ թէ այդ եօթն աւուրց մէջ, ոչ մի քաղաքային դէպք կամ դեսպանական յարաբերութիւն, ոչ մի արքունի բանագնացութիւն, միով բանիւ, ոչ մի ընտանի և ներքին գործ չհանդիպեցաւ. մինչդեռ Հռիփսիմեանց վկայաբանութեան սկիզբն և վերջ՝ այնպէս յարափոփոխ դէպք իրերաց կը յաջորդեն, զորս հեղինակն անգամ չի կրնար գրել և յօդել 'ի մի: Իսկ եթէ ստուգիւ հանդիպեցան, ընդէ՞ր ոչ նոյնպէս 'ի գրի հարան. եթէ յիրաւի Տրդատայ կենսագիրն էր գրող և այսմ, որ հրաման իսկ, ասէ, ընկալեալ յարքայէ «գրել որ ինչ առ նոքօք գործեցան»: Աստի իսկ կը տեսնուի, թէ այս մասը Տրդատայ կենսագրին չի վերաբերիր, այլ այլոյ ուրումն, որուն գլխաւոր նպատակն էր, Գրիգորի կեանքն և գործերն 'ի գրի առնուլ:*

*Արդ, այս մասին Տրդատայ կենսագրին չլինելու ապացոյցներն՝ արդէն տեսնուեցաւ 'ի սկզբնաւորութեան անդ, վերոնշանակեալ հատուածներով. իսկ 'ի շարունակութեան աստ՝ բաց յայլոց կը վըկայեն նաև 'ի Ս. Գրոց փոխ առեալ և խիտ առ խիտ յառաջբերութիւնք կամ տեղիքն, որոնք 'ի բազում՝ ուրեք կը տարբերին* **յեօթանասնից** *թարգմանութենէն: Բ. յունական ոճերու և բացատրութեանց հետ՝ կը նկատուին նոյնպէս ասորական և Ս. Գրոց բացատրութիւններ: Տեսնենք այժմ նորա վերջատրութեան համգամանքներն: Արդ, 'ի գլխահամարն ԺԱ. յէջ 103, ուր առ վայր մի կը դադրի Գրիգորի կենսագրութիւնն և անոր կը յաջորդէ Տրդատայն՝ այսպէս կ'ըսուի. «Իսկ թագաւորն Տրդատ, զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեանն աւերէր քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեան» և այլն: Արդ, այս գլխահամարիս յէջ 102 կը ծանուցուի իբրև նոր ինչ և կարևոր գիւտ, թէ կապեալն Գրիգոր է որդի Անակայ մահապարտի, և թէ չէ նա արժանի կենաց. և թագաւորն անգամ մեծ խնամք կը տանի ստուգելու, թէ «արդարև որդի Անակայ Պարթևի է, որ սպան զխոսրով հայր նորա»: Այս յայտնութիւնս արդէն իսկ յէջ 42 յերկրորդումն պարբերութեան եղած տեսանք. ուրեմն եթէ 42 իջի պարբերութիւնը Գրիգորի կենսագրին ընծայենք, 102 իջի յայտարարութիւնն ոչ ևս կարէ լինել այնմ, և կը մնայ առանց նշանակութեան. իսկ եթէ ընծայենք Տրդատայ կենսագրին, սոյն յայտարարութիւնս Տրդատայ կենսագրին համար կը մնայ առանց նշանակութեան. ուրեմն պետք է ըսել, թէ կամ այդ երկու տեղիքը իրարմէ անկախ երկու գրութիւններ կը յայտնեն, որոց մին*

Տրդատայ, իսկ միւսը Գրիգորի կենսագրին է անկ. և կամ ըսել, թէ այդ երկու տեղեաց մին ոչ միոյն և ոչ միւսոյն, այլ խմբագրողի գրոցս է ընծայելի:

Աղբերաց տարբերութեան մի այլ ապացոյց կը գտնենք յէջ 103, ուր Տրդատայ համար կ'ըսուի թէ. « Եւ ինքն իսկ թագաւորն խաղայր գնայր 'ի Յունաց յԱյրարատ գաւառն 'ի Վաղարշապատ քաղաք 'ի Հայոց աշխարհ յարևելս »: Մինչդեռ կենսագիրն Տրդատայ կ'աւանդէ, թէ Խաղխաղ էր Յունաց սահմանին (Խոսրովու) յՈւտէ գաւառ: Ըստ ինքեան անկարելի չէ, որ Արշակունեաց թագաւորներն այլ և այլ ժամանակաց մէջ՝ այլ և այլ ձմերոցներ ունեցած լինին. բայց անկարելի էր նկատմամբ Տրդատայ կենսագրին, որ շատ տարիներէ վերջ եկած կը համարի զինքն 'ի Հայս և ականատես իրաց վկայ կը կոչուի միայն: Իսկ « գնայր յԱյրարատ գաւառ յարևելս » բառերը՝ կը ցուցնեն, թէ Ս. Գրիգորի չարչարանաց օրերն ոչ եթէ 'ի Վաղարշապատ, այլ յՆրիզայ կատարուեցան. և թէ անտի անմիջապէս տարուեցաւ Գրիգոր 'ի խոր Վիրապն [1] Արտաշատու, և Տրդատ 'ի Վաղարշապատ քաղաք:

Ը. Գլխահամարին մէջ յէջ 89, յետ աւարտման վարդապետութեան և մաղթանաց՝ կ'ըսուի թէ. « Եւ մինչդեռ կայր կախեալ այնպէս խօսեցաւ զայս ամենայն և գրեցին տանելով զտեղիսն Նշանագրաց »: Փ. Բուզանդացին ևս, Դ. Դպրութեան 87 ինչում կը յիշէ « սեմիարք Նոտարացի » անուամբ, որ գրեթէ թարգմանութիւն է Σημεῖα ἐν μικροῖς բառերուն, զոր գրէ Պլուտարքոս՝ Կատոնի Ուտիկեցւոյ վարքին մէջ: Ցիրաւի, մեր թուականին առաջին դարէն 'ի վեր կային առ Հռովմայեցիս Նոտարք Նշանագրողք, յորոց ապա անցաւ առ Ցոյնս: Սակայն իցէ՞ ստոյգ ընդունել, թէ այդ արուեստը տարա-

1. Վիրապս այս՝ ոճրագործաց միայն պատժարան լինելով, չէ մարթ կարծել թէ թագաւորն հայոց Տրդատ այնքան անգութ և ապառում եղած լինի, մինչև « զիւր սիրելին զԳրիգոր », որ Խոսրովու մահուան մասնակից չլինելէն զատ՝ իւր հաւատարիմ սպասահարկութեամբը հօր յանցանաց տեղ իսկ լիովին վճարած էր և Տրդատայ համակրութիւնը մեծապէս առ ինքն գրաւած, անդ ձգած ըլլայ: Այսպիսի մի եղելութեան վերայ թերևս տարակուսելով կենսագիրն ինքնին, դիտմամբ « որդի մահապարտի » բացատրութիւնն ըրած է: Թէպէտև ազգային հնագոյն աւանդութիւնը Գրիգորի կենսագրի վկայութեանը վերայ հիմնուած՝ անդստին 'ի վաղ ժամանակաց «'ի վիրապն ներքին» հռչակած է. բայց, թէ վիրապ ըսելով՝ հո՞ր ինչ կամ փո՞ս կը հասկնային, թէ այլ ինչ գլխովին, ես նախընթաց և հետագայ պատճառաց վերայ հիմնեալ՝ կ'ախորժիմ «'ի դղեակ բերդին» եղեալ համարել: Ա. զի Գրիգոր էր մնացեալ արու ժառանգ Սուրենեան Պահլաւին յետ թագաւորեալ ցեղին. ուստի ըստ պահանջել հարկին այնու միայն կարելի էր շարունակել զյաջորդութիւն Պարթևազն հարստութեան: Անշուշտ մեծանձն Տրդատ իսկ այս քաղաքային հեռատեսութեամբս Գրիգորի ազնուական զարմին հետ՝ նորա ազնիւ հոգւոյն ևս իբրև « հասանէր 'ի վերայ », արհամարհելով այն նախարարին խորհուրդը, որ ասաց, թէ « չէ պարտ կենաց », հրաման տուաւ « խաղացուցանել զնա 'ի դղեակ բերդին »: Բ. հնգետասան տարի այն տեղ ողջ մնալու աւանդութիւնն և այլի կնոջ պատմութիւնն, որուն վերայ յետոյ ուրեմն ընդարձակօրէն պիտի խօսիմ, զայս կը ցուցնեն:

ծուած էր նոյնպէս և 'ի Հայս 'ի սկիզբն Դի դարու: Մ. Էմին իւր Հայոց գրի մասին գրուած մի յօդուածի մէջ, որ հրատարակուած է յամին 1858, Մ. Խորենացւոյ պատմութեան ռուսերէն թարգմանութեան հետ իբր յաւելուած, ենթադրած է, թէ Հայք անդստին 'ի վաղ ժամանակաց պատկերագրեր գործածէին: Այս բանս ինձ պարզապէս կարելի կը թուի, բայց ոչ նոյնպէս ընդունելի. որովհետև շօշափելի յիշատակարաններ չգոն 'ի միջի ամենևին. իսկ նորա մէջ բերած փաստերը՝ Մեսրովբեան նշանագրոց կամ Դպրութեան արգասիք են: Գրոցս Ցառաջաբանէն եթէ դատենք, պէտք է որ Տրդատայ քարտուղարն եղած լինի հեղինակ այդօրինակ գրութեան: Սակայն ես, ընդհակառակն, կ'ընտրեմ ըսել, թէ նոյն իսկ Ցառաջաբանի մէջ եղած այն տեղեկութիւնը՝ Գրիգորի պատմութեան վերոյիշեալ տեղւոյն վերայ ստերիւրեալ է, հակառակ նորա իմաստին. որովհետև Ցառաջաբանի մէջ Ագաթանգեղոս եզակի դիմօք՝ յարուեստէ նշանագիր կ'անուանի. իսկ աստ յոքնակի դիմօք կ'ըսուի, թէ «գրեցին ատենակալ դպիրքն նշանագրոց», յորմէ մարթ է ըսել, թէ Գրիգորի պատմութեան հեղինակը ոչ էր նշանագրող, այլ 'ի նոտարիացի նշանագրաց առաւ իւր գրութեան ատաղձը: Բ. թէ երկաքանչիւրոց գրութեան լեզուն և եղանակը՝ պէտք էր որ յունարէն եղած լինէր. այնու զի, 'ի ստնդեայ հասակէն առ Յոյնս դաստիարակեալ՝ յունատարազն և յունախօսն Գրիգորիոս, անդէն 'ի գալն իւր 'ի Հայս չկարէր հայերէն բարբառով յօդել զքալոզութիւն իւր. և եթէ նա կարող լինէր խօսել, նոտարքն Յունաց և Հայոց անկարանային նշանագրել զայն, որովհետև ոչ Հայք նշանագրեր ունէին այն ժամանակ, և ոչ այլ Յոյն կամ Հռովմայեցի քարտուղարն Տրդատայ կարող էր գիտել զհայ լեզուն. և եթէ գիտնար իսկ՝ սակայն և այնպէս գրելն անկարելի էր: Այս բանիս վերայ առանձին գլխով մի պիտի խօսինք յետոյ:

Ս. Գրիգորի վկայաբանութեան հնութեան և նորա մէջ պարունակուած վարդապետութեան հարազատութեան վերայ տարակուսելու բանաւոր պատճառներ չեմ տեսներ ես՝ բաց 'ի 77, 78, 85 և 88 էջերէն, յորս յոքնակի դիմօք կը խօսուի [1], մինչդեռ միւս էջերում Գրիգոր եզակի դիմօք կ'աղօթէ 'ի կախաղանէն. և 64 էջէն՝ որ հազարամեայց և կայանաղրաց վարդապետութեանը կը թուի ծայնակցիլ, ըստ երևութին [2]: Բայց 'ի մասնաւորի 68 և 82 էջերը կը թուին տարակուսի յակ ծգել Գրիգորի զէթ 65–89 էջս եղած

1. Արդ, այս երևութէս կը հետևի, թէ կամ Գրիգոր ունէր ուրիշ չարչարակից և հաւատացեալ ընկերներ ևս, զորս վկայաբանութեան հեղինակը լռած է, սակս հեռի գոլոյն իւր ժամանակաւ, և կամ Գրիգոր կ'աղօթէր 'ի դէմս զինուորեալ եկեղեցւոյ բազմաչարչար նահատակներուն, որ ամենուրեք կը կրէին հալածանս և կոտանս:

2. Ըստ երևութին ըսի, վասն զի իրօք փոխանակ վերջին դատաստանի և միջոնջենաւոր շաբաթուն առնուած են անդ դարք, որուն օրինակ էր շաբաթն արարչագործութեան: Այս վարդապետութիւնս ուրիշ Ս. Հարք ևս ըրած են, մանաւանդ Ս. Օգոստինոս, Ցաղագս քաղաքին Աստուծոյ, հտ. Բ. գլ. Լ. գեղեցիկ ևս ընդլայնած է:

մաղթողախառն վարդապետութիւնը, որովհետև Ս. Բարսղի Պատարագամատոյցէն նման հատուածներ և բացատրութիւններ կը պարունակեն: Ցամին 1889 Վիեննայի « Հանդէս Ամսօրեայ », թիւ 2, էջ 24, հետևեալ վերնագրովս « **Ի Սրբոյն Խորհրդատետրոյն**, Հ. Ց. Գաթըրճեանի Հատակոտորք 'ի յԱգաթանգեղոսն և 'ի Փ. Բուզանդացին » յօդուած մի լոյս տեսաւ, յորում բազմահմուտն Գաթըրճեան այնքան կարևորութիւն տուած է վերոյիշեալ երևութին, այսինքն է Ս. Բարսղի Ցիշատակաց նմանաբան մի քանի տող հատուածոց, որով և այս եզրակացութեան եկած. թէ Ագաթանգեղայ գիրքը, ոչ թէ Դ դարուն՝ ինչպէս կը ձևանայ, այլ Եին մէջ և յետ կարգաւորութեան Պատարագամատոյցին գրուած է: Զարմանալի կ'երևի ինձ, լոկ այսպիսի մի թեթև երևութէ՝ այնպիսի ծանր վճիռ մի կնքել: Լաւ կը լինէր որ գէթ նորա հրատարակիչն այդ վճռէն աւելի նորա մնացած փաստերն ևս հրատարակէր, եթէ գոն:

Սակայն դիտելու է, որ նախ Ս. Բարսղի կարծեցեալ հատուածներն՝ չեն բոլորովին բառ առ բառ: Բ. կը գտնուին նոյնպէս 'ի Ցիշեալս Պատարագին Գրիգ. Աստուածաբանի, Գրիգ. Լուսաւորչի, որ ասի և « Ս. Աթանասիու » և Իգնատիոսի Աստուածազգեցի՝ թարգմանելոյ 'ի յասորերենէ (Տես 'ի Լիոնեան Խորհրդատետր ԺԲ. Դ. 2): Արդ, այսու Գաթըրճեանի հետևութիւնն՝ առանց հիման կը մնայ, ըստ իս: Նոյն իսկ 'ի Ս. Բարսղէ եթէ փոխ առնուած համարինք, դարձեալ Ագաթանգեղայ գիրքը Դ. դարուն գրուած լինելէն ուրիշ բան չհետևիր աստի:

Գրիգորի վարդապետութենէն ամբողջական հատուածներ, որ յէջս 71 և 72 կը լինին վասն մեռեալ սրատկերի Որդւոյն Աստուծոյ, բառ առ բառ 'ի մէջ կը բերեն յանուն Գրիգորիոսի Հայկազնոյ՝ նաև Եւթիմիոս յոյն պատմագիր, Ս. Թէոդոր Ստուտիթ և Նիկեփոր[1] պատրիարք Կ. Պօլսոյ՝ յէ. դարուն: Նման հատուած մի և'ս մէջ բերէ մերս Սահակ Պարթև 'ի թուղթս իւր առ եպիսկոպոսունս Ցունաց՝ Ս. Պրոկղ և Ակակ: Արդ, այս հեղինակութիւններս ես ստոյգ ապացոյց կը համարիմ Գրիգորի վկայաբանութեան ոչ միայն հնութեանն, այլ նոյն իսկ յունարէն բնագրի մի գոյութեանը: Աստ այսքանս բաւական կը համարիմ՝ Լուսաւորչայ վարդապետութեան մասին. նորա ընդարձակ վարդապետութեան ընդարձակ քննութիւնքն՝ առանձին գրքով մի կը յուսամ՝ ընել:

Էջ 103, յԲ պարբերութեան՝ դարձեալ կու գայ 'ի հանդէս Տրդատայ կենսագիրն՝ իւր և Հայոց դիւցազին պատմութիւնն յառաջ վարելու. և իրօք կը սկսի մի և նոյն խանդով և զարմանագործ յաղթանակաց նկարագրաւ. « Իսկ թագաւորն Տրդատ զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեան աւերէր քանդէր զեկրն թագաւորութեան Պարսից » : Այս պարբերութիւնս՝ հաւաստեաւ շարունակութիւն է 49 էջին « եւ զօրացաւ 'ի վերայ սահմանաց նորա » բառերով վերջացած պարբերութեան, և ոչ թէ 103 էջում եղած նախորդ պար-

1. 'Αντίῤῥησις καὶ ἀνασκεύη τῶν Εὐσεβίου λόγων. Տես Pitra, Spicil. Solesm. T. I, p. 371:

բերութեանն, որուն վերջի տան մէջ արդէն իսկ զուրցուեցաւ. « Եւ ինքն թագաւորն խաղայր գնայր » և այլն, ուստի երկու տող վերջ դարձեալ նոյն բացատրութիւնը կրկնել աններելի էր:

Տրդատայ՝ Պարսկաստանի և Ասորեստանի մէջ գործած քաջու-թիւնքն և աւերմունքը պատմած ժամանակ՝ հայ ժողովրդեան մէջ դեռ կենդանի պահուած հետևեալ վէպը կամ զրոյցը մէջ կը բերէ նորա մասին. « Վասն այսորիկ պատուհասեցան բանիւս այս՝ ՚ի բանն նորին առաքելոյ, թէ [illegible] Տրդատ, որ [illegible] [illegible] [illegible], և [illegible] [illegible] ՚ի [illegible] [illegible] [illegible] [illegible] » (չուրց): Իմ՝ կարծիքով, պէտք է ըսել, թէ ոչ եթէ այս վէպս յօրի-նեցաւ կենսագրէն յիշուած Տրդատայ Գի վերոյիշեալ պատերազմացը վերայ. այլ թէ ընդհակառակն, կենսագրի նախայիշուած պատե-րազմաց միակ աղբիւրն և հիմն եղած է այդ հնաւանդ վէպի կամ առակի գոյութիւնն: Եւ յիրաւի, այս բանս կը տեսնուի նորա նախ-ընթաց խօսքերէն, ուր յայտնապէս կ'ըսուի, թէ « Պատուհասեցան բանքս այս (այսինքն է յիշուած պատերազմները) ՚ի բանս կարգի առակաց »: Բ. Տրդատայ մասին ըրած հետևեալ նկարագրէն, որ նոյնպէս այն վէպէն առնուած է և կ'ըսուի. « վասն զի սէգ էր առ հանդերձ, և այլ ուժով պնդութեան հաստատութեամբ, բուռն ու-կերօք և յաղթ մարմնով, քաջ պատերազմող ...արկանէր ՚ի սուր զզօրսն Պարսից » և այլն:

Տրդատայ կենսագրի աւանդածին անտեղութիւնն և իրին ճշմար-տութիւնը դեռ աւելի ակներև ընելու աղագաւ, քննենք մէջ բե-րուած վէպին կամ առակին ծագումը։ Սակայն դիտելու ենք, թէ Տրդատայ Գի ձեռքով գործուած այդ պատերազմներն, այն ժամա-նակ ստոյգ պիտի կարենային լինել, եթէ ստուգուէր, թէ այդ վէպն իրաւցնէ նորա ժամանակ հնարուեցաւ: Սակայն Տրդատայ կենսա-գրին այդ առածէն յառաջ և յետոյ ուրեմն մէջ բերուած խօսքերէն իսկ քաջ կը տեսնուի, թէ բազմօք իսկ առաջ գոյր այդ առակը հայ ազգաբնակութեան մէջ, ուրեմն հետևութիւնն յայտնի է:

Այս ժողովրդական առածս կը յիշէ Դ և Ե դարուց պատմագիր-ներէն և ոչ ոք: Միայն Մ. Խորենացւոյ ընծայուած Սրբոց Հռիփսի-մեանց ներբողին մէջ բերուած է այն՝ ճիշդ նովին բանիւ: Զենոբ՝ Տրդատայ երկու պատերազմներ [1] միայն կը յիշէ, բայց ոչ եթէ Ա-սորեստանի կամ Պարսկաստանի մէջ, և ոչ այլ նորա գքրիստոնէու-թիւն ընդունելէն յառաջ, այլ յետ դարձին իւրում և ընդդէմ թագա-ւորին հիւսիսոյ կամ Հոնաց, առ եզերբ գետոյն փոքու ՚ի Հաշտենից գաւառին: Առ Ղազարայ Բ. էջ 5, այսչափս միայն կը գտնենք. « Զհսկայաբար միւսանգամ զդարձն Տրդատայ, և [illegible]

1. Տրդատայ այս պատերազմս և մենամարտութիւնը կը պատմէ նաև Մ. Խորենացի, Բ. գլ. Ձ. բայց աններելի ժամանակագրական սխալով մի, որ չգիտեմ նորա ծերութեա՞ն՝ եթէ մեզ անծանօթ մի այլ պատճա-ռի ընծայելու է. զի ասէ վասն Տրդատայ. « խաղայ յաշխարհն Պարսից, դիմեալ ՚ի վերայ Շապհոյ որդւոյ Արտաշրի »: Կը շփոթէ զՇապուհ Բ. ընդ առաջնոյն, քառնալով զչորեսին թագաւորս միջանկեալս:

ունելն զիւրոյին զնախնեացն քաջաբար զթագաւորութիւն »: Դիտելու է, որ 'Ղազար' այս տեղիս ուղղակի Տրդատայ կենսագրէն առնելով յառաջ կը բերէ, ինչպէս նա ինքն կը ծանուցանէ: Նոյնը՝ բայց ընդարձակ պարագաներով կը պատմէ Մով. Խորենացին[1] ևս, այնպէս որ նորա աւանդածը մասամբ Զենոբայ, և մասամբ Տրդատայ կենսագրին աւանդութեանց իրարախառնումն կարելի է անուանել. այսինքն է, կրկին պատերազմներ կը պատմէ, մին յետ գալստեան Տրդատայ՝ 'ի Հայս, իսկ միւսն յառաջ քան զգալուստ նորա: Սակայն պէտք է ասել, թէ Մովսիսի և թէ կենսագրին՝ Տրդատայ Գի համար պատմած պատերազմունքը յերկրին Պարսից, այլընդայլոյ[2] բաներ են, և աչքի զարնող կերպով ընծայուած են նմա: Եւ յիրաւի, ի՞նչ պատմական արժէք կարեն ունենալ այնպիսի պատերազմներ, յորս ոչ պատմական անձինք կը յիշուին յանուանէ, որոնց դէմ՝ նա կը պատերազմի և ոչ աշխարհագրական որոշ տեղիք, զորս նա կ'առնէ, և ոչ որոշեալ ժամանակք՝ յորս այդ պատերազմները կը գործուին և ոչ այլ նոցա քաղաքական բուն պատճառքը կը տեսնուին բնաւ. այլ, ընդ հակառակն, յիշուած անձինքն իսկ 'ի Մովսիսէ, տեղիք և ժամանակն գլխովին՝ անճիշդ և անյարմար: Բուզանդացին Փաւստոս[3] իսկ կը վկայէ յայտնապէս վասն Տրդատայ, թէ զքրիստոնէութիւնն ընդունելէն վերջ խաղաղութեամբ անցուց իւր տարիները: Ըստ վկայութեան Կաղանկատուա‿

1. Պատմ. Հայոց, Բ. գլ. ՁԲ. այսպէս կը գրէ. «Իսկ քաջին Տրդատայ երագապէս և բազում ճակատս մղեալ, նախ 'ի Հայս և ապա 'ի Պարսս, իւրով անձամբ առնէր յաղթութիւն: Որ 'ի միում նուագի առաւել քան զճղիականն զայն 'ի հնումն կանգնեաց զնիզակն յոգնական համաթիւ վիրաւորաց: Դարձեալ յերկրորդումն կորովեացն Պարսից զփորձ առեալ զսաստկութեանն սկային և կուռ վառուածոյն, բազում վիրօք պատեալ զձին սատակեցին նետաձգութեամբ, որոյ զարկուցեալ յերկիր ընկենոյր զարքայն: Իսկ նորա յարուցեալ և 'ի հետի յարձակեալ, փոխանակ իւր զբազումս ընկենոյր 'ի թշնամեացն, և զմիոյ ուրումն զձի կալեալ արիաբար աշտանակեալ, դարձեալ յերկրորդին միւս անգամ կամաւոր լեալ հետի, սուսերաւ զերամակս փղացն պուղէր: Եւ այսպիսի նահատակութեամբ յամեալ 'ի Պարսս և յԱսորեստան անդր ևս քան զՏիզբոն յարձակի »:

2. Նախ Մովսիսի աւանդածն այլ ընդ այլոյ է, այնու զի Կոստանդիանոսի ժամանակակից Շապուհ Բ, Արտաշրի որդին չէր. և ոչ իսկ Գեդռեհոնի Տրդատայ դէմ տուած պատերազմը կարէր լինել 'ի ժամանակս որդւոյն Արտաշրի, այլ անկ է շատ տարիներ վերջ: Այս բանս խիստ յայտնի կը տեսնուի առ Զենոբայ: Այլընդայլոյ է նոյնպէս կենսագրի աւանդածն, որովհետև ինչպէս 'ի վեր անդր տեսանք, Տրդատ՝ Գաղերիոսի ձեռքին տակ և Ներսեհի դէմ պատերազմեցաւ՝ և յետ յաղթութեան խաղաղական դաշամբ տիրեց Հայաստանի և մինչև ցԿոստանդիանոս պատերազմ չըրաւ Պարսից հետ:

3. Գ. Դպրութիւն, գլ. ԺԽ, յաղագս Տրդատայ. «քանզի 'ի ժամանակաց 'ի թագաւորութենէն Տրդատայ, յորմէ հետէ զՏէրն ճանաչելոյ արար խաղաղութիւն, և լռեցոյց շուրջ զթշնամիս նոցա (Հայոց), ցածոյց Տէր զմարտ պատերազմի 'ի սահմանաց նոցա և մինչև յայն ժամանակ ոչ ընդ ումեք բանք գոյին ամբոխի կամ խռովութեան, և 'ի մեծի խաղաղութեան էին բնակեալք »:

ցւոյ և Ջուանշրի, Տրդատայ կենաց վերջի տարիներում, ինչպէս նորա որդւոյն Խոսրովայ ժամանակ հանդիպած պատերազմները՝ միայն Հոնաց, Վրաց և Կովկասայնոց դէմ էին ուղղակի, և պաշտպանողական են քան թէ յարձակողական: Իսկ Տրդատայ կենսագիրն ընդհակառակն կը թուի աւանդել՝ ըսելով. «Հանէր զզօրս Հոնաց սաստիկ յոյժ և գերէր զկողմանս Պարսից»:

Արդ, մինչև հիմայ մէջ բերուած տոհմային պատմագրաց տեղիքը՝ Տրդատայ կենսագրի աւանդած պատերազմաց յիշատակութիւնը կամ նկարագիրը միայն կ'ունեն. իսկ այն մերոյնշեալ վէպին ծագումը կը թողուն 'ի մթութեան. ուստի կարող ենք ասել, թէ ոչ միայն Մովսէս այլ և ոչ իսկ Զենոբ և ագաթանգեղոսեան գրոց հեղինակն՝ էին ժամանակակից այն վիպին, երբ զառաջինն հնարեցաւ: Հարցունենք ուրեմն արտաքին պատմագրութեան: Տակիտոս, Տարեգ. Բ, Յովսեպոս, Յաղագս Հր. պատերազմին, Է, գլ. ԻԷ, Սուետոնիոս և հռովմէական դահեկանք՝ մատնանիշ կը ցուցնեն մեզ զմիս ոմն դիւցազն պարթևական, այսինքն է, համանունն Տրդատայ Գի՝ զՏրդատ Ա. որ առ Ներոնիւ թագաւորեաց 'ի վերայ Հայոց, և յետոյ պէսպէս գործս քաջութեան ցոյց տուաւ՝ հանդիպելով քաջի զօրավարին Կորբուղոնի: Կ'ըսուի թէ Տրդատս այս երբ Վիտեղիոսի առաջնորդութեամբ ուխտ գայր 'ի Հայս և հանդիպեցաւ խոտորակ գետոյն Եփրատայ, կնծաւշխարայնաւ զոհիւ և զենմամբ երիվարաց հաշտեցոյց ընդ իւր զգետն անհաշտելի, մտաւ ապա 'ի Տիզբոն 'ի թագաւորանիստ քաղաքն Պարթևաց, ուր թագադիր իշխանն Սուրենեան՝[1] թագիւ պսակեց նորա գլուխը: Սա 'ի սկզբան բարեկամ՝ յետոյ պատերազմ բացաւ Հռովմայեցւոց դէմ, և Վաղարշայ օգնութեամբ յաղթեց իսկ նոցա այն պատերազմի մէջ. և 'ի նշան յաղթութեան կամուրջ մի ձգեց Արածանւոյ վերայ: Ըստ վկայութեան Սուետոնի ('ի Ներ. ԼԹ 3), Եւտրոպիոսի և Որոսիոսի, թոյլ չտուաւ պարտեալ Հռովմայեցւոց անոր վրայէն անցնելու. և ժողովելով նոցա զէնքերն, զրահներն և մեռելոց դիակունքը կուտեցին 'ի մի 'ի ցոյցս պարծանաց, և իրենք արքունական փիղերու վերայ հեծած անցան 'ի լոյդ ընդ գետըն Արածանի, վասն զի լուր առին, թէ կամուրջ շինողները նենգութեամբ խարխուլ շինած էին զայն՝ զիրենք դաւաճանելու համար:

Արդ, այս վերջին դէպքս, այսինքն է, Տրդատեանց այն շարժումն և մեծղէն պարիսպներով գետէն անցնիլը, բաւական էր Գողթան մուսայից նիւթ տալ պէսպէս վէպեր և առակներ յօրինել Արտաշատու իշխողին Տրդատայ Ա. վերայ, թէ. «Միգայով աւերեաց զթումբս գետոց» և այլն. ինչպէս Պարսկաստանի և Ասորեստանի մէջ մերթ Հռովմայեցւոց դէմ և մերթ Հիւսիսայնոց դէմ տուած պատերազմնե-

1. Եթէ Սուրէնս այս՝ թագադիր՝ էր Պահլաւ 'ի Սուրենեանն Պահլաւէ, արտաքին մատենագրաց աւանդածն ուղղակի կը հակառակի Մ. Խորենացւոյ աւանդածին, որ զԲագրատունիս ասէ կարգեալ 'ի Վաղարշակայ թագադիր ասպետս: Այս բանս կարելի էր որոշել, եթէ Ագաթանգեղոսեան գրոց հեղինակն՝ Անակոյ ազգին դէմ Սուրենեան իշխանն յիշած ատեն, նորա յատուկ անունն ևս նշանակէր:

ըըն և 'ի Տիզբոն մտնելու հին աւանդութիւնքը՝ Տրդատայ Գի կենսագրին նիւթեր մատակարարեցին, իւր դիւցազին վերայ դարձնել ամենայն ինչ: Թէպէտև դարական խորոց մի ժամանակի կը բաժնէ կը հեռացնէ զՏրդատ Ա. 'ի Տրդատայ Գէ սակայն կենսագիրն իւր դիւցազին սիրոյն համար դիւրաւ վերցուցեր է այդ մեծ խորոցն, և ինչպէս այն երկու անձնաւորութիւններն՝ այնպէս ևս նոցա գործերն 'ի մի զուգել է: Բնաւ պէտք չէ զարմանալ այս բանիս վերայ. մանաւանդ ուր անուանք և գործքն իսկ երկաքանչիւրոց՝ նման են իրերաց: Ասկէ իսկ կարենք գուշակել ընթերցողք, թէ կենսագիրս ականատե՞ս էր իրաց զորս 'ի գրի առնոյր, եթէ ընդհակառակն՝ ժամանակաւ գլխովին բացական:

Յէջն 105, Ա. պարբերութիւնը՝ շարունակութիւն է Գրիգորի պատմութեան: Եւ այս բանիս ապացոյց են նախ թիւն 13 ամաց՝ որ համաձայն է 103 իջի հատուածին, յորում կ'ըսուի թէ Գրիգոր նոյնչափ տարիներ եկաց 'ի վիրապին: Բ. զի այս պարբերութիւնս ոչ շարադրութեամբ կազմութեամբ և ոչ իսկ պատմական յօդիւ կապ ունի նախորդ պարբերութեան հետ, զի անդ Տրդատայ պատերազմներն, կապուտն և կողոպուտը կը պատմուին. իսկ աստ, ընդհակառակն, Գրիգորի վերայ յաստուածուստ կատարուած մեծ սքանչելիք մի: Գ. սորա յաջորդ պարբերութեան հետագայ խօսքերն. «Եւ յետ այնորիկ հրամանն ետ Տրդատ», որք ուղղակի 103 և 104 էջերուն շարունակութիւն են և զանոնք կը յարաբերեն և ոչ թէ 105 իջի, Ա. պարբերութիւնը, որ կղզիացեալ և անջատ կեցած է 'ի միջի նախընթաց և հետևեալ պարբերութեանց:

Գրիգորի կենսագիրը թէպէտև այդ պարբերութեան սկիզբը կը կամնէ կը ծանուցանէ զկալն Գրիգորի «'ի բերդի բանտին և 'ի խոր վիրապին 13 ամ». բայց նորա բուն նպատակն այս չէ, այնու զի այլուր ծանոյց արդէն այս բանս. այլ աստ կ'ուզէ նա ծանուցանել յաւէտ յիշատակաց արժանի այլ կեալ գործը, վիրապին տխուր հանգամանքներն և Գրիգորի ողջ պահուիլն անդ «շնորհիւ Տեառն»: Այս համառօտագիծ հատուածիս մէջ պէսպէս դժուարութիւններ մեզ ընդ առաջ կ'ելլեն, որոնք ուրիշ տեղ աւանդածներուն կը թուին հակառակ: Նախ յէջ 103 և աստ յիշատակուած 13 ամաց թուոյն հակառակ՝ 15 գրուած է 166, 176 և 184 էջերում, որուն կը համաձայնին Հայոց միւս աւանդութիւնքը, Հրաշափառ շարականն և հնագոյն յիշատակարանք[1] Ասորւոց: Յունարէն օրինակին մէջ՝ նախընթաց երկու տեղերում 14 տարի գրուած է. իսկ վերջին տեղեաց մէջ 15: Գրիգորի Գործոյն[2] մէջ, ըստ նորոգ հրատարակութեան Պ. Լագարդի հետևեալ հետաքրքրական բացատրութիւնը կը գտնենք ἐπὶ τέσσαρας ὅλους πρὸς τοῖς δέκα Χρόνους τῇ ἐντεῦθεν ἐπολιορκεῖτο κακώσει, որ կը թուի այլ ինչ ակնարկել քան տարի:

1. Ասորերէն վկայաբանութիւն Անտիոքացւոց եկեղեցւոյն, Սեպտ. 30. զորմէ հատուածս ինչ մէջ կը բերէ Հ. Անտ. Մարիա Բռնուկիոս 'ի Պատմութեան Ս. Գրիգորի Լուսաւորչի:

2 Akten Gregors von Armenien, p. 100.

*Կարելի՞ է արդեօք Ագաթանգեղայ գրոց հայերէն և յունարէն օրինակացմէ մէջ բերուած այդ տարբեր տեղեաց թուոց տարբերութիւնն՝ ընդօրինակողաց անհոգութեանն պարզապէս արգասիք համարել. և կամ ըսել ընդ Գուտշմիդի, թէ իրարմէ անկախ և տարբեր յառաջագային: Այս դժուարութեանցս առաջինը կը ջրի հայերէն օրինակի ձեռքով՝ յորում ոչ մի անգամ ևեթ, այլ երկիցս դրուած է 13 թիւը, զոր չէ մարթ անուշադրութեան արգասիք համարել կամ դիպուածով ներմուծուած: Իսկ վերջինը կը ջրի յունարէն թարգմանութեամբ՝ որովհետև մի և նոյն տեղւոյն մէջ ուր հայերէնը 13 կը գրէ, սա ընդհակառակն ունի զ14 ամ: Արդ իմ կարծիքով, Գրիգորի բանտարգելութեան տարեթուոց տարբերութեան բուն պատճառն՝ պէտք է որ հետևեալն եղած լինի: Այսինքն է, Գրիգորի կենսագիրն առաջին երկու տեղեաց մէջ, նորա միրապ մտնելն կը դնէ Տրդատայ թագաւորութեան առաջին տարին, իբրև առանձին իրողութիւն մի, և ապա առանց յիշելու նորա ելքը, իրաւամբ 13 տարի կը թուէ: Իսկ վերջին տեղեաց մէջ, յորս նախաբարք և Գրիգոր ինքնին կը խօսին՝ յետ ելանելոյն ՚ի վիրապէն է, ուստի մտից և ելից տարիները ՚ի միասին հաշուելով կը լինի 15 տարի: Յունարեն թարգմանիչը, կ'երևի թէ նոյն իսկ առաջին տեղւոյն մէջ մուտքն ևս ՚ի միասին հաշուած է, որով 14 եղած է:*

*Իմ կարծեացս և 15 թուոյն ուղղակի հաստատութիւն համարելու է՝ Հռիփսիմեանց նահատակութեան դէպքը, որ Տրդատայ գահակալութեան 15 տարին ճիշդ կատարուեցաւ, և Գրիգորի վիրապէն ելլելէն 9 օր առաջ: Ցիրաւի, եթէ Գրիգորի կենսագիրն այն ատեն այս զանազանութիւնս ըրած չլինէր, կարծեմ թէ մենք պիտի ընէինք այժմ, և իրարու հակասական համարէինք զանոնք:*

*Իսկ գալով այս հարցիս, թէ ո՞վ էր արդեօք այն այրի կինը՝ որ 15 տարի անդադար կալով ՚ի Գրիգորէ կերակրեց զնա. քրիստոնեա՞յ թէ հեթանոսիկ, ազգակա՞ն թէ օտար ոմն, յաւազա՞ց արդեօք թէ ՚ի ռամկական դասուէ: Գրիգորի կենսագիրը դատապարտելի լռութեամբ մի ՚ի միջնորդնաւոր յուլութեան դատապարտած է նորա անունը, մինչդեռ նորա յաւէտ յիշատակաց արժանի բարեգործութեան հետ՝ անունն ևս արժանի էր որ յիշուէր յէջս պատմութեան Գրիգորի: Սակայն ես այսու միայն կը համարիմ արդարացնել ըզկենսագիրն, զի չէր ստուգիւ ժամանակակից առաքինուհւոյն, ուստի և ոչ իսկ կարէր ճանաչել զնա յակամէ յանուանէ:*

*Այդ այրի կինը հաւանօրէն, կամ արդէն իսկ քրիստոնեայ էր, և կամ զքրիստոնէութիւն ընդունելու հետամուտ որ և յաւազաց անտի. ուստի չէ ինչ ամենևին հակառակ պատմութեան, մանաւանդ թէ սիստմական հանգամանք իսկ ժամանակին կը թելադրեն ինձ ըսել, թէ պէտք է որ եղած լինի նա կամ սնուցիչն Գրիգորի բարեպաշտուհին* **Սոփիա**, *որ ըստ վկայութեան Խորենացւոյ, Բ. գլ. Ձ. Խոսրովու տխուր մահուան օրերուն մէջ ՚ի Հայաստան կը գտնուէր. կամ* **[illegible]**՝ *սրբին մեծի նախարարին Սուրենայ և մայր Ս. Թէոդորոսի. և կամ քոյրն արքային Տրդատայ* **Խոսրովիդուխտ**:

Առաջնոյն նկատմամբ՝ այս դժուարութիւնս կայ, այսինքն է, պատմութիւնը չի յիշեր այլուր ոչ նորա ողջութիւնը և ոչ իսկ կրկին դարձն 'ի Հայաստան: Իսկ հակառակ պարագայից մէջ՝ շատ հաւանական է, զի նոյն ժամանակի քրիստոնէից եռանդն և խիղճը կը պարտաւորէր, մինչև վտանգաւ իսկ կենաց ընթանալ զհետ հոգևոր զաւակաց 'ի հալածանս, նոցա յաւիտենական կենաց ժառանգութիւնն ապահովելու համար. և իրօք այսպիսի օրինակներ խիստ շատ են վկայաբանութեանց մէջ: Սակայն հաւանականագոյն քան զայս կը համարիմ ես վերջին երկուքը, որոնց 'ի քրիստոնէութիւն դարձի պատմութիւնն իսկ ժամանակակից և յարակից պարագաներով քաջ կը միանայ Ս. Գրիգորի պատմութեան հետ:

Ձերանելին և զմեծազգի Աղւիթա թէպէտև զանց ըրած է յիշել Գրիգորի կենսագիրը, սակայն կը յիշէ քաջ ազգային հնագոյն աւանդութիւնը: Ցիրաւի, ըստ վկայութեան Ճառընտրաց և Յայսմաւուրաց (Մայիս 11) կ'աւանդի թէ, երբ կը տանէին զՍ. Գրիգոր 'ի դղեակն Արտաշատու, ընդ առաջ ելին նմա Պաւխոս քահանայն և իւր ընկերքն, և անկեալ առ ոտս սրբոյն անդէն և անդ բժշկուեցան 'ի բորոտութենէ: Նոցա հետ էր և Աթենադորոս՝ որդի նախարարին Հայոց Մարէնոյ[1] և իշխանին Մաւշանեայ գաւառին, և կը բնակէր 'ի Մարէնաւան, որ հաւանօրէն անկանի ընդ մէջ Դերջանայ և Եզընկայի: Զայս տեսնելով Աթենադորոս հաւատաց 'ի Քրիստոս և մկրտեցաւ. նորա մկրտութեան ժամանակ երանելի մայրն ևս Աղւիթա եղաւ քրիստոնեայ: Շատ հաւանական է, որ իւր որդւոյն ողբերգական մահուանէն և երկամբ սակաւօրեայ կեանքէն յետոյ՝ զացած և մուտ գտած լինի 'ի դղեակն Արտաշատու, քրիստոնէական հաւատոց էական մասերն ուսանելու համար 'ի Ս. Գրիգորէ, մանաւանդ թէ նորա կեանքը պահպանելու նպատակաւ, մինչև ցելն Գրիգորի 'ի վիրապէն:

Զայս կը թուին հաստատել նախ Ասորւոց Անտիոքացւոց վերոյիշեալ վկայաբանութիւնն և մի այլ վկայաբանութիւն, զորս հաւաքեց Պետր. Դոմիտիոս Նիկոզիոյ եպիսկոպոսն՝ 'ի գերեզմանագրոց Ասորւոց, յասելն՝ թէ. «Կին ումն այրի և բարեպաշտ (հաւատացեալ) 'ի ծածուկ կերակրեց զԳրիգոր հնգետասան ամ»: Սակայն աւելի քան զայս, մանր պարագաներ կը յայտնէ Գրիգորի Հայկազնոյ Գործոց յունարէն հրատարակութեան, յէջ 100, մէկ տեղին[2],

1 Ձենոբ Գլակացի ևս կը յիշէ զոմն Մուրէն, իբր եղբայր Լուսաւորչի, զոր առեալ մանկաբարձաց՝ փախուցին 'ի տունն Պարսից: Սակայն Ձենոբայ հետևեալ աղաւաղ բացատրութենէն, «Զայս, ասէ, Մուրէն համբաւէին, թէ Զգօն ասի եղբայր Գրիգորի Յակոբ, այլ ոչ գիտէին ստուգիւ, զի Յակոբն այն հօրաքեռ որդի էր Սրբոյն Գրիգորի», կը տեսնուի թէ շփոթութիւն մի եղած է Յակոբ և Մուրէն անուանց մէջ: Ինձ այնպէս կ'երևի, թէ Յակոբ էր ստուգիւ հօրաքեռ որդի. իսկ Մուրէնը՝ հարազատ եղբայր կամ հօրեղբայր Գրիգորի և 'ի տանէ Մուրէնեան Պահլաւի, զոր յետ մահուն Անակայ փախուցին 'ի կողմանս Պարսից, բայց յետոյ եկն 'ի Հայս և եղև բնիկ Տէր գաւառին Մալհունեաց:

2 Γυνὴ δέ τις συζύγου κεχηρωμένη παρὰ τῷ 'Αρταξὰτ φρουρίῳ οἰκοῦσα, ὄψεως αὐτῇ θείας ὄναρ ἐπιφανείσης, ἄρτου τι τρύφος ἑκάστης ἡμέρας εἰς

գոր, ինչպէս լսուեցաւ, Ղազարու Վատիկանի երեք ձեռագրերէն զաղափարեց, որոնք Ժ—ԺԱ դարուն գրուած են: Աստ կ'ըսուի, թէ «Իւր էրկանէն այրի մնացած կին մի կը բնակէր Արտաշատու բեր֊դին մօտ, որուն երեւցաւ յանուրջս տեսիլ[1] աստուածային, և իւրա֊քանչիւր օրուան նամար հացի կտոր մի կը բերէր կերակրելու զե֊րանելին, որ նորա խոնջեալ մարմինը կը կազդուրէր և չէր ձգեր որ մեռնի: Բայց խօսքը կը կանխէ զհետևեալն, չարչարելով և ոչ խուն մի հեռանալ ՚ի յաղօթս անձն»: Այսքանս Աղվիթայի մասին:

Իսկ Խոսրովիդխտոյ՝ ոչ յառաջ քան զդարձն իւր ՚ի քրիստոնէու֊թիւն և ոչ յետ այնորիկ անցուցած կենաց պարագայներն՝ կը յայտ֊նեն մեզ Տրդատայ և Գրիգորի կենսագիրքը: Սակայն պէտք է ըսել, թէ Տրդատայ տարագրութեան ժամանակ՝ նորա քոյրն ևս թողլով Վաղարշապատու արքունիքն՝ ամրացաւ մօտ ՚ի սահմանս Յունաց. և ՚ի գահակալելն Տրդատայ ընկերեց նմա ՚ի Հայս. բայց թէ յետ այնո֊րիկ յարքունիս ոստանին անցուց իւր կենաց մնացած տարիները թէ յԱրտաշատ կամ այլուր, այս անյայտ է զլխովին: Գրիգորի կենսա֊գրին, յէջ 165, մէկ տեղին. «Յայնմ ժամանակի տեսիլ երևեալ ՚ի վերայ քեռ թագաւորին, որոյ անուն էր Խոսրովիդուխտ. Ելեալ խօ֊սէր առ մարդիկն» և այլն, իբրև աստուածային աքանչելեաց կամ տեսլեան պարզ գործի մի, զառաջինն, ածէ ՚ի հանդէս զկոյսն Խոսրո֊վածին. սակայն մարթ է վերնախնամ տեսչութեան իբրև արբա֊նեակ ևս համարել զնա առ ընկեցեալն յանել բանտի Ս. Գրիգոր, յընթացս 15 ամաց, և ընդունել նորա քրիստոնէական ծածուկ յա֊րաբերութիւնն ընդ առաքելաշնորհ հօրս երկրորդ լուսաւորութեան Հայոց, ինչպէս երբեմն Սանատրկածնին Սանդխտոյ՝ ընդ Թադէոսի Առաքելոյ: Կարելի չէ՞ արդեօք, այսպիսի սրբազան սիրոյ արդիւնք համարել նորա ամուրի[2] մնալն ևս ընդ միշտ:

τὸν λάκκον ἠφίει, ὅπερ τροφὴ τῷ μακαρίῳ γινόμενον, ἀνελάμβανέ τε αὐτῷ πεπονηκὸς τὸ σῶμα, καὶ τέλεον ἐκλιπεῖν οὐκ εἴα. Ἀλλὰ προφθάνει τὴν ἀκολουθίαν ὁ λόγος, μὴ ἀποστῆναι μηδὲ βραχὺ τῆς τοῦ ἀνδρὸς μνήμης ἐθέλων.

1. Արդ դիտելու է որ զԳրիգոր կերակրող կնոջ մասին աւանդած այս տեսիլս՝ նախապատրաստութիւն իմն է զԳրիգոր ՚ի վիրապէն հանել տուող կնոջ տեսլեան, հաւանօրէն մի և նոյն յաղբերէն կը յառաջա֊գային:

2. Յիրաւի, շատ զարմանալի է Խոսրովիդխտոյ ամուրի կենաց կամ կուսութեան վէպը: Եկեղեցական մատենագիրք մեր՝ կը ներկայացնեն զնա իբրև հազուագիւտ օրինակ կամ փունջ մի շուշանափայլ և մա֊նուշակային առաքինութեանց, փթթեալ ՚ի փափկութիւնս արքունա֊կան դարպասի: Իսկ ամուրն Հանւոյ, Գողթն գաւառ և ափունքն Գեղա֊մայ՝ կը թուին ընծայել զայն իբր յաւերժահարսն հայկական վիպասա֊նութեան, որուն նուիրուած են ամենագեղեցիկ վայրք բնութեան: Սա֊կայն ծիրանափայլ և նազելի կոյսս, համեղերձ համօրէն փառօք և մե֊ծութեամբ, այնքան թեթև ոտիւք սահեր անցեր է այս մահկանացու կենցաղումս, որ իւր խնկելի սրբութեան անուշահոտութիւնը միայն սփռած է Ախուրեանոյ և Երասխական դալարագեղ և մշտազուարճ հով֊տաց մէջ և եկեղեցեաց սեղանոց վերայ. այնպէս՝ իբր թէ քրիստոնեայ Հայաստանի մուսաներէն ստեղծեալ և երգուած անմարմին էութիւն մի

Այսուհետեւ քննենք այն տեղին և համզամանքը՝ զոր Գրիգորի կենսագիրն ընծայած է վիրապին և վիրապաբնակն Գրիգորիոսի, 'ի նմին պարքերութեան: Կ'ըսուի, թէ էր այն «Խոր, դժնդակ, դառնաշունչ, վասն կարակում տղմին, օձախառն բնակութեան: Վասն չարագործաց իսկ էր շինեալ զայն տեղին և 'ի [illegible] ամենայն Հայոց»: Կարելի՞ բան է որ այս վիրապս, որքան և խոր ենթադրենք, բաւական ըլլար լինել ընդունարան չարագործաց և մահապարտաց, ոչ միայն Արտաշատու՝ այլ, որ զարմանալին է, ամենայն Հայոց: Զայս՝ բարեմտութեամբ կ'աւանդէ կենսագիրս, և զԳրիգոր իսկ՝ 15 տարի շարունակ անդ կը բնակեցնէ. բայց լի է անտեղութեամբ և փորձառութեան դէմ գլխովին: Եթէ հաւատոյ մասն եղած լինէր այդ աւանդութիւնը, սակայն դարձեալ չէր մարթ ըստ ենկարագրական կամ բառական նշանակութեան բնագրիս հաւկընալ զայն, առանց հակասելու բնագրին: Ցիրափ, եթէ բովանդակ Հայաստանի մահապարտներն այդ տեղ կը ձգուէին, յընթացս հնգետասան ամաց՝ ինչպէս Գրիգոր չծածկուեցաւ այդ բազմաթիւ դիականց ներքև, կամ այդ հորը ինչպէս չլեցուեցաւ նոցա դիակօք, առ որ ամիս մի միայն բաւական էր: Գուցէ այս մեկնութիւնս տրուի, թէ անդ կը ձգուէին մահապարտք, բայց ոչ մնային մարմինք նոցա: Սակայն այսպիսի մի ենթադրութեան՝ կը հակառակին Գրոցս 176 և 180 էջերը, յորս Գրիգոր ինքնին կը պատմէ զանհնարին համզամանս նեղութեան իւրոյ, բայց չյիշեր բնաւ, թէ մէկը հոն ձգուած ըլլայ այն միջոցին և կամ մեռած, բաց յինքենէ: Բ. Եթէ իրօք այդպէս լինէր, ինչպէս կարէր օր ըստ օրէ մտնել անդ այրի կինը, կերակրել զԳրիգոր, բնակակից ընդ նմա և խօսակից լինել նմին, ըստ վկայութեան վերոյիշեալ յունարէն կենսագրութեան.

եղած լինէր, փոխանակ հեթանոսիկ Հայաստանի դստերաց համեստութեան պաշտպան տիկնոջն Անահտայ, և ոչ թէ պատմական անձնաւորութիւն մի: Ըստ վկայութեան Մովսիսի, նորա համար կը կառուցանէ արքայն Տրդատէս «Հովանոցս մահարձանօք, սքանչելի դրօշուածովք և բարձր քանդակաւ»: Ազաթանգեղոսեան գրոց հեղինակի աւանդածին համեմատ՝ անմարմին հրեշտակները միայն մուտք կը գտնեն այն անմատոյց կուսին քով հարուածեալ Հայաստանի փրկութեան մեծ սքանչելիքն 'ի գլուխ տանելու աղագաւ: Իսկ այլուր՝ երկրաւոր փեսայ մի չի յիշուիր բնակակից նմին, գողթնեաց զինեւէտ բարձանց, լուսակարկաջ աղբերաց և հովանաւոր անտառաց մէջ, զորս յետոյ հարազատն իւր և թագապսակն Խոսրով աւելի պճնեց, ըստ Փաւստոսի Բուզանդացւոյ. և Խոսրովիդխտոյ դարպասին վերայ՝ զԽոսրովակերտն ևս 'ի վեր բարձրացոյց: Նորա անունը միայն կը յիշուի 'ի միայնութեան՝ իբրև յաւերժահարսն և Աթենաս, իշխել հրաշակերտ յօրինուածոց մարդկեղէն արուեստին և բնութեան: Մերթ ընդ մերթ կու գայ 'ի հանդէս Տողակաթի և Հռիփսիմեանց կուսանաց վկայարաններուն շինութեանը մէջ՝ իբրև կուսան ճարտարապետ, և մերթ կը ծածկուի խորհրդական ամպոց ներքև իբրև զլուսին մահիկեղջիւր և սփոփիչ տխուր և ցաւած սրտերու: Մերթ կը սլանայ յափանց Ախուրենոյ՝ յափունս Նփրատայ, իջանել յաւազան անդր Մկրտութեան. և մերթ կ'ելլէ անտի իբրև զուարթուն լուսազեղ, կը բորբոքի իւր երկնաւոր փեսային սիրով, բայց նորա մահուանը չիք ուրեք յիշատակ:

այս ամենայն անհասկանալի է: Ուրեմն չենք սխալիր, եթէ ըսենք, թէ պատմագրիս աւանդածը գլխովին չափազանցութիւն է և մեծաւ մասամբ օտար 'ի ճշմարտութենէ: Նա գրեց սոյն տողերս այնպիսի ժամանակի մէջ, յորում բազմայոլով տարիներ արդէն սահեր անցեր էին Արտաշատու ղեկին վրայէն և երկրաբանական փոփոխութեամբ երկիրս բարձրանալով՝ նորա ստորին յարկը իբրև խոր վիրապ կը ներկայանար դիտողաց աչքին, բայց իրօք վիրապ չէր այն:

Արդ, Գրիգորի պատմութեան և Հայոց այդ նուիրական աւանդութիւնն 'ի ծաղուէ և 'ի նշաւակաց օտարաց ազատելու համար, պէտք է նորա նախկին հանգամանաց բուն պատմական պատճառներն որոնել: Իմ կարծիքով՝ Գ դարուն վերջ և 'ի սկիզբն Դին՝ Արտաշատու բերդին ղեկակը ճիշդ նոյն վիճակը պէտք է որ ունենար, ինչ որ ունէին Մամբրտեան բանդերն 'ի բարձրն Կապիտոլիոն և Անյուշ [1] կամ Աղմըշն բանդերն՝ 'ի կողմանս Խորասանու: Ցիրաւի, այս ղղեակս ոչ միայն էր իբրև անառիկ ամրոց և բնակարան պահանորդաց քաղաքին, ընդարձակ բնակարաններով, այլ նոյնը կը պարունակէր ստորերկրեայ արգելարաններ ևս, որոնց ներքսագոյնները՝ մահապարտաց նամար պատրաստուած էին, ըստ աստիճանի յանցանաց և յանցաւորաց: Սոցա ստորնագունին մէջ ձգուած էր Արշակունեաց թագաւորութեան թեկնածու և դաւաճան նախարարի մեղապարտ որդին՝ անմեղն Գրիգոր, որ յայտնուեցաւ մանաւանդ իբրև առաջնորդ քրիստոնէական աղանդոյ և անարգող անահտական դից, ինչպէս երբեմն Առաքեալն հեթանոսաց Պօղոս՝ Մամբրտեան բանդերու մէջ: Արդ այսպիսի ստորերկրեայ զընդանի մէջ յերկար ժամանակ մնալով Գրիգոր, ազգային աւանդութիւնն, ինչպէս և նորա կենսագիրը, կարէին ըսել առանց ստութեան, թէ եղև

1. Արդ վերջնոյս յիշատակն և աւերածներն հազիւ մնացել են այսօր, բայց նորա վաղընջական հանգամանքներն փոքր 'ի շատէ ծանօթ են մեզ թէ տոհմային և թէ յարտաքին պատմագրութեանց Պրոկոպիոսի, Փ. Բուզանդացւոյ և Պարսիկ վիպասաններէն: Ազգային նշանաւոր վիպասանն Րաֆֆի ևս ճարտար գրչով և ընդարձակօրէն նկարագրած է զայն՝ իւր « Սամուէլ » վիպասանութեան մէջ: Այս անյիշատակ բանդերու մէջ կը ձգուէին ոչ եթէ մարդասպաններ միայն, այլ տէրութեան և արքունեաց դէմ դարանող ամէն յանցաւորներ. և անոր զընդաններն յանցանաց և յանցաւորաց կացութեան համեմատ բաժնուած էին. բայց ամենքն այլ, առանց բացառութեան, իրենց երջանիկ կենաց թշուառ տարիները պէտք էր որ հոն վճարէին, և վճարեցին իսկ տարաբաղդիկն Արշակ և իշխանազունք բազումք: Իսկ զառաջինն՝ ես իսկ առիթ ունեցայ անձամբ այցելել և զննել, որ երեքկարգեան բանդերէ կը կազմուի, բաց 'ի վերին կարգի ղղեկէն, որուն տեղը փոխանակած է այժմ Ս. Յովսեփայ հիւսան կոչուած եկեղեցին: Ստորնագոյնը՝ յորում կ'աւանդի, թէ ամիսներով մնացած ըլլան Առաքեալն Պօղոս իւր զինուորին և բազմաթիւ հաւատացելոց հետ, կատարեալ վիրապ մի է բոլորաձև, հաստահեղոյս քարերով իբր 'ի քարաժայռի փորուած, խոնաւ և գիջին. վերին բանդի հետ հաղորդող լուսանցք մի ունի, որ ըստ հարկին կը բացուի և կը գոցուի. իսկ յատակէն կորաձև ստորերկրեայ ուղի մի կը բացուի, յորմէ, կ'ըսուի թէ, յանցաւորք կը տարուէին 'ի գլխատումն:

'ի խոր վիրապին ննջեցուցանեն զիս, և 'ի մէջ օձից և կարճաց, այնու զի այնպիսի գնջուտ տեղերու մէջ՝ ըստ դիպաց օձեր եւ կարճին գտնուիլ և կարիճներ: Եւ հաստատացեալ այրի կինը, որ կը բընակէր 'ի վերնայարկին, բնականապէս իսկ և առանց «արհաւրաց» գիտնալով քաջ Գրիգորի հոն գտնուիլը՝ կարէր իջանել աստիճանօք, ջամբել նմա զոգեպահիկն, և առնուլ 'ի նմանէ զկերակուրն բանից յաւիտենականաց: Ստուգիւ, այսպիսի բաժանում մի կը դնէ նաև կենսագիրն. այսինքն է, Ա դղեակ կամ Բերդն Բանիքին, յորում էին կինն և Գրիգոր: Բ Տուրաքարեաց եկեղեցին: Գ Մահապարտաց սպանման կամ կառափման տեղին, որ ստորերկրեայ ճամբով անցնելով 'ի խոր վիրապէն՝ կը հանէր առ ափն գետոյն Մեծամօրի կամ նորա խառնրդին: Այս բանս խիստ յայտնի կը տեսնուի նոյնպէս Ագաթանգեղայ գրոց 161 իջէն, ուր խօսելով սրբոց Գայիանեանց նահատակութեան մասին՝ կ'ըսուի. «Ընդ կողմն պողոտային՝ որ հանէր 'ի Մեծամօրի կամուրջն, 'ի տեղին յայն՝ ուր սովոր էին սպանանել դատապարտեալն մահապարտսն»: Արդ որ ինչ կատարէր 'ի Վաղարշապատ՝ նոյնն էր անշուշտ և յԱրտաշատ, որ շինեալ էր 'ի խառնուրդս Մեծամօրայ և Երասխայ. ապա թէ ոչ՝ Գրոցս այս վերջին տեղին հակասական պիտի լինէր առաջնոյն. վասն զի յառաջնումն տեղւոջ՝ Արտաշատու բանդին համար կ'ըսուի, թէ էր «'ի սպանումն մահապարտացն ամենայն Հայոց». իսկ 'ի վերջնումն՝ Վաղարշապատու բանտին համար: Արդ այսպիսի ստորերկրեայ ճանապարհի մի գոյութիւնն յԱրտաշատ՝ կը վկայէ նաև հմուտն Ինճիճեան Հայաստանի նոր Աշխարհագրութեան 257 իջումը: Այս ստորերկրեայ ճանապարհովս և սպանման տեղւով, զոր ազգային աւանդութիւնը շփոթել է բերդի բանտին հետ, կը մեկնուի Խոր վիրապի գաղտնիքն և կը վերանան անկէ առաջ եկած անտեղութիւնքը. և այնուհետև կարելի է ոչ միայն օձուտ, կարճոտ և տղմուտ համարել զայն, այլ և ընդունարան մահապարտաց ամենայն Հայոց, որովհետև յորդաջուր և ընդարձակ գետն էր, որ կը կլլէր նոցա դիակունքը և ոչ թէ նեղ կամ խոր վիրապը: Դարձեալ դիտելու ենք, որ յունարէն Ագաթանգեղոսի մէջ փոխանակ վիրապի՝ λάκκος (գուբ) կը գրուի. իսկ Ծննդոց Գրոց Ի. 15 մէջ՝ գուբը փոխանակ բանտի գործածուած է, յասելն Յովսեփայ. «Արկին զիս 'ի գուբն ջրոյ այսորիկ»:

## ԳԼՈՒԽ Ձ.

Տրդատայ կարծեցեալ երկու հրովարտակները՝ երկուքն յաւելուածներ են յետագայից. — Գուտշմիդի կարծիքն. — Պատրաստութիւն Հռիփսիմեանց Վկայաբանութեան. — Դիոկղետիանոսի հրովարտակն և նորա անվաւերութիւնը. — Վկայաբանութիւն Հռիփսիմեանց և նորա քաղուածքն. — Մաքսիմինոս և Տրդատիոս. — Նոր յայտնութիւն մի՝ կենաց և նահատակութեան որբոց Հռիփսիմեանց. — Հնարք միաբանելոյ տարաձայն պատմութիւնն ընդ արդարեւոյն. — Եզրակացութիւն:

*Յետ 105, ԺԲ գլխահամարէն՝ ցետ 112 ԺԳ գլխահամարին, կը պարունակուին յանուն Տրդատայ մեզի հասած զոյգ հրովարտակներն, յորոց առաջինը՝ պատրաստութիւն կը տեսնուի հալածանաց ընդդէմ քրիստոնէից. այնու զի կը յորդորէ զբոլոր Հայաստանեայս 'ի պատիւ և 'ի պաշտօն դիցն Անահտայ և Արամազդայ: Իսկ երկրորդումն՝ ուղղակի հալածումն կը հրատարակէ, ահատր սպառնալիքներ 'ի վերայ դնելով նոցա, եթէ երբէք համախոհ լինին քրիստոնէից կամ թաքուցանեն զնոսա. իսկ ամբաստանողաց, ընդհակառակն, կը խոստանայ ամբաստանելոց բոլոր ստացուածքը:*

*Այս հրովարտակներուս առաջինը, գէթ ըստ երևութին, Տրդատայ անմիջապէս 'ի Հայաստան գալուն կամ Գրիգորի քրիստոնեայ յայտնուելուն ժամանակ հրատարակուած կ'երևի, կենսագրի աւանդածին համեմատ: Իսկ երկրորդը՝ յետ արկանելոյն զնա 'ի դըղեակն Արտաշատու: Այնպէս որ՝ երկաքանչիւրն իսկ յառաջ եղած կը լինին քան զառաջին հալածանքն 'ի Դիոկղետիանոսէ: Սակայն այսպիսի մի եղելութիւն՝ դժուարին է ենթադրել, թող թէ իրագործուած լինել. որովհետև ըստ համաձայն վկայութեան Եւսեբիոսի և այլոց մատենագրաց, որուն յայտ կը համաձայնի և՛ կենսագիրն Տրդատայ, թագաւորն Հայոց այդ ժամանակամիջոցին էր դաշնաւոր թագաւոր և նիզակակից*[1] *իշխանակալին Հռովմայ, որուն կայսերութեան առաջին 18 տարիները՝ ամենայն ազատութիւն շնորհուած էր քրիստոնէից թէ՛ յարևմուտս և թէ՛ յարևելս: Ի՞նչպէս կարէր, ուրեմն, Տրդատ այդ խաղաղական վարչութեան ժամանակ՝ այնպիսի ահատր հալածանք մի յարուցանել ընդդէմ քրիստոսադաւան Հայոց, եթէ կային երբէք: Այս բանս՝ ինձ դժուարահաւատալի կը թուի, եթէ ոչ գլխովին անկարելի:*

*Արդ, ըստ ներքին հանգամանաց քննելով այդ հրովարտակներն՝ վերջինը միայն կը տեսնուի, թէ ներշնչուած է Դիոկղետիանոսի հա*

1. *Ցիրաւի, զայս կը թուին ակնարկել և՛ յետ 106 առաջին պատճենի սոյն խօսքերը. «Իմաստութիւն Ցունաց (այսինքն է Հռովմայեցւոց) հասցէ դաստակերտիդ կայսերաց»:*

նած վերջին հրովարտակին ազդեցութեան ներքև, և ըստ էական մասին՝ նորա հետ նմանութիւն ունի: Իսկ առաջինն՝ աննման է, ըստ բոլորին: Եւ յիրաւի, Դիոկղետիանոսի վերջին հրովարտակը հրաման կու տայր, մանաւանդ թէ խստիւ կը պատուիրէր հռով-մայեցի դատաւորաց եւ և սակաւանաց, չսպանել մասնաւոր ամ-բաստանութեան 'ի կողմանէ հեթանոսաց՝ և ոչ իսկ բողքանաց՝ 'ի կողմանէ քրիստոնէից. այլ որոնել զքրիստոնեայս ամենայն փու-թով, և չարաչար տանջանօք սպանանել, եթէ դից չզոհեն: Նոյնը կը տեսնենք նաև Տրդատայ Բ հրովարտակին մէջ, յասելն. « Պա-տուիրեալ ձեզ, զի հազար և բիւր դէպ եթէ գտցի ոք, զի նոքա անհնարին խափան լինին դիցն պաշտամանն՝ զայնպիսին թէ գըտ-ցեն՝ վաղվաղակի 'ի մէջ ածցեն »: Ուստի Տրդատայ այդ հրովար-տակն, եթէ վաւերական աղբերէ առնուած համարինք, պէտք է որ գրուած լինէր ոչ թէ 297 ին, այլ Դիոկղետիանոսի հրովարտակին[1] տարին կամ անկէ քիչ յետոյ, այսինքն է Տրդատայ գահակալու-թենէն 6 կամ 7 տարի վերջ:

Այս իսկ դիտելու արժանի է, զի Տրդատայ առաջին հրովարտա-կը՝ մասամբ մի համաձայն է երկրորդին, և մասամբ հակասական նմին. որովհետև վերջնոյն մէջ կը պատուիրէ վասն քրիստոնէից՝ թէ. « Ի հրապարակ եկեալ մեռցի, և [illegible] »: իսկ յառաջնումն՝ կ'ըսուի, ընդհակառակն, « [illegible] և կեանք և ա-րարք և [illegible] և գանձք՝ այն ամենայն [illegible], որ զայն-պիսին 'ի մէջ ածցէ »: Երկրորդ, այս երկու հրովարտակացս պատ-ճէններու սկզբնաւորութիւնը թէպէտ և նոյն են, սակայն թագա-ւորին անունն՝ առաջնոյն մէջ հայկական ձևով Տրդատ գրուած է. իսկ վերջնոյն մէջ, ըստ յունարէն կիրառութեան, Տրդատէս: Արդ, այս-պիսի մի տարբերութիւն պաշտօնական թղթոց մէջ՝ առանց նշանա-կութեան չէ, այլ առհասարակ իմն տարբերութեան աղբերաց: Երրորդ, առաջին հրովարտակի պատճէնը միայն, այսինքն է մինչև ցկէս Բ. պարբերութեան, կը գտնուի յունարէն օրինակի մէջ. իսկ մնացածն[2] ամբողջապէս կը պակսի, որ նշան է, թէ կամ յունա-րէն թարգմանութեան ժամանակ՝ այդ պատճէնը կը պակսէր հայե-րէնի մէջ, և կամ տարակուսական լինելով նորա հարազատու-թիւնը թարգմանիչն 'ի բաց թողուցած է: Միով բանիւ, այս և այսպի-սի պարագաներէն անաչառ դատելով, կարելի է եզրակացնել, թէ այս կրկին հրովարտակներս՝ նոյնպէս կրկին հեղինակութեանց վե-

1. Այս հրովարտակս՝ հաւանօրէն ելած կը կարծուի յետ դարձի կայ-սերն 'ի Հռովմայ, ուր յամին 303, Նոյ. 20, կատարեց իւր գահակալու-թեան քսանամեակն, և այս հրովարտակս հանելու պատճառն եղած է, կ'ըսուի, երբ հասաւ նա 'ի Դեղփիս (այսինքն է, 304 ին), և Ապողոնէն պատգամ հարցուց. պատասխան առաւ, թէ «Այսուհետև չեմ կրնար ճշմարիտ բան մի պատմել, որովհետև արքն արդարք, այսինքն է քրիս-տոնեայք, կ'արգելուն զիս» :

2. Այսինքն է, « Իմաստութիւն ցունաց հասցէ Դաստակերտիդ կայ-սերաց, և 'ի մեր դիւցախառն Պարթևաց հասցէ այցելութիւն, 'ի փառաց թագաց և 'ի քաջ նախնեաց », և այլն:

ըմբռնելի են: Առաջինն, ըստ իս, Տրդատայ կենսագրին կամ խմբագրողի գրոցս է անկ. իսկ վերջինը՝ Գրիգորի գործոց հեղինակին: Վերջինը՝ թէ ըստ արտաքին ձևոյն և թէ ըստ ներքին և պատմական հանգամանաց՝ ընտրելագոյն աղբերէ առնուած է, և վաւերականութեան քնադրոշմը կը կրէ իւր վերայ, գէթ ըստ էական մասին. իսկ առաջինը՝ յերկրորդ և վերջին պարբերութեանց մէջ՝ կասկածելի պարագաներ [1] կը յայտնէ: Այլ այսու հանդերձ՝ չէ մարթ

1. Ցիրաւի, նախ այսպիսի արտօնութիւն մի, այսինքն է, «Զտուն, զկեանս, զարարս, զստացուածս և զգանձս», ոչ կայսերք Հռովմայ, և ոչ իսկ Տրդատ կարէին շնորհել կամ շնորհած են որ և է հեթանոս անհատից, 'ի ժամանակս հալածանաց, առանց մեծի անտեղութեանց: Բ. Եթէ իմաստութիւն Յունաց և դաստակերտ կայսերաց բառերու կիրառութիւնքը՝ նշան են համարինք այս հռովմէական աղբեր հնութեան, բայց ոչ նոյնպէս և Տրդատայ լինելուն: Ցիրաւի, 'ի դահեկանս և 'ի մակագրութիւնս Մարկոսի Աւրելիոսի, Տրայիանոսի, Ներոնի, և Գաղերիոսի ստէպ կը յիշուի Արմէնիա իբր դաստակերտ հռովմէական կայսերաց, և յաղթական կայսերքն այնորքիկ կը կոչուին Արմենիակոսք (Armeniacus), ըստ վկայութեան Եւսեբիոսի, Պատմ. Եկեղ. Ը, գլ. ԺԷ, էջ 665, և այլոց բազմաց: Գ. Հինգերորդ դարուն Հայոց առ Թէոդոս գրուած թուղթն, որ առ Եղիշէի, Գ. Եղն. էջ 122–123, յայտնապէս կը ցուցնէ, թէ հռովմէա–յունական յիշատակարանաց մէջ իսկ Հայաստանը՝ դաստակերտ կայսերաց կը կոչուէր. «Որպէս մեք իսկ ունիմք զանսուտ յիշատակարանս զառաջինն նախնեաց ձերոց... որ այնչափ մեծ իշխանութեան՝ Դաստակերտ մեծ և սիրելի զՀայոց աշխարհս անուանէին»:

Իցէ՞ մարթ Եղիշէի վերոյիշեալ յիշատակարանն՝ Ագաթանգեղայ գրոց յունարէն բնագրի հետ նոյն համարել, և մէջ բերուած խօսքերն՝ իբրև փոխառութիւն. թէ գլխովին ընդ հակառակն պէտք է եզրակացընել: Արդ այս հարցմանս լուծումը դաստակերտ բառի նշանակութենէն կը կախուի, որ խիստ յայտնի է առ Եղիշէի. այսինքն է, ձեռակերտ, և այլաբանօրէն Հայաստանի ընծայուած է, զոր կը յանձնանձէին կայսերք Հռովմայ: Փ. Բուզանդացի փոխանակ որ և է շինուածքի կամ բնակութեան 'ի գործ ածէ զայն: Մ. Կաղանկատուացի՝ կը յիշէ զԴաստակերտ իբրև աւան ինչ յերկրին Սիւնեաց կամ Արցախու: Թէոփանէս յոյն պատմագիրն՝ 'ի ժամանակագրութեան իւրում կը ներկայացնէ, յամի ցեառն 618, զΔασταγέρδ իբր արքայանիստ քաղաք Խոսրովու Բի՝ թագաւորին Սասանեանց, հանդերձ տեղւոյն ժողովրդական յորջորջմամբը Βαρασρῶθ (վարազրոթ) որ, ըստ Ռաւլինսընի, Տիզբոնէն 25 հռովմէական մղոն հեռի դէպ 'ի հիւսիս անկանէր: Արաբացի մատենագիրք دسکره կ'անուանեն, այսինքն է, Դէսկէրէհ կամ Դէսկերէհ–էլ–Մէլիք: Սակայն արաբերէնը՝ նախնական ձևէն խոտորած է, որ պէտք էր լինել պարթևարէն «դաստ» կամ դաստա (Dasta) և «կերտ» (kert) արմատականներէն ձևացած, և կը նշանակէ 'ի հայ բարբառ ձեռակերտ:

Արդ վերոյիշեալ հայ և յոյն հեղինակներն՝ անաղարտ պահած են անուանս նախնական ձևը՝ զոյգ ընդ կենսագրին Տրդատայ. բայց թէ վերջնոյս քով յիշուած դաստակերտն՝ արդեօք ընդհանուր Հայաստանին ընծայուած է 'ի Տրդատայ, թէ մասնաւոր քաղաքի մի կամ կուսակալութեան, որ էր տակաւին ընդ ձեռամբ Հռովմայեցւոց. այս դժուար է որոշել: Եակուտի, Diction. Geogr. et hist. de la Perse, par C. Barbier de Meynard, Paris 1861, p. 233, այսու անուամբ կ'իմանայ միացեալ երկիր մի կամ նահանգ: Իսկ աշխարհագիրք Պարսից կը հասկանային անառիկ քաղաք մի յԱհվազի, զոր կառոյց Որմիզդ Ա. թոռն Արտաշրի Ա, և կը կոչեն զայն دستكر Դէստկուէր:

ծայրէ 'ի ծայր Տրդատայ կենսագրին կամ խմբագրողին գրոցս եկամուտ յաւելուած համարել զայս. այլ նորա գլխաւոր հիմունքը կամ ուղղակի երկրորդ պատճէնն եղած է, և կամ երկրորդ պատճէնին հասարակաց աղբիւր մի:

Գուտշմիդ՝ հալածանաց պարզ պատրաստութիւն մի կը համարի զառաջին հրովարտակն: Սակայն, ըստ իս, անընդունելի է այս. այնու զի սորա մէջ աւելի խիստ պատուհասներ կը սպառնացուին քրիստոնէից. իսկ հեթանոս մատնչաց՝ ընդարձակագոյն և մեծագոյն պարգևներ, քան որ ինչ յերկրորդումն: Այս երևոյթներս ես ուղղակի հալածանաց առհաւատչեայ կը համարիմ, և խիստ հալածանաց, եթէ յետոյ ուրեմն ներմուծուած չեն. իսկ հակառակ պարագայի մէջ, իրաւունք կու տամ Գերմանացի քննադատին:

Արդ, ցայս վայր եղած դիտողութիւնք՝ կը վստահացնեն զիս եզրակացնել, թէ այդ կրկին հրովարտակները կային գէթ ըստ էական մասին կամ հիման, նաև Ե դարու առաջին քառորդին, անկախ յիրերաց: Եւ թէ այդ ժամանակամիջոցին խմբագրողն գրոցս՝ միացուց զանոնք իրարու հետ, յէջ 110 անհամ և հակասական հատուածով, զոր յառաջագոյն արդէն 'ի մէջ բերաւ 104 իջում, և անգէտ գոլով Տրդատայ ժամանակակից հանգամանաց՝ անէակ պատերազմներ միայն յեղյեղած է, որպէս զի ցուցնէ, թէ այն երկու հրովարտակներն ևս Տրդատ հանեց. և թէ յառաջնոյ անտի ցերկրորդն՝ ժամանակաց և արարուածոց ընդարձակ միջոց մի անցած էր:

Տրդատայ վերջին հրովարտակին անմիջապէս կը յաջորդէ սրբոց Հռիփսիմեանց և Գայիանեանց պատմութիւնը կամ վկայաբանութիւնն, որ կը սկսի ԺԳ. գլխահամարէն՝ յէջ 112, և կ'աւարտի 'ի գլխահամարն Ի, յէջ 163: Պատմական կապը շատ սերտ է աստ քան այլուր, բայց ըստ հրովարտակաց ևեթ, և ոչ թէ Տրդատայ կամ Գրիգորի Պատմութեան: Ցիրաւի, հալածանաց հրովարտակն ելնելէն վերջ՝ ուրիշ բանի չէր սպասուէր, բայց եթէ տեսնել կամ լսել աւետարանի դիւցազանց և քրիստոսասէր զօրաց գալն 'ի հանդէս քաջութեան. և իրօք ահա կու գան յասպարէզ դիւցազնուհի սուրբ կուսանքը: Բայց որպիսի՛ հակապատմական և հակաժամանագրա֊

Արդ, եթէ վերջին նշանակութեամբ առնունք «դաստակերտիդ կայսերաց» բացատրութիւնը, առանց նշանակութեան կը մնայ և իւիք հակասական. զի այս քաղաքս եթէ Տրդատայ չվերաբերէր, ուստի և ոչ իսկ պէտք ունէր անկէց հրովարտակ ընդունել: Երկրորդ ինչպէս այն հրովարտակի պատճէնէն իսկ կը տեսնուի, առ հայաստանեայս ուղղեալ է այն և ոչ առ օտար աշխարհս տէրութեան իւրոյ, և կամ առանձին գաւառի միոյ կամ քաղաքի: Ուստի այս պարագաներս դիտելէն վերջ, կ'ընտրեմ Եղիշէի համաձայն՝ զհայաստան իմանալ այդ անուամբ: Բայց որովհետև դաստակերտ իբր գոյական անուն՝ պարթևարէն ծագում ունի և ոչ թէ յունարէն կամ հռովմայերէն. ուրեմն պահլաւիկ կամ հայ հեղինակութեան ընծայելի է այն և ոչ թէ յունի կամ հռովմայեցւոյ. կամ լաւ ևս, այս անուանս լեզուական քննութենէն իսկ կը հետևի, թէ մեզ ծանօթ Ագաթանգեղոսի օրինակներէն՝ հայերէնն աւելի յունարէնին բնագիր համարելի է, քան թէ վերջինս՝ առաջնոյն:

կամ նախերգանքով մի: Իբր թէ ինքնակալն Հռովմայ Դիոկղետիանոս կը ցանկայ կին առնել. կ'ելլեն պատկերագործք, և որ զարմանալին է, դէպ ուղիղ կ'ընթանան Հռովմայեցւոց քաղաքին կուսանաց արգելավանքը, — հոն կը գտնեն զչքնաղագեղ և զաննմանն Հռիփսիմէ՝ հանդերձ դայեկաւն Գայիանէիւ, — կը հանեն նորա կենդանագիրն և կը տանին առ ինքնակալն, — վաթսնամեայ ծերոյն մոլեկան ցանկութիւնը՝ յիմարութեամբ կը փութացնէ վայրկեան մի առաջ կատարել զուրախութիւն հարսանեաց. — տէրութեան չորս կողմը փութանակի դեսպաններ կը ղրկուին, այն մեծամեծար հարսանեաց օժտաքեր ընծայաքեր լինելու համար. — իսկ հարսնացեալն Քրիստոսի Հռիփսիմէ՝ աւելի հրեշտակային թևօք քան թէ մարդկային ոտիւք կամ մարդկօրէն միջոցներով՝ կը թռչի և Հռովմայեցւոց սահմաններէն կ'անհետանայ. և որ զարմանալին է՝ յոգնախումբ պարուք կուսանաց և քահանայից, և ոչ ոք կ'իմանայ զայն. — մեծ աղմուկ և շփոթութիւն կը ծագի բոլոր կայսերութեան մէջ, — ամէն կողմ խնդրակներ կ'առաքին, յորոց մին կը հասնի յարքունիս անդ Հայոց թագաւորին 'ի Վաղարշապատ, և կը հասնի Դիոկղետիանոսի մէկ պաշտօնական թղթովը, յորում կը խնդրէ Հռովմէական յաղթող ինքնակալն՝ իւր նիզակակից թագաւորէն, կամ յետս առաքել զնա և կամ, եթէ հաճի, իրեն պահէ. — փութով կը փնտռուին, կը յայտնուին և Տրդատայ միտքէն իսկ չանցնիր յետ դարձնել, այլ կը ցանկայ առնուլ 'ի կնութիւն:

Արդ, որքան որ Տրդատայ հրովարտակաց հետ կը թուին միանալ Հռիփսիմեանց վկայաբանութեան սկիզբը դրուած այս նախապատրաստիչ խօսքերս. «Եւ եղև ընդ ժամանակս ընդ այնոսիկ խնդրեաց իւր կին կայսրն Դիոկղետիանոս», նոյնքան ևս կը հեռանան Գրիգորի կենսագրութեան այն կէտէն, որ 15 տարի առաջ կատարուած վէպով մի, այսինքն է, խոր վիրապի արարուածովն ընդհատեցաւ, և կը շարունակուի վերստին յէջ 165, Գ. պարբերութեան. «Յայնժամ տեսիլ երևեալ», և այլն խօսքերով: Երկրորդ, Հռիփսիմեանց վկայաբանութիւնը՝ որչափ որ Գրիգորի պատմութեան առաջին մասին հետ, այսինքն է, ցմուտն 'ի վիրապ՝ բնաւ վերաբերութիւն չունի, նոյնչափ ևս երկրորդ մասին հետ սերտիւ կը միանայ՝ նշխարաց փոխադրութեան մեծամեծ արարուածներով. այս կէտիս վերայ յետոյ պիտի խօսիմ: Երրորդ, Հռիփսիմեանց վկայաբանութեան մէջ՝ երկու դէմ ընդ դէմ բնադրոշմ կը տեսնուի. այսինքն է, ուրեք ուրեք կարգէ դուրս ճիշդ և մանրամասն տեղեկութիւն Հայաստանի աշխարհագրական տեղեաց մասին, ինչպէս օրինակ խմն յէջ 161 և այլուր, և պատմական ստոյգ եղելութիւնք. իսկ արտաքին պատմութեան և աշխարհագրութեան մասին, ընդհակառակն, անճշդութիւնք, չափազանցութիւնք և իրարու հակասող վրիպակներ: Յէջ 150 իսկ, ուր սրբուհին Հռիփսիմէ 7 ժամ անընդհատ կը մենամարտի ընդ յաղթահասակ սկային, և յէջս 157 և 158, ուր նորա յաղթանակը կը նկարագրուի, չհաւատալի պարագաներով: Դարձեալ դիտողութեան արժանի կէտեր են՝ այն եկեղեցւոյ ջատագով

վարդապետի խորհրդածութիւնները և երկայն և ջերմաջերմ մաղթանքները, որք ուրիշ վկայաբանութեանց մէջ իսկ շատ անգամ դրուած են նահատակաց բերանն, առանց յատուկ և պատմական պարագաներ յայտնելու:

Արդ, այն ընդարձակ և իրարու հետ կապ ունեցող հատուածոց, որոնք ուղղակի Հռիփսիմեանց և Գայիանեանց կը վերաբերին և ամբողջ վկայաբանութիւն մի կազմելու երևոյթն ունին՝ յոյն կամ ասորի եկեղեցական հեղինակ մի իբրև աղբիւր եղած կը համարիմ. իսկ այն սակաւաթիւ հատուածները՝ յորս կը տեսնուին մէկ կողմէն ճշդութիւնք աշխարհագրական տեղեաց Հայաստանի, իսկ միւս կողմանէ անհմտութիւն, մանաւանդ թէ ընդդիմամարտութիւն օտարազգի պատմագրութեան, ժամանակագրութեան և աշխարհագրութեան, և չափազանցութիւնք՝ 'ի պատմելն զարմանալիս զՀռիփսիմեանց և զՏրդատայ, հայազգւոյ ուրուրն են, կամ լաւ ևս, ազգային տիպ ունին գլխովին: Եւ այսպիսի են, ըստ իս, Դիոկղետիանոսի առ Տրդատ գրուած հրովարտակն՝ յէջ 124, և Հայոց նախարարաց գալստեան հատուածն՝ յէջ 136 (որ կրկնութիւն իմն է անցելոցն յէջս 131 և 132) առ 'ի շքաղիր լինել Տիկնոջն Հռիփսիմեայ, չև լեալ նորա թագուհի Հայոց մեծաց: Յէջ 143, ժէ գլխահամարով սկսող հատուածն, յորում ականատես ոք և կամ քաջածանօթ յայնժամու սովորութեան Հայոց՝ կը նկարագրէ զուրախական հանդէս կէս բարբարոս ժողովրդեան Հայոց, յետ մտանելոյ Տրդատայ 'ի սենեակ կուսին. յէջ 151 Հռիփսիմեայ աղօթատեղւոյն նկարագիրն, ուր կ'ընդունի զբրաբիոնն յաղթանակի. յէջս 144, 157 և 158 հատուածները՝ որք են համաձայն Տրդատայ կենսագրի յէջս 45, 103 և 104 հատուածներուն, յորս կը պատմուին Հայոց թագաւորին յաշխարհս Յունաց և Պարսից ըրած քաջագործութիւնքը. հուսկ ուրեմն՝ յէջ 161 Ա պարբերութիւնն, յորում կարի մանրամասն ճշդութեամբ կը նկարագրուին սրբոց Գայիանեանց գլխապարտութեան տեղն և պարագաները: Իսկ մնացածն ունի զտիպ և զոճ յունարէն գրութեան. օրին. իմն՝ յէջ 129, Գ պարբերութիւնն՝ յորում կը յիշուին մեծին հետևակ զօրուն. յէջ 133, Գայիանէի յորդորն՝ առ սանականն Հռիփսիմէ, ուր կ'ըսուի այսպէս. « Յացե՛ս դու զզգաստութիւնդ կերակուր շանց յայսմիկ 'ի բարբարոս աշխարհի », դիտելով, որ բարբարոս կը կոչէին Յոյնք և Հռովմայեցիք՝ զօտար ազգերն: Էջն 139, յորում կ'ըսուի, « Հռիփսիմէ, բոլոր անուանդ քում արդարև եղեր ընկեցեալ ». որովհետև յունարէն ρίπτειν բայէն կ'ածանցի այս անունս, որ կը նշանակէ ընկենուլ. այսպէս զոն և այլ տեղիք, զորս յետոյ պիտի ցանկեմ:

Յետ որոշելոյ Հռիփսիմեանց վկայաբանութեան աղբիւրները, այսուհետև քննենք նորա պատմական ստուգութիւնն և արժէքը:

Յէջ 113, հեղինակ վկայաբանութեանս կը նկարագրէ կուսանաց որբեղավանք մի, որունք միանձնական կրօնական, ընդակեր, զգաստ, պարկեշտ, սրբամատոյց և հաւատացեալ կանայք էին. և նոցա միակ գործն էր՝ զտիւ և զգիշեր փառաբանել զԱստուած: Սակայն

կարելի՞ բան է երևակայել, թող թէ պատմական համարել Դիոկղետիանոսի բուռն հալածանաց ժամանակ՝ այժմեան մայրապետանոցներու նման կուսաստան կամ լաւ ևս արգելավանք մի, զոր հեղինակն առանց երկբայելու ենթադրած է, նորա հակառող միանձնական և վեռնակնան բառերը շարելով: Այս՝ 'ի պատմութեան ապացուցեալ մի ճշմարտութիւն է, թէ Գ դարուն վերջեր, մանաւանդ թէ յառաջ քան զՍ. Բարսեղ և Հերոնիմոս, զՀիլարիոն և զայլ հիմնադիրս արևելեան և արևմտեան մենաստանաց, չկային կուսաստաններ՝ երիւք ուխտիւք նուիրեալք Աստուծոյ և վանական կանոնօք քաղաքավարեալք: Հռոմանց Ֆորէն մէջ միայն կուսաստաններու յիշատակութիւն կը լինի նաև 'ի ժամանակս սրբոյն Անտոնի, բայց նոցա որպիսութիւնը յայտնի չէ: Իսկ եթէ մտածենք ժողով մի զգաստասէր և յաշխարհէ հրաժարեալ կանանց և արանց, որոնք թէ՛ հալածանաց և թէ՛ Եկեղեցւոյ խաղաղական օրերուն մէջ՝ Առաքելոց գերեզմաններուն և այլոց սրբատեղեաց գետնափոր նկուղներուն մէջ՝ իրենց քահանայից հետ զտիւ և զգիշեր սաղմոսերգութեամբ կ'անցնէին, այս չէ ինչ անհաւատալի: Եւ յիրաւի, այսպիսի վանաց գոյութեանը կը վկայէ նոյն իսկ չորրորդ դարու հեղինակ[1] մի, յորմէ կը քաղէ Մ. Խորենացի՝ Հռիփսիմեանց ուղևորութեան պատմութիւնը: Սա՝ կը հաստատէ համաձայն վկայաբանութեանս հեղինակին, թէ ստուգիւ Հռովմայ շրջակայքը կայր այնպիսի կուսանաց վանք մի, և կը յաւելու, թէ կը կոչուէր Ս. Պօղոսի[2] վանք, և թէ Հռիփսիմեանք անտի փախուցեալ եկին 'ի հայս:

Այս մասին որոշ տեղեկութիւն մի ստանալու համար, դիմեցի առ հայրն սրբազան հնագիտաց Ցովհ. Դէ Ռոսսի, 'ի Հռովմ: Նա կը վստահացնէ, թէ ոչ միայն մեր թուականին Գ-րդ այլ և Բ-րդ դարուց մէջ անենահաւանական է, մանաւանդ թէ պատմական իսկ, տալն օրինակ բարեպաշտ կանանց վանքի մի գոյութիւնն. և ցոյց կու տայ

1. Այս ինքն է, Դաւիթ Հռովմայեցի, հեղինակ եկեղեցական պատմութեան մի, որ անյայտացած է 'ի միջոյ:

2. Այս կարծեցեալ վանքիս տեղը՝ կանգուն կեցած է այժմ բենեդիկտեան կրօնաւորաց մայրավանքը, որ է հրաշակերտ իմն մարդկային արուեստի՝ նրբանճաշակ և վեհհնանճեմ յօրինուածովք: Իսկ հնոյն աւերակներէն հանուած արձանագրութիւնները միայն տեսնելու բաղդն ունեցած եմ, որք քրիստոնէութեան նախկին դարուց ուրիշ անթիւ արձանագրութեանց հետ այն ընդարձակածաւալ կրօնաստանին սրահներն և որմունքը կը ծածկեն: Սակայն ասկէ 1/2 ժամ հեռի Ս Պօղոսի գլխատման տեղին կը ցուցնեն, որ կը կոչուի Tre fontane: Աստ՝ աւելի հնագոյն վանքի մը հետք կը տեսնուի, ուր 20 տարի առաջ յայտնուեցան հայերէն արձանագրեր ևս, որ ըստ վկայութեան Ցով. Դէ Ռոսսեայ՝ ինններորդ դարում գրուած կը տեսնուին. և աւելի հաւանական է, թէ հօս եղած լինի Մ. Խորենացւոյ յիշած Ս. Պօղոսի վանքն 'ի հնումն. և թէ այսպիսի յիշատակի համար՝ հայք անդստին 'ի վաղ ժամանակաց ստացան անդ միաբանութիւն ինչ եղբարց կամ հիւրանոց մի հայազգի ուխտաւորաց համար: Շատ կը ցաւիմ որ անձամբ չկարողացայ երթալ զննել այն արձանագրերը. բայց Գերպ. Եդուարդ Հիւրմիւզեանը՝ մասն մի օրինակած է, եթէ չեմ սխալիր:

ինծ իւր նշանաւոր մի երկասիրութիւնն [1], որով կը պարզուի, ըստ իս, Հռփսիմեանց վկայաբանութեան հեղինակին և Դաւթի Հռով_մայեցւոյ կամ լաւ ևս Խորենացւոյ աւանդած կուսանոցին և նորա ուխտութեան խնդիրն: Բաց աստի, ազգային հին աւանդութեան [2] հետ 'ի միասին՝ հնագոյն և շօշափելի յիշատակարան [3] մի ևս, որ կը

1. ***Roma sotterranea.*** T. III, pag. 529, *յորում այսպէս կը խօսի մե_ծանուն հնախօսը.* « Anzi fino dal secolo quarto ci si addita *una congregazione di Sacre Vergini* dimoranti presso la basilica ed il cimitero di Sant' Agnese e l'agro Verano ci ha dato e continua a dare le quotidiane scoperte di tante memorie di Vergini a Dio consacrate, ez.andio del secolo quarto, che divienne ogni dì più probabile la prossimità alla basilica e cimitero di S. Lorenzo, d'*un antichissimo asceterio ancillarum Dei.* Paolino e la sua moglie Terasia, datisi a vita ascetica si ritirarono presso la basilica ed il Sepolcro di S. Felice di Nola a Cimitili.

E l'illustre Cardinale Pitra producendo in questi giorni una rara notizia dai codici greci melodi, vorrebbe far risalire *ai tempi delle persecuzioni i primi quasi rudimenti di sì pio istituto.* L'anonimo autore d'un cantico sull'agone di Leonida con sette Vergini a Corinto ce le descrive fino dall'aurora perseveranti nel cimitero dei martiri ad orare e prepararsi al martirio... Una delle dette Vergini, Carissa, presa da sonno mentre colle compagne orava nel cimitero, vide il Santo Spirito che dal Cielo le recava la corona della vittoria. « *Զայս կը պատմէ Խորենացի զՀռիփսիմեայ 'ի Ներբողեանւոջ յէջ* 311–312, *այսպէս և յէջ* 138–139 *Ագաթանգեղ.* » D to che n lle esequie e nelle commemorazioni il sacrifizio sia stato sempre offerto nelle sole *Cripte* maggiori destinate alle sinesi, negli edifizii o chiese sopra terra; i singoli sotterranei cubiculi senza dubbio servirono almeno alla salmodia ed alle preghiere con intervento degli amici e di sacerdoti a quell'uopo invitati. Anzi la salmodia dei parenti ad sepulcrum è ricordata come assidua e quasi quotidiana in una singolare epigrafe dell'Umbria posta l'anno 373. Nella quale il marito alla defunta consorte a nome suo e di tutti i parenti dice : Santique tui manes nobis petentibus adsint ut semper libenterque salmos tibique dicamus. — Laonde parmi, che sifatte adunanze famigliari per la salmodia e preghiera ad sepulcrum, alle quali erano invitati anche i sacerdoti bastino a spiegare i liberali sedili e le cattedre geminate nei sotterranei cubiculi, nei quali si è voluto ravvisare *scuole di catecumeni.* Le *continue preghiere segrete e meditazioni nei sepolcri cubiculi da S. Paolo di Nola.* Anche le romane basiliche cimiteriali, segnatamente la Vaticana e *quella* di *S. Paolo* ebbero circumquaque cubicula.

2. *Մ. Խորենացի, Թուղթ առ Սահ. Արծրունի, վասն Տիրամօր պատ_կերին:*

3. *Այսինքն է գերեզման վանամօր Մարիամու՝ քեռ Յուսկան իշխա_նին՝ 'ի փոքրիկ մատրանման տեղւոջ: Իսկ արտաքոյ վանաց պարսպին առ ափն Տիգրիսի՝ ցոյց կուտան մի այլ փոքրիկ մատուռն, յորում է Տրդատ թագաւորին գերեզմանը՝ հայերէն արձանագրութեամբ: Այս արձանագրութիւնս յետագայ դարերում մէջ պէտք է որ գրուած լինի, վասն զի Դ. դարում հայերէն նշանագիրք չկային: Բ. Պատմութիւնն՝ 'ի թորդան եղած կը ցուցնէ մեզ Տրդատայ գերեզմանը. ուստի աստ կամ յետոյ ուրեմն և մեզի անյայտ պատճառաւ փոխադրուած է Տրդատայ նշխարաց մի մասը, և կամ մի ուրիշ Տրդատայ ընծայելի է այն, և ոչ թէ թագաւորին:*

գտնուի 'ի Զենոբայ Գլակայ՝ կը հաստատեն, թէ նոյն իսկ յԱ դարէ անտի քրիստոնէութեան՝ կայր և 'ի Հայս սրբանուէր կուսանաց մենաստան մի՝ զոր, կ'ըսուի, թէ հիմնեց Առաքեալն Հայոց Բարդո_ղիմէոս, յորում ապա երեք դար վերջ՝ այց ելին Հռիփսիմեանք, և ապաւինեցան 'ի հովանիս Կիպարեայ պատկերի Տիրամօրն:

Սակայն մէկ ժայռէն ազատելով զմեզ հեղինակ վկայաբանու_թեանս՝ կ'ածէ 'ի միւսն: Ու յիրաւի, ստորերկրեայ նկուղներու մէջ կամ Ս. Պօղոսի գերեզմանի պաղ քարերուն վերայ 'ի ճգնութենէ և 'ի տքնութենէ հիւծած ընդասուն կուսի մի, մանաւանդ թագա_զարմ տանէ հօն ծածկուած օրիորդի մի, որուն ոչ ոք 'ի խնդիր ե_լած էր ցայն վայր, նկարագրածոյ դէմքը միայն տեսնելով Հռովմայ ինքնակալն և օգոստափառ կայսրն՝ անդէն և անդ կը յափշտակուի, և հարսանեաց պատրաստութիւն կը տեսնէ պաշտօնական կերպով: Այսպիսի նորակերպ ամուսնութիւն մի, ըստ իս, ոչ թէ Հռովմայ ինքնակալն՝ այլ և ոչ խոնարհագոյնն անգամ յիշխանաց նորա կա_րէր սունել: Արդարև, Դիոկղետիանոսի պէս ծանրախոհ և չափաւոր կայսեր մի վերայ՝ այսպիսի նորօրինակ բան՝ ոչ պատմութիւնն ա_ւանդած է երբէք, և ոչ իսկ նորա պատմութեան և անձին տեղեակ եղողի մի մտքին ծայրէն կարէր անցնիլ: Ուստի այսպիսի աւան_դութիւն մի՝ հռովմէական պատմութեան անձեռնհաս մէկը կարէր հնարել և ոչ թէ հռովմայեցի ումն. բայց իրօք անոր պատմական նշանակութիւն տալն ուրիշ բան չէ՝ բայց եթէ պատմութեան հիմն 'ի վեր տապալել:

Սակայն թողունք, որ հեղինակն իւր ձեռօք մատուցանէ մեզ իւր զէնքերը: Նա կը ծանուցանէ յէջ 115, յետ գեղեցիկ խորհրդածու_թեան մի 'ի սուրբ Հռիփսիմեանս, թէ «Իսկ զթագաւորն ամբարտա_ւանեցուցանէր որոգայթադիր թշնամին՝ յարուցանել հալածանս 'ի վե_րայ եկեղեցեացն Աստուծոյ, պագանել երկիր ուրուականաց մեռե_լոտուց». և թէ «վիմին ինչ ոչ կարացեալ ստնանել՝ ինքն խորտակե_ցաւ»: Արդ այս խօսքերովս նա կը կործանէ՝ զոր ինչ յէջ 112 ուզեց շինել. որովհետև աստ հալածանքն և կռոց երկրպագութիւնը կը թուին իբր պատճառք փախստեան կուսանաց, որ ստոյգ իսկ է. իսկ յէջ 112 ամուսնութիւնը կը յիշուի, ընդհակառակն: Արդ, այս Ա_րիադնեան թելը ձեռքերնիս ունենալով, կարելի է լուծել նաև Գոր_դեան հանգոյցն, և որոշել զվիպասանութիւնն 'ի պատմական ստոյգ եղելութենէ, զոր հեղինակն կամ խմբագրող վկայաբանութեանն այ_նորիկ՝ ուզած է խառնել 'ի մի, գեղեցիկ և զարմանալի ընելու համար:

Առնունք Հռիփսիմեանց 'ի Հայս գալստեան, կամ լաւ ևս Ս. Գրի_գորի վիրապէն ելլելու դէպքը, որ հանդիպեցաւ Տրդատայ թագա_ւորութեան 15 տարին, ըստ վկայութեան կենսագրին. այսինքն է, յամին 310–311, ըստ արտաքին պատմագրութեան. որովհետև ինչպէս տեսանք 'ի վեր անդր, Գրիգորի մուտն 'ի վիրապ եղաւ Տրդ_դատայ գահակալութեան առաջին տարին, որ է ըստ արտաքին պատմագրութեան, յամին 297, թէ շատ՝ մի տարի վերջ: Հաշուե_

լով, ըստ Խորենացւոյ կամ ըստ Դաւթի Հռոմնայեցւոյ, թէ 1 տարի և 5 ամիս տևած լինի սրբոց կուսանաց թափառական ճանապարհորդութիւնը կամ տարագրութեան ժամանակամիջոցն, նոցա փախուստն և փախստեան բուն պատճառ հալածանքը՝ պէտք է որ եղած լինէր յամին 310: Սակայն անժխտելի ճշմարտութիւն է և այս, թէ Դիոկղետիանոսի հալածանաց հրովարտակներն ելան յամի Տեառն 303 և 304. և թէ այս ժամանակամիջոցիս Դիոկղետիանոս Արևելքի կ'իշխէր և նորա կայսերանիստ կայանն էր Նիկոմիդիա և ոչ թէ Հռովմ: Բ. հաստատապէս ապացուցուած ճշմարտութիւն՚ է և՛ այս, թէ յամին 305 Դիոկղետիանոս իւր վաթսնամեայ և խոթացեալ ծեր՝ պաշտօնապէս հրաժարեցաւ 'ի կայսերական ծիրանեաց և յիշխանութենէն, և այնուհետև քաշուած կեանք կը վարէր, և քիչ ժամանակէն յետոյ կնքեց իւր մահկանացուն՝ արհաւրաց և ցնորից մէջ: Ուրեմն, իւրն յինքեան այսպէս լինելով; [ինչպէս կարէր նա 'ի նմին ժամանակի Հռովմայ ինքնակալ լինել, Հռովմի մէջ կայսերական հարսանիք կատարել, առ թագաւորն Տրդատ հրովարտակ ղըրկել, ինքզինքը ինքնակալ անուանել, և զՏրդատ աթոռակից իւր. մինչդեռ ոչ ինքը ինքնակալ կայսր էր այդ ժամանակ և ոչ այլ Տըրդատ՝ աթոռակից նմին: Թերևս ըսուի, թէ Հռիփսիմեանց գալուստն 'ի Հայս և նահատակութիւնը կատարուած լինի Տրդատայ առաջին գահակալութենէն (282) տասնևհինգ տարի վերջ. այսինքն է, յամին 297, որ է ամն երկրորդ գահակալութեան Տրդատայ: Սակայն այսու՝ ոչ միայն չեն մեկնուիր տոհմային պատմագրութեան և Ագաթանգեղայ աւանդածներն, որք յամին 301–302 կը դնեն զելն 'ի վիրապէն Ս. Գրիգորի, որ և սրբոց կուսանաց նահատակութենէն ինն աւուրբք յառաջ. այլ արտաքին պատմագրութեան իսկ մեծապէս կը հակառակի. որովհետև, ինչպէս տեսանք, սա ոչ յամին 282, առ Պրոբոսիւ, և ոչ իսկ յամին 297, առ Դիոկղետիանոսիւ, քրիստոնէից դէմ յարուցեալ հալածանք մի կը ճանչնայ երբէք և ոչ այլ մեք կարեմք ընդունել զայն: Ուստի կամ այն է, թէ Ագաթանգեղայ յէջ 170 յիշուած [illegible] [illegible]՝ նոյնչափ [illegible] հասկանալի են, որով Հռիփսիմեանց նահատակութիւնն եղած կը լինի յամին 305–306. և կամ, ըստ արտաքին պատմագրութեան, 310 թուականն իբրև ստոյգ ընդունել: Իսկ որովհետև առաջին մեկնութիւնը բոլորովին կը հակառակի Ագաթանգեղայ յիշեալ իջի աւանդութեանն, ինչպէս և Ագաթանգեղոսը՝ կը հակառակի արտաքին պատմագրութեան ստոյգ աւանդութեանց, ուրեմն վերջինս միայն ընդունելի է իբր պատմական. այնու զի 297 թուոյն վերայ աւելցնելով Գրիգորի բանդարգելութեան 13 տարիները, առանց հաշուելու նորա մուտքն և ելքը՝ կը լինի 310: Ուրեմն բոլոր այս պարագայքս քաջ 'ի նկատի առնելով՝ չիցէ՞ աւելի բանաւոր ըսել, թէ կամ այդ հրովարտակը գլխովին շինծու է, և կամ նմանութիւն մի այլ հրովարտակի, զոր կը գրէ կեսար ոմն առ կայսերակիցն իւր: Սակայն վերջնական եզրակացութենէն յառաջ, տեսնենք այդ հրովարտակին միւս պարագաներն ևս:

Յէջ 124 կ'ըսուի. «Մեր ուղիս բացաւ և նորա ոչ զարհուրեցան 'ի մեռանելոյ». և յէջն 125, «Թէպէտև բիւրապատիկ ինչ արհաւիրս սաստից արկանք 'ի վերայ նոցա, տատապեալս հեղումն արեան նոցա ատանել եւ բղխեալ յորդեալ շատացումն նոցա»: Արդ, այս խօսքերս ոչ եթէ հեթանոս կայսեր, այլ քրիստոնէութեան ջատագով Տերտուղիանոսի մի և Լակտանտիոսի բացատրութիւններ են, զորս փոխ առած է հեղինակն: Յէջ 125 կ'ըսուի թէ. «Դէպ եղև ինձ տեսանել յաղանդոյ ուսման նոցա օրինակ մի կոյս գեղեցիկ»: Այս խօսքերս ուղղակի կը հակասեն յէջ 114 ըսածներուն, ուր կայսրը կուսին պատկերն և ոչ թէ զկոյսն ինքնին տեսած կ'աւանդի: Ոչ ինչ ընդհատ հակասական են իրերաց յէջ 126, «Զչքնաղագեղն ինձ 'ի սոյն այսրէն յղարկեցես», և «այդրէն առ քեզ պահեցես», բացատրութիւնքը: Եւ յիրաւի, սաստկապէս յափշտակեալն Դիոկղետիանոս 'ի սքանչելի և աննման գեղ երեսաց Հռիփսիմեայ՝ ինչպէս կարէր հրաժարել յայնմանէ. մանաւանդ, եթէ մտածենք՝ որ կայսերութեան չորս կողմը լուր հանած և պաշտօնապէս ծանուցած էր իւր ամուսնութեան ընդ հուպ կատարուիլն: Այսպիսի խայտառակութիւն մի բացարձակապէս յանձն չէր կրնար առնուլ Հռովմէական ամենազօր կայսրը՝ Հայոց թագաւորին համար, և ոչ այլ Հայոց թագաւորը կարող էր ընդդիմանալ նմին, եթէ ղրկածն ստուգիւ հրամանն էր բարձրապատիւ յինքնակալէն՝ առ նիզակակիցն իւր, առանց մեծի վտանգի: Սակայն դիտողութեան արժանի է և այս, զի Տրդատայ համար իսկ նոյնը կաւանդուի յէջ 132, որ ինչ զԴիոկղետիանոսէ, յասելն. «Քանզի չև էր տեսեալ զնա, խորհեցաւ կին առնել զնա, վասն այնորիկ՝ որ պատմեցինն զնմանէ վասն վայելչութեան երեսաց նորա»: Արդ, այս երևոյթս իսկ՝ յայտնապէս կը ցուցնէ թէ, այս երկու տեղիքս իսկ՝ մի և նոյն գրչէն ելած են. և հաւանօրէն այդ անծանօթ գրիչն՝ հայազն ումն էր: Յէջ 114 կը ծանուցուի, թէ Դիոկղետիանոս՝ իւր ամուսնութիւնը կատարելու համար ընդ Հռիփսիմեայ, դեսպաններ ղրկեց ընդ ամենայն աշխարհ՝ հրովարտակօք հանդերձ. և յէջ 123, դարձեալ, երբ Հռիփսիմեանց փախստեան լուրն ելաւ, դարձեալ դեսպաններ և յուզախնդիրներ կը ղրկուին յամենայն կողմանս, ինչպէս և առ Տրդատ, առաքելով հրովարտակս: Ո՞ւր են արդ, ի՞նչ եղան այդ կրկնապատկեալ և բազմաթիւ հրովարտակները. ո՞չ ապաքէն դոցա մի քանիսի գոյութիւնն անհրաժեշտ հարկաւոր էր՝ այս ինչ կամ այն ազգի և աշխարհի դիւանագրոց մէջ, եթէ ստուգիւ գրուած լինէին: Սակայն և այնպէս՝ ոչ ուրեք կը գտնուին այնպիսի գրութեան հետքեր, և ոչ իսկ կը յիշեն արտաքին պատմագիրք այսպիսի իրողութիւն մի՝ առ Դիոկղետիանոսիւ: Առ Լատինս՝ բերանացի աւանդութիւն մի կայ միայն սրբուհւոյն Փիլոմինայի վերայ, թէ արքունական տանէ էր և թէ Դիոկղետիանոս կ'ուզէր առնուլ զնա իւր 'ի կնութեան:

Արդ, ցայս վայր եղած անաչառ քննադատութեան առջև, իրաւամբ կասկածելի կը մնան Դիոկղետիանոսի կարծեցեալ հրովարտակին և հարսանեաց, Հռիփսիմեանց նորօրինակ մենամարտու-

*թեան և նահատակութեան վերոյիշեալ աւանդութիւնքը: Կարելի՞ է արդեօք բացէ 'ի բաց մերժել այդ ամենայն իբրև վիպասանութիւն ինչ և եղջերուաքաղ քրիստոնէական բարեպաշտութեան, և կամ վարկանել պարզապէս ծնունդ իմն ազգային և սրբազան բանա_ստեղծութեան: Ոչ բնաւ: Արդ, որ և է վիպասանութիւն՝ պէտք է որ ունենայ իւր իրական վէպը, ինչպէս որ և իցէ բանաստեղծութիւն՝ ունեցած է իւր բանաւոր պատճառներն: Աւանդականութեան հա_ւատարիմ հետևողք՝ զամենայն ինչ պատմական և ստոյգ եղելու_թիւններ համարեցան անդ. և այսպիսի են, առանց բացառութեան, բոլոր սոհմային հին մատենագիրներն: Իսկ դրական շաւղին հե_տևողք՝ ուրացան զայս ամենայն, ազգային հնարագիտութիւն հա_մարելով. այսպիսի են արդի քննասիրաց ոմանք, բայց 'ի մասնաւո_րի գերմանացին Գուտշմիդ[1]: Այնպէս որ՝ սորա կարծեօք, նոյն իսկ սրբոց Հռիփսիմեանց վկայաբանութիւնը, որ ամենևին վերաբերու_թիւն չունի Գրիգորի պատմութեան հետ՝ իբր հակապատմական 'ի բաց մերժելի է: Իսկ երկրորդ մասն, այսինքն է, նոցա նշխարաց փոխադրութեան պատմութիւնն՝ ոչ այլ ինչ է՝ բայց եթէ Վաղարշա_պատու տեղական պաշտամունքը, որ կը յանգի 'ի փառաւորութիւն Վաղարշապատու եկեղեցւոյն, 'ի ծեռն կրկին առանձնայատկու_թեանց, այսինքն է, իբրև* **Ա[illegible]** *նշխարաց սրբոց և իբրև* **Կ[illegible]**:

*Իսկ ես՝ այս երկու ծայրայեղութեանց մէջ կեցած, երկուքէն այլ տարբեր համոզումն ունիմ: Արդ, իմ կարծիքով, բաց 'ի վերոնշանա_կեալ հատուածներէն, որոնք գլխովին ազգային տիպ ունին, պէտք է ըսել, թէ Հռիփսիմեանց վկայաբանութիւնն՝ իւր խնկութեամբը պատմական է. բայց իրողութիւնք և դէպք այլընդայլոյ բանիւք և*

1. *Ի քննադատութեան Ագաթ. էջ* 58, *այլ ազգ չկարենալով ելնել այս բաւղիս միջէն, ուզած է պատշաճեցնել Տրդատայ Բագրատունւոյ և Նազինիկի դէպքը, զոր պատմէ Խորենացի, Բ. գլ. ԿԳ, Արշակունւոյն Տըր_դատայ և Հռովմայեցի սրբամաքուր կուսին Հռիփսիմեայ: Ցիրաւի, կը տեսնուի, թէ Բագրատունին Տրդատ ևս հանգոյն Տորքայ Հայկազնոյ՝ պէսպէս վիպասանութեան նիւթեր մատակարարած է հայ մուսային, և այս ակներև է Մովսիսի հետևեալ տեղէն. «Եւ անդ էր տեսանել նոր զումն Ոդիսեւս զՊէնելոպայ զսեղխսն սատակելով, և կամ զՂապիթեայցն և զյուշկապարկացն կռիւս 'ի վերայ Պերիթեայ հարսանեացն»: Սա_կայն Գերմանացին այսպիսի ենթադրութեամբ՝ պակսած է ոչ միայն սրբուհւոյ կուսիս պարտուպատշաճ յարգանաց մէջ, այլ նոյն իսկ Հա_յաստանեայց եկեղեցւոյ նուիրական աւանդութեան և զգացման դէմ: Տրդատայ Բագրատունւոյ և Նազինիկի դէպքէն անցնել 'ի համանման դէպս Արշակունւոյն՝ չէ ինչ դժուարին. բայց Նազինիկի անուանէն՝ հե_տևցնել զանունն Հռիփսիմէ, այս անտեղութիւն է. և այսպիսի անտե_ղութեան մէջ ինկած է Գուտշմիդ, ընծայելով զայն ամենայն հայ վիպա_սանից: Սակայն սորա դէմ կը բողոքեն Մովսէս, Ղազար և այլ պատ_մագիրք Ե դարուն, որ գիտելով քաջ այն դէպքն՝ ոչ շփոթեն բնաւ ըզ_կոյսն Հռիփսիմէ ընդ հակապատկերին և ջնարահարին Նազինիկի: Արդ, ինչպէս Հռիփսիմէ անունն՝ այսպէս ևս նորա 70 ընկերօք նահատա_կուելու աւանդութիւնն 'ի Հայս, յոյն և ոչ թէ 'ի հայ աղբերաց առաջ եկած պէտք է համարել, և չէ մարթ շփոթել Նազինիկի վիպաց հետ՝ որ գլխովին ազգային տիպ ունի:*

պարագաներով պատմուած են: Ուստի իրենց նախկին վիճակին և երանգոցը վերածելու համար, հարկ է նոցա խառնակութեան աղբիւրը քաջ նկատել: Արդ, եթէ Հռիփսիմեանց նշխարաց գոյութեան և նոցա փոխադրութեան պատմութիւնը Հայաստանի դարձի պատմութեան հաւասար անժխտելի ճշմարտութիւն է[1], հարկ է որ նոցա վկայաբանութեան էական մասերն եւս ճշմարիտ լինին. այնու զի առանց վկայութեան՝ չիք և չկարէ լինել ճշմարիտ փոխադրութիւն նշխարաց վկայից: Ուստի վկայաբանութեանս հեղինակին ծանուցած հալածանքը՝ պէտք է որ եղած լինի յամին 305, և շարունակուած ցամն 309 կամ 310. հալածող կայսրն՝ էր Մաքսիմինոս և ոչ թէ Դիոկղետիանոս, թէպէտ և նա Դիոկղետիանոսի անուամբ կը շարունակէր իւր հալածանաց հրովարտակները: Այսպէս ուրեմն և առ Տրդատ գրած հրովարտակն, որուն նմանութիւն ևեթ համարելու ենք՝ քան թէ իսկական օրինակ այն թուղթը, զոր 'ի մէջ բերած է հեղինակ վկայաբանութեանս:

Ցիրաւի, այս բաներս այնքան յայտնի են նաև յարտաքին պատմագրութենէ, զոր չէ միտք բնաւ ընդ երկբայութեամբ արկանել: Քրիստոնէութեան այս անհաշտ թշնամւոյս և քրիստոնէից անմեղութեան դարանող և անմեղ արեամբը սնանող հրէշին համար կ'ըսուի, թէ նախ յամին 303 և 304 Դիոկղետիանոսէն հանած հալածանաց բուն պատճառը՝ նա ինքն եղած է. և թէ որպէս զի նա քան զնա սաստկացնէ այն ծանրախոհ և բարեբարոյ ինքնակալին, որուն կայսերակից ընտրուեցաւ, ատելութիւնն ընդդէմ քրիստոնէից, երկիցս կրակ տուաւ նորա արքունի բնակարանին, յանցաւոր զքրիստոնեայս ամբաստանելով: Խոհեմն և խորագէտն Դիոկղետիանոս՝ շուտով իմացաւ նորա դաւաճանութիւնն, և այնքան սարսափեցաւ, որ ուրիշ միջոց չգտաւ իւր կեանքն ապահովցնելու՝ բայց եթէ պաշտօնապէս հրաժարելով իւր թագէն և 'ի ծիրանւոյն: Այնուհետև, կ'աւանդուի, թէ Մաքսիմինոս իբր բացարձակ տէր Արևելից և Արևմտից, այնպիսի նորօրինակ հալածանք մի հանեց, և այնպիսի անլուր անգթութիւններ 'ի գործ դրաւ, որուն համար կը վը-

1. Ցիրաւի, Հռիփսիմեանց նշխարաց գոյութեան ստոյգ և շօշափելի ապացոյց են, Ա. չորրորդ դարէն 'ի վեր նոցա անուամբ կառուցուած վըկայարաններն: Բ. 'ի Ս. Գրիգորէ Լուսաւորչէն նոցա վերայ յօրինած «Աստուած մեծ հզօր և սքանչելի» երգն և տօնախմբութիւնը: Գ. նոցա գերեզմանները և նշխարաց յայտնութիւնքն, որք եղեն, ըստ ականատես վկայից, նախ 'ի Ե դարուն՝ առ կենդանութեամբ Ս. Սահակայ. ապա առ Զենոնիւ, 'ի Զ դարուն. ապա 'ի ժամանակս Կոմիտաս կաթողիկոսի. հուսկ ուրեմն 'ի վերջին ժամանակս՝ ձեռամբ լատին կրօնաւորաց: Այս մասին տես Շահխաթունեան, Ստորագրութիւն Էջմիածնի: Դ. Ցայսմաւուրք Ասորւոց, Քաղդէացւոց, Յունաց և Լատինացւոց, Վրաց և Ռուսաց, յորս զոյգ ընդ մեծի Լուսաւորչին՝ կարգեն և զտօն Հռիփսիմեանց: Արդ, այս երևոյթս ամենազօրեղ փաստ է, ըստ իս, այնու զի հաւանութիւն այսքան ազգաց՝ ձայն է ճշմարտութեան: Ե. Փաւստոսէն սկսեալ՝ ամէն տոհմային մատենագիրք՝ իբր անտարակուսելի իր ընդունած են զայն:

կայեն Ս. Գրիգոր Նազիանզացի [1] և Հերոնիմոս [2], զոր ոչ Դիոկղետիանոս և ոչ Գաղերիոս գործած էին: Իսկ մատենագիր [3] ումն մեր ծաւոր ժամանակաւ, յայտնապէս կը վկայէ. «Ցաւակնեցաւ նա հրովարտակս հանել ընդ բոլոր Արևելս և Արևմուտս», որպէս զի առանց բացառութեան և հրապարակաւ ամենայն ազգք զոհեն իւնքեան: Առ այս՝ պատուէր տուաւ դատաւորաց, «յամենայն 'ի քաղաքս, ստիպել զամենեսեան և դեսպանս և գունդս իսկ առաքեաց ամենուրեք»: Տիլլըմոն՝ [4] կը գոչէ զարմացմամբ թէ, «Իր՝ որ ցայն ժամ բնաւ եղած չէր»:

Այս ժամանակին ճիշդ՝ գործուեցան այն անլուր անառակութիւններն 'ի վերայ ողջախոհ կուսանաց և կանանց զգաստից, զորս կ'աւանդեն մեզ մանրամասն հանգամանօք Լակտանտիոս [5] ժամանակակից մատենագիր և Եւսեբիոս [6], որոնք քաջ կը միաբանին հոփսխմեանց վկայաբանութեան 112, 113 և 116 էջերուն՝ յորս հեղինակը կամ առ համեստութեան և կամ միամտաբար ամուսնութեան վերագրած է:

Այս ժամանակս, զոյգ ընդ Եւսեբիոսի կը գրէ և Ս. Յովհ. Ոսկեբերան, հտ. Ա. ճառ ԻԱ, էջ 493, թէ կուսանք իրենց սրբութիւնը պահելու համար՝ ոմանք արկին զանձինս 'ի գետ, ոմանք քարավէժ կը լինէին, ոմանք խեղդամահ, ոմանք ծովակուր արարին զինքեանս, իսկ այլք՝ սուր իրենց սիրտը մխելով մեռան: Այնպէս զարհուրելի և պժգալի էր տեսարանը, որում չդիմանալով կուսանաց և կանանց զգաստից՝ առնացի զգեստիւք 'ի փախուստ կը դիմէին գունդագունդ՝ յօտարութիւն անդր, հրաժեշտ տալով բոլոր իրենց հօրենական ստացուածոց և աշխարհի մեծութեան: Սոցա կարգէն էին անշուշտ և այն 40 խարազնազգեստ և կրօնաւոր կուսանքը, որոնց համար կ'աւանդուի Օշին թագաւորին համար գրուած Գրիգորի Անաւարզեցւոյ Յայսմաւուրքի (Գ) մէջ, թէ նահատակեցան յԱդրիանուպոլիս ընդ դայեկին իւրեանց Կելսինեայ, 'ի ժամանակս հալածանաց Մաքսիմինոսի և Լիկիանոսի:

Այսքան և այսպիսի երկիւղած և զգաստ կանանց մէջ՝ կու գան 'ի հանդէս Հռփսիմեայ և Գայիանեայ զգաստութեան և մեծատոհմութեան իբրև ճշգրիտ տիպարներ և անձնաւորութիւնք՝ յօգոստափառ

1. Oratio, 3, 20, p. 93, d. 319, b.
2. In Zacar. 14, p. 285 ect.
3. Եւսեբ. Պատ. գլ. ԺԴ, էջ 323, 324:
4. Hist. eccl. T. V p. 78.
5. De Morte persecut. CXXXVIII, կ'ըսէ. " Illud vero capitale, et supra omnes, qui fuerunt, curruınpendi cupiditas. Eunuchi lenones scrutabantur omnia, ubicumque liberalis facies erat. Detrahebantur nobilibus fæminis vestes, itemque virginibus et per singulos artus inspiciebantur pudicitia „. Լակտանտիոսի այս տեղւոյս կը համաձայնի Ագաթանգեղոսի յէջ 113, Գ պարբերութիւնը:
6. Եկեղ. Պատմ. Դպր. Ը, էջ 658, կ'ըսէ. «Ոչ անցանէր նա ընդ քաղաքս՝ առանց յափշտակելոյ զաղջկունս, և կանայք բազումք և ազնուականք, որ 'ի լուր անգամ չհանդուրժէին պոռնկութեան, զամենայն ազգս տանջանաց, աքսորանաց և մահաբեր կտտանաց համբերեցին» ;

և 'ի ծիրանածին տանէ, տիկինն Դիոկղետիանոսի Պրիսկա և իւր այրի դուստրը Վալերիա: Սոքա, ըստ վկայութեան Լակտանտիոսի [1], արդէն հալածանաց Բ. հրովարտակի զօրութեամբ և հրամանաւ Դիոկղետիանոսի՝ բռնի ածան 'ի զոհել: Եւ բազմաթիւ եկեղեցական մատենագիրք [2] կ'ըսեն, թէ ստուգիւ քրիստոնեայք էին սոքա, ոչ 'ի ծածուկ՝ այլ յայտնի, որը վասն ստիպեց զնոսա կայսրն զոհել:

Արդ, եկեղեցական• պատմութեան և վկայաբանութեանց մէջ դէպք մի չկայ, որ ամենայն մանրամասն պարագայիւք այնպէս լաւ նոյնանայ ընդ դիպաց Հռիփսիմեանց և զանոնք հաւատարմացնէ, ինչպէս այս երկու քրիստոսապսակ բամբիշներուն՝ զոր ընծայէ մեզ Լակտանտիոս, իւր վերոյիշեալ գործին մէջ, եթէ բաղդատենք նորա աւանդածը՝ Հռիփսիմեանց վկայաբանութեան հեղինակի աւանդածներուն հետ:

Լակտանտիոսի վկայութեան համեմատ, Գաղերիոս 'ի մեռանել իւրում՝ խիթալով իւր կայսերակցին Մաքսիմինոսի պակշոտութենէն, զհարսն իւր Վալերիա յանձնեց Լիկինիոսի խնամոցը. և կ'ըսուի, թէ ամուսնոյն մահուան սև օրերը դեռ չանցած՝ Լիկինիոս խնդրեց Վալերիայի հարսնութիւնը, բայց այն ողջասէր տատրակը բացէ 'ի բաց մերժեց նորա խնդիրքը: Յետոյ Մաքսիմինոս բռնանալով յԱրևմուտս՝ ուզեց հրապուրել և զՎալերիա. բայց նա, իբրև զնոր ոմն Վիրգինիա, ողջախոհութեան զրահիւք վառեալ՝ այրական քաջութեամբ դէմ դրաւ նորա ամէն պակշոտութեանց և սպառնալիքներուն, որուն համար մերկ և կողոպուտ եղաւ բոլոր իւր արքունական մեծութենէն, և երկայն օրեր աղքատութեան և չուառութեան մէջ մաշելէն յետոյ՝ (չգիտցուիր թէ ուր) հուսկ ապա աքսորուեցաւ [3] Ասորիքի անապատներու մէջ թափառելու, ուստի ծածուկ կերպով իմացուց Դիոկղետիանոսի իւր թշուառութիւնը: Իսկ Դիոկղետիանոս՝ դեսպան ղրկելով առ Մաքսիմինոս՝ խնդրեց 'ի նմանէ, անդրէն առ

1. De Morte pers. T. 2, c. XV, p. 20 կ'ըսէ. "Furebat ergo imperator jam non in domesticos tantum, sed in omnes et primum omnium filiam *Valeriam*, conjugemque *Priscam* sacrificio pollui coëgit „.

2. Ruinart, c. 13. — Rohrbacher, *Hist. Univers.* T. VI, p. 159. — P. Cesari, *Trattato sulle morti dei persecutori.* — Tillemon, *Hist. Eccl.* T. V, p. 24.

3. "Augusta vero, in desertas quadam solitudines Syriæ relegata a Maximino patrem suum Diocletianum per occultos gnarum (magnarum) calamitatis suæ fecit. Mittit ille legatos et rogat ut ad se filiam remittat. Nihil proficit „.

Զայս կ'ակնարկէ, կարծեմ, նաև Եւսեբիոս, Եկեղ. Պատմ. Դպր. Ը, գլ. ԺԴ, էջ 659 և 660 յասելն. « Ի բռնաբարելոյ անտի բռնաւորին՝ մի միայն քրիստոնեայ կին յԱղեքսանդրիա քաղաքի քաջատոհմիկ և մեծափարթամ, մեծաւ արիական հոգւով յաղթեաց մեղկ և պակշոտ բռնաւորին. զի որ քաջատոհմութեամբ և գեղեցիկ դաստիարակութեամբ երևելին էր՝ զայս ամենայն երկրորդ դնէր զգաստութեան, զոր բազում անգամ ընդ վայր հրապուրեալ բռնաւորին և պատրաստ զնա զտեալ 'ի մահ քան խոնարհել 'ի կամս նորա. սակայն և սպանանել ոչ կարէր զի ցանկութիւն առաւել քան զցասումն զօրացեալ էր 'ի նա, վասն որոյ կողոպտեալ 'ի ստացուածոց՝ տարագիր արար յաքսոր »:

իՆքՆ դարձուցանել զՎալերիա. բայց 'ի զուր: Ասոր վերայ ուրիշ Նե_ ծագոյն ցաւ մ' ալ՝ միահարբեր Նետիւ խոցեց, այս ժամանակս, ծե_ րունի Դիոկղետիանոսի սիրտը. այսինքն է, իւր պատկերաց 'ի բաց բարձումն և խորտակումը:

Ո՞չ ապաքէն Լակտանտիոսի այս աւանդութեանց վերայ յօրի_ Նուած են Հռիփսիմեանց վկայաբանութեան մէջ՝ հալածանաց – պատկերաց Նկարուելուն – Հռիփսիմեանց փտանգուելոյն և փախըս_ տեանն 'ի տար աշխարհ – Դիոկղետիանոսի թղթոյն և այլ հատուած_ Ներն: Արդարև, այսպիսի Նմանութիւն մի, ըստ ամենայն պարագայից, չտեսնելու համար՝ կոյր պէտք է լինել: Հռիփսիմեանց վկայաբանու_ թեան հեղինակն և Եւսեբիոս՝ այն աստուածասէր և զգաստ կանանց տարագրութիւնը՝ միայն յիշած են. իսկ Լակտանտիոս՝ ուրիշ մանր պարագաներ[1] ևս կը յայտնէ, որք մեծ լոյս կը ծագեն Հռիփսի_ մեանց պատմութեանը վերայ և կը պարզեն Նորա խորհրդաւոր մը_ թութիւնքը: Ծանրակշիռ հեղինակս՝ կը ծանուցանէ որոշակի, թէ Վալերիա ամուլ գոլով՝ զԿանդիդիանոս ումն որդեգրած էր. և երբ լսեց Նորա կալանաւորիլն (անշուշտ իբրև քրիստոնեայ) 'ի Մաքսի_ մինոսէ 'ի Նիկոմիդիա քաղաքի՝ առնացի զգեստով և բազմաթիւ ընկերօք չոքաւ անդ 'ի ծածուկ, Նորա կացութիւնն իմանալու հա_ մար. սակայն Նորա մահուան գոյժն առնելով՝ անդէն անապարեց 'ի փախուստ, և 15 ամիս թափառելով 'ի զանազան գաւառս արեւե_ լեան աշխարհաց, հուսկ ուրեմն յայտնուեցաւ 'ի Թեսաղոնիկէ, և կալա_ Նաւորեալ՝ սպանուեցաւ իւր մօրը Պրիսկայ հետ, յողորմ տեսիլ ժո_ ղովրդեան:

Այս կէտերում՝ կը համաձայնին Հռիփսիմեանց վկայաբանութեան կամ ագաթանգեղոսեան գրոց 122, 129 և 155 էջերը, յորս կը պատմուի կարճ 'ի կարճոյ Նոցա գալուստն 'ի Հայս – յայտնուիլն 'ի Վաղարշապատ քաղաքի – և աղետալի Նահատակութիւնը: Փոխա_ Նակ Մաքսիմինոսի՝ Տրդատայ անունը դրուած է աստ, և փոխանակ Թեսաղոնիկէի՝ Վաղարշապատ: Բաց աստի, Ագաթանգեղոսի 146 և 149 իջերում Գայիանեայ յորդորական խօսքերէն իսկ, զորս ուղղած է առ Հռիփսիմէ, քաջ կը տեսնուի, թէ Նա ստուգիւ մայր էր և՛ ըստ մարմնոյ Հռիփսիմէի, և սա դուստր Նորա. զի առաջին տեղւոյն մէջ կ'ըսուի. « Յուշ լիցի քեզ, որդեակ, հոգեխառն անուանդն, որով զքեզ անուանեցի » : Իսկ յերկրորդումն, « դուստր » կ'անուանէ զնա և « անեալ »

1. De Morte pers. C. XXXXI. " Item Candidianum, quem Valeria ab sterilitate adoptaverat necari jussit Maximinus. Mulier ut illum vixisse cognovit, mutata habitu comitatu ejus se miscuit, ut fortunam Candidiani specularetur; qui quia Nicomediæ se obtulerat, et in honore habere videbatur, occisus est. Et illa exitu audito, protinus fugit. Valeria quoque per *varias provincias quindecim mensibus* plebeio cultu pervagata, postremo apud Thessalonicam cognita comprehensa cum matre pœnas dedit. Ductæ igitur mulieres cum ingenti spectaculo e miseratione tanti casus ad suplicium, et amputatis capitibus, corpora eorum in mare abjecta sunt. Ita illis judicitia et conditio exitio fuit ".

'ի Սերայ Բաղնեաբեաց », բացատրութիւն մի՝ որ ուղղակի Հոփփսիմէի ստնդեայ հասակը կը յիշեցնէ մեզ, և ոչ թէ մեծաստանի մէջ անցուցած հոգևոր սնունդը: Պրիսկա և Վալերիա անուանքը՝ կարեն եղած լինել Հռիփսիմէ և Գայիանէ, պիտակաբար առնմամբ: Աստ՝ Խորենացւոյ մեզի մատուցած ծառայութիւնն՝ անգին արժէք ունի: Ցիրաւի, Հռիփսիմեանց տարագրութեան և երկար ճանապարհորդութեան կարևոր տեղեկութիւնքն, որք Ագաթանգեղոսի մէջ զանց եղած են, Մովսէս մանրամասնօրէն և ստուգապատում քննութեամբ փոխ առնելով 'ի յունական ' աղբերաց՝ մէջ կը բերէ, որով կը պարզուի ստուգիւ Հռիփսիմեանց և Վալերիանց ցայս վայր անլուծանելի մնացած զաղտնիքը: Նա՝ մէկ կողմէն Եւսեբիոսի վերոյիշեալ տեղւոյն համաձայն՝ զքաջատոհմիկն Հռիփսիմէ՝ պակշոտ բռնաւորին ձեռքէն յԱղեքսանդրիա փախած և անդ ժամանակ ինչ մնացած կը ծանուցանէ. իսկ միւս կողմէն Ղակտանտիոսի համաձայն՝ 15 ամիս 'ի Պաղեստին, յԱսորիս և 'ի Հայս թափառել կու տայ նոցա, յանձանօթս և բազմաթիւ ընկերօք: Ուրեմն այս երեք հեղինակութեանց համաձայն վկայութիւնն աստի, և անտի ճշդագոյն հանգամանք ժամանակակից դիպաց և անձանց, բաւական չե՞ն արդեօք ցուցնել, թէ Պրիսկայի և Վալերիայի անուանց պարզ փոփոխութիւն մի անթ եղած է յԱգաթանգեղ, կամ շփոթմամբ և կամ մեզ անծանօթ մի ուրիշ պատճառաւ. իսկ իրօք՝ նոյն են ընդ Գայիանէի և Հռիփսիմէի: Եթէ ստուգիւ քրիստոնեայ եղած են զոյգ հռովմէական բամբիշքս, և վասն Քրիստոսի նահատակուած, զոր յայտնապէս կը ցուցնեն Ղակտանտիոսի և Եւսեբիոսի վկայութիւնքը, մանաւանդ թէ նոցա գործերը, կարելի չէ՞ այնուհետև զոչել ընդ Մովսիսի թէ, « Ուրախ լեր տիեզերական մայրաքաղաք, որ նստիս յԱրևմուտս՝ առաքելական պսակեալ լուսով, աշխարհատարած ճառագայթիւք, պարեբք եւ Միրանազքեարեաւ ճառագայթեալ փայլեն յԱրևելս », ևս և յետեղեցւոջ Հայաստանեայց: Այո՛, ես բնաւ անտեղութիւն մի չեմ տեսներ այս բանիս և լիայոյս եմ, թէ օր պիտի գայ, որ նորանոր յիշատակարանք 'ի լոյս ածեալք՝ զլխովին պիտի յայտնեն իբրև ճշմարտութիւն, զոր ես իբրև լոկ կարծիք բարգաւաճեցի:

Սակայն մի միայն այս կէտս կայ, որ իբրև զպատուար՝ կը թուի անջատել զՎալերիանս 'ի Հռիփսիմեանց. այս ինքն է, նոցա նահատակութեան տեղեաց տարբերութիւնը: Եւ յիրաւի, եթէ նոքա 'ի Թեսաղոնիկէ, և սոքա 'ի Վաղարշապատ Հայոց կատարեցան, այնուհետև չէ մարթ նոյն համարել: Սակայն ես աւելի կ'ընտրեմ այս

1. Ցիրաւի, նախ զի Դիոկղետիանոսի և Մաքսիմինոսի հանած հալածանքներն՝ ամբողջ 10 տարի տևեցին: Բ. 'ի միջոցի աստ տասն ամացս, մանաւանդ թէ՛ մօտ 'ի վախճան անդր, եղաւ Պրիսկայի և Վալերիայի նահատակութիւնը: Գ. Հայաստանի դարձն ևս 'ի քրիստոնէութիւն՝ եղաւ մօտ յամն 210–211, ըստ արտաքին պատմագրութեան: Դ. Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Գիրք Ը, գլ. Ձ, քաղաքական շփոթ մի և խռովութիւն ևս ծագած կը պատմէ այս ժամանակս 'ի Հայս և յԱսորիս. և կարծեմ, թէ այս դէպքս է, զոր ագաթանգեղոսեան գրոց հեղինակը կը յիշէ 123 և մանաւանդ 140 իջում, ա՛յլընդայլոյ պատճառներով և պարագայիւք:

վերջին պարագայս խնդրոյ և տարակուսանաց տակ ծգել (թէպէտև այն երկու հեղինակութիւններն իբրև անտարակուսելի իրողութիւններ կ՚աւանդեն), քան թէ մնացած բոլոր քաջադիպութիւնքը, որով միայն Հռիփսիմեանց վկայաբանութիւնը պատմական արժէք կը ստանայ, և տոհմային պատմագրութիւնն՝ արտաքնոյն հետ ձեռք ձեռքի կու տան:

Ո՞վ արդեօք յերկոցունց աստի՝ այդպիսի տարածայնութեան և շփոթութեան աղբիւր համարուելու է, Լակտանտիո՞ս, թէ Հռիփսիմեանց վկայաբանութեան գրողը: Ես աւելի վերջինս հաւանական կը համարիմ, կամ մանաւանդ գրոցս խմբագրողը. որովհետև առաջինը՝ ոչ միայն ժամանակակից է այն դէպքին՝ զոր կ՚աւանդէ, այլ անշուշտ ականատես իսկ: Եւ իմ պատճառներս ահաւասիկ են: Նախ, ինչպէս կանխաւ ծանուցի, Հռիփսիմեանց՝ Տրդատայ հետ մենամարտելուն և իւր ընկերօք այն կերպով նահատակուելուն, ինչպէս նոցա նախորդ և հետևեալ մի քանի հատուածներն՝ բոլորովին ազգային տիպ ունին, և պատմականէն աւելի վիպասանական ձևի մէջ դրուած են՝ յետ ժամանակաց. Մաքսիմինոսի արարքն և վարմունքը՝ Տրդատայ պատշաճեցնելով, ինչպէս Դիոկղետիանոսի՝ առ Մաքսիմինոս դրկած դեսպանն և թուղթը, կամ նոյն իսկ Մաքսիմոսի առ Տրդատիոս ուղղած մէկ հրովարտակը՝ Դիոկղետիանոսի ընծայելով: Բ. այս և մի քանի ուրիշ դէպքեր ևս, ինչպէս ՚ի վեր անդր տեսանք, այլընդայլոյ բանիւ պատմուած են և յեղաշրջուած. ուրեմն չենք սխալիր, եթէ ըսենք, թէ ազգային սնապարծութիւնը մէկ կողմէն և անհմտութիւն արտաքին պատմագրութեան միւս կողմէն՝ Հռիփսիմեանց նահատակութեան պատմութիւնն և տեղին իսկ այլափոխած է. այնու զի նոցա գալուստն ՚ի Հայս վկայեալ էր նաև յօտարաց, ինչպէս կը ծանուցանէ Մովսէս Դաւթի Հռովմայեցւոյ համար:

Հռիփսիմէ ʻΡιψλμղ անունն իսկ՝ անյատուկ կերպով գործածուած է աստ. այսինքն է, [illegible] ἐξερρίφθης, յայտ է թէ ՚ի ծիրանափառ տիկնութենէ անտի. իսկ նորա ծննդեան անունը՝ բոլորովին այլ ինչ պէտք է որ եղած լինի. որովհետև թէ՛ առ Ցոյնս և թէ՛ առ Հռովմայեցիս չիք այլ ոք այսպէս յորջորջեալ[1]. իսկ առ մեզ՝ Ե դարու մատենագիրք և նոցա յաջորդ դարերը միայն ՚ի գործ ածել են: Իսկ Զենոբ Գլակացի՝ որ յատուկ անուանց յիշատակութեան մասնաւոր փոյթ ունի, բնաւ չյիշեր զՀռիփսիմէ: Առ Փ. Բուզանդացւոյ՝ անգամ մի միայն կը յիշուի, Գ Դպրութեան ԺԴ գլխուն մէջ, հանդերձ Գայիանեաւ. բայց այն երկտող հատուածն եկամուտ անհարազատութիւն[2] կը տեսնուի: Արդ, եթէ Լակտանտիոսի ձեռա-

1. Հռիփսիմէա իբր յատուկ անուն կը յիշուի ՚ի հին վէպս արևելեայց. Տես Les Mille et un jours, Contes Orientaux. Paris, 1883, p. 357.

2. Վասն զի յետ ասելոյ զԴանիելէ եպիսկոպոսէն, թէ «Ունէր նա զաստիճան աթոռոյն գլխաւորութեան Տարօնոյ», և այն գաւառին սրբազան տեղեաց յիշատակութիւնն ըրած ժամանակին՝ անդէն կը յարէ, «Սոյնպէս և ՚ի գաւառն Այրարատեան զնախավկայսն քրիստոսի,

գրաց մէջ ընդօրինակողացմէ ներմուծուած խանգարմունք մի չէ [illegible] անունը, շատ բնական է ըսել, թէ վերոյիշեալ թագաւորքն, մայր և դուստր բամբիշները, կը կրէին այդ անյատուկ անունները՝ յետ դարձին իւրեանց 'ի քրիստոնէութիւն կամ յետ տարագրութեանն 'ի Հռովմայ. և թէ նոքա, ինչպէս կ'աւանդէ Մովսէս՝ Դաւիթ Հռովմայեցւոյ վկայութեամբը, ստուգիւ 'ի Հայս եկած են, Տրդատայ ձեռքէն ազատած և հուսկ ուրեմն 'ի Թեսաղոնիկէ անցած և գլխատուած: Բայց նոցա նշխարքն անտի ապա 'ի Հայս տարուած են այն բազմաթիւ քրիստոնէից ձեռքով, որոնք կ'ընկերէին նոցա: Եւ յիրաւի, այս բանիս կը նպաստեն նաև Ագաթանգեղայ գրոց 150 և 151 էջերը, յորս կ'ըսուի, թէ անպարտելի կոյսը՝ հանգոյն Դեբովրայ պարտելով զթագաւորն և հերձեալ զամբոխ մարդկան 'ի գիշերի զերծաւ 'ի բաց:

Իսկ ընդհակառակն, եթէ ապացուցուի, թէ Լակտանտիոսի աւանդածը սխալ է. և թէ Պրիսկա և Վալերիա ստուգիւ կատարուեցան ոչ եթէ 'ի Թեսաղոնիկէ՝ այլ 'ի Վաղարշապատ Հայոց, ընդ քրիստոնէական անուամբս Հռիփսիմէի և Գայիանէի, այն ժամանակ այդ մեծ կնճիռն ևս՝ լուծուած կը լինի, և նոցա պատմութիւնն՝ ըստ արտաքին պատմագրութեան իսկ քաջ հաստատուած: Եւ յիրաւի, Եւսեբիոսի մէկ տեղին [1], ուր յամին 311–312 Մաքսիմինոսի պատերազմը կը պատմէ ընդդէմ Հայոց, որոնք, կ'ըսէ, թէ ցայն վայր մարտակից և նիզակակիցք էին Հռովմայեցւոց, կը թուի նպաստել այս բանիս: Արդ, ծանրակշիռ հեղինակս՝ այս հակիրճ բանիւքս՝ բազում և կարևոր եղելութիւններ կը յայտնէ մեզ. նախ, թէ այդ ժամանակէն քիչ առաջ, այսինքն է, յամին 310–311 կատարուած էր Հայոց դարձն 'ի քրիստոնէութիւն, յորում էին այնպէս [illegible]: Երկրորդ, թէ ստուգիւ Հայք նիզակակից էին Հռովմայեցւոց, և այս

ուր Գայիանէն և Հռիփսիմէն կային,՝ իւրեանց հանդերձ գործակցօք», որ բոլորովին միջանկեալ մի բան կը տեսնուի և Փաւստոսի ճառած նիւթէն և նպատակէն դուրս է:

Իսկ եթէ ստուգիւ Փաւստոսին համարիցի ոք այս տեղիս, կարելի է զնոյնն իբրև զօրեղ ապացոյց 'ի մէջ բերել Հռիփսիմեանց գոյութեան, Գուտշմիդի կարծեաց հակառակ: Բ. Փաւստոսի Գ. Դպրութեան ԺԴ գլխում, Դանիէլ՝ առ մեծամեծս Հայոց ուղղած յանդիմանութեան մէջ՝ առանց անուան կը յիշէ զսուրբ կուսանս, զի յետ յիշելոյ զառաքեալն Հայոց՝ անդէն կը յաւելու. «Եւ զհետ նորա նորին նմանին (այսինքն է Գրիգոր) չարչարեցին վասն նոցին իրաց. իսկ զկնի սորին իրացս՝ եկին բազմութիւնք սրբոց վկայիցն Աստուծոյ»: Ղ. Փարպեցին ևս, գլ. Ը, Փաւստոսի վերջին խօսքերովն ուղղակի զՀռիփսիմեանս հասկացել է:

1. Պատմ. Եկեղ. Թ. Դպր. գլ. Ը, այսպէս գրուած է. «Հանդերձ սոքիմբք յարեաւ և պատերազմ 'ի բռնաւորէն (Մաքսիմինոսէ) ընդդէմ Հայոց, որք, 'ի սկզբանէ անտի բարեկամք և մարտակիցք էին Հոռոմոց. զորս քրիստոնեայս և յերկրպագութիւն ճշմարտին Աստուծոյ փոյթս, նեղելով բռնաւորին ատելւոյն Աստուծոյ՝ զի կռոց և դիւաց զոհեսցեն, փոխանակ բարեկամաց՝ թշնամիս, և փոխանակ նիզակակցաց՝ պատերազմողս ընդդէմ իւր յարոյց զնոսա: ... Արդ, նա հանդերձ զօրովք իւրովք 'ի պատերազմի անդ ընդդէմ Հայոց 'ի բազում ուրեք հարեալ վատթարէր առաջի նոցա»:

պատճառաւ առ Տրդատ գրուած նամակին մէջ՝ [illegible] իւր կը կոչէ կայսրն զթագաւորն Հայոց: Երրորդ, թէ 'ի կռապաշտութիւն անդր՝ստիպելուն համար զնորադարձ արքայն՝ եղաւ այն պատերազմը, յորում կ'ըսուի, թէ չարաչար պարտեցաւ Մաքսիմինոս: Կարծեմ, թէ համաձայն ըսած կը լինինք Եւսեբիոսի Ը Դպրութեան ԺԴ գլխուն յէջ 660 խօսքերուն, եթէ իբրև մի այլ պատճառ կայսեր թշնամութեան և այն պատերազմին եղած համարինք Հռովմայեցի տիկնանց սպանութիւնը, զոր պակշոտ կայսրն՝ առ յոյժ ցանկութեան չուզեց բառնալ 'ի կենաց, այլ եւ աքսորել, ըստ Լակտանտիոսի և Եւսեբեայ, և կը յուսար վերստին ձեռք բերել. բայց այս ակնկալութիւնս 'ի դերև հանեց թագաւորն Տրդատ, զի հակառակ նորա հրամանին փոխանակ յետ դարձուցանելոյ՝ եւ սպանանել:

Մինչև հիմա ըրած քննութիւննիս ամփոփելով, կարող ենք ասել, թէ Ա. Դիոկղետիանոսի անուամբ առ Տրդատ գրուած թուղթը, զոր 'ի մէջ բերած է վկայաբանութեանս հեղինակն՝ Մաքսիմինոսի ընծայելի է, 'ի նկատի առնելով նորա ժամանակն և պարագաները՝ յորում գրուեցաւ, և կամ լոկ նմանութիւն համարելի է Դիոկղետիանոսի առ Մաքսիմինոս գրած աղերսագրին, յետս դարձուցանելոյ զՎալերիա՝ յաքսորանաց անտի յարևելս: Բ. թէ Հռիփսիմեայ և Գայիանեայ պատմութիւնն՝ ամենայն պարագայիւք նոյն է Վալերիայ և նորա մօր Պրիսկայ պատմութեան հետ, ըստ որում և անձանց նոյնութիւնը չէ ինչ հակառակ՝ ոչ տոհմային և ոչ արտաքին պատմագրութեան աւանդածներուն, այլ երկուստեք ևս քաջ կը միաբանին: Գ. Նոցա կատարումը պէտք է որ եղած լինի մօտ յամն 210–211: Դ. թէ 'ի հինգերորդ դարուն խսկ խնդիր և տարակոյսներ կային Հռիփսիմեանց անձնական գոյութեան, ուղղորդութեան և նահատակութեան վերայ. և թէ այս պատճառաւ Մ. Խորենացի հետամուտ եղաւ քննել և ստուգել նոցա պատմութիւնը: Ե. թէ Դաւիթ Հռովմայեցին եղած է իբրև հասարակաց աղբիւր թէ Մովսէսի և թէ Հռիփսիմեանց վկայաբանութեան հեղինակի աւանդութեանց՝ որ յԱգաթանգեղ:

# ԳԼՈՒԽ Է.

Տրդատայ խոստովանութեան առանձնութիւնն և նորա արժէքը. — Այս դրուագին և Գրիգորի կենսագրութեան հակադարձներն. — Գուտշմիդի կարծիքը. — Բաղդատութիւն հարուածոյն Տրդատայ ընդ Նաբուգոդոնոսորայն. — Այլեւ շարժող հակառակութեանց և անձեռնութեանց հաստատոյս հերքումն. — Վարագնիշան կամ վարդավառութեան անձնաւորութիւնն առ ուխտակայս և նորա հնութիւնը. — Գայլախազութեան հետևողութիւնն և նորա պատճառը. — Սայրէ և պարզական լուծումն՝ ժխտական հանգոյցի խոստովանութեան Տրդատայ։

Յէջ 163, Ի գլխահամարով սկսող պարբերութենէն՝ մինչև ԻԲ գլխահամարն յէջ 193 միջոցը՝ կը պարունակէ Տրդատայ որսի ելլելուն – 'ի վերուստ հարուածուելուն – Խոսրովիդխտոյ տեսլեան – Գրիգորի վիրապէն հանուելուն և զհարուածեալս հրահանգելու պատմութիւնը [1]:

Ո՞ւմ արդեօք իցէ այս․ Տրդատա՞յ, թէ ընդհակառակն Գրիգորի կենսագրութեան մասն: Այս բանս իմանալը շատ դժուար չէ, ըստ խս, եթէ այս հատուածոցս մէջ պարունակեալ նիւթոց խղճամիտ բաղդատութիւն մի ընենք՝ Տրդատայ պատմութեան և Գրիգորի կենսագրութեան հետ, որոնց մի մասն արդէն քննեցինք, և միւսներն յԲ․ Գրոց մէջ պիտի գան 'ի հանդէս: Տեսանք արդարև 'ի պատմութեան անդ Տրդատայ, թէ նորա կենսագիրն ինչպիսի՜ բարձրագոյն, վեհանձն, և վսեմական դիրքի մէջ դրած է իւր թագաւորն, 'ամենայն պարտուպատշաճ յարգութիւնս ցուցանելով նմա, աւելի քան զեղեալսն 'ի պատմութեան: Նոյնը կը տեսնուի նաև Յառաջաբանի և վերջաբանի մէջ և Բ. Գրոց այլ և այլ էջերումը, բայց 'ի մասնաւորի յէջսն 576, 583, 625, 659, 651 և 660: Իսկ յայսմ, ընդհակառակն, թէպէտև թագաւորն Հայոց՝ սէգն Տրդատ մերթ ընդ մերթ կու գայ 'ի հանդէս, բայց զերդ « Դիւաբախ և կատաղի »., և զերդ 'ի կերպարանս 'անբան և ամենազարշ անասնոյ: Եւ այս պարագայից մէջ՝ հեղինակը ոչ միայն թեթև կարեկցութեան կամ ցաւոց նշան մի չտար բնաւ՝ իւր մեծափառ տիրոջ՝ նախատակոծ և խղճալի կացութեանը վերայ, այլ մանաւանդ, ըստ կարելւոյն, սաստիկ և

1. Դիտելու ենք, որ հայերէն Ագաթանգեղայ 171 իջէն և ԻԱ գլխահամարէն սկսեալ՝ ցէջն 545 ծ. գլխահամարին, կը պակսի յունարէն օրինակին մէջ: Իսկ ըստ Լանգլուայի հրատարակութեան, § 94–§108: § 108 գլխահամարէն՝ մինչև § 110 գլխահամարներն կիսով չափ նեթ են: § 115– § 120 դարձեալ կը պակսին. իսկ § 120 և § 121 գլխահամարներն՝ հազիւ թէ տողս ինչ ընծայեն մեզ: Լագարդ՝ իւր վերոյիշեալ հրատարակութեան մէջ լրացուցեր է բոլոր այդ պակասն և պակասաւոր գլխահամարներն:

թշնամանալից բացատրութիւններ միայն կը յաճախէ: Եղան ոմանք և են իսկ արդ, որք այս երևոյթս 'ի նկատի չառին, այլ ենթադրութեամբս միայն գոհ եղան և ջանացին գոհացնել և ընթերցողս իւրեանց, ասելով բարեմտութեամբ, թէ Տրդատայ խոնարհութիւնն ինքնին զայդ կը պահանջէր. առանց խորհելու, թէ այդ հատուածները Տրդատայ մահուանէն շատ և շատ տարիներ յետոյ կարող էին գրուած լինել, և Տրդատայ քարտուղարէն բոլորովին տարբեր անձի մի ձեռքով: Ուստի այսպիսի փաստեր՝ ծրի ասութիւն համարելի են պարզապէս և ոչ իր. այլ, ըստ առածին, « Ընդ բան և ընդ իր՝ մեծ է խտիր »: Եւ յիրաւի, եթէ Տրդատ իսկ ուզէր այնքան խոնարհիլ, սակայն նորա կենսագրին անկ էր կարեկցիլ նմա և 'ի վեր բարձրացընել, և ոչ թէ այնքան նուաստանալ և նուաստացնել զայն: Ուստի, իրաւամբ տարակուսեցան Ստիլտինգ և Գուտշմիդ այս բանիս վերայ:

Արդ, այս մասն՝ թէպէտև Տրդատայ պատմութեան հետ փոքր ինչ վերաբերութիւն կը ցուցնէ, սակայն և այնպէս պէտք է իրօք անտի անկախ մի բան համարել. այսինքն է, մասամբ[1] է շարունակութիւն Գրիգորի կենսագրութեան, որուն հեղինակը դիտմամբ ուրեք ուրեք 'ի մէջ ածել է զՏրդատ՝ այն աղետալի կացութեանը մէջ, որպէս զի Ս. Գրիգորի և նորա փրկողին գործոց մեծութիւնն աւելի ևս արտափայլէ: Եւ իրօք այս բանս ակներև կը տեսնուի 'ի յետագայ դիտողութիւնս. այսինքն է, Տրդատայ պատմութեան մէջ, էջ 103 և 105, երկիցս 13 ամ կը դնէ զմնալն Գրիգորի 'ի վիրապին, ինչպէս տեսանք յառաջագոյն. իսկ աստ, ընդհակառակն, երկիցս դարձեալ 15 ամ կը գրուի յէջս 166 և 186: Յէջ 181 Հռիփսիմեանց մասին եղած այս բացատրութիւնս. « Ապա և սուրբ վկայքն Աստուծոյ, զոր դուքն չարչարեցէք, վասն ձեր և նոքա բարեխօսութիւն· մատուցանեն », նման են բանիցն՝ որ յէջ 544 յերկրորդումն պարբերութեան: Յէջ 164 կ'ըսուի վասն Տրդատայ, թէ փոխուած էր 'ի կերպարանս խոզի, և եղեգանց մէջ կը ճարակէր. նոյն բացատրութիւնը՝ նմանաձայն բառերով կը լինի նաև յէջ 549 և 550: Յէջ 171 կ'ըսուի, թէ թագաւորը նախարարօք հանդերձ Գրիգորի ոտքն ինկած՝ թողութիւն կը պաղատէին իրենց յանցանացը և բժըշկութիւն 'ի հարուածոց. նոյնը կը ծանուցուի բառ առ բառ նաև յէջն 548: Յէջ 183 կ'ըսուի, թէ հարուածեալ թագաւորն և նախարարները չկարէին հեռանալ 'ի Գրիգորէ, ապա թէ ոչ անհնարին կերպով կը տանջուէին 'ի դիւաց. սոյն այս բացատրութիւնը կը լինի նոյնպէս յէջ 545:

Իսկ մնացած մասն, այսինքն է, 187 իջէ անտի ցէջն 193, սերտ յարաբերութիւն ունի Ս. Գրիգորի անուամբ ծանօթ ընդարձակ վարդապետութեան հետ, որ Ագաթանգեղոսեան գրոց մեծագոյն տեղը գրաւած է. այսինքն է, 195–541 էջերը: Բաց աստի, ուրիշ երևոյթ մի ևս ընդ առաջ կը լինի մեզ, զոր պէտք ենք ուշադրութեան առնուլ: Ի՞նչ կը նշանակէ, յիրաւի, 163–187 էջ եղած մասին՝ փո-

1. Այսինքն է, ցէջն 187 մինչև 'ի վերջ պարբերութեան:

խանակ իւր նախընթացին (այսինքն, Հռիփսիմեանց վկայաբանութեան) և կամ զէթ նորա յաջորդին (այսինքն է, Գրիգորի վերոյիշեալ վարդապետութեան) ընդհակառակն անոր յաջորդող վերջին Գրոց կամ Հայոց դարձի պատմութեան հետ ունեցած կատարեալ համաձայնութիւնը: Ի՞նչ կը նշանակէ, դարձեալ 187 իջէն մինչև 193 էջ գրաւած մասին համաձայնութիւնը՝ ոչ թէ անմիջապէս իւր նախորդին և ոչ իսկ Հայոց դարձի պատմութեան՝ այլ Գրիգորի պատմութեան Ա. մասի մէջ պարունակուած վարդապետութեան հետ և անմիջապէս զինքը յաջորդող, այն ինքն է, ընդարձակ վարդապետութեան հետ:

Առաջին հարցման նկատմամբ՝ իմ կարծիքս և պատասխանին՝ այս է, թէ այդ խնդրոյ նիւթ եղող հատուածները՝ կամ շարունակութիւն և վերջաբան համարելի են Գրիգորի Կենսագրութեան Ա. Մասին, զոր ընդհատել է Հռիփսիմեանց միջանկեալ վկայաբանութիւնն. և կամ նախապատրաստութիւն ինչ՝ Բ. Մասին պատմութեանն այնորիկ: Իսկ գալով երկրորդ հարցին՝ պէտք է ըսել, թէ է՛ այն նախապատրաստութիւն իմն անմիջապէս զինքը յաջորդող Գրիգորի կարծեցեալ վարդապետութեանը: Բայց այսպիսի նախապատրաստութիւն մի Գրիգորի կենսագրի՞ն արդեօք պէտք է ընծայել (ենթադրելով նորա գոյութիւնն), թէ ընդհակառակն զայն յետոյ ուրեմն խմբագրողին և Ագաթանգեղայ գրոց մէջ ներմուծողին. այս բանս որոշելն ամենադժուարին է յայսմ վայրի. որովհետև այս մասը՝ նմանութիւն ունի, ինչպէս ըսուեցաւ, թէ՛ Գրիգորի կենսագրութեան մէջ եղած այն համառօտ վարդապետութեան տեղեաց հետ, զոր կը պարունակեն նաև յոյն և լատին օրինակները, և թէ՛ անմիջապէս իրմէ վերջ եկող ընդարձակ վարդապետութեան տեղեաց հետ, որ չգտնուիր ոչ յունարէնի և ոչ լատիներէնի մէջ: Օրինակի աղագաւ, յէջ 191 երկրորդ պարբերութեան մէջ՝ մարգարէից վերայ եղած հատուածը, յորում նոքա կը դրկուին յԱստուծոյ իբրև լուսատուք՝ հեթանոսութեան խաւարը փարատելու, և Աստուծոյ կամքը մարդկանց յայտնելու համար, կը գտնուի նոյնպէս յէջս 68 և 69 Բ. պարբերութեան և յէջս 255–256: Աբրահամու վերաբերեալ հատուածն յէջ 191՝ կը գտնուի նաև յէջ 229 ընդարձակ վարդապետութեան:

Գուտշմիդի կարծիքով՝ յէջ 187, «Իսկ եթէ զձեզ յորդոր յօժարութեամբ տեսանիցեմք» պարբերութիւնը ցէջն 193, ինչպէս նաև յէջ 195, «Տէր Աստուած որ նա միայն է ինքնութեամբ» բանիւք սկսող ընդարձակ վարդապետութիւնը ցէջն 541, «Այլ ես զամենայն պատգամս Աստուածութեան կարգեցի», զոր յառաջագոյն և Գրիգորի գործոց հեղինակն արդէն իսկ իւր դիմաց ունէր: Իսկ 171 իջէն սկսեալ՝ մինչև 187 էջը «Փառաւորչաց իւրոց», Գրիգորի գործոց հեղինակէն կամ լաւ ևս նորա խմբագրողի ձեռքով նախապատրաստուած են, ընդարձակ վարդապետութեան ներմուծումը դիւրացնելու նպատակաւ: Արդ, դիտելու ենք որ գերմանացի քննադատին եզրակացութիւնն՝ երկու նախադասութիւններ կը պարունակէ:

Առաջնոյն, այսինքն է, 187–193 էջերը՝ Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութեան հետ նոյն կարծելու գլխաւոր պատճառն եղած կ՚երևի՝ երկաքանչիւր կողման մի քանի տեղեաց կատարեալ նմանութիւնը. այս նորա մէջ բերած հակիրճ բաղդատութենէն [1] իսկ կը տեսնուի: Գուտշմիդի Ferfass᠀r բառովն՝ եթէ հեղինակ միայն հասկնանք, այն ժամանակ Գրիգորի և Հռիփսիմեանց Գործոցը՝ մի միայն հեղինակ եղած պիտի լինէր. մինչդեռ, ըստ իս, բոլորովին հակառակը պէտք է ըսել: Բ. նա այս երկու մասերուս վարդապետական կէտերուն աստուածաբանական քննութիւն մի ըրած չէ. ոչ թէ Ագաթանգեղայ յունարէն կամ իտալերէն հրատարակութեանց մէջ չգտնալուն կամ հայերէն չհասկնալուն պատճառաւ, ո՛չ. այլ աստուածաբանութեան անձեռնհաս լինելուն պատճառաւ. որովհետև կ՚ըսուի, թէ նա անգամ մի միայն այնպիսի մակածութեան մէջ աապարէզ գալով և անյաջող ելք ունենալուն համար՝ առաջադրած էր այնուհետև զգուշանալ: Ուստի նա այն հատուածոց բառական նմանութեանց բաղդատութեամբը միայն բաւականացեր է, որ զինքը այս հետևութեանս հասուցել են:

Սակայն, Գրիգորի անուամբ մեզի հասած ընդարձակ վարդապետութիւնն՝ առնուած է Գրիգորի պատմութեան Ա. մասի մէջ եղած համառօտ վարդապետութենէն. որովհետև ըստ հիման ևեթ է նոյն անոր հետ, և ոչ թէ ըստ ամբողջութեան այժմեան ձևոյն՝ որով կը ներկայանայ մեզ այսօր. ուրեմն այսպէս նաև 187 էն մինչև 193 էջերն ուղղակի ագաթանգեղոսեան գրոց խմբագրողին և կամ լաւ ևս՝ այն խմբագրութեան մէջ մեծ դեր խաղացող ընդարձակ վարդապետութեան հեղինակին ընծայելի են, որ ոչպէս զի կարենայ դիւրաւ յաջողցնել ագաթանգեղոսեան Ա. և Բ. գրոց մէջ ընդարձակ վարդապետութեան ներմուծումը, նորա մի քանի տեղերը կանխած մէջ բերած է, դնելով զայնս ՚ի բերան Ս. Գրիգորի. մանաւանդ թէ յէջս 188–189 կը դնէ վարդապետութեան նիւթոց հակիրճ ծրագիրն ևս՝ երեքնելով սոյն բացատրութիւնս. «Սկիզբն արարացուք ձեզ պատմելով» և այլն, առ ՚ի պատրաստել զմիտս ընթերցողի գրոցն: Սակայն հանդերձ այսու՝ կան յայտնաբարբառ նշաններ, յորոց կարեմք հաստատել, թէ ստուգիւ 187–193 էջերում եղած հատուածներն՝ ոչ ուղղակի Գրիգորին են անկ և ոչ իսկ նորա պատմութեան նախկին հեղինակին: Եւ յիրաւի, նոցանէ միոյն կամ միւսոյն լինելու համար, պէտք էր, որ այդ հատուածներդ ուղղակի և անընդմիջաբար Գրիգորի պատմութեան նախընթաց վարդապետութեան հասարակ տեղեացմէ՝ իբրև ուղէշք ՚ի բնոյ անտի բառ առ բառ յառաջ եկած լինէին (գէթ ըստ էական մասանց), քան թէ նորա յաջորդ ընդարձակ վարդապետութեան տեղեացմէ, զոր յետոյ ուրեմն ճառելոցն էր նա, և մենք իբրև պտուղ և ծաղիկս համարելու ենք առաջնոյն: Սակայն իրն ինքնին հակառակ կը ցուցանէ մեզ. որովհետև այն հատուածոց մէջ հազիւ թէ մի կամ երկու տեղեաց

1. A. von Gütschmid, Agathangelos, s 38, 39.

նման բացատրութիւններ կան, գուցէ այն իսկ ըստ դիպաց եղած են: Իսկ, ընդհակառակն, յաջորդ վարդապետութեան տեղեաց հետ ստէպ ստէպ և բառ առ բառ նմանութիւններ յայտնի կը տեսնուին: Բ. այսպիսի եղելութեան մի այլ ակնյայտնի ապացոյցը՝ կը գտնենք գրոցս Գ. մասին, այն ինքն է, Հայաստանեայց դարձին պատմութիւնն Ղթ. գլխահամարին՝ 541–542 էջերում, որ անմիջապէս կը յաջորդէ վարդապետութեանը: Աստ՝ Ա. և Բ. պարբերութեանց մէջ, որոնք 176 և 185 էջերէն փոխ առնուած բացատրութիւններ են, յետա֊գայ մատնող խօսքերը դրած է խմբագիրը Գրիգորի բերանն. « Այլ ես զամենայն պատգամս Աստուածութեան կարգեցի և եդի 'ի լսե֊լիս ձեր առհասարակ, ոչ թագուցի զօգուտն. 'ի սկզբանց մինչև. վասն վախճանին՝ զամենայն պատմեցաք ձեզ » : Սակայն դիտելու ենք, որ այս բացատրութեամս կը հակասեն անկէ վերջ եկող էջերը, յորս դեռ այն ինչ կու գան 'ի հանդէս « խոզացեալ թագաւորն և դիւաբախ բազմութիւնը » — վաթսուն օրուան մէջ հազիւ ուրեմն բժշկութիւն կը գտնեն մտաց և մարմնոյ, և ապա կը փութան գունդագունդ 'ի լուր « բանին կենաց և աւետեաց աւետարանին ». — հուսկ 'ի վախճանի՝ շինութիւնք վկայարանաց: Գ. յէջս 546–547 կ'ըսուի Ս. Գրիգորի կողմանէ. « Ոչ եթէ ծայրաքաղս ինչ արարեալ՝ ողաբանս կամ օրավարս խօսեցայ. այլ յարկողաբարամ արարեալ՝ ուսուցանէր ամենեցուն... ըստ մի ըստ 'ի նոյանէ առանձինն յականէ ծա֊նուցանէր և յարմարելոյ ընծայեցուցանէր ... և 'ի նմին զմեկնու֊թիւն նորուն հանդերձեալ գրեաց »: Իսկ ընդարձակ վարդապետու֊թիւնը՝ բոլորվին հակառակ երևոյթ ունի. այսինքն է, ծայրաքաղ և գեղեցիկ ծաղկաքաղ մի է յունական Հարց, որոնք դարով յետոյ են քան զԳրիգոր. բայց հիմն ունի զհամառօտ վարդապետութիւնն Գրիգորի, որ խօսեցաւ 'ի կախաղանէ անտի և զՊատարագամա֊տոյցն Գր. Լուսաւորչի և զՑաճախապատում ճառսն: Դարձեալ ոչ միայն իւրաքանչիւրին վիճակին և հասկացողութեան չէ յարմա֊րուած, այլ նոյն իսկ այն նորադարձ երեխայից հասկացողութենէն բոլորովին դուրս և բարձրագոյն տեսութեամբ գրուած. մանաւանդ թէ ուրեք ուրեք աստուածաբանից իսկ դժուարիմանալի: Բայց ո֊րովհետև Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութիւնն՝ Ա֊գաթանգեղոսի մէջ այն տեղին չունէր 'ի սկզբան, այլ յետոյ մտաւ, այն պատճառաւ՝ ես իսկ վերջը կը թողում առանձին գրքով ընել նո֊րա մանրամասն քննութիւնը: Այժմ դառնանք քննելու վերոյիշեալ մասի պատմական արժէքը:

Տխուր և միանգամայն գեղեցիկ է այն հակիրճ դրուագը, որ կը յաջորդէ սրգաւէտ մահուան գեղանւոյն Հռիփսիմեայ, և կը կան֊խէ կը պատրաստէ զընթերցողս կրկին երկնառաք սքանչելեաց, յո֊րոց միովն կը հարուածէ թագաւորն թագաւորաց Աստուած՝ զթա֊գաւորն Արշակունի, հանդերձ նախարարօք և մեծամեծօք. իսկ միւսովը՝ կը կանգնէ և կը լուսաւորէ այն երկիրն, որ ոռոգեցաւ իւր անմեղ վկայուհեաց սուրբ արեամբը: Վեցամիւ սև օրեր կը թաւա֊լին կ'անցնին Տրդատայ լուսապայծառ արքունեաց վրայէն, մին քան

զմիւսն աւելի սաստկացնելով նորա ցաւոց և տրտմութեան ալիքնե֊րը: Հուսկ ուրեմն կ'ելլէ խրոխտապանծ և սէգ Արշակունին, ըստ վա֊ղեմի սովորութեան Պարթևաց, բոլոր իւր ցասման և ցանկութեան նետերը թափելու վայրի էրէոց վերայ. բայց որպիսի՜ մեծավայե֊լուչ պատրաստութեամբ. « Ժամ տուեալ որոց՝ ամենայն զօրաց ածել կուտել **շղթայականն** [1], **խաճազական ափաեալ, երաֆաղ փառեալ, Նակարքն հրեալ...** երթեալ 'ի դաշտն **փառական** [2] **շեմակաց** »: Այն ինչ բազմել 'ի կառս կ'ուզէր քաղաքէն դուրս գնալ, անդէն և անդ կը հասնի Աստուծոյ ահաւոր և վրէժխնդիր դատաւճիռը նորա վե֊րայ, որ կառքէն 'ի գետին կործանուելով կը մոլեգնի. և 'ի քթթելական՝ հանգոյն թագաւորին Բաբելացւոց կը փոխուի 'ի մարդկային կերպարանաց՝ 'ի կերպարանս վայրի խոզի. նոցա բնակակից կը լինի և կը ճարակի յեղեգնուտս:

1. Փ. Բուզանդացին, Գ. Դպր. գլ. Ի. կը յիշէ նմանօրինակ որսորդու֊թիւն մի, զոր ետ Տիրան՝ վարազ–Շապհոյ, յասելն. « Սակաւ սպասաւո֊րօք հանդերձ և որսոցն պառակտանօք »: Առ Ղազարայ ևս կը յիշուին նմանօրինակ որսորդութեան գործիներ. « Հարկանէին յանկարծադէպս յերագազսն »: Եւ այլուր՝ « թակարթացն շրջափակութեամբ, երագա֊գիւքն և գահողովքն ելեալ 'ի յորս գունդք նախարարացն որդւովքն ա֊զատաց »: Ի թարգմանութեան անդ Կիւրղի՝ կ'ըսուի. « Երագազն՝ անօթ ինչ է հիւսկէն »: Առ Եզնըկայ կ'ըսուի. « Ի դաշտս երագազունք ծգիցին »: Այսպէս նա և առ Մ. Խորենացւոյ Գ. գլ. ԾԳ և ԽԳ: Արդ, Դ և Ե դա֊րուց հեղինակաց այս վկայութիւններս իսկ կը հաստատեն Տրդատայ կենսագրին աւանդածը, թէ արդարև Արշակունեաց ժամանակէն և այսր՝ գոյր 'ի Հայս սովորութիւն արքայական որսորդութեան: Սակայն քսենոփոն 'ի Կիւրամարզն և այլուր դեռ աւելի 'ի խոր հնութիւն անդր կը հանէ զայն և կը ցուցանէ, թէ որսորդութիւնն՝ առ Պարսիկս և Հայս համարուած էր իբրև պատկեր իմն պատերազմի: Եւ յիրաւի, Կիւրոս այսպիսի իմն պատեհաւ կը մտնէ 'ի Հայս և կը պաշարէ յեղակար֊ծումն ժամու զՆրուանդ:

2 Անունս Փառական՝ միայն ԽԳ ճառընտրի մէջ, էջ 446, փառմական գրուած է. իսկ Ագաթանգեղոսի բոլոր օրինակաց և տոհմային մատե֊նագրաց քով փառական է: Բայց հետևեալ բառին նկատմամբ՝ մեծ ան֊միաբանութիւն կայ. Բ և Ջ օրինակները նշամակաց կը գրեն. իսկ այլուր նշեմակաց (նշանակաց): Սակայն ճշդագոյն կը թուի ինձ Փառական Շեմակաց. որովհետև Ի դարուն հնագոյն օրինակաց մէջ հաւանօրէն այսպէս գրուած էր. որոյ ապացոյց է նոյն դարուն հայերենէ յեղեալ յունարէն թարգմանութիւնը: Ագաթանգեղայ հրատարակիչք և Հայկ. Բառարանին յօրինողքը՝ փառական փոխանակ պառական հասարակ անուան առեալ՝ առանց գլխագրի տպած են: Սակայն պէտք է իբրև յա֊տուկ անուն ընդունել զայն. որովհետև յոյնը կը գրէ ’Ἐν τῇ πρεδιάδι καλουμένῃ Φαρακάνῃ Σεμάκων: Բայց թէ այդ դաշտը մեր կը գտնուէր արդեօք, և այժմ ինչպէս կը կոչուի. այս դժուարին է ճշդիւ որոշել: Փաւստոս և Մովսէս՝ կը թուին ցուցանել մեզ զտեղիս որսորդութեան Արշակունի թագաւորաց՝ 'ի գաւառս Կոգահովտի (Գոգհովիտ), 'ի Շա֊հապիվանի և յԱպահունիս: Սակայն աւելի 'ի դէպ է ասել, թէ եղած ըլլայ մօտ 'ի Խոսրովակերտ առ Տիկնունի ապարանաւ, զոր յետոյ Տրդ֊ատայ որդին 'ի յիշատակ հօրն՝ հրաշակերտ շինուածովք և անտառօք անմահացոյց, կամ 'ի Բագրևանդ գաւառին 'ի ստորոտս լերինն՝ զոր Փաւստոս Վարազ կ'անուանէ. և կամ Իշխանաց կղզին՝ որ 'ի մէջ Երաս֊խայ, (Րաֆֆի, Սամուէլ վիպ. էջ 660):

Արդ, ինչպէս Հռիփսիմեայ պատմութեանը՝ Շուշանայ դէպքին կերպարանք տրուած է, և Գրիգորի 'ի վիրապն անկանիլը՝ Դանիէլի 'ի գուբն առիւծուց ձգուելու նմանողութեամբ յօրինուած է. այսպէս այլ Տրդատայ պատուհասուելուն և դարձին նկարագիրը՝ Նաբուգոդոնոսորայ պատմութեան նմանութիւն է: Բայց այսու հանդերձ այս աւանդութեանս հարազատութեանը վերայ չէ մարթ տարակուսիլ. մանաւանդ թէ, իմ կարծիքով, այս հատուածս աղբիւր եղած է մնացած բոլոր տոհմային և օտարազգի մատենագրաց[1], որոնք միաձայն կը վկայեն այսպիսի մի եղելութեան. ուստի զայն մերժել ուզելն՝ է ուղղակի պատերազմել ընդդէմ այնքան պատմական վկայութեանց և ազգային և օտարազգի աւանդութեանց:

Արդ, եթէ բանաւոր և ներելի չէ մերժել զայն, իցէ՞ մարթ, ընդհակառակն, իբրև պատմական ընդունել բոլոր այն դրուագն և նորա վերաբերեալ հատուածները, և ընդունել ճիշդ այն կերպով՝ որով նկարագրուած է այդ դէպքը՝ թէ՛ աստ և թէ՛ վերջին գրոց 548, 549 և 551 էջերուն մէջ: Ոչ բնաւ: Արդ, ենթադրելով, թէ երկնառաք հրաշիւք ևս եղած լինի այն, սակայն չէ մարթ աւելի ընդարձակ նշանակութեամբ իմանալ, քան զոր պատմեն Գիրքն Դանիէլի՝ նմանատիպ դէպք մ'ևս Բաբելացւոց թագաւորին համար և իմանան մեկնիչք[2] գրոց: Իսկ արդ Դանիէլի (ինչպէս նաև Ագաթանգեղայ 164 էջի նկարագիրքը) բոլորովին կը տարբերին Տրդատայ վերայ կատարուած դէպքի նկարագրութենէն. ուրեմն ըստ այսմ ևս պէտք է

1. Զենոբ, էջ 23, առ Ասորիս գրած թղթոյն մէջ: Փ. Բուզանդացի, Գ Դպր. գլ. ԺԳ, էջ 34: Ատենաբանութիւն Ս. Սահակայ Պարթևի առ Ղազարայ էջ 58: Ջուանշիր Պատմ. վրաց, գլ. Ը, էջ 44: Յովհ. Ոսկեբերան, Ներբողեան 'ի Ս. Գրիգոր Լուսաւորիչն մեր: Մետափրաստէս յոյն հեղինակ Ժ դարուն: Անանուն թարգմանիչն լատիններէն Ագաթանգեղոսի: Նիկեփորոս Կալլիստոս, ԼԸ, 35: Զայս կը յիշեն դարձեալ Յայսմաւուրք Յունաց և Վրաց, պատմիչք Ասորւոց և Աղուանից: Հուսկ ուրեմն Սոզոմէնոս, Թէոփանէս հտ. Ա և Թէոդորետոս՝ սքանչելեօք եղած կը համարին զդարձն թագաւորին Հայոց Տրդատայ 'ի քրիստոնէութիւն, որ գործեցաւ 'ի տէրութեան անդ կամ 'ի տան:

2. Կալմէտ, Comment. litt. in veteris et novi Test. libros, Venetiis, pag. 438. *De Metamorphosi Nabuchodonosor*, ակներև առանձնական կարծիս մէջ բերելով առ-այս և հերքելով, հուսկ ուրեմն Ս. Հարց և մեկնչաց ընդհանուր կարծիքն այսպէս կը ներկայացնէ. „Denique *recepta communi suffragio* et maxime probata sententia tenet, Nabuchodonosorem Dei vindicis percussum in phrenesim incidisse; in eam nempe morbi speciem, quam *lycantropiam* appellant; cujus vi turbata phantasia, atque morbido ardore effervescens, bovis, lupis, felis et canis *non speciem quidam*, sed *mores indolemque* reipsa sibi adsciscit. Ita rex semel bovem se esse persuasus, cœpit curvato dorso manibus pedibusque reptare, herbas carpere, veluti cornu petere, in agro pererrare, cœtus hominum fugere, comam unguesque ferino more negligere; ad novum prodigium stupentes Babylonii, furentem alligaverunt, juxta ac Daniel insinuat. *Alligetur vinculo aereo et ferro* nihilque cum illo mitius, quam cum furente et mania laborante egerunt. Sed elapsus tandem, in agrum communem cum belluis vitam acturus convolavit. Neque id morbi genus

*դատել նորա արժէքը: Ցիրաւի, եթէ պահ մի բաղդատենք զգրիչն աստուածազդեցիկ՝ Տրդատայ կենսագրին հետ, անդէն կը տեսնենք այն մեծագոյն խտիրն, որով միոյն պատմական ճշմարտութիւնն՝ անվնաս կը պահուի, իսկ միւսոյն՝ ընդհակառակն, Տրդատայ հետ այլափոխուած կը լինի: Նաբուգոդոնոսորայ համար կ'ըսուի. «* **Սիրտ նորա փոխեսցի 'ի մարդկանէ** *և սիրտ գազանաց տացի նմա»: Իսկ աստ կ'ըսուի յաղագս Տրդատայ. «* **Եղեւ ըստ մարդկայինն բնութեան արտաքս՝ 'ի նմանութեան վայրենի խոզաց** *»: Արդ սիրտ բառն՝ ինչպէս այլուր՝ այսպէս ևս աստ առնուած է փոխանակ մտաց. ուստի, եթէ ըստ նկարագրական իմաստին և եթէ՛ այլաբանօրէն առնունք, կարէ փոխուիլ. այսինքն է, կարէ մարդ կորսնցնել զայն, մերթ բարոյական և մերթ նիւթական հիւանդութեամբք, զորս կամ ցանկականն և կամ ցասմնականն յառաջ կը բերեն: Այսպէս ուրեմն 'ի բանականութենէ զրկուած մարդուն համար՝ չէ ինչ հպկասական, որ ըսուի՝ տացի սիրտ գազանաց անբանից. այսինքն է, կորսնցնել բանավարութեան կիրառութիւնն. այս բանս հանապազօրեայ փորձով իսկ քաջ կը հաստատուի միշտ նորանոր:*

*Սակայն իցէ՞ մարթ առանց հակասութեան ըսել մարդուս համար, թէ փոխեցաւ 'ի մարդկային բնութենէ կամ յէական կերպարանաց [1] իւրոց՝ 'ի բնութիւն կամ 'ի կերպարանս խոզի, ինչպէս կ'ըսէ կենսագիրս վասն Տրդատայ: Արդ, դիտելի է որ Աստուած իւր բացարձակ ամենակարողութեամբն՝ ինչպէս յանգոյից 'ի գոյ էած զբանական և զանբան կենդանիս, այսպէս ևս կարող է վերացմամբ բանին՝ փոխել զմարմին կամ զմարմնաւոր ձև մարդոյ՝ 'ի մարմին խոզի, ինչպէս փոխեց երբեմն ժամանակի զկինն Ղովտայ՝ յարձան աղի. և առ այս զուրցուած է գուցէ 'ի դէմս Նաբուգոդոնոսորայ, և զուրցուած է յառաջ քան զստանալն գազանեղէն սրտի, թէ «Վերացաւ բանն յինէն»: Սակայն թողլով զբանական հոգին մարդոյ 'ի մարմնի անդ, իբրև տեսակարար և կերպացուցիչ կերպարան*

gnotum est medicis, scriptisque de medicina libris „. *Ցետ որոյ հին և նոր պատմութենէն և 'ի բժշկաց բազմաթիւ իրողութիւններ մէջ կը բերէ, զորս աւելորդ կը համարիմ յիշել աստ: Իսկ ոյք տակաւին կը տարակուսին այսպիսի մի հղելութեան վերայ՝ նկատմամբ Հայոց թագաւորին, կարող են ընթեռնուլ յիշեալ հեղինակն և համոզուիլ:*

*1. Կերպարան կամ բնութիւնը՝ բացարձակապէս պէտք չէ շփոթել արտաքին և նիւթական ձևի հետ, որ ոչ այլ ինչ է՝ բայց եթէ պատահական արգասիք քանակութեան և սեփհականութիւն իմն անհատականութեան. այնու զի մի և նոյն տեսակի վերաբերեալ այլևայլ անհատք՝ կարեն տարբեր ձևեր ունենալ և ունին. ձոր թողունք և մարդկային ազգի հրէշներն, որք իրենց արտաքին թերութեամբքն և խոտորմունքներով հանդերձ՝ ներքսապէս մարդ լինելէ չեն դադրիր: Այլ կերպարանը սեռմ առմամբ է ձր և է տեսակի մի էութիւնը կազմող ներքին սկիզբը. որ է հաղորդականնաև մի և նոյն տեսակի վերաբերող ամէն անհատից, և է անփոփոխ. այնու զի է՛ օրինակեալ 'ի վերայ նախատիպ օրինակաց իմացութեան Աստուծոյ. և ինչպէս մին 'ի նախատիպ օրինակաց էից՝ աստուածային իմացութեանը մէջ չկարէ լինել նոյն ընդ միւսոյն, այսպէս իմա և վասն օրինակելոց:*

*մարդկեղէն բնութեան, չկարէ Աստուած ինքնին առնել այնպէս՝ որ մի և նոյնը՝ լինի միանգամայն կերպարանք խոզի, 'ի նմին ժամու, ինչպէս չկարէր առնել զի Ղովտայ կինը արձան դարձած ժամանակ՝ լինէր միանգամայն և մարդ կենդանակ. և կամ զի քառակուսին՝ իցէ միանգամայն բոլորակ, և թիւ 2 միանգամայն և՛ 3, ապա թէ ոչ՝ իր ինչ երկու էութիւն պիտի ունենար 'ի նմին վայրկենի. այլ այս է աններելին՝ զի է հակասական, այնու զի՝ երկու հակառակամարտ տեսակներ՝ [1] չկարեն կազմել մի միայն տեսակ կամ էութիւն, զի եղծիչ են իրերաց: Այս բնազանցական ճշմարտութիւնս՝ ընդու֊նուած է յամենայն իմաստնոց, և նորա վերայ՝ իբր 'ի հիման հաս֊տատուած են զանազանութիւնք տեսակաց և նոցա մասին եղած գիտութիւնքը: Բ. Դիտելու է, որ կարէ իր ինչ երրակի լինել կարելի կամ անկարելի. այսինքն է, **բարոյապէս**, **ֆիզիքապէս** և **բնազանցօրէն**: Արդ, բարոյապէս անկարելին՝ կարէ լինել ֆիզիգապէս կարելի. ինչ֊պէս ֆիզիգապէս անկարելին ևս՝ կարող է լինել բնազանցապէս կարելի: Բայց ընդհակառակն, որ ինչ անկարելի է բնազանցապէս՝ հարկ է որ նոյնպէս անկարելի լինի որ և է կերպով: Իսկ որովհետև (ինչ֊պէս տեսնուեցաւ) բնազանցապէս անկարելի է, որ մարդս 'ի նմին վայրկենի և միանգամայն լինի թէ՛ մարդ և թէ՛ խոզ. ուրեմն անկա֊րելի է, կը հետևցնենք, որ Տրդատ իրօք և տեսակաւ փոխուած ըլ֊լայ 'ի տեսակարար կերպարանս խոզի և պահած յինքեան զմիտս մարդկային կամ զբնութիւն մարդոյ:*

*Սակայն կենսագիրս՝ բնազանցապէս անկարելին՝ ուզած է պատ֊մաբանօրէն իսկ կարելի ընել: Յէջ 549 կը ներկայացնէ մեզ զՏըր֊դատ (ներէ այս ակամայ բացատրութեանն, ո՛վ երանելիդ 'ի թա֊գաւորս) « **կճղակեալ** ոտիւք և ձեռօք, **կնճռեան** գռճանաց, մեծամեծ **ժանեօք** և **խոզանապատ մորթով** »: Յէջ 550 տուած է նմա « **ճչել**, **ճըռն֊չել** և **հնչել** ». « բոխոհելով փրփրացեալ, դիզեալ զկնճթակերպ ե֊րեսօքն »: Յէջ 169 առաջին անգամ երբ Գրիգորի կը հանդիպի այս նորահրաշ կինճս՝ անդէն և անդ կը ճանչնայ զԳրիգոր, և Գրիգոր յիւրն կողմանէ կը ճանչնայ, թէ այդ է Հայոց թագաւորը. մին 'ի գուճս անկեալ թողութիւն կը խնդրէ. իսկ միւսն 'ի վեր կը կանգնէ՝ ըսելով. « Ես մարդ եմ իբրև զձեզ »: Յէջ 545 իբրև զգաստացեալ ապաշխարող ոք՝ « ծործապատեալ » և մոխրի վերայ նստեցուցած կը ներկայացնէ զհէգ թագաւորն և պահս ևս տայ նմա պահել: Այն՝ որ յէջ 548 առընթեր Գրիգորի կալով՝ նորա աւետարանական քա֊րոզութիւնքը կը լսէ, և կը խոստանայ իսկ առն Աստուծոյ կատարել զոր ինչ միանգամ հրամայիցէ. նոյնը դարձեալ յէջ 573, այսինքն է,*

*1. Տեսակ կամ բնութիւնը՝ պէտք չէ շփոթել, դարձեալ, գոյացութեան հետ. որովհետև երկու տարբեր գոյացութիւններ՝ ամբողջ պահելով ի֊րենց գոյութիւնը՝ կարեն կազմել մի միայն էութիւն կատարեալ, ըստ տեսակի. ինչպէս հոգի և մարմինը՝ կը կազմեն զմարդկային տեսակը կամ բնութիւնը. բայց մարդս քանի որ է մարդ բանաւոր՝ չկարէ լինել միանգամայն և՛ անբան անասուն, զի է ըստ ինքեան կատարեալ 'ի տե֊սակի. ուստի լինելու համար՝ պէտք է որ նախ զրկուի իւր տեսակէն:*

*յետ վաթսնօրեայ պահոց, վարդապետութեամբ և պատմութեամբ տեսլեամբ 'ի Գրիգորէ, խոզակերպ կու գայ 'ի հանդէս. « իսկ թագաւորն Տրդատ զի նա յայնժամ էր յամենայն կերպարանս խոզի՝ բաց 'ի մարդկապէսն խօսելոյ » : Բա՛րէ դարձադարձ անյարմարութեամբ, յորում կը ներկայացնէ կենսագիրն դիմապատկեր իմն ճշմարտութեամբ՝ ընդ ստութեամբ, հնարաւորին՝ ընդ անհնարութեամբ, ծաղու և նշաւանաց՝ ընդ կարեկցութեամբ:*

*Առ լ՚ինչ սրդեօք այս դերս ուզած է խաղալ հեղինակ հատուածոցս. առ ի՚նչ արդեօք թէ՛ խոզ և թէ՛ մարդ միանգամայն ուզած է ցուցնել զՏրդատ, յընթացս* 60 *աւուրց: Ըստ իս, երեք գլխաւոր պատճառաց համար. այսինքն է, խոզ ըրած է՝ Գրիգորի աքանչելագործ զօրութիւնն՝ ամենուն զգալի ընելու համար. մարդ պահած է՝ Գրիգորի ընդարձակ վարդապետութիւնն հաւատարմացնելու աղագաւ: Իսկ Տրդատայ այն նորօրինակ դէպքին, զոր մարթ է նորահրնար բառիւ [illegible] անուանել, այնքան յամեցնելուն չիք այլ պատճառ՝ բաց 'ի շինութենէ վկայարանաց սրբոց վկայից, և 'ի փոխադրութենէ նշխարաց նոցին: Եւ յիրաւի, խօսքը վկայարանաց շինութեան գալուն պէս, անդէն փութանակի Գրիգորի մէկ աղօթքովը՝ թափել կու տայ թագաւորին կճղակներն և զամենայն եբեւոյթս վարազի. և մարդակերպ կը ներկայացնէ զայն ձեռօք և ոտիւք, որպէս զի կարենայ ունել զբահ և զփայտատ և կամ 'ի բարձուէ Մասեաց արաստոյ վէմս ևս բերել տայ: Բայց զարմանալի և մեծազոյն հակասութիւն մի ևս աստ ըրած է, այնու զի վկայարանաց մասնակցող և 'ի Մասեաց հսյկաբար ութ արձան վէմս բերող Տրդատայ համար տակաւին կ'ըսուի, յէջ* 580, *թէ « Մինչ կայր 'ի տեսիլ խոզի ընդ ժողովրդեան, յանկարծակի հարեալ զդողման և զխորխն արտաքոյ մարմնոյն 'ի բաց ընկենոյր, ժանտատեսիլ ժանեօքն և կնճթաղէմ երեսօքն » :*

*Արդ, բոլոր այս պարագաներս 'ի նկատի առնելով՝ հարկ է մին յերկուց աստի ընտրել. այսինքն է, կամ ցայս վայր մէջ բերուած անտեղութիւնքն և անհնարութիւնը՝ կուր զկուրայն իբրև պատմական ճշմարտութիւն ընդունել, և կամ մերժել իբրև հակապատմական ինչ: Ես իբրև խուզարկու ճշմարտութեան՝ վերջինը կ'ընտրեմ. և իմ կարծիքով, յէջ* 548 *« Մանաւանդ թագաւորն » բառերով հատուածն՝ մինչև « Ի մէջոյ մարդկանէ », ցէջն* 550 *մինչև « հասանէր յայն տեղին », յէջ* 165 *« Նաև ամենայն մարդիկ քաղաքին » փոքրիկ պարբերութիւնն, յէջ* 573 *« Իսկ թագաւորն Տրդատ » պարբերութիւնն, յէջ* 546 *« Համօրէն տեղեկացուցեալ » պարբերութիւնն և նորա յաջորդը, յէջ* 580 *« Եւ թագաւորն մինչ կայր 'ի տեսիլ կերպարանաց խոզի » պարբերութիւնն. և հուսկ ապա յէջ* 541 *առաջին պարբերութիւնն՝ աւելի փիլսոփանական՝ քան թէ պատմական տիպ ունին. ըստ կամս յերիւրեալ են կամ Գրիգորի գործոց հեղինակէն և կամ զխովլին եկամուտ անհարազատութիւններ համարելի են, յետոյ ուրեմն ներմուծեալ: Նոցա հեղինակը ջանացեր է մեծամեծ գործերուն միշտ մեծ և զարմանալի նկարագիրներ տալ.'*

բայց երանի՜ թէ տուած չլինէր․ որովհետև այդ հատուածները մեծապէս վնասած են ստոյգ եղելութեանն և ծաղրական ըրած են զայն։ Ուստի ես զանոնք հակասական համարելով 168–169 իջին « Իսկ նա վաղվաղակի ծունր իջեալ » բառերով սկսող պարբերութեանն, որ միայն ճիշդ և պատմական իրն իւր բնական վիճակի մէջ կը յայտնէ՝ առանց խոզակերպութեան, իբր աւելորդ չափազանցութիւններ դուրս կը թողում, թէ շատ՝ հայ վիպասանութեանց և վիպագրի պարզ աւանդութիւններ համարելու է և ոչ այլ ինչ։ Սակայն ես կենսագրէն աւելի՝ կը զարմանամ այն ուշիմ անձանց վերայ, եթէ կան, որոնք այսօր իսկ նախադաս կը համարին կարելի ընել զանկարելին բնազանցապէս, որուն դիմաց աստուածային ամենակարողութիւնն անգամ՝ զկայ առնու, քան տարակուսիլ այնպիսի աւանդութեան ճշմարտութեան վերայ. մանաւանդ թէ, զուցէ և զտարակուսողս իսկ՝ դատապարտեն։

Տրդատայ խոզակերպութեան և զայն նկարագրող հատուածոց խնդիրն այսպէս պարզելէն յետոյ, երկու կերպով կարելի է լուծումն տալ այնմ. այսինքն է, կամ ըսել, թէ այդ դէպքը՝ մի ուրիշ հնագոյն վէպի վերայ հիմնուած է, որ մնայ մեզ անծանօթ. և կամ ըսել, թէ էր այն արգասիք տեսակ մի բնական հիւանդութեան, զոր Յոյնք λυκανθρωπία (լիկանթռոպիա) կամ [illegible] կ'անուանեն։ Գուտշմիդ՝ առաջինն եղած կը համարի, ըսելով՝ թէ արդէն 'ի վաղուց կայր Տրդատայ վերայ յօրինած այդ [illegible] աւանդութիւնը՝ յարաբերութեամբ իգակերպ էակի միոյ, յորմէ ապա անցաւ Հռիփսիմէի։ Սակայն այս կարծիքս ընդունելի չէ, ըստ իս. որովհետև կը հակառակի նախ վերոյիշեալ տոհմային և արտաքին յոքնախումբ մատենագրաց համաձայն աւանդութեանն, որք նորանշան դէպքով մի կատարուած կը համարին զդարձն Հայոց 'ի քրիստոնէութիւն. մանաւանդ թէ աւետարանական քարոզութեան համաշխարհական ընդունելութիւնն 'ի սուղ ժամանակի՝ մէկ կողմէն, իսկ միւս կողմէն այլ՝ կռոց համայնաջինջ կործանումն՝ ոչ քաղաքական յեղափոխութեան մի արգասիք է և ոչ իսկ բնական կերպով իրագործելի։ Բ. Հռիփսիմեանց գոյութիւնն իսկ՝ իբրև պատմական իր կ'ընդունին և ոչ թէ լոկ վիպասանութիւն լոկ։ Գ. Թէպէտև առ Փ. Բուզանդացւոյ կը յիշուին բազմաթիւ պատմական և աշխարհագրական անուանք[1], որոնք վարազ բառով կազմուած են. սակայն բոլոր այդ անուանքը՝ Տրդատայ ժամանակէն վերջ կու գան 'ի հանդէս. ուստի չկարեն ուղղակի ընծայել մեզ Տրդատայ վերայ յօրինուած հնագոյն վէպ մի։ Դ. այն ժամանակ կարելի էր հիմնաւոր համարել Գուտշմիդի կարծիքը՝ Տրդատայ խոզակերպութեան մասին, եթէ վարազ անուան կամ նշանի կիրառութիւնը՝ պարզապէս և

1. Եէջ 17 կը յիշուի Վարազ ոմն կամենական. յէջ 29 Վարազն–Շահունի, յէջ 38 Վարազ իշխան Դիմաքսենից, յէջ 49–50 Վարազ Շապուհ, յէջ 249 Վարազ Գարսիկ, յէջ 234 Վարազդատ, և յէջ 49 Վարազդուխտ։ Այսպէս նաև առ Մ. Կաղանկատուացւոյ կը յիշուի միհրական ցեղէն Վարազ Տրդատ;

բացատրութեամբ միայն հայ ժողովրդեան սեփական մի բան համարինք: Սակայն ազգաց պատմութիւնը կ'երաշխաւորէ, թէ վարազը՝ նաև առ արիական և կովկասային ազինս արքայական կենդանի մի համարուած էր՝ անդստին 'ի վաղ ժամանակաց: Արդարև, թագաւորք Սասանեանց՝ վարազ մատանեաւ կը կնքէին [1] իրենց երդմանց դաշինքն և հրովարտակները: Վարազ նկարագիր էր [2] նաև ազգային դրօշն Կելտաց՝ 'ի ժամանակս Դրուիդաց, և զինուորական շքանշաններու մէջ՝ առաջինը կը համարուէր: Վարազանշանը կը գտնուի նոյնպէս Ալլէրգաց և Էդուենաց դահեկաններու վրայ: Գերմանաց, Կելտիբերեանց և Իբերիացւոց նշանադրօշն ևս վարազ էր:

Մ. Խորենացին, Ա գլ. ԺԲ, Արտաշէս Ա.ոյ ժամանակ Վարաժ (Վարազ) անուամբ մէկը կը յիշէ 'ի սերնդոց Գառնըկայ, «յաջող յորս վարազուց». և թէ «զնա իշխան արքունականացն արարեալ որսոց՝ ուսուցանել զՏիգրան»: Իսկ Բուզանդ, Դպր. Ե. գլ. ԽԳ., լեառն մի ևս կը յիշէ Վարազ անուամբ 'ի Բագրևանդ գաւառի, ուր ղրկեց զօրավարն Մանուէլ՝ զՏիկինն Հայոց՝ հանդերձ Արշակաւ և Վաղարշակաւ, Մերուժանայ դէմ պատերազմած ժամանակ: Արդ, Մովսիսի աւանդութեան համեմատ, վարազ անուան կիրառութիւնն 'ի քաջաղեղն պատանւոյ անտի յառաջ գայ 'ի Հայս, և վարազորսութիւնն՝ 'ի պարթևազն թագաւորէ անտի, և թէ նոցա վարազորսութեան տեղն էր 'ի Բագրևանդ գաւառի, ըստ Փաւստոսի, ուր երթալոց էր և նա ինքն Տրդատ: Այսպէս թէ այնպէս՝ եթէ այս կրկին տոհմային աւանդութիւնքս 'ի մի զուգենք՝ վերոյիշեալ ազգաց յիշատակարանաց հետ, կը տեսնենք ակներև, թէ բոլոր արիական և կովկասային ժողովրդոց մէջ կնճորսութիւնը կամ վարազորսութիւնը, այնպէս այրական գործ համարուած էր, ինչպէս առ Հելլէնս՝ Ոլիմպիական խաղուց մրցութիւնքն, և առ Ասպետս՝ լախտախաղութիւնն և մենամարտութիւնն: Եւ ինչպէս պատերազմաց աստուածն կամ անձնաւորութիւնն, առ Յոյնս և առ Հռովմայեցիս, էր Արէս, այսպէս և առ արիական ազինս՝ կնճորսութեան կամ արիական նահատակութեան անձնաւորութիւնն՝ էր վարազ: Կարելի՞ է ուրեմն և բանաւոր՝ այսպիսի այրական նշանակէ մի՝ իգակերպ էութիւն մի ենթադրել և ընծայել Տրդատայ՝ Հռիփսիմեայ արարուածովք, ինչպէս ենթադրած է Գուտշմիդ, առանց հակասելու այն ընդհանուր աւանդութեան: Կարծեմ թէ ոչ: Ուրեմն կը մնայ ընդունել երկրորդը. և այսպէս հասկանալի է այն՝ ըստ իս: Արդ թէ 'ի բազմապատիկ փորձոյ պատմական դիպաց և թէ ըստ հասարակ կարծեաց բժշկաց, գայլախտութիւնն է յեղաշրջութիւն կամ ցնորումն մարդկային մտաց, որ կը պատճառի 'ի սաստիկ տխրութենէ և 'ի բորբոքմանէ մաղասային հիւթոց, որք այնպիսի բուռն կերպով կը յարձակին և կը վրդովեն զուղեղն և զերևակայութիւն մտաց, յո-

1. Փ. Բուզանդացի, Դ. Դպր. գլ. ԾԳ. «Եւ նա (Շապուհ) ետ բերել ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեան Պարսից՝ աղ կնքել վարազ նկարագիր մատանեաւ»: Նոյնը կ'աւանդէ և Եղիշէ:

2. Desobry, Dictionnaire de Biographie. T. 2, p. 2390.

րում հիւանդը կենդանի գոյնով զինքը փոխակերպուած կը տեսնէ 'ի գայլ, 'ի ցուլ, և 'ի վարազ կամ յայլ ինչ, զոր յառաջագոյն կարի սիրած էր և կամ ընդհակառակն ատած. և կը սկսի նորա գործողութիւններն ևս կատարել: Սոյնը համղիպեցաւ ուրեմն յերբեմն ժամանակի Նաբուգոդոնոսորայ և մերոյս Տրդատայ: Բայց որովհետև Բաբելացւոց թագաւորին մոլութիւնն՝ էր արգասիք կամ պատուհաս ամբարտաւանութեան, անոր համար նա ինքն և կամ սրբազան գրիչը, փոխակերպուած կը նկատէ զնա յուշկա, որ ըստ հինաւուրց յիշատակարանաց՝ էր նշանակ կամ անձնաւորութիւն Աստուածանեայց հզօր զօրութեան: Իսկ Հայոց թագաւորին հիւանդութիւնն՝ որովհետև էր արգասիք կամ պատուհաս հեշտախտութեան, այն պատճառաւ խսկ նորա կենսագիրը փոխակերպուած կը ներկայացընէ զնա 'ի վարազ կամ 'ի խոզ, որ է անձնաւորութիւն հեշտախտութեան: Իսկ ինքն Տրդատ՝ յայնպիսումն խելացնոր վիճակի՝ կարելի է թէ ինք զինքը փոխակերպուած տեսնէր 'ի կոյսն գեղանի, որում հոգւով չափ ցանկայրն: Ցայսմ միայն կը ստուգուի Գուտշմիդի ըսածը. բայց այդու անժխտելի կը մնայ նաև Հռիփսիմեայ գոյութիւնը, զոր նա տարակուսի տակ ձգած է:

Ցիրաւի, Տրդատայ սոյնօրինակ հիւանդութեանն (յառաջ քան զգնալն յորս) ակնյայտնի ապացոյցը՝ կը գտնենք նոյն իսկ Ագաթանգեղոսեան գրոց 159 իջում. զի երբ դահճապետը զՀռիփսիմէ նահատակելէն վերջ՝ կու գայ Գայիանէի սպանման վճիռն ևս ընդունելու 'ի թագաւորէն, նա տակաւին իւր անոյշ ցնորաց [1] մէջ ընկղմած՝ դեռ կենդանի կը կարծէ զՀռիփսիմէ, և կը յանձնէ դահճապետին որ հրապուրելով զնա՝ բերէ առ ինքն: Եւ յէջ 160 կ'ըսուի, թէ « Իբրև լուաւ թէ մեռաւ Հռիփսիմէ, դարձեալ տրտմութիւն ընկալաւ. ելանէր նստէր 'ի մէջ գետնոյ, և լայր և 'ի սուգ մտանէր »: Այս կրկին էջերս բուն հարազատ աղբիւր լինելու ամենայն արժանաւորութիւնն ունին, վասն զի հակառակ այլոց կ'աւանդեն մեզ Տրդատայ հիւանդութեան բուն պատճառն և որպիսութիւնը:

Թագաւորին այս նորանշան հիւանդութիւնն՝ եթէ բոլորովին բնական պատճառաց արգասիք ևս համարինք, սակայն նորա բժշկութիւնն 'ի ձեռն Գրիգորի առն Աստուծոյ, միշտ պէտք է ըսել, թէ գերբնական սքանչելագործութեամբ եղաւ: Ուստի չենք սխալիր եթէ եզրակացնենք, թէ մէկ կողմէն Գրիգորի ողջ մնալն 'ի վիրապի 15 կամ 13 ամ. իսկ միւս կողմէն այլ ելանելն 'ի դուրս և բժշկելն ըզթագաւորն 'ի հիւանդութենէ անտի՝ եղած են այն առասպելին նկարագրած մեծ դեղերէն և օտանելիքներէն՝ որոնց կ'ընծայեն Սոկրատէս, Սոզոմենէս և Թէոփանէս՝ Հայոց թագաւորին և Հայաստանեայց դարձն 'ի քրիստոնէութիւն, առանց խոզակերպութեան վերայ յիշատակութիւն մի ընելու:

1. Ագաթանգ. յէջ 159, « Իսկ նա (Տրդատ) առ սէրն յեղեալ, զեղեալ, յիմարեալ, ափշեալ, և ոչ յիշեալ վասն սրբոյն Հռիփսիմեայ՝ համարեցաւ, թէ կենդանի իցէ: Մեծ աւագութեան բարձի և պատուոյ պարգևս խոստանայր, եթէ յանկարծ ոք հնարիցէ պատրել հանել զմիտս աղջըկանն գալ առ նա »:

Գլխովին կասկածելի է յէջ 165 եղած հատուածն, յորում կենսագիրը կ'ըսէ, թէ «Նա և ամենայն մարդիկ որ 'ի քաղաքին (Վաղարշապատու) էին՝ նոյն օրինակ դիւաբախք՝ մոլեգնէին, և անհնարին կործանումն 'ի վերայ աշխարհին հասանէր»: Որովհետև նախ, փորձ իրացն և պատմութեան ընթացքը՝ սորա հակառակը կը ցուցնեն, թէ Տրդատայ հիւանդութիւնն՝ ոչ միայն կործանումն չբերաւ աշխարհիս Հայոց, այլ և ոչ իսկ քաղաքականապէս մեծ ինչ ազդեցութիւն կրեց այնու Հայաստան 'ի Պարսից: Բ. ուղղակի կը հակառակի 166 իջի հատուածին. որովհետև անդ կ'աւանդուի, թէ թագաւորին բոլոր ընտանիքը, սպասաւորներն և նախարարք դիւաբախած էին. իսկ աստ, ընդհակառակն, Խոսրովիդուխտ իբրև միջնորդ և պատգամաբեր կը ղրկուի առ թագաւորն [1] և թագաւորին հրամանը կը տանի առ նախարարս. և նոքա լսելով նորա տեսլեան պատմութիւնը՝ կը ծիծաղին և կ'ըսեն. «Դու ևս մոլեգնեցար»: Աստի յայտնի կը տեսնուի, թէ ոչ Խոսրովիդուխտ և ոչ այլ նախարարները դիւաբախք էին:

Յէջ 167 կը տեսնենք, երբ Օտայ [2] նախարարը կը ղրկուի 'ի Վաղարշապատէ յԱրտաշատ՝ զԳրիգոր հանելու համար, ժողովուրդը

1. Ագաթանգեղայ Ա և Դ օրինակներուն մէջ գրուած է, թէ. «Մեծաւ երկիւղիւ և զգուշութեամբ ասաց զբանս թագաւորին»: Եթէ ստուգիւ Խոսրովիդուխտ զիւր տեսլեան՝ թագաւորին ըսաւ, նշան է, թէ թագաւորն ևս 'ի խոզ փոխուած չէր: Իսկ եթէ զբանս թագաւորին պատուէր ինչ համարինք 'ի կողմանէ թագաւորին, այն ժամանակ դեռ աւելի կը հաստատուի խոր վերապին և Գրիգորի բանդարգելութեան մասին նախընթացաբար յայտնած իմ կարծիքն. այսինքն թէ, քաղաքական հետևութեամբ Արտաշատու դղեակը դրուեցաւ Գրիգոր և յուսով արձակման, և ոչ թէ սպանուելու համար:

2. Ոչ ինչ ընդհատ քան զԽոսրովիդխտոյն՝ խորհրդաւոր է և՛ այս նախարարիս անունն և պատմութիւնը: Փլորենտեան յոյն օրինակն Ἀὐταυτας կը գրէ: Զ. օրինակն՝ Ուատ կը գրէ. իսկ երուսաղեմեան ձեռագիրն Աւիտա: Ամենահին ձեռագրի մի պատառիկի մէջ, որ կը գտնուի 'ի ձեռագրատան վանացս և կարծի լինել յԹ. դարու, ունի Ոտա: Մ. Խորենացին ևս Բ. գլ. ԼԶ. Սանատրրկոյ անուանակոչութեան մասին մէջ բերած ժողովրդական վիպաց մէջ՝ կը յիշէ, թէ նորա մայրն (և քոյր Աբգարու) կը կոչուէր Ոդէ կամ Աւդէ: Աստի ես տեսնուի ուրեմն, թէ՛ Հայոց մեծ նախարարին և թէ՛ Սանատրրկոյ մօր անունը զուտ ասորական են և մի և նոյն հնչումն ունին՝ սեռիւ միայն տարբերեալ յիրերաց:

Առ Զենոբայ և Փաւստոսի չիք և ոչ փոքրիկ յիշատակութիւն ինչ Օտայի և Խոսրովիդխտոյ: Ագաթանգեղայ պարիզեան օրինակն՝ աւագ տիտղոսը կու տայ նախարարիս: Սակայն ոչ նորա ծննդեան ազգանունն, ոչ տեղին, ոչ մահն և ոչ կենաց միւս պարագաները կը յայտնէ մեզ, բաց 'ի այն մեծ առաքելութենէն՝ առ 'ի հանել 'ի դղեկէն Արտաշատու զառաքեալն Հայոց զԳրիգոր: Իսկ Բ. օրինակն՝ Ամատունի նախարար կ'անուանէ զնա, անսացող Խոսրովիդխտոյ և իշխան ամրոցին Անոյ: Խորենացին, Բ. գլ. ԶԴ. կ'աւանդէ նոյնպէս, թէ «Էր նա 'ի տոհմէն Ամատունեաց», բայց յաւելուածովս՝ «փեսայ ազգին Սլկունեաց, և սնուցող Խոսրովիդխտոյ»: Իսկ Բ. Գրոց ԾԷ. գլխում՝ խօսելով Ամատունեաց ծագման մասին՝ կ'ըսէ. «Են սոքա բնութեամբ (ազգաւ) Հրեայ 'ի Մանուեայ ումեմնէ, որոյ որդի իւր մեծահասակ և ուժեղ Սամսոն կոչեցեալ ... Տարեալք են սոքա յԱրշակայ Ա. 'ի Պարթևաց թագաւորեցելոյն՝ յԱրեաց աշխարհին, 'ի պատիւ հասեալք 'ի կողմանս Ահմատանի (Համատան)...

զարմանցմամբ նորա գալստեան պատճառը կը հարցնէ, և թագաւորին և Վաղարշապատցոց կարծեցեալ պատուհասին վերայ բնաւ տեղեկութիւն չունի. «Իսկ նա պատմեաց (ոչ միայն) զիւր տեսլեանն (այլ) և [illegible]»: Արդ կարելի՞ բան է կարծել, թէ Վաղարշապատէն 8 ժամու բացակայ Արտաշատցիք, որոց յարաբերութիւնն հանապազօրեայ էր այն արքունի ճանապարհաւ, զոր ցուցանէ մեզ Ագաթանգեղայ գիրքն յէջ 151, յետ անցանելոյ ամսուց ինունց՝ տակաւին տեղեկութիւն չունենային իրենց աշխարհամուտ քաղաքին և առհասարակ քաղաքացեաց անսովոր կացութեան մասին, եթէ իրօք այնպիսի ահաւոր և պատմութեան մէջ երբէք չլսուած դէպք մի կատարուած լինէր: Կարելի՞ բան է ենթադրել յընթացս 60 աւուրց թագաւորութիւն մի առանց թագաւորի և վարչութիւն մի ընդ դիւաբախ և խելագար վարչօք, և չլինել ոտնակոխ Պարսից, Վրաց և Սանէսանայ՝ Աղուանից թագաւորին, որոց Տրդատայ հետ ունեցած անհաշտ թշնամութիւնքը՝ յառաջ և յետ դարձին 'ի քրիստոնէութիւն՝ Զենոբէն և Ագաթանգեղոսէն քաջ կը գիտցուին: Արդ եթէ Խոսրովու մահուամբը միայն՝ կը յաջողի,

բայց թէ յինչ պատճառաց գալուստ նորա այսր՝ ոչ գիտեմ. այլ պատուին յԱրտաշիսէ գեղիւք և դաստակերտօք, և անուանին Ամատունիք, որպէս թէ եկք: Եւ կէսք 'ի Պարսից՝ Մանուեանս զնոսա կոչեն՝ յանուն նախնւոյն»:

Արդ, Մովսէսի աւանդութեան առաջին մասը՝ կամ ուղղակի նորա հընարագիտութեանն ընծայելու է, որ զՍահակ Բագրատունի ցնծացնելու համար՝ 'ի Հրէից առաջ եկած կը համարի զԱմատունիս, և զնախնիս նոցա Մանուէ և Սամսոն կոչելով, որ ոչ այլ ինչ են՝ բայց եթէ Ս. Գրոց Սամսոնն և նորա հայրը Մանովէ. և կամ Ամատունեաց ցեղին ուժեղ և մեծահասակ լինելուն պատճառաւ, ինչպէս ինքն իսկ կը վկայէ մի և նոյն գլխոյն մէջ: Ցիրաւի, Պարսից աւանդութիւնն իսկ, զոր մէջ բերած է վերոյիշեալ տեղում, Մանուեանս կ'անուանէ զԱմատունիս, ոչ եթէ նոցա նախնւոյն անուամբ, այլ նոցա ուժեղութեան համար: Այսպէս կամ այնպէս՝ Մովսէսի այս տեղիս՝ պարսիկ յաղբերաց առնուած է և յարգելի:

Ուստի անունս Ամատունի եթէ պարսիկ آمدن (եկաւորիլ) բայէն ծագած համարինք, և եթէ Համատան, որ և Եկբատան, քաղաքէն, յայտ է թէ նոցա նախկին բնակութեան տեղին էր Իրաք Աճէմի կոչուած աշխարհում, և հաւանօրէն 'ի ժամանակս Տիգրանայ հանդիպեցաւ նոցա մուտքն 'ի Հայս: Սակայն գալով Ոտայ անուան, որ առաջին անգամ և իբրև առաջին նախարար յիշուած է առ Ագաթանգեղ, ես նախամեծար կը համարիմ Հ. Ղ. Ալիշանի կարծեաց համաձայն՝ նոյն համարել Ոտայ կամ Ոթայիցիք կոչուած երկրին հետ, որ էր 'ի սահմանակցութեան Հայոց և Ասորւոց, ուր էր Նփրկերտ քաղաքն և վիճակ Մար–Ութայի, այսինքն է, Տեառն կամ եպիսկոպոսին՝ Ութայ:

Վերջին երկու աւանդութիւնքս կարծես թէ մէկ հասարակաց յաղբերէ կը յառաջագային. սակայն ինձ թուի, թէ Բ. օրինակի աւանդածն՝ 'ի Մովսէսէ առնուած է. որովհետև առ Մովսէսի դեռ ուրիշ տեղեկութիւններ ևս կան, զորս չէ մարթ Ագաթ. Բ. օրինակէն փոխ առնուած համարել: Արդ ինչպէս Արտաւազդ Մանդակունի՝ էր դայեակ արքայորդւոյն Տրդատայ. այսպէս ևս Օտայ Ամատունի՝ էր դայեակ արքայադստերն Խոսրովիդխտոյ: Զայս կ'ակնարկեն և յետագայ բանքս կենսագրին Տրդատայ, յէջ 42 «Առեալ դայեկացն փախուցեալ 'ի դուռն կայսեր»: Սակայն դիտելու կէտ մի է այս. զի այդ իջում՝ մի միայն «փոքրիկ մանկիկ

ըստ կարծեաց կենսագրին, Արտաշիր արձակ համարձակ գալ տիրել Հայաստանի. ո՞րչափ առաւել ուրեմն այսպիսի հասարակաց աղետից, շփոթութեան և դառն ճգնաժամի մէջ, կարէր և պէտք էր որ տիրէր Շապուհ անտէր Հայաստանի, եթէ ստուգիւ այնպիսի դէպք մի հանդիպած լինէր անդ: Սակայն այսպիսի մի տիրապետութիւն և քաղաքային յեղափոխութիւն՝ ոչ կենսագիրս աւանդած է երբէք և ոչ այլ ոք 'ի տոհմային կամ օտարազգի մատենագրաց, այս միջոցիս. ուստի իրաւամբ պէտք է ասել, թէ և ոչ իսկ այնպիսի համաշխարհական պատուհաս մի կատարուած է բնաւ 'ի Հայս: Մանաւանդ կը տեսնենք, Եւսեբիոսի պէս հաւատարիմ պատմագրի վկայութեան համաձայն, զի յետ կրօնական մեծի յեղափոխութեան՝ այնպէս զօրաւոր էին և միաձոյլ Հայք, մինչև Մաքսիմինոսի բռնակալութեան դէմ ևս կը խիզախեն, և մինչև ցայնժամ հռովմէական անպարտելի լեգէոններն ևս պարտելով՝ հպատակութեան լուծն ևս խպառ 'ի բաց կը թօթափեն: Ուրեմն 165 էջի աւանդածըն ևս՝ Տրդատայ խոզակերպութեան եկամուտ հատուածոց մէջ դասելի է:

զերծեալ, ասէ, յորդւոց Խոսրովու թագաւորին հայոց». իսկ յէջ 165 յանկարծակի Խոսրովիդուխտ ևս կուգայ 'ի հանդէս ընդ Օտայի. բայց թէ ուստի՞ և ի՞նչպէս. 'ի զուր է գտանել անդ զվասն էրն: Արդ այս երևոյթս, ինչպէս այլուր իսկ ծանուցի, ոչ միայն նշան է, թէ այդ կրկին տեղիքը՝ կրկին աղբերէ առնուած են. այլ տարակուսելու պատճառ ևս կու տայ Խոսրովիդխտոյ և Օտայի անձնաւորութեան մասին: Եւ այսու միայն կարեն արդարանալ թէ՛ Մովսէս և թէ՛ Տրդատայ կենսագիրն, եթէ մտածենք, որ արական ճետի վերայ միայն կը խօսին նոքա՝ վերոյիշեալ տեղերուն մէջ:

Մովսէս, որ յայլում վայրի, իբր թէ մանրախուզիւ քննած և գտած կը համարի, առ այլ մատենագիրս, Տրդատայ թագաւորութեան սարեթիւն, Խոսրովիդխտոյ և Օտայի մասին ևս՝ նոր տեղեկութիւններ կ'աւանդէ. յետ ասելոյ վասն Օտայի, թէ Խոսրովիդխտոյ հետ՝ արքունի գանձն ևս պահեց՝ հանդերձ Անոյ ամրոցիւ, անդէն նորա անձնական բարեմասնութիւնները կը նկարագրէ այսպէս. «Էր Օտայ արդար, համբերող և ժուժկալ և իմաստուն, զի թէպէտ և ոչ ծանեաւ զճշմարտութիւն յաղագս Աստուծոյ, սակայն զստութիւն կռոցն գիտաց». և թէ Տրդատ 'ի վերադառնալն իւրում 'ի Հայս՝ հազարապետութեան պաշտօնն և պատիւն ևս նմա յանձնեց: Բայց ես կը համարիմ, թէ Մովսէս Ագաթանգեղոսէն դուրս ուրիշ աղբիւր ունեցած չէ Օտայի և Խոսրովիդխտոյ մասին. այլ մասամբ ագաթանգեղեան գրոց այլ և այլ պարագաներէն, և մասամբ ալ հայոց կենդանի յաւանդութեանց մակաբերած է վերոյիշեալ այդ տեղեկութիւնքը: Ուստի 'ի բաց առեալ այս կէտս, թէ Օտայ էր փեսայ Սլկունեաց և թէ նոցա նահապետին Սղուկի ձեռքով սպանուեցաւ, այլովքն հանդերձ, Օտայ նոյն տիպն ունի առ Մովսիսի (ինչպէս և առ Ագաթանգեղ) ինչ տիպ որ ունի Խոսրովիդուխտ: Զի Մովսէս ինքնին նկատած է զնոսա իբրև զոյգ առաքինութեան տիպարներ, մի և նոյն կերպով դրուատելով զնոսա 'ի միում դրուագի: Արդ Մովսիսի վերոյիշեալ աւանդութիւնն, այսինքն թէ, Օտայ էր փեսայ Սլկունեաց, եթէ առանձնական կարծիք ևեթ է և ոչ ստոյգ աւանդութիւն, ես կախորժէի զառաքինին Օտայ միայն ճանաչել արժանաւոր փեսայ առաքինուհւոյն Խոսրովիդխտոյ, որ քրիստոնէական առաքինութեամբ՝ անարատ պահեց զնա՝ յընթացս այնքան ամաց և զարգացոյց:

# ԳԼՈՒԽ Ը.

Գրիգորի Տեսիլն և նորա աղբիւրքը. — Եկամուտ անհարազատութիւնք խմբագրողի երգոյս. — Գաւառացիք և Գրիգորի Պատմութեան կործեցելոյ հակառակութիւնքը. — Տեսլեան բնագրոյն և խորհրդական հանգոյցը. — Ծրագիր շինութեան Տաճարին և Գրիգոր ճարտարապետ նորին. — Նմանութիւն Տեսլեան Գրիգորի և որդւոյն Բուզեայ. — Ոճ յատկական ճարտարապետութեան և նորա բնագրոյն ՚ի վերայ Կաթողիկէին Էջմիածնի. — Յատուկն հին ուրջանագրութիւնն և Առքեա ճարտարագործ. — Եզրակացութիւն։

Յէջ 552, ԺԲ. գլխահամարէն՝ մինչև ԺԳ. գլխահամարն՝ յէջ 568, կը պարունակուի Ս. Գրիգորի Տեսիլն և նորա մեկնութիւնը: Զքնաղ իմն է, արդարև, և յոյժ գեղեցիկ ազատանգեղուսեան զրոց այս դըրուագս, յորում վառվռուն և կենդանի երևակայութեան հետ ՚ի միասին կ՚արտափայլին հաւասարապէս նորա հեղինակի գաղափարականին և լեզուին վսեմութիւնքը՝ բոլոր իրենց զօրութեամբ. այնպէս որ, դուք կը կարծէք, թէ նա Բուզեայ որդւոյն հրեղէն անուոց վերայ յեցած կը հոլովի, և այնքան բարձրաթռիչ՝ ՚ի վեր կը ճախրէ, որ կը թուի շատերուն թևակոխել ստուգիւ ՚ի սահմանս մարգարէահրաշ գուշակութեանց ապագայից, և մարգարէին նմանատիպ տեսարաններ կը պարզէ դիմացնիս: Սակայն թողունք զգեղեցկութիւնն և որոնենք զճշմարտութիւնը:

Արդ, յանուն Գրիգորի մեզի հասած այս տեսիլքս՝ գոյր հաւանօրէն Ե. դարու առաջին քառորդէ անտի և այսր. և սորա ապացոյց կարեն լինել, ըստ իս, Ա՝ Գրութեան աննմանելատ լեզուն և ոճը: Բ. Ս. Սահակ Պարթև առ նախարարս և ժողովուրդն Հայաստանի ուղղեալ սրտառուչ բանախօսութեանը մէջ՝ երկիցս կը յիշէ [1] զայն, յանուն նախնոյն իւրոյ և սուրբ նահատակին Գրիգորի: Գ. Սահակայ ընծայուած Տեսլեանը [2] մէջ, որ կը գտնուի առ Ղազարայ՝ յէջս 80,

1. Ղ. Փարպեցի, Պատմ. Հայոց, ԺՋ. էջ 78 և 87:
2. Այս Տեսլեանս հարազատութեանը վերայ արդէն ՚ի վաղուց տարակոյսներ հանեցին բանասէրք ազգիս: Իսկ Գ. Մ. Էմին՝ ՚ի ռուսերէն թարգմանութեան անդ Վարդանայ Բարձրբերդեցւոյ, և Գր. Խալաթեան՝ յամին 1883 Ղազարայ Փարպեցւոյ գործոց քննութեան մէջ, ջանացին ապացուցանել և ապացուցած իսկ կը համարին նորա անհարազատութիւնն, ըստ որում գտանի արդ ՚ի Պատմութեան Ղազարայ: Վերջինս՝ իւր այդ երկասիրութեան մէջ, 120–130 յէջսն, ընդարձակ ապացոյցներ բերելէն յետոյ՝ կ՚եզրակացնէ, թէ Ժ. դարուն գրուած է այն ամբողջապէս և ներմուծուած է ՚ի գիրս Ղազարայ: Քննասէր հեղինակիս զօրեղ պատճառներն՝ հետևեալներն են. «Մինչ եղեալ ՚ի միոջէ կողմանէ լռութեամբ անցանելոյն պատմագրաց մերոց զգրաւոր Տեսլենէ Ս. Սահակայ ցԺ. դար, և ՚ի միւսմէ՝ յիշատակելոյն զայսմանէ ՚ի Ժ. դարէ սկսեալ,

81, 85 և 86, *ամբողջական հատուածներ՝ Գրիգորի տեսլենէն փոխառնուած են, որոնք կը համապատասխանեն Ագաթանգեղայ* 552, 553, 555, 558, 554 *և* 557 *էջերուն: Դ. 'ի Ներբողեան ճառին*[1] *Յովհ. Ոսկեբերանի 'ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ, կը յիշուի այս տեսիլքս այսպէս. « Գրիգոր որ նախատեսութեան շնորհի արժանացեալ՝ մարգարէական հոգւոյն ակամբ զաշակերտ ընտրեցելոյն »:*

*Արդ, Տեսլեանս գոյութիւնն և հնութիւնն անժխտելի լինելով, այժմ այս կրկին հարցերս մեզ ընդ առաջ կ'ելլեն. Ա. Էր այն անկ կենսագրին Գրիգորի. թէ, ընդհակառակն, եկամուտ ինչ յետոյ ուրեմն ներմուծեալ: Բ. Արդեօք ինչ ձևով որ այսօր մեզի կը ներկայանայ, էր նոյնպէս և 'ի չորրորդումն դարու իրաւէս կատարուած և գրուած մի բան:*

*Այս հարցերուս ուղղակի պատասխանելէն աւելի՝ կարևոր կը հա-*

*մարթ է ենթադրել, թէ գրաւորն այն Տեսիլ թերևս 'ի Ժ. իցէ յօրինեալ դարու, և 'ի կարգ պատմութեան Ղազարայ յարմարեալ »:*

*Իմ գործս չներեր ընդարձակաբար քննել աստ այս Տեսիլքս. սակայն իմ կարծիքով, այսպիսի փաստեր բաւական չեն հերքել նորա հարազատութիւնը: Ի թղթին Ներսիսի Լամբրոնացւոյ առ Անտիոքաբնակ հզնաւորն Յուսիկ յայտնած տարակոյսն և՝ զօրեղ ապացոյց կը համարի Խալաթեանը: Սակայն Լամբրոնացիէն աւելի հնագոյն և ծանրակշիռ հեղինակութիւն մի, այսինքն է, Ներս. Շնորհալի, Ղևոնդեանց վերայ յօրինած շարականին մէջ կը հաստատէ, ընդհակառակն, Տեսլեանս հարազատութիւնն՝ յասելն. « Պարթևական տեսանողին յառաջագոյն ազդեցութեամբ զհաւատոյ որդիս Ս. Գրիգորի պսակազարդ տեսեալ »:*

*Մ. Խորենացւոյ, Գ. գլ. ԿԶ. մէկ կողմէն, միւս կողմէն այլ Է կամ Ը. դարուն յունարէն գրուած հայոց պատմութեանն* (Migne, Patrologie, T. CXXVII, p. 900-901), *ինչպէս նաև Թովմաս Արծրունու և կոստ. Պեր- փեռուժենի վկայութիւնքը, զորս Խալաթեանն՝ իւր կարծեաց նպաստաւոր կը համարի, ըստ իս, բոլորովին հակառակը կը հաստատեն. այնու իսկ՝ երկուք 'ի նոցանէ դարերով յառաջ էին քան զկարծեցեալ ժամանակ գրութեան և որոշալի կը յիշատակեն զայն: Մովսէս՝ դեռ ուրիշ շատ բաներ այլ կը յիշէ 'ի գրոց Ագաթանգեղայ և Փաւստոսի, առանց ամբողջական հատուածներ մէջ բերելու. իցէ՞ արդ բանաւոր հետևցնել աստի, թէ ուրեմն այն ժամանակ այդ հեղինակաց գրաւոր երկասիրութիւնքը չկային. ոչ բնաւ:*

*Դարձեալ, իրաւամբ մարթ էր անվաւեր համարել այդ տեսիլն, եթէ հանգոյն տեսլեան Մեծին Ներսիսի, որ առ Մեսրովբայ Երիցու, Հարալայնոց արշաւանաց և այլն դէպքեր ակնարկէր. սակայն աստ բոլոր նիւթը՝ Պարսից և Հայաստանեայց Ե դարու կացութեան վերայ կը դառնայ: Արդ, շատ հաւանական է, թէ յետագայ դարուց մէջ յաւելուածներ եղած ըլլան յայնմ, և ներմուծուած 'ի Պատմութեան Ղազարայ, բայց ոչ բոլորովին նոր յօրինեալ. զի շարադրութիւնն ինքնին գլխովին՝ աննման է Ժ. դարու շարադրութեան, և Ե. դարը միայն կարէր այնպիսի բարձր լեզու մի գործածել:*

1. *Սոփ. հայկ. Դ. հտ. էջ* 13: *Այս ճառս, Լամբրոնացւոյ վկայութեան համաձայն, 'ի յոյն բնագրէ թարգմանուեցաւ, ուստի՝ պէտք չէ շփոթել Ոսկեբերանի անուամբ եղած միւս համառօտ ճառին հետ, որուն հարազատութեանը վերայ իրաւամբ տարակուսեցան Մոնֆոկոն և Տիլլըմոն: Նորա հնութիւնն անտարակուսելի է, և ես այլուր առիթ պիտի ունենամ նորա մասին դարձեալ խօսել. զի եթէ Ոսկեբերանին ևս չլինի, հարկ է որ ըլլայ նոյն ժամանակ ապրող հայազգի եպիսկոպոսին Դիոսկորոսի:*

մարիմ նախ քան զամենայն քննել այդ տեսլեան նպատակն և նորա հետ սերտիւ վերաբերութիւն ունեցող իրաց վիճակն: Իսկ որովհետև Գրիգորի այդ տեսլեան նպատակն էր վկայարանաց և Կաթողիկէի շինութիւնն, և ցուցանել նոցա բարձրագոյն նշանակութիւնն. ուրեմն տեսնենք թէ ինչ կ'աւանդի յայսմ նոցա մասին, և թէ կը համաձայնի՞ այդ՝ Հռիփսիմեանց և Գայիանեանց վկայաբանի աւանդածին հետ: Արդ, յէջսն 156 և 575, որոց առաջինն՝ անկ է Հռիփսիմեանց վկայաբանութեանն և վերջինը՝ Տրդատայ պատմութեան, երիցս կը յիշուին Հռիփսիմէ 32 ընկերօք, և Գայիանէ՝ 2 ընկերօք: Տեսլեան մէջ, ընդհակառակն, յէջ 555 և 570, երկիցս կը յիշուին նոյն սրբուհիք, բայց առաջինը՝ 33 ընկերօք, և վերջինը՝ դարձեալ 2 ընկերօք: Վերջին տեղեացս մէջ՝ դարձեալ միայն Հռիփսիմեանք և Գայիանեանք որոշակի կը յիշուին. իսկ վկայարանաց թիւն երեք է, ընդհակառակն. վասն զի կ'ըսուի այսպէս. « Մի 'ի տեղւոջն ուր վկայեցաւ սուրբն Գայիանէ երկու ընկերօք. և մի 'ի տեղւոջ՝ ուր վկայեցաւ սուրբն Հռիփսիմէ երեսուն և երեք ընկերօք. և մի 'ի տեղւոջ հնձանին, ուր [illegible] էին »:

Գուտշմիդ անհարազատ ենթադրելով զՏեսիլն Գրիգորի, այս տեղիքս ևս գահավիժաբար դիտեց, ուստի իրարու բոլորովին հակասական վարկանելով զանոնք՝ ջանաց այնու, իւր գործին 22–23 էջերում, Գրիգորի տեսլեան մի գոյութեան հիմն 'ի վեր տապալել: Սակայն ես այդ տեղեաց մէջ իրօք հակասութիւն չեմ գտներ, դիտելով քաջ նոցա յարակից պարագաները: Եւ յիրաւի, յէջ 156 երեսուն և երկու ընկերներ յիշուելուն բուն պատճառն այս է, զի միաւորն՝ նոցա թուէն դուրս թողուած է, որովհետև հիւանդ գոլով՝ մնաց 'ի հնձանի անդ, մինչդեռ այլք նահատակեցան ընդ Հռիփսիմեայ. և թէ միաւորին ինչպէս նահատակութիւնն՝ այսպէս և յիշատակութիւնն ապա ուրեմն յէջ 157 կը լինի:

Նոյնպէս և յէջն 575 չիք բնաւ յիշատակութիւն միաւորին առանձինն: Բ. 155 և 170 էջերում՝ յորս միաւորին նահատակութենէն վերջ կատարուած իրին պատմութիւնը կը լինի, նա ինքն ևս ընդ Հռիփսիմեանս 'ի թիւ արկեալ է. որով 'ի հարկէ Հռիփսիմէի ընկերաց թիւը փոխանակ 32ի՝ 33 եղած է: Արդարև, այս բանս անտի իսկ յայտ է, զի այդ տեղեաց մէջ, քանի որ խօսքը կուսանաց նահատակութեան և թուարկութեանը վերայ է, Հռիփսիմեանք և Գայիանեանք միայն յանուանէ կը յիշուին. իսկ երբ վկայարանաց շինութեան վերայ կը խօսուի, անդ միաւորին ևս առանձինն կը յիշուի՝ 'ի տեղւոջ հնձանին, լռելով յիշել զմիաւորն. վասն զի Հռիփսիմեանց հետ 'ի միասին դասեց զնա: Ուրեմն այս պարագաներս 'ի նկատի առնելով, 155 և 170 էջերէն աւելի՝ նոցա նախընթաց և անմիջապէս յաջորդ էջերու հինգ [1] պարբերութիւնքը կ'ախորժիմ ես

1. Ցիրաւի, յէջ 573–577 ժե. գլխահամարով հատուածին Ա. պարբերութեանն՝ որ « զվաստակսն մատուցանէր » բառերով կը լմնայ, եկամուտ լինելու յայտնի ապացոյց կարելի է համարել այն մեծ հակասու,

անհարազատ նամարել, յորս թագաւորն Տրդատ, 580 իջի. հատուա֊ ծին համեմատ, տակաւին խոզացեալ՝ բայց Գրիգորէն հրաման կ՚առ֊ նու և եօթնօրեայ ճանապարհորդութեամբ Մասեաց բարձրութենէն ութ ողջաններ իրարու վերայ դրած իւր թիկանցը վերայ՝ Հայկաբար առած կը բերէ, որոնցմէ իւրաքանչիւրը [illegible] մարդկան ևս եթէ գային 'ի մի՝ չէին կարող շարժել 'ի տեղւոջէն: Են ոմանք՝ որք ուզելով պաշտպանել այսպիսի անհնարին եղելութիւն մի՝ բռնազբօ֊ սիկ մեկնութեամբ առասնձինն բերուած կը համարին այդ ութ ար֊ ձանները և ոչ եթէ 'ի միասին: Սակայն կենսագրիս բացատրութեան վերջի խօսքերով՝ այդ մեկնութիւնն ևս անկարելի կը մնայ: Ռիտտէր[1] խօսելով Սեւ եւ Հնդկաց լեռնաբնակչաց վերայ, կ'աւանդէ, թէ այն֊ պիսի ուժեղ և զօրաւոր կազմութիւն ունին, և այնպիսի ծանր բե֊ ռինս կը կրեն իրենց ուսոցը վերայ, զորս մենք չենք կարող երևա֊ կայել: Այս բանիս ես կը հաւատամ, և կ'ընդունիմ, թէ թագաւորն Հայոց Տրդատ իսկ՝ յաղթանդամ ոք էր. բայց չեմ կրնար հաւա֊ տալ, թէ մարդկային ֆիզիկական զօրութենէ դուրս գերաբուն զօ֊ րութիւն մ'ևս ունէր: Այս բանս հայ ժողովրդեան վիպասանութիւնը միայն կարէր ընծայել նմա և ոչ այլ ոք. և թէ այս վէպս ուղղակի Հայկայ վերայ յօրինուած էր 'ի հնումն (ինչպէս ուրիշ ազգերն այլ Ատլասի, Որեոնի, Սամսոնի և Ռուստամ Սաքծնի վերայ), զոր յետոյ ժամանակաւ Տրդատայ կենսագիրն, կամ խմբագրողն Ագաթանգե֊ ղայ գրոց, պատշաճեցուց յանձին Տրդատայ: Եւ յիրաւի, այս բանս նորա այս բացատրութենէն իսկ քաջ կը տեսնուի. « Հայկաբար, ութ ողջանան՝ 'ի վերայ լուրոց թիկանց դոյն դնէր »: Ութ արձանները՝ ուղղակի Հայկայ աւանդութեան մի կը վերաբերին. բայց յայտնի չէ,

թիւնը, որ կայ ընդ այս և ընդ էջն 570 ծդ. գլխահամարով սկսող հա֊ տուածսն: Արդ յայսմ, այսինքն է, յէջ 570, Գրիգորի պատմագիրն ար֊ դէն պատմած էր զկատարումն շինութեան ոչ միայն վկայարանաց, այլ և արկեղաց սրբոցն. և յէջս 571–572 թագաւորն և մեծամեծք՝ մեծաւ բարեպաշտութեամբ անուշահոտ խունկեր և ազնիւ նարօտս իսկ պա֊ տանաց կը բերեն և կը կուտեն դէզադէզ. և հուսկ յէջ 573 կը հրաւիրէ զնոսա փոխել 'ի հանգիստ զսուրբ նշխարս վկայիցն: Իսկ յէջ 574 ծե. գըլ֊ խահամարին, ընդհակառակն, դեռ նոր կու գայ 'ի հանդէս թագաւորն Տրդատ, և հրաման կը խնդրէ 'ի Գրիգորէն, որ թոյլ տայ իրեն, Աշխէն տիկնոջ և Խոսրովիդուխտոյ, որ իրենց ձեռօք փորեն այդ արկղները. և յէջ 575 արքայազունքս՝ բահ և փայտատ ձեռքերնին առած՝ զգիրս հան֊ գըստեան կը փորեն. և հուսկ ապա յէջ 576 Տրդատ՝ Մասեաց լեռը կ'եր֊ թայ, վկայարանաց սեամքը շինելու համար՝ յաղթ արձաններ բերելու: Այս հատուածոցս կրկին յաղբերաց յառաջագայելուն մի այլ նշան է և հետևեալս. այսինքն է, վկայարանաց առաջին շինութիւնը պատմող հա֊ տուածին մէջ՝ չիք յանուանէ յիշատակութիւն շինողացն արկեղաց. իսկ վերջնոյն մէջ՝ մասնաւոր կերպով կը յիշուին Տրդատ, Աշխէն և Խոս֊ րովիդուխտ: Այս հատուածներս իսկ՝ հայ ժողովրդեան կենդանի աւան֊ դութիւններ են, ըստ իս, զորս Ե. դարուն խմբագիրը ձևի դնելով՝ ներմու֊ ծած է անդ, ժամանակին մեծամեծաց կրօնական և սառնացեալ զգաց֊ մունքը վերստին արծարծելու համար, օրինակաւ փառապանծ նախ նեաց նոցա:

1. Erkunde, I, 343. III, 881. IV, 143. V, 1031.

թէ ինչ կը նշանակեն. ես կ'ախորժիմ կամ Հայաստանի ութ լեռներն հասկանալ, զորս Հայկ, այսինքն է, Հայաստանի անձնաւորութիւնը կը կրէր իւր թիկանցը վերայ. կամ լաւ ևս այն ութ աշխարհները՝ որոց իշխան և պետ եղած կ'աւանդուի[1] Հայկ, նախապատմական ժամանակի մէջ:

Բ. Յէջ 577 հատուածը, զոր Գուտշմիդ եղծիչ համարելով իւր ենթադրութեանը՝ 'ի լուծիւն դատապարտած է, մանաւանդ թէ ստիպած է այլուր ճարտարութեամբ անհարազատ համարել. այս հատուածս կ'ըսեմ, որ Տեսլեան հետ անուղղակի վերաբերութիւն ունի և մի քանի էջ վերջը կը յաջորդէ, դարձեալ Գայիանէի ընկերաց թիւը 2 ի և Հռիփսիմէինը՝ 32 ի կը վերածէ. որովհետև կը յիշէ յակամէ և զմիաւորն առանձին, ըսելով. « Որ 'ի հնձանին սպանին »: Գ. Յէջ 163 կ'ըսուի, թէ սրբոց տիկնանց՝ Գայիանէի և Հռիփսիմէի հետ նահատակուողաց թիւն է « երեսուն և եօթն ». և անմիջապէս կը յարէ. « Կատարեցաւ Հռիփսիմէ՝ դասուն սրբով երեսուն և երեք նահատակակից ընկերօքն ... և սուրբն Գայիանէ՝ երկու իւրովք ընկերօք » : Ուրեմն աստ ևս ակներև է, և Գուտշմիդն ևս պէտք է ընդունի, թէ կամ այն է թէ, ստուգիւ միաւորն ընդ Հռիփսիմեանս դասուած է, որով լինին ընկերքն Հռիփսիմեայ 33. և կամ ըսել, թէ 33 Հռիփսիմեանցմէ և 3 Գայիանեանցմէ դուրս՝ այլ ոք նահատակուած չէ. այսինքն է, 37 էն պակաս ենթադրել բոլոր նահատակելոց թիւը: Սակայն այս վերջին ենթադրութիւնս՝ կը հակառակի ոչ միայն գրոցս 157 և 577 էջերուն, յորս միաւորի նահատակութիւնն առանձին խմն կը յիշուի. այլ նոյն իսկ ազգային հնագոյն աւանդութեանն, որ 37 նահատակներ կը տօնէ, ոչ աւելի և ոչ պակաս. կը հակասէ և այն երեք վկայարանաց գոյութեան, զորս հիմնարկեց Ս. Գրիգոր. և միակ պատճառք նոցա շինութեանն՝ եղան այն 37 վկայից նահատակութիւնքն, իրարմէ տարբեր երից տեղեաց և պարագայից մէջ: Եւ իրօք այս բանիս կը վկայեն Տեսլեան, յէջ 556, հետևեալ խօսքերը. « Խորհուրդ կարմիր 'ի գոյն արեան », և յէջ 567 « Շինեսջիր զվկայարանս սրբոցն՝ 'ի տեղիսն՝ ուր ննջեն ինքեանք »: Բ. Կը հակառակի նաև 163 իջի աւանդութեան, զոր Գուտշմիդ գլխովին անկախ կը համարի 'ի Տեսլենէ: Ուստի ցայս վայր յիշատակեալ հատուածոց քննութենէն վերջ՝ կարելի է եզրակացնել, թէ Տեսլեան դրուագն, ըստ էական

1. Ջուանշեր՝ 'ի Պատմութեան Վրաց (Վենետիկ, 1884, էջ 8) Վրաց հին աւանդութիւն մի կ'ածէ 'ի մէջ վասն Հայկայ, ըսելով: « Ընտրեցան յորդւոց Թորգմայ արք (այլուր եղբարք) ութ արիագոյնք և անուանիք. առաջինն՝ Հայկն, երկրորդն՝ Քարթլոս, երրորդն՝ Բարդոս, չորրորդն՝ Մովկան, հինգերորդն՝ Լեկան, վեցերորդն՝ Հերոս, եօթներորդն՝ Կովկաս, ութերորդն՝ Եգրէս: Եւ Հայկն առաւել էր ուժով և քաջութեամբ, որ չեղև նման նմա 'ի վերայ երկրի »: Իսկ յէջս 7 և 9, բաժանելով ըստ թուոյ նոցա՝ զաշխարհս Հայոց, Վրաց, Ռանաց (Աղուանից), Մովկանաց, Լեկաց, Կովկասեանց, Հերանաց և Եգերաց, անդէն կը յաւելու. « Իսկ Հայկն՝ զհասարակն ժառանգեաց հայրենիս ասացեալ սահմանօքն, և էր իշխան եօթանցն եղբարց ». և յէջ 11, թէ « Եւ թագաւորէր Հայկն եղբարց իւրոց և ամենայն եզրականացն ազգաց »:

մասին, Գրիգորի կենսագրին ընծայելի է. բայց թարգմանութեան և խմբագրութեան ժամանակ նոր պարագաներ և երանգներ ևս զգեցած է, յորոց 'ի սկզբան ազատ էր:

Ժամ է արդ՝ զաղ 'ի լուծումն պատմական հանգուցին Տեսլեանս, զոր 'ի վեր անդր առաջարկեցինք, թէ այսպիսի տեսիլք մի ստուգիւ կատարուա՞ծ է յաստուածուստ առ Գրիգոր, ինչպէս որ կը ներկայացնէ մեզ նորա պատմագիրը. թէ, ընդհակառակն, գլխովին այլ ինչ իմանալի է այնու: Ես կարծեմ, թէ իւրին ճիշդ եղելութեան և բնագրին հնագոյն աւանդածին աւելի համաձայնած կը լինինք, եթէ հայցմանս վերջին մասն ընդունինք: Արդարև, ես համոզուած եմ, թէ այս կարծիքս բարգաւաճելով՝ ոչ միայն յանդուգն յարձակմամբ անգութ ոճիր մի չենք գործեր այդ ազգային հնացեալ աւանդութեանը դէմ, այլ մանաւանդ թէ իրաց բռնազբօսիկ և ծամածուռ անհարթութիւնքը հարթելով՝ բնական ընթացք մ'ևս տուած կը լինինք այնմ. որով միայն նորա վիպասանական դիմակը վերնալով՝ պատմական տիպ և հաստատութիւն կ'առնու այն: Անցնինք ուղղակի ապացուցութեանց:

Արդ, յէջս 541, 542 և 545 կը տեսնենք զԳրիգոր՝ որ երիցս կը հրաւիրէ զնորադարձ Հայաստանեայս 'ի շինութիւն վկայարանացն սրբոց, որպէս զի 'ի ձեռն սուրբ նահատակաց բժշկութիւն լիցի նոցա 'ի տանջանաց և 'ի փրկութիւն յայսոց. բայց երիցս իսկ միջանկեալ հատուածներով Գրիգորի հրաւէրքն անգործադրելի կը մնայ: Իսկ վերջին անգամ, այսինքն է, յետ կատարման 66օրեայ պահոց, երբ առաւօտուն թագաւորն և մեծամեծք՝ տակաւին ծաղածանակ վիճակի մէջ՝ նորա ոտքն ինկած բժշկութիւն կը խնդրեն, նա փոխանակ բժշկութեան՝ կը չորեքկնէ լուր հրաւէրքն՝ ըսելով. «Փութացարուք շինեցէք զվկայարանս, զի հանգուսցուք զվկայսն Աստուծոյ, զի և նոքա զձեզ հանգուսցեն 'ի տանջանաց»: Իսկ թագաւորն և ժողովուրդն՝ այս անգամ կը փութան և կը խնդրեն 'ի Գրիգորէ, որպէս զի «փութով հրամայեսցէ, որպէս և կամեսցի զինչ և կամիցի առնել»: Արդ, յետ այսքան պատրաստութեան և հրաւէրքի՝ ուրիշ բան չէր մնար Գրիգորի՝ բայց եթէ տալ նոցա զծրագիր շինութեան վկայարանաց և կաթողիկէին: Սակայն կենսագիրն՝ ոչ միայն մեր՝ այլ նոյն իսկ ժողովրդեան չսպասածը կը յարէ անդէն անմիջապէս. «Իսկ նորա տեսիլ պատմեալ նոցա՝ ասէ»...: Այս պարագայս՝ համանման է 78 իջին, որ առ Ղազարայ Պատմութեան, որում հեղինակն ով ոք և իցէ, Ս. Սահակայ պատմել կուտայ զտեսիլն՝ առաջի ապարուս նախարարաց, առ 'ի յերկեցուցանելոյ զնոսա 'ի չար խորհրդոցն գործադրութենէ, առ որ ասկէ աւելի զօրաւոր միջոց չէր գտած: Բայց Ս. Սահակայ Տեսիլն և նորա հեղինակն այս առաւելութիւնս ունին, զի անդ, յէջ 78, կը ծանուցուի 'ի դիմաց սուրբ հայրապետին, թէ արդէն «Ցառաջքան զբազում ամս» Աստուած յայտնած էր նմա յանուրջս զապագայ աղէտս Հայաստանեայց: Իսկ յԱգաթանգեղայ մատենին, ընդհակառակն, յետ չորից հրաւիրանաց՝ երբ վկայարանաց շինութեան՝ ատաղձը

պատրաստուած էր, Գրիգոր կը խորհէր առաւօտուն շինութեան պատուէրը տալ, և քրիստոսավայել տաճարի որպիսութեան անտեղեակ հեթանոսիկ ժողովուրդն ինքնին՝ կ'ուզէր նորա ծրագիրն 'ի Ս. Գրիգորէ, ճիշդ այն ժամանակ տեսիլքը կը պատմէ նոցա Գրիգոր, ոչ յառաջ և ոչ յետոյ:

Իցէ՞ մարթ և պարտ ստուգիւ տեսիլ աստուածային համարել զայս. թէ, ընդհակառակն, բնական տեսութիւն մնաց և գաղափարականին Գրիգորի՝ վասն շինութեան տաճարաց, զորս կ'ուզէր համեմատ ձևոյ յունական եկեղեցեաց յօրինել զորս տեսած էր (զուցէ և ուսած) 'ի Կեսարիա Կապադովկացւոց, և կ'ուզէր ծուլել 'ի մի ընդ ոճոյ հեթանոսական մեհենաց հնոյն Հայաստանի, որուն կարելի է ապացոյց համարել և հինաւուրց տափարակ գմբէթին՝ կոնաձևի վերածիլն. սակայն այս բանիս վերայ յետոյ պիտի խօսիմ: Ըստ իս, այս հարցմանս երկու կէտերն ևս պէտք է իբրև իրական ընդունել. այսինքն է, զոյ տեսիլ ինչ յաստուածուստ յայտնեալ Գրիգորի, զոյ նոյնպէս լոկ նկարագիր ինչ կամ ծրագիր մտացն Գրիգորի. երկաքանչիւրն իսկ՝ իրարմէ անկախ, զորս կենսագիրն Գրիգորի կամ խմբագրողն գրոցս՝ իրարու հետ շփոթած է, կազմելով զմի անեթ մալգարէահրաշ զուշակութիւն. և զայս ըրած է՝ մղուելով 'ի գաղափարաց ժամանակին, որք բնական իրողութեանց իսկ՝ յաճախ գերբնականի կերպարանք տալու սովորեալ էին յայնժամ. բայց մենք այժմ զգուշաւոր քննութեամբք այն տեսլեան մէջ եղած պարագայից՝ կարող եմք որոշել յիրերաց և գծել իւրաքանչիւրին սահմանը:

Եւ յիրաւի, յէջ 552, ծԲ. գլխահամարն, որ պարտի լինել, ըստ իս, ներածութիւն կամ լաւ ևս յայտնութիւն աստուածահրաշ տեսլեան՝ բոլորովին տարբեր [1] տիպ ունի յընդարձակ Տեսլենէն և 'ի մեկնութենէ նորա: Աստ բացատրութեամբ՝ Աստուածութեան խոնարհութեամբ միայն կը յիշէ Գրիգոր՝ առ սուրբ վկայն, և նոցա վերացութեամբ յանզուգական քաղցրութեան անդր երկնից արքայութեան, զոր նկատեց նա երբեմն հոգւոյ աչօք, մինչդեռ մարմնաւոր աչօքն խորասուզեալ կայր 'ի վիրապին և զխաւար միայն կը շօշափէր: Այս բանս համաձայն է, արդարև, 170 իջին, ուր Ս. Գրիգոր յետ ելանելոյն 'ի վիրապէն՝ անդէն և անդ սպանուած վկայից տեղը կը հարցնէ, առանց ամենևին յումեքէ բան մի լսելու. և երբ նոքա անգիտանալ կը ձևացնեն զինքեանս, ասելով, թէ «Զորո՞ց վկայից ասես», նա կը յարէ. «Որ վասն Աստուծոյ մեռան 'ի ձէնջ»: Ցայտ է, թէ 'ի ձեռն տեսլեան իւիք եղելոյ յԱստուծոյ գիտէր զայն: Բ. Յէջ 186 ևս կ'ըսէ Գրիգոր, թէ մինչդեռ էր ինքն 'ի վիրապին՝ ամէն օր աչօք բացօք կը տեսնէր զհրեշտակն Աստուծոյ, և թէ յԱստուծոյ հրաման տուած էր [illegible] իրենց նորա կամքը: Գ. Յէջ 542, սուրբ կուսանաց վերայ խօ-

1. «Արդ եկայք պատմեսցուք ձեզ, եղբարք, զցուցական սիրոյն աւարչութեան առ ձեզ, որ ինչ երևեցաւ ահաւորութիւն տեսլեանն. Աստուածութեան խոնարհեալ առ սուրբ վկայսն իւր, և սոցա՝ զանհամեմատ բարձրութիւն՝ յանպատումն վերացեալ յանզուգականութիւն արքայութեան երկնից»:

սեղմ կ'ըսէ. « Զի Աստուածայինն որ բնակեալն է 'ի նմա ». և հուսկ ապա յէջ 556 կը տեսնէ Գրիգոր զ37 վկայսն « Ի լուսաւոր կերպարանս աշխարհականութեան »: Անհասանելի Ս. Գրիգորի տեսլեան բուն եղելութիւնն. որուն վերայ իբր 'ի հիման բարձրացել է ապա ընդարձակ Տեսլեան նկարագիրն, ուրն իրօք տեսիլ չէ, այլ նորա առաջին մասն՝ է պարզապէս ճարտարապետական նկարագիր ձևոյ և համզամանաց կառուցանելի տաճարաց, ուրոյն առանձինն. իսկ վերջինը՝ զոր հրեշտակի բերանը դրած է հեղինակն, է ողջամիտ և խորհրդական մեկնութիւն կաթողիկէ, ընդհանրական և առաքելական սուրբ Եկեղեցւոյ, որ յօղիւ հաւատոյ, յուսոյ և սիրոյ՝ իրեն հետ կը միացնէ այն առանձին եկեղեցիները, կը կրէ 'ի ծոց իւր զնշխարս սրբոց և սիրելեացն Աստուծոյ, յորում կը կատարուին Մկրտութեան, շնորհաց և այլն խորհուրդները. ուր կը մտնեն մեղօք սևացեալ հեթանոսք, և կ'ելլեն զերդ շնորհազարդեալ գառինք Աստուծոյ. սերունդք՝ սերնդոց կը յաջորդեն, և ոմանք 'ի գառանց և անտի սրբեցելոց՝ դարձեալ 'ի գայլ կը փոխուին ներգործական մեղօք:

Արդ, իրն այսպէս լինելով, իցէ՞ ուրեմն բանաւոր իբրև պատմական ինչ՝ Գրիգորի ընծայել գլխովին այդ զրաւոր Տեսիլն, որ յինքեան

1. Գուտշմիդ, 558 իջի Ա. պարբերութեան և 566 Բ. պարբերութեան մէջ՝ գառանց այլաբանական նմանութիւնն՝ ուխտապահ վարդապետաց վերայ առնելով, և գայլոցը՝ ուրացողներուն, կ'եզրակացնէ, թէ Գրիգորի գրաւոր Տեսիլքն՝ Ե դարուն վերջեր, այսինքն է, համաշխարհական պատերազմին ժամանակ կատարուած դիպացը վերայ յօրինուած է: Սակայն, այս կարծիքս ընդունելի չէ, ըստ իս. որովհետև նախ տեսլեանս մէջ բերուած շատ տեղերն և պարագաներ՝ Ե դարէն առաջ կատարուած իրած ակնարկութիւններ են. ինչպէս օրինակ իմն եկեղեցեաց շինութեան և հեթանոս Հայաստանի մկրտութեան դէպքերը: Բ. աստ ինչպէս Եկեղեցի և քահանայութիւնն՝ ընդհանուր առնուած են, և ոչ թէ իբրև ազգային հիմնարկութիւն ինչ, որով նորա ընդհանրականութեան բնադրոշմն և աստուածայնութիւնն եղծած կը լինէր, այսպէս ևս մկրտութեան աւազանն, անով սրբուած գառանց և արտաքս ելլող գայլոց օրինակն՝ ընդհանուր հաւատացելոց և ուրացողաց համար զուրցուած են: Գ. Ի մեկնութեան անդ Տեսլեան, յէջ 566, «Ի ճշմարտութենէ անտի և յուխտէ քահանայից» դուրս ելլողները՝ գայլ կը կոչուին, զոր չէ մարթ վարդապետաց ժամանակի քահանայից վերաբերել, որոնք ընդ մեծին Ղևոնդայ միաշունչ նահատակեցան, վասն հաւատոց Քրիստոսի: Դ. ինչպէս տեսանք, Դ դարու մատենագիրն Փաւստոս ևս կը յիշէ այս տեսիլս. ինչպէս նաև Ս. Սահակ յառաջ քան զամն 438: Ուստի ես աւելի կ'ախորժիմ, գէթ ըստ էական մասին, Դ. դարու վերջին կէսին գրուած համարել. այսինքն է մօտ այն ժամանակներն՝ երբ Մերուժան Արծրունի և Վահան Մամիկոնեան՝ ուրացեալ քահանայից և նախարարաց հետ կ'ուզէին կործանել զեկեղեցին, և զգահն Արշակունեաց. և կանգնել զպաշտօն միհրական հրոյն. և արարին իսկ անթիւ կոտորածս գառանց և աւերածս շինից և քաղաքաց: Արդ, Ղազար Խնքնին, Պատմ. Հայոց, Դրուագ Բ. գլ. Ի. իբրև նախագոյակ և յառաջածանօթ իրողութիւն մի, կը պատշաճեցնէ Գրիգորի Տեսլեան մէջ՝ գառանց և գայլոց օրինակները վարդապետաց և վասակեանց, ասելով. «Գայր տակաւ յերևումն՝ կանխաւ տեսութիւն մարգարէական սուրբ նահատակին Գրիգորի տեսլեան, որ երևեցաւ նմա յԱստուծոյ» ;

երկու հակապատկեր իրաց տիպարներ կը պարունակէ. այսինքն է, մասնական եկեղեցեաց՝ նիւթական յօրինուածութիւնն, և ընդհանրականին՝ այլաբանական նշանակութիւնն: Այս բանս, ըստ ինքեան, հակասական չէ՛, այնու զի Սուրբ Գրոց մէջ եղած մարգարէահրաշ տեսիլքն ևս՝ նոյնպէս երկու տիպ ունին և իմաստս այլևայլս: Սակայն չեմ տարակուսիր ըսել, թէ Ս. Գրքէն դուրս և լոկ պատմական երկասիրութեան մի մէջ, ինչպէս է առաջարկեալս, յանուն եկեղեցական սուրբ հօր մի աւանդուած տեսիլն, որոյ նկարագրութեան մի մասն՝ ՚ի տեսանողաց Իսրայելի փոխ առնուած է և միւսն՝ յունական ճարտարապետութեամբ Գ և Դ. դարու եկեղեցեաց ձևոյն վերայ հաստատուած է, չկարէ լինել և չէ իսկ աստուածային սքանչելեօք եղած նորանշան իր. իսկ որովհետև այսպէս էր և է կենսագրին մեզի աւանդած գրաւոր Տեսիլն և նկարագրած եկեղեցւոյն ոճն. ուրեմն հետևութիւնն՝ ընթերցողք ինքնին կարեն քաջ իմաստասիրել: Տեսնենք ըսածիս ապացոյցները:

Ցիրաւի, Ա. բաւական է առ այս՝ բաղդատել նախ Եզեկիէլի մարգարէութեան Խ. գլուխն, վասն շինուածոյ Տաճարին և նորա յաջորդ գլուխներն՝ որք շարունակութիւն են այն նիւթոյն, բայց ուրիշ իրեր ևս կը յայտնեն, Գրիգորի գրաւոր Տեսլեան հետ, որոց նմանութիւնը կարի ակներև է: Ցառաջնումն՝ կը տեսնէ մարգարէն Եզեկիէլ բարձրագոյն լեռ մի. նոյնը կը նկատուի և՛ ՚ի վերջնումն աստ, յէջ 554: Եզեկիէլ կը տեսնէ յարևելս՝ Աստուծոյ Իսրայէլի փառքն և կը լսէ երկնային բանակի ձայնը՝ իբրև զձայն անհամար բազմութեան, — Աստուծոյ լոյսը յերկնից յերկիր կ'իջանէ և երկիրս անով կը լուսաւորի, — կ'երևի ապա լուսաւոր մարդ մի՝ ունելով ձող ՚ի ձեռին և զլար շինողաց, և ինքը կեցած է ՚ի վերայ դրան: Այս ամենայն կը նկարագրուի և յէջս 554 և 555 Ագաթանգեղոսի. միայն թէ աստ հրեշտակին համար կ'ըսուի, թէ ՚ի շինամէջս քաղաքին և գետնի վերայ կեցած էր, և փոխանակ ձողի՝ ուռն ՚ի ձեռին. իսկ լարը Գրիգորի ձեռքը տրուած է: Առ Եզեկիէլի՝ կը չափէ հրեշտակն զտաճարն՝ յարևելս, ՚ի հիւսիս և ՚ի հարաւ, — սիւներ կը կանգնին և խորաններ կը ձգուին, — Խէ. գլխուն մէջ՝ վարագուրաց տակէն ջուր կը յորդէ՝ իբրև գյորձանս հեղեղաց՝ դէպ յարևելս, — կը կենդանանան այն ամէնքը՝ որոց վերայ կը հասնի այդ կենսունակ ջուրն, — անտի կը վերընձիւղին նորանոր բարունակներ, — անդ կը լինի երկոտասան ցեղից ժառանգութիւնն և կը ծնանին պղրէնածինք, յորոց կը զանազանին ազգք պանդխտաց: Արդ, սոյն բաները փոքր ինչ տարբերութեամբ բանից՝ կը նկարագրուին Գրիգորի Տեսլեան մէջ: Առ Եզեկիէլի՝ երբ զարմացած կեցել է մարգարէն՝ (Խ. գլ. 3 տուն) հրեշտակը կը մօտենայ և կ'ըսէ. ինչո՞ւ զարմացել ես աչօք տեսածներուդ վերայ, « հաստատեա ՚ի մտի քում զամենայն զոր ես ցուցից քեզ, զի վասն ցուցանելոյ քեզ եկի այսր » և այլն: Այսպէս կ'ըսուի ճիշդ նաև ՚ի Տեսլեան անդ Գրիգորի, յէջս 558 և 567: Աւելորդ կը համարիմ զմանրամասունսն երկաքանչիւրոցն ՚ի մէջ բերել, զի ցայս վայր մէջ բերուածներն իսկ բաւական են ցուցնել, թէ կեն-

սագրի նկարագրած Տեսլեան այդ մասն՝ ուղղակի նմանութիւն է նկարագրին և տեսլեան որդւոյն Բուզեայ:

Ապացուցանենք 'ի վեր անդր արտայայտած մեր նախադասութեան երկրորդ մասը. այսինքն թէ, Էջմիածնի[1] կաթուղիկէն յունական եկեղեցեաց ոճով շինուած է: Արդ, բաց 'ի Տեսլեան հեղինակէն՝ չիք այլ ոք 'ի տոհմային հին պատմագրաց, որ սոյն երկնանման տաճարիս ճարտարապետական ճիշդ նկարագիրը մեզի աւանդած լինի: Վերջին ժամանակաց մէջ, եղան Դիւբուայ,[2] Բրոսէ[3] և Տէքսիէ[4] որք առաջին անգամ հետազօտեցին այս տաճարիս կազմութիւնն և ուսումնաբար գրեցին: Բայց անոր ոճոյ բուն գաղտնիքը չըկարողացան լաւ իմանալ և պարզել. որովհետև այդ ժամանակամիջոցին հնագիտութիւնն, և 'ի մասնաւորի Բիւզանդական հնագիտութիւնը, դեռ այն յառաջադիմութիւնն ըրած չէր, զոր կը տեսնենք այսօր: Այժմեան հնագէտք, յորս դեռ մի քանի տարի առաջ նշանաւոր հանդիսացաւ Օդէսայի Համալսարանի Պրօֆ. Կոնտակովը, Բիւզանդական հին ճարտարապետութեան վերայ ըրած լաւ հետազօտութեամբք: Նա ինքն յամին 1876 'ի Մոսկուա հրատարակած երկասիրութեամբն՝[5] ակն յայտնի փաստերով ապացուցուց Բիւզան-

1. Այս եկեղեցիս, որոյ հնագոյն անունն էր Շողակաթ, թէպէտև այլևայլ աւերմանց և նորոգութեանց ենթարկուեցաւ, յընթացս դարուց. մի՝ հրամանաւ Շապհոյ Բ. և 'ի ձեռն ուրացեալ որդւոց իւրոց Մերուժանայ և Վահանայ, ըստ վկայութեան Փաւստոսի, Դ. Դպր. գլ. Ծե. բայց փութանակի շինուեցաւ վերստին մօտ յամն 380: Երկրորդ նորոգութիւնն եղաւ 'ի ձեռն Վահանայ Մամիկոնենոյ, ըստ պատմելոյ Ղազարայ, գլ. ՄՀԳ: Յետ անցանելոյ 135 ամաց, Կոմիտաս կաթողիկոսն երրորդ անգամ մ'այլ նորոգեց զայն 'ի կոփածոյ քարանց, յամին 618. և զայս կը պատմէ մեզ Սեբէոս՝ պատմիչ նոյն դարուն: Ասկէ վերջ եղածներն պարզապէս նորոգութիւն համարելի են քան թէ շինութիւն: Արդ, թէպէտև երիցս նոր շինեցաւ և նոյնչափ անգամ այլ նորոգեցաւ Հայոց լուսաւորութեան հօր այս նուիրական տաճարս, սակայն, ըստ պատմական վըկայութեան և ըստ ընդհանուր աւանդութեան ազգիս, պահեցաւ այն միշտ 'ի վերայ առաջին հիման, ըստ ամենայն ձևակերպութեան. այնպէս որ, առանց բանաւոր տարակուսի, կարելի է ըսել, թէ այժմ ևս կը գտնուի մի և նոյն դրութեան մէջ, ըստ մեծութեան շինուածոցն 'ի բարձրութիւն, յերկայնութիւն և 'ի լայնութիւն, ինչպէս էր յառաջն: Առաքել Դաւրիժեցւոյն, Մովսիսի Սիւնեցւոյն նորոգած ժամանակ, այն եկեղեցւոյն տուած նկարագրութեան համեմատ՝ 50 հալապի էր նորա երկայնութիւնը, 48 լայնութիւնն և 35 բարձրութիւն: Շահխաթունեան վարդապետն՝ իւր Ստոր. Էջմիածնի հտ. Ա. յէջ 16 կը վկայէ, թէ ինքն ևս չափելով զայն, չափով պարսկային գազին Երևանայ, թևէ 'ի թև և ըստ ներքին երեսաց որմոց՝ գտաւ 32 1/2 երկայնութիւն, 32 1/2 լայնութիւն. և 21 բարձրութիւն: Ու յիրաւի, եթէ պատմիչք ևս չըսէին՝ զայս կը պահանջէր Հայաստանեայց ամենամեծ պատկառանքը դէպ 'ի այս Գրիգորեան ձեռակերտը. մանաւանդ զի այս գաղափարս տիրած էր առհասարակ, թէ յՈրդւոյն Միածնէ շինուած է այդ ձևն և չափն, և թէ չէր կարելի փոխել զայն:

2. Voyage autour du Caucase.

3. Voyage archéologique en Géorgie et Arménie.

4. L'Arménie et la Perse.

5. L'Architecture ancienne en Géorgie.

դական ոճոյ տիպն, ըստ ամենայնի, **Հայա—Վրացի** կոչուած ճարտարապետական շինուածոց վերայ՝ անդստին առաջին շրջանի մէջ, որ Դ. դարէն կը սկսի և կը հասնի ցդարն Ժ։ Կոնտակովի վերոյիշեալ գործն ստացայ հեղինակէն, որ վասն և հրապարակաւ կը յայտնեմ իմ շնորհակալութիւնս, սակայն ռուսերէն գրուած լինելով՝ ինձ անհասկնալի մնաց։ Ուստի հարկադրուեցայ Տփղիսաբնակ Մօրիէ Գաղղիացւոյն գործէն[1] վկայութիւն մէջ բերել՝ որ, ըստ իս, ոչ այլ ինչ է ծայրէ 'ի ծայր՝ բայց եթէ թարգմանութիւն առաջնոյն։ Ահա, յէջ 19, այսպէս կը յայտնէ հեղինակն՝ իրաց վիճակն ընդհանրապէս. « L'architecture armeno-géorgienne emploie tous les principaux éléments de la construction bizantine ; le plan en forme de croix grecque, la coupole » etc. Յէջ 21. « Comme il n'est pas probable que la Grèce ait imité la Géorgie, il faut se rendre à l'évidence et reconnaître que les deux pays (Arménie et Géorgie) ont subi en même temps l'influence de l'Occident. » Յէջ 20. « Les traits caracteristiques de l'art bizantin se répètent dans les deux pays : plan avec trois absides, narthex et gynécée, proportions exagérées en hauteur, coupole sur un tambour étroit et très-élevé », etc. Յէջ 8. « Les monuments de la première époque, autant que nous pouvons en juger par les rares échantillons qui sont parvenus jusqu'à nous, portent de si fortes traces d'influence bizantine qu'on peut croire qu'ils ont été construits par des architectes venus de Constantinople ».

Սաուգին, ռուս գիտնականին կարծիքն և այնպիսի եղելութեան մի ճշմարտութիւնը՝ կը հաստատուին դեռ աւելի հնագոյն յիշատակարանօք։ Վրաց ճարտարապետութեան մասին՝ նշանաւոր է նաև Սոկրատայ յոյն պատմագրի վկայութիւնը, որ իւր Պատմութեան Ա. գրոց Ի. գլխուն մէջ յայտնապէս կը ծանուցանէ, թէ Վրաց նորադարձ թագաւորն՝ 'ի սրբուհւոյն Նունեայ ուսանելով զոճ և զձև եկեղեցեացըն Հոռոմոց, հրամայեաց ըստ այնմ շինել Վրաց առաջին եկեղեցիները։ Եւ իրօք Մծխիթայ եկեղեցին՝ որ ամենէն հնագոյնն է, սոյն տիպն ունի։ Իսկ հայկականին՝ իբրև յաւերժական արձան կեցած է **Տեկորայ Եկեղեցին**, որ է գործ Ե. դարու, շինեալ 'ի Յովհ. Մանդակունեցւոյ՝ հրամանաւ և ծախիւք Վահանայ Կամսարականի (որ էր երէց եղբայր Ներսեհի և Հրահատայ), ըստ վկայութեան Հ. Ղևոնդ Ալիշանի (Շիրակ. Տեղ. էջ 132–3)։ Այս բանս կը տեսնուի նոյն իսկ անոր վրայի հնագոյն արձանագրէն՝ յորում չիք թուական, զի յառաջ էր քան զդիր հայկական թուականին։ Արդ, այս երկու հնագոյն եկեղեցիներս ևս՝ յունական խաչի ձև ունին, քառակողմ խարըսխաց կամ սեանց վերայ յեցած՝ դէպ 'ի վեր կը բարձրանայ գմբէթն, իբրև զսիւն մի բոլորաձև, երկնաբերձ։ Իսկ արդ, որովհետև այս եկեղեցիներուս համանման է Էջմիածնայ եկեղեցին, 'ի բաց առեալ

1. L'Art religieux au Caucase.

գմբէթին սրութիւնն, որ յետին ժամանակի նորոգութեան արգասիք է. ուրենն հետևութիւնն յայտնի է: Արդ, այժմեան էջմիածինը՝ Գրիգորի Տեսլեան մէջ նկարագրուած եկեղեցւոյն հետ բաղդատելու նամար, մէջ բերենք Մօրիէի գրուածքէն նորա շինուածքին համառօտ ծրագիրը: Եէջ 9. « À l'éxtérieur le plan présente en réctangle; à l'intérieur une croix grecque, dont les quatre bras s'arrondisent en abside. Au centre une coupole sur un tambour ronde, à l'intérieur ést polygone, à l'extérieur surmontée d'un toit conique, le passage de la croix intérieure au rectangle extérieur est obtenu au moyen de quatre pièces qui viennent s'inscrire dans le bras de la croix et tous deux servent de sacristie. Les absides ne sont pas en sailles sur la façade extérieure », etc.

Գերմանացին Պ. Լանզլ եա՝ իւր երկասիրութեան [1] մէջ, յետ ասելոյ, թէ « Quello stile che sogliono chiamare armeno-giorgiano, in su le prime furono usate le forme romane e bizantine », այսպէս կը նկարագրէ զէջմիածին. « Le chiese armene sono la più parte in pietra, e secondo l'uso bizantino son ricoverte di cupole e di volte a botte, con pilastro sottostanti. Hanno la pianta di rettangolo allungato, sul quale s'innalza nel mezzo una costruzione a forma di croce, che sostiene la cupola », ect. Արդ, այս կրկին հեղինակացս ըրած նկարագիրը բաղդատելով Ագաթանգեղայ գրոց կամ Գրիգորի Տեսլեան 555 և 556 էջերու նկարագրին հետ, ըստ ամենայնի կատարեալ համաձայնութիւնն ակներև կը լինի: Եւ յիրաւի, յերկուսին իսկ կը տեսնուին չորեքկուսի խարիսխներ կամ սիւներ, որոնց պարապ միջոցը կը ձևանայ խաչ ինն յունական, – 'ի վերայ չորեցունց սեանց խաչին՝ կը կապին ընդ միմեանս կամարք զարմանալիք, – 'ի վերայ նոցին կը բարձրանայ գմբեթաձևն խորանարդ, – և գմբէթին վերայ կը կենայ տէրունական խաչի նշանը, զորով կը փարի լոյսն համատարած արեգական, – գմբեթի լուսանցքներէն կը ծագի 'ի ներքս շողն արեգական (ըստ հեղինակի Տեսլեան շող աստուածեղէն): – Միով բանիւ կ'ունենանք Դ. դարու [illegible] կամ Վաղարշապատու եկեղեցին, յայնժամու յունական եկեղեցեաց սովորական ոճովն և Գրիգորի տուած ծրագրով և ոչ թէ աստուածատուր և մասնաւոր ձևով յօրինուած :` Հեղինակ Գրիգորի նախայիշատակեալ Տեսլեանն՝ Եզեկիէլի մարգարէութեան տեսլեան կերպարանք տալէն վերջ՝ կը հետևէր, որ Վաղարշապատու մայր եկեղեցւոյն այլ՝ Եբուսաղեմի Տաճարին պէս աստուածային յօրինուածութեան կերպարանք տայր: Սակայն միոյն գաղտնիքը լուծելէն վերջ՝ ամենաբնական էր որ միւսոյն ևս ըստ այնմ գտնար իւր լուծումը:

Գ. Ապացոյց մի ևս առ այս՝ կը համարիմ ես էջմիածնայ հիւսի-

1. I principali monumenti architettonici. Ed. di Torino, 1886. Ըստ իտալերէն թարգմանութեանն ունէի 'ի ձեռին:

սակողման աւանդատան պատուհանի վերայ եղած հնագոյն յոյն արձանագրութիւնը, զոր 'ի մէջ բերեն Շահխաթունեան և Պրոսէ և «Այրարատի մեծանուն հեղինակն», վերոյիշեալ երկասիրութեանց մէջ, ժամանակիս հնագէտք՝ քրիստոնէութեան Գ և Դ. դարուց գործ կը համարին: Այս յիշատակարանս կրկին ձևով է. միոյն մէջ փորագրուած կը տեսնուին Պաւղոս Առաքեալն և Թեկղի կոյսն՝ իրենց յունական անուանագրութեամբքը. իսկ միւսին մէջ, բաց'ի հայկական Δανιηλ, Τιρερ (Տիրայր) և Γαριγινιος անուններէն, կը յիշուին նաև զոյգ յունական անուանքս ΑρΧιας և Ελπις, առն և կնոջ: Զէ մարթ ըսել, թէ այս արձանն՝ յունաստանէն, յետոյ ուրեմն, 'ի Հայս բերուած է, այլ 'ի Հայս փորագրուած: Արդ, այս ուրիշ բան չի նշանակեր, հաւանօրէն, բայց եթէ ըսել, թէ Արքիասն՝ գուցէ եղած է ճարտարապետ կաթողիկէին Վաղարշապատու. և այս անտի իսկ յայտ է, զի ժամին մէջ արօթողներէն կը խնդրէ, որ զինքն ևս յիշեն: Արդ, եթէ այս Դանիէլս և Գարեգինը՝ նոյն համարինք Ոռշտունեաց իշխաններուն հետ, զորս յիշէ Բուզանդ (Դպր. Դ. գլ. Դ և Ե.) նշան է, թէ Մեծին Ներսիսի ժամանակ ևս նորոգուեցաւ այս տաճարս:

Տեսլեանս սկիզբն և վերջաբանն իսկ՝ այնպիսի պարագաներ կը յայտնեն, որք աւելի նորա հեղինակին կամայական գրչին՝ քան թէ Գրիգորի պատմութեան կը վերաբերին: Ցէջ 552 կ'ըսուի, 'ի կողմանէ Գրիգորի, թէ «Արդ, 'ի հասարակել գիշերիս յայսմիկ, զի խոնջեալ պատ 'ի քում լինէիք 'ի ծանրաբեռնեալ աշխատաբեռնեալ 'ի տրտմաբեռնեալ անձինք»: Արդ, այս խօսքերս հակասական են, նախ, 544 էջին, ուր կ'արձակէ Գրիգոր զժողովուրդն, որ եկած էին 'ի լուր վարդապետութեանն, ասելով. «Արդ, այս օր ընդ երեկս է անցեալ, երթայք 'ի հանգիստ քնոյ ... և 'ի վաղու հետէ փոյթ լիցի ձեզ շինել զյարկս հանգստոցացդ»: Բ. 548 էջին, ուր կ'ըսուի, թէ «Ի լնուլ վաթսներորդ վեցերորդ աւուրն ընդ այգուն առաւօտանալն» եկան իշխանք՝ թագաւորին և նախարարաց հետ առ Գրիգոր, և Գրիգոր 'ի յորդոր շինութեան վկայարանաց՝ կը պատմէ զՏեսիլն: Արդ այս հատուածս եթէ շարունակութիւն իմն համարինք անմիջապէս իւր նախընթաց պարբերութեանն, և եթէ 544 էջի վերջին պարբերութեանն, որ աւելի հաւանական է, կը ցուցընէ մեզ, թէ Տեսլեան պատմութենէն յառաջ երբէք տեղի ունեցած չէր այնպիսի ծանր աշխատութիւն մի. վասն զի դեռ վկայարանաց շինութիւնը չէր սկսած. ուստի սաստիկ վաստակելու պատճառ մ' ևս չկայր, զի դեռ նոր ելած էին 'ի քնոյ անտի, 'ի ծագել առաւօտուն:

Իսկ 'ի վերջաւորութեան անդ, յէջ 568, այսպէս կը կնքէ զՏեսիլն. «Եւ զայս ասացեալ, շարժումն եղեալ, ընդ առաւօտածագանալն ծածկեցաւ տեսիլն»: Ընդ առաւօտանալն պատմել կու սայ Գրիգորի զՏեսիլն. ընդ առաւօտն ևս կը ծածկուի այն: Գեղեցի՛կ գիւտ. զի եթէ սկսաւ պատմել, հարկ էր որ վերջանայր այն: Շատ աւելի բնական և հասկանալի կը լինէր հեղինակն, եթէ ըսէր. Առաւօտ լինելուն պէս՝ եկան նոքա առ Գրիգոր, և Գրիգոր բացատրեց նոցա

զտեսութիւն իւր կամ զծրագիր շինութեան վկայարանաց. և անդէն յարէր զբանս Գ. պարբերութեան. «Եւ զայս ասացեալ՝ հրամայեաց զի զնիւթ շինուածոյն փութապէս պատրաստեսցեն». որ շատ լաւ պիտի միաբանէր Տեսլեան վերջի բառերուն և նորա յաջորդին հետ, «Եւ ամենայն բազմութիւն մարդկան լուեալ զայն՝ իւրաքանչիւրն ընթացան պատրաստել զնիւթն»: Սակայն հեղինակս փոխանակ այսր՝ ԺԳ. գլխահամարով սկսող նոյն պարբերութիւնն ևս ներմուծած է. «Արդ ամենարարն, ամենաստեղծն», և այլն բառերով, իրօք աստուածային երևցնելու համար նկարած նիւթն, այսինքն է եկեղեցեաց շինութիւնը. և չորիցս արդէն կրկնուած հրավիրանաց հետևեալ խօսքերն՝ հինգերորդ անգամ մի ևս մէջ բերելով. «Արդ եկայք շինեսցուք զվկայարանն», և այլն: Արդ, այս կողմէն իւր խրամատը կարկատել ուզած ժամանակ, այլուր այսինքն է, յէջ 552, Բ. պարբերութեանը մէջ՝ արդէն բերդը տուած կ'լինի. վասն զի աստ Գրիգորի բերանը դրուած այս խօսքերս, թէ «Դուք 'ի քուն լինէիք, և ես [illegible] վասն աքանչելեաց ողորմութեանն Աստուածութեան [illegible] ձեզ...: Ձ[illegible] և զսէրն վկայիցն առ սիրեցեալ արարչութիւն»; և այլն: Աստի յայտնապէս կը տեսնուի, թէ Գրիգոր՝ նախընթաց երեկոյէն՝ արդէն սկսած էր պատրաստել փառութեան աւուր տալիք ծրագիրն, վասն շինութեան եկեղեցեաց, յիշելով Հայաստանի մէջ կատարուած դարձին և Հռիփսիմեանց նահատակութեան մեծազոյն դէպքերն; աննկախ 'ի տեսլենէ. և թէ Տեսիլն իբրև պատահական մի բան յարմարուած է յայսմ, մինչդեռ նորա իրական տեղն ուրիշ էջերումն եղած է:

Հուսկ 'ի վախճանի պէտք է ըսել, թէ այս և նմանօրինակ երևոյթներ և պարագաներ, յորս Գրիգորի, Մեծին Ներսիսի և Սահակայ Պարթևին՝ աստուածային տեսիլքներ և մարգարէական գուշակութիւններ ընծայուած են, ուղղակի ազգայնութեան տիպ ունին. ուստի ինչպէս վերջին երկու հայրապետաց Տեսիլքները գրողներն հայազգի եկեղեցականներ էին, այսինքն է Մեսրովբ Երէց և Ղազար, կամ լաւ ևս Ղազարայ մէջ ձեռք խառնողը. այսպէս այլ Լուսաւորչայ Տեսլեան հեղինակն՝ պէտք է որ հայազգի եկեղեցական որ եղած լինէր: Այս բանս՝ ուրիշ տեղեաց և խնդրոց քննութեան մէջ իսկ արդէն տեսանք, և տակաւին պիտի տեսնենք յընթացս ճառելիք նիւթոց: Նոցա նպատակն էր, այդ եղանակաւ զՀայս միշտ կրօնական երկիւղածութեան մէջ պահել, կասեցուցանել 'ի չարէն, յորդորել 'ի բարին և հուսկ ուրեմն՝ հոգևորական իշխանութեան ազդեցութեան ներքոյ արկանել զթագաւորական իշխանութիւնը. մանաւանդ թէ և զթագաւորն ինքնին գլխովին: Ուստի չէ ինչ անտեղի, մանաւանդ թէ ողջախոհ քննադատութեան է գործ, ամէն աւանդութիւն[1] չընդունել կուրօրէն իբրև պատմական և ընդհանուր իր:

1. Օրինակի աղագաւ, տոհմային մատենագրաց ոմանց աւանդածը, թէ Լուսաւորիչը Սեպուհ լեռնէն ուզեց յափսիթերս յերուսաղէմ երթալ,

# ԳԼՈՒԽ Թ.

Հռիփսիմեանց նշխարաց փոխադրութեան պատմական արժէքն և հայեացք մի առ այն. — Գրիգորի առաքելագործութեան աստեղա-նիշներն, և աստուածապաշտ վարուց հանգամանքը. — Յառաջ ու յառա-ջնականութեան յաջորդ տեղեկութեանց Գրիգորի և ծի-ծին Մեսրոպայ. — Ո՞վ է յանձնողն, Կորիւ՞ն թէ Գրիգորի գոր-ծոց հեղինակն. — Գուարշամբի խորհուրդն 'ի նշանակ Կորեան և նորա հերետածը. — Կրկին Պատմութիւնք Մեսրոպայ և վաւերականու-թեան ընդդիմակներն. — Լամբանի յանձնառութեան և Կորիւն՝ յա-նձնառ Կորեան. — Պատմական և քննական համառօտ:

Գալով Հռիփսիմեանց նշխարաց փոխադրութեանն, որ այնպիսի մեծազոյն պատրաստութեամբ կը սկսի և շքեղ հանդիսիւ և հրաշապատումն փառաւորութեամբ կը կատարուի: Արդ, այս կրօնական դէպքս՝ կը ներկայացնէ մեզ Հայաստանեայց և Այրարատեան մայր եկեղեցւոյն մէջ կատարուած նախկին և տեղական պաշտամունքը, յառաջ քան զամենայն տօնախմբութիւնս սրբոց և տօնից տէրունականաց: Այս կրօնական դրուագիս մէջ միայն, և ոչ բնաւ այլուր, կու գան կը միանան իրարու հետ Հռիփսիմեանց, Տրդատայ և Գրիգորի պատմութիւնքը, որոնք անշուշտ իրարմէ տարբեր ժամանակաց և պարագայից մէջ գրուեցան: Միութիւն մի, որ գլխովին արուեստական համարելի է և առանց եկամուտ յաւելուածոց չէր կարող իրագործուիլ: Եւ յիրաւի, առ այս Ա. Գրոց, յէջ 168 Գրիգորի վիրապէն ելլելուն և 'ի Վաղարշապատ գալուն հատուածը վերստին կրկնուած է, յէջ 549, յասելն. «Իբրև եկն եհաս ելեալ 'ի բանտէ վիրապին խոստովանողն Քրիստոսի Գրիգոր». և կրկնուած է բոլորովին աչքի զարնող կերպով. այսինքն է, յետ վաթսնօրեայ պահոց, վարդապետութեան և այլոց իրաց պատմութեան: Առ այս՝ այնքան անգամ կը հրաւիրին Հայաստանեայք 'ի շինութիւն վկայարանաց և տակաւին կը յետաձգուի այն. առ այս՝ տուած է Ս. Գրիգորի երկիցս բժշկել զհարուածեալն Տրդատ, բայց միշտ ըստ մասնէ նեթ, ամբողջն այս հանդիսիս վերապահելով. այս պատճառաւ՝ արկեղաց և վկայարանաց շինութիւնը կրկին նկարագրուած է. այս պատճառաւ կը մասնակցէ զթագաւորն՝ շինութեանն այնորիկ:

բայց հրեշտակ Աստուծոյ արգիլեց զայն. իսկ նա հետիոտս գնաց անտի: Ղազարայ Ջահկեցւոյ, գլ. ի. աւանդութիւնը, թէ Լուսաւորիչն մեր առանց չուանի կանթեղ մի կախեց 'ի գագաթանէ Արագած լերին, արտասուօք լեցոյց զայն. վառեցաւ և կը տևէր մինչև ցիւր օրերն: Այսպէս և այն գրաւոր աւանդութիւնն՝ որ ցայսմաւուրս Դեկտ. 19, Գրիգորի մահուան ժամանակ՝ անհեթեթ հարցմունքներ և պատասխաններ կ'ընծայէ Գրիգորի՝ ուղղեալ առ հրեշտակն, որոնք ծաղրական են, լի մոլորութեամբք և Գրիգորին անհնարին անվայել:

Բ. Որչափ որ նիւթական ձևով միացած են աստ՝ այն երեք գրութիւնքը, սակայն իւրաքանչիւրը՝ պահած է իւր առանձնայատկութիւնն: Նախ զի Հռիփսիմեանց պատմութիւնը՝ պարզ նոցա նահատակութեան յիշատակութեամբ, վկայարանաց պատրաստութեամբ, և նշխարաց փոխադրութեամբ, իբր անուղղակի կապով մի, կը միանայ. որովհետև նոցա վկայաբանութիւնն, ինչպէս տեսանք, Ս. Գրոց 163 իջի Բ. պարբերութեամբն արդէն աւարտած էր: Ո՛րքան գեղեցիկ է, արդարև, յէջ 579 ժէ. գլխահամարով պարբերութիւնն, յորում, յետ շինութեան վկայարանաց, միահամուռ կը ժողովին Հայաստանեայք յամենայն սահմանաց, շինից և քաղաքաց, 'ի պաշտօնարանի անդ սրբոց և 'ի յարկի տանն Աստուծոյ՝ պատելոյ քաղաքորմով. և Ս. Գրիգոր կը գոչէ առ ծովացեալ և ալէծուփ ժողովն նորադարձ հաւատացելոց. «Դի՛ք ծունր ամենեքեան առ Աստուած, զի արասցէ Տէր՝ բժշկութիւն հարուածոցդ»: Յերեսս անկեալ կը տարածուի ժողովուրդն այն սրբոյն առջև, որուն տկարութեանը մէ՛ջ քիչ վայրկենէն պիտի տեսնուի Աստուծոյ ամենակարող զօրութիւնը: Կոյրերը՝ կը խարխափեն, կաղերն և հաշմանդամները՝ յափիթերս կը սողան, հազիւ տանելով իրենց խեղացած անդամներն. խուլք և համրք կը պապաչեն՝ առանց գիտակցութեան կատարուած իրին. ամենուստ լալու, ախի և վախի ձայներ կը լսուին. ամենուրեք խուլ մռնչիւն մի կը տիրէ՝ ընդ երկիւղի և լռութեան: Գրիգոր Մովսիսանման ձեռքերը դէպ 'ի յերկինս կը բարձրացնէ. գոհութիւննախառն մաղթանքներ՝ յերկրէ յերկինս կը վերանան. իսկ երկնքէն աստուածային ողորմութեան և զօրութեան նոր սքանչելիքներ խեղճ ժողովրդեան վերայ կը կատարուին, 'ի քթթելական: Կոյրք՝ բնական լուսոյն հետ՝ հաւատոյ իմանալի լոյսն եւ տեսնելով, այլ յայլմէ եղած՝ ցնծութեան աղաղակներ կը հնչեցնեն. այսպէս և այլ ամենայն դասք ախտաժետաց, զօսացելոց և համրց: Կարելի է գուշակել, թէ որպիսի՛ զարմանք և իրարանցումն իրօք տեղի ունեցաւ անդ. քանի՛ աղմուկք շփոթից. ո՜րքան երկիւղի և խնդութեան հակապատկեր տեսարաններ: Արդ, այս ամենայն ճշմարտութեան տիպ ունի:

Արդ, նշխարաց փոխադրութեան դէպքն այս կերպով կը լմննայ: Բայց Կարելի՛ է երևակայել Վաղարշապատու նորակազմ եկեղեցւոյն մէջ և նորադարձ Հայոցմէ առ սուրբ վկայս կատարուած պաշտօն մի՝ առանց այն պաշտաման համապատասխանող վկայից իրականութեան, ինչպէս երևակայեց Գուտշմիդ: Ըստ իս, այսպիսի բան մի ենթադրելն ուրիշ բան չէ՝ բայց եթէ եղջերուաքաղս ծնանել, և ուղղակի հակառակել Հռիփսիմեանց, նա մանաւանդ Գրիգորի պատմութեան, որուն հարազատութիւնը Գերմանացին իսկ ընդունած է 'ի բազում տեղիս և ճշմարիտ պատմութիւն անուանած: Այժմ կը մնայ ուրեմն ըսել, թէ կամ Հռիփսիմեանց նշխարքը արտաքուստ և 'ի ձեռն այլոց բերուեցան 'ի Հայս, Գրիգորի վիրապէն ելլելէն քիչ առաջ. ինչպէս և յետ այնորիկ բերուեցան Յովհ. Կարապետին և Աթանագինեայ վկայի մասունքը. և կամ ըսել, թէ իրօք 'ի քաղաքա-

միջի անդ ոստանին Հայոց կատարուեցան սուրբ վկայքս: Առաջին նեղութեան՝ ոչ մի նպաստաւոր և յայտնի աւանդութիւն չկայ առ Ագաթանգեղ և յազգային մատենագիրս. սակայն իրն յինքեան չէ ինչ անկարելի. որովհետև Մ. Խորենացի կ'աւանդէ, թէ Մեծին Խոսրովու ժամանակէն 'ի վեր կային, նաև 'ի Հայս, քրիստոնեայք և թէ բազումք 'ի նոցանէ նահատակուեցան յայնժամ: Արդ, այս քրիստոնեաներն՝ եթէ Ասորիքէն եկած համարինք 'ի հայս և եթէ 'ի փոքուն Ասիոյ ճողոպրած, շատ հաւանական է, որ Նիկոմիդիայէն, 'ի Սեբաստիոյ և 'ի Թեսաղոնիկոյ խել գունդագունդ նահատակողաց ումանց նշխարքը իրենց հետ 'ի Հայս բերած ըլլային և ծածկուած մնային 'ի հնձանի անդ, ճիշդ այն ժամանակն՝ յորում զՀռիփսիմեանս նահատակուած կը պատմէ կենսագիրն: Սակայն պէտք է խոստովանել, թէ Գրիգորի Պատմութեանն աւելի համաձայն է վերջին նեղութիւնը:

Նշխարաց փոխադրութեան դրուագին՝ կը յաջորդէ, յէջ 582, Գրիգորի աւետարանաքարոզ Առաքելութեան դրուագը, Հայաստանի այլևայլ սահմանաց մէջ և կռոց կործանումն. ուր ճարտար գրչութեան ներքև լաւ կը տեսնուի, թէ որքան յեղյեղուկ են իշխանաց աշխարհի խորհուրդները և գործերն՝ 'ի խորհրդոց անտի և 'ի գործոց վերնախնամ տեսչութեան, որ կը հայի և կը վարէ արդարութեամբ զհամագոյս, ըստ բնութեան և պիտոյից նոցա: Կռոց և հեթանոսութեան ջերմ պաշտպան թագաւորն Տրդատ և նորա հետ բոլոր Հայաստանեայք՝ քիչ օրուան մէջ այնպէս խորարմատ կը հաստատուին քրիստոնէութեան մէջ՝ արգելականին Գրիգորի ձեռքով, մինչև այն զէնքն և զինուորութիւնն, որով կը հալածէին զարբանեակս Քրիստոսի, կը դարձնեն սուտ աստուածոց և հեթանոսութեան դէմ:

ԾԸ. գլխահամարէն՝ ցԾԺԱ. գլխահամարն, Տրդատայ պատմութիւնն և գործերն՝ այնպէս կը զուգընթանան Գրիգորի պատմութեան և գործոց հետ, որ դժուար կը լինի այնուհետև որոշել, թէ ո՞ է որ կը պատմէ զայնս. կամ լաւ ևս ըսելով, արդեօք Տրդատա՞յ թէ Գրիգորի կենսագրին իցեն ընծայելի այս հատուածները: Այս՝ և սորա նախընթաց գլխոյն մէջ, յէջ 581 և 582, միջանկեալ երկու պարբերութիւնքը, որ կը սկսի. « Անդ էր այնուհետև սրտալիր ուրախութիւն », բառ առ բառ նոյն են ընդ Կորեան[1]: Ահաւասիկ նոր դժուարութիւն մ'ևս, որ Ագաթանգեղայ Բ. Գրոց հարազատութեան վերայ, գէթ ըստ մասին, կասկած կու տայ: Մի և նոյն տեղեաց մէջ և մի և նոյն բառերով հատուածներ, որովք առ Ագաթանգեղոսի՝ քրիստոնէութեան կամ Աւետարանի մուտքն 'ի Հայս, նորա գործած մեծամեծ սքանչելիքն, այլովք հանդերձ կը նկարագրուին. առ Կորեան, ընդհակառակն, նայերէն նշանագրոց գիւտի մեծ դէպքն 'ի ձեռն Մեսրովբայ, և նորա գործած մեծագոյն յեղափոխութիւնն և

1. Պատմ. Վարուց և մահուան Ս. Մեսրովբայ. տպ. Վենետկոյ, 1883, էջ 13: Այս տպագրիս համեմատ պիտի լինին յիշատակութիւնք նաև միւս տեղեաց Կորեան. իսկ Ագաթանգեղոսին՝ դարձեալ 1862ի տպագրութեան համեմատ:

վարդապետութիւնը կ'աւանդուին: Թերևս կարելի լինէր պատահական համարել այս նորանշան երևոյթս, եթէ վերոյիշեալ երկու տեղիքը միայն էին: Սակայն որքան անդրադոյնս յառաջենք այնքան ևս նմանաբան տեղիք յաճախ սեզ ընդ առաջ կը լինին: Ցէջ 584-586 և 588-589 երկու տեղիքը, յորս կը պատմուի Գրիգորի բերնով աւետարանի քարոզութիւնն յԱրտաշատ և 'ի Թորդան, նման են Կորեան 7-8 էջ՝ տեղւոյն հետ, ուր կը պատմուի Ս. Մեսրովբայ քարոզութիւնն 'ի Գողթան գաւառի. միայն թէ առ Ագաթանգեղ՝ դևք մարդակերպ կը փախչին Խաղտեաց և Կովկասու լեռներն. իսկ առ Կորեան, ընդհակառակն, 'ի Մարս: Ցէջ 613 յետ ձեռնադրութեան՝ Գրիգորի 'ի ստորոտս Նպատ լերին հասնելն և Տրդատայ ընդ առաջ նմա երթալու պարբերութիւնը՝ նոյն է Կորեան յէջ 19, Գ. պարբերութեան հետ, ուր Մեսրովբ՝ երբ Կ. Պօլէն վերադառնալով Հայոց ոստանին կը մօտենայ, թագաւորն և կաթողիկոսը կը դիմաւորեն զնա. միայն թէ առ Ագաթանգեղ՝ Եփրատ գետը կը յիշուի, իսկ առ Կորեան՝ Ռահ գետը: Ցէջ 627, « Եւ այսպէս » սկսեալ՝ մինչև « աւետարանութիւն », և յէջ 628. « Զամենայն ժամանակս » մինչև ցէջն 630 պարբերութիւնքը՝ բառ առ բառ նոյն են Կորեան 22 իջի պարբերութեանց հետ: Առ Ագաթանգեղ՝ Գրիգորի առաքինազարդ և խստակրօն վարուց և զարմանագործութեանց հանդէսը կը նկարագրուի. իսկ Կորիւն՝ զՄեսրովբայն: Ցէջ 631-636, հատուածներ՝ ճիշդ կը համապատասխանեն Կորեան 23 և 24 էջերու հատուածոցը. միայն թէ առաջնոյն քով՝ ընդհատուած կը տեսնուին, միջանկեալ տեղեկութեամբք: Ցէջ 636, ՃԻԳ. գլխահամարով սկսող պարբերութիւնը՝ նոյն է Կորեան 12 իջի, Բ. պարբերութեան հետ, յորում Մովսէս մարգարէական դասով և Պօղոս առաքելականն գնդաւ կու գան 'ի ծանօթութիւն Հայաստանեայց. բայց ըստ կենսագրին՝ Լուսաւորչի ձեռքով, իսկ ըստ Կորեան՝ Հայերէն դպրութեան և Մեսրովբայ վարդապետութեամբ: Ցէջ 651-652, ինչպէս նաև յէջ 654-655, Տրդատայ և Գրիգորի երթին առ Կոստանդիանոս. և Սեղբեստրոս, – մեծաշուք ընդունելութեան, – ընծայընկալութեան, – և փառապանծ դարձին հատուածները՝ նոյն են Կորեան 17 իջին, ուր Մեսրովբ կ'երթայ 'ի Բիւզանդիոն առ Թէոդոս Փոքր և առ Ատտիկոս, և կը դառնայ մեծագանձ ռոճկօք և արքայական սպասաւորօք և այլն: Ցէջ 657. « Ապա յետ այսպիսի գործոց » սկսեալ պարբերութենէն՝ ցէջն 660 եղած պարբերութիւնքն, յորս կ'աւանդուին Գրիգորի Ցաճախապատում ճառից գրութիւնն, – աւետարանական ընթացքն, – եկեղեցւոյ վերակացութիւնը, – Տրդատայ և ուրիշ աշակերտելոց հետ զամենայն ժամանակս կատարուած հոգևոր գործերն և պարագայքը, նոյն են Կորեան 21 և 22 էջերու կրկին պարբերութեանցը հետ: Ցէջ 661. « Ոչ եթէ 'ի հին համբաւուց » մինչև ցէջն 663. « Ցազգս ազգաց » պարբերութիւնքը, որոնք կը կազմեն Ագաթանգեղայ գրոց վերջաբանը, նոյն են բառ առ բառ Կորեան վերջաբանին հետ՝ որ յէջ 28:

Այս զարմանալի երևոյթս՝ արդէն 'ի վաղուց անդրադարձան և

անդրադարձուցին մխիթարեան[1] Հարքս իրենց այլեւայլ հրատարակութեանց և բաղդատութեանցը մէջ, սակայն առանց մասնաւոր կարեւորութիւն մի տալու այնմ. մանաւանդ թէ, չտարակուսեցան բնաւ ուղղակի զԿորիւն համարել բնաքաղ Ագաթանգեղոսի, և դընել զագաթանգեղոսեան հատուածն՝ իբր հնագոյն և հարազատ աղբիւր կենսագրութեան Մեսրոպայ: Երկու ծանօթ ազգային բանասէրք ևս, ըստ իմում գիտութեան, մոցեցան և կը մոցին տակաւին ընդ իրեարս իրարմէ տարբեր կարծեաց լծոյն տակ, և մինչև ցարդ ոչ ոք 'ի նոցանէ արար լծընկէց զմիւսն: Գուտշմիդ առաջինն եղաւ, որ իւր երկասիրութեան[2] մէջ անաչառ քննութեան ենթարկեց բոլոր այս տեղիքս և ցանկեց իսկ աղընթեր գործոց Գրիգորի և Հռիփսիմեանց վկայաբանութեան: Ըստ կարծեաց գերմանացի քննադատին 1. Ոչ եթէ Կորիւն այլ Ագաթանգեղոս է բնաքաղն. 2. Կորիւնէն առնուած տեղիքը՝ ներմուծուած են Գրիգորի հնագոյն Կենսագրութեան հատուածոց մէջ, բայց ոչ եթէ անոր հեղինակն՝ այլ յետին ժամանակի գործակից ոմն համարելու ենք իբր արարող այս բնաքաղութեանցս. 3. Թէ այդ գործակցին կատարեալ և ծառայաբար նմանութիւնն, որ աստ պայծառ կը տեսնուի, կ'երաշխաւորէ մեզ, թէ այն հնագոյն աղբերքը՝ զորս նա ընդօրինակեց, նոյնը բառ առ բառ վերստին կ'ընծայէ մեզ՝ ըստ էական մասին:

Սակայն, ըստ իս, ոչ Ագաթանգեղոս եղած է բնաքաղ Կորեան, և ոչ զԿորիւն ուղղակի բնաքաղ համարելու ենք Ագաթանգեղայ. այլ նա ինքն Կորիւն՝ է բնաքաղ ինքեան: Տեսնենք զգլխաւորն գործոյս:

Արդ, գործեան հանգոյցէն աւելի այս կնճռոտ խնդիրն յաջողութեամբ լուծելու համար, պէտք է, նախ, Կորեան երկասիրութեան հարազատութիւնն ապացուցանել, որքան որ գործս կը ներէ: Առ այս, նախ, կարեւոր կը համարիմ ծանուցանել հետեւեալը՝ զոր Գուտշմիդ բնաւ դիտած չէ. այսինքն է, յանուն Կորեան կրկին Պատմութիւն Ս. Մեսրոպայ մեզի հասած են, որոնք իրարմէ շատ կը տարբերին. այնպէս որ 'ի միոյն ձեռնարկեալ հետեւութիւնքը՝ կարող են միւսոյն ձեռքով ոչընչանալ: Առաջինն՝ է ընդարձակ, որոյ տպագրութիւնն եղաւ յամին 1833, 'ի հնագոյն և 'ի վաւերական երկու նօտրգիր ձեռագրոցմէ, Մատենագրութիւնք Նախնեաց խորագրով: Իսկ միւսն՝ համառօտ, որուն հրատարակութիւնն եղած է յամին 1854, պարիզեան արքունի մատենադարանի հնագոյն և կէս երկաթագիր ձեռագրին համեմատ, և 'ի շարս Հայկ. Սոփերաց՝ կը կազմէ ԺԱ. հատորը: Այժմ բաց 'ի վերոյիշեալ երկու նօտրգիրներէն՝ կան նաև երեք ուրիշ օրինակներ ևս, որք գրեթէ համաձայն են 1833ի հրատարակութեանը: Պարիզեան ձեռագիրը միայն է, ուրեմն, որ

1. Զամչեան, Պատմ. Հայոց հտ. Ա. էջ 668-669: Հ. Գարեգին, Հայկ. հին Դպր. Բ. տպ. Վենետիկոյ, 1886, էջ 294: Եւ այլ ոմն 'ի լուսանցս Բ. օրինակին Կորեան, զոր 'ի հնագոյն ձեռագրէ միոջէ օրինակեց Տիրացու Գէորգ և առաքեց 'ի վանս:

2. Agathangelos, s. 24-31.

տոյն բացատրութիւնը կը ներկայացնէ մեզ, գէթ ըստ իմ ծանօթութեանս. բայց նորա հնութիւնը՝ մեծ նշանակութիւն ունի: Ոճը սեղմ է, աւելի ազդու, կոկ և հասկանալի: Բաղդատելով 1833ի հրատարակութեան հետ, դուք կը կարծէք, թէ մի և նոյն անձին և նիւթոյն վերայ ճառող երկու յիրարմէ տարբեր հեղինակութիւններ լինէին: Կարծեմ, թէ չենք սխալիր յասելն, թէ Մեսրովբայ այս համառօտ պատմութիւնս՝ ճիշդ այն կերպով կը գտնուի ընդարձակին մէջ, ինչ կերպով որ կը գտնուին ընդարձակ պատմութեան վերոյիշեալ հատուածները՝ Ագաթանգեղայ գրոց մէջ. այս ինքն է, ոչ այն միայօդ շարունակութեամբը, զոր ընթերցողը կը նկատէ համառօտին մէջ. այլ շարունակ ընդհատուած են իրենցմէ ընդարձակագոյն տեղեկութեամբք, որոնք բոլորովին նոր և տարբեր պատմական եղելութիւններ կը յայտնեն, զորս 'ի զուր է որոնել համառօտին մէջ: Արդ, Մեսրովբայ համառօտ պատմութիւնն՝ եթէ Կորեան հարազատ երկասիրութիւն համարինք, այն ժամանակ Գուտշմիդի ենթադրութիւնն՝ հիմն 'ի վեր կը տապալի. որովհետև հազիւ թէ երից կամ չորից տեղեաց նմանութիւն կայ ընդ այս և ընդ Ագաթանգեղ, և այն իսկ՝ ոչ այնպէս բառ առ բառ:

Սակայն քանի որ իրն յինքեան, այս ինքն է, այդ երկասիրութեան հարազատութիւնը տարակուսական է, ես չեմ կարող բաւական ապացոյց համարել զայս ընդդէմ Գուտշմիդի: Այլ զայս կարեմ ասել, թէ Մեսրովբայ այդ համառօտ պատմութիւնն՝ այդ վիճակի մէջ չէ պարտ համարել ամբողջական գործ մի Կորեան. այլ նորա ընդարձակ պատմութենէն ընտրանօք եղած ծաղկաքաղ մի վարուց Ս. Մեսրովբայ, զոր ըրաւ յետագայ ոմն՝ յընթերցուածս իւր և կամ վասն հոգեսիրի ուրումն, և կամ յօրինող ոք ճառընտրաց:

Եւ ստուգիւ ապացոյց են այս բանիցս, նախ, Լուսաւորչայ, Սահակայ և նորին իսկ Մեսրովբայ ուրիշ կենսագրութիւններն: Բ. Հաւանօրէն այսպիսի պարագայով մի Կորեան յատուկ և այլոց անհամանալի խրթնաբանութիւնքը, որոց ստէպ կը հանդիպի ընթերցողըն ընդարձակին մէջ, աստ, ընդհակառակն, կոկուած և պարզուած են, ըստ մեծի մասին: Գ. Եթէ այդ երկասիրութենէն դուրս թողունք Ագաթանգեղայ նմանաբան հատուածներն, կը մնայ մի քանի էջ բան, որ ոչ միայն չլինէր արժանի Կորեան, այլ և ոչ իսկ կարէ լինել ստոյգ կենսագրութիւն վարուց և գործոց Մեսրովբայ. որովհետև աստ զանց եղած են բոլոր այն պատմական անձինքն և պարագաներըն, զորս 'ի մէջ կը բերեն Մովսէս և Ղազար՝ յանուն Կորեան: Այս այսպէս լինելով, ուրեմն կը մնայ ընդունել իբր հարազատ և ամբողջական գործ Կորեան 1833ի հրատարակուած ընդարձակ Մեսրովբայ Պատմութիւնը:

Ցիրաւի, այս բանիս յայտնի ապացոյց պէտք ենք համարել, նախ, Հայկ. Սոփերաց հտ. Բ, էջ 5. **Ս. Սահակայ և Մեսրովբայ Պատմութիւն** անանուն՝ բայց ոսկեգրիչ հեղինակի[1] վկայութիւնն, որ 'ի բազում

1. Բաց 'ի ընդհանուր համաձայնութենէ պատմական իրաց՝ կը գըտնուին 'ի բազում տեղիս համանման հատուածք բանից և բացատրու-

տեղիս յատուկ անուանց և պատմական դիպաց մասին (օրինակ իմն. Ս. Սահակայ և Մեսրովբայ կենաց, գործոց և մահուան և նշանագրոց գիւտին) վերոյիշեալ հրատարակութեան համաձայն պատմելով, կը յարէ յէջ 37, թէ « Եւ այսպիսի քաղաքավարութիւն նոցա, մանաւանդ թէ ևս առաւել քան զսոյն զոր գրեալ է 'ի նախա_ գրեալ Պատմութեան նոցա » : Այս վկայութիւնս՝ Կորեան ընդարձակ պատմութեան միայն 'ի դէպ կու գայ, ուր ստուգիւ մանրամասն պարագաներով կը յիշուին իրք, և ոչ բնաւ համառօտին : Բ. Ապացոյց կը համարիմ ես այսմ՝ Կորեան, յէջ 28, հետևեալ խօսքերն . « Եւ առ 'ի մանրակրկիւ առնելոյ զխորհրդականսն և ղարմանալոյ զհանճա_ րոյն ասացաք » : Գ. Յէջ 21, կ'ըսէ, թէ հրամանաւ Սահակայ 'ի Բիւզանդիոն գացող աշակերտաց առաջինն՝ էր Ղևոնդ; երկրորդն՝ Եզնիկ և երրորդն՝ Կորիւն» : Հինգ օրինակներ՝ միաբան « դիմորոշ յօդիւ կը գրեն վերջին անունս . իսկ համառօտին մէջ , ընդհակառակն, առանց դիմորոշի : Արդ, այս երևոյթս յայտնի նշան է , թէ ընդարձակին հեղինակն էր Կորիւն , և կ'ուզէ ըսել . « Երրորդն՝ ես Կորիւն » : Յէջ 16, ուր Վրաց վերայ կը խօսուի, գրուած է այսպէս . « Որոց և ես անարժանս եղեալ 'ի նոյն եպիսկոպոսութեան վիճակ ». և իրօք Հայոց աւանդութիւն է, թէ Կորիւն կարգեալ էր եպիսկոպոս Վրաց, յետ Սամուէլի . այս բանս ևս չիք 'ի համառօտն : Դ. Յէջ 1. Յառաջաբանի՝ հեղինակն ինք զինքը աշակերտ կը կոչէ վարդապետին Ս. Մեսրովբայ, որուն կենսագրութեանը ձեռք կը զարնէ . և յէջ 28 'ի վերջաբանին , զՍ. Մեսրովբ հայր իւր կամ վարդապետ կը կոչէ, յասելն . « Ոչ եթէ սուտապատում ճարտարախօս եղեալ զհօրն ի_ մոյ պատմեցաք » : Համառօտին մէջ սոյն բացատրութիւնները կը պակսին, որովհետև նորա հեղինակն համառօտող էր և ոչ գրող : Ընդարձակ պատմութեան Յառաջաբանի մէջ՝ հեղինակը կը ծանուցանէ, թէ Յովսէփ կաթողիկոսի հրաւիրանօք կը գրէ Մեսրովբայ պատմութիւնն, և 'ի քաջալերութիւն աշակերտակցացն : Այս բանս գըլխովին պատմական է , ինչպէս և յէջ 28 քաջ կը տեսնուի . սակայն համառօտին մէջ , այս կարևոր տեղեկութիւնս չկայ : Յէջ 6, այսպէս

թիւնք՝ ընդ այս և ընդ պատմութիւն Խորենացւոյ, յորոց երկու միայն բաւական կը համարիմ մէջ բերել աստ: Յէջ 8, կ'ըսուի վասն Սահակայ և Մեսրովբայ, թէ «Վասն զի ուր ոչ լինէին մերձ սուրբն Սահակ և Մեսրովբ, ոչ կարէին իմանալ զվերծանութիւն գրոց սրբոց, և զկնեալ լինէին 'ի լուսաւոր վարդապետութենէն » և այլն: Նոյնը կ'ըսուի փոքր ինչ տարբերութեամբ բանից և առ Մովսիսի, Գ. գլ. Խէ: Յէջ 7. Ս. Սահակայ 'ի Տիզբոն առ թագաւորն Պարսից երթին և մեծարուելուն համար կ'ըսուի. «Եւ մեծարի 'ի նմանէ յաւէտ վեհագոյն պատուով. վասն զի յարգոյ և պատուական ցուցանէ զծառայս իւր Աստուած առաջի անհաւատից»: Նոյնը կը գտնենք ճիշդ Խորենացւոյ պատմութեան Գ. ԾԱ. գըլխուն մէջ: Այս գրութեանս լեզուն իսկ ոսկեդարեան է: Ուստի կարելի է հետևցնել, թէ այս տեղերս կամ 'ի Մովսիսէ փոխ առնուած են և կամ ուղղակի Մովսէս եղած է հեղինակ այս պատմութեանս: Վերջին ենթադրութիւնս եթէ ստուգուի, այնուհետև պէտք է ըսել, թէ երկասիրութիւնս եղած է աղբիւր Ղազարայ և Մովսիսի հասարակ տեղեաց, զոր Նորայր՝ անստուգութեան մէջ թողած է:

և յայլ տեղիս, հայրն գիւտի նշանագրոց՝ միշտ իւր հնագոյն անուանակոչութեամբը **Մաշտոց** կը գրուի. իսկ համառօտին մէջ, ընդհակառակն, միշտ **Մեսրովբ** գրուած է, առոր պատուանուամբը: Ցէջ 14, բարեպաշտ իշխանն Գողթնեաց՝ երկիցս Շաբաթ և Շամբայթ կը կոչուի. համառօտին մէջ՝ Շաբիթ գրուած է: Երկու ձևս իսկ, մի և նոյն անուան, կը գտնենք առ Մովսիսի, յէջս 102, 105 և 475: Նշանագրոց գիւտին և Մեսրովբայ պատմութեան հետ՝ սերտիւ կապուած են **Հաբէլ**, **Վահրիճ**, **Բաբիլաս**, **Ակակիոս**, և **Գնիթայ**, որք կը յիշուին յընդարձակն, յէջ 8 և 9. այսպէս նաև Սիւնեաց իշխանին **Վաղինակայ**, և եպիսկոպոսին **Անանիայ** անուանքն՝ որ յէջ 14. ինչպէս Վրաց նշանագրոց գիւտի պատմութեան մէջ այլ՝ **Բակուրայ** թագաւորին, **Մովսէս** եպիսկոպոսին և **Ջաղայ** թարգմանին, որք կը յիշուին յէջն 15. այսպէս և Աղուանից նշանագրոց պատմութեան մէջ՝ **Արսուաղ** թագաւորին, **Մուշեղ** եպիսկոպոսին և **Բենիամին** քահանայի անուանքն՝ որ յէջ 19: Ի քարոզութեան անդ զԱւետարանն Հայոց, Վրաց և Աղուանից սահմանաց վերայ՝ Ս. Մեսրովբայ հետ անմոռաց են նաև նորա գործակցաց **Տիրայրի** Խորձենացւոյ, **Մուշէի** Տարօնացւոյ, **Ենովքայ**, **Դանանայ**, **Թադիկայ** կամ Թաղիկայ, **Յովսէփայ**, **Յովհաննու** (Մանդակունեցուն) և **Գիւտայ** անուանքը, զորս կը յիշէ ընդարձակ պատմութիւնը՝ յէջս 14, 18 և 27: Արդ, այս անուանց կը պակասին համառօտին մէջ, հանդերձ յարակից պատմութեամբք և պարագաներով:

Ե. Մ. Խորենացւոյ պատմութեան Գ. գրոց ԽԷ–ԿԷ գլուխներն՝ եթէ բաղդատենք Կորեան այդ ընդարձակ պատմութեան հետ, գեղեցիկ համաձայնութիւնն յայտնապէս կը տեսնուի բոլոր այն պատմական անձանց և դիպաց մասին: Ի գլուխն ԾԲ. համաձայն Կորեան 8 և 9 էջերուն կը ծանուցանէ Վռամշապհոյ երթն յԱսորիս և զհանդիպումն Ս. Մեսրովբայ, դանիէլեան նշանագրոց գիւտը, նոցա ուսուցանելն և անյաջող ելքը: ԾԳ. գլխում՝ ուր կը պատմէ Վրաց և Աղուանից նշանագրոց գիւտը, ճիշդ կը համաձայնի Կորեան 15 էջի աւանդածին. յերկոսին միանգամայն կը յիշուի Ս. Մեսրովբայ երթն յաշխարհն Սիւնեաց, և նոցա իշխանին Վասակայ ձեռնտուութիւնը, զոր չէ մարթ գտնել համառօտին մէջ: Կ. գլխուն մէջ՝ համաձայն 19 և 20 էջից Կորեան, կը պատմէ զկրկին առաքելութիւն Ս. Մեսրովբայ յաշխարհս Հայոց, Վրաց և Աղուանից. մի՝ վասն վարդապետութեան նշանագրոց. միւս ևս՝ վասն քարոզութեան Աւետարանին. ուր կը յիշուին Գարդմանաց իշխանը՝ **Խուրս**, թագաւորն Վրաց՝ **Արճիլ** և իշխանն Տաշրաց՝ **Աշուշայ**: Իսկ համառօտին մէջ, ընդ հակառակն, մի միայն առաքելութիւն կը յիշուի: ԾԸ. գլխուն մէջ կը պատմէ Մովսէս Վռամշապհոյ որդւոյն՝ Արտաշրի կամ Արտաշէսի թագաւորելն, որ համաձայն է Կորեան 18 էջին, ուր կ՚ըսուի, թէ Մեսրովբ՝ յետ երկրորդ առաքելութեան և գալստեան 'ի Վաղարշապատ, հանդիպեցաւ կաթողիկոսին Սահակայ և թագաւորին Հայոց **Արտաշէսի**: Եւ իրօք այս ժամանակս վախճանած էր Վռամշապուհ և նորա որդին Արտաշէս կը թագաւորէր: ԿԷ. գլխում կը յիշէ Ս. Սահակայ թաղ-

*ման հանդիսին մէջ՝ զոհկինն Մամիկոնէից՝* **Դուրգէն**, *որ էր կին Վար֊ դանայ սպարապետին. սոյնը կը գտնենք և առ Կորեան, էջ 25: Այս֊ պէս են ԿԳ, ԿԴ, ԿԵ և ԿՁ գլուխներն՝ յորս կը պատմուին, համա֊ ձայն Կորեան, նախարարաց չար միաբանութիւնն, Արտաշիսի և Սա֊ հակայ անկումն, Սուրմակայ, Շմուէլի և Բրքիշոյի, անարժանութեամբ կաթողիկոսական գահուն վերայ բազմիլն:*

*Արդ, Կորեան երկասիրութեան և Մովսիսի՝ Հայոց պատմութեան մէջ կատարեալ համաձայնութիւնը լինելով յայտնի և անժխտելի մի ճշմարտութիւն, այժմ կը մնայ ըսել, թէ կամ այդ Ս. Մեսրովբայ ընդարձակ պատմութիւնն՝ ստուգիւ Կորեան է, և Մ. Խորենացի անտի փոխ առած է. և կամ ընդհակառակն ըսել, թէ յետնագոյն ոմն՝ քա֊ ղելով այդ տեղեկութիւններն և պատմական անուանքն ՚ի Մովսիսէ, և ներմուծելով Կորեան համառօտ պատմութեան մէջ, ընդարձակը ձևացուցել է: Սակայն Մ. Խորենացի ինքնին՝ այդ վերջին ենթա֊ դրութեան հերքումը կու տայ իւր Գ. գրոց ԿԷ. գլխոյն մէջ, ուր Ս. Մես֊ րովբայ նշխարաց փոխադրութեան վերայ խօսելով՝ այսպէս կ՚ըսէ. «* **Որպէս լուսոյ ՚ի հաստատութեան** *արանց, եթէ եկաց լոյս շողապէս ընդ առօտ նշան խաչին ՚ի վերայ տանն, ուր եւանեկին զհոգին աւան֊ դեաց»: Արդ, ո՞ այլ ոք հաւատարիմ քան զսքանչելին Կորիւն, որ ընդարձակ պատմութեան 27 իջում՝նոյնը կը գրէ, տարբեր բա֊ նիւք. «Եւ մինչդեռ ձեռք սրբոյն ընդ երկինս կարկառեալ էին,* **տե֊ սիլ տեսանելի խաչանման լուսաւոր շողաւոր** *ձև երևէր ՚ի վերայ ապա֊ րանիցն, յորում երանելին վախճանէր»: Բաց աստի՝ ուրիշ հա֊ տուածներ ևս կը գտնենք առ Մովսիսի, որոնք Կորեանէն փոխ առ֊ նուած են. օրինակ իմն, ԿԱ. գլխուն վերջի երկու պարբերութիւնքը, ուր թարգմանիչք՝ Բիւզանդիոնէն կը վերադառնան ՚ի Հայս՝ բերելով զկանոնս Ս. ժողովոյն Նիկիոյ և զՍ. Գիրս: Արդ, նոյն համաձայ֊ նութիւնը կը տեսնենք, դարձեալ, այդ ընդարձակ պատմութեան և ընդ պատմագրութեան Ղազարայ. ուրեմն նորա հարազատութիւնն՝ այլ ևս տարակոյս չի վերցներ, բայց միայն ուրեք ուրեք ընդօրինակո֊ ղաց ձեռքով բառեր խանգարուած են, և հաւանական է որ Կոռնո֊ սի գիշատիչ ժանիքներէն՝ աւելի մի քանի կարևոր տեղեաց և մասին ինչ յապաւումնք տեղի ունեցած լինին անդ, քան թէ նոր յաւե֊ լուածներ:*

*Այս ապահով և հաստատուն հիման վերայ յեցած՝ գանք այժմ լուծելու բանաքաղութեան խնդիրն, յորմէ կը կախուի Ագաթանգեղ֊ ղայ Բ. Գրոց արժէքն: Արդ, դիտելու ենք, որ թէ Ագաթանգեղայ գրոց հեղինակն և թէ Կորիւն՝ իրենց գործոց Յառաջաբաններու մէջ կը ծանուցանեն, թէ ՚ի բարձրագոյն հրամանաց շարժեալ եկին ՚ի մատենագրել արանց առաքինեաց պատմութիւնն, ըստ բացատրու֊ թեան Կորեան՝ «* **կամակարգոյն** *նաւելով զհամատարած ալեօքն* **վարդապետական ծովուն** *». իսկ ըստ կենսագրին Գրիգորի՝ «* **մարմ֊ նոյած ծովուն անցեալ էրաց** *մատենագրել յայտնական պատմութիւն»: Երկոքեան իսկ՝ իրենց վերջաբանութեանց մէջ կը յայտարարեն, թէ «Ոչ եթէ ՚ի հին համբաւուց տեղեկացեալ» գրեցին իրենց պատմա֊*

գրութիւնքը, «այլ ոլոց անկանատես իսկ եղեն կերպարանաց և առընթերակայ հոգևոր գործոցն»:

Կարելի էր և դիւրահասկանալի, որ երկու հեղինակութեանց ըսածն եւ ճշմարիտ լինէր, եթէ իրարմէ ամենևին անկախ գրութիւններ լինէին. բայց որովհետև վերոյիշեալ բազմաթիւ տեղեաց նմանութիւնը՝ բառ առ բառ է և անժխտելի. ուրեմն պէտք է որ միոյն ըսածը կասկածելի լինի: Իսկ որովհետև Կորեան ճշմարտախօսութիւնը՝ բոլոր գրութեանը մէջ կ'արտափայլէ, այնու իսկ, զի նորա երկասիրութեան մէջ վերոյիշեալ հատուածները՝ միայօդ կ'ընթանան, և դէպք՝ առանց ինչ կրկնութեան և հակասութեան զիրար կ'ընդգրկեն: Երկրորդ, նորա պատմութեան նիւթը, դիւցազունք, ժամանակն և սպարագայքը՝ նոյն դարուն ուրիշ հեղինակներէն իսկ մեզի ծանօթ են և, ինչպէս տեսանք քիչ առաջ, նոցա հետ լաւ կը միաբանին. ուրեմն չիցէ՞ ուղիղ աստի եզրակացնել, թէ Ագաթանգեղայ գրոց հեղինակն է ստողը: Այս հետևութիւնս՝ է ճշգրիտ լուսանկար Գուտշմիդի կարծեաց, և ստուգիւ անվրէպ համարելու էինք, եթէ մի այլ մեծագոյն և բազմակնճիռն գաղտնիք՝ այդ նմանունայն հատուածոց մէջ գոյութիւն չունենար: Ուստի ես իրագէտ և հետամուտ գոլով այդ գաղտնեացը՝ այլ ազգ կը դատեմ իրաց վիճակն: Արդ, ուշի ուշով քննելով այդ հատուածներն, երեք բաներ ակնյայտնի կը տեսնուին յայնս, Ա. Կան բաներ՝ որք Կորեան պատմութեան դիւցազանց միայն կը յարմարին: Բ. Կան բաներ, որք Ագաթանգեղայ գրոց դիւցազանց և նոցա ժամանակին միայն քաջ կը պատշաճին: Գ. Կան դարձեալ ուրիշ բաներ, որոնք թէ Տրդատայ, Գրիգորի և նոցա ժամանակ հանդիպած իրաց համար կարեն հաս-կացուիլ և թէ միանգամայն Մեսրովբայ, Սահակայ և առ նոքօք կատարուած իրաց: Մէջ բերենք առ այս հետևեալ օրինակները: Ցէջ 637 առ Ագաթանգեղ՝ Լուսաւորչայ համար կ'ըսուի. «Սա եկեալ երևեալ հայերէնախօս փոսս (τῇ τῶν Ἀρμενίων γλώττῃ). Նոյնը կ'ըսուի նոյնպէս և առ Կորեան, յէջ 13, սրբոցն Սահակայ և Մեսրովբայ համար, բայց յաւելուածով՝ «Ի ձեռն երկուց հաւատարմելոց»: Արդ, այս բանս առ Կորեան՝ շատ լաւ կը պատշաճի, զի խօսքը հայերէն նշանագրոց գիւտի և նորա վարդապետութեան վերայ է. իսկ առ Ագաթանգեղ տարակուսելի, որովհետև 'ի ստնդիական հասակէն յոյն ընտանեաց մէջ սնած և ուսած Գրիգորը՝ դըժուար է, որ յանկարծակի հայերէն քարոզած լինէր: Առ Կորեան, յէջ 11, կ'ըսուի, թէ երբ Մեսրովբ դարձ արար 'ի Բիւզանդիոնէ՝ թագաւորն և կաթողիկոսն ընդ առաջ գնացին նմա. Նոյնը կ'ըսուի և առ Ագաթանգեղ՝ վասն Գրիգորի, որուն կը դիմաւորեն թագաւորն և մեծամեծք: Բայց վերջինս՝ որքան որ դիւրահասկանալի և բնական է, նկատմամբ խոստովանող վկային և մեծի քահանայապետին. նոյնքան եւ առաջինը՝ չափազանց և անբնական կը տեսնուի, սոսկ վարդապետի մի համար: Այսպէս, դարձեալ, առ Կորեան, յէջ 13, հետևեալ բացատրութիւնը. «Քանզի յԱյրարատեան գաւառին 'ի կայս թագաւորացն և քահանայապետաց, բղխեցին Հայոց շնորհք

պատուիրանացն Աստուծոյ », կը գտնենք նոյնպէս և առ Ագաթանգեղ, բայց բացատրութեամբ՝ [illegible] բառին. զի Այրարատ գաւառը՝ Գրիգորէն առաջ ուրիշ կաթողիկոսաց կայան չեղաւ երբեք: Արդ, այս աւելի կը պատշաճի Տրդատայ և Գրիգորի ձեռքով քրիստոնէութեան 'ի Հայս մուտք գտնելուն, քան մեսրովբեան նշանագրոց գիւտին. թէպէտև կ'արդարանայ Կորիւն « քահանայապետաց » յաւելուածովը: Իսկ երրորդ դիտողութեան օրինակ մ'է ասացեալն առ Ագաթանգեղ, յէջ 583. « Առաւել փաշակերտութիւն Նորագիւտ վարդապետութեանն խնդրէին ». սոյնը՝ կայ և առ Կորեան, և կարի վայելչապէս, զի նորագիւտ վարդապետութեամբ կը հասկացուին թէ Աւետարանի նորամուտ վարդապետութիւնն 'ի Հայս և թէ նշանագրոց ուսումը: Այսպէս նաև « Հրաժարեալ՝ շնորհագիւտ դպրութեանցն » բացատրութեամբ, որ կը գտնուի Ագաթանգեղայ 606 իջում և Կորեան յէջ 10, կը հասկացուին թէ Յոյն. Կապադովկացի եւ Աթանագինեայ ընծայուած նշխարքն, և թէ Թէոդոս կայսեր՝ առ Ս. Մեսրովբ տուած պարգևներն և հրամանը:

Արդ, այս և այսպիսի դեռ ուրիշ պարագայներ դիտելով՝ չեմ տարակուսիր բնաւ եզրակացնելու, թէ Ագաթանգեղայ գրոց մէջ արդէն կը գտնուէին բոլոր վերյիշեալ հատուածներն՝ որոց մասին է խնդիրս, բազում ամօք իսկ յառաջ քան զգրութիւն Պատմութեան Ս. Մեսրովբայ 'ի ձեռն Կորեան. և թէ Կորիւն անոնի առաւ ապա, ոչ իբրև օտարին ինչ, այլ իբրև իւր ինչ սեփական և ներմուծեց իւր երկասիրութեան մէջ, մասնաւոր իմն նպատակաւ: Եւ յիրաւի, այսպիսի մի եղելութեան՝ կան բազմաթիւ ապացոյցներ, բայց ես հետևեալները բաւական կը համարիմ մէջ բերել: Ա. Այն ժամանակ միայն կարելի էր Ագաթանգեղայ գրոց հեղինակը՝ բանաքաղ համարել Կորեան, եթէ ստուգիւ Կորիւն՝ ինչպէս ու իւր վերջաբանի մէջ կը խոստանայ՝ նոյնպէս նա առանց ուրիշէն օգտուելու և յինքենէ յօրինած լինէր Ս. Մեսրովբայ սոյն պատմութիւնը. բայց որովհետև մենք կը տեսնենք յայտնապէս, որ ինչպէս յԱգաթանգեղայ՝ այսպէս նա 'ի Փ. Բուզանդացւոյ քաղուածոյ հատուածներ [1] կը գտնուին անդ՝ բառ առ բառ. ուրեմն պէտք է կամ զՓաւստոս նա բանաքաղ համարել Կորեան և կամ ըսել, թէ Կորիւն՝ ինչպէս է բանաքաղ Փաւստոսի՝ նոյնպէս նա եղած է Ագաթանգեղայ գրոց: Բ. Ինչպէս առ Կորեան՝ այսպէս նաև առ Փաւստոսի կը գտնուին տեղիք բազումք, Գրիգորի վերաբերեալ իրաց և նորա յաջորդաց մասին, որոնք 'ի բազում ուրեք գրեթէ բառ առ բառ, և այլուր մանր պա-

1. Արդարև Կորեան 2, 3, 4 և 5 էջերում՝ աստուածարեալ և առաքինի արանց վկայութեան հատուածները՝ բաւական քաղուածոյք են Փաւստոսի Դ Դպր. Դ գլխոյն, յէջ 77 և 78, եղած պարբերութեանց: Եւ յէջ 11 այս հատուածս. « Եւ ոչ մեծն Մովսէս զուարճանայր յէջսն սինէական լերին » և այլն, փոխ առնուած է Փաւստոսի Գ Դպր. Ժ գլխէն. և զասացեալն վասն Ս. Յակ. Մծբնացւոյ և վասն հատորի նոյեան տապանին՝ յարմարցուցել է Կորիւն՝ Ս. Մեսրովբայ և մեսրովբեան նշանագրոց՝ զորս եբեր 'ի Հայս:

րագաներով, Ագաթանգեղոսէն առնուած են: Թողլով բոլոր այս տեղեաց բաղդատութիւնն՝ այլում տեղւոյ, զայս միայն կը ծանուցանեմ աստ, թէ այս իրողութիւնս՝ Ագաթանգեղայ գրոց առաջնութեան մասին եղած ամէն տարակոյս 'ի բաց կը բառնայ. որովհետև Բուզանդացին՝ շատ անգամ կից ընդ յիշատակութեանց 'ի մէջ բերելոց՝ կը ծանուցանէ մեզ և զնախագոյութիւն աղբերաց նոցին, լռելով զանուն հեղինակին: Բ. Այն տեղիքը [1] զորս 'ի մէջ կը բերէ Բուզանդ, յայտնապէս նոյն են ընդ Ագաթանգեղայ տեղեացն, բայց շարադրութեամբ [2] կը տարբերին 'ի սոցանէ, որ յայտնի ապացոյց է, ըստ իս, թէ Ագաթանգեղայ յոյն բնագիրը միայն կը ճանչնար Բուզանդացին, և թէ իւր գրուածքը յունարէն գրեց: Իսկ Կորիւն՝ յերկաքանչիւրէն իսկ՝ հայերէն թարգմանութեամբ օգտուած է, որոնք, հաւանօրէն, աքանչելանուն հեղինակիս ուղղութեանը ներքև՝ բայց տարբեր թարգմանիչներու ձեռքով եղած պէտք է լինին: Ցիրավի, Ագաթանգեղայ թարգմանութիւնն՝ իւր ոճոյ առանձնայատկութեամբք հանդերձ՝ ունի ղարձեալ բազում ինչ նմանութիւնս բանից, ոճերու և ձևոց, որոնք հասարակ են Փաւստոսի և Կորեան: Այս բաներուս քննութիւնն՝ Ագաթանգեղոսի թարգմանութեան վերայ խօսած ժամանակ կը յուսամ բարգաւաճել:

Գ. Կորեան և Ագաթանգեղայ վերոյիշեալ ամբողջական հատուածներէն դուրս՝ կը տեսնուին դարձեալ ստէպ ստէպ կէս տողով, երբեմն միատող և երբեմն երկտողեան բազմաթիւ հատուածներ և բացատրութիւններ ևս, զորս չէ մարթ դիտմամբ՝ նոցա միոյն 'ի միւսոյ անտի քաղուած համարել: Այս երևոյթս ես ուղղակի եղծիչ կը համարիմ Գուտշմիդի այն կարծեացը, թէ Կորիւնէն փոխառնուած հատուածներն՝ Ագաթանգեղայ գրոց մէջ՝ Գրիգորի կենսագրութեան հնագոյն հատուածներուն մէջ ներմուծուած և ընդհատուած են: Արդ, այս պարագայիս մէջ, ընդհակառակն, հնագոյն կարծուած հատուածքն անգամ՝ կը պարունակեն նորագոյն կարծուածներուն բացատրութիւններն. և մերթ այլ նորագոյները՝ կ'ընծայեն մեզ ինչ ինչ 'ի հնագունից անտի. ուրեմն պէտք է մի այլ բնական և բացատրիչ պատճառ որոնել այս երևոյթիս: Դ. Կորիւն

1. Մասնաւորապէս մեծին Ներսիսի վարուց և գործոց մասին՝ զորս համանման գործոց նախահօրն իւրոյ մեծի լուսաւորչին կը նկարագրէ:
2. Օրինակ մի միայն մէջ բերենք աստ. Գ. Դպր. Գ. գլխոյն մէջ՝ Վրթանէսի համար կ'ըսէ. « Սա երթեալ կատարէր անդ (Յաշտիշատ Տարօնոյ) ըստ հանապազ սովորութեան՝ զՏեառն զխաչական զփրկութեան զպատարագն գոհութեան, զհաղորդութիւն չարչարանաց յիշատակի, զկենդանարարն և զազատիչն զմարմին և զարիւն Աստուածորդւոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի »: Նոյնը կ'ըսուի և առ Ագաթանգեղ, յէջ 610, վասն Գրիգորի այսպէս. « Մատուցանէր զպատարագն փրկութեան, և բաշխէր զմարմին և զարիւն կենարարին Քրիստոսի ». և յէջ 622. « Եւ անդ մատուցանէր զօրհնութեան պատարագն, հաղորդէր զամենեսեան 'ի խորհուրդն Սրբութեան. բաշխէր ամենեցուն զսուրբ մարմին և զպատուական արիւնն ամենափրկչին Քրիստոսի, զկենդանարարն և զկեցուցիչն ամենայն մարդկան և զարարիչն և զաշխարհագործն, զաստուածատուր շնորհն առ ամենեսեան »;

գրեց զպատմութիւն Ս. Մեսրովբայ յամի Տեառն 445–450, յետ 10 ամաց մահուան վարդապետին իւրոյ. իսկ ագաթանգեղոսեան գրոց թարգմանութիւնն և խմբագրութիւնն եղաւ, ընդհակառակն, նշանագրոց գիւտէն անմիջապէս քիչ տարիներ յետոյ և առ կենդանութեամբ Ս. Մեսրովբայ և Սահակայ: Եւ յիրաւի, այս բանիս յայտնի ապացոյց կը համարիմ ես, նախ՝ այս երանաշնորհ հարցս պաշտօնական թղթերն [1], ուղղեալ առ սուրբ եպիսկոպոսունս Յունաց՝ Պրոկղ և Ակակիոս, յորս Գրիգորի կենսագրութենէն վարդապետական տեղիք [2] մէջ բերուած են: Բ. Ցայլում վաւերական թղթի [3] Ս. Սահակայ կը գտնուին դարձեալ Ագաթանգեղայ գրոց 610 և 624 էջերէն կրկին հատուածներ, գրեթէ բառ առ բառ: Գ. Մ. Խորենացւոյ՝ Հռիփսիմեանց **Ներբողին** մէջ ևս, զոր գրեց առ կենդանութեամբ Ս. Մեսրովբայ, կը գտնենք 'ի գրոց աստի Ագաթանգեղայ տեղիս ոչ սակաւս, զորս յայլում վայրի առիթ պիտի ունենամ ածել 'ի համեմատութիւն:

Արդ, եթէ ստուգիւ Կորիւն է բանաքաղ, ինչպէս որ ըստ բաւականին կը հաստատեն սոյն ընծայութիւնքս, այժմ սոյն հարցս ընդառաջ կ'ելլէ մեզ. Ի՞նչ կերպով արդեօք և ինչպիսի՞ պարագայից մէջ եղաւ Կորիւն բանաքաղ վերոյգրեալ հատուածոց: Իցէ՞ մարթ Ագաթանգեղայ գրոց հանապազորդ ընթերցման կամ ծառայական ընմանութեանն արգասիք համարել զայնս: Այս բանս անկարելի չէ ըստ ինքեան, սակայն իրք այլազգ ամենևին տեղի ունեցած են, զորս Գուտշմիդ բնաւ չանդրադարձաւ և չանդրադարձոյց: Ուստի այս խորհրդաւոր պատճառս, որ միայն կարէ բնական կերպով լուծումն տալ բանաքաղութեան բազմակնճիռն խնդրոյն և պարզել իրաց վիճակն, ըստ իմ կարծեաց, է հետևեալն. **Կոչեցեալ է նա ընտրն խմբագրող** [4] և **գլխաւոր Թարգմանիչ Ագաթանգեղեան գրոց**, ունելով ինքեան գործակից զհռչակեալն 'ի գիր և 'ի բան զաշակերտակիցն իւր զՑզնիկ Կողբացի: Երկրորդ, **'ի խմբագրելն զԳիրս Ագաթանգեղայ**՝ նա **յօրինեց զՅառաջաբանն Նորին և զՎերջաբանն**, համանօրէն **նա ընտրն Թարգմանեց զԲ· Գիրքն Ագաթանգեղայ. ուստի վերոյիշեալ հատուածները**՝ կամ **Թարգմանաբար ընդարձակեց և յետ վերայ դրաւ**, և կամ **Բոլորովին իւրն**

1. Սոփ. հայկ. հտ. Բ, էջ 137:

2. Ցիրաւի, յէջ 145 վերոյիշեալ Սոփերաց հատորին կ'ըսուի. « Եւ որ 'ի փայտէն գայթակղութիւն եղև 'ի դրախտին, 'ի մէջ միջնաժողով ժողովրդոց զխաչն կանգնեաց փայտ առ փայտ և ծառ առ ծառ, և զպըտուղն կենաց փոխանակ ապականացու պտղոյն զկենդանաբեր փայտէն կախեաց, կամօք կամակարութեամբ և ոչ ակամայ, կամօք զանձն մատնեաց, ինքն զինքն եդ, և անդէն զինքն ընկալաւ, զսուրբ մարմինն և զպատուական արիւնն պաշար կենաց մեզ, որք ճշմարտութեամբ հաւատարեցաք, յաստիճանաւոր ճանապարհն որ յերկինսն է՝ սիրելեաց իւրոց պատրաստեաց: Այս հատուածս ընդլայնուած է Ագաթանգեղայ 71 և 72 էջերուն և ուրեք բառ առ բառ:

3. Սոփ. հայկ. հտ. Բ. յէջս 127, 128, 129 և 130:

4. Այս բանս Ագաթանգեղայ գրոց խմբագրութեան և թարգմանութեան մասին նուիրած գլխոյն մէջ պիտի բարգաւաճեմ և պարզեմ:

ճրեց և Ներմածից անդ, հաստատելով Գրիգորի կենսագրութեան այլ և այլ անձնաւորութեանց և Հայաստանի կենդանի աւանդութեանց վերայ։ Սակայն յետ ամաց ինչ անցելոց, երբ Ս. Մեսրովբայ պատմութիւնն սկսաւ գրել, այնու բնական կերպով՝ որ չէ հազուագիւտ ինչ և առ այլ մատենագիրս և թարգմանիչս, մի և նոյն տեղիքն, ոճերն, և բացատրութիւններն և լեզուն, զորս 'ի վար արկեալ էր կանխաւ Ագաթանգեղոսի թարգմանութեան մէջ, մտցուց նաև 'ի Պատմութեան անդ իւրում:

Իսկ բուն պատճառն՝ որով Կորիւն առաւ վերստին յԱգաթանգեղայ գրքէն իւր նախագրեալ հատուածներն և ներմուծեց Ս. Մեսրովբայ պատմութեանը մէջ, եղած են՝ մէկ կողմէն այն համանման[1] դէպքն և կիրք, այսինքն է, Աւետարանի քարոզութիւնն և հեթանոսաղանդ ժողովրդեան դիմաց գործուած սքանչելիքն, որք վերստին կատարուեցան յաւուրս Ս. Մեսրովբայ և 'ի ձեռն սրբոյն Մեսրովբայ՝ Հայաստանի սահմաններուն վերայ, յետ 70 ամաց մեծի Լուսաւորչին: Իսկ միւս կողմէն այլ՝ երկրորդ լուսաւորչին մերոյ Ս. Մեսրովբայ առաքելաշնորհ կենցաղն և զարմանագործութիւններն՝ յաշխարհս Հայոց, Վրաց և Աղուանից: Իսկ որովհետև նմանագործ իրողութիւնք՝ նոյնանման նկարագիրս ևս կը պահանջեն. ուստի Ս. Մեսրովբայ կենաց և գործոց հեղինակն՝ իրեն մասնաւոր նպատակ դրած է Հայոց դպրութեան հեղինակին և երկրորդ լուսաւորչին, նորա լուսաւոր վարդապետութեանն և հրեշտակակրօն վարուց ճշգրիտ զուգակշիռն[2] ընել՝ ընդ վարուց և գործոց առաջին Լուսաւորչին Գրիգորի, ինչպէս ըրաւ Փաւստոս՝[3] բաղդատութեամբ վարուց և գործոց մեծին Ներսիսի: Սակայն հանդերձ այսու պէտք է ըսել, թէ

1. Մ. Խորենացին իսկ՝ իւրք Կորեան բանաքաղ լինելու պատճառը կու տայ մեզ՝ Գ. գլ. Խէ. զի իբրև ականատես և ականջալուր պատմելով Ս. Մեսրովբայ քարոզութիւնն 'ի Գողթան գաւառի, Տրդատայ ժամանակէն հոն մնացած հեթանոսական աղանդին բարձումն և նորա ճգնողական վարքը, կը յաւելու անդէն. «Ուր նշանք աստուածայինք լինէին՝ որպէս առ սրբովն Գրիգորիւ. հալածական լեալ դևք մարմնաւոր տեսլեամբ՝ անկանէին 'ի կողմանս Մարաց»: Ուղղակի Կորիւնէն առած է Մովսէս այս տեղիս, բայց կը յիշէ առ նմին և զԱգաթանգեղայն:

2. Արդարև, այս բանս Կորիւն ինքնին կը վկայէ յերկասիրութեան իւրում կամ Յառաջաբանի անդ Պատմութեան Մեսրովբայ, յասելն այսպէս. «Վասն նորին լուսաւոր վարդապետութեան և հրեշտակաբար կրօնիցն առաքինութեան զմտաւ ածելով զյիշատակարանս առանձինն մատենանշան ծաղկեցուցանել»: Յէջ 2. «Ոչ 'ի մէնջ արուեստակեալ՝ մերոյն կարծեօք վիճաբանելով, այլ յօրինակացն տուելոց զընդդիմակացն բարձրացուցանել»: Եւ յէջ 11, Մովսիսի սինէական լեռնէն պատգամաբեր իջումը՝ Ս. Մեսրովբայ մերձեցնելով կ'ըսէ. «Իսկ այսր երանելւոյս՝ վասն որոյ ճառեալքս յարդարին»: Եւ հուսկ 'ի վերջաբանի անդ որոշակի կ'ըսէ. «Եւ 'ի նշանադիմակացն քաղելով զհամատուրսն կարգեցաք, որք ոչ միայն մեզ, այլ և որ զմատեանս ընթեռնուն յայտնի է»:

3. Զի Դ. Դպրութեան Դ. գլխոյն մէջ Ս. Ներսիսի ընտրութեան, – երթին 'ի Կեսարիա, – ձեռնադրութեան, – փառաւոր դարձին և ընդունելութեան, – եկեղեցական բարեկարգութեանց, – յունարէն և ասորի

ինչպէս Փաւստոսի զուգակշիռ տեղեաց մէջ՝ այսպէս նաև առ Կորեամ՝ ուրոյն առանձին բնաղրոշմն պահուած է միշտ անկախ յԱգաթանգեղայ, նկատմամբ անուանց, տեղեաց և անձանց. և ժամանակագրական և պատմական դէպք անգամ՝ երբեմն նոր յաւելուածներով և երբեմն այլ յապաւմամբ իբր 'ի փակագծի ոչամակուած են, որոնք միոյն կամ միւսներուն միայն յատուկ էին: Այսպէս ուրեմն իրաւամբ և առանց խարէութեան ստուեր մի ձգելու իւր անձին և գրութեան վերայ, կարէր քաջ՝ հաստատաբիմն և աքանչելին Կորիւն գոչել 'ի լուր ժամանակակցացն և ապագայից, թէ զանոնք « Ոչ եթէ 'ի հին համբաւուց տեղեկացեալ », այլ որոց ինքն ականատես եղած էր՝ գրեց. այնու զի պատմութիւնը բառից կամ շարադրութեան կերպարութեան մէջ կայացած չէ, այլ իրաց, դիպաց և անուանց և պարագայից աւանդութեանը մէջ, զորս նա տեսած էր և լսած: Իսկ ես կարեմ զայս դնել վախճան բանիցս, թէ Կորիւն՝ այսու եղանակաւ է բանաքաղ ինքեան, և թէ նա հաւասարապէս մեծ է 'ի գիրս Ագաթանգեղայ՝ որպէս 'ի Պատմութեան անդ Ս. Մեսրովբայ. իսկ ապագայք՝ ինչպէս կ'ուզեն թող դատեն զնա:

## ԳԼՈՒԽ Ժ.

Հնոյն Հայաստանի դից Պանթէոնն, ըստ աւանդութեան Գրոցն Ագաթանգեղայ և քննութիւն նոցա. — Զենոբայ աւանդութիւնն և նորա անվաւերականութիւնը. — Գուշնէ Արշամայ և նորա լուծումը. — Մարիամհարից ազանդն և նորա հնութիւնը. — Մ. Էջմին և նորա հայ դիցաբանութեան մատուցած ծառայութեան արժանիքը. — Եօթն բագինք մեհին Խորոշխա և անոնց մէջ պաշտուած չաստուածներն. — Քանանակ և պարսկաց մեհեց նոցա 'ի Հայս և պաշտամունք. — Դէք, Տօնք և ամիսք հասարակ Պարսից և Հայոց. — Եզրակացութիւն։

Նախընթաց գլխոյն մէջ խօսեցանք Գրիգորի քարոզութեան դըրուագի տեղեաց հարազատութեան մասին. այժմ անցնինք նորա

դպրոցաց հաստատութեան, – հրեշտակակրօն մենաստանից հիմնարկութեան, – աղքատաց և պարտատեարց մուրհակները պատռելուն, – նորա վարդապետութեան և զարմանաւորանչ հզնութեան նկարագիրքն համաձայն Ագաթանգեղայ կ'ընէ. հուսկ 'ի վախճանի՝ այսպիսի եղելութեան բուն պատճառն ևս կը դնէ անդ, յասելն. « Զի 'ի վարս կարգաց գնացից իւրոց՝ նմանեաց իւրոյ հօրն մեծին Գրիգորի, արդարև հայրաբարոյ զտանէր ամենաբարի, զնոյն հարցն նորոգեաց զառաքելաշնորհս. նոյն գործ երևեալ »: Արդ, եթէ բարեբաղդաբար գտնուէին Ագաթանգեղայ և Փաւստոսի պատմագրութեանց յոյն բնագրերն, ճիշդ մի և նոյն երևոյթը պիտի տեսնէինք նաև առ Բուզանդայ՝ այս հատուածոց մասին. ինչ որ կը տեսնենք առ Կորեամ՝ վերոյիշեալ տեղեաց նկատմամբ: Բայց որովհետև Փաւստոսի թարգմանիչը կամ ձեռք խառնող մը՝ այնպէս շռայլեր է իւր լեզուին և ժողովրդական բարբառոյն գանձերն, որով հեռացած է յԱգաթանգեղայ:

պատմական քննութեան և այլ դիպաց, 582 իջէն սկսեալ, ուր հայրն քրիստոսական հաւատոց և վերածնութեան Հայաստանեայց սուրբն Գրիգոր՝ կը խորհի զոյգ ընդ թագաւորին և իշխանաց, վասն « հասարակաց » բարւոյ և « խաղաղութեան » քակել, կործանել և, աւա՜ղ, անհետ առնել 'ի միջոյ զամենայն հրաշակերտ կոփածոյս և կռածոյս յունական ճարտարութեան, որոնք զաստուածս մարդակերպ ներկայացնելու համար՝ զգործս մարդկեղէն արուեստին աստուածացուցին: Անշուշտ ոմանց նորանշան թուեցաւ և կը թուի մյս եղանակ քարոզութեան և տարածման Աւետարանին 'ի Հայս, այնու զի սուրն և զինուորութիւնը միահետ կ'ընթանան ընդ խաղաղութիւնաբեր Աւետարանին: Այս բանին բարձրագոյն և կրօնական պատճառն Գրիգորի կենսագիրն՝ հետագայ խօսքերով եա ուզած է նշանակել՝ յասելն. « Զի մի ումեք լիցի խէթ և խութ այնուհետև ընդ ոտս անկանել և խափանել յազատութիւնն վերին »: Սակայն, ըստ իս, ոչ ինչ ընդհատ քան զայս՝ քաղաքական պատճառք եա մեղեցին զթագաւորն առ այն: Ցիրաւի, Վաղարշապատու արքունիքը միշտ հեւձեալ և բաժանեալ պիտի մնայր իւր քաղաքային և կրօնական կուսակցութեամբքը, զուցէ թէ յեղափոխութեան վտանգի մէջ իսկ անկանէր, եթէ չի փութայր Տրդատ՝ անդէն և անդ վերցնելու, նոցա գայթակղութեան միակ առիթ, հեթանոսական դրօշածոյս և զմեհեանս: Բայց աստ իմ նպատակս չէ զկայ առնուլ՝ Գրիգորի և Տրդատայ սոյն վարմունքն պրդարացնելու համար. որովհետև արդէն նոցա գործած աւերածոց համեմատութեամբ՝ աշխարհաշինութիւնքն անչափապէս մեծ եղան և մխիթարական. այնու զի հեթանոսութեան մնացուածոց վերայ, քրիստոնէական Հայաստանի չքնաղ աշխարհք մի նորակերտեցին, որով զարգացան յունարէն և ասորի դպրութիւնք և բարձան ազգի ազգի բարբարոսական խժդժութիւնք։ Այս դարուս և ժամանակիս՝ դիւցաբանականն և հեթանոսականը՝ պատմականի և քրիստոնէականի փոխուեցաւ, մեհեանը՝ սուրբ տաճարի, զոհը՝ մատաղի և քրիստոսական անմահ պատարագի. կուոց և դրօշածոյից՝ փոխանակեցին Խաչն Քրիստոսի և Խաչքարք, և այն ամենայն որ դիցանուէր էր՝ եղաւ քրիստոսանուէր: Ասոնց հետ 'ի միասին փոխուեցաւ Հայաստանի բարոյական, քաղաքային, մտաւորական և նիւթական վիճակն և կազմեցաւ մեր պատմութեան մի նշանաւոր դարագլուխն՝ արժանի մասնաւոր ուսումնասիրութեան : Այլ հետազօտել պատմագրութեանս աւանդութիւններն և նոցա ստուգութիւնը, յորս նշանաւոր են Հայոց Պանթէոնի կամ դիցաբանութեան մասին տուած տեղեկութիւնքը:

Ցէջ 584 կը յիշէ հեղինակ զրոցս՝ զՏէր դիք, որուն մեհեանը Վաղարշապատէն յԱրտաշատ տանող ճանապարհի վերայ կը գտնուէր. յէջ 589 զԲարշէճիկա՝ և սորա մեհեանը կը դնէ Դարանաղեաց Թորդան գիւղում. յէջ 590 զԱրամազդ՝ յամուրն Անի, ուր էին, կ'ըսէ, Հայոց թագաւորաց գերեզմանները. յայտ է թէ Արշակունեաց հարստութեան: Ցէջ 591 կը յիշուի Նանէ՝ իւր մեհենաւն որ 'ի Թիլն

աւանի. յէջ 593 Մէհր՝ որում մեհեանը Դերջան գաւառի Բագայա_ ռիճ գիւղումը կը նշանակէ: Յէջ 606 կը յիշատակէ զՎահագն՝ որում մեհեանն էր, ասէ, 'ի Տարօն գաւառի, Յաշտիշատ աւանին մէջ. նոյնպէս ապա յէջ 607 կը յիշովին Անահիտ (և Աստղիկ) 'ի նմին մեհենի Յաշտիշատու:

Արդ, ինչպէս կը տեսնեն ընթերցողք, զորցս հեղինակը հնոյն Հայաստանի՝ հնադոյն դից և դիցաբանական տեղեկութեամբքն ա_ ւելի ճոխ է քան զՁենոբ, զՓաւստոս և զՄովսէս, որ, ըստ իս, պէտք է յայտնի նշան համարել այն հաստուածոց հնութեան, յորս կ'ա_ ւանդուին: Աստ յիշուած դիքը՝ թուով ութ են. սակայն որովհետև Աստղկան առանձին մեհեան մի սեփականուած չէր, անոր համար կարեմք ասել, թէ այս էջերում յիշուած եօթն մեհեանները՝ շատ լաւ կը միաբանին Ա. Գրոց 34 իջի աւանդածին հետ, ուր կ'ըսուի մե_ ծին Խոսրովու համար, թէ Արտաշրի դէմ ըրած տարևոր աշաւանք_ ներէն և յաղթութիւններէն վերջ, « Հրաման տայր ընդ կողմանս կող_ մանս դեսպանս արձակել, հրովարտակս առնել յերկրին բագինս մե_ հենիցն ուխտաւոր լինել պատկերաց նոցա դիցն պաշտաման » : Բայց յէջ 606, յետ յիշելոյ Հայոց թագաւորաց յաշտից տեղիքն՝ 'ի սնարս լերինն Քարքեայ, 'ի վերայ գետոյն Եփրատայ, անդէն կը յարէ այս_ պէս. « Զի յայնժամ ևս դեռ շէն կային երեք բագինքն (այսինքն է Անահտայ, Վահագնի և Աստղկան) 'ի նմա » : Արդ, այս բացատրու_ թիւնս յայտնի կը ցուցնէ, թէ այդ հաստուածները Խոսրովու կամ Արշակունի թագաւորաց հնագոյն Պատմիչներէն մ' առնուածչեն, զոր ակնարկէ Փաւստոս. այլ Գրիգորի պատմութեան հեղինակին ըն_ ծայելի են, որ այն երեք բագնեաց կործանմանէն տարիներ վերջ գրեց, որում ժամանակ այլ ոչ ևս շէն կային, և նա բերանացի ա_ ւանդութենէ ևեթ գիտէր զայս: Սակայն պէտք է ըսել, թէ առաջ իսկ էր հեղինակս քան զԲուզանդ. և թէ վերջինս՝ նորա գրութենէն փոխ առնելով մի և նոյն տեղիքը մէջ կը բերէ [1], առանց յիշատա_ կութեան հեղինակին: Դատապարտելի է աստ Փաւստոսի լռութիւ_ նը. զի եթէ յանուանէ յիշած լինէր իւր աղբիւրն, այնուհետև ամե_ նայն ինչ վճարեալ լինէր: Սակայն պէտք է ըսել, թէ այս ախտս գրեթէ բոլոր հին մատենագրաց հասարակ է: Յիրաւի, Զենոբ ևս

1. Գ. Դպր. գլ. ԺԳ. էջ 38 խօսելով Փաւստոս զվհճակէն Դանիէլի եպիս_ կոպոսի, կ'ըսէ. « Եւ յաճախ յակն աղբերն (Եփրատայ)... մեհենատեղ_ ւոյն Հերակլեայ (Վահագնի), որ կայ դէմ յանդիման լերինն մեծի, ո_ րում Ցուլն (Տաւրոս) անուանեալ կոչեն »: Դարձեալ, Գ. Դպր. ԺԴ. էջ 37. « Եւ էր սորա ընկալեալ գքորեպիսկոպոսութեան. ծեռնադրութիւն աս_ տիճանին 'ի ձեռաց մեծին Գրիգորի, յաւուրս յորում կործանեաց զբա_ գինս մեհենիցն Հերակլեայ՝ այսինքն է, Վահագնի, որում տեղւոյ Աշ_ տիշատն կարդացեալ »: Եւ մի և նոյն Դպրութեան Գ. գլխում, խօսելով զխոսրովայ և զվրթանիսէ՝ կը գրէ. « Զայնու ժամանակաւ երթեալ հա_ սանէր եպիսկոպոսապետն Վրթանէս 'ի մեծն յառաջին 'ի մայրն եկե_ ղեցեացն Հայոց, որ էր յերկրին Տարօնոյ, ուր նշանօքն եղելօք կործա_ նեցան բագինք մեհենիցն յայնժամ, վաղ ևս առ մեծաւն քահանայա_ պետաւն Գրիգորիւ:

*Տարօնի Պատմութեան 23 լիշում՝ որոշակի կը յիշէ այդ բազմեաց կործանումը, յասեւն վասն Գրիգորի և Տրդատայ. « Եւ եկեալք 'ի Վաղարշապատ ... գային յԵրեւելն տեառն, յեկեղեաց գաւառին, 'ի կուռան՝ զոր ինքն կործանեաց »: Սակայն կ'արդարանայ Ասորին, այնու զի չիք առ սմա բնաւ նշան ինչ յետնութեան, զոր յայտնապէս ցուցուցել է Փաւստոս, դարձեալ, « յայնժամ » բացատրութեամբը. այլ մանաւանդ թէ Զենոբ՝ իբրև ականատես գործոյն կը պատմէ զայն:*

*Գիտելի է, զի յէջ 52, 61 և 106 Տրդատայ հրովարտակին մէջ երիցս կը յիշուի Արամազդ, բայց միշտ մեծ և տէր մակդիրներով: Իսկ աստ, ընդհակառակն, յէջ 590, 591, 593 դարձեալ կը յիշուի Արամազդ, բայց երկիցս առանց մակդրի, և մի անգամ այլ Հայք ամենայն դից մակդրիւ: Ես դիպաց արգասիք կը համարէի այս տարաձայնութիւնս, եթէ նախնաբար ուրիշ փաստերով ապացուցած չլինէի այն թղթին աղբեր տարբերութիւնն. իսկ այժմ ահաւասիկ Գրիգորի կենսագիրը՝ վերստին կը հաստատէ իմ կարծիքը: Բայց ասկէց աւելի դիտողութեան արժանատր է հետևեալն. այսինքն է, յէջս 606 և 607 պատմելով կենսագիրս Տարօնում եղած դից և մեհենից կործանումը, բնաւ յիշատակութիւն չընեբ Գիսանէ և Դեմետր կռոց. մինչդեռ Զենոբ՝ Տարօնի Պատմութեան Ա. պատճենի մէջ, յէջ 27–39, կը պատմէ մանրամասն նոցա ծագումն և հաստատութիւնն 'ի Հայս, – Գրիգորի և Տրդատայ՝ զօրօքն Հայոց նոցա քրմաց դէմ տուած ահեղ պատերազմն և բոլորական կործանումը: Այս զարմանալի երևութիս պատճառը կը գտնենք առ Զենոբայ, դեռ աւելի զարմանալի կերպով: Ի Յառաջաբանի անդ Պատմութեան Աշխարհիս, յէջ 17, կ'ըսուի. « Չի ես յառաջագոյն գրեցի քան զԱգաթանգեղոս » : Իսկ 'ի վերջաբանի անդ Ա. պատճէնին, յէջ 39. « Արդ որ զկնի այսորիկ է՝ զայն թողաք այլոյ պատմագրի, մինչև դարձեալ նշխն գաւառաց Պատմութիւնս 'ի Տարօն » : Ստուգիւ, եթէ հաւատարմութեան արժանի համարիցի ոք այս վկայութիւններս և ոչ եկամուտ, կարելի է զայս համարել իբրև ստոյգ պատճառ՝ ոյր վասն կենսագիրն Գրիգորի կամ Տրդատայ 'ի լռութեան թողուցել է զԳիսանէ և զԴեմետր և հակիրճ ակնարկութեամբ իրաց՝ անցել է Տարօնի մէջ կատարուած այն մեծ պատերազմին: Եւ կիօք, Զենոբայ հետևեալ խօսքերը՝ կը թուին հաստատել զայս. « Չի որպէս լոյս տեղեկացն չէր ինչ գրեալ, նոյնպէս և ղեկա[1] չէին ու գրել. զի Նախարարաց ժամանակագիրք են » : Արդ, « թագաւորաց ժամանակագրի » և « այլոյ պատմագրի » բառերովը՝ կը թուի ակնարկել մեզ Զենոբ՝ զժամանակակից պատմագիր ումն: Սակայն այս բացատրութիւնս, կարծէք, թէ աւելի Փաւստոսին կը յարմարի քան Ագաթանգեղայ գրոց հեղինակին. զի Խորենացին նախագիտելեաց մէջ՝ Գ. Դպրու*

1. *Այսինքն է, Տարօնի մէջ՝ ընդդէմ քրմական դասակարգութեան և հիւսիսայնոց եղած երկու վճռական պատերազմները՝ վասն քրիստոնէական կրօնից:*

թիւնը « Ժամանակագիր կանոն մատենից » կ'անուանէ : Բայց կը ցաւինք որ այս հետաքրքրական տեղիս աղաւաղուած է, ինչպէս երկու օրինակաց տարբերութենէն [1] իսկ քաջ կը տեսնուի : Արդ, Զենոբայ վըկայութիւնն ուղղակի Ագաթանգեղոսի վերայ առնելով, կը տեսնենք արդարև, զի իւր սահմանին մէջ հաւատարիմ մնացել է սա. այնու իսկ՝ զի Տարօնէն դուրս գործուած դէպքերն՝ աւելի խնամքով և մանրամասնօրէն գրուած են աստ : Սակայն Զենոբ՝ Գրիգորէն հրամայուած և իւր 'ի վեր անդր ծանուցած սահմանէն ելած է. որովհետև մեծին Խոսրովայ մահուանէն սկսեալ՝ Տրդատայ, Գրիգորի և Հայաստանի դարձին բոլոր մեծամեծ դէպքերն ևս ջանացել է համառօտել, այնպէս՝ մինչև կարելի է բանաւոր տարակոյսներ հանել, թէ կամ Տարօնի պատմութեան հեղինակն՝ իւր աւանդածներն Ագաթանգեղայ պատմագրութենէն ուղղակի փոխ առած է և յօրինած. և կամ, ընդհակառակն, վերջնոյս հեղինակը՝ նորա համառօտ տեղիքն իրեն հիմն դնելով՝ ընդարձակած է զայն : Բայց պէտք է ըսել, թէ հանդերձ այս երևութովս՝ այդ երկու Պատմագրութիւններն՝ իրարմէ մեծապէս կը տարբերին, յամբողջութեան անդ, և մէկմէկէ անկախ երկու տարբեր հեղինակութիւններ համարելի են : Իսկ Դեմետր և Գիսանէ դից մասին՝ կամ Զենոբայ աւանդածն այլընդայլոյ համարելու ենք, և կամ առ Ագաթանգեղայ որոնելու ենք նոցա զաղտնիքը :

Արդ, ուշի ուշով դիտելով՝ կը տեսնենք, որ Զենոբայ վերոյիշեալ թղթին մէջ նմանաձայնութիւն մի կայ քըմաց, դից և տեղական անուանց մէջ : Դեմետր և Գիսանէ կը կոչուին յեկաց անտի Հնդկաց՝ զոյգ հարազատները. Դեմետր և Գիսանէ կը յորջորջին նոյնպէս նոցա կուռքերը : Արձան կը կոչուի Գիսանէի քուրմը, Արձան է նոցա ճակատամարտի տեղւոյն անունը, Արձան կոչուած է նաև մօտակայ լեռը :

Երկրորդ, յէջ 27, 'ի մէջ կը բերէ նա զԴեմետր քուրմ իբր որդի Արձանայ, որ յետ անարգելոյ զիշխանն Անգեղտան, 'ի մենամարտութիւն ևս կը հրաւիրէ զնա, ըսելով. « Ցառաջ մատիր, զի մենամարտեսցուք ես և դու » : Իսկ Անգեղտան իշխանը կը պատասխանէ նմա. « Գիտեա զայս Արձան, զի տեղւոյս այս Արջան են կոչելոց, զի տեղ արջանանալ պիտի յայսմ վայրի : Եւ 'ի վեր ամբարձեալ զձեռն իջուցանէր զսուրն 'ի թիկանց, և նորա անկեալ յերկիր թաւալէր. և կուտեցին արջան 'ի վերայ նորա ... և կայ 'ի նմին տեղւոջն՝ որ դեռ ևս Արջան կոչի անուն լերին » :

Ինչպէս կը տեսնեն ընթերցողք, այս տեղւոյս մէջ՝ հեղինակն շփոթմամբ արձաններն բազմացուցել է : Սակայն պէտք է ըսել, թէ այն բանը զոր Հայք արջան կը կոչեն, Ասորիք և Հրէայք կարկառ կամ գալ ևս կը հասկնային. և այս իմաստիւք գործածուած է նաև Ծննդոց Գրոց թարգմանութեան մէջ և այլուր : Եւ իրօք այս բնու-

1. Որոնք այսպէս կը գրեն. « Զի որպէս զայլ տեղեաց չեմ ինչ գրեալ 'ի թղթի, նոյնպէս և այլքն զխս յիշեն » :

*թեան քարակարկառը կը գտնուի Մշոյ Ս. Կարապետէն 6 ժամաւ հեռի: Ուստի անդ հանդիպած ճակատամարտին տեղն ևս կոչեցաւ Արձան, անուն մի՝ զոր կարելի է, ըստ ծայնին, նոյն համարել ընդ [illegible] անուան, որ առ. Մովսիսի, Գ. Բ. գլ. Ը: Իսկ Արձան քուրմն, որ կը յիշուի առ. Զենոբայ, չէ իրական և պատմական ինչ, այլ եղջերուաքաղ խմն համարելու ենք՝ սխալ հասկացողութեան Անգեղտան իշխանի վերոյիշեալ բացատրութեանն, և կամ առաջ եկած է Դեմետր քրմին վերայ կուտեալ քարակարկառէն կամ արձանէն: Եւ յիրաւի, այս բանս յայտնի կը տեսնուի Զենոբայ մի և նոյն տեղւոյն մէջ եղած խոշոր հակասութենէն իսկ. այս ինքն է, Դեմետր մենամարտութեան կ'իջնէ անդ ընդ իշխանին Անգեղ տան, և յանկարծ կալս՝ Արձան անունս կու գայ յերևան: Ինձ կը թուի, թէ առոր ձեռինակս՝ յետոյ ուրեմն կատարուած իրողութիւնն՝ իբրև կանխաւ եղած մի բան ուզած է ծանուցանել անդ, ըստ առորաքանութեան. իսկ հայ թարգմանիչն՝ իբրև մի անձնական յատուկ անուն հասկացել է. և կամ ըսել, թէ հատուածոց տեղափոխութիւն և խանգարում մի կայ անդ: Բ. Եթէ ստուգիւ պատմական անձն ևս համարինք գքուրմն Գիսանէի, պէտք է ըսել, թէ նորա անունը բոլորովին տարբեր էր յայնմանէ, զոր ընծայէ մեզ Զենոբայ թարգմանիչն. որովհետև անունս Արձան զուտ հայկական է, և չէ մարթ ընծայել հնդկային գաղթականութեան անհատի մի, որոնք թէպէտև 'ի Հայս կը բնակէին, բայց այն Հրէից բազմաթիւ գաղթականներու նման, զորս եբեր 'ի Հայս՝ մեծն Տիգրան, և յետոյ խաղացոյց Շապուհ 'ի Պարսկաստան, իրենց յատուկ բարբառով, սովորութեամբք և կրօնիւքը կը վարէին:*

*Սոյն օրինակ դժուարութիւններ ընդ առաջ կ'ելլեն մեզ նոյնպէս նկատմամբ Գիսանէի և Դեմետրէի: Նախ զի Դեմետր կամ Դէմէտրէ՝ զուտ յունական հնչումն է և ոչ հնդկերէն: Իսկ Գիսանէ անունը՝ հայերէն [illegible] բառէն ածանցած կը համարի Զենոբ*[1]*, կամ լաւ ևս նորա թարգմանիչը: Սակայն, ըստ իս, այսպիսի մեկնութիւն մի դիպուածական նմանածայնութեան արգասիք համարելի է, քան թէ իր. որովհետև այդ անուան վերջաւորութիւնն՝ [illegible] կամ [illegible]՝ աւելի յունարենի կամ հնդկերենի, քան թէ հայերենի ձև ունի: Բ. [illegible] լինելու յատկութիւնը՝ ոչ միայն քրմին կամ պաշտօնէին, այլ նոյն իսկ նորա պաշտած կուռքին և ընդհանուր ցեղին ևս ընծայուած է, յէջ 36: Գ. Յէջ 35 և 36, երկիցս այդ հնդիկ եկաց մասին աւանդութիւնը մէջ բերելով, յառաջին տեղւոյն մէջ Դեմետր և Գիսանէ կուռքերէն կը հետևցնէ Դեմետր և Գիսանէ իշխան–եղբարց գոյութիւնն, յաւուրս Վաղարշակայ. իսկ երկրորդ տեղւոյն մէջ՝ ընդհակառակն, վերոյիշեալ եղբարցմէ կ'եզրակացնէ նոցա համանուն զոյգ*

1. *Որովհետև կ'ըսէ, յէջ 35, վասն նոցա. « Այլ և յոյժ զարմանալի էր տեսիլ նոցա, քանզի սևք էին և գիսաւորք և զազրատեսիլք »: Եւ յէջ 36. « Գիսանէս՝ զի գիսաւոր էր, և վասն այնորիկ նորա պաշտօնեայքն գէսք էին թողիալ »:*

կուոց զոյութիւնն՝ առ Տրդատաւ, որոց պաշօննեայքը, դարձեալ, Դեմետր և Գիսանէ կը կոչուէին: Այս աւանդութեամբս թէպէտև Զենոբ յուդի շրջանի մէջ է, սակայն և այնպէս կը թուի ներկայացնել պրահմական վարդապետութիւնն, ըստ որում նոցա թագաւորներն էին 'ի նմին ժամանակի մի մի մարմնացու անձնաւորութիւններ անմահին Պրահմայի:

Արդ, առ Զենոբայ յիշուած այս կրկին անուանց մասին՝ այլ և այլ մեկնութիւններ տուին արդի գիտնականք [1] և բանասէրք, բայց ոչ ոք կարաց ապացուցանել նոցա ստոյգ եղելութիւնն: Արդ, քանի որ Հնդկաստանէն 'ի Հայս եկող այսպիսի մի գաղթականութեան դեռ ուրիշ հաստատուն յիշատակարաններ չունինք՝ բաց 'ի Զենոբէն. քանի որ Դեմետր, Գիսանէ, Դինաքս, Մեղտէս և Հոռէն անուանց հետքն անգամ չեն գտնուիր Հնդկաց պատմութեան մէջ, չէ մարթ ըսել, թէ հնդիկ ծագումն ունեցած են այդ անուանքն. այլ թէ հաւանօրէն յունական էին, բայց փոքր ինչ աղաւաղուած են, կամ այն բարբարոս ժողովրդեան բերանում, և կամ առ Ասորի հեղինակին, որ կ'աւանդէ զայնս: Ուստի քանի որ յերկնայ՝ աղապահեան է, ըստ առածին, հաւանական կը համարիմ, թէ անունս Գիսանէ կամ կը ներկայացնէր մետասաներորդ անձնաւորութիւնն Վիշնուի (Vishnu), այսինքն է՝ արեգական, և կամ մականուն ինչ է Կրիշնայի կամ Գրիշնայ: Արդ, ըստ առաջին ենթադրութեանս՝ Գիսանէ անունը՝ պէտք է որ նոյնը լինի սանսկրիտերէն Գինշանա (Kinçana) ձայնին հետ, որ կը նշանակէ ոսկի, անձն. իսկ ըստ երկրորդին՝ յառաջ կու գայ Գեշին (Keçin), այսինքն է, Գեղադանձ կամ փխադոր բառէն, և կամ (Kêçihan):

Գիսանէ՝ էր աստուած ումն պատերազմի, և տիտանեանց արարուածներով ծանօթ էր և կը պաշտուէր 'ի հնդիկ գաղթականաց անտի. այնպէս որ, նորա սանսկրիտերէն մականուանքն ևս եթէ մեզի ծանօթ չլինէին, կարելի էր յունարէն Γίγας և ἄνη կամ ἄνυσις

1. Գ Աւտալ, ***Memoire of Hindo Colony in ancient Armenia.*** Journal of the Asiatic Society of Bengal, Calcutta, 183[illegible], p. 332, նոյն կը համարի զԴեմետր և զԳիսանէ՝ Հնդկաց Նագաննադ և Գայի–գատ կուոց հետ: Լասսէն, ***Zeitschrift. f. d. Kunde des Morgenlandes***, Bd. I, p. 233. կ'ընդունի Զենոբայ աւանդածի հնութիւնը, բայց այլ ընդ այլոյ կը համարի զայն. այսինքն թէ, այդ կուռքերն՝ երկուց իշխան եղբարց 'ի պաշտօն ձօնուած լինին. այլ ընդհակառակն, կը համարի թէ, թէ՛ այդ կուռքերն և թէ՛ նոցա պաշտօնն՝ յառաջագոյն 'ի Հնդկաց անտի մտին 'ի Հայս. և թէ այդ չաստուածներն, զորս գաղթականութիւնն իրեն պաշտպան կը համարէր, Հայոց աւանդութեամբը փոխակերպեցան իշխան եղբարց: Գիսանէ, ըստ կարծեաց հեղինակիս, նոյն է ընդ Կրիշնայ կամ Գրիշնայ (Krishna), որուն գաւառականն է Գիսան (Kis'an) որ և Գէսավա (Keçava), այսինքն է, գիսաւոր: Իսկ Դեմետր՝ է յունահնչիւն կրճատումն անուան եղբօր իւրոյ. այսինքն է, Հաբադարայ (Habadara) կամ Բալարամայ (Balarâma): Իսկ Մ. Էմին, ***Recherche sur le Paganisme arménien***, մերժեց Զենոբայ այն տեղեաց հարազատութիւնն և դից գոյութիւնը, բայց առանց բաւական ապացոյց մի մէջ բերելոյ նոցա անգոյութեան:

բառերէն նա զուշակել, որք սանսկրիտերէն ծագումն ունին և կը նշանակեն հոլոյ նաւարկել կամ ջրել: Եւ յիրաւի, այսպիսի մեկնու֊թեան մի հաստատութիւն կարելի է համարել Զենոբայ երկու տե֊ղիքն. այսինքն է, նախ յէջ 32 կը ծանուցանէ, թէ Գիսանէսի բար֊ձրութիւնն էր « Երկոտասան կանգուն ». իսկ երկու օրինակաց մէջ՝ « Երեսուն կանգուն »: Բ. Յէջ 27, « բարեփառ » կ'անուանէ զնա ասելով. « Գիսանէ 'ի պատերազմ ելեալ է ընդ ձեզ, և մատնելոց է զձեզ 'ի ձեռս մեր »: Իսկ Դեմետր՝ էր հասանօրէն կամ անձնա֊տրութիւն երկրի, Δημήτηρ, ըստ Յունաց. և կամ նոյն ընդ Դեմետրէ Ա. զոր յամին 312, նախ քան զՔրիստոս, աստուածա֊ցուցին՝ Յոյնք, կանգնելով նմա յԱթէնս ոսկեղէն արձանս: Նորա պաշտօնն հաստատեցաւ ապա 'ի Տիւրոս, 'ի Կիլիկիա, 'ի Փոքր և 'ի Մեծն Ասիա և 'ի Հայս, այն գաղթականաց ձեռքով, որոնք 'ի Փռիւ֊գիոյ և յափանց Կասբից ծովուն եկան անդ և հաստատուեցան:

Դեմետրի և Գիսանէի՝ Սեւ և Բարեփառ մակդիրները տրուած են, առ Զենոբայ. աստի միայն չէ մարթ գիտնալ հաւաստեաւ, թէ ինչ կը ներկայացնէին և ինչպիսի՞ էր նոցա պաշտօնը: Զենոբայ էջ 27. Արձանայ քրմի բերան դրուած այս բացատրութիւնս, թէ « Հարկա֊նելոց է (Գիսանէ) զձեզ կոտորածովք և մահուամբ ». քաջ կը միաբանի առ Մ. Կաղանկատուացւոյ, գլ. ԺԸ. էջ 42, տպ. Մօսկուայի 1860, մէկ հնագոյն աւանդութեան հետ, ուր յԱղուանս 'ի վաղուց հետէ մնացած մատնահատից դիւական աղանդին վերայ խօսելով՝ կ'ըսէ. « Զի մի դևն նոցա ասէր և մեռան պղծով, որք հեղգային առնել զպաշ֊տօն չարութեան. և եթէ զայլ ոք մատնեալ կախարդութեան նոր գիտացն զնոյն աղէտս կոտորածեան 'ի վերայ հասուցանէին »: Արդ, այս երկու աւանդութեանցս համաձայնութենէն՝ կարեմք յառաջ բե֊րել նախ թէ, թէ յԱղուանս և թէ Տարօնի գաղթականաց քով կա֊տարուած այդ պաշտօնը՝ լոկ դիւական էր և, Երկոտասան սկզբան համեմատ, իբրև նոքէ և քարեայ անձնաւորութիւններ կը ներկայա֊ցնէին վերոյիշեալ կուռքերը: Դեմետր էր բերող կենաց, բերոց և լիութեան. իսկ Գիսանէ բերող չարեաց, հիւանդութեան և կու֊րութեան: Բ. Թէ այդ երկու ժողովուրդներն՝ ոչ միայն կրօնքով՝ այլ և ազգակցութեամբ իսկ՝ պէտք է որ իրարու մերձաւոր[1] եղած լի֊նէին: Գ. Թէ այժմեան Տարօն գաւառում բնակող Եզիտները՝ պէտք է որ լինին յաջորդ այն նախնի գաղթականութեան, զոր Զենոբ 'ի Հնդկաց եկած կը համարի. որովհետև քննուած է, և ես իսկ լսեր եմ անոնցմէ, որ մինչև ցայսօր դեռ նոյն դիւական աղանդին կը ծառայեն, և գագաթնուն վերայ գէս կը թողուն: Դ. Թէպէտև Տա֊րօնի և նորա շրջակայ հեթանոս հայ ազգաբնակութենէն իսկ եղան

1. Այս բանիս կարելի է ապացոյց համարել Զենոբայ, յէջ 37–38, մէկ տեղին, որուն կը համաձայնին նոյնպէս Մովսէս և այլք բազումք. այսինքն է, յետ երկոտասան աւուր՝ առաջին կրօնական պատերազմին հայոց ընդդէմ քրմական գաղթականին, և յետ կործանման կռոցն Դե֊մետրի և Գիսանէի, թագաւորն հիւսիսոյ (հոնաց և Աղուանից) կու գայ 'ի պատերազմ ընդդէմ հայոց և յօգնութիւն հայաբնակ գաղթականին:

պաշտօնատարք այս կռոցս, սակայն պէտք է ըսել, թէ հնոյն Հայաստանի պանթէոնը՝ չէր ճանչնար զԴեմետր և զԳիսանէ իբրև իւր համարակաց աստուածներ. և այս է միակ պատճառ, որ Ագաթանգեղայ թէ Ա. Գրոց և թէ Բ.ի մէջ բոլորովին դուրս թողուած են անոնք, և «Եօթն Մեհեանն» միայն յանուանէ կը յիշուին և կը նկարագրուին՝ «հայրենին դէնս» Խոսրովու և Տրդատայ: Թէպէտև առ Զենոբայ, էջ 27, կ'ըսուի 'ի դիմաց քրմին կռոցս՝ առ իշխանս Հայոց. «Ով դեռնակորոյսք, և ուրացողք զհայրենին աստուածսն». սակայն նշանակութիւն չունին այդ խօսքերը, զի կամ առ իւրայինսն ըսուած են, առ որս էր և իշխանն Հաշտենից, ինչպէս կը տեսնուի յէջ 29. և կամ իբրև ընդհանուր հեթանոսական պաշտօն ինչ հակառակ քրիստոնէութեան՝ վերաբերած է զայն Հայոց: Իսկ նոցա առանձին ժառանգութիւնը, սովորութիւնքն և վարչութիւնը՝ յայտնապէս կը ցուցնեն, թէ նոքա զատեալ էին 'ի Հայոց: Ցիրաւի, այս պատճառաւ է, որ Հայք անաշխատ և առանց ընդդիմութեան կը կործանեն միւս եօթն մեհեաններն՝ անդէն 'ի սկզբան. իսկ Դեմետրի և Գիսանէի կործանումը՝ հազիւ ուրեմն յետ ձեռնադրութեան Գրիգորի կը փորձուի, և կրկին աշխարհական ճակատներ կը մղուին ընդդէմ թագաւորին և զօրացն Հայոց: Այսքանս կը բաւէ Դեմետրի և Գիսանէի մասին. դառնանք ուղղակի Հայոց պանթէոնը, Տրդատայ և Գրիգորի կործանած դից խնդիրը բարգաւաճելու համար:

Ցոյժ փափաքելի էր տեսնել առ Ագաթանգեղ այն եօթնաթիւ դից անուանց կից՝ նոյնպէս և նոցա ծննդաբանութիւնը, մականուանքըն, 'ի Հայս հաստատութեան ժամանակամիջոցը, պաշտօնն և առանձին վէպերը. սակայն այս բաները շատ հարևանցի յիշատակուած են, և կամ մանաւանդ ուրեք ուրեք խպառ 'ի լռութեան թողուցած է հեղինակ վարուցն Գրիգորի: Բազմահմուտն Մ. Խորենացի, յայլևայլ երկասիրութիւնս իւր, կարևոր բաներ կ'աւանդէ մեզ առ այս. սակայն հարկաւոր կը համարիմ ծանուցանել, թէ երբ նա Արտաշէսի Ա. ձեռքով Յունաց Պանթէոնի կուռքերը բերուած կ'աւանդէ 'ի Հայս, պէտք չէ այս դէպքս համարել իբրև ժամանակակէտ իմն պաշտաման անդէն յիշատակուած աստուածոցն 'ի Հայս. զի նոցանէ ոմանց պաշտօնն՝ արդէն 'ի վաղուց խորարմատ հաստատուած էր անդ: Ցայսմ շատեր 'ի տոհմային և յօտարազգի մատենագրաց սխալեցան: Դարձեալ, 'ի նկատի ունելով, յՔ. դարէն և անդր նախ քան զՔրիստոս, Ասորեստանեայց տիրապետութիւնն և ազդեցութիւնն 'ի վերայ Հայոց, պէտք չէ նոյնպէս բոլոր վերոյիշեալ աստուածոց մուտքն և պաշտամունքը՝ նոցանէ փոխ առնուած համարել. այս է ծայրայեղութեան երկրորդ բևեռը, յորմէ պարտիմք նոյնպէս զգուշանալ՝ այսպիսի հետազօտութեանց մէջ: Ոմանք[1] 'ի բազմարդիւն Հարց և որդւոց Մխիթարայ, իրենց՝ այս մասին սատ և անդ տուած օգտաշատ տեղեկութեամբք հանդերձ,

1. Ջամչեան, Պատմ. Հայոց, հտ. Ա. էջ 618–621 և այլուր: Ինճիճեան, Հնախօսութիւն Հայաստանի, հտ. Գ. 175–182;

ուրեք ուրեք դէպ 'ի յառաջին բևեռ կարծեացս հակամէտ երևեցան: Իսկ Մ. Էմին [1], ընդհակառակն, դէպ 'ի վերջինը հակեալ է, Անահիտէն սկսեալ՝ մինչև ցՏիւր դից մասին ըրած քննութեանցը մէջ:

Մեծապատիւ գիտնականն, Ինճիճեանի և Բագրատունւոյ հանրածանօթ երկասիրութիւնքը, յորս հնոյն Հայաստանի նախնի կրօնը Մ————ն եղած կը համարին, իբրև ընդհանուր գործիք և կարծիք՝ Մխիթարեան Հարց վերագրած է, Հայոց դիցաբանութեան նկատմամբ, բոլորովին սխալ և կամայական կոչելով զայն. և կը խոստանայր, թէ ինքը մտադիր էր նոցա ճիշդ և պայծառ եղելութիւնն յայտնել՝ իւր այն երկասիրութեամբը: Այսպիսի կշտամբանք մի այն ժամանակ միայն իրաւացի կը լինէր, եթէ վերոյիշեալ Հարց կարծիքն՝ ուղղակի Հայաստանի պատմական ժամանակի կրօնից և դիցաբանութեան մասին արտայայտուած լինէր. Բ. Եթէ իրօք սխալ և նոցա կամայական կարծիք ևեթ լինէր այն: Սակայն 'ի գիտութիւն հեղինակին և ընթերցողաց կը ծանուցանեմ, թէ նախ վերոյիշեալ Հարքն՝ ուղղակի Հայոց նախապատմական ժամանակի կրօնքը Միաստուածութիւն եղած կը համարէին, և թէ այս նոցա առանձին և կամայական կարծիք համարելու չէ. այլ ուրիշ նշանաւոր գիտնականներ [2] ևս նոյնը ջանացին ցուցնել, Արեաց և արիական ժողովրդոց նախնի կրօնից մասին խօսած ժամանակ: Իսկ գալով պատմական ժամանակի Հայոց կրօնից՝ կ'ըսեմ, թէ ոչ վերոյիշեալ Հարք և ոչ իսկ այժմեան Մխիթարեանք այնպիսի համոզումն ունեցած են երբէք կամ կարեն ունենալ, զի հնոյն Հայաստանի բ————ն պանթէոնն և նորա յիշատակարաններն կեցած են ակներև:

Բայց տեսնենք, թէ Մ. Էմին՝ իւր գրոց ներածութեան մէջ խոստացածն՝ իրօք ևս կատարա՞ծ է: Յիրաւի, պէտք է ըսել, թէ նա այդ փոքրիկ երկասիրութեան մէջ՝ լեզուաբանական նրբին դիտողութեանց հետ 'ի միասին՝ պատմական մեծ հմտութիւն ևս ցուցուցել է, ոճով իմն ուսումնասիրելով իւր նախահաւուց դիցաբանութիւնը: Սակայն այդ գործն՝ իւր բազմապատիկ կատարելութեամբք հանդերձ՝ ունի, ըստ իս, թերութիւններ ևս, զորս չէ պարտ առանց անդրադարձութեան անցնիլ: Յէջ 9–10 Հայոց Արամազդայ վերայ խօսելով՝ կը ծանուցանէ, թէ նոյն է ընդ Աուրա–մազդային Արեաց: Այս նոր բան չէ. զի Ջամչեան և Գաթրճեան իսկ՝ արդէն ծանուցած էին: Ե՞րբ արդեօք և ի՞նչ պարագայից մէջ հաստատուեցաւ նորա պաշտօն 'ի Հայս, – 'ի Պարսի՞ց անտի ուղղակի թէ 'ի Յունաց, – Հայոց Արամազդին ընծայուած մակդիրներն իցե՞ն նոյն ընդ Աու-

1. *Recherche sur le Paganisme arménien*, p. 10–

2. Hyde. *De Religione Persarum*, նշանաւոր երկասիրութեան մէջ Արեաց բազմաստուածութենէն իսկ ջանացել է ցուցնել, թէ նոցա նախկին կրօնքը՝ Միաստուածութեան կրօնք էր: — Maspero, *Hist. Anc. des Peuples de l'Orient*, l. IV, ch. XI, p. 499. կը հաստատէ, թէ Իրանեանք՝ զԱրամազդ միայն կը ճանչնային աստուած յաւիտենական և անստեղծ, իսկ միւսները՝ բոլորն այլ նորա արարածներ կը համարէին;

րա–մազդայ կամ Որմզդին Արեաց, թէ ընդհականակն. կամ լաւ ևս, Հայք ինչ տիտղոսներով կը պաշտէին զայն և ինչ նուէրներ կը մատուցանէին նմա: Այս բաներս բոլորովին լռած է Էմին: Յէջ 10–15 ընդարձակաբար կը խօսի հեթանոսիկ Հայաստանի Տիկնոջ Անահտայ մասին, և նոյն կը համարի Ասորեստանեայց [illegible] և Բաբելացւոց [illegible] դից հետ: Սակայն դիտելու ենք, որ բնաւ բառական համեմատութիւն, կամ լաւ ևս, անուանական նմանածայնութիւն չկայ առաջնոյն՝ ընդ վերջինս: Իսկ նոցա ընծայուած բարոյական յատկութեանց գալով, իրարու իբրև կատարեալ հակապատկերներ կը ներկայանան նոքա. այսինքն է, Բէլտիս և Մելիտտա՝ իբրև վավաշոտութեան և լկտութեան, իսկ Անահիտն՝ մաքրութեան և զգաստութեան խնամակալներ կ՚անուանէին և կը պաշտուէին: Երկրորդ, եթէ մի և նոյն անձնաւորութիւնն էին՝ ինչ պատճառաւ և ինչ պարագաներով փոխանակ Բէլտիսի՝ Անահիտ կոչուեցաւ ՚ի Հայոց. այս բանս տակաւին մութ ամպի տակ ծածկուած մնացել է, առ Էմինի: Յէջ 15 կը ծանուցանէ ՚ի դէմս Ագաթանգեղայ, թէ Տրդատ ՚ի դարձին իւրում յարշաւանաց ընդդէմ Արտաշրի, սպիտակ ցուլս, նոխազս, ձիս և ջորիս սպիտակս ընծայեց Անահտայ: Աստ՝ փրիպակաւ փոխանակ Խոսրովու մեծի՝ նորա որդւոյն ընծայուած է ՚ի Պարսիկս ըրած արշաւանքը: Ընծայից մասին ևս՝ Ագաթանգեղոսի միտքը սխալ հասկցուած է. զի Տրդատայ կենսագիրն յէջ 34, եօթն մեհենից և աստուածոց նուիրեալ ընծայից՝ ընդհանուր թուարկութիւնն ըրած է անդ. իսկ Պ. Էմին բոլորն ևս Անահտայ ուզած է սեփականել. մինչդեռ իրօք Արամազդայ՝ առանձինն կը նուիրէին, ինչպէս ուրիշ ազգերն՝ այսպէս ևս Հայք սպիտակ ցուլեր և այլն: Յէջ 17 Բարշիմնիա չաստուածոյն լեզուաբանական մեկնութիւնն՝ որով ուզած է Պ. Էմին Ասորեստանեաց Նին կամ Բինին աստուածոյն հետ նոյն համարել, ըստ իս, գոհացուցիչ չէ: Նորա կարծիքով [illegible] Nin՝ Ասորեստանեայց լեզուով տէր կը նշանակէ. իսկ [illegible] in՝ անուն: Նոյնպէս [illegible]՝ տէր կը նշանակէ. իսկ [illegible]՝ անուն: Որով Էմինի մեկնութեան համեմատ թէ Նինին և թէ Բարշիմ, առանձինն առնելով, կը նշանակեն հաւասարապէս [illegible]: Արդ, եթէ իրօք այսպէս էր, Հայք ինչ պատճառաւ զուգեցին զերկոսեանն ՚ի մի. մի՞թէ այս անիմաստ կրկնութիւնս առաջ բերելու համար, Տէր–անուն–Տէր–անուն: Ոչ բնաւ. մի այլ գաղտնի պատճառ կայ յայսմ, զոր Էմին չէ դիտած. այսինքն է, Նինին և Բարշիմնիա անուանց ինչպէս հնչման մէջ մեծ տարբերութիւն կայ, այսպէս ևս պէտք է ըսել, թէ վերջինը տարբեր ժամանակի մէջ և տարբեր լեզուէ յառաջ եկած է: Ոչ ոք կը տարակուսի, թէ Նին կամ Նինին՝ Ասորեստանեայց թագաւորաց պաշտպան Հերակլէսն է, և նոցա շատերու անուանքը՝ նինով կը կազմուին. օրինակ իմն, [illegible]իբալ–զիրա, [illegible]ուաս, Ասուր–բա–[illegible] –բալ և այլն: Իսկ [illegible]՝ հասարակ անունս ասորերենի մէջ միայն գոյութիւն ունի, մանաւանդ թէ նոր ասորերէն յատուկ անուանց քով յաճախ գործածուած է, մերթ որդի և մերթ տէր իմաստով. օրինակ իմն, Բար–Ցովհան, Բար–Ցեսու, և այլն: Յէջ 18–20 խօսելով Հա-

յոց Հերմէսի, այսինքն է **Տիւր** դից մասին, չգիտեմ ընդէ՞ր Dir տառադարձուցել է, փոխանակ Tir կամ Tyr տառադարձնելու, ըստ նախնեաց: Սորա ծագումն եւ՝ յԱսորեստանեայց անտի յառաջ կը բերէ, իբր ծնունդ **Նեբոյ** կամ Նէբուի, որ էր խնամակալ դպրութեանց: Եւ որովհետեւ վերջերս **Բէլ-եւ-Նեբոյ** մէջ գտնուած է Նեբօի կալծուած երկաթեայ նշանադրոշմն մի, աստի կը հետեւցնէ, թէ ուրեմն Տիւր դից նշանադրոշմն եւս նոյն էր. ուրեմն Տիւր Դիք նոյն էր ընդ Նեբօի: Սակայն իցէ՞ ուղիղ Նեբօի ենթադրեալ նշանադրոշմէ մի՝ հետեւցնել Տիւր դից նշանադրոշմն եւ նորա գոյութիւնը: Ըստ իս, Տիւր անուան հնչումը բոլորովին օտար է Նեբօ հնչմէն. ուստի եւ ուղղակի յԱսորեստանեայցմէ ծագած չկարէ լինել Տիւր անունս, այլ պէտք է որոնել զայն մի այլ դրացի եւ ընտանի ազգի լեզուի մէջ: Դարձեալ, հայ ժողովրդեան բերանը դեռ կենդանի այս անէծքս իսկ, թէ «Կրօղը տանի զքեզ», պարոն Էմին՝ **Գրող** հասկացել է, եւ ընծայած է զայն, իբր մակդիր Որմզդի գրչին, Տիւր դից: Սակայն պէտք է ըսել, թէ գրողն՝ անյարմար է **տանել** բային. այլ ուղղակի Կրողը կը հասկընային Հայք, որ նոյն է ընդ Χάρων 'ի Յունաց կամ Աւեռնեան մեռելակրին, զոր յԵգիպտացւոց անտի առի՞ն որոց խոռաքանդակ պատկերքն եւս յայտնուելով՝ ամէն տարակոյս կը փարատեն 'ի միջոյ՝ Կրողի մասին: Յէջ 21. Միհր դից պարսկական ծագման մասին խօսելով՝ կ՚ըսէ, թէ նշանակէ անձնաւորութիւն իմն աներեւոյթ հրոյ (ինչպէս Արեգակն երեւելի հրոյն)· եւ ապացոյց կը բերէ քուր (Khour) բառի մի գոյութիւնն, որ իբր թէ հայերէնի մէջ իսկ աներեւոյթ հուր կը նշանակէ: Սակայն ես կարծեմ, թէ **Տիւր** առանձին բառ իրօք հայերէնի մէջ չկայ, այլ **Տիւրայ**, որ կը նշանակէ ոչ եթէ աներեւոյթ ինչ, այլ ընդհակառակն հնոց, փուռ: Երկրորդ, միհրապաշտից երդման հետեւեալ ձեւերն եւ կ՚աւանդէ մեզ Քսենոփոն՝ յանուն Արտաւազի. Μὰ τὸν Μίθραν, Ζεῦ πατρῷε καὶ Ἥλιε, այսինքն է. Երդուեալ 'ի **Միհր**. ո՜վ հայր Արամազդ եւ Արեգակն. ուր իրօք այնպիսի զանազանութիւն մի չկայ:

Բաց 'ի յԱրամազդայ եւ Միհրայ՝ Ագաթանգեղոսի մէջ յիշուած միւս դիքը՝ յԱսորեստանեայց անտի յառաջ եկած կը համարի Էմին. բայց չգիտեմ, թէ զանոնք հնագո՞յն երեւցնելու համար, եթէ Ասորեստանեայցմէ հնագոյն բազմաստուածութեան պաշտօնեաներ չի գըտնելուն աղագաւ: Արդ, այս տեսակէտով Հայոց դիցաբանութիւնն իմաստասիրելն՝ ամենեւին պատմական եւ կրօնական կարեւորութիւն չունի մեզ Հայերուս համար· որովհետեւ պատմութեան տեղեակ անձինք՝ աղէկ գիտեն քաջ, թէ նախապատմական բոլոր հեթանոս ազգաց եւ ժողովրդոց կրօնքն, 'ի սկզբան անդ, բնութեան կրօնք էր. այսինքն է, բաց 'ի յԵբրայեցւոց՝ այլք առ հասարակ բնութեան եւ զօրութեանց երկնից պաշտօն կը մատուցանէին: Յետ ժամանակաց՝ անձնաւորեցին զբնութիւն, բնութեան զօրութիւններն եւ միջոցին մէջ շարժող լուսաւորներն: Եւ որովհետեւ բնութիւնն եւ բնութեան մէջ ներգործող զօրութիւնները՝ միշտ նոյն են, ուրեմն հարկ էր որ նախաժամանակեան ազգաց աստուածոց ծագումն եւ էութիւնն եւս

համարակաց լինէր: Ուստի այն կերպով՝ որով պարոն Էմին Հայոց դիքն՝ Սորենտանեայց հետ նոյն համարած է, կարելի էր Եգիպ-տացւոց և կամ մի ուրիշ սեմական և հնագոյն ժողովրդեան դից հետ ևս նոյնացնել, առանց համաձայնութեան անուանց: Սակայն այս՝ ոչ միայն նպատակազուրկ մի գործողութիւն է, այլ և զուրկ 'ի պատ-մական կարևորութենէ: Ուրեմն այլ ազգ պէտք է որոնել. այսինքն, թէ ընդէ՞ր արդեօք մի և նոյն բնութիւնն և բնական զօրութիւն-ները՝ այլևայլ ազգաց քով՝ իրարմէ այնքան տարբեր անուանակո-չութեամբք, առանձնայատկութեամբք և պատմական պարագանե-րով անձնաւորուած կը ներկայանան: Այսպիսի խուզարկութեան մի մէջ կայանցած է, ըստ իս, ազգի մի կրօնական վիճակին, բարոյա-կանին, սովորութեանց և այլ հանգամանաց պատմութիւնն և պատ-մութեան յայտնութիւնն: Իսկ գալով ուղղակի Հայոց վերոյիշեալ ծանօթ դից խնդրոյն, ըստ իս, պէտք է նայել, թէ նոցա անուանքն և ընծայուած առանձնայատկութիւններն՝ ո՞ր ազգաց դից անուանց և առանձնայատկութեանց հետ աւելի նմանութիւն ունին. և ան-տի կարելի է դնել նոցա անմիջական ծագումն, ժամանակամիջոցն և վէպքն և պարագայքը: Այս տեսակէտով ես պիտի խօսիմ աստ:

Բաղդատական լեզուաբանութենէն և 'ի պատմութենէ ապացու-ցեալ մի ճշմարտութիւն է, թէ Հայք՝ արիական ընտանիքը կազմող հնագոյն ժողովուրդներէն մին են, և այնքան աւելի մերձաւոր և հնագոյն, որքան զի լեզուաւ և աշխարհաւ Պարսից և Մարաց ազ-գակից և դրակից են: Այսպէս ուրեմն պէտք է, որ կրօնքով և հայ-բենի աստուածներով ևս անդստին 'ի վաղ ժամանակաց նոցա հետ-սերտիւ միացած լինէին: Թէպէտև Ալարոդեանց կամ Ուրարդայ նախնի բնակչաց պատմութիւնն և կրօնքը՝ **Խալդիականն** կոչուած սե-պաձև արձանագրութեանց տակ՝ իբրև ընդ թանձր քօղով տակաւին ծածկուած կը կենայ. սակայն տոհմային և օտարազգի մատենա-գրաց ձեռքով մեզի հասած հնոյն Հայաստանի աւանդութիւններն, ինչպէս նաև կենդանի լեզուին մէջ գտնուած բառերն և զրոյցներն՝ ըստ բաւականին կը ցուցնեն, թէ Հայք ևս հանգոյն Իրանեանց՝ անդստին 'ի վաղ ժամանակաց ունէին զրադաշտական վարդապե-տութեան **Երկաստուածեան** և այն երկու սկզբանց՝ բարի և չար արա-րածներն. այսինքն է, **Հրեշտակ** (պ. ֆրիշտէ), **Դև** (պ. դիվ կամ տիվա), **Աստուած** (պ. իզատ) և **Քաջ**, և գրեթէ նոյն յարգանքն և պաշ-տօնը կը մատուցանէին նոցա: Եւ յիրաւի, ըստ զրադաշտական վարդապետութեան, զոր ընծայեն հնագոյն գիրքն Զենտ-Աւեստայ, որ կը կոչուի **Եզաշնա**, և ըստ մերոյս Եզնկայ, **Եղծ Քեշին Պար-սից**, Զրուան կը նկատուի իբրև անձնաւորութիւն[1] անորիշ ժամա-

1. Հերոդոտոսի աւանդածին համեմատ, Ա. գլ. ճԼԱ. 'ի սկզբան՝ գերա-գոյն աստուածն Իրանեանց էր «պարունակն երկնից». իբրև զգեստ ունէր նա զկամարն հաստատութեան. նորա մարմինը լուսաւոր էր, գե-րապանծ, և անսահման: Իսկ աչքն՝ էր նորա արեգակն, ըստ Դարմըշ-տէտէրի, Ormazd et Ahriman, p. 30, որով կը դիտէր զերկրայինս ա-մենայն:

նակի կամ թաղին Նպիկուրեանց, յորում կը սկզբնաւորին[1] նախ Ահուրա—մազդա կամ Որմիզդ, իբրև արարիչ երկնի և երկրի. և նորա մակդիրներն են ամենիմաստ, լիառատ, ամենակալ, ամենաբարի և Հայր ամենայն դից կամ Իզատաց: Այսպէս կը ներկայացնեն մեզ գիրք Ագաթանգեղայ՝ Հայոց Արամազդը: Յէջ 61, կը կոչուի նա «մեծ և արի Արամազդ, արարիչ երկնի և երկրի». և յէջ 590, «Հայր դիցն ամենայնի»: Գողթան մուսայից՝ Վահագնի վերայ յօրինած երգին վերջի տողը, թէ «Աչկունքն էին արեգակունք», ուղղակի կը յիշեցնեն Զրուանեանն Արամազդայ մասին եղած հնագոյն աւանդութիւնը, զոր 'ի մէջ կը բերէ և հուչակաւորն Դարմըշտէտէր՝ վերոյիշեալ տեղում: Այսպէս նաև Արտաւազդայ երգին մէջ յիշուած Քաջերն և Աստուածները՝ կը հաստատեն Արամազդայ բարի արարածոց գոյութիւնն և պաշտօնն առ Հայս:

Ե՞րբ մտաւ արդեօք Արեաց Ահուրա—մազդայի պաշտօնը՝ սոյն յարակից մակդիրներով՝ հայ ազգաբնակութեան մէջ: Անշուշտ յառաջ կամ գէթ 'ի ժամանակս տիրապետութեան Դարեհի Վշտասպեայ, և ոչ յետոյ, առ որով Հայաստանն եղաւ մարզ Պարսից և անցաւ 'ի շարս 25 աշխարհաց, որք յական յանուանէ կը յիշուին Պերսեպօլեայ արձանագրութեան մէջ: Եւ ստուգիւ, այս բանիս ապացոյց կը համարիմ ես Ա. Անուշաւանայ և Արա գեղեցկի մասին եղած հնագոյն աւանդութիւնքը, յորս Արամազդայ կամ մի այլ անձնաւոր աստուածութեան հետքն անգամ չի տեսնուիր, այլ պարզապէս բնութեան պաշտաման: Բ. Գէթ ըստ վկայութեան պատմական յիշատակարանաց, Զրադաշտ մոգին ձեռքով սկսան երկնային պարունակին և բնութեան երևոյթներն անձնաւորիլ 'ի յԱհուրամազդայ. և Զրադաշտ, ըստ ընդհանուր կարծեաց, Դարեհի Վշտասպեայ ժամանակակից էր. որուն ապացոյց են և Զէնտ—Աւեստա գիրքը, որ այդ ժամանակէն աւելի հին չկարէ լինել, սակս այլևայլ պատճառաց: Գ. Ուրարդայ և նորա սահմանակից և համասեռ ժողովրդոց արձանագրութեան մէջ ևս՝ տարբեր չաստուածներ կը յիշուին, և ոչ ոք 'ի բանասիրաց մինչև ցայժմ գտաւ անդ հետս ինչ Արամազդայ:

Ագաթանգեղայ գրոց աւանդածին համեմատ՝ Արամազդայ անդրին և գլխաւոր մեհեանը կանգնուած էր յամուրն Անի, որուն հովանաւորութեան ներքև կը ննջէին 'ի քուն տարտարոսի՝ թագաւորք Հայոց: Նորա սեփականուած նուէրքն էին 'ի չորքոտանեաց՝ զոյգք սպիտակ ցլուց, նոխազաց, ձիոց և ջորիներու և այլ ընդանի կենդանեաց. որովհետև ըստ վկայութեան Եզնըկայ, Մասպերոյի և Հայդի,

1. Որովհետև, ըստ վկայութեան Մասպերոյի, Hist. Anc., l. IV, ch. XI, յետոյ ուրեմն անձնաւորեցին երկնից պարունակն, որ, ըստ սեպաձև արձանագրութեանց, Ահուրամազդայ կ'անուանէր. ըստ Զենտաւեստեան գրոց՝ Որմուզդ կամ Որմազդ: Ահուրա՝ կը նշանակէ կենսունակ կամ հոգեկան էութիւն, որ հասարակ է նաև Ազատաց և Դիւաց: Իսկ Մազդա կամ Մազդաոյ՝ կը նշանակէ իմաստուն կամ իմացութիւն, և այս յատկութեամբս՝ Արամազդ գեր 'ի վերոյ կը դասուէր ամենայն դից;

այս կենդանիներս՝ Որմզդէն ստեղծուած և Որմզդին արժանավայել և բարի արարածներ կը համարուէին: Սակայն դիտելու ենք, որ ինչպէս Պարսիկք՝ այսպէս և՛ Հայք, հաւանօրէն յետ արշաւանաց մեծին Աղեքսանդրի կամ թէ շատ՝ առ Արտաշէսիւ, սկսան Արամազդայ մեհեան կանգնել և կենդանիս յազել. իսկ յառաջագոյն ոչ անդրիս, ոչ տաճարս և ոչ բագինս ունէին, ըստ ականատես վըկային [1], այլ բարձանց վերայ կը կազմէին խարոյկս՝ սրբազան հուրը վառ պահելու համար: Եւ ստուգիւ, այս պատճառաւ է, որ Պարսից Աքեմենեան թագաւորները անհաշտ ատելութեամբ կը կործանէին իրենց թշնամի ազգաց դից արձանները և մեհեանները, ըստ միաձայն աւանդութեան հին պատմագրաց:

Առ Մ. Խորենացւոյ ևս կը գտնենք երկուս տեղիս, յորոց քաջ կը տեսնուի, թէ արդարև Հայոց դիցաբանութեան սկիզբն և կրօնքն՝ եղած է զրադաշտական: Հեղինակս իւր պատմագրութեան Ա. Գրոց Թ. գլխում, յէջ 50, յանուն քաղդէարէն մատենին կը ծանուցանէ, թէ Հայոց նախաժամանակեան աւանդութեան սկիզբն եղած է Զրուան: Իսկ յէջ 48, մի և նոյն գլխոյն, Վաղարշակ թագաւորը կը գրէ առ թագաւորն Պարսից Արշակ վասն Հայոց, թէ «Ոչ կարգք ինչ լեալ աստ յայտնի, և ոչ մեհենից պաշտամանց»: Իսկ այն թղթին հետևեալ խօսքերը. «Արշակ թագաւոր երկրի և ծովու, որոյ անձն և պատկեր որպէս և է իսկ մեր աստուածոց», կը ցուցնեն, թէ կոփածոյ անդրեաց մուտքն եղաւ աղանձին գործ Պարթևաց, որոնք այս յաւակնութիւնս ունեցան զրադաշտական և անվայրափակ աստուածութիւնքը՝ թանձրացնել և փակել յարձանս և 'ի ձեռակերտ մեհեանս: Սակայն երբ Պարթև հարստութեան՝ կը յաջորդէ Սասանեանն, անդէն և անդ դարձեալ կը կործանին անդրիք դից, և միհրական հուրը՝ զոյգ ընդ արեգական կը բորբոքի մշտավառ 'ի յերկինս և յերկրի:

Յետ երկնայնոյն Արամազդայ՝ հնագոյն և ջերմագոյն պաշտելին 'ի դիս՝ էր Տիկինն երկնից կամ չինչ եթերաց, Անահիտ: Այս դիցուհիս՝ շփոթած է Հերոդոտոս, Ա. գլ. ՃԼԱ, ընդ Միհր աստուածոյն: Սակայն Աքեմենեանց արձանագրութեանց [2] մէջ կը յիշուի Անահիտ, առ Ուշեղն Արտաշիսիւ, որիշ 'ի Միհրայ: Մերթ շփոթած են մատենագիրք զՏիկինն Հայոց՝ ընդ Դիանայի և Վէնէրէի (Աստղկան) Լատինաց, և մերթ ընդ Ափրոդիտէին Յունաց: Անահտայ պաշտօնը շատ հին [3] էր և տարածուած առ ամենայն ազինս. այսինքն է, 'ի

1. Հերոդոտոս, Ա. գլ. ՃԼԲ: Ստրաբոն ևս, Ա. ԺԵ. 3, կը համաձայնի յայսմ Հերոդոտոսի:
2. Տես Փ. Շմիդ. Հին պատմ. Արևելից. Գ. գլ. ԺԸ:
3. Պղատոն, 'ի Տիմէի, կ'ըսէ, թէ յԵգիպտոս 'ի Սայիտիկեան նահանգի կը պաշտուէր Նէիթ Nηϊθ: Նոյն վկայութիւնը կու տայ նաև Հերոդոտոս, Բ. գլ. ԿԲ, մանրամասն նկարագրութեամբ տօնին և հանդիսի դիցուհւոյս, զոր և «Հանդէս ճրագալուցի կամ լուսաւորութեան» կ'անուանէ: Փիլ. Շմիդ, Stor. antica dell'Oriente, Ed., Firenze, 1872, l. I, c. VIII, p. 166, Եգիպտացւոց Նէիթը՝ Յունաց Ἀθηνᾶի հետ նոյն կը հա-

Մեմփիս, 'ի Պարսկաստան, 'ի Բակտրիա, 'ի Մարաստան, յՆլիմայիս, 'ի Կապադովկիա, 'ի Լիւդիա, 'ի Պոնտոս և 'ի Հայս: Սեմական ազ_ գաց մէջ՝ կը գտնենք Անահտայ անուան հետքը միայն, բայց բոլորո_ վին տարբեր յատկութեամբ: Ըստ իս, առանց երկբայութեան է, թէ Հայոց Անահիտը՝ Պարսից اناهيد ի (Anahîd) հետ նոյն է, որ կը գտնուի առ Արդուի-սուրա-Անահիտ: Պարսկական անուանս սկզբնական և թանձրացեալ նշանակութիւնն է չափահաս կոյս կամ օրիորդ: Ըստ ասելոյ Վինդիշմանի, Անահիտ անուան առաջին վան_ կը կամ տառն՝ է բացասիչ Նահիտ (Nahid) անուան, որ անմա_ քուր կը նշանակէ: Ըստ այսմ մեկնութեան՝ Անահիտ կը լինի մա_ քուր: Նոր պարսկերէնի մէջ Նահիդ կամ Նահիդէ (ناهيد և ناهيدى), նախ Արուսեակ կը նշանակէ. երկրորդ՝ ինչպէս ըսուե_ ցաւ, աղջիկ՝ որուն ստինքներն են նոնաձև գնդակացեալ. ուստի չեմ գիտեր թէ Վինդիշման յինչ հիման վերայ կը հաստատէ իւր մեկնութիւնը: Ջեմ գիտեր դարձեալ, թէ Հա՛յք, եթէ, ընդհակա_ ռակն, պարսիկք յաւելին զբացասիչ մասնիկն — 'ի վերայ Նահիտի, վերոյիշեալ իմաստն առաջ բերելու համար: Սակայն կարեմ ասել, թէ Հայք՝ բոլորովին տարբեր տիտղոսներով կը պաշտէին զԱնահիտ, զոըս 'ի զուր է որոնել առ Եգիպտացիս և առ Քաղդէացիս: Ոչ մի_ այն ըստ անուանակոչութեան այլ և ըստ էութեան՝ հազիւ թէ աղօտ գաղափար մի կու տան մեզ Անահտայ մասին այդ սեմական ժողո_ վուրդները. մանաւանդ թէ ոչ նրբէք իբրև առանձին աստուածութիւն մի կը ներկայացնեն զայն՝ իւր յատուկ տիտղոսներով. այլ մերթ կը շփոթեն Անու աստուածոյն հետ, որ է Ահուրամազդա. և մերթ այլ Բէլտիսի և Ջարպանիտի իգական աստուածութեանց հետ մի մի_ այն անձնաւորութիւն կը նկատեն: Միայն Իրանեան ժողովրդոց քով կը գտնենք զԱնահիտ՝ իբրև նախատիպ Հայոց Անահտայ: Ցիրաւի, զենտաւեստեան գրոց (Farg. VII, 16) մէջ Արդվի-Ցուրը՝ իւր մաղթանաց մէջ հետևեալ խօսքերը կ'ուղղէ առ Անահիտ. « Արդվի սուրա Անահիտա » (ardui çoûra Anahita). այսինքն է, Աստուա_ ծուհին ջրոց՝ որ առոգանէ զերկիր. և կամ ըստ Վինդիշմանի, յոր_ դաառատ, զօրաւորագոյն և ջինջ մաքրաբիւն: Դարձեալ, մի և նոյն գրոց մէջ (2. 5) իբրև սեփական գործ ընծայուած է Անահտայ՝ մաք_

մարի, ըստ էական տառից, որոնք տարբեր կարգաւ շարուած են: Քաղդէացիք՝ Անատ (Anat) կը կոչէին զայն և կը պաշտէին իբրև իգա_ կան անձնաւորութիւն Լուսնի, որուն հետ կը զուգէր արական սկիզբն Անու (Anou), այսինքն է, անձնաւորութիւնն երկնից կամ երկինք: Այս մասին, ինչպէս նաև քաղդէական երրորդութիւնը կազմող միւս դից և դիցուհեաց մասին, մանրամասն տեղեկութիւններ կ'ընծայեն մեզ Մաս_ պերոյ, Hist. anc. de l'Orient. La Chaldée, ch. IV, և Գ. Ռաւլինսըն, The five great Monarchies, T. I, p. 115–125: Ստրաբոն, ԺԱ. էջ 512, կ'աւանդէ, թէ Անահտայ պաշտօնն՝ առ Կիւրոսիւ արդէն տարածուած էր 'ի Մարս, հանդերձ արարուածովք Սաքաց: Իրանեանց ամենահին աւանդութեանց և զէնտավեստեան գրոց (Visp. 1-5. — Jaçna, XVII, p. 75. — Rashau, V. 25. — Farv. V, 4-8. — Farg. VII, 16) մէջ իսկ յիշուած կը գտնենք Անահտայ անունն:

րել զսերմանս մարդկան, սրբել և հասունացուցանել զամենայն սաղմ իգական արգանդի 'ի ծնունդ, և ածել նոցա զկաթն առ 'ի դիեցումն: Այսպէս ուրեմն, ըստ զրադաշտական վարդապետութեան, թէպէտև Ահուրամազդան՝ (երկինք) է հայր ամենայնի և կենդանութիւն բուսոց և կենդանեաց, բայց իւր. դստեր Անահտայ (Լուսնին) և որդւոյն Միհրայ (Արեգական) միջնորդաւ կ'արգասաւորէ և կը պահպանէ զամենայն: Երկրորդ, Անահիտը թէ՛ է աստուածուհի մաքրութեան և թէ՛ արգասաւորութեան կամ. ջրոյ, երկնային երևութիւ:

Իսկ առ Ագաթանգեղ, յէջ 51, կ'ըսուի. «Մեծին Անահտայ տիկնոջ, որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ». յէջ 61. «Որով կեայ և կենդանութիւն կրէ երկիրս Հայոց, և ընդ նմին զմեծն Արամազդ զարարիչն երկնի և երկրի». և յէջն 52. «Որ է մայր ամենայն ըզգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան, և ծընունդ՝ մեծին արին Արամազդայ»: Այս կրկին ազգացս՝ կրկնակի աւանդութիւններէն կը տեսնուի, թէ Անահտայ մակդիրները, որովք կը մեծարէին Հայք և Պարսիկք, էին Կոյս արգասաւոր, Ակն մաքրութեան, բարերար, խնամակալ, կեցուցիչ և ծնօղ երկնից կամ Արամազդայ, և մայր զգաստութեան: Սակայն հայ ժողովրդեան քով՝ Անահտայ անձնաւորութեան մասին կազմեալ գաղափարականը՝ շատ աւելի որիշ է և բարձր. մանաւանդ թէ վերջին մակդիրն՝ ուղղակի Հայք սեփհականած են նմա, որ է առհաւատչեայ նոցա բարձր բարոյականութեանը:

Դիցուհւոյս գլխաւոր մեհեանքն, յ'Գ. և 'ի Դ. դարս, էին, ըստ վըկայութեան Ագաթանգեղայ գրոց, յԵրէզն աւան, 'ի Յաշտիշատ և յԱրտաշատ: Յոյժ բազմագանձ էին, ոչ միայն ատոնին՝ այլ նոյն իսկ օտարազգի թագաւորաց և կայսերաց ընծայիւք: Ոսկեմօր ոսկեծին արձանը՝ կը շողշողէր արծաթեայ անօթոց, զինուց և զրահից մէջ, զորս կը նուիրէին նմա իբրև խնամակալ մօր: Բայց նորա յատուկ նուէրքն էին արդիւնք երկրի, զորոց զսերմանս նա ինքն կը մաքրէր. «Թաւ ոստք ծառոց» և հոյլ հոյլ պսակք ծաղկանց և վարդից, զորս Գրիգոր մերժեց տանել նմա: Նորա տօնն իսկ կը կատարէին Հայք 'ի ժամանակս վարդենեաց, որ կը կոչուէր «Վարդավառ», և դիցուհին տօնին՝ «Վարդամատն»:

Անահտայ պաշտօնն՝ ուղղակի 'ի Պարսից անտի ժառանգեցին Հայք, և յառաջ քան զնշեղն Արտաշէս. որովհետև Հերոդոտոս կ'ըսէ, թէ իւր ժամանակն իսկ՝ շատ ընդարձակուած էր Անահտայ պաշտօնն առ արիական ժողովուրդս: Հերոդոտոսի կը համաձայնին Պերոզ, Ստրաբոն[1] և Պաւսանիաս[2]: Բ. Նշանաւոր մատենագիրք[3]

1. Ստրաբ. Կազաբոն. էջ 531, կ'ըսէ. Ἅπαντα μὲν οὖν τὰ τῶν Περσῶν ἱερὰ καὶ Μῆδοι καὶ Ἀρμένιοι τετιμήκασι, τὰ δὲ τῆς Ἀναΐδος διαφερόντως Ἀρμένιοι, և այլն:

2. Գ. գլ. 16. § 6, կը հաստատէ, թէ Անահտայ պաշտօնն 'ի հին ժամանակաց հետէ հաստատուած էր 'ի Հայս, և թէ ինքը տեսած էր նորա մեհեանն 'ի Ջէլա:

3. Windischmann. p. 7, 20. — Hyde. — Al. Maury, և այլք:

կը հաստատեն, թէ առ Արտաշէսիւ՝ ոչ թէ Անահտայ պաշտօնը նոր ինչ հաստատեցաւ, այլ նորա արձանաց և մեհենից կիրառութիւնը. որով կը համարուի Արտաշէս իբր խանգարիչ զրադաշտական վարդապետութեան, այնու զի շփոթէր յաճախ զԱնահիտը՝ Նահիտի կամ Աստղկան հետ: Գ. Հայերէն Անահիտ հնչումն և ուղղագրութիւնն՝ ըստ ամենայնի նոյն են ընդ պարսկերենին: Դ. Ըստ վկայութեան Կղեմ. Աղեքսանդրացւոյ, Անահտայ արձանը՝ զոր կանգնեց Արտաշէս 'ի Տօշ, էր հանգոյն Անահտայն Հայոց՝ համակ ոսկի:

Յետ լսելոյ զգեղեցիկ բարեմասնութիւնս խնամակալ տիկնոջս հեթանոս Հայաստանի և մօրն զգաստութեան, առ Ագաթանգեղ, զարմանք կ'ազդէ մեզ և տաղտուկ լսելեաց, Ստրաբոնի մի ուրիշ տեղին, յորում կը պատմէ, թէ Հայոց մեծամեծաց օրիորդները՝ դեռ չամուսնացած կ'ընծայուէին Անահտայ, և 'ի մեհենի անդ տային զկուսութիւն իւրեանց 'ի մծղնէութիւն, և այնու՝ իբր թէ յազնուութիւն վերառեալ՝ կը յանձնուէին ապա իրենց փեսաներուն:

Պարոն Էմին՝ առաջի աչաց ունելով Ագաթանգեղայ վերոյիշեալ տեղիքը՝ կարևորութիւն չի տուաւ յոյն աշխարհագրի աւանդութեանը, մանաւանդ թէ իբրև սխալ մերժեց իսկ: Սակայն իմ կարծիքով, Ստրաբոնի աւանդածը՝ ճշմարիտ համարելու եմք. որովհետև նա չորս դար յառաջ էր քան զհեղինակ գրոցն Ագաթանգեղայ, գուցէ թէ ականատես իսկ եղած էր աւանդելոցն: Բ. Ինչպէս առ Քաղդէացիս՝ Անատը կը փոխակերպէր 'ի Բէլիտ, Անու արական չաստուածոյն հետ ունեցած վերաբերութեան առթիւ, և առ Պարսիկս՝ Անահիտէ կը փոխակերպէր 'ի Նահիտէ՝ Միհրայ հետ ունեցած յարաբերութեամբը, (զի այսու միայն կը ստուգուի Հերոդոտոսի բանը, թէ Պարսիկք՝ Անահիտէ նոյն կը համարին ընդ Միհրայ): Այսպէս ևս առ Հայս՝ կ'երևի, թէ Անահիտը՝ Վահագնի հետ ունեցած յարաբերութեան առթից մէջ՝ կը նկատուէր իբրև Աստղիկ կամ անձնաւորութիւն իմն ամուսնական սիրոյ և արգասաւորութեան: Եւ յիրաւի, այս բանիս ապացոյց կը համարիմ ես, նախ, Զենոբեան գրոց այն տեղին, զոր յառաջագոյն 'ի մէջ բերի, յորում Անահտայ մասնաւոր գործն համարուած էր սրբել և հաստնացուցանել զսաղմն իգական արգանդին: 2. Ագաթանգեղայ, յէջ 607, տեղին, ուր Յաշտիշատայ մեհենին մէջ՝ Վահագն, Անահիտ և Աստղիկ 'ի միասին կը գտնուէին, և կը կոչուէր այն մեհեանը «Սենեակ Վահագնի». իսկ յէջ 34, եօթն բագինք միայն կը յիշուին դիցն Խոսրովու, յայտ է թէ նոյնացնելով զԱստղիկ ընդ Անահտայ և ոչ այլ ազգ: Զարմանք չէ, որ չաստուածոց այսպիսի վերաբերութիւնն անգամ՝ հեթանոսութեան պաշտօնեաները զգաստութիւն համարէին, և զԱնահիտ՝ մայր զգաստութեան. զի հեթանոսութեան պաշտամունքն ինքնին էր անառակութիւն: Ուստի Անահտայ Տիկնոջ հովանւոյն ներքև՝ աստղկաբար Վահագնի հետ պոռնկիլը՝ իրենց մեծ պատիւ և հրահանգ կը համարէին՝ առ ամուսնութիւն անդր ընդ մարդկան. զի ամենայն գործք աստուածոց՝ սրբազանք կը համարուէին առ հեթանոսս: 3. Ստրաբոնէն մինչև ցդարձն Հայաստանի՝ գրեթէ չորս դար անցած լինելով,

կարելի էր, որ Անահտայ պաշտօնն ալ՝ այս ժամանակս աւելի ազնուացած և կամ փոփոխութիւն կրած լինէր, ըստ քաղաքական կացութեան Հայաստանեայց: Այսչափս բաւական ըլլայ Արամազդայ դստեր մասին. դառնանք այժմ խօսել նորա որդւոյն վերայ:

**Միհր**, զոր յիշեն գիրք Ագաթանգեղայ, յէջ 593, իւր պարսկական հնագոյն հնչմամբը. Ցոյնք Միթրա կը կոչէին: Սա էր որդի[1] և բան Արամազդայ, որով արար զերկիր և զերկրայինս, և եղբայր Անահիտ տիկնոջ կամ իշխանուհւոյն գիշերոյ: Նորա անունն ևս կը գտնուի Զենտաւեստեան հնագոյն հատուածոց մէջ. և Իրանեանք կը պաշտէին զնա՝ իբրև անձնաւորութիւն հրոյ կամ իշխանին տուընջեան, որ կ'ընթանայր անդուլ անդադար անծայրածիր միջոցի մէջ. վեց հազար աչքերով կը դիտէր և կը տեսնէր զամենայն ինչ. և վեց հազար ականջօք կը լսէր զամենայն: Միշտ պատերազմի մէջ էր ընդ Արհմնի և Դիւաց նորա. նա կը հովանորէր բոլոր արարածներն և կը բեղնաւորէր զերկիր. կը քննէր[2] մարդկանց և դից գործերն՝ յաւիտենականութիւն անդր տանող կամուրջէն անցած ժամանակ, զոր Պարսիկք Տ[illegible] կ'անուանէին: Օրուան մէջ երից օգնութեան կը կոչէին, և տարւոյն չորրորդ ամիսը՝ նմա նուիրեալ էր: Միհրական պաշտօնն՝ անդստին 'ի վաղ ժամանակաց հետէ հասարակ էր առ ամենայն իրանեան ժողովուրդս. բայց բուն Պարսիկք եղան, որք անձնաւորեցին զնա յարեգակն և պէսպէս կերպարանօք ներկայացուցին: Հնագոյն խորաքանդակներու մէջ, զոր ընծայեն մեզ հնախոյզք[3]. Միհր կը ներկայանայ իբրև առոյգանձն պատանի, փռիւգական խուրիւ և կանաչագոյն լօդկաւ. մենամարտութեան դիրքով հեծած է ցլու մի վերայ, բուռն հարեալ զեղջերէն, և զդաշոյն բունալիր մխած է 'ի պարանոց նորա: Մերթ անձնաւորեալ է յառիւծ. մերթ ճառագայթարձակ և ոսկենամուկ ծիրանեօք մարդադէմ մի. և մերթ կը հալածէ զվիշապս կամ զարարածս չար սկզբան:

Արդ, միհրական դիքն և նորա պաշտօնն ալ՝ զոյգ ընդ Արամազդայ և Անահտայ, գրեթէ միաժամանակ, 'ի Պարսից անտի էանց առ Հայս: Ցիրաւի, այն ժամանակէն 'ի վեր՝ ելք Հայաստան, ըստ վր-

1. Եզնիկ, Եղծ Քէշին Պարսից, յէջ 139. տպագր. Վենետկոյ, 1826. Պարսից հնագոյն աւանդութիւնը մէջ կը բերէ, ուր Արհմն խորհելով ընդ դևս՝ կ'ըսէ այսպէս. «Զինչ օգուտ է Որմզդի, զի զայնպիսի գեղեցիկ արարածս արար՝ և 'ի խաւարի կան, զի լոյս ոչ գիտաց առնել: Արդ, եթէ իմաստուն էր, ընդ մօրն մտանէր, և արեգակն որդի (Միհր) ծնանէր. և ընդ քեռն անկանէր և լուսին (Անահիտ) ծնանէր: Զայն լուեալ Մահմեայ դիւի՝ վաղվաղակի առ Որմիզդ հասանէր և զխորհուրդն նմա 'ի վեր հանէր»: Եւ յէջ 141, թէ «ի մայրենի և 'ի քեռական առականէ արեգակն և լուսին արարան»:

2. Եզնիկ, թ. էջ 140, անգիր աւանդութենէ մ'առած կը պատմէ, թէ «Արհմն, ասեն, զՈրմիզդ 'ի ճաշ կոչեաց. և եկեալ Որմզդի՝ չկամեցաւ զճաշն ուտել, եթէ ոչ նախ որդիքն նոցա կռուիցեն: Եւ 'ի խեթկել որդւոյն Արհմնի զորդին Որմզդի, 'ի խնդիր եղեն դատաւորի և ոչ գտին. ապա առեալ արարին զարեգակն զի լիցի դատաւոր»:

3. Hyde, De Religione Persarum, p. 111. Tab. I.

կայութեան ատտիկեան մեղուին, ամ ըստ ամէ 20,000 իւր գեղեցկագոյն նժոյգներէն կը պատրաստէր և կը ղրկէր 'ի հանդէս միհրական տօնին, կարելի բան չէ, որ ինքն ևս նմա պաշտօն և զոհ մատուցած չլինէր: Բ. Հայաստանի ամենէն հնագոյն քաղաքին Արմաւրայ մէջ՝ **Արեգական** և **Լուսնի** անդրիք և մեհեանք կանգնուած էին: Գ. Ապացոյց միհրական պաշտաման առ Հայս՝ է դէպ 'ի յարևելս դարձած աղօթելու սովորութիւնը, զոր ըստ վկայութեան Հայոց, քրիստոնեայ Հայաստանը՝ հեթանոսականէն ժառանգեց: Ցիրաւի, այս բանս կը հաստատէ նաև Զենոբ, Տարօնի պատմութեան 34 ի ջում, ուր կ'աւանդէ, թէ եկքն Հնդկաց՝ այսու ևս կը տարբերէին 'ի Հայոց, « զի նոքա յարևմուտս երկիրպագանէին » . որ է ըսել, թէ Հայք խսկ՝ 'ի հնումն դէպ 'ի յարևելս կ'երկրպագէին: Դ. Մ. Խորենացի 'ի պատմութեան անդ Հռիփսիմեանց, կը յիշէ, թէ **Բագարան** լերան մօտ՝ բաց 'ի մեհենէն Արամազդայ և Աստղկայ, կայր նաև « Տուն **կրակի** և **տեղի հրոյ**՝ անդադար այրման սատուածոցն. քանզի վառէին **զկրակն**՝ **հուրն** և աղբիւրն՝ **ջրհեղոյրն**: Եւ յայրս քարին որջացեալ կային **Անշէջ երկու դիւացեալք և մեռեալք** »: Արդ, Մովսէսի այս աւանդութենէն յայտնապէս կը տեսնուի, թէ Ա. Հայաստանի սահմաններուն վերայ կը կատարուէր իրօք Միհրայ կամ կրակի մշտապաշտօնն. թէ այդ պաշտօնը պահուած էր զրադաշտական հին վարդապետութեան համեմատ. և թէ Արշակունի թագաւորք մեր ուրիշ բան չէին ըրած՝ բայց եթէ փակել զանվայրափակն՝ ընդ վայրօք անդրեաց և մեհենից: Ե. **Մհերի դուռն** և նորա անձնաւորութեան մասին եղած հին աւանդութիւնն և գեղեցիկ վէպերն, որք մինչև ցայսօր կենդանի պահուած են Վանայ և Տարօնի ժողովրդեան մէջ, զոր կը յիշէ Գ. Վ. Սրուանձտեանց՝ իւր **Գրոց և Բրոց** սիրուն երկասիրութեան մէջ, ուղղակի զՄիհր կը ներկայացնեն մեզ, հնոյն Հայաստանի կրօնական և քերթողական սրբալուածներովն: Ցիրաւի, Մհերի՝ իւր ձիոյն հետ **Զըմզըմէ մաղարայի** մէջ փակուիլն, բաղդի անիւը դարձնելն և հուսկ 'ի կատարածի աշխարհիս դուրս գալն՝ Արտաւազդայ առասպելին շատ նման է. և կ'երևի, թէ մի և նոյն ժողովրդէն ծագումն առած է և երգուած դարուց 'ի դարս: Սակայն գալով Մովսէսէն մէջ բերուած տեղւոյն՝ պէտք է ըսել, թէ կամ կը սխալի և կամ նորա մէջ բերուած տեղին՝ գրչագրաց ձեռքով խանգարուած է, որով կրակը՝ փոխանակ, ըստ զրադաշտական վարդապետութեան, եղբայր կոչուելու՝ **հուր** կոչուած է. ինչպէս աղբիւրը կամ Ջրային տարրը՝ փոխանակ քոյր ըսուելու՝ եղբայր անուանուած է: Այսպէս ուրեմն անուամբ կրակի և եղբօր՝ Միհր կամ արեգական պաշտօնը կը հասկցուի, և անուամբ Ջրոյ և քեռն՝ Անահտայ կամ լուսնի պաշտօնը: Իսկ երկու վիշապները՝ կը ներկայացնէին Միհրայ բարի սկզբան հակառակորդ՝ Ահրիմանի և **Մհերա Դուռան** չար սկզբանց անձնաւորութիւնքը , զորս , ըստ զենտաւեստեան հնագոյն յիշատակարանաց, « Ցաղթողն Միհր », ւպարտելով ընկէց յերկնից յերկիր՝ երկոտանի օձու կերպարանքով:

Հաւանօրէն նոյն անասուններն կը զոհէին Միհրայ նաև Հայք.

զորս զոհէին Պարսիկք: Բայց կ'երևի, թէ Դերջան գաւառի մէջ՝ մարդազոհեր ևս կ'ընէին, համգոյն դրացի բարբարոս ժողովրդոց, զորս կը յիշէ Դէզօբրի իւր Պատմական–աշխարհագրական բառարանի մէջ: Զայս կը թուի ակնարկել նաև Ագաթանգեղոս, յէջ 593, որ յետ յիշելոյ զմիրհական մեհեանն 'ի Բագայառիճ, կը յարէ. « Եւ զխաժամուժ և զխոշորագոյն քուրմս հեթանոսութեան շրջել 'ի զգաստութիւն »: Սակայն իբրև պատմական իսկ ընդունելով այսպիսի մի եղելութիւն, ես կախորժիմ ըսել, թէ Հայք ոչ եթէ Արամազդայ որդւոյն Միհրայ կ'ընէին մարդազոհեր, զոր և իրենց բարերար և պաշտպան կ'անուանէին, այլ Միհր–Դարաժի և Արհմնի չարարար սկզբանց, զանոնք իրենց հետ հաշտեցնելու և անոնց չարիքներէն ազատելու նպատակաւ: Եւ ստուգիւ քիչ յառաջ յիշուած Մովսիսի տեղւոյն մէջ, յետ յիշելոյ այն երկու դիւացեալ և սևացեալ (Խարամանի) վիշապներն, անդէն կը յարէ. « Որոց զինաքին աղջէին կայս և զտառապանս անձանց »: Միհր աստուածոյն և նորա պաշտաման, առ Հայս, յաջորդաբար զարգացումը՝ Վահագնի արարուածներով դեռ աւելի պիտի պարզուին:

**Վահագն.** — Բ. Գիրքն Ագաթանգեղայ, յէջ 606, յիշելով զՎահէվահեան մեհեանն 'ի Տարօն, « ութերորդ » պաշտօն մ'ևս կ'աւանդէ, անդուստ 'ի վերուստ հաստատեալ յանուն Վահագնի, որուն մականունն էր Վիշապաքաղ: Որքան որ հետաքրքրական է սոյն տեղին՝ նոյնքան ևս մթին: Արդ, հետևեալ երեք անուանքս, այսինքն է, Վահագն, Վահէվահէ և Վահունիք, ունին հասարակաց զարմատականս Վահ: Բայց թէ Վահեվահեան և Վահունիք՝ 'ի Վահագնէ՞ իրօք ծագած իցեն, այս տարակուսելի կ'երևի ինձ: Մ. Խորենացին այսպէս հասկացած է և կ'աւանդէ մեզ[1]: Առ այժմ թողլով Վահագնի գոյութեան պատմական խնդիրն, լեզուաբանական օրինաց կազմութեան համեմատ, Վահունիք՝ պէտք էին կոչուիլ ըստ ինքեան Վահագնունիք, և Վահեվահեանը՝ Վահագնեան, եթէ իրաւցնէ Վահագնէն ածանցած լինէին: Բ. Վերոյիշեալ մեհեանն՝ եթէ Վահունեանցմէ ածանցած լինէր, պէտք էր որ Վահունեան կոչուէր, և ոչ թէ Վահեվահեան: Կարելի չէ՞ արդեօք ըսել, թէ Վահունի՝ ցեղն և Վահեվահեան մեհեանը՝ Վահէ անուանէն առաջ եկած լինին, որ իւր տարաբաղդիկ բայց դիւցազնական մահուամբը՝ անմահ դից պաշտօն ստացաւ 'ի նախնի հայկազանց: Այսպիսի մի եղելութեան, թէ և ըստ ինքեան կարելի, բայց ոչ գրաւոր և ոչ այլ անգիր աւանդութիւններ հասած են առ մեզ՝ 'ի հաստատութիւն, բաց 'ի քաջաղիպութենէ անուանս, յորմէ իբրև 'ի նախնական արմատէ կազմուած կ'երևին վերոյիշեալ անուանքը:

1. Պատմ. Գիրք Ա. գլ. ԼԱ. մէջ բերելով զՎահագն. իբրև զմին՝ յորդւոց Երուանդեանն Տիգրանայ, կը յարէ այսպէս. « Այլ ասէին (գող թան մուսայք) զսա ևս աստուածացուցեալ. և անդ յաշխարհին Վրաց զսորա չափ հասակի կանգնեալ պատուէին զոհիւք: Եւ սորա են զարմ Վահունիք »:

Վիստոնեան [1] եղբարք՝ իրօք զանղիկ վահ (Vah) արմատականէն ածանցած կը համարին զանունս վահագն (նոյնը պէտք է ըսել նաև Վահէի համար), որ կը նշանակէ բոցոյ: Գ. Լագարդ՝ [2] Հայոց Վահագնը նոյն կը համարի Բակտրիական վերեթրագնայ (Vereθragna) հետ. դիտելով, որ Սելևկոսէն վերջ 'ի Հայս ներմուծուած բակտրիական բառերում թրա՝ (θra) նոյնահնչիւն է հայերէն հազագային հ տառին. բայց կը յաւելու, թէ Վահագն անունը՝ հայերէն լեզուի հնագոյն բովուց մէջ որոնելու [3] է: Իսկ Շպիկէլ [4] նոյն կը համարի զՎահագն՝ ընդ վադագնայ (Vadagna): Վահագն անունն՝ մեծ նմանութիւն ունի Արեաց վայու (Vayou), կամ վաէ-ի-վեհ [5] (Vae-i-veh) անուան հետ, որ, ըստ վկայութեան Դարմշտետէրի [6] և Մասպերոյի, էր « Մեծն 'ի մեծս իշխանաց, և զօրաւորն 'ի զօրաւորս. աստուած՝ ոսկեղէն զինուց և զրահից և արքանեակ Միհրայ. որ կ'առնոյր զմրրիկս և կը հոսէր ընդդէմ Դիւաց »: Սակայն այս՝ մի ուրիշ անձնաւորութիւն լինելու է, կազմեալ վահ հասարակաց արմատականէն. որով կարելի է մեկնել Վահէի, վահեվահեան մեհենին և Վահունեաց զաղտնիքը: Իսկ Վահագն, իմ կարծիքով, կազմուած է սանսկրիտերէն վահ (Vah) արմատէն, որ կը նշանակէ բերել, բերող, և ագնի agni գոյական անուանէն, որ կը նշանակէ հուր. որուն հետ նոյն է և հայերէն ակն. օրինակ իմն, ակն արևու, ակն վանեայ: որով Վահագն լինի Բերող-հուր (Vah-Agni): Ագնի, արդարև, ըստ վկայութեան Բիւռնուֆի, 'ի դիցաբանութեան անդ Հնդ-արիական ազգաց, էր աստուած հրեղէն, որ ածէր զջերմութիւն և կ'իշխէր հարաւային-արևելեան աշխարհաց: Տես Burnouf, « Dictionnaire Sansc-Francais. » Paris, 1863, p. 8, 573.

Արդ, տոհմային մատենագիրք մեր, Ագաթանգեղայ յոյն օրինակի և Մակաբայեցւոց գրոց թարգմանիչներէն սկսեալ՝ մինչև Ջամչեան և Ինճիճեան, զոգցես իմն Յունաց Հերակլէսի հետ նոյն կը համարին զՎահագն: Սակայն այսու՝ ոչ Վահագնի անուան ծագումն, զոր քիչ առաջ տեսանք, և ոչ այլ հայ ժողովրդեան վէպերը կը մեկնուին: Ըստ իս, մանաւանդ պէտք է ըսել, թէ Հայոց Վահագն՝ թէպէտև իւր հնագոյն անուամբ՝ նոյն է Հնդկաց Ագնի դից հետ, սակայն յետ ժամանակաց՝ Պարսից Միհր աստուծոյն առանձնայատկութիւններն ընդունելով՝ ուրիշ փոխակերպութիւններ ևս կրեց, և այնպէս վէպերու առիթ տուաւ հայ ազգաբնակութեանց: Եւ յիրաւի, նկատմամբ

1. Moïsis Korenensis. 74.
2. Armenische Studien. Göttingen, s. 141.
3. Հայերէնի մէջ կայ վահ իբր հեգնական. և վա՜յ, վա՜յ՝ իբրև աւաղական, բայց կրկնուած. կայ և նախատական ուահ: Սակայն ասոնք ամէնքն այլ բնական կրից ձայներ են և յատուկ կամ հասարակ անուան որակութիւնը կամ բնութիւնը չեն կրնար նշանակել:
4. Heidelb. Jahrbuch. 1866. 1, 650.
5. Mînoôi, Glossary, 203. Տես Լագարդ, Gesammelte Abhandlungen. Leipzig, 1866.
6. Ormazd et Ahriman, p. 110-114. — Maspero, Hist. anc. de l'Orient. Paris, 1886. p. 500.

Ցուրրդուղին՝ Հերակլէսի և Վահագնի արարուածները նոյն են. միայն թէ հնոյն Եգիպտոսի բանաստեղծները կ'երգէին զայն իբրև ճանապարհ՝ ընդ որ ած Հերակլէս զանդեալս և զյարդս Գեբելէնի, թագաւորին Իբերիոյ. իսկ ըստ Գողթան երգչաց՝ տարաւ Վահագն մեր՝ զանդեալս և զյարդս Բուրշամոյ, նախնոյն Ասորեստանեայց: Այսպէս են նաև վիշապաց դէմ ըրած պատերազմաց աւանդութիւնքը: Սակայն դիտելու ենք, որ Հերակլէսի մասին եղած Յունաց այդ աւանդութիւնքն, ըստ ընդհանուր կարծեաց գիտնոց, պատմական տիպ ունին և կը ցուցնեն նախաժամանակի Փիւնիկեցւոց գաղթականութիւնքը: Իսկ Հայոց հետևեալ աւանդութիւնքն, ընդհակառակն, դիցաբանական և կրօնական տիպ ունին գլխովին և մանաւանդ կը ցուցնեն մեզ Պարսից Միհրայ և Հնդկաց՝ Ագնի, կիսաստուածոց իրարացումն և պաշտաման զարգացումն 'ի Հայս, ազգային առանձնայատկութիւններով: Մովսէս՝ կ'աւանդէ մեզ, Վահագնի մասին, յօրինուած հնոյն Հայաստանի մէկ երգը,[1] յորում կը նկարագրուի արեգակն կամ միհրական հուրն, որ կը բորբոքի 'ի ծովու և 'ի ցամաքի և կ'երկնէ: Այս բոցեղէն և ծխաշունչ երկանց մէջէն կ'ելլէ իբրև առոյգանձն պատանի մի Վահագն Հայոց՝ մարդակերպ տեսլեամբ, բայց արեգակնափայլ ականողեօք և հրաբորբոք հերօք, կ'ընթանայ 'ի պատերազմ ընդդէմ խաւարի և չար արբանեկաց Արհմնի: Արդ, ինչպէս կը տեսնեն ընթերցողք, այս հին աւանդութիւնս՝ անտարակուսելի կերպով կը հաստատէ Վահագնի անուան մասին տուած իմ մեկնութիւնը: Ցանկալի էր լսել 'ի Մովսիսէ նաև զերգն վիշապաց, սակայն նա, չգիտեմ, թէ առ իմնչ զանց ըրած է և այսչափ կ'ըսէ, թէ «Յետ որոյ և ընդ վիշապաց, ասէին յերգն, կռուել նմա և յաղթել»: Բայց որ ինչ 'ի պատմութեան աստ զլացաւ նա, Հռիփսիմեանց պատմութեան մէջ շօշափելի յիշատակարանօք կը թուի աւանդել մեզ: Զի յետ յիշատակութեան միհրա_

1. «Երկնէր երկին և երկիր,
Երկնէր և ծիրանի ծով.
Երկն 'ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկ.
Ընդ եղեգան փող ծուխ ելանէր.
Ընդ եղեգան փող բոց ելանէր.
Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր,
Նա հուր հեր ունէր.
Ապա թէ բոց ունէր մօրուս
Աչկունքն էին արեգակունք»:

Գիրք Ա. գլ. ԼԱ:

Այս հինաւուրց երգին՝ կը համաձայնի նաև այժմեան հայ ժողովրդեան դեռ կենդանի վէպը, թէ Արևն 'ի մայրն խոնարհած ժամանակ՝ ծովուն մէջ լոգանալու կ'երթայ. և երբ արշալուսէն առաջ կ'ուզէ Վարագայ սարին ետևէն դուրս ելլել, 12 արքանեակներ այդ սարին վերայ կեցած՝ լուսեղէն գաւազանաւ կը զարնեն, — լեռը կը ցածնայ, — յանկարծ արևու ոսկի գլուխն և հրեղէն գիսակը կամ գլուխը կ'երևի և կ'ընթանայ. — նորա վառարանէն՝ լուսոյ և հրոյ ճառագայթներ կը ցոլան ամէն կողմ, — բիւրաւոր սատանաներ կը ժողովին երբեմն և կը ջանան խափանել, բայց նորա արքանեակ հրեշտակները՝ կը զարնեն և կը հալածեն զանոնք, ուսկից փայլակ և որոտումն կը լինի:

կամ պաշտաման և մարդազոհին՝ անդէն Վահագնի արարուածնե֊րը մէջ կը բերէ, յասելն. « Օյ+ [illegible] [illegible] [illegible] ('ի տեղին որ կոչի [illegible]) [illegible] [illegible] » : Սոյնը կ'աւանդէ մեզ Զենոբ, յէջ 36, բայց այլով խմն արարուածով[1]: Բ. Այս վերջի տարիներս Կամախայ դիմաց և յափունս Եփրատայ գտնուեցաւ վիշապ մի պղնձեայ՝ յեռեալ պէսպէս ակունքներով, որ վերայ ագուցուած է կարմիր բուստէ Արամազդայ գլուխ մի, յունական ճարտարութեամբ. ես իսկ տեսնելու բաղդն ունեցայ առ Հ. Ղևոնդ Ալիշանի, առ որ յղեալ էր նորա հարազատն և նշանաւոր հնախոյզն Պ. Սերովբէ: Արդ, այս գիւտս եթէ ամբողջ մնացած լինէր՝ անգնահատելի զարդ պիտի համարուէր մուզէոններու. սակայն կ'ըսուի, թէ գտնողները կտոր կտոր ընելով՝ իրարու ձեռքէն յափշտակել են:

Արդ, Վահագնի պաշտաման և « Երկնէր երկին » երգի հնութեանն՝ ես իբրև հաստատուն ապացոյց կը համարիմ, նախ, Միհրդից վերայ խօսած ժամանակ՝ մէջ բերած հնագոյն խորաքանդակներն, յորս կը ներկայանայ նա հանգոյն Վահագնի իբրև առոյգանձն պատանի և արեգակնակերպ՝ որ կը հալածէ զխաւար: Բ. Միհրայ նկարագիրն, զոր տայ մեզ Մասպերոյ՝[2] առեալ 'ի սեպաձև գրութեանց և 'ի զենտաւեստեան գրոց: Միայն թէ՝ Միհր կը ծագէր[3] 'ի Հ[illegible]-Բերեզաիտի սրբազան լեռնէն, որուն բոլորտիքը կը հոլովէր աստղն, և ուր չկար ոչ գիշեր, ոչ խաւար, ոչ ցուրտ և ոչ ջերմ, և ոչ այլ ամպք հասանէին 'ի գագաթ նորին: Իսկ մերս արեգակնակերպ Վահագնի ելևմուտից մշտնջենաւոր կայանն էր կամ սրբազան լեառն [illegible], կամ Վարագայ սարն, կամ [illegible] և կամ լաւ ևս՝ հինաւուրցն և երկնաբերձն Մ[illegible]: Առաջին լերան քովն էր ստուգիւ Վահագնի մեհեանն, ըստ աւանդելոյ Ագաթանգեղայ, Զենոբայ, Փաւստոսի և Խորենացւոյ: Սակայն ես համոզեալ եմ, թէ վերջին լերան հետ կապուած են Վահագնի վերոյիշեալ երգն և հայ ժողովրդեան հնագոյն վիպասանութիւնքը. որովհետև նախ հնագոյն աւանդութիւնք Հայոց՝ զազատ Մասիքը կ'անուանեն բնակութիւն Իզատաց. զայս կը ցուցնէ և Արտաւազդայ առասպելն: Բ. Այս լեռս նախապատմական ժամանակաց հետէ մինչև ցայսօր՝ իւր հրաբղխային երևոյթներով միայն կարէր առիթ տալ և տուաւ կրակապաշտութեան, կամ լաւ ևս, միհրական և Վահագնի պաշտամանց 'ի Հայս: Գ. Վահագն անուան կազմութիւնը, որ զուտ հնդ–արիա֊

1. Այսինքն է, Հնդկաց գաղթականին եկաւորութեամբն 'ի Հայս, առ Վաղարշակաւ, որոց շնորհեց զերկիրն Տարօնոյ. և թէ իշխանք նոցա Դեմետր և Գիսանէ « շինեցին քաղաք և կոչեցին Վիշապ, և կանգնեցին զկուռսն զայնոսիկ յանուն կռոցն, զոր 'ի Հնդիկսն պաշտէին »:

2. Hist. anc. de l'Orient, p. 499-500. " L'esprit de la lumière divine, Mithra, qui le premier des Jazatas célestes, pointe au-dessus du mont Hara (Haro-Berezaïti), avant le soleil immortel aux chevaux rapides, qui le premier, en pompe dorée, saisit les beaux sommets et abaisse son regard bienfaisant sur la demeure des Ariens.

3. Darmsteter, The Zend-Avesta, t. I, p. LXI, et t. II, p. 122-123.

կան է, և սանսկրիտերենի մէջ կը գտնուի այնպէս՝ որպէս և 'ի հայերէնն, զոր տեսանք 'ի վեր անդր:

Կ'աւանդուի [1], թէ Վիրք ևս զչափ հասակին Վահագնի կանգնեալ՝ պատուէին զոհիւք, բայց չգիտցուիր, թէ ո՞ւր արդեօք, ե՞րբ և ի՞նչ տիտղոսներով: Այս միայն յայտնի է, թէ թագաւորն Վրաց Միհրան և իւրքն, նախ քան զդառնալն 'ի քրիստոնէութիւն, պաշտօն կը մատուցանէին միայն Արամազդայ, և Վահագն չյիշուիր բնաւ: Ուստի ինծ աւելի հաւանական կը թուի, թէ Վահագնի ութերորդ պաշտօնն՝ աւելի Հայաստանի հարաւային և արևմտեան կողմերն, այսինքն է, Վասպուրականի, Տարօնի և Կորդուաց գաւառաց մէջ հռչակուած էր: Եւ յիրաւի, իբրև արձան յիշատակի վիշապաքաղն Վահագնի գործոց և պաշտաման, են նախ Օձ և Վիշապ քաղաքները: Բ. Մշոյ Արդերտ գիւղին վերև եղած Դաղօնաց պրերուն և բնակօծերու թագաւորութեան և պատերազմաց դեղեցիկ վէպերն, որոնք ամենահին ժամանակաց հետէ մինչև ցայսօր պահուած են, յիշեալ գաւառաց ժողովրդեան մէջ: Գ. Կ'աւանդուի, թէ Վահագնի հօր Տիգրանայ և նորա յաջորդ Հայկազունի թագաւորաց նշանադրօշն ևս օձ և վիշապ էր: Դ. Առ Վանեցիս՝ ընդհանուր աւանդութիւն մի կայ, թէ Բզնունեաց ծովուն մէջ կայ վիշապաքրոյն մի, ուր կը բնակի մի ահաւոր վիշապ, որ բոլոր ծովու յատակը բռնած է. և Հրեշտակք (Ֆէրիշտէ) միշտ կը զարնեն կը վիրաւորեն նորա տուտը, որպէս զի չմեծնայ և ծովն ու ցամաքը չի կլլէ: Այս երևոյթս առանց պատճառի չէ, այլ կը ցուցնէ, թէ Վահագնի և Վահունեաց արարուածներն, Բարշամի վերաբերութեամբ, այդ գաւառաց մէջ սկսած և կատարուած էին արդէն յանյիշատակ ժամանակաց հետէ, և ապա ընդարձակուելով տարածուեցան նաև արևմտեան և հիւսիսային Հայաստանի մէջ, յորս եկին և 'ի Փռիւգիոյ գաղթական Հայք. և գուցէ թէ Յունաց Հերակլէսի վերայ պատմուած վէպերը՝ նոքա՝ սեփականեցին Վահագնի: Նորա մեհենին և անդրեաց կանգնումն՝ եղաւ մօտ յամն 130, 'ի ձեռն Վաղարշակայ՝ առաջին թագաւորին Արշակունեաց, որուն քրմութիւնն՝ յանձնուեցաւ Վահունեաց: Այս բանն՝ յայտնապէս կը ծանուցանէ մեզ Ե. դարու պատմագիրն Մովսէս [2]: Սակայն հուսկ 'ի վերջոյ ինծ կը թուի, թէ ինչպէս Յունաց Հերակլէսը պատմական անձն չէր, այլ Փիւնիկեցի գաղթականութեան պաշտպան աստուածութիւն մի, այսպէս ևս շատ հաւանական է ըսել, թէ Վահագն Հայոց՝ հնդ—արիական գաղթականութեան մի պաշտպան աստուածութիւնն էր, որ Քրիստոսէ վեց դար առաջ եկան 'ի Հայս, հաստատուեցան և տարածուեցան: Այլ թէ ուստի՞ եկաւ այդ գաղթականութիւնն, արդեօք 'ի Փռիւգիո՞յ, ինչպէս կարծեն Լընորման և Ռաւլինսըն, թէ, ընդ հակառակն, յարևելից: Ես վերջինս ստոյգ կը համարիմ, որով‿

1. Մ. Խորենացի. Պատմ. Հայոց, Ա. գլ. ԼԱ, էջ 127:

2. Ցասելն այսպէս. «Բայց յորդւոցն Վահագնի գտեալ արս, որք ինքնակամ խնդրեցին զմեհենիցն պաշտամունս, պատուէ մեծապէս, 'ի ձեռն տալով նոցա զքրմութիւնն. և կարգէ ընդ առաջին նախարարութիւնս, և անուն կոչէ Վահունիս»;

հետև, ինչպէս տեսանք, Վահագն անունն՝ ուղղակի հնդկերենէ յառաջ եկած է, և հնդ–արիական աշխարհաց կրօնական աւանդութեանց հետ աւելի սերտիւ միացած է, քան արևմտեան: Ուստի Հայաստանի արեւելեան և արևմտեան հին զաղթականութեանց իրարու հետ միանալով, նոցա կրօնական վէպերն ևս միացան յանձին Վահագնի:

Այսպէս ուրեմն նաև Վահունեաց ցեղն, « որք ինքնակամ խնդրեցին զմեհենիցն պաշտամունս », – Վաղարշակ՝ ըստ նոցա գքրմութիւնն, – կարգեաց ընդ առաջին նախարարութիւնսն և կոչեց Վահունիս, ոչ էին սերունդք Վահագնի, այլ յաջորդք նախնի քրմութեանն՝ պաշտաման Վահագնի, կամ լաւ ևս, Վահէ–ի–վէ դից: Ցիրաւի, 'ի կողմանս Կորդուաց կատարուած մի հնագոյն դէպք՝ կը թուի հաստատել զայս. զի Մովսէս 'ի պատմութեան անդ Հռիփսիմեանց՝ պատմելով զփքանչելիսն կուսանաց՝ մօտ 'ի մեհեան անդր միհրական հրոյն կամ Վահագնի կ'ըսէ. « Եւ փախստական եղեալ դիւացն՝ 'ի բազինսն անկանէին, Վայ վայէ, աղաղակեալ: Եւ 'ի լեռնէն ոչ այլ ինչ լսիւր, բայց Վայ վայէ, ճչեալ »: Դիտելու ենք, որ Մովսէս ականջօք լսած չէր զայս, այլ ինչպէս նա ինքն կը ծանուցանէ, Դաւիթ Հռովմայեցիէն առած կ'աւանդէ զայս: Ուստի այս գծուած խօսքերս ոչ են, ըստ իս, սոսկ աղաւական ձայնարկութիւններ դիւաց. այլ խսկական ձև և ձայն, որով կը կոչէին քուրմք զաստուածն Վահէվահն կամ Վահէվահէ յօգնութիւն, զոր յոյն հեղինակը չէ կրցած ուղիղ վերագրել, և կամ անտեղեակ գոլով իրին՝ բնական բացագանչութիւններ կարծել է զայն: Իսկ թէ ի՛նչ էր Վահէ–ի–վէ. արդէն 'ի վեր անդր ըսուեցաւ: Արդ, այսու միայն կարելի է մեկնել Ագաթանգեղայ մեզի աւանդած « Վահէվահեան » անունն, և կամ ըսել, թէ աղաւաղուած է այդ անունդ՝ առ Ագաթանգեղ. զի բաց 'ի սմանէ ոչ ոք 'ի տոհմայնոց գրէ Վահէվահեան: Դիտելու է դարձեալ, զի Վահունիք ևս՝ Մովսիսի Աշխարհագրութեան հնագոյն օրինակի մի մէջ « Վահէվահէ » գրուած է. իսկ միւս օրինակները կը գրեն մերթ « Վահէվանէ » և մերթ ալ « Հաւանէ »: Անուանց շփոթութիւն մի եղած կը տեսնուի յայտնապէս, զի Մովսէս Արաբատեան գաւառաց մէջ կը դնէ զայն, մինչդեռ առ Ագաթանգեղ՝ Տարօնի մէջ եղած կ'աւանդուի Վահունեաց ազգաբնակութիւնը:

**Նանէ.** — Կը յիշուի առ Ագաթանգեղ, յէջ 591, 'ի Թիլն աւանի, **դստեր Արամազդայ** յորջորջեալ: Սորա պաշտօնն 'ի վաղ ժամանակաց հետէ տարածուած էր թէ՛ առ սեմական և թէ՛ առ արիական ազինս: Ասորեստանեայք կ'անուանէին Նանէ. Ասորիք՝ Նանէ. Յոյնք Ναναΐα կամ Ναναία, բայց ըստ օտար հնչման. իսկ բնիկ անուամբ Ἀθήνας. առ լատինս՝ Minerva կ'անուանէր: Ոմանք [1] յարդի գիտնականաց՝ նոյն համարեցան զՆանէ ընդ Աստղկան (Ve-

1. Ռաւլինսըն կ'ըսէ, թէ Նանէա չէ այլ ինչ՝ բայց եթէ Աստղիկ, զոր Ասորեստանեայք տարբեր անուամբ Նաննա կոչեցին, և Բաբելացիք՝ Իշտար:

nus, Venere). իսկ այլք՝ [1] կը շփոթեն ընդ Անահտայ, և ծագմամբ սեմական կը համարին: Այս կարծիքս բոլորովին անհիմն չէ, մանաւանդ թէ կարելի էր ստոյգ համարել, եթէ ընդհակառակն, Նանէայ՝ Անահիտէն տարբեր դիցուհի ումն լինելուն ուրիշ ակն յայտնի ապացոյցներ չունենայինք: Նախ և առաջ, Ագաթանգեղայ գրոց 606–607 էջերում՝ թէ Անահտայ և թէ Աստղկան բագիններն առանձին կը յիշուին. ուստի աւելորդ էր աստ վերստին յիշել, և յիշել այնպիսի անուանակոչութեամբ, որ բոլորովին տարբեր ձև և հնչումն ունի: Թէպէտև առ Ագաթանգեղ՝ երկաքանչիւրն իսկ դուստր կը կոչուին արին Արամազդայ, բայց աստի պէտք չէ խաբուիլ. որովհետև, ինչպէս քաջիկ խորհրդով կը ծանուցանէ Զամչեան և որուն կը համաձայնին պարսից աւանդութիւնքը, Նանէ՝ ոչ էր բնական դուստր, այլ յուղղոյ նորա ծնեալ, իբրև անձնաւորութիւն իմն արուեստից, գիտի և մշակութեան: Բ. Ագաթանգեղայ յոյն թարգմանիչն ևս Ἀθηνᾶ թարգմանած է զՆանէ. զայս Պլուտարքոս [2] և Ստրաբոն ևս կը հաստատեն: Գ. Մակաբայեցւոց Բ. Գրոց Ա. գլ. 13 վկայութեան համեմատ՝ Անտիոքոսի կողոպտել ուզած քաղաքը՝ կը գտնուէր 'ի Պարսս. իսկ Թ. գլխոյն 1 և 2 տանց մէջ կը ծանուցուի, թէ այն մեհեանը կը գտնուէր 'ի Պերսեպօլիս, և Պերսեպօլեայ մեհեանն՝ էր ձօնեալ Աթենասայ, և ոչ թէ Արտեմիսին կամ Անահտայ: Դ. Ասուր–բանի–բալ՝ իւր արձանագրութեանց [3] մէջ կը պատմէ, թէ ինքը փոխեց զպատկեր դիցուհւոյն Նանայ՝ Շօշէն 'ի Բաբելոն. զոր [illegible]՝ 1635 ամօք առաջ գերած էր: Ասորեստանեայց սեպաձևներու ընթերցման ճշդութիւնը տակաւին ապահով չէ. բայց եթէ ապահով ևս համարինք, անտի սոյն հետևութիւնս առաջ կու գայ, թէ 'ի Մարաց և 'ի Պարսից առնուած և ներմուծուած է Նանէայ պաշտօնն 'ի Բաբելոն. և թէ վերոյիշեալ թագաւորին միւս խօսքերն անհիմն պահանջմունք համարելի են. որով_

1. Էմին, Recherche sur le Paganisme arménien, p. 16. — Raoul Rochette, (Journ. des Sav. 1836, p. 268. — Lassen, Ind. Alterthumskunde, II, p 841: Այս գիտնականներս՝ իրենց կարծեաց իբրև ապացոյց հետևեալը մէջ կը բերեն. այսինքն է, Անահտայ տաճարն, ըստ վկայելոյ Պօլիբիոսի, կը գտնուէր 'ի Շօշ. Անտիոքոս ուզեց զայն յաւարի առնուլ, բայց քիչ յետոյ մահը վերայ հասաւ. իսկ որովհետև այս՝ Մակաբ. Բ. գլ. Ա. էջ 12–13, Նանէայ դից մեհենին համար հանդիպած կ'աւանդի. ուրեմն Νάναια նոյն է ընդ Ἄναια ի կամ Ἀναΐτις ի, զի Անահիտ առ հին մատենագիրս փոփոխակի կը գրուի թէ Ἀναΐτις թէ 'Αίνη, և թէ Ἄνεα կամ Ἄναια.

2. Արտաշիսականի մէջ, գլ Գ կը ծանուցանէ, թէ այս թագաւորս գնաց 'ի մեհեան դիցուհւոյս, որ 'ի Պասարգադ (Պերսէպօլիս) առնուլ զպսակն արքայական 'ի քրմապետէն, Ἐξήλασεν εἰς Πασαργαδὰς ὁ βασιλεὺς, ὅπως, τελεσθείη τὴν βασιλικὴν τελέτην ὑπό τῶν ἐν Περσαις ἱερέων 'Εστι δὲ θεός πολεμικῆς ἱερόν ἣν 'Αθήναν ἄν τις εἰκάσειε. Արդ Ստրաբոն ևս, ԺԶ. էջ 744, ընդ Պլուտարքոսի կը վկայէ, թէ Պերսէպօլեայ և Ելիմայիսի մեհեանը՝ պատերազմական դիցուհւոյ մի նուիրեալ էր, որ նոյն է ընդ Աթենասայ:

3. G. Smit, *History of Assurbanibal*, p 251

հետև Ասուր–բանի–բալէն 1635 տարի առաջ, այսինքն է 2300–2280, և ոչ իսկ Մարաց տէրութիւն կար, թող թէ կարծեցեալ աշխարհակալութիւն մի՝ յԱտրպատական: Ն. Ցեաշնայ գրոց ԽԸ. գլխում ևս կը գտնուի բառս Նանա, բայց չէ յայտ տակաւին, թէ ինչ նշանակութեամբ գործածուած է այն: Սանսկրիտերէն Նանա nânâ կը նշանակէ բազմաւոր, կերպակերպ: Ղազարդ՝ մայր կը թարգմանէ: Զրադաշտական վարդապետութեան մէջ՝ Նանէ իբրև դիցուհի յիշուած չէ. սակայն Վէդան գրոց մէջ, ըստ վկայութեան Նիրուկտայ [1], կը կոչուի դուստր, օրիորդ: Աշի [2] երգ մ'ևս կը ծննէ նմա, դուստր Արամազդայ և Արմայիտի և քոյր Ամէշա–Սպենտայի [3] անուանելով:

Այս յիշատակարանացս վկայութեան համեմատ, սեմական և արիական ժողովուրդք՝ կը թուին յափշտակել յիրերաց զառաջնութիւն 'ի պաշտել զՆանէ. այնպէս որ չէ մարթ ստուգիւ որոշել զծագումն դիցուհւոյս, թէ յորմէ՞ 'ի նոցունց իջանէ: Սակայն ես, 'ի նկատի ունելով մէկ կողմէն Ասորեստանեայց սեպաձև գրութեանց անստուգութիւնն, իսկ միւս կողմէն այլ արիական յիշատակարանաց հաստատուն և որոշ վկայութիւնն, հաւանական կը համարիմ ըսել, թէ արիականէն ծագած է այդ անունն. և թէ Նանէի նախկին մեհեանն և պաշտօնը տեղի ունեցաւ պարսկաստանի Ելիմայիս [4] քաղաքին մէջ, այն ժամանակէն 'ի վեր, երբ ոչ Պերսէպօլիս կար և ոչ իսկ Մարաց և Պարսից թագաւորութիւններն. այլ մի ուրիշ յաբեթածին կամ իրանեան ժողովուրդ կը տիրէր 'ի Սուսիանա, այսինքն են Ելամացիք. որոնք իրենց Կոդորլահոմր թագաւորին առաջնորդութեամբ տարածեցին քրենց աշխարհակալ զօրութիւնը մինչև 'ի Բաբելոն և անդր:

Զկարեմ հաստատութեամբ ըսել, թէ Նանէական դից պաշտօնն ե՞րբ և յորո՞ց զգաց եմուտ 'ի Հայս. սակայն կարող եմ ասել, թէ Հայք մի և նոյն տիտղոսներով կը պաշտէին զՆանէ հանգոյն Պարսից: Ցիրաւի, այս բանիս գեղեցիկ ապացոյցը կու տայ Ագաթանգեղոս, « դուստր Արամազդայ » յորջորջելով զնա. որ քան կը միաբանի Նիրուկտեայ և Աշեայ աւանդածի հետ, որք նոյնպէս դուստր Ահուրամազդայ կ'անուանեն: Բ. Սանսկրիտերէն անունս nânâ կերպակերպ, քան կը միաբանի իրանեան դիցուհւոյն. զի նա մերթ կը ներկայանար իբրև [illegible], մերթ կը ներկայացնէր պէսպէս ուսմունս և արուեստս. և հուսկ ուրեմն իբրև աստուածուհի պատե_

1. Nirukta, VI, 6 Տես Roth. p 74
2 Achi, Ƴ, 2 16, d. W.
3. Amecha–Çpenta. Սոքա, ըստ զրադաշտական դիցաբանութեան, էին Արամազդայ նախկին ստեղծուածներն և խորհրդականքը, թուով եօթն, և կը կոչուէին « Անմահական սուրբեր »:
4. Christian Lassen *Persepolis*, Bonne, 1836, p 105 — F. Luzzati, *Rivista Europea*, 1347, p. 305 e seg. — Plin 6, 28, 4 31, 9. — Մակաբ. Ա. գիրք, 6, 1, նոյն կը համարին զՊերսեպօլիս ընդ Ելիմայիսի: — Sulpic. Sev 2. *Chrono*. 22

րազմաց կը ներկայանար Հնդկա—սկիւ—թական թագաւորաց դահեկա֊նաց վերայ, ըստ վկայութեան Վինդիշմանի : Ստուգիւ Տարակայ թագաւորին՝ Ոերթէ դահեկանաց վերայ՝ դէպ 'ի ձախ դարձած պատ֊կեր մի կայ [1], երկայն և ճոխ զգեստիւք, գլուխն առանց ճառագայ֊թի՝ մեղմ լուսով լուսափայլեալ է և գլխանոցաւ արտախուրեալ, որուն ծոպերը կը հակին 'ի խոնարհ. յաջուսն ունի ուղէշ ինչ, վեր֊տառութեամբս Nana : Մի և նոյնը կը տեսնուի նաև Փաներթէաէ դա֊հեկանին վերայ, միայն թէ աստ՝ դէպ 'ի յաջ դարձած է, լօղիկ ար֊կեալ զանձամբ. ձախակողմէն սուրը կախուած է, իսկ յաջուսն՝ ու֊նի զէնք ինչ կամ ծաղիկ, յորում գրուած է Ναναια ραο և մերթ միայն Ναναια : Իսկ առ Ասորեստանցիս՝ Նէբօ կամ Նաբու համա֊րուած էր աստուած գիտութեանց և այլն, և նոցա շատ թագաւոր֊ներն՝ այս դիցուհւոյս անունը կը կրեն իրենց վերայ. օրինակ իմն, Նա֊բու—բաղասար, Նաբու—գոդոնոսոր, Նաբու—զարդան և այլն. որ յայտնի նշան է, թէ Նաբու է սեմականաց բնիկ աստուածն, և ոչ թէ Նանա, որուն անունն հազիւ թէ կը յիշուի, և այն իսկ այնպիսի պարագայով, որ կը ցուցնէ, թէ օտար էր այս դիցուհիս:

Աստղիկ.— է նուազական համարակ անուանս աստղ [2] (ἀστήρ) : Թուի թէ Հայք դիմորոշ յօդիւ Աստղն ասելով, ուղղակի այն լուսա֊պայծառ մոլորակը կը հասկնային, որուն մենք Արուսեակ֊անունը կու տանք այժմ, որ է նուազական Արուս عروس պարսիկ—արաբե֊րէն բառին՝ որ կը նշանակէ Հարսն : Ցիրաւի, երկնից կապուտակ լճին վերայ սրընթացիկ նաւարկող, և մերթ արեգական և մերթ լուսնին արքանեկող այս լուսակիզն հարսին գեղոյն վերայ զարմա֊նալով արևելեան ազինք, անդուստ 'ի վերուստ գեղեցիկ քերթուած֊ներ և վէպեր իսկ յօրինեցին, անուանելով զնա միանգամայն Լուսաբեր [3] և Գիշերավար. և աստուածացուցին իսկ, դնելով զնա իբր անձնաւորութիւն սիրոյ, ծննդեան, և եղանակին՝ յորում բնութիւնը կը վերկենդանի : Առ Բաբելացիս՝ Իշտար կը կոչուէր. առ Փիւնիկե֊ցիս՝ Աստարտէ կամ Աստարտէս. իսկ առ Պարսիկս, ըստ ասելոյ ո֊մանց [4], Տաշտէր : Ինճիճեան [5], հմուտն և ճարտար 'ի յառաջբերու֊թիւնս տեղեաց հին մատենագրաց, խիստ խառնակ գաղափար կու

1 Լասսէն, *Ind. Alterthumkunde*, II, s. 833, 838.

2. Մ. Էմին, *Rech. sur le Pagan. arm.*, p. 15. Ըայերէն աստղին համա֊նիշ կը համարի զանդիկ astar կամ stare : Սակայն Պ. Լագարդ, *Armenische Studien*, 1877, s. 167, չյիշեր այսպիսի ինչ. այլ բակտրիարէն açtarena և նոր պարսկերէն astar համանիշ կը դնէ այնմ : Իսկ սանս֊կրիտերէն աստրա âstra երկին կամ եթեր կը նշանակէ:

3. Գղատ. օրինակ Ն. Կ'ըսուի. « Բազում անգամ տեսի և ես զԼուսա֊բերն և զԳիշերավարն՝ ոչ երբէք գնալով առ նոյն ընթացս »: Եւ Գիւտ՝ 'ի թղթին առ Վաչէ արքայ Աղուանից. « Արուսեակն որ վեց ամիս ա֊րուսեակ է և վեց ամիս գիշերավար »:

4. Մ. Էմին, Նոյն, էջ 15, « Tashter » : Սակայն պէտք է ըսել, թէ պար֊սիկք՝ այս բառովս ոչ երբէք Աստղիկ կ'իմանային, այլ ընդհանուր աստղ. իսկ Աստղկան ناهید Նահիտ անունը կու տային : Զայս կը վը֊կայէ և Նշանաւորն Սաքիովսկի, *Migne, Diction. des Relig.* t. IV p. 203:

5. Հնախ. Հայ. հտ. Գ, էջ 166–171:

*տայ ընթերցողաց այս դիցուհւոյս վերայ, շփոթելով մերթ ընդ Արեգական կամ Միհրայ, և մերթ ընդ Լուսնի կամ Անահտայ: Այլ այնու կ'արդարանայ, զի նա ինքն՝ այսպէս գտաւ և առ հին մատենագիրս և յաւանդութիւնս ազգաց. մանաւանդ զի նուազական անունս իսկ Աստղիկ՝ զոգցես իմն լուսնին աւելի կը յարմարի, որ ամէն ամիս կը նուազի և փոխանակ աստեղ՝ մահիկեղջիւր մի կը ներկայանայ: Սակայն ըստ ընդհանուր աւանդութեան Արեաց, ինչպէս տեսանք, Անահիտը կը ներկայացնէր զլուսին և ոչ թէ Աստղիկը, և այս անտի իսկ յայտ է, զի անդրիք Անահտայ՝ ունին 'ի վերայ գլխոց զկիսալուսինն: Աստղիկ, Վահագն և Անահիտ՝ Հայոց թագաւորաց յաշտից տեղւոյն կամ Յաշտիշատու մեհենին մէջ երրորդութիւն մի կը կազմէին, ինչպէս Արևը, Լուսինն և Արուսեակն՝ յանձեռագործ և անվայրափակ մեհենի անդ զմբեթաձիգ կամարին երկնից: Ագաթանգեղոս՝ այս երեք դից բնակակցութիւնն յիշելով՝ ութերորդ պաշտօն մ' ևս կը դնէ, Հայոցմէ հաստատուած յանուն Վահագնի: Նա չասեր թէ ո՞րք և ինչ պարագաներով. բայց կ'երևի, թէ Աստղկան հետ ունեցած յատուկ արարուածով մի, զոր թէպէտև ժամանակը ծածկած է մեզմէ, բայց Ագաթանգեղոս՝ ըռելեայն կը յայտնէ զայն, Աստղկայ կամ Ափրոդիտեայ մեհեանը « Սենեակ Վահագնի » անուանելով: Եւ յիրաւի, դիտելու ենք, որ « սենեակ » բառն իսկ՝ Աստղկայ անուանէն առնուած է. զի սանսկրիտերէն աստարա* astara [1] *կը նշանակէ նաև* ննջասենեակ *և* անկողին*: Բ. Տոհմային և օտարազգի բանաստեղծք [2] զԱրուսեակն լծակից կը համարին մերթ Լուսնի և մերթ Արեգական: Այսպէս ուրեմն ըստ Պարսից և Հայոց դիցաբանութեան, որ էր անձնաւորումն երկնային լուսաւորաց, ըստ որում աչօք կը տեսնուին, անհնարնական էր, որ Աստղիկ իբրև անձնաւորութիւն Արուսեկին՝ համարուէր նաև իբրև նաժիշտ կամ լծակից Տիկնոջն երկնից և իշխանին տուընջեան, որք անձնաւորեալ էին յԱնահիտ և 'ի Միհր կամ 'ի Վահագն, ըստ Հայոց:*

*Աստղիկ՝ եթէ նոյն ևս համարինք ընդ Աստարտեայ և ընդ Ափրոդիտեայ, սակայն նորա անուան ուղղագրութիւնը կամ ձևը՝ կը մնայ տակաւին անմիաբանելի ընդ առաջնոց: Սոյն դժուարութիւնս կը մնայ նոյնպէս նկատմամբ արիական աւանդութեանց. այսինքն է, արդարև, եթէ Պարսից Նահիտն էր հակապատկեր Անահիտի և ճշգրիտ նախատիպ Աստղկան, ուստի՞ առաջ եկաւ այս տարբեր ձևս 'ի գրութեան: Մ. Խորենացի՝ [3] Բիւրոսեան Սիբիլլայի հնագոյն աւանդութիւն մի մէջ կը բերէ Զրուանայ մասին, որուն կ'ընդդիմա-*

1. Burnouf, *Diction., Sansc-Français*, p, 85.

2 *Նար. յիշ. և խչ և առաք. կ'ըսէ. «Արուսեակն սկայընթաց՝ լծակցութեամբ ընկերին իւրոյ լուսնոյ»: Եւ Սուիդաս, 'ի յուն. բառարանին, կ'ըսէ, թէ Արուսեակն վարի երբեմն ընդ Արեգական: Առ Գիսիդեայ կ'ըսուի. «Ոմն գեղեցկատեսիլ աստղ լուսաբեր ծանուցեալ և մթացուցեալ երեկ»: Իսկ Արիստ. Աշխհ. անդ կ'ըսէ. «Արեգակն և սորա զուգընթաց լուսաբերն»:*

3. *Պատմ. Հայոց. Գիրք Ա. գլ. Զ:*

նան Տիտանն և Ցաբեթոս, որովհետև նա կ'ուզէր իւր որդւքը թա_ գաւորեցնել. բայց նոցա քոյրն Աստղիկ՝ միջնորդ լինելով կը հաշտեցը_ նէ զնոսա, և յանձն կ'առնուն, որ Ջրուան Նահապետ իրենց վրայ, միայն թէ անկէ ծնած արու զաւակները սպանուին, և Տիտան_ խանդակ ուժեղ և տաք սրտերէ՝ Ջրուանայ զաւակաց հետ ամուսնանան։ Ապա Աստղիկ կը համոզեցնէ զոմանս 'ի Տիտանեանց, որ Ջրուանայ զաւակներէն զոմանս ղրկեն յաւերժահարս կոյս 'ի լեառն, զոր կոչէին Դիւցընկեց, խսկ յետոյ կոչեցաւ Ոլիմպոս: Այս աւանդութեանս մէջ՝ երեք բան կը տեսնուին, Ա. թէ անյիշատակ ժամանակաց 'ի վեր՝ հաստատեալ եղած է արևելեան ժողովրդեան գաղթականութիւն մի յարևմուտս և ազգախառնութիւն ընդ յաբեթածին ժողովրդեան: Բ. Թէ Ջրուան էր սկիզբն հնդ–արիական դիցաբանութեան, և թէ Աստ_ ղիկ կամ Ափրոդիտէ էր դուստր կամ ծնունդ Ջրուանայ, ուստի և հետևաբար այդ ընտանեաց դիցաբանութեանը կը վերաբերէր: Գ. Թէ Տիտանեանք կամ կիսաստուածք՝ վերաբերութեան մէջ էին զրուանեան դիցուհւոյս հետ, պէսպէս արարուածովք, յորոց մին էր և մերոյս Վահագնին: Ուստի պէտք է ըսել, թէ Պարթևաց ժամա_ նակ և 'ի Յունաց անտի մտաւ պաշտօն դիցուհւոյս 'ի Հայս. որք փոխանակ Ափրոդիտեայ՝ Աստղիկ անունը սեփականեցին նմա, որ զուտ հայկական է և հայ բանաստեղծից և վիպասանութեան ծնունդ: Հայոց պատմութեան և աշխարհագրութեան մէջ Աստղիկ Բլուրն և Աստղիկ Գետն, այսպէս նաև երասխական և եփրատական հովտաց ջրարբի և գեղեցիկ վայրքն՝ Աստղկայ նուիրուած էին և նո_ րա արարուածները կը յիշեցնեն: Գրոց և Բրոցի հեղինակը կ'աւան_ դէ, թէ Եփրատ երբ Մշոյ դաշտէն կը մտնէ Կնձան սարերու մէջ, զարնուելով քարերուն՝ նեղ կիրճով մի սղմուելով զուռ զուռ ձայն մի կ'արձակէ, և այդ տեղը կը կոչուի Գեղափառայ: Այդ, աստ եղած է յերբեմն ժամանակի Աստղկի լոգարանը. և ըստ ժողովրդական ա_ ւանդութեան, որովհետև գիշերները լոգանալու սովորութիւն ունէր այս գեղադիտակ դիցուհիս, Գողթնայ-սարին վերայ մեծ կրակ կը վառէին տարփաւոր կտրիճները, որոյ լուսովը կը դիտէին Աստղկայ չքնաղ գեղեցկութիւնն. ուստի Աստղիկ հնարած է, որ մշուշը պա_ տէ այն ամբողջ միջավայրն, այսինքն է Մշոյ դաշտը, և աստի կո_ չուած է Մուշ, կրճատմամբ մշուշ բառին: Հաւանական կը համա_ րիմ և ես, թէ Աստղկայ վերայ պատմուած այս վէպս՝ քրիստոնեայ Հայաստանը նոր հնարած չէ, այլ հեթանոս Հայաստանէն ժառան_ գած: Այսու հանդերձ, բարձր 'ի գլուխ կը պարծի, ինչպէս ամե_ նայն լեռնաբնակաց, այսպէս և հայ ժողովրդեան բարոյական մաք_ րութիւնը. զի չեն պատմուիր այն տաղտկալի և անբարոյական վէ_ պերը, նկատմամբ Աստղկան, որոնց ստէպ կը հանդիպինք այլոց ազգաց պատմութեանց մէջ:

**Տիւր** կամ **Տիր**. — Սորա կայանը կը կոչուէր **Երազամոյն**, որ կազմուած է երազ և մոյն բառերէն. առաջնոյն նշանակութիւնը յայտնի է. իսկ երկրորդը 'ի հասարակի կը նշանակէ ուսելոյ-ընթեան՝ բնաւորական յատկութեանց, բայց աստ՝ պարզապէս երազոց և

գուշակութեանց: Ագաթանգեղոս միայն կը յիշատակէ զնա, յէջ 334, հետեւեալ կարեւոր՝ բայց խրթին հատուածովս. « Յերթալն նոցա (Տրդատայ և Գրիգորի) 'ի Վաղարշապատ քաղաքէ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինսն անահտական դիցն, և որ յԵրազամոյն տեղին անուանեալ կարդայր: Նախ դիպեալ 'ի ճանապարհի Երազացոյց Երազընդհան պաշտամանն Տիւր դից դպրի գիտութեան քրմացն անուանեալ դիւան գրչի Որմզդի ուսման ճարտարութեան մեհեան »:

Տիւր դից խնդիրը պարզ կերպով իմանալու համար՝ նախ պէտք էր պարզել Ագաթանգեղայ այս տեղիս: Մ. Էմին՝ արդէն 'ի վաղուց ջանաց [1] կատարել սոյն գործը: Սակայն մեծայ. գիտնականն՝ կը թուի շփոթել Տիւր դից մեհեանը կամ Երազամոյն տեղին՝ ընդ մեհենին Անահտայ, որք իրօք տարբեր էին, թէպէտ և մօտ իրերաց. և Ագաթանգեղոս իսկ՝ իւր առաջին նախադասութեան մէջ կ'ուզէ ցուցնել, թէ Տրդատ և Գրիգոր կ'երթային առ 'ի կործանել զմեհեանն Անահտայ, և զմիւսն՝ Տիւր դից. զի յետ յիշելոյ յոգնակի դիմօք զբագինսն Անահտայ՝ (ապա կը յարէ). « Եւ որ յԵրազամոյն տեղին անուանեալ կարդայր »: Իսկ երկրորդ պարբերութեանը մէջ, ուր առաջնոյն մէջ ծանուցած իրին կատարումը կը պատմէ, դեռ աւելի յայտնի կը լինի. զի դիք՝ կամ լաւ ևս քուրմք վառեալ 'ի զէն և 'ի զարդ « անտի », այսինքն է Տիւր դից կամ յԵրազամոյն տեղէն, « յանահտական 'ի մեհեանն անկանէին »: Արդ, պաշտամանն բառով ուղղակի ներկայացուած գործողութիւնը կը հասկըցուի աստ. ուստի ըսել կ'ուզէ պատմիչս, թէ, Ա. Տրդատ և Գրիգոր ճիշդ այն ժամուն հանդիպեցան Տիւր դից մեհենին, երբ սա գուշակութիւններ կամ պատգամներ կը ներշնչէր, և քուրմք կը յայտնէին զայն և կը ծանուցանէին ժողովրդեան: Բ. Թէ քրմաց այսպիսի գիտութեան և գուշակութեան հեղինակ Տիւրը՝ կը կոչուէր Գրչի Որմզդի կամ Արամազդայ: Գ. Թէ սորա մեհեանը համարուած էր և կը կոչուէր դպրի ուսման ճարտարութեան կամ գեղարուեստից (Ապողոնի):

1. *Recherche sur le Pagan. armén.* p. 18, յաւելն. " Cependant le roi (Tiridate) en personne se rendit dans la ville d'Artachat, pour détruire les autels de la déesse Anahid, au lieu appelé Erazamouin. Etant en chemin (pour Artachat), d'abord (le roi) rencontra (le temple) du dieu Dir où (ce dieu) inspirait des songes (et les prêtres, les interprétaient; (le temple) du maître enseignant la sagesse des prêtres, qui portait le nom de l'école de l'écrivain (Debir) d'Ormizd, dans lequel s'enseignaient tous les arts ". Ըստ իս, այս տեղիս իրօք խանգարուած չերեւիր, ուստի և ոչ իսկ յաւելուածոյ բանից առանձինն պէտք՝ հասկանալի ընելու համար 'ի հայերենին. այլ բաւական է կէտադրութեան սխալներն միայն ուղղել այսպէս. « Ապա ինքն թագաւորն խաղայր ամենայն զօրօքն հանդերձ 'ի Վաղարշապատ քաղաքէ՝ երթալ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինսն՝ անահտական դիցն և որ յԵրազամոյն տեղին անուանեալ կարդայր: Նախ հանդիպեալ 'ի ճանապարհի երազացոյց, երազընդհան պաշտամանն Տիւր դից, դպրի գիտութեան քրմացն, անուանեալ դիւան՝ գրչի Որմզդի, ուսման ճարտարութեան մեհեան »; Ա, Բ և Գ օրինակաց մէջ չիք « մեհեան » ;

*Արդ, աստի հեշտ է հետևցնել, թէ ինչպէս* **Տօթ**՝ *առ Եգիպտացիս,* **Տաաւտ**՝ *առ Փիւնիկեցիս, առ Հռովմայեցիս* **Մերկուրիոս** *և առ Յոյնս* **Հերմէս**, *այսպէս և առ Հայս՝* **Տիր** *համարուած էր դպիր և սուրհանդակ ճեպընթաց՝ Արամազդայ. Թևաւոր սաղաւարտով և ոտիւք և վիշապագլուխ գաւազանաւ կ՚ընթանար ամենուրեք, կ՚իմանար զամենայն ծածուկս աստուածոց և մարդկան, և կը յայտնէր յունկըն քրմաց: Սակայն այս առաւելութեամբս կը տարբերէր յայլոց, զի զոյգ ընդ Հերմէսի՝ Ապողոնի պաշտօնն ևս կը վարէր. այնպէս որ նորա մեհեանը կ՚ընթանայր հեթանոս Հայաստանը, ոչ միայն իբր 'ի Դեղփեանն պատգամատեղի, ուր սրտի ցաւերն յայտնելու հօրն աստուածոց և նորա կամքն իմանալու. այլ և՛ իբրև 'ի դպրոցն գեղարուեստից և ճարտարութեան, ուր գաղափարականն ազնուացընելու համար:*

*Տիւր՝ ծագմամբ արիական դիցաբանութեան կը վերաբերի, և նորա պաշտօնն՝ ուղղակի 'ի Պարսից անտի անցաւ Հայոց: Զգիտեմ, թէ ինչ պատճառաւ դեռ չլուծուած առեղծուած մի կը համարի այս բանս Մ. Էմին. մինչդեռ բազումք [1] 'ի գիտնականաց՝ կ՚ընդունին զայս, և բազմապիսի իրք և դէպք կը հաստատեն սկսերև: Ցիրաւի, նախ զի Պարսկերէն* تیر *Տիւր՝* **Նեբօ** *կը նշանակէ. և աստի կազմուած է ամրոցն* **Տիրիքարան**, *ուր ապաւինեցաւ թագաւորն Պարսից* **Մանուճեհր**, *Իրանեանց Աֆրազիաբ թագաւորին հետ պատերազմած ժամանակ: Տիւր անուանեցին Պարսիկք նաև զմոլորակն* **Փուլատ**; *իւր սրընթացիկ շարժման համար: Եւ ինչպէս միւս լուսաւորներն՝ այսպէս և երկնաթռիչ բարձանց այս սուրհանդակն՝ անձնաւորեցին 'ի մարդ, կոչելով զնա Դպիր կամ Գրիչ Ահուրա-մազդայի կամ* **Դեպիրի-Ֆալաքի** دبیر فلک, *և դպիր իմաստնոց և քրմաց: Տրի նուիրած էին և՛ չորրորդ ամիսն, որ, ըստ հին տարւոյն, Հոկտեմբերի կը համապատասխանէր. իսկ ըստ Ջէլալէտին տարւոյն՝ Յունիսի: Տիւր՝ առ պարսիկս համարուած էր իբրև պահապան հրեշտակ Տիւր ամսոյն մէջ ծնած մարդկան, կենդանեաց և բուսոց: Ի պատիւ Տրի մեծահանդէս տօն մի ևս հաստատեցին սոյն ամսոյն երկոտասաներորդ օրն, ըստ վկայութեան Հայդի, որ կը կոչուէր* تیرگان **Տիրկան**, *որ* **Աբրիզկան** *ևս կը յորջորջի* **Մահ** *և* **Աբան** *գրոց մէջ, այսինքն է,* **Ջրախաղութիւն**. *որովհետև այս տօնին՝ ոչ միայն վարդի, այլ և սովորական ջուր կը սփռէին Պարսիկք իրարու վերայ, 'ի յիշատակ ջրհեղեղին:*

*Արդ, ինչպէս այս տօնիս՝ այսպէս և Տիւր դից անունն և պաշտօնն, անտարակոյս, 'ի Պարսից առին Հայք ուղղակի: Եւ յիրաւի, այս բանիս ապացոյց կը համարիմ ես, Ա. Հայոցմէ՝ Տիւր դից ընծայուած մակդիրներն և նկարագիրը, զոր տայ մեզ Ագաթանգեղոս, որ լաւ կը համաձայնին պարսկական աւանդութեանց: Բ. Արարատեան հին աւանդութեանց և լեզուական գանձուց մէջ պահուած երդման*

1. Hyde. *De Relig. Pers.*, p. 242: — *Սաբլովսկի, Հնախօսութիւն*: — Migne, *Diction. des Religions.*

և բացագանչութեան հնագոյն ձևերն [1] յանուն Տիւր դից, զոր երա_նաշնորհ թարգմանիչք մեր՝ Ս. Գրոց թարգմանութեան մէջ իսկ յա_ճախ 'ի վար արկած են, միայն թէ բազմաստուածութեան Տրի տեղ՝ միաստուածութեան Տէր բառը դրած են, յասելն. «Ոն և ոն արաս_ցէ ինձ **Տէր**, և ոն և ոն յաւելցէ»: Գ. Հայոց տարւոյն հնագոյն ա_միսներէն մին, **Տրէ** կամ Տրի, (այսինքն է ամիս Տրի) կոչեցին, որ ըստ անշարժ տումարին՝ Նոյեմբերի և Դեկտեմբերի կը համապատասխա_նէր. իսկ ըստ շարժականին՝ այլ և այլ ամսոց ազգաց: Դ. Զենոբ Գլակացին՝ Արձանայ պատերազմին մէջ **Տէր—կ—ր** անուամբ քա_ղաք մի կը յիշէ, որ 500 զօրք դրկեց յօգնութիւն քրմաց՝ ընդդէմ քրիստոնեայ Հայոց. հաւանօրէն Տիւր դից նուիրուած էր այն քա_ղաքն 'ի սկզբանէ 'ի վեր: Իսկ Յովհ. կաթողիկոս, գլ. ԺԶ, կը յիշէ 'ի գաւառին Բագրևանդայ գիւղ մի, **Տէր—է**[3], որուն հեթանոսական հնութիւնն և Տիւր դից նուիրուած լինելն՝ **Աւր—ր—է** հեղինակն իսկ, յէջ 541, իբրև պատմական իրողութիւն կ'ընդունի: Ե. Քրիստոնէ_ութենէ յառաջ զծիածանը՝ **Տէր—կ—ն**[2] գօտի կամ աղեղ կ'անուա_նէին Հայաստանեայք, և անոր պէսպէս մոգական զօրութիւններ կ'ընծայէին, և շատ զրոյցներ իսկ յօրինեցին, յորոց ոմանք ցարդ իսկ պահուած են այրարատեան Շիրակ գաւառի մէջ, և ես իսկ լսած եմ յերբեմն ժամանակի: Զ. Տրդատ կամ Տիրիդատ, Տիրան, և Տրիբազ անուանքս՝ անտարակոյս Տիր արմատականէն կազմուած են: Առաջինը՝ հաւանականաբար **Տէր—ա—պ—րէ** կամ Տիրատուր կը նշանակէ. իսկ վերջինը՝ **Տրէ—բ—շ** (որ նոյն է բազէ) և կամ **Տրէ—բ—ժ** կամ բաժին:

Ն՞րբ արդեօք հաստատեցաւ Տիւր դից պաշտօնն 'ի Հայս, և ինչ պարագաներով: Այս բանս՝ դժուար է որոշել. սակայն Տրիբազայ պատմական անձէն կարելի է հետևցնել, թէ յամին 404, նախ քան զՔրիստոս, ծանօթ էր Հայոց Տիր դիք, և թէ նմա ընծայուած էր նախարարն արևմտեան կամ Բարձր Հայոց և Տարօնի:

**Բ—րշ—մ—**[4]. — Զոր յիշէ Ագաթանգեղոս, յէջ 589, Մ. Խորենացի **Բ—րշ—մ** կը կոչէ, Ա. գլ. ԺԴ: Իսկ Բ. գլ. ԺԴ, **Բ—րշ—մին** կը գրէ: Անա_նիա Շիրակացին ևս Բարշամ կ'անուանէ զայն: Մի և նոյն անունը՝

1. Օրինակի աղագաւ. «Տէր, ոն 'ի բաց տար». «Տէր, ոն անդր». և սպառնականն. «Տիր, տի»: Թրակացւոյ մեկնիչը կ'ըսէ. «Որպէս թէ ոք վնասակարին, որ է տիր, ասէ. Կաց մնա, զի անա այդպէս առնեմ գոր_ծողիդ զչար»: Բառս տրիտուր՝ նոյնպէս կարելի է իմանալ Տրի տուր կամ Տրի պարգև:

2. «Տիրական գօտի կոչեցեալն՝ շուրջ զարեգակամբ երևեցաւ զօրն ամենայն», Մարթին: «Վասն Տէրունական գօտւոյն... յոյժ անմիտքն ասացին գօտի աստուածական», Տումար: Զայս թուի ակնարկել և Թով_մաս Արծրունի, Ա. 1, յասելն զծիածանէ. «Զոր ասացին որդիք տարրա_պաշտից՝ գօտի Արամազդայ»:

3 Այսինքն է, եթէ տղայք անցնին այն գօտւոյն տակէն՝ անդէն և անդ կը ծերանան, և ծերք՝ մանկութիւն կը զգենուն. կանայք կը փո_խուին յարս, և արքն 'ի կանայս, և այլն:

4. Ագաթանգեղայ Ա. օրինակի մէջ Բարշիմինիա գրուած է. իսկ յայ_լում օրինակի Բարշամին:

կրկին ձև առած է. առ Ագաթանգեղ՝ իգական էութիւն մի մատնա֊նիշ կը ցուցնէ. իսկ առ Մովսէսի՝ մերթ արական և մերթ իգական, և այս երևոյթս առանց հիման չէ, զոր յետոյ պիտի տեսնենք: Բար֊շիմնիա սեմական ծագումն ունի: Գ. Էմին, ինչպէս տեսանք 'ի վեր անդր, Ասորեստանեայց վերաբերելով այս աստուածս, նորա ա֊նունն իսկ նոցա բարբառով ուզած է մեկնել, որով ոչ միայն որոշ իմաստ մի չընծայեր մեզ, այլ վարկպարազի կրկնութիւն նա՝ մի և նոյն իմաստից: Ըստ իս, պէտք է ըսել, թէ Բարշիմնիա կամ Բար֊շամին՝ է ուղղակի տառադարձութիւն ասորա-քաղդէարէն Bar-chamaim անուան. որուն հնագոյն ձևն է [illegible] կամ [illegible], որ կազմուած է, ըստ Պլուշի [1] שמים [illegible] և כעל Տէր բա֊ռերէն: [illegible], [illegible], [illegible] և [illegible]՝ հասարակաց [2] էին Քաղդէացւոց և Հեբրայեցւոց, Փիւնիկեցւոց և Կարքեդոնացւոց, Սաբէացւոց, Ա֊րաբացւոց և Ասորւոց: Արդ, յայտնի չէ, թէ ո՞ արդեօք 'ի վերոյի֊շեալ ազգաց կոչեաց զառաջինն զՏէրն երկնից կամ Բալ-սամէն. սակայն այս յայտ է, թէ ամենեքեան առհասարակ՝ այս անուանա֊կոչութեամբս կ'իմանային զԱրեգակն և կը պաշտէին: Եգիպտացիք՝ իրենց բնիկ բարբառով Ոսիրիս անուանեցին, իսկ պյլք՝ Մողոք: Սա֊կայն առ Բաբելացիս և առ Փիւնիկեցիս [3], ինչպէս Բալ-սամէնը կը ներկայացնէր զիշխանն տունջեան կամ Արեգակն, այսպէս նա [illegible] կամ [illegible]՝ էր անձնաւորութիւն իշխանուհւոյն գի֊շերոյ կամ լուսնի [4], զոր և Ս. Գրոց թարգմանիչք [illegible] [illegible] կ'ա֊նուանեն յաճախ:

Մ. Խորենացւոյ աւանդածին համեմատ, Բարշամ՝ էր իբր թէ պատմական անձն ոք և յԱսորեստանեայց անտի, բայց Ասորիք յե֊տոյ ուրեմն աստուածացուցին զնա. այս պատճառաւ ուրեմն նա արական սեռիւ կը նշանակէ: Սակայն պէտք է ըսել, թէ Խորենա֊ցւոյ կարծիքը՝ Բարշամայ և նորա պատմական արարուածոց մա֊սին, մեծապէս ստուգութեամն կը կարօտի: Կարելի՞ է արդեօք ըսել, թէ առ Ագաթանգեղ վրիպակաւ գրչաց՝ իգական սեռիւ Բարշիմնիա եղած է, փոխանակ Բէլշամէնի: Ոչ ընաւ, այնու զի հայերէն Ագա֊թանգեղայ ինձ ծանօթ ոչ մի օրինակի մէջ Բարշամ կամ Բալշամէն

1. Storia del Cielo, capitolo secondo, VIII, p. 137. — Նոյնը կը վը֊կայէ և Սանկոնիադոն՝ առ Եւսեբիոսի, Պատր. Աւետ. Ա. 34:
2. W. F. Ainsworth, *Travels in the Track ect*, 1 Book, p. 67–68.
3. Եւսեբիոս, վերոյիշեալ Աւետ. Պատրաստութեանը մէջ, Սանքո֊նիադոնէն հետևեալ հատուածը մէջ կը բերէ. « Quippe Deum enim hic, inquit, unum cœli moderatorem esse credebant, eumque propterea *Beel-Samen*, id est, phenicum lingua, cœli Dominum » : Բայց անդէն կը յաւելու. Greca vero Δία, hoc est Jovem, nominabant „.
4. Տես Պլուտարքոս, Ցաղագս Իսիսի: — Pluche, Storia dei Cieli, Venezia, 1769. T. I, capit. secondo, X, p. 140, կ'ըսէ. " Per la stessa ragione ella (Iside) era onorata coi titoli di *Belsamina*, cioè, " *Regina del Cielo* „ ecc. Այս վկայութենէս կը տեսնուի, թէ Բարշիմնիա էր իբրև նոր ումն Իսիս:

գրուած չէ։ Երկրորդ յունարէն օրինակն ևս Βαρσάμην [1] կը գրէ։ Ուրեմն պէտք է ըսել, թէ Հայոց պաշտած Բարշամինը կամ Բարշիմնիա՝ դիցուհի էր և ոչ դիք, զլուսինը կը ներկայացնէր և ոչ թէ արեգակն։ Այս բանս յայտնի կը լինի նոյն իսկ առ Ագաթանգեղ, անոր ընծայուած **սպիտակափառ** մակդիրէն, որ աւելի արծաթափայլ լուսնին կը պատկանի, քան թէ ոսկեգոյն արեգական։ Զայս լաւ ևս կը հաստատէ Խորենացի, Բ. գլ. ԺԴ. յասելն զՏիգրանայ Արշակունւոյ. «Ինքն իջանէ 'ի միջագետս, և գտեալ անդ զ**Բարշամինայ** (դիտելու է որ այլուր ծանուցած Բարշամը չէ աստ մէջ բերածը) ըզպատկերն, զոր 'ի **փղոսկրոյ** և 'ի **բիւրեղէ** կազմեալ էր **արծաթով**, և հրամայէ տանել կանգնել **յաւանին Թորդան**»։

Արդ, Մովսիսի այս աւանդութեամբը կ'իմանանք ոչ միայն Բարշիմնիա դիցուհւոյն սպիտակափառ յորջորջման բուն պատճառն, այլ նոյն իսկ նորա պատկերին և պաշտաման՝ Հայոց մէջ հաստատուելուն ժամանակամիջոցն։ Արդ, Հայոց Պանթէոնի մէջ՝ այս դիցուհիս միայն սեմական ծագումն ունի։ Սա Քաղդէացւոց **Բաքքա-րէոջ** պէս միշտ պատերազմի մէջ էր ընդդէմ գիշերոյ և խաւարի. նոյնը կը փարատէր զմէգ և զմրրիկս, իւր պաշտօնատար քրմաց կը յայտնէր բոլոր գաղտնորոգայթ խարէութիւնս և դաւաճանութիւնս. էր փարատիչ չար ազդեցութեանց և տրտմութեան, ճառագայթելով խնդութիւն և բերկրութիւն։ Նա կը բանայր երկնից դռներն. թէ՛ գարնանային մեղմ օդով և թէ՛ ձմերային սառնամանեաց ժամանակ՝ կը սփռէր հէգ մահկանացուաց վերայ կաթի և մեղուի ճառագայթներ։ Նորա բիւրեղային աչքերէն, հաւանօրէն, այլևայլ գուշակութիւններ կ'ընէին քուրմք. և փղոսկրեայ մարմնոյն՝ պէս պէս մոգական զօրութիւններ կ'ընծայէին։ Արդ, **Եղնփաղննայնեան** և կերպ կերպ հմայութեանց չար արուեստներն, զորս մի առ մի կը յիշէ Ցովհ. Մանդակունի իւր ճարտարախօսական ճառերու մէջ և կը հերքէ, հաւանօրէն և գէթ ըստ մասին, Տիւր դից, Գիսանէի և Բարշիմնիայ քրմաց և հեթանոս Հայաստանէն մնացած այն բազմաթիւ գուշակութեանց, վհուկաց և զրուցաց արգասիք համարելու ենք։ Այսչափս բաւական կը համարիմ Հայոց դիցաբանութեան մասին. իսկ Քաջաց, Ազատաց, Արալէզներու, Ուշկապարկաց և Դիւաց մասը՝ այլոց կը թողում. որովհետև Ագաթանգեղայ գրոցմէ և իմ ձեռնարկեալ նիւթէս դուրս են։

Ցէջ 584, Բ. պարբերութիւնն, յորում կը պատմուի Արտաշատու.

1. § 132. « 'Ελθόντες οὖν ἐν τῇ καλουμένῃ κώμῃ Θορδὰν, ἐν ᾗ ὑπῆρχεν ἱερόν λεγόμενον λευκοδόξων δαιμόνων, βομός Βαρσαμήνις ». Ինչպէս կը տեսնենք ընթերցողք, յոյն թարգմանիչը սպիտակափառ ածականը՝ ոչ թէ Բարշամինայ՝ այլ դիւաց յարմարցուցել է. հայերէն դիք, եզակի նշանակութիւն ունեցող բառը՝ յոգնակի դևս համկանալով։ Ի հայերենի մէջ բագինը առաջ դրուած է, իսկ մեհեանը զկնի Թորդան անուան. իսկ յունարէնի մէջ, ընդհակառակն, Βωμός (բագինը) դից և Բարշամինայ մէջ տեղ դրուած է, որով λευκοδόξων ածականը՝ ոչ թէ Βαρσαμήνης այլ δαιμόνων (դիւաց) կ'երթայ։

կողմեր Տիւր ղեց և անահտական մեհենից աւերման ժամանակ դիւաց աճեղ պատերազմն, 'ի նմանութիւն [illegible] և մկնդաւոր, սունաւոր զօրաց. այսպէս և յէջս 589 և 590 նկարագրուած դէպքերն՝ չափազանցութիւն կը թուին և կերպարանափոխ եղած: Այս տեղեացս բառական նմանութիւնն ընդ Կորեան՝ արդէն իսկ տեսանք այլուր. իսկ աստ պատմական տեսակէտով, կարծէք, թէ աւելի մատնահատից դիւական մոլորութեանը կը յարմարին, զոր աւանդեն մեզ Կաղանկատուացին[1] Մովսէս և Կորիւն[2], յէջ 19, 'ի Պատմութեան անդ Ս. Մեսրովբայ: Արդ, եթէ ապացուցուած լինէր, թէ այդ դիւամոլ սատանայակիր աղանդն և մարդազոհն՝ միայն յԱղուանս և 'ի ժամանակս Վաչականայ արքայի և կամ Ս. Մեսրովբայ տեղի ունեցած է, և ոչ ուրեք երբէք յառաջագոյն, կարելի էր այնունետև տարակուսիլ հատուածոցս հարազատութեան մասին: Սակայն կան ակնյայտնի և պատմական ապացոյցներ, որք կը հաստատեն, թէ արդէն 'ի վաղուց տիրած էր հեթանոս Հայաստանի զանազան կողմերն այդ աղանդը: Ինճիճեանը՝ կը համարի, թէ 'ի Հայս մարդազոհ բնաւ տեղի ունեցած չէ. սակայն դժբախտաբար պատմութիւնն՝ այս կարծեացս հակառակը կը թուի հաստատել: Ցիրաւի, Խորենացւոյ վկայութիւնն այսպիսի մի եղելութեան մասին՝ արդէն իսկ լսեցինք, 'ի պատմութեան Հռիփսիմեանց: Բ. Նա ինքն, Բ. գլ. Կ, նկարագրելով Արտաշիսի յուղարկաւորութեան արքայավայել և բարեկարգ հանդէսը, կը յիշէ նաև բարբարոսական յետագայ գործն ևս, զոր դժուար է միաբանել ընդ առաջնոյն. զի կ'ըսէ. «Եւ շուրջ զգերեզմանաւն լինէին կամաւոր մահունք»: Արդ, եթէ թագաւորի մի համար այդքան մարդազոհեր եղան, կարելի՞ է ենթադրել տակաւին, թէ Հայք ոչ զոհէին զմարդիկ՝ և՛ աստուածոց: Գ. Տիրամօր պատկերի պատմութեան մէջ ևս, գրեալ առ Սահակ Արծրունի, համաձայն Ագաթանգեղայ կը պատմէ[3] այն դիւական մո_

1. «Դեն յայտնապէս գայ 'ի մարդոյ կերպարանս և հրամայէ երիս դասս լինել, միններին՝ զմարդն ունել, մի խոցել և մի սպանանել, այլ ողջոյն հանել զմորթն և զաջոյ ձեռին զբոյթն, և մորթովն տանել ընդ լանջս 'ի ձախոյ ճկոյթն. հատանել և լուծանել զճկոյթն ևս 'ի ներքս: Նոյնպէս առնել և զոտիցն՝ մինչդեռ կենդանի կայ մարդն. և ապա սպանանել և զմորթն հանել, և կազմել և դնել 'ի սապատի. և իբրև ժամանակ չար պաշտամանն եկեալ լինի, արարեալ աթոռ երկաթի ծալածոյ, ոտքն յայնր մարդոյ ոտից նմանութիւն: Հանդերձ ինչ պատուական դնեն 'ի վերայ աթոռոյն .. և առեալ զէն մարդոյն և զմորթն մատամբքն հանդերձ՝ տեսանի: ... Արջառ և ոչխար զենեալ առաջի նորա՝ զոհ առնեն. ուտէ և ըմպէ ընդ չար պաշտօնեայսն: Եւ ծի թամբեալ և սանձեալ կազմ պահեն, և հեծեալ 'ի ծին արշաւէ այնքան մինչև զկայ առնու ծին. և ապա ինքն չքացեալ աներևութանայ»: Ահաւասիկ մատնահատից աղանդը, զոր պատանի ումն տանջեալ պատմեց Վաչականայ:

2. «Դարձեալ առաւել ևս երկիւղածն յԱստուծոյ արքայն (Վաչական) Աղվանից՝ միամիտ փութով հրաման տայր սատանայակիր և դիւամոլ ազգին սաստիւ թափել զերծանել յունայնավար հնացելոցն»:

3. Մատենագրութիւնք Խորենացւոյ, յէջ 294. «Եւ եկեալ յաշխարհն Աղձնեաց 'ի համբաւ քարի միոջ, քանզի դեւք բազումք բնակեալ էին

լորութիւնն, առնելով 'ի հնագոյն աղբերէն զործոց Ս. Բարդուղիմէոսի Առաքելոյն: Դ. Գիւտ կաթողիկոս 'ի թղթին [1] իւրում առ Վաչական՝ յայլևայլ տեղիս որոշակի կը հաստատէ այդ սատանայակիր մոլորութիւնն և նորա մարդազոհերն, Ուռնայրի ժամանակէն 'ի վեր մնացած: Ե. Ապացոյց մ'ալ կու տայ մեզ Տակիտոս [2] Աղխաբէնի կողմեր եղած մեհենատեղւոյն վերայ խօսած ժամանակ, ուր զոհ կը մատուցանէր Գոտարզ արքայ դիցն Որսորդութեան:

Յէջ 582-594, դիտողութեան այս կարևոր կէտերս կան. Ա. Թէպէտև Տրդատայ անունն ևս կը յիշուի երբեմն երբեմն զոյգ ընդ Գրիգորի, իբրև գործակցի տարածման քրիստոսական հաւատոց և առ 'ի ջնջել զհեթանոսութիւն, բայց ամենայն ինչ Գրիգորի կ'ընծայէ հեղինակ պատմութեանս. և ուր որ յայտնապէս զինուց և զօրութեան պէտք կը տեսնուի անհրաժեշտ, անդ ևս Գրիգոր է և միայն Գրիգոր, որ աստուածագործ հրաշիւք կը տապալէ զմեհեանս հանդերձ ամրաւ, կը յաղթանակէ 'ի վերայ դիւաց և դիւամոլ բազմութեան մարդկան, և կ'ածէ զնոսա 'ի հաւատս քրիստոնէութեան:

անդ, և պատրէին զմարդիկ տեղւոյն, տուեալ յայնմ տեղւոջէ դեղս ախտականս առ 'ի կատարել զպղծութիւն ախտից, կռանածայնս դարքնաց ահաւոր հրաշիւք արհաւիրս գործէին. յորս մարդիկ աշխարհին սովորեալք, անդ առ քրային դեգերէին առեալ 'ի չաստուածոց ծրարս թարախածորս 'ի պատիր ախտիցն, և անուանէին զանուն տեղւոյն այնորիկ Դարբնաց քար: Յոր ժողովեալ բազմութիւն դիւաց 'ի վերայ լերինն բարձու 'ի հիւսիսոյ կողմանէ, քարածիգս առնելով անթիւ բազմութեամբ յոյժ, և ձայնս և ճիչս և գոչիւն սաստիկ արձակէին: Իսկ սուրբ Առաքեալն տեառնագրեաց խաչ մի փոքրիկ, և կանգնեաց 'ի վերայ քարի լերինն, և դևքն չիք լինէին »:

1. Առ Մ. Կաղանկատուացւոյ, գլ. ԺԱ. « Խոնարհէր թագաւորն ծեր (Ուռնայր), անկանէր և պատէր զոտիւք և զծեռօք (Ս. Գրիգորի Լուսաւորչի) պատմէր զամենայն մոլորութիւնս հեթանոսաց և խոստովան լինէր վասն տգիտագործ մեղացն անցելոց: ... հալածեցան դևք աշխարհիդ, խափանեցան զոհք և ճենճերք, ամաչեաց մոլորութիւնն ... վիշապըն ժողովեաց և գումարեաց զզօրս իւր .. ասեն. Մոլորութիւնս մեր կանուխ է ... Զայս ասացին և սկսան մրմռալ ելանել և ապականել զդաշտս », և այլն:

2. Յարեգր. Գիրք ԺԲ. գլ. ԺԳ. « Եւ յայնմ վայրի Խուտարզ կայր 'ի Սամբուլ լերին, մատուցանելով զոհս դիցն երկրին, ուր երիցագոյն պաշտօն էր Հերակլի (Վահագնի). որ 'ի սահմանեալ ժամանակի ազդ առնէ քրմաց 'ի քուն՝ հանդերձել մերձ 'ի մեհեան ձիան սպառազէն 'ի հեծելութիւն որսոց: Եւ յածել նոցա կապարճս զձիովք նետալիցս, սփռի ձիանն ընդ անտառն և 'ի մուտս գիշերոյ դառնայ շնչասպառ կապարճիւքն դատարկելովք. և դարձեալ միւսանգամ 'ի տեսլեան գիշերոյ երևեալ աստուածոյն, ցուցանէ նոցա զհետս հեծելութեան իւրոյ ընդ անտառն. և գտանեն անդ բազմութիւն էրէոց տապաստ անկեալ համասփիւռ »: Եթէ 'ի Միջագէտս Հայոց կ'իմանայ հեղինակն այդ մեհեանը կամ 'ի Կորդուս՝ կարելի է ըսել, թէ ոչ եթէ Հերակլէսի, այլ կամ Վահագնի արարուածներ կը յիշեցնեն մեզ այդ խօսքերն և կամ Մատնահատից դիւական աղանդոյն. որովհետև, նախ զի առ Յոյնս չիք այսպիսի աւանդութիւն մի վասն Հերակլէսի: Բ. Արևելեան ժողովրդեան և աշխարհաց մէջ կը պատմուին, և վերոյիշեալ երեք տոհմային մատենագրաց աւանդուածներուն համաձայն են:

Այս մասին՝ Զենոբայ և Ագաթանգեղայ աւանդածները տրամագը-ծապէս կը թուին հակառակել միմեանց. զի առաջինը, Տարօնի պատմութեան մէջ, գրեթէ միայն թագաւորին և արքայազունդ զօ-րաց գործել և վճարել կու տայ զամենայն,'ի բացակայութեան անդ Գրիգորի. իսկ վերջինս, ընդհակառակն, Գրիգորի կը վերագրէ: Այս երևոյթս նշան է, թէ Աթանագինեայ եպիսկոպոսի եկեղեցին նուիրել Գրիգո-րի՝ և ոչ թէ Տրդատայ կենսագրին կը պատկանին: Բ, Ս. Գրիգոր՝ մին-չև ցօր ձեռնադրութեան իւրոյ և դարձին չի զեկուցաներ եպիսկոպոսա-պետին Կեսարիոյ կամ Անտիոքայ զդարձն Հայոց 'ի Քրիստոս. ոչ քահանայս կը խնդրէ 'ի նոցանէ և ոչ իսկ եկեղեցիս կը շինէ, այլ միայն յամենայն 'ի քաղաքս, 'ի շէնս և յաւանս, յագարակս և յան-ցս ճանապարհաց խաչ կը կանգնէ և լոկ քաղաքորմով կը պատէ Աստուծոյ համար շինելիք տանց տեղերը: Այս իսկ մի այլ նշան է, թէ Գրիգորի կենսագիրը՝ բնաւ հաւատքի առն էր և ոչ յոյն. և անշուշտ կամ ազգային սնապարծութիւնը թելադրած է նմա աքօղել զպատ-մական եղելութիւն իրին, ցուցնելու, թէ Հայք Յունացմէ բնաւ օգ-նութիւն ստացած չեն և կամ լաւ ևս, թէ Ս. Գրիգոր եղաւ իրենց 'ի Քրիստոս վերածնութեան, եկեղեցեաց շինութեան և եկեղեցական բարեկարգութեանց միակ պատճառն: Սակայն առանց 'ի կանխա-կալոյ կարծիս պաշարուելու, պէտք է ըսել, թէ այս բանս հակա-ռակ է ոչ միայն Գրիգորի անփառունակ հոգւոյն, աստուածային նա-խանձուն և յայնժամու եկեղեցեաց ծխական անխտրութեանն և ի-րարու հետ ունեցած հաղորդութեան, այլ նոյն իսկ ընթացից պատ-մութեան, զոր այլուր առիթ պիտի ունենամ ապացուցանել:

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Քննութիւն երթին Ս. Գրիգորի 'ի Կեսարիա՝ 'ի ձեռնադրութիւն և դարձի հաւատոյն. — Վերջապէս կողմնակալ նախարարութեանց Հայոց և նոցա մասին եղած արտօնութեան հին սահմանադրութեանը. — Տրդատայ Թուղթն առ Ղեոնդիոս և նորա անհարազատութեան բնորոշումը. — Գրիգորի քարոզագործութիւնն 'ի Տարօն և Աթանագինեայ ստանձնեալ հաւատակիցները. — Կեսարիոյ արքեպիսկոպոսի Թուղթն և նորա հարազատութեան խնդիրը. — Ներսէսի և արտաքին հասարակի առ այն. — Ասոր Ասորեստան Թագաւորի յԱրշակ և 'ի Կեսարիա. — Կեսարիոյ Արքեպիսկոպոսութիւնն և շնորհաբաշխ Հայոց ձեռնադրելու իշխանութիւնն:

Յէջ 594, ԺԺԱ գլխահամարով կը բացուի դիմացնիս զԳրիգոր հովիւ և առաջնորդ ընտրելու դրուագն, որուն համար թագաւորն Տրդատ Վաղարշապատի մէջ խորհրդի կը կոչէ ոչ միայն զնախա-րարս և զմեծամեծս, այլ և զզօրս իսկ գլխովին: Թէպէտ և ուղղակի Տրդատայ Պատմութեան վերաբերող հատուածով մի կը սկսի սոյն

*դրուագը, բայց ստէպ ստէպ ընդհատուած է Գրիգորի կենսագրութեան հատուածներով: Այս մասին՝ կարևորութիւն տալու է Գուտշմիդի սուր դիտողութեանց. զի չեն ինչ փարկպարագի և անհիմն, բայց խորշելով միշտ նորա ծայրայեղութիւններէն*[1]: *Թէ ստուգիւ կան յայսմ դրուագի ոչ միայն տարբերութիւնք աղբերաց, այլ նոյն իսկ հեղինակաց, նշան է, նախ, սորա նախընթաց պարբերութիւնն, որ Գրիգորի գործոց պատմութեան հետևեալ խօսքերով. « Եւ յայնմ հետէ փոյթ 'ի վերայ ունէր, զառընթերակաց արքունիսն հանդերձ աւագանւով … աստուածեղէն վարդապետութեամբն լուսաւորէր » կ'աւարտի: Բ. Ցէջ 596, վերստին ստիպուած է կրկնել նախարարաց և նոցա զօրաց գումարումն, և այսպիսի կրկնութեան չիք այլ պատճառ՝ բաց աստի, այսինքն է մի և նոյն իջում. « Իսկ անդէն տեսիլ սքանչելի յԱստուծոյ երևեալ թագաւորին » բառերով սկսող պարբերութիւնն, յորում երկաքանչիւրոցն, այսինքն է, թէ թագաւորին և թէ Գրիգորի հրեշտակ կ'երևի. նմա՝ առ 'ի ընտրել զԳրիգոր հովիւ, և սմա՝ որպէս զի այն ընտրութեան դէմ չկենայ: Արդ, Գրիգորի գործոց հեղինակին, ինչպէս նաև զանոնք խմբագրողին, վերաբերեալ նախընթաց հատուածոց մէջ արդէն իսկ տեսանք, թէ հրաշք, տեսիլք և երևոյթք՝ յաճախ կու գան 'ի հանդէս. մանաւանդ երբ մեծ դէպք մի առաջի կայ պատմել. նոյնը կը տեսնուի և աստ: Բայց պէտք է ըսել, թէ ուր առանց հարկի հրաշք կը բազմանան՝ անդ անտեղութիւնք առաւել ևս ակներև կը լինին: Արդ, անմիջապէս նախընթաց պարբերութեան մէջ Տրդատ ինքիրմէ արդէն կը փութայ և կը յորդորէ զժողովականս՝ ընտրել իրենց գլուխ և հովիւ զԳրիգոր, յասելն. « Եկայք ճեպեսցուք, զայս առաջնորդ կենաց մերոց տուեալ մեզ յԱստուծոյ զԳրիգոր՝ հովիւ կացուցանել ». և ոչ ոք կ'ընդդիմանայ այս հրաւիրանացս՝ բաց 'ի խոնարհն Գրիգորէ. ուրեմն Տրդատի կողմէն, որ արդէն համոզեալ էր, ընաւ համոզիչ հրեշտակի և տեսլեան պէտք չկար այլ վերագրելի է բարեպաշտութեան Գրիգորի կենսագրին և կամ գրոցս խմբագրողին, որ ազգային կենդանի կամ գրաւոր աւանդութիւններն ներմուծելով անդ, ուզած է Գրիգորի ընտրութեան մասնաւոր գերազանցութիւն մի տալ. ինչպէս Փաւստոս Բուզանդացին տուած է Մեծին Ներսեսի ձեռնադրութեան, այլաբանօրէն ներկայացնելով Հոգւոյն Սրբոյ շնորհաց իւղն կամ մեռոնակիր աղաւնին՝ 'ի կերպարանս թռչող աղաւնոյ, որ կը հանգչի 'ի գլուխ սրբոյ եպիսկոպոսին: Այսպիսի եղելութիւն մի կ'աւանդէ նաև Զենոբ*[2]*. բայց ես կարծեմ, թէ իբրև հասարակաց աղբիւր թէ Ագաթանգեղայ և թէ Զենոբայ աւանդածին՝ պէտք է դնել Ս. Ցակովբայ Մծբնացւոյ հնագոյն կենսագրութե-*

1. *Զի գերմանացի քննադատն՝ իւր նախայիշատակեալ գործին* 14–21 *էջերում այնքան իրարմէ տարբեր և իրարու հակասիչ աղբիւրներ ենթադրած է յայսմ, յորոց ոմանք՝ նորա մտաց մէջ միայն կարող են տեղի ունենալ և ոչ թէ իրօք:*

2. *Պատմ. Տարօնոյ, էջ* 23, *կ'ըսէ վասն Գրիգորի. « Իսկ հրեշտակ Տեառն հաւանեցոյց զնոսա, զինքն լինել նոցա հովիւ »:*

Նը, յորմէ առնելով նա ինքն Թէոդորետոս՝ կ'աւանդէ, թէ երբ Մըծբնացիք կ'ուզէին եպիսկոպոս ընտրել, և երից ընտրելեաց պատճառաւ տարաձայնութիւն ծագեցաւ, այն ժամանակ հրեշտակ Աստուծոյ երևցաւ եպիսկոպոսապետին Անտիոքայ, որ այս առթիւ եկած էր 'ի Մծբին, և յայտնեց նմա, որ զՍ. Յակովբ ընտրեն. երևցաւ և Ս. Յակովբայ որպէս զի Աստուծոյ կամացը չհակառակի։

ԾԺԲ. գլխահամարով սկսող և նորա յաջորդ պարբերութիւնքը, յորս կը յիշուին Հայաստանի վեշտասան աշխարհաց կուսակալները, մերթ իրենց աշխարհաց և մերթ ալ պաշտաման մականուամբքն, ըստ իս, յարքունի յիշատակարանաց առնուած են և աւելի Գրիգորի, քան Տրդատայ պատմութեան յանկ են: Թէպէտև չափազանց կ'երևի այսչափ նախարարակոյտ բազմութեամբ և զօրօք երթն Գրիգորի 'ի Կեսարիա. բայց նորա պատմական եղելութիւնն անժխտելի է: Ցիրաւի, Զենոբ՝ Տարօնի պատմութեան քիչ առաջ յիշատակուած իշխումը յայտնապէս կը հաստատէ [1] այս դէպքս, բայց առանց յանուանէ յիշելոյ զնախարարս: Դարձեալ, առ Փաւստոսի [2] կը տեսնենք, որ Գրիգորի յաջորդաց, այսինքն է, Յուսկան, Փառենայ, Շահակայ և մեծին Ներսիսի ընտրութիւնն, ուղևորութիւնն և ձեռնադրութիւնն 'ի Կեսարիա՝ նոյնպէս նախարարակոյտ բազմութեամբ եղած կը նկարագրուին. մանաւանդ թէ Բուզանդացին բացայայտ կերպով կը ծանուցանէ զայս՝ իբր հնացեալ սովորութիւն կաթողիկոսընտրութեան Հայոց, յասելն. « Բայց գումարեալ ընդ նմա (Յուսկան) թագաւորն Տիրան զմեծամեծ նախարարսն՝ [illegible], զմեծ հազարապետն 'ի Հազարապետութեան », և այլն:

Ագաթանգեղայ սոյն հատուածոց՝ ինչպէս նաև Բ. գրոց, գէթ ըստ մասին, հնութեան և հարազատութեանն ապացոյց կը համարիմ ես, նախ, Մ. Կաղանկատուացւոյ արևելեայց աւանդութեանց մէջ բերած մէկ տեղին, յորում կ'ըսուի որմզդեան Շապհոյ համար, թէ ուզելով իմանալ, թէ ո՞ր ազգ և լեզու ունիցի պատիւ և բարձ իւր տէրութեան մէջ, հրամայեց մեծահաց խնճոյս պատրաստել առ այս, և հրաւիրեց զնախարարս աշխարհաց: Եւ ժողովականաց առջև խօսեցաւ այսպէս. « ԶՊարսից և Պարթևաց զբնական Պահլաւեկս և զազատ արանց զնախարարութիւնս քաջ գիտեմ. իսկ զԱր‑ [illegible] զազգատոհմն և զնոցին նախարարութիւնս ոչ կարացաք գիտել՝ ոչ 'ի հարցն մերոց թագաւորաց և ոչ 'ի մատեանագրաց: Եւ արդ մի յերկուց առաջի կայ ձեզ նախարարացդ Հայոց՝ ցուցանել զնախնական գիր իւրաքանչիւր տանց, զաստիճան և զպատիւ ... ապա թէ ոչ՝ զամենայն ինչս ձեր և զպատիւ՝ Արեաց ազատ արանց շնորհեսցուք »: Կը յաւելու հեղինակս. « Եւ նոյնժամայն խորհուրդ բերեալ իշխանացն Հայոց մեծաց՝ մատուցին առաջի թագաւորին զԱ‑

1. Ցասելն. « Եւ տայ 'ի ձեռս նորա (Գրիգորի) իշխանս և զօրս բազումս, և առաքէ զնոսա յաշխարհն Կապադովկացւոց 'ի քաղաքն Կեսարիա, ձեռնադրել 'ի սրբոյ հայրապետէն Ղևոնդեայ »:

2. Գ. Դպր. գլ. ԺԲ. ԺԶ, Ժէ, և Դ. Դպր. գլ. Դ;

գահնակերպոյ Պարտամանեան ցանկալի. և հրամայեաց ընթեռնուլ և Նորքճանճել 'ի Պարսիկ գեր և 'ի ծովու: Եւ իմացեալ թէ ոկեղքն յԱրտաշէտանէ 'ի նախնոյն իւրմէ, առաւել ևս զուարճացեալ և ներքոյումն գրոցն առնելով՝ դնէր 'ի վերայ աչաց իւրոց խանդաղատելով: Եւ գրեալ 'ի նմա գեր պատն և եօթն թուղթ՝ սկսանէր ըստ այնմ յարդարել զնիստ իւրաքանչիւրոցն 'ի սեղանն արքունի »:

Այս աւանդութիւնս հաւանօրէն պարսկական յիշատակարաններէն առած կ'երևի Կաղանկատուացի. որուն ապացոյց կարէ լինել, նորա հետևեալ բացատրութիւնը. « Իսկ զմովպետանն[1] մովպետն 'ի սեղանն արքունի մեծապատիւ առնէր », զոր Մոսկուայի տպագրութեան հրատարակիչը՝ կամ սխալ ընթերցմամբ և կամ Եղիշէի ծաւալական նմանողութեամբը, կը դնէ զմոգպետանն մոգպետն: Այս պարսկական զուտ անունս կը յիշէ Եղիշէ, բայց տարբեր ուղղագրութեամբ. այսինքն է, « մովպետանն մովպետ »: Իսկ նոր պարսկերէնը՝ կը գրէ մոգուց մոպետ կամ մովպետ: Բ. Զոսիմոս (Գիրք Բ. գլ. Իէ) առնելով 'ի պարսկէ ումեմնէ, որ կը գտնուէր 'ի Փռիւգիա, կը պատմէ, թէ յաւուրս (Շապհոյ) տրուեցաւ սեղան մեծահաց նախարարաց Պարսից, յորում հրաւիրեալ եմուտ և Որմիզդէս ոմն արքայազարմ. բայց որովհետև մեծամեծքն ոչ ոտքի ելան և ոչ ալ պատուեցին զնա՝ ըստ արժանւոյն, այն պատճառաւ սաստիկ բարկացաւ Որմիզդէս, դուրս ելաւ սպառնալով սպանանել զՄարսիաս: Իսկ մեծամեծք Պարսից զՄարսիաս ազատելու համար անդէն և անդ յետ մահու արքային՝ թագաւորեցուցին նորա կրտսեր որդին, բանդարգելով զՈրմիզդէս: Այս բանս տեսնելով նորա ամուսինը, դրաւ զնա 'ի փոր վիշապ ձկան, և ուղտապանի ձեռքով խաբելով զպահապանս, փախոյց զնա 'ի Հայս առ թագաւորն Հայոց, որ բարեկամ լինելով Որմիզդէսի՝ ապահով ճանապարհաւ հասուց զնա առ Կոստանդիանոս, որ և սիրով ընդունեցաւ և մեծարեց զնա:

Արդ, դժուարին է որոշել՝ արդեօք Որմիզդէսի՛ մասին աւանդածը, թէ մերոյս Անդովկայ Սիւնեաց իշխանին իցէ ճշմարիտ. սակայն երկաքանչիւր աւանդութեան նմանութիւնն և հնութիւնն անժխտելի է և Պարսից արքունի դիւաններէն առնուած են: Գ. Կը թուի հաստատել միանգամայն, թէ Ագաթանգեղայ գրոց, գէթ մասին միոյ, պարսկերէն թարգմանութիւն մի ևս իրօք եղած է 'ի վերջ կոյս Դ. դարուն և 'ի սկիզբն Ե.դին:

Սակայն դիտելու ենք, որ ըստ երկուց գլխոց կը տարաձայնի Կաղանկատուացու այս աւանդութիւնս՝ յԱգաթանգեղայ: Ա. զի ըստ վկայութեան Աղուանից պատմագրին[2], Սիւնեաց իշխանն՛ էր չորեքտասաներորդ, ըստ բարձի և ըստ սպասու. մինչդեռ առ Ագաթանգեղ՝ կը գտնենք զնա մետասաներորդ, ըստ հայերէն օրինակին.

1. Առ Ստեփ. Սիւնեցւոյ, Պատմ. Սիւնեաց, գլ. Ը. կ'ըսուի. « Իսկ զմովպետան մովպետն 'ի սեղան արքունի մեծապատիւ մեծարէր » :

2. Ցասելն. « Իսկ տասն և չորրորդ բարձն եհաս Անդովկայ՝ Սիւնեաց տեպռն, և նա հպարտութեամբ [illegible]ոխիտացեալ՝ ոչ ինչ ճաշակեաց »:

իսկ ըստ յունարէնին՝ տասներորդ: Բ. Կաղանկատուացին՝ եօթն և տասն [illegible] և կողմնակալ իշխանաց [illegible] գոհեալ կ'աւանդէ. մինչդեռ այժմ Ագաթանգեղայ գրոց թէ՛ հայերէն և թէ՛ յունարէն օրինակաց մէջ՝ վեշտասան կը գտնենք միայն։ Արդ, այս երևոյթս 'ի նկատի ունելով, պէտք էր, ըստ ինքեան ըսել, թէ կամ Կաղանկատուացւոյ այդ տեղին աննիշդ է, և կամ Ագաթանգեղայ տեղին խանգարուած [1] է ժամանակաւ: Սակայն, ըստ իս, առաջնոյն ասանդածըն՝ ստոյգ համարելի է, զի միևնոյնը Ստեփաննոս Սիւնեցին [2] եա բառ առ բառ մէջ կը բերէ: Ուստի Սիւնեաց պատմագիրն, եթէ շօշափելի յիշատակարաններ իւր դիմացը չունենայր, ըստ կամս չպիտի կարենայր [illegible] դնել զիշխանն Սիւնեաց, որ զառաջին տեղին ունէր յայնժամ: Իսկ Մեսրովբ [3] Երէց՝ կը հաստատէ զասացեալն յԱգաթանգեղայ. զի մի առ մի թուելով զքարձս իշխանացն, զորս հաստատած էին մեծն Խոսրով և Տրդատ և ապա նորոգեցին Արշակ Բ. և Ներսէս, կարգաւ ճիշդ [illegible] կը դնէ զիշխանութիւնն Սիւնեաց: Սակայն զարմանալին այս է, զի մի այլ վաւերական յիշատակարան, այսինքն է, [illegible] Ս. Սահակայ, որուն յԸ դարուն գրուած թերի օրինակն եհաս առ մեզ, զՏէրն Սիւնեաց՝ [illegible] կը դնէ կարգաւ. իսկ երկրորդ կամ միւս Սիւնեաց տէրը՝ ԻԸ: Անգեղտան իշխանութեանն՝ և ոչ իսկ յիշատակութիւն կայ աստ: Զենոբ իսկ, որ Ագաթանգեղայ ժամանակակից համարուած է, չհամաձայնիր ոչ Ագաթանգեղայ և ոչ Կաղանկատուացւոյն. զի ըստ ասորի հեղինակիս, Սիւնեաց իշխանը ոչ մետասաներորդ է և ոչ չորեքտասաներորդ, այլ զոգցես իմն [illegible] [4], յետ իշխանին Անգեղտան:

1. Զի Բ և Գ. օրինակներն յետ յիշելոյ զիշխանն Անգեղտան՝ անդէն կը յարեն. «Որ էր բդեաշխ մեծ». 'ի յունարէնն՝ չիք այսպիսի ինչ: Զաքեանդ անունը, մին Զաւրավանդ կը գրէ. Բ. օրինակը՝ Զարաանդ. իսկ Գ. օրինակն՝ Զարաւանդ: Եօթներորդ իշխանը, որ հայերենի մէջ Ծոփաց աշխարհին կ'անուանի. յունարենի մէջ, ընդ հակառակն, պարզապէս բդեաշխ գրուած է, ὁ ἕτερος κομιτατήσιος: Ութերորդն՝ հայերենի մէջ Գարգարացւոցն է. իսկ յուն. մէջ Ռուշտունեաց, τῆς Ῥουστινῶν χώρας. Իսկ Թ. իշխանը՝ որ, ըստ հայ. օրինակաց, Ռուշտունեացն է, ըստ յունարենին τῆς κομίτων χώρος. Ժ. իշխանն, որ ըստ հայերենին՝ է Մոկացը. ըստ յուն. τῆς Συνιτῶν χώρας. ԺԱ. իշխանն՝ հայերենի մէջ է Սիւնեացը, յուն. մէջ ընդհակառակն՝ Ծաւդէից ὁ Σουδέων χώρας. ԺԲ. հայերենի մէջ Ծոփաց դրուած է, և ԺԳ՝ Ուտէացւոց. իսկ յուն. մէջ, ըստ տպ. Լանգլուայի, Σουδέων և Σουτιῶν գրուած է: Հուսկ ուրեմն ուր հայերէնը՝ Հէր գաւառի կը դնէ, յունարէնը՝ καὶ χώρας τῆς πατρίδος ունի:

2. Պատմ. Սիւնեաց, գլ. Ը:

3. Պատմ. Ս. Ներսիսի. Սոփ. հայկ. հտ. Զ. էջ 32:

4. Ցիրաւի, Արծանայ պատերազմին մէջ, զոր մղեցին ուղեկից իշխանքըն Գրիգորի, Արծրունեաց իշխանը՝ կը ներկայացնէ Արծանայ՝ զիշխանն Անգեղտան և զիշխանն Սիւնեաց, իբրև զդերակոյս 'ի մէջ նախարարացն հայոց, յասելն. «Զի այս իշխանն է Անգեղտան, և իշխանն Սիւնեաց տան և այլք 'ի պատուաւորաց», և այլն: Յէջ 35, Սիւնեաց իշխանը կը ղրկուի 'ի Կուասս և կը համոզեցնէ զզօրսն գալ 'ի մկրտութիւն: Յէջ 46, այսինքն է, Գեղոնենոնի դէմ տուած պատերազմին մէջ, իբրև երիցագոյն՝ հայոց բանակի աջ թևին կը հրամայէ Սիւնեաց իշխանն. իսկ

Ուրեմն մի այլ զաղտնի պատճառ որոնելու ենք վերոյիշեալ հեղինակութեանց՝ Սիւնեաց իշխանութեան մասին յայտնած տարաձայնութեանը, քան թէ տարակուսիլ նոցանէ միոյն կամ միւսին հաւաստեաց զաւրութեան վերայ: Ըստ իս, Փաւստոսի հետևեալ տեղւով՝ կարելի է մեկնել զայն: Հեղինակս, Դ. Դպրութեան ԾԸ. գլխում, կը ծանուցանէ, թէ յետ գերութեան Արշակայ, երբ Շապուհ հրով և սրով տիրեց Հայաստանի, բոլոր Սիւնեաց տոհմը սրէ անցուց. և թէ « Առնէր զայս ամենայն վասն վրիժուցն Անտոնեայ, որ եղև (աւար) պատերազմ ընդ Ներսեհ արքայ Պարսից »: Աստ որոշակի յիշելով Փաւստոս զանուն իշխանին Սիւնեաց՝ կը հաստատէ զասացեալն Կաղանկատուացւոյ. իսկ չորեքտասաներորդ դասուելուն նորա 'ի սեղանն արքունի, և այն պատճառաւ տեղի ունեցած փոփոխակի վրէժխնդրութիւնն իշխանին Սիւնեաց և արքայից արքային՝ բոլորովին այլ ինչ կը տեսնուի առ Փաւստոսի: Ուրեմն աստի մարթ է հետևցնել, թէ կամ յետ մահուն Տիրանայ և կամ Արշակայ՝ փոխեց Շապուհ զկարգս բարձից և պատուոյ նախարարացն Հայոց, զոր հաստատած էր Տրդատ, ինչպէս և երբեմն փոխեց Արտաշիր զկարգըն հաստատեալ 'ի Խոսրովայ և 'ի Վաղարշակայ: Շնորհապարտ եմք Փաւստոսի՝ Ներսեհի հետ ունեցած Հայոց պատերազմին յիշատակութեան համար, զոր Ագաթանգեղայ գրոց հեղինակն բոլորովին 'ի մոռացութեան թողուցել է, ինչպէս դիտեցի գրուածոյս առաջին գլուխներուն մէջ. իսկ Խորենացին, Բ. գլ. ՁԹ, այլընդայլոյ բանիւ անցած է: Այսու կարելի է ասել թէ, թէ Կաղանկատուացու և թէ առ Փաւստոսի յիշուած Անդովկն՝ եղած է Ներսէհի ժամանակակից Սիւնեաց հինաւուրց զօրավարն: Այժմ քննենք երկրորդ խնդիրը:

Արդ, Հայոց մեծաց աշխարհաց թիւն էր հնգետասան, ըստ աւանդելոյ Խորենացւոյն. ուստի ըստ այնմ ևս պէտք էր, որ լինէին թիւք կողմնակալ իշխանաց նոցա: Այս տեսութեամբս անյարմար կը տեսնուին թէ Կաղանկատուացիէն յիշուած ԺԷ. և թէ Ագաթանգեղոսէն յիշուած ԺՁ. իշխանութիւնքը: Սակայն այսու միայն բաղդատոր է Ագաթանգեղոս, զի որոշակի կը յիշէ և զաշխարհն Գուգարաց, որով կը լինին վեշտասան: Իսկ առ Կաղանկատուացւոյ և Ստեփանոսի Սիւնեցւոյ՝ թիւերը միայն բազմացած են, առանց յիշատակութեան անուանց, որով հեշտ կը լինէր իմանալ զԱգաթանգեղոս: Այլ հանդերձ այսու՝ պէտք է ըսել, թէ ոչինչ ընդհատ 'ի Կաղանկատուացւոյ՝ վարանեցուցիչ է և Ագաթանգեղոս՝ այս անտավոր անուանս ընծայութեամբը, առ որ կարելի է երկրորդել Վիրգիլեան առածը, թէ Timeo Danaos et dona ferentes! Ցուցարէն

ծախ թևին՝ իշխանն Անգեղտանն ըէշ 44. Սիւնեաց. իշխանը կը կանգնէ, հրամանաւ Գրիգորի, զխաչն Կուառաց. իսկ իշխանն Անգեղտան՝ զՃոռնոյն: Այսպէս և յայլ ամենայն վերաբերութիւնս ընդ Գրիգորի և ընդ Տրդատայ, սոքա են պարառաջքն: Արդ, Ագաթանգեղայ գրոց հեղինակը մէկ կողմանէ Զենոբէն տարաձայնելով, միւս կողմէն ալ Ներսիսի Գահնամակին համաձայն կարգելով զիշխանն Սիւնեաց, կարծիս կու տայ մեզ թէ աւելի վերջնոյս ժամանակակից եղած է:

օրինակին մէջ Գարգարացւոց անուան հետքն անգամ չի գտնուիր: Դարձեալ, նոյն իսկ Ագաթանգեղայ հայերէն օրինակի մէջ, յէջ 650, յուղևորութեան անդ Տրդատայ 'ի Հռովմ' միւս կողմնակալ իշխաններէն շատերը կը յիշուին, բայց Գարգարացւոց յիշատակութիւն չկայ. այլ մանաւանդ թէ փոխանակ այնր՝ Մոկաց և Մազքըթաց կողմի իշխանները կը յիշուին: Մ. Խորենացին միայն, առ հինս, իւր պատմագրութեան [1] մէջ երիցս կը յիշէ սոյն անունը՝ փոխանակ Աղուանից: Բայց ինձ այնպէս կ'երևի, թէ Մովսէս Ագաթանգեղայ գրոց աւանդութեանը վերայ հիմնեալ միայն մէջ կը բերէ այդ անունն, և թէ իրօք նորա ժամանակ այդպիսի բաժանումն մի չկար. որովհետև եթէ եղած լինէր, նա պէտք էր, որ յիշէր մեծին Հայոց միւս աշխարհաց կարգին մէջ, և կամ Աղուանից նահանգներու կարգումը: Իսկ արդ թէ այսպէս և թէ այնպէս՝ անունս Գարգարացւոց եթէ փոխանակ Աղուանից առնումք՝ միշտ անհասկանալի կը մնայ Ագաթանգեղոսէն յիշուած այդ կողմնակալութեան բդեաշխն, 'ի թիւ հնգետասան կողմնակալացն Հայոց. որովհետև, ըստ վըկայութեան Մ. Կաղանկատուացւոյ [2], Տրդատայ ժամանակ Աղուանից վերայ ոչ եթէ բդեաշխ ոմն 'ի կողմանէ Հայոց, այլ թագաւորն նոցա [illegible] [3] կ'իշխէր, իբրև սանկախ 'ի Հայոց. որ և յետ ձեռնադրութեան Ս. Լուսաւորչին եկաւ 'ի Հայս՝ նախարարօքն իւրովք և զօրօք հանդերձ, և մկրտուեցաւ 'ի նմանէ: Արդ, այս պարագաներս 'ի նկատի առնելով, պէտք է ըսել, թէ կամ Գարգարացւոց անուամբ՝ բդեաշխն Գուգարաց հասկանալի է, որոնք յաւուրս Տրդատայ՝ Հայոց կը հպատակէին, և Փաւստոս [4] իսկ երկիցս կը յիշէ բըդեաշխ զոմն 'ի մէջ կողմնակալ իշխանաց, որոնք ապստամբեցան յԱրշակայ. կամ Փայտակարանի այն դաշտային մասը՝ որ Կուր գետին արևելեան եզերքէն սկսեալ կը տարածուի դէպ 'ի Կասպից ծով և 'ի Բագու, 'ի հնումն Գարգարացւոց աշխարհ կը կոչուէր. և կամ ըսել, թէ ուղղակի [illegible] կարդալու է այդ անունը:

1. Գիրք. Բ. գլ. Ը. կ'ըսէ վասն Առանայ. «Ի սորա զաւակէ ասեն սերեալ զազգ Ուտէացւոց, Գարդմանացւոց և Գարգարացւոց»: Ի գլ. ԾԵ. կ'ըսէ վասն Տրդատայ նահատակութեանն յԱղուանս. «Իջեալ 'ի դաշտն Գարգարացւոց»: Իսկ Գ. գլ. ԾԴ, խօսելով զՍ. Մեսրովբայ կ'ըսէ. «Եւ ինքն իջեալ յԱղուանս՝.. ստեղծ զնշանագիրս Կոկորդախօս ... Գարգարացւոց լեզուին»:

2. Պատմ. Աղուանից, հտ. Ա. գլ. Թ:

3. Այս Ուռնայրս պէտք չէ շփոթել ընդ հաւատադրուժ Ուռնայրի, զոր կը յիշէ Մ. Խորենացի, Գ. գլ. Լէ, որ Շապհոյ կողմը բռնելով Ձիրաւայ պատերազմի մէջ՝ կարեվէր խոցեցաւ 'ի քաջէն Մուշեղայ: Խորենացին՝ առաջին Ուռնայրը չի յիշեր. սակայն Կաղանկատուացի կ'աւանդէ, թէ էր քեռայր Շապհոյ Պարսից արքային. «Քաջազօր այր, որ 'ի մեծամեծ պատերազմունս զհոյակապ անուն ժառանգեաց 'ի մէջ Հայաստանեայց նշան յաղթութեան կանգնեալ»: Հեղինակին այս խօսքերս՝ որոշ չեն ցուցներ, թէ այդ պատերազմներն և յաղթութիւնն արդեօք Հայոց թէ Պարսից դէմ տարաւ:

4. Ցասեմն. «Եւ զբդեաշխն Գուգարաց, որ յառաջն ծառայէր թագաւորին Հայոց»:

Այս դաշտակւան երկիրս, զոր Մ. Խորենացի [1], իւր ժամանակի աշխարհագրական բաժանման համեմատ, Աղուանից եօթն գաւառներու մէջ զետեղած է, յատուկս Տրդատայ՝ Հայաստանի արևելեան կուսակալութիւնը կը կազմէր: Այս վերջին ենթադրութիւնն՝ ինձ աւելի հաւանական կ'երևի: Եւ այսպիսի մի եղելութեան իբրև ապացոյց կը համարիմ ես, Ա. Բուզանդացւոյ, Ե. Դպրութեան գլ. ԺԳ, մէկ տեղին, ուր Մուշեղայ պատերազմներն և յաղթութիւնքը պատմելով յաշխարհն Աղուանից, նորա գրաւած գաւառներուն մէջ՝ կը թուէ և զգաւառն Գուգարանոյ, առանց յիշելոյ բնաւ զկարծեցեալ աշխարհն Գուգարացւոց: Այսպէս նաև 'ի Դ. Դպրութեան գլ. Ծ, կը յիշէ յանուանէ զՏէրն Գարդմանաց: Բ. Մ. Խորենացի, Գ. գլ. Գ, կը ծանուցանէ, թէ Տրդատայ մահուանէն անմիջապէս քիչ յետոյ ապստամբեցաւ իշխանն Սանատրուկ 'ի Հայոց. « Թագ կապեալ ինքեան, ունի զքաղաքն Փայտակարան. զօրութեամբ օտար ազգաց խորհէր տիրել բոլորումս Հայոց » : Շատ հաւանական է կարծել, թէ այս իշխանս էր, որ 'ի մէջ այլոց ընկերեց Գրիգորի 'ի Կեսարիա: Գ. Եթէ գոյր իրօք յԱղուանս գաւառ ինչ Գարգարա յորջորջեալ, անշուշտ զանց չառնէր Մովսէս յիշել նաև յԱշխարհագրութեան իւրում՝ կամ 'ի Հայս և կամ յԱղուանս: Դ. Ագաթանգեղայ Ա. օրինակի մէջ փոխանակ Գարգարացւոց՝ Գուգարացւոց [2] գրուած է: Այս վերջին երևոյթս՝ կը թուի վերոյիշեալ ենթադրութիւններէն դուրս՝ մի ուրիշ բան ցուցանել. այսինքն թէ, Գամիրք ևս Տրդատայ ժամանակ Հայոց եղած լինին: Սակայն այսպիսի եղելութեան մի հերքումը կը գտնենք ուղղակի առ Ագաթանգեղ, զի յէջն 627, Հայոց արևմտեան սահմանագլուխը կը դնէ զՏուրուբերան և զքաղաքն Սատաղացւոց, որուն աւերակներն ևս կեցած են իբրև յուշարար արձանք՝ Հայաստանի աւերեալ և խախտեալ սահմանաց, դէպ յարևմուտս: Երկրորդ 'ի պատմութենէ կը գիտցուի, թէ Հռովմայեցիք ունէին զքաղաքս զայս, և թէ Եւստատիոսեանք՝ անդ դատուեցան: Ուստի Ագաթանգեղայ այս ընտրելագոյն օրինակին մէջ Վ գրի գոյութիւնն և Ի տառի բացակայութիւնը՝ կարծեմ, թէ աւելի Գարդմանացւոց լինելու հաւանականութիւն ունին, քան թէ Գամրացւոց, որ կրկին սեռական կը կազմէ, և ուրիշ տեղ բնաւ գործածուած չէ:

Ագաթանգեղոսեան գրոց վերոյիշեալ կողմնակալ նախարարութեանց հաստատութիւնն եղաւ 'ի ձեռն Վաղարշակայ, որոնց ծագման և յորջորջման պատճառը կ'աւանդէ մեզ Խորենացի. բայց ուրեք ուրեք կամայական և այլընդայլոյ մեկնութեամբ, որ միա տոհմային մատենագրաց, այսինքն է Թովմայի Արծրունւոյ և Սեբէոսի չհամաձայնին: Սակայն-իմ նպատակս չէ աստ քննել այդ բաները. այլ դիտել միայն, թէ ե՞րբ և ի՞նչ փոփոխութիւններ կրեցին այդ իշ-

1. Մատենագրութիւնք. տպ. Վենետկոյ, 1865, էջ 610.
2 Մեծին Ներսիսի գահնամակին մէջ (Սոփ. Հայկ. հտ. Զ. էջ 33) կը յիշուին և « Գամրեանք » կամ Կամրեանք:

*խանութիւններն: Արդ Վաղարշակէն մինչև ցմահն Խոսրովու մեծի չեմ կարծեր, թէ նախարարական տոհմից նկատմամբ՝ բարձի և պատույ ընդհանուր փոփոխութիւններ տեղի ունեցած լինին, քանի որ Պարթև Արշակունի իշխանութիւնն ընդհատուած չէր: Սակայն այն օրէն՝ երբ Սասանեանք սկսան տիրանալ Հայաստանի վերայ, Խոսրովու հաւատարիմ մնացած նախարարական տոհմերէն ոմանք՝ կոտորեցան, ոմանք՝ առ Յոյնս ցիրուցան եղան. իսկ այլք՝ պաշտօն-ընկէցք եղան, և անոնց տեղ ուրիշ տոհմեր բարձի և պատուոյ արժանացան. ուստի հարկ էր, որ մեծագոյն փոփոխութիւն մի յա-ռաջ եկած լինէր և եղև իսկ: Սակայն երբ Տրդատ՝ կայսերականն Հռովմայ հզօր ձեռնտուութեամբը վերստին ձեռք բերաւ իւր հայրենի տէրութիւնն, այն ժամանակ վարչութեան հետ 'ի միասին՝ նորա վարիչ իշխանութեանց ևս մեծ փոփոխութիւններ տեղի ունեցան. այնպէս որ Արշակունեաց հաւատարիմ մնացող և նորա վերականգ-նըմանը նպաստող ընտանիք, որոնք յառաջ երկրորդական բարձի և վիճակաց տեարք էին, յետ այնորիկ առաջին աստիճան անդր 'ի վեր բարձրացան: Այս մասին բաւական ընդարձակ տեղեկութիւն-ներ կու տայ մեզ Խորենացի՝ Տրդատայ դարձին և արարուածոց պատմագրութեանը մէջ: Այնպէս որ՝ այս էջերս բաղդատելով նորա Վաղարշակայ յօրինուածութեան մասին գրած իշից հետ, մեծ յե-ղափոխութիւն մի ակներև կը տեսնուի, որուն վերայ չէ մարթ այլ ևս երկբայել: Բայց պէտք չէ մոռնալ, որ Արշակունի լաւ կամ վատ թագաւորաց յեղյեղուկ կացութեան հետ՝ նախարարական բարձրա-գոյն տոհմից կացութիւնն ևս զուգահետ կ'ընթանայր. այնպէս որ՝ կարելի է ասել, թէ զորս միանգամ հաստատեց և կարգաւորեց մեծն Տրդատ՝ նոյնը խանգարելու և ցրուելու պատճառ եղաւ նորա յաջորդն: Այս մասին՝ զարմանալի և դէմ ընդդէմ երևոյթներ կ'ըն-ծայէ մեզ Փաւստոս: Այս հեղինակս գոհութեամբ կը նկարագրէ մեզ Տրդատայ որդւոյն Կոտակն Խոսրովայ արքայութիւնն, և նորա ան-մահանուն զօրավարին **Վաչէ** փառապանծ յաղթանակներով՝ Տրդ-ատէն թողուցած ընդարձակ տէրութիւնն, իւր կողմնակալու-թեամբք հանդերձ, նոյնպէս և Տիրանայ ժառանգել կու տայ: Սա-կայն Յուսկան դէպ 'ի Կեսարիա ուղեկցող նախարարաց մէջ՝ աւելի Հայոց առտնին և գաւառական իշխանները կը յիշուին յանուանէ, քան թէ Ագաթանգեղոսէն յիշատակուած կողմնակալ և գահերէց իշխանութիւնքը, այսինքն է, մեծ և փոքր **Ծոփաց** իշխանները միայն կու գան վերստին 'ի հանդէս: Իսկ Փառէնի ուղեկից գլխաւոր նա-խարարութեանց մէջ՝ կը յիշուին **Սիւնեաց** և **Ռշտունեաց** իշխա-նապետքն ևեթ: Բայց յուղևորութեան անդ Ս. Ներսիսի մեծի 'ի Կեսարիա՝ կու գան 'ի հանդէս դարձեալ **Մարդպետական**, **Սպարա-պետական** և **Սիւնեաց** իշխանութիւնքն. ինչպէս դեսպանութեամբ առ Վաղէս գնացողաց մէջ՝ կը յիշուի **Մաղխազական** կամ Խորխո-ռունեաց իշխանն ևս: Արդ, այս երևութիս գուցէ ոմանք հետևեալ մեկնութիւնը տան, թէ ամեն անգամ մի և նոյն կողմնակալու-թեանց իշխանները չէին ընկերեր նորընտիր կաթողիկոսաց 'ի ձեռ-*

նաղրութիւն. ուստի չէ ինչ զարմանք, որ նոցա շատերու տոհմական անուանքը անյիշատակ մնացած լինին: Սակայն, ըստ իս, բաց աստի՝ պատմական և վիճակագրական բուն պատճառներ ևս լինելու են: Եւ յիրաւի, առ Ագաթանգեղ յիշատակուած սահմանակալ նախարարութիւններէն ոմանք՝ Տրդատայ կենաց վերջին օրերում և նորա յաջորդին ժամանակ ապստամբելով 'ի թագաւորէն Հայոց՝ տարբեր դիրք և վիճակ ունեցան: Արդ, թէպէտև Փաւստոս՝ Վաչէի և նորա որդւոյն քաջութիւնները միայն նկարագրելու զբաղելով՝ 'ի լռութեան դատապարտած է Խոսրովու ժամանակամիջոցի Հայոց սահմանակալ իշխանաց արշաւանքներն և Հայոց կամ Արշակունեաց հետ ունեցած թշնամական յարաբերութիւնքը. սակայն նոցա մի քանիսին, այսինքն է, **Փայտակարանի**, **Աղձնեաց**, **Անձեւացեաց**, **Գուգարաց**, **Հեր** և **Զարաւանդի**, **Աղուանից** և **Ուտիացւոց** անջատումը՝ գրեթէ մի պատմական և յայտնի ճշմարտութիւն է, որ փոքր 'ի շատէ կը տեսուի և՛ առ Զենոբայ [1] Ասորւոյ:

Բայց **Բ. Ճառընտրի** մէջ անանուն հեղինակութեան մի՝ հետևեալ մակագրութեամբս. « **Յաղագս մահուանն Տրդատայ Թագաւորի քաջի, փառքի և առաքինոյ** », ոսկեդարեան հատուածն՝ [2] այնպիսի շօշափելի կերպով կը հաստատէ այս տխուր ճշմարտութիւնս, այսինքն է, Հայոց սահմանակալ իշխանաց և իշխանութեանց մեծ յեղափոխութիւնն, որուն վերայ այլ ևս տարակուսելու իրաւունք չունինք: Մինչև ցարդ իբրև հասարակաց կարծիք կ'աւանդուէր, թէ թագաւորն Տրդատ յետ ընդունելոյ զքրիստոնէութիւնն՝ տուաւ ինք-

1. Պատմ. Տարօնի էջ 43, կ'ըսուի վասն իշխանին Աղձնեաց « Իսկ նորա կաշառեալ 'ի թագաւորէն Հիւսիսոյ, առեալ 'ի նմանէ վաթսուն հազար դահեկան և գնաց ինքն յերկիրն Ապահունեաց. զի ամենայն ջան նենգութեան վասն թագաւորին ունելոյ էր »: Իսկ, յէջ 49 կ'ըսուի, թէ « Հրամայեաց (Տրդատ) նոցա ունել զիշխանն Աղձնեաց. և ածեալ առաջի կամէր ծայրատել զոտս և զձեռս նորա. զոր արգել Ս. Գրիգոր »: Անուն սահմանակալ իշխանիս այսորիկ էր Դուռվ, ըստ երից օրինակաց Զենոբայ:

2. Այս յիշատակարանս արդէն հրատարակուած է ամբողջապէս 1851 ամի « Բազմավիպի » մէջ, Պր. Ա. էջ 75, 'ի վերջկոյս հմտական հատուածին Հ. Ղ. Ալիշանի, այսպիսի մակագրութեամբ. « Ի վերադարձութեանն Պատմութեանն Հայոց Մովսիսի Խորենացւոյ »: Մեծանուն հեղինակիս կարծիքով՝ այդ հատուածը Խորենացւոյ Դ. գիրքէն է, (եթէ եղած է ստուգիւ Մովսիսի Պատմութեան Դ. գիրք մ'ևս). և ապացոյց առ այս կը համարի, նախ գրութեան ոճը, որ նման է Պատմագրութեան ոճին: Բ. Թովմ. Արծրունու վկայութիւնը: Սակայն, ըստ իս, այս հատուածիս մէջ կան այնպիսի պարագաներ, որք Մովսիսի այլուր աւանդածներուն ուղղակի կը հակասեն: Ցիրաւի, Պատմութեան Բ. գրոց ՂԲ գլխում՝ հարճք և կանայք կը համարուին պատճառք և գրգռիչք նախարարաց ընդ թագաւորին. իսկ աստ՝ ընդհակառակն Շապուհ: Անդ՝ վասն խեռութեան նախարարաց կը հեռանայ Տրդատ յարքունեաց. իսկ աստ՝ իւր կենաց դէմ լարուած դաւաճանութենէն խուսելու համար: Անդ՝ հրեշտակս առաքեալ յետս կը կոչեն գալ թագաւորել, և չգալուն պատճառաւ՝ կու տան զդեղ մահու. իսկ աստ՝ ընդհակառակն իրենք կ'երթան զկնի նորա և որսի պատճառաւ կը վիրաւորեն: Անդ՝ 56 տարի թագաւորած կը համարուի. իսկ աստ՝ 57 տարի:

զինքն 'ի ճգնութիւն առանձնութեան, և թէ նախարարք կը յորդո֊
րէին զնա գալ յարքունիս. և՞ երբ նա չանսաց՝ տուին նմա դեղ մա֊
հու և բարձին 'ի կենաց: Սակայն այս յիշատակարանս՝ բոլորովին
տարբեր և քաղաքական պատճառներ կը յայտնէ արի և առաքինի
թագաւորիս՝ իւր թագին և արքունեաց հրաժեշտ տալուն և ողբեր֊
գական մահուանը մասին՝ յասելն. « Իսկ թագաւորն Տրդատ
յետ հաւատոցն 'ի Քրիստոս, ամենայն առաքինութեամբ փայլեալ
մինչև ցվախճան արի ծերութեամբ : ... Այլ քանզի չարք ոմանք հրա֊
մանաւ Շապհոյ խորհեցան սպանանել զՏրդատ, և միաբանեալ անդրէն
զիշխանութիւնն հաստատել յաշխարհին Հայոց. յորում խորհրդի լեալ
էր և ախոյեանն Տրդատայ, ըստ ավրինակի Յուդայի մատնչի:
Բայց ոչ գիտէր թագաւորն թէ քանի՞ք կամ ո՞յք իցեն. վասն որոյ
կոչեալ զսենեկապանն զայն՝ հարցանէր, եթէ իցէ՞ ինչ 'ի դրանս
արդարև այսպիսի խորհուրդ: Նա իբրև լուաւ՝ զահի հարեալ սրր֊
տաբեկ լինէր. և ուրացաւ: ... Բայց ինքն թագաւորն ոչ առնելով
դատ, հեռանայր յարևմուտս կոյս, մինչև 'ի գաւառն Եկեղեց, որպէս
պահել լրոյն ապաւէն: Եւ տանջէ բազմաց էին 'ի խորհրդեան, ոմանք ընդ
նորա փնդելն, մանաւանդ ազատն Սիւնեաց կողմանցն, որք առաւել
հրամանակատարք Շապհոյ լինէին, վասն աշխարհին իւրեանց խաղա֊
ղական մնալոյ. որք և 'ի յորս երկոց երբեմն ընդ Ռափաուլին լինելով,
յորոց և խոցեալ լինի Ռափաուլն ... և եկեալ յարքունիսն դնի 'ի մա֊
հիճս սակաւիկ ինչ վիրաւորեալ, յորոց մտեալ սենեկապանն այն
պատել զվէրս նորա և տեսեալ զի ոչ մեռանել նմա 'ի վիրէն՝ ար֊
բուցանէ դեղ մահու և վախճանէ. որ յետոյ(ս) յայտնի եղև եղև 'ի նորին
խորհրդակցացն: ... Տրդատ Ռափաուլեալ ամն ԾԷ »:

Արդ, ինչպէս կը տեսնեն ընթերցողք, Տրդատ նա հանգոյն հօր
իւրոյ Խոսրովայ՝ սպանուած է յիւրայոցն, մանաւանդ թէ 'ի բարձա֊
կից իշխանացն, զորս ինքն բարձրացոյց 'ի կողմնակալութիւն աշ֊
խարհաց, և սպանուեցաւ թելադրութեամբ արքայից արքային:
Բայց թէ Տրդատայ մահուամբն՝ արդեօք լրեցի՞ն վախճանին հասմն
Շապուհ և նորա համախոհ Հայոց նախարարներն, ինչպէս հասած
կը կարծուին երբեմն Արտաշիր և Անակեանք: Արդ՞օք Տրդատայ
սուգալէտ մահուան հետ 'ի միասին՝ Հայոց սահմանական իշխանու֊
թիւնքն և նոցա վիճակներն եւ՝ փոխեցան, եթէ ոչ: Աներուշտ, եթէ
ոչ ամբողջովին, այլ գէթ ըստ մասին: Եւ յիրաւի, Մովսէս, Գ. գլ.
ժԸ, կ'ըսէ վասն Շապհոյ, թէ « Նուաճեաց և զազգ նախարարացն,
և փոխանակ Վահանայ Ամատունւոյ՝ Սպարապետ կացոյց զհաւա֊
տարիմ իւր զՎաղինակ Սիւնի և նմա յանձն արարեալ զՀայս »: Երկ֊
բորդ անգամ, Տրդատայ յաջորդին համար զուրցուած հետևեալ
այս խօսքերս, թէ « Ոչ ինչ արութիւն քաջութեան ցուցեալ. այլ և ոչ
ձեռն համարձակեալ կողմանցն հակառակելոյ ինչ ... այլ 'ի նմա ճողեալ
ապրտոյն Պարսից ... բովանդակ վարելոցեալ հնազանդ ամենեցունց որ֊
դեւ », բաւական էին ցուցանել այնպիսի եղելութեանց ճշմարտու֊
թիւնը: Փաւստոս, չգիտեմ, թէ առ 'ի հանել զԽոսրով, թէ այլ ինչ
նպատակաւ լռած է զայսոսիկ: Սակայն այս պարագայիս մէջ նորա

նաղրութիւն. ուստի չէ ինչ զարմանք, որ նոցա շատերու տոհմական անուանքը անյիշատակ մնացած լինին: Սակայն, ըստ իս, բաց աստի՝ պատմական և վինակագրական բուն պատճառներ ևս լինելու են: Եւ յիրաւի, առ Ագաթանգեղ յիշատակուած սահմանակալ նախարարութիւններէն ոմանք՝ Տրդատայ կենաց վերջին օրերում և նորա յաջորդին ժամանակ ապստամբելով 'ի թագաւորէն Հայոց՝ տարբեր դիրք և վինակ ունեցան: Արդ, թէպէտև Փաւստոս՝ Վաչէի և նորա որդւոյն քաջութիւնները միայն նկարագրելու զբաղելով՝ 'ի լռութեան դատապարտած է Խոսրովու ժամանակամիջոցի Հայոց սահմանակալ իշխանաց արշաւանքներն և Հայոց կամ Արշակունեաց հետ ունեցած թշնամական յարաբերութիւնքը. սակայն նոցա մի քանիսին, այսինքն է, Փայտակարանի, Աղձնեաց, Անգեղտան, Գուգարաց, Հեր և Զարեւանդի, Աղուանից և Ուտիացւոց անջատումը՝ գրեթէ մի պատմական և յայտնի ճշմարտութիւն է, որ փոքր 'ի շատէ կը տեսուի և՛ առ Զենոբայ [1] Ասորւոյ:

Բայց Բ. Ճառընտրի մէջ անանուն հեղինակութեան մի՝ հետևեալ մակագրութեամբս. « Յաղագս մահուանն Տրդատայ Նախարարի Հայոց, փառք և [illegible] », ոսկեդարեան հատուածն [2] այնպիսի շօշափելի կերպով կը հաստատէ այս տխուր ճշմարտութիւնս, այսինքն է, Հայոց սահմանակալ իշխանաց և իշխանութեանց մեծ յեղափոխութիւնն, որուն վերայ այլ ևս տարակուսելու իրաւունք չունինք: Մինչև ցարդ իբրև հասարակաց կարծիք կ'աւանդուէր, թէ թագաւորն Տրդատ յետ ընդունելոյ զքրիստոնէութիւնն՝ տուաւ ինք-

1. Պատմ. Տարօնի էջ 43, կ'ըսուի վասն իշխանին Աղձնեաց « Իսկ նորա կաշառեալ 'ի թագաւորէն հիւսիսոյ, առեալ 'ի նմանէ վաթսուն հազար դահեկան և գնաց ինքն յերկիրն Ապահունեաց. զի ամենայն ջան ներգութեան վասն թագաւորին ունելոյ էր »: Իսկ, յէջ 49 կ'ըսուի, թէ « Հրամայեաց (Տրդատ) նոցա ունիլ զիշխանն Աղձնեաց. և ածեալ առաջի կամէր ծայրատել զոտս և զձեռս նորա. զոր արգել Ս. Գրիգոր »: Անուն սահմանակալ իշխանիս այսորիկ էր Դառվ, ըստ երից օրինակաց Զենոբայ:

2. Այս յիշատակարանս արդէն հրատարակուած է ամբողջապէս 1851 ամի « Բազմավիպի » մէջ, Պր. Ա. էջ 75, 'ի վերջկոյս հմտական հատուածին Հ. Ղ. Ալիշանի, այսպիսի մակագրութեամբ. « Ի վերադարձութեանց Պատմութեանն Հայոց Մովսիսի Խորենացւոյ »: Միծանուն հեղինակիս կարծիքով՝ այդ հատուածը Խորենացւոյ Դ, գիրքէն է, (եթէ եղած է ստուգիւ Մովսիսի Պատմութեան Դ գիրք մ'ևս). և ապացոյց առ այս կը համարի, նախ գրութեան ոճը, որ նման է Պատմագրութեան ոճին: Բ. Թովմ. Արծրունու վկայութիւնը: Սակայն, ըստ իս, այս հատուածիս մէջ կան այնպիսի պարագաներ, որք Մովսիսի այլուր աւանդածներուն ուղղակի կը հակասեն: Յիրաւի, Պատմութեան Բ. գրոց ՂԲ գլխում՝ հարճք և կանայք կը համարուին պատճառք և գրգռիչք նախարարաց ընդ թագաւորին. իսկ աստ՝ ընդհակառակն Շապուհ: Անդ՝ վասն խռովութեան նախարարաց կը հեռանայ Տրդատ յարքունեաց. իսկ աստ՝ իւր կենաց դէմ լարուած դաւաճանութենէն խուսելու համար: Անդ՝ հրեշտակս առաքեալ յետս կը կոչեն գալ թագաւորել, և չգալուն պատճառաւ՝ կու տան զդեղ մահու. իսկ աստ՝ ընդհակառակն իրենք կ'երթան զկնի նորա և որսի պատճառաւ կը վիրաւորեն: Անդ՝ 56 տարի թագաւորած կը համարուի. իսկ աստ՝ 57 տարի:

զինքն 'ի ճգնութիւն առանձնութեան, և թէ նախարարք կը յորդորէին զնա գալ յարքունիս. Ա՛ երբ նա չանսաց՝ տուին նմա դեղ մահու և բարձին 'ի կենաց: Սակայն այս յիշատակարանս՝ բոլորովին տարբեր և քաղաքական պատճառներ կը յայտնէ արի և առաքինի թագաւորիս՝ իւր թագին և արքունեաց հրաժեշտ տալուն և ողբերգական մահուանը մասին՝ յասելն. « Իսկ թագաւորն Տրդատ յետ հաւատոցն 'ի Քրիստոս, ամենայն առաքինութեամբ փայլեալ մինչև ցվախճան արի ծերութեամբ: ... Այլ քանզի չարք ոմանք հրամանաւ Շապհոյ խորհեցան սպանանել զՏրդատ, և միաբանեալ անդրէն զաստուածպաշտութիւնն հաստատել յաշխարհիս Հայոց. յորում խորհրդի լեալ էր և սենեկապանն Տրդատայ, ըստ աւրինակի Յուդայի մատնչի: Բայց ոչ գիտէր թագաւորն թէ քանի՛ք կամ ո՞յք իցեն. վասն որոյ կոչեալ զսենեկապանն զայն՝ հարցանէր, եթէ իցէ՞ ինչ 'ի դրանս արդարև այսպիսի խորհուրդ: Նա իբրև լուաւ՝ զահի հարեալ սրտաբեկ լինէր. և ուրացաւ: ... Բայց ինքն թագաւորն ոչ անսալով դաւոյ, հեռանայր յարևմուտս կոյս, մինչև 'ի գաւառն Եկեղեց, որսալ լերին այնորիկ: Եւ տեղւոյն բուռն էին 'ի խորհրդին, ոմանք զնա նորա քնոյն, մանաւանդ ազատքն Սիւնեաց կողմանցն, որք առաւել հրամանակատարք Շապհոյ լինէին, վասն աշխարհին իւրեանց խաղաղական մնալոյ. որք և 'ի յորս երեկոյ երեկեան ընդ թագաւորին մնալով, յորոց և խոցեալ լինի թագաւորն ... և եկեալ յարքունիսն դնի 'ի մահիճս սակաւիկ ինչ վիրաւորեալ, յորոց մտեալ սենեկապանն այն պատել զվէրս նորա և տեսեալ զի ոչ մեռանել նմա 'ի վիրէն՝ ոչ բուժեցանէ դեղ մահու և վախճանէ. որ յետոյ(յ) յայտնի ևս եղև 'ի նորին խորհրդակցացն: ... Տրդատ թագաւորեալ ամս ԾԷ »:

Արդ, ինչպէս կը տեսնեն ընթերցողք, Տրդատ եւ հանգոյն հօր իւրոյ Խոսրովայ՝ սպանուած է յիւրայոցն, մանաւանդ թէ 'ի բարձակից իշխանացն, զորս ինքն բարձրացոյց 'ի կողմնակալութիւն աշխարհաց, և սպանուեցաւ թելադրութեամբ արքայից արքային: Բայց թէ Տրդատայ մահուամբն՝ արդեօք լինեն վախճանին հասանն Շապուհ և նորա համախոհ Հայոց նախարարներն, ինչպէս հասած կը կարծուին երբեմն Արտաշիր և Անակեանք: Արդ՛օք Տրդատայ սուգաւէտ մահուան հետ 'ի միասին՝ Հայոց սահմանակալ իշխանութիւնքն և նոցա վիճակներն եւ՝ փոխեցան, եթէ ոչ: Անշուշտ, եթէ ոչ ամբողջովին, այլ գէթ ըստ մասին: Եւ յիրաւի, Մովսէս, Գ. գլ. ԺԸ, կ'ըսէ վասն Շապհոյ, թէ « Նուաճեաց և զազգ նախարարացն, և փոխանակ Վահանայ Ամատունւոյ՝ Սպարապետ կացոյց զհաւատարիմ իւր զՎաղինակ Սիւնի և նմա յանձն արարեալ զՀայս »: Երկրորդ անգամ, Տրդատայ յաջորդին համար զուրցուած հետևեալ այս խօսքերս, թէ « Ոչ ինչ արութիւն քաջութեան ցուցեալ. այլ և ոչ վասն հաստատելոյ կողմանցն հակառակեցաւ ինչ ... այլ 'ի նմին նուաղեալ զարքայն Պարսից ... բովանդակ վարկուցեալ հրացելոց սահմանացն տէրել », բաւական էին ցուցանել այնպիսի եղելութեանց ճշմարտութիւնը: Փաւստոս, չգիտեմ, թէ առ 'ի հաճել զԽոսրով, թէ այլ ինչ նպատակաւ լռած է զայսոսիկ: Սակայն այս պարագայիս մէջ նորա

պահած լռութիւնը՝ յայլում վայրի բաղձրածայն կը քարոզէ Խորենացւոյ աւանդածներն. զի որոշակի կ'ըսէ, թէ երբ Արշակ օգնութեամբ Յունաց թագաւորեց՝ այնպէս ցիր և ցան եղած էին Ազաթանգեղոսէն յիշուած վեշտասան սահմանակալ իշխանութիւնքն և նոցա վերայ իշխողներն, որ զիւր դայեակսն անգամ, այսինքն է, զՎարդան և զՎասակ Մամիկոնեանս հազիւ գտաւ, ամրացեալ Տայոց գաւառի ամրոցներու մէջ. և կարգեց 'ի բարձ Սպարապետութեան, փոխանակ Կամսարականաց կամ Արշարունեաց: Արշակ ունեցաւ այս մեծագոյն արդիւնքս, զի, ըստ վկայութեան նորին իսկ Բուզանդացւոյ, հանգոյն Խոսրովու և Տրդատայ մեծաց. « Հնազանդէր ընդ ձեռամբն, զիւրաքանչիւր զօրս բաժանեալ յամենայն կողմանց, սահմանացն Հայոց՝ սահմանակալս կացուցանէր »: Եւ Մեծին Ներսիսի պատմութեան հեղինակի ըսածին համեմատ, չորս հազար բարձս ևս հաստատեց. իսկ ըստ այլոց՝ ինն հազար: Արդ, աչքէ անցնելով այս բարձից և պատուական նախարարութեանց ազգացուցակը՝ կը տեսնենք, որ առ Ագաթանգեղ յիշուած պատուանուանքը պահուած են, բայց ոչ նոյնպէս զանոնք կրող ազգատոհմից կարգն և կալուածները, որոնք կրկին իշխանութեանց բաժնուած են: Այս բարձերս բազմացուցած ժամանակ՝ Արշակայ նպատակն էր այն սահմանակալ իշխանութեանց վիճակները բաժնելով՝ նոցա զօրութիւնն ևս բաժնել և տկարացնել. որպէս զի կարենար ապա լեռներով և առանձնական սահմաններով Հայաստանի անջատուած զօրութիւնքը՝ կեդրոնացնել Արշակունի գահուն և գաւազանի ներքև: Արշակայ դիտաւորութիւնն՝ իւր տեսական սկզբան մէջ շատ լաւ էր և գովելի. վասն զի քանի որ այդ սահմանակալ իշխանութիւնքն՝ այդ կերպով կը շարունակուէին, զրեթէ անկախ 'ի թագաւորէն, չէր հնար Հայաստանի մէջ զօրեղ միապետութիւն մի կազմել, զոր և փորձն իսկ ցուցուց. զի կամ միանալով իրարու հետ՝ թագաւորները կը ճգէին, և կամ յաճախ միանալով Պարսից կամ մի այլ դրացի ազգի հետ՝ Արշակունեաց գահը տապալելու և Հայաստանի ընդհանուր աւերածոց պատճառ կը լինէին, իրենց առանձին շահերը միայն դիտելով և սահմանները ընդարձակելու նպատակաւ: Սակայն Արշակ՝ 'ի մասին գործադրութեան սխալեցաւ, մէկ կողմէն անլուր անգթութիւններ և ապօրինաւոր միջոցներ 'ի վար արկանելով. իսկ միւս կողմէն այլ՝ յեղյեղուկ խորհրդով մերթ արքայից արքայի հետ թշնամանալով և մերթ այլ ընդ կայսերն Բիւզանդիոնի: Հայոց եկեղեցական կամ կաթողիկոսական իշխանութիւնն, որ իւր նշանաւոր անձնաւորութեամբքը՝ ամենամեծ ազդեցութիւն ունէր նախարարաց վերայ և թագաւորական գահուն նեցուկ կը համարուէր, զնա իսկ ուծացոյց յինքենէ Արշակ՝ Արշակաւանի շինութեամբ, Գնէլայ սպանմամբն և իւր զեղծ գնացից պատճառաւը. մանաւանդ թէ, նոյն ինքն հոգևորական իշխանութիւնն՝ իւր ընդարձակ կալուածներովն և հիմնարկութեամբքը՝ նախանձու և մախանաց նիւթ եղած էր կողմնակալ իշխանաց. և մեծին Ներսիսի պէս հայրաբարոյ և միանգամայն անստգտանելի գլուխն անգամ, որ հաստատեց և կարգաւորեց

այն հարկպաւոր բարձերը, չէր կարող այլ ևս ընդդիմադրել նոցա զօրութեանն և պահանջմանց, որք օր քան զօր աւելի ևս երկիւ_ ղալի և սպառնական դիրք կ՚առնուին: Ժամանակն հասած էր ար_ դէն և առիթ մի կը պակսէր միայն երկուստեք ընդհարումն մի յա_ ռաջ բերելու. այս ինքն է, թագաւորին կամ Արշակունեաց և միւս նախարարաց մէջ: Երեսնամեայ պատերազմն, որ տկարացոյց ըզ_ Հայաստան և զթագաւորն ինքնին, բաւական էր ոչ ևս 'ի ծածուկ՝ այլ յայտնապէս ապստամբեցնել զնոսա 'ի թագաւորէն, և իրօք ապստամբեցան, ըստ աւանդելոյ Փաւստոսի, Ե. Դպրութիւն. և եղան ինքնագլուխ Նոշիրականի, Կորդուաց, Ատրպատականի, Արցա_ խայ, Աղուանից, Կամբեց, Վրաց, Ծոփաց, Անգեղտան և Անձիտայ կողմնակալները: Ի զուր կը ջանայ այնուհետև քաջադեղն Մուշեղ, իբրև Արէս ռմն մարտի՝ լուր չքեղ յաղթանակները տարածել ամեն_ ուրեք, երբ հարուածը ներքին է: Վերջապէս յաղթանակը կը տանի Շապուհ, և կը փոխին Հայաստանի սահմանները և սահմա_ նակալ իշխանութիւնքը: Արշակայ ժամանակի բարեգուշակ քաղա_ քականութեան և նորա տխուր կատարածի տեսարանները, վերստին կը նորոգուին նորա յաջորդին ժամանակն ևս: Աւելորդ կը համարիմ ընդ երկար ժամավաճառ լինել աստ. այլ զայս միայն կ՚ուզեմ դիտել, թէ Ս. Սահակայ վերոյիշեալ գահնամակն՝ Հայոց իշխանաց կարգաւորութեան մասին, եթէ Պապայ ժամանակէն եղած համա_ րիցի ոք և եթէ առ Վռամշապուհ թագաւորաւ, որ աւելի հաւանա_ կան կ՚երևի ինձ, զի սորա կարգաւորութիւնը տարբեր է յառաջնոյ անտի, զոր ընծայէ Մեսրովբ Երէց. այս յայտ է, թէ Պարսից թա_ գաւորին հաճութեամբ եղած է, և թէ նորա հաւատարիմ Մեհեկի, որք թէ՛ առ Ագաթանգեղ և թէ՛ առ Մեսր. Երիցու կամ 'ի Գահնա_ մակին Ներսիսի մեծի Ժ.Ա.րդ էին, աստ ընդհակառակն յաջողած են Ա.ին լինել: Երկրորդ, առ Ագաթանգեղ՝ Ծոփք միայն կրկին իշխա_ նութեանց բաժնուած են. իսկ 'ի Գահնամակին Սահակայ՝ Սիւնիք Արծրունիք, Մամիկոնեանք, Դիմաքսեանք և Աբեղեանք ևս կրկին եղած են: Ծոփաց՝ մի միայն իշխան կը յիշուի աստ: Դնենք աստ 16 կողմնակալ իշխանաց ազգացուցակը միայն, ըստ կարգաւորութեան երից յիշատակարանացս, լոկն եղելութիւնն՝ իբր 'ի հայելւոջ ակ_ ներև ընելու համար:

| Աքախեանքեղաւ. | Մեար. Երէց. | Գալեն. Սահակոյ. |
|---|---|---|
| Ա. Անգեղտան իշխ. . . . . . . . | ԺԳ. Անգեղեանք . . . . . . . | . . . . . . . . . . . |
| Բ. Աղձնեաց իշխ. . . . . . . | ԼԹ. Աղձնեանք . . . . . . . | . . . . . . . . . . . |
| Գ. Մարդպետ իշխ. . . . . . . | ԺԷ. Մարդպետունիք . . . . . | . . . . . . . . . . . |
| Դ. Ասպետութեան իշխ. . . . . . | Զ. Ասպետունիք . . . . . . . | Բ. Ասպետն |
| Ե. Սպարապետութեան իշխ. . . | Ժ. Մամիկոնեանք . . . . . . | Դ. Մամիկոնէից տէր |
| Զ. Կորդուաց իշխ. . . . . . . | ԿԶ. Կորդուայք . . . . . . . | . . . . . . . . . . . |
| Է. Ծոփաց իշխ. . . . . . . . | ԺԵ. Ծոփք . . . . . . . . . | Ե. Շահապն Ծոփաց |
| Ը. Գարզարացւոց իշխ. . . . . | . . . . . . . . . . | ԽԳ. Գարդմանաց տէր |
| Թ. Ռուշտունեաց իշխ. . . . . | ԼԷ. Ռշտունիք . . . . . . . | Է. Ռշտունեաց տէր |
| Ժ. Մոկաց իշխ. . . . . . . . | ԽԳ. Մոկացիք . . . . . . . | Զ. Մոկաց տէր |
| ԺԱ. Սիւնեաց իշխ. . . . . . . | ԺԱ. Սիւնեցիք . . . . . . . | Ա. Սիւնեաց տէր |
| ԺԲ. Տաւղէից իշխ. . . . . . | . . . . . . . . . . | . . . . . . . . . . . . |
| ԺԳ. Ոստիացւոց իշխ. . . . . . | . . . . . . . . . . | . . . . . . . . . . . |
| ԺԴ. Զարհաւանդ և Հեր իշխ. . . | ԾԸ. Զարեհանք . . . . . . . | ԽԵ. Զարեհաւանեանն |
| ԺԵ. Մաղխազութեան տան իշխ. . . | Ծ. Մախազեանք . . . . . . | . . . . . . . . . . . |
| ԺԶ. Արծրունեաց իշխ. . . . . | Թ. Արծրունիք . . . . . . . | Գ. Արծրունեաց առաջին տէր |

*Արդ, այս ցուցակէս կարելի է հետևցնել, թէ Արշակայ ժամանակէն 'ի վեր* **Գուգարացւոց** *կամ* **Աղուանից**, **Ծոդէից** *և* **Ուտիացւոց** *սահմանակալութիւնքն, այլ ոչ եւս վերաբերէին Հայոց. այլ կամ Պարսից իշխանութեան տակ ինկած էին և կամ ինքնագլուխք: Այս բանս յայտնի կը տեսնուի նոյնպէս Սահակայ Գահնամակէն, և Եղիշէի Դ. եղն. 160, և Ե. եղն. 173, իջերէն. ուր հեղինակը մի առ մի թուելով, Գահնամակին' համաձայն, Հայոց թէ՛ ուրացեալ և թէ՛ ուխտապահ իշխանաց տոհմերն, վերոյիշեալներուն բնաւ յիշատակութիւն չըներ: Բ. Ս. Սահակայ ժամանակ'* **Անձեւացեանց**, **Աղձնեաց**, **Մարդաղեանեաց** *և* **Մոխազեանց** *տոհմերն ևս բարձեալ էին 'ի միջոյ հանգոյն* **Որդունեաց**, **Մանաւազեանց** *և* **Բզնունեաց**: *Ասոնց անուանքն ևս չեն գտնուիր առ Եղիշէի, որ նշան է, թէ Սահակայ Գահնամակին մէջ ևս եղած չպիտի լինէին:*

*Ցանուն Տրդատայ' առ Ղևոնդիոս, եպիսկոպոսապետն Կեսարիոյ, գրուած նամակին մէջ' այնպիսի պարագաներ կը յայտնուին, որք զէթ ըստ մասին, տարակուսելի կ'ընեն նորա հարազատութիւնը: Նախ այս հրովարտակիս*[1] *պատճենէն յառաջ' կենսագիրն պատմելով նախարարաց և Գրիգորի 'չուն դէպ 'ի Կեսարիա Գամրաց, յետոյ ուրեմն կը յարէ այսպէս. « Եւ հրամայեաց (Տրդատ)* **հրովարտակ գրել օրինակ զայս** *»: Եւ իրօք անմիջապէս կը յաջորդէ « Պատճէն հրովարտակին ». բայց բոլորովին անսովոր' քան թէ պաշտօնագրութեան ձևով: Եւ սորա յաջորդ, այսինքն է ԾԺԳ գլխահամարում, առաջին բացատրութիւնը' վերստին կը կրկնուի. « Եւ պատճէն* **հրովարտակին օրինակ զայս գրեցաւ** *». և մի անգամ արդէն պատմուած չուն' դարձեալ կը սկսի պատմել այսպէս. « Եւ կազմեցան, պատրաստեցան, և այլն » : Արդ, աստ երկուստեք կրկնութիւն կայ; և երկաքանչիւրին բնականէ դուրս լինելն' ակներև կը տեսնուի: Առ Սիմ. Մետափրաստէսի և 'ի հրատարակութեան Լանգլուայի' այս հրովարտակիս յիշատակութիւնը միայն կը գտնուի. իսկ Ղազարդի յիշեալ հրատարակութեան մէջ ամբողջապէս կայ, բայց հրատարակիչը չի զուցեր, թէ ուստի' առել է, 'ի փորենտեանն թէ վատիկանեան մի այլ ձեռագրէ:*

*Բ. Դիտելու կէտն է, զի Տրդատ' Գրիգորի ձեռնադրութեան առթիւ գրուած այսպիսի մի պաշտօնական թղթի մէջ' մէկ կողմէն Հռիփսիմեանց զալստեան, — իւր անմիտ մենամարտին, — ամօթալի պարտութեանն և խոզակերպութեան պատմութիւնը կ'ընէ. իսկ*

1. Agathangelos, s. 69–70, *ուր հայերէնի. « Հրամայեաց հրովարտակ գրել օրինակ զայս », հետևեալ կերպով* ⁕ ἴσον τῆς ἐπιστολῆς ⁕ *գրուած է յունարէն փոքր երկաթագիր ձեռագրին մէջ, ըստ վկայութեան Դը Լազարդի* (So steht in kleinen Uncialen vor der Seite im Texte): *Արդ այս բառերու սկիզբն և վերջը դրուած նշաններն' ոչ աստեղանիշ են և ոչ խաչանիշ, որով իրն անհասկանալի կը մնայ. առաջինն եթէ յունարէն ἴσον բառին իբրև նշանակ համարինք, վերջինը դարձեալ անմեկնելի է. սակայն այսպէս կամ այնպէս' ուշադրութեան կէտ մի է և պաշտօնական ձև:*

միւս կողմէն կ՚ըսէ. «Վասն այսորիկ առաքեցաք մեք առ ձեզ որս ըն-տրեալս՝ իշխանս պարթևականս զաշխարհիս մերոյ մեծի, զի պատմեսցեն ձեզ զամենայն սքանչելիս Աստուծոյ»: Այս երկու պարագայքս իսկ՝ անյարմար են և իրարու հակառող: Ցիրաւի, եթէ իւր մեծամեծ իշխանները Հայաստանի մէջ եղած սքանչելիքը պատմելու համար միայն ղրկած էր Թագաւորն ընդ Գրիգորի, իրեն ինչ հարկ կար փութալ պատմել զամենայն. և եթէ ինքը՝ գրով պատմեց, ինչ հարկ կար իշխաններ ուղարկել առ այն: Դարձեալ, Ցուսկան և մեծին Ներսիսի ևս նոյնպէս ուղեկից իշխաններ ղրկուեցան ժամանակաւ, առանց հրաշքներ պատմելու նպատակաւ: Ղևոնդիոսի առ Տրդատ գրուած թղթին յետագայ խօսքերն ևս, թէ «Վասն կենատուր փրկութեանդ հասելոյ ձեզ յԱստուծոյ որպէս մեզ պարգևեցաւ», կը ցուցնեն, թէ Տրդատայ առ հայրապետն Կեսարու գրուած թղթին մէջ՝ վերոյիշեալ պատմութիւնքը չէին բովանդակուէր. այլ նա 'ի խոստովանողէն Գրիգորէ և նորա ուղեկիցներէն լսեց այն բաները. ապա թէ ոչ՝ պիտի զուրցէր, թէ որպէս ընծայեր կամ ընծայամեզ: Եւ յիրաւի, յէջ 603, կ՚ըսուի. «Տուեալ ողջոյն, և պարգևաւ նորա (այսինքն է հայրապետին և ընթերակցացն) որ մինչդեռ եղեալ յԱստուծոյ, և մատուցին զթուղթ թագաւորին առաջի սրբոյ քահանայապետին»:

Գ. Մի և նոյն թղթին մէջ, յէջ 600, տալով խօսել Տրդատայ զողորմութենէն Աստուծոյ, կ՚ըսուի. «Մինչև 'ի տալ մեզ հրաման յայտ յանդիման (տեսլեամբ) զդոյն ինքն Գրիգորդ մեզ հովիւ և տեսուչ կացուցանել»: Արդ, այս բացատրութիւն՝ վերոյիշեալ հրեշտակի երևումը կ՚ակնարկէ, յընտրել զԳրիգոր կաթողիկոս, որուն համար ըսուեցաւ իսկ, թէ տարբեր յաղքերէ է. պյսպէս և այս՝ պէտք է որ նոյն հեղինակութեան վերաբերի. ինչպէս 599 իջի հատուածն այլ՝ Տրդատայ խոզակերպութեան անհարազատ հատուածները կ՚ակնարկէ, և անոնց հեղինակին ընծայելի է: Դ. յէջ 601, հինգ տող հատուածն, որ կը սկսի. «Մեզ զԳրիգորդ տեսուչ» և այլն, նման է 600 իջի հատուածին: Բայց լոկ կրկնութիւն ինչ համարելի չէ առաջնոյն, այլ իբրև նախնական հիմն և աղբիւր նորին:

Արդ, բոլոր այս ներքին պարագաներէս և յանձնահ կրկնութեանց, չիցէ՞ մարթ եզրակացնել, թէ այդ թուղթը կամ եկամուտ հատուածներով ընդհատուած է, և կամ ամբողջապէս անհարազատ համարելի: Վերջին կարծեաց հակամէտ կ՚երևի Գուտշմիդ, բայց առանց քննական փաստեր առ այս մէջ բերելու: Իմ կարծիքով, Տրդատայ առ Ղևոնդիոս գրուած թղթոյ մի գոյութիւնն՝ անժխտելի է. որուն ապացոյց կը համարիմ նախ Ղևոնդիոսի առ Տրդատ ուղղեալ պատասխանւոյն մէկ տեղին, ուր կ՚ըսուի. «Եւ հաստատեալ կացցէ միաբանութեան 'ի մէջ երկոցունց կողմանցս»: Այս խօսքերս կը ցուցնեն, թէ ստուգիւ Հայոց թագաւորին և Կեսարիու հայրապետին մէջ գրաւոր դաշինք մի եղած է, անտի առնուլ զձեռնադրութիւն կաթողիկոսացն Հայոց: Բ. Փաւստոս Բուզանդացին ևս Դ. Դպրութեան Դ. գլխոյն մէջ և Գ. Դպրութեան ԺՁ. գլխում պատմելով Փառենի և

*Ներսիսի երթն 'ի ձեռնադրութիւն, կը յիշէ և « զհաւատարիմ հրովարտակս թագաւորաց մերոց և կաթողիկոսացն » (յայտ է թէ վախճանելոց և կամ եպիսկոպոսացն) առ կաթողիկոսն Եւսեբիոս », զոր ես իբրև Տրդատէն սկսեալ դաշնագիր մի եղած կը հասկնամ. յորում ապա յաջորդք նորա դնէին զձեռնագիրս իւրեանց: Գ. Ագաթանգեղոսի* 603 *իջում, որ Գրիգորի պատմութեան հարազատ աղբերէն է՝ ըստ այլևայլ հանգամանաց, որոշակի կ'ըսուի. « Եւ մատուցին զթուղթ թագաւորին առաջի սրբոյ քահանայապետին, և նա մեծաւ խնդութեամբ ընկալեալ և ամենայն քաղաքացեացն մեծաւ խնդութեամբ »: Իսկ գալով մեր ձեռքն հասած թղթոյն՝ կ'ըսեմ, թէ նախնաբար մէջ բերուած հանգամանաց համեմատ, գէթ սկզբնաւորութենէն մինչև « Ընդունելութիւն աղօթից ձերոց և սրբութեանդ » պարբերութիւնքը՝ անհարազատութեան տիպ ունին: Իսկ 'ի նկատի ունելով Ղևոնդիոսի առ Տրդատ գրած պատասխանական թղթոյն մէջ յայտնուած դէմընդդէմ հանգամանքը, կարծեմ թէ անտեղի չէ ըսել, թէ Տրդատայ ընծայուած թուղթն՝ ըստ ամբողջութեան իսկ՝ յետ ժամանակաց յերիւրեալ է, Ագաթանգեղայ գրոց խմբագրի ձեռքով, հիմն ունելով* 603 *իջի քիչ առաջ մէջ բերուած տեղին և Փաւստոսի վերոյիշեալ երկու տեղիքը, յորս կը լինին արքայական հրովարտակաց յիշատակութիւնք: Այս կարծիքս դեռ աւելի պիտի պարզուի Ղևոնդիոսի թղթոյն վերայ լինելիք քննական ապացուցութեամբք: Այժմ անցնինք յաջորդ իրաց քննութեանը:* -

*Գրիգորի արքայական շքեղութեամբ դէպ 'ի Կեսարիա ուղևորութեանն, – Փոքր Հայոց քաղաքներէն խոստովանող վկայիս գտած մեծամեծար ընդունելութեանց, – Կեսարիոյ՝ մօրն քաղաքաց դղրդմանն, – դաս դաս քահանայից՝ կանթեղօք և եկեղեցական երգօք զփառաւորեալ նահատակն ընդունելուն, – իշխանաց և ժողովրդոց առ նա ցուցած մեծարանաց, – բազմաթիւ եպիսկոպոսաց գումարմանն, – Գրիգորի հանդիսապէս ձեռնադրութեանն և գունդագունդ քահանայիւք և կրօնաւորօք 'ի Հայս վերադարձի հատուածներն, որ կենդանի գոյնով նկարագրուած են, այնպէս լաւ կ'ընդգրկեն զիրեարս և քաջ կը պատշաճին այն նուիրական անձին և իրաց, զորս չէ կարելի զատել 'ի միմեանց, թող թէ նոցա հարազատութեանը վերայ տարակուսել: Բաց 'ի ներքին հանգամանաց* [1], *արտա-*

1. *Էջ* 604, *կ'ըսուի. « Եւ եղեալ ժողով բազում եպիսկոպոսաց 'ի քաղաքին Կեսարացւոց՝ զի ձեռնադրեսցեն զսուրբն Գրիգորիոս, և աւանդել 'ի նա զպատիւ խոնարհութեան քահանայութեան Քրիստոսի, և զբարձրութիւն եպիսկոպոսութեան փառաւորութեան Աստուծոյ զմեծ պատիւն. սրբով աւետարանաւն եդին 'ի վերայ ձեռս ժողովք եպիսկոպոսացն սրբոց և գլխաւորն Ղևոնդիոս. զի առցէ նա իշխանութիւն յերկինս և յերկրի, առնուլ փականս արքայութեան երկնից »:*

*Այս հակիրճ տողերուս մէջ՝ հետևեալ կարևոր իրողութիւնքը կարտայայտին, որք համաձայն են հին ծիսակատարութեան եկեղեցւոյն Յունաց և Հայոց. Ա. Ձեռնադրութիւն Գրիգորի 'ի քահանայութիւն, որ ըստ գեղեցիկ զանազանութեան հեղինակիս, է պատիւ կամ աստիճան խոնարհութեան քահանայութեան Քրիստոսի: Եւ այս կարգի պատշա-*

քին վկայութիւնք իսկ կը հաստատեն զստուգութիւն իրացս: Զենոբ՝ Տարօնի պատմութեան 23 իջում, և Փաւստոս՝ համառօտիւ կը յիշատակեն մեծաւ բազմութեամբ Գրիգորի երթն 'ի Կեսարիա, զձեռնադրութիւնն 'ի Ղևոնդիոսէ՝ մեծաշուք հանդիսիւ և զդարձն. որով երկոքեան իսկ կը թուին ցուցնել, թէ վերոյշեալ դիպաց պատմագրութիւնն՝ ուրիշին յանձնուած էր ընել, և կամ արդէն իսկ եղած գըտան, ուստի աւելորդ համարեցան ընդարձակօրէն աւանդել:

Ցէջ 606, յորում կը ծանուցուի Ս. Գրիգորի գալուստն 'ի Հայս՝ յասելն. «Եկեալ հասանէին 'ի Հայաստան աշխարհն», յաջորդ պարբերութիւնն անմիջապէս դարձեալ նախընթացին նման բացատրութեամբ կը սկսի. «Եւ իբրև եկն եհաս 'ի սահմանս Հայոց, լուաւ թէ Վահեվահեան մեհեանն մնացեալ է յերկրին Տարօնոյ»: Այս երկու պարբերութեանցս, այսինքն է, միոյն վերջաբանին և միւսոյն սկզբնաւորութեան մէջ՝ ոչ միայն կրկնութիւն կայ, այլ նաև հակասութիւն ինչ կը տեսնուի: Եւ յիրաւի, քաջողջութեամբ միանգամ Հայաստան հասնող Գրիգորին՝ վերստին Հայոց սահմանագլուխներուն վերայ գտնուիլն՝ անհասկանալի է, եթէ օրէն իցէ զՏարօն սահմանագլուխ անուանել: Սակայն եթէ Տրդատայ ժամանակի Հայաստանի սահմաններն ուշի ուշով նկատենք, զորս կ'ընծայեն

ճապէս, զի քահանայութեամբ եղաւ Քրիստոս միջնորդ և պատարագ հաշտութեան ընդ Աստուած և ընդ մարդիկ. իսկ միջնորդ և պատարագ լինելու համար՝ պէտք էր որ բաց յԱստուածութենէն ունենար նաև ըզմարդկային բնութիւն, որով կարելի ըլլար հպատակել զինքն Հօր, խոնարհել յաղերս և լինել պատարագ: Բ. Եպիսկոպոսական ձեռնադրութիւնը կայ՝ աստիճանին բարձրութիւնը, զոր նմանեցուցել է Աստուծոյ փառաւորութեան. որովհետև բարձրագոյն տեղին ունի եկեղեցական կարգաց մէջ և յաստուածակոյս կողմանէ անտի՝ եպիսկոպոսն է, որ կը հովուէ զհաւատացեալ հօտն Քրիստոսի. յեպիսկոպոսական իշխանութենէ անտի յառաջ կու գան ամենայն տուչութիւնք կարգաց և իրաւասութեան 'ի քահանայս: Գ. Թէ եպիսկոպոսապետ ձեռնադրելու համար 'ի հնումն՝ ժողով կը գումարուէր բազմաթիւ եպիսկոպոսաց՝ առ հայրապետն, նախ ընտրելի եպիսկոպոսին կեանքն և արարքը քննելու համար, ապա առընթերակայ լինելու հայրապետին՝ ձեռնադրութեան ժամանակ, իբրև գործակից և վկայ մեծի տուչութեան: Զայս յայտնապէս կը ծանուցանեն նաև գիրք ձեռնադրութեան եպիսկոպոսին հայաստանեայց եկեղեցւոյ՝ յասելն. «Իսկ կաթողիկոսն ժողովէ երկոտասան եպիսկոպոսս կամ վեց կամ 'ի պակասն՝ երեք և առնէ Սինհոդոս և առաքէ զնա (զձեռնադրելին) քննիլ անդ»: Այս բանս թէպէտև Լատինաց ծիսակատարման ևս կը նմանի, բայց ինձ կը թուի, թէ ուղակի 'ի Յունաց անցաւ առ մեզ՝ հայաստանեայց Լուսաւորչին ձեռքով և ընդելացաւ. հաւանօրէն յետոյ ուրեմն, 'ի ձեռն անարժանից ոմանց, խանգարուեցաւ. բայց Շնորհալիք և Լամբրոնացիք վերստին ուղղեցին զայն, ըստ հնագոյն արարողութեան: Դ. Կը ծանուցուի աստ Ձեռնադրութիւնն՝ Աւետարանաւ. այս իսկ կը գտնուի այժմ 'ի գիրս Ձեռնադրութեան հայաստանեայց Եկեղեցւոյ, այսպէս. «Եւ հայրապետն բացեալ զԱւետարանն՝ զայն տեղին յորում գրեալ է. Հոգի Տեառն 'ի վերայ իմ, և էօծ իսկ զիս. և եդեալ 'ի վերայ թիկանցն, և քորեպիսկոպոս մի բռնէ և հայրապետն դնէ զաջն 'ի վերայ գլխոյն, և այլն»: Ե. Թէ Գրիգորիոս և թէ Ղևոնդիոս անուանքը՝ յունական ձևով գրուած են, որ նշան է յունարէն բնագրի:

մեզ զիրք Ագաթանգեղայ 627–628 էջերում, կը տեսնենք, որ Տարօն՝ ոչ մի կողմէն սահմանանծայր չի կազմեր, այլ մանաւանդ թէ կեդրոնատեղւոյն, այսինքն է Արարատեան նահանգին կից գաւառներէն մին է, ուր հասնելու համար Գրիգոր՝ հարկ էր, որ Զօրաւոր և Բոլոր Հայոց քանի մի գաւառներն արդէն կտրած անցած լինէր: Եթէ ստուգիւ և որոշակի նշանակուած լինէր Գրիգորի 'ի վերադարձին բռնած ուղին, շատ աւելի յայտնի պիտի լինէր հատուածոցս հակասութիւնը. բայց որքան որ որոշակի նշանակուած չէ, սակայն Ագաթանգեղոսի 604 իջէն և Զենոբայ 23 իջէն կարելի է եզրակացնել թէ, թէ Գրիգորի 'ի Կեսարիա երթին և դարձին և թէ Տրդատայ Հռովմէն առաջին անգամ գալուն և վերստին երթալու ուղին էր այն արքունական ճանապարհը, որ 'ի Վաղարշապատէն կը հանէր 'ի Բասեան կամ 'ի Հարք, անտի 'ի Կարին, Կարինէն 'ի Բաբերդ, Բաբերդէն՝ յԵկեղեաց, աստի 'ի Սեբաստիա, և Սեբաստիայէն 'ի Կեսարիա:

Տարօն գաւառում հանդիպած դիպաց յիշատակութիւնը՝ բազմիցս կրկնուած կը գտնենք նաև առ Փաւստոսի և Զենոբայ. բայց ուր վերջինս Գիսանէի և Դեմետրի վերայ կը դարձնէ ամբողջ պատմութեան ընթացքն, առ Ագաթանգեղ, ընդհակառակն, Աշտիշատայ, Աստղկան և Վահագնի վերայ կը հոլովի: Աստ երկու հեղինակութեանցս մէջ մեծ տարաձայնութիւն կայ, ինչպէս յառաջագոյն ծանուցի: Զենոբայ մասին արդէն խօսուեցաւ. այժմ ընթերցողին ուշադրութիւնն՝ Ագաթանգեղայ 607 իջի Բ. պարբերութեանը վերայ կը դարձնեմ, որ կը սկսի. «Իբրև դարձեալ գայր (Գրիգոր) 'ի կողմանց Յունաց՝ բարձեալ բերէր ընդ իւր նշխարս ինչ յոսկերացն … Յովհաննու և սուրբ վկային Քրիստոսի Աթանագինէս [1] »: Դիտելու ենք, որ այս պարբերութիւնս բնաւ կապ չունի իւր նախընթացին հետ, որ հետևեալ բառերովս. «Արդ, դիմեաց գալ սուրբն Գրիգորիոս, զի քանդեսցէ և զայն », (այսինքն է, զՎահեվահեան մեհեանը) կը վերջանայ. և ոչ իսկ յետագայ պարբերութեան հետ, որ ԾԺԵ գլխահամարով կը սկսի: Ցիրաւի, ի՞նչ կը նշանակէ Վահեվահեան մեհենի վերայ խօսած ժամանակ՝ յանկարծակի ընդոստմամբ ացնելն Յովհ. Մկրտչին և Աթանագինեայ նշխարաց: Արդ, ակներև կը տեսնուի, թէ այս վերջինս միջանկեալ հատուած մի է. և թէ « Իբրև դարձեալ գայր » բացատրութիւնը գլխովին աւելորդ է, վասն զի յէջս 505–606 արդէն Գրիգորի գալուստն 'ի Հայս ծանուցուեցաւ. իսկ աստ նշխարաց հատուածը ներմուծելու, մանաւանդ թէ նախորդին հետ կապելու համար միայն կրկնուած է: Սակայն այս բանս դեռ աւելի

1. Առաջին օրինակի մէջ միայն այսպէս գրուած է. իսկ յայլս. « Ըզսուրբ վկային Քրիստոսի Աթանագինէին ». այս ընթերցումս աւելի ճիշդ է, վասն զի խօսքը սրբոց նշխարաց մասին է, և ոչ թէ կենդանի վկայն եբեր ընդ իւր Գրիգոր: Բ. յունարէն օրինակին մէջ իսկ, ըստ հրատարակութեան Լագարդի, կը գրուի Ἔλαβεν ἐκ τῶν λειψάνων τοῦ μεγάλου προφήτου καὶ Βαπτιστοῦ Ἰωάννου καὶ Ἀθηνογένους τοῦ μάρτυρος. իսկ ըստ տպ. Լանգլուայի՝ միայն Յովհ. Մկրտչին կը յիշուի:

*զգալի կը լինի 'ի յետագայն. այսինքն է, յէջ 608 առաջին պարբերութեան մէջ՝ կառածիզ և սպիտակ ջորիներում՝ սքանչելեօք [1] զկայ առնուլն, և հրեշտակին՝ մասնաւոր յայտնութիւնն առ Ս. Գրիգոր՝ ծանուցանելէն վերջ, կ'ըսուի. « Բազմութիւն զօրաց մէն սատարեալ՝ շինեցին զվկայարանս և զսուրբսն 'ի հանգիստ փոխեցին »: Իսկ երկրորդ պարբերութեան մէջ կ'ըսուի, թէ « Եւ մինչդեռ զշինուած մատրանն կազմէին, հրաման ետ Գրիգոր զօրականին և իշխանաց, զի մրճօք տապալեսցեն զշինուածս բագնաց »: Այս երկու տեղեաց մէջ հակասութիւն կայ, եթէ իրարմէ տարբեր յաղբերաց առնուած չհամարինք զնոսա. որովհետև յառաջնոյն մէջ՝ վկայարանաց շինութիւնն և նշխարաց փոխադրութիւնն՝ արդէն իբրև կատարուած կը պատմուի. իսկ 'ի վերջումն՝ դեռ այն ինչ կը պատրաստեն նոցա շինութեան նիւթերը: Ագաթանգեղայ սոյն տեղեացս առաջինը՝ տրամագծապէս կը հակառակի նաև Զենոբայ. զի ասորի հեղինակս, որ մասնաւոր կերպով ուշադրութիւն դարձուցած է Տարօնի պատմութեան վերայ և աւելի մանրամասնօրէն գրած, 25 իջէն մինչև 34 էջերում կ'աւանդէ, թէ նախ Կ—— աւանի երկու բագիններն՝ անհեղազօրն Տրդատ կամ լաւ ևս Անգեղ-*

*1. Այս դէպքս կ'աւանդեն մեզ նաև Փաւստոս, Գ. Դպր. գլ. ԺԴ, և Զենոբ՝ 'ի վերջկոյս առաջին թղթին կամ պատմութեան Իննակնեան տեղեաց, յէջ 38: Եւ վերջնոյս աւանդած տեղին գոգցես իմն նոյն է ընդ բանից Ագաթանգեղոսի. զի այսպէս կ'ըսէ. « Իբրև հեռացաք 'ի գետոյն Արածանու իբր ձիոյ արշաւանօք երկու կամ երեք, և իբրև մերձեցաք փոքր ձորակին, և կամէաք անցանել... ապա ջորիք կառացն յայնկոյս ձորոյն ոչ կարացին անցանել, և նստան: Ապա հրեշտակն յայտնեալ՝ արգել զԳրիգորիոս, և ասէ. Հաճեցաւ Տէր սրբոցդ բնակել 'ի տեղւոջս այս »: Միայն թէ փոխանակ Եփրատայ՝ Արածանի կը յիշուի առ Զենոբայ, զի բազուկ ինչ էր Եփրատայ: Զայս կարելի է միաբանել առ Ագաթանգեղ. « Ջուր մի սակաւ », և առ Փաւստոսի. « Դոյզն ձորձորակ » կոչուածին հետ, յորում Գրիգոր մկրտեց զուղեկիցս իւր և զզօրս: Ագաթանգեղայ վերոյիշեալ աւանդութեանը՝ կարելի էր իբրև աղբիւր համարել Զենոբայ այս տեղիս, եթէ սա ևս անհարազատութեան նշաններ չի ցուցներ յայտնապէս: Արդ Զենոբայ այս բացատրութիւնս, թէ « Իբրև հեռացաք ... կամէաք անցանել », կը թուի ցուցնել, թէ նա ականատես էր այն դէպքին զոյգ ընդ Գրիգորի. իսկ 'ի վերջ պարբերութեան կը յայտնէ, թէ 'ի Ս. Գրիգորէ միայն լսած էր զայն, յասելն. « Քան զայս այլ պատճառս 'ի Ս. Գրիգորէ ոչ լուաք »: Ուստի ես աւելի հաւանական կը համարիմ ըսել, թէ երկոքեան իսկ՝ 'ի Մաղաքիայ, աշակերտէն Մարուգէի, առած են այս տեղիս և յարմարցուցած Մատրավանից շինութեան. որ կ'ըսէ Յակ. Մծբնացու և Մարուգէի վարուց մէջ, թէ երբ կ'որոնէին եկեղեցի մի շինել և Մծբնացին շիշ իւղոյն 'ի ձեռին առած յայտնութեան մի կը սպասէր, հրեշտակ Աստուծոյ երևցաւ նմա և մատնանիշ ըրաւ նմա զտեղին շինուելիք եկեղեցւոյն: Դիպաց նմանութիւնն անուրանալի է. սակայն Գրիգորի կենսագիրը՝ շատ աւելի պատմական արժէք կ'ունենար, եթէ ըսէր, թէ Երբ ձորի մի հանդիպեցան և ջորիները չկարացին ձորամիջի գետակէն միւս ափունքն անցնել, Գրիգոր հրամայեց, որ հոն զետեղեն զնշխարս սրբոց և շինեն զվկայարանս. զի բնականն իսկ՝ զայս կը պահանջէ: Բայց որովհետև աւանդութիւն է ազգային, պէտք չէ արհամարհել. այլ ըսել, թէ կամ Գրիգորի կենսագիրն և կամ լաւ ևս նորա խմբագրողն ներմուծեց անդ:*

տան և Սիւնեաց իշխաններն արիւնահեղ պատերազմներով առին և կործանեցին. ապա Ս. Գրիգոր սկսաւ հիմն արկանել եկեղեցւոյն, ուր զետեղեցան Յովհ. Կարապետին և Աթանագինէի նշխարաց մի մասը, Կեսարիայէն՝ Գրիգորի ընծայուած լուսաւոր ակունքներէն միոյն հետ, որ Լեէր կը կոչուէր. իսկ միւս մասը՝ մնացած ակունքին հետ զետեղեց յայլում եկեղեցւոջ (Յաշտիշատու): Արդ, եթէ շփոթութիւն մ'ևս եղած համարինք դից, մեհենից և շինուած եկեղեցեաց՝ որք կը յիշուին առ Զենոբայ, ընդ դից, մեհենից և եկեղեցեաց յիշատակելոցն յԱգաթանգեղայ, սակայն Զենոբայ աւանդածը շատ բանաւոր և ստոյգ լրողութիւն մի է. այսինքն թէ Տարօնի կրկին մեհենաց բոլորական կործանմանէն վերջ և նոցա հիման վերայ, գուցէ թէ և՛ նոցա ատաղձով շինուեցան Յովհ. Կարապետին և Յաշտիշատու եկեղեցիները, և ոչ թէ յառաջ: Այս բանիս պատճառն յայտնի է մասամբ մի և պատմութեան ընդհանուր ընթացքէն. որովհետև նախ այն տեղերը քրմական ժառանգութեան և կալուածոց մէջ էին. երկրորդ, ըստ ընդհանուր աւանդութեան, նոցա հիման վերայ հիմնուեցան յիշուած եկեղեցիք, որ առանց նոցա կործանմանն՝ անկարելի էր: Ուստի Տարօնի պատմութեան հեղինակի ասածով՝ նախ Կուարս աւանի Դեմետր և Գիսանէ դից մեհենատեղւոյն եկեղեցին շինուեցաւ, ապա Յաշտիշատին. զի 'ի կործանման առաջնոյն՝ «դևք (քուրմք) մարմնաւոր տեսլեամբ անկան 'ի կուռսըն Յաշտիշատու»:

Զենոբայ 32 իշխում Յովհ. Կարապետին և Աթանագինեայ նշխարաց զետեղման նկարագրութեան մէջ, եթէ ձեռք խառնուած չլինէր՝ պատմական մեծ արժէք պիտի ունենար, նախ զի հեղինակ հաւատածոյս՝ իբրև ականատես և գործակից սոյն գործողութեան՝ կը խօսի զինքենէ: Բ. Գրիգորի մէկ արձանագրութիւնը մէջ կը բերէ, զոր գրեց պղնձեայ տախտակաց վերայ և դրաւ 'ի բեմի անդ, յորում խստիւ կ'արգելոյր, թէ «Կին ոք՝ մի՛ իշխեսցէ մտանել ընդ դուռն եկեղեցւոյն»: Սակայն ընդունելով հանդերձ Գրիգորի՝ նման արձանագրութեան մի և կանոնադրութեան եղելութիւնը, սակայն և այնպէս կը տարակուսիմ, թէ այդ տեղին ամբողջապէս Զենոբայ հարազատ աւանդութիւնն եղած լինի, այլ մինչև այս խօսքերս. «Զոր թէ ստուգիւ կամիք իմանալ՝ ցՊիսիդոն թարգմանիչ ասորի իսկ հարցէք, և նա ասէ ձեզ»: Իսկ աստի և անդր, այսինքն է. «Քանզի Կարապետին առ անկեան դրանն Արշակունի», խօսքերէն՝ մինչև «Ընթերցեալ է զտախտակսն», յետնագունի ուրումն է: Ցիրաւի, այս բանս պատմութեան կերպէն իսկ կը տեսնուի, զի ձեռք խառնողն ուզած է աստ ներմուծել նախ հանգամանս ինչ իւրոյ ժամանակին, յորս կը գտնուէր Ս. Կարապետի գերեզմանը, կրկնելով Զենոբայ խօսքերը: Երկրորդ, յանուն Գրիգորի և Զենոբայ՝ արգիլել կանանց մուտն յեկեղեցին, յայցելութիւն նշխարաց սրբոյն. մինչդեռ Գրիգոր այսպիսի կանոն մի դրած էր՝ միայն արգելավանից սրահները չի մտնելու համար, և ոչ թէ յեկեղեցին, որ է տուն և ժողովարան ամենայն բարեպաշտից՝ առանց խտրութեան արանց և կանանց:

Արդ, Զենոբայ ինչպէս ամբողջ գրուածքին այսպէս և այս տեղւոյս մէջ՝ կամ Թոդիկ [1] Վանահօր ժամանակ ներմուծաւ այդ եկամուտ հատուածն, Ս. Կարապետի գերեզմանին և կանանց մասին. և կամ լաւ ևս յէ. դարում՝ Յովհ. Մամիկոնեանի ձեռքով. որ առիթ ունենա֊լով խմբագրել Իննակնեան Վանքին և Վանահարց ժամանակագրա֊կան յիշատակարանքն և կանոնները՝ այս դերս խաղաց նաև Զենո֊բայ գրութեանցը մէջ:

Ցիրաւի, այսպիսի եղելութեան իբրև ապացոյց կը համարիմ ես Արծրունեաց իշխանին Վարդ պատրկի Տիկնոջ վերայ յօրինած մէկ վէպն, զոր կը գտնենք Յ. Մամիկոնեանի պատմութեան առաջին գլխում մէջ, հետևեալ կերպով: Այս բարեպաշտ Տիկին՝ որուն ա֊նունն էր Մուշեղ, իւր երկան բացակայութեան ժամանակ՝ ստըն֊դեպ որդին հետն առած՝ ուխտի գնաց 'ի Ս. Կարապետ, և կը ցան֊կայր ներս մտնել և իւր արցունքներով հաշտեցնել այն մեծահռչակ սրբոյն թշնամութիւնն՝ առ ազգն կանանց (ըստ Հայաստանեայց [2] ժողովրդական աւանդութեան) վասն Հերովդիադայ: Միաբանութք վանաց կ'արգելուն զնա, բայց նա անսաստելով կը մտնէ յեկեղե֊ցին. իբրև նոր ոմն Աննա կը կատարէ իւր ուխտը, ջերմաջերմ ար֊տասուօք լուալով Մուրատատուր սրբոյն շիրիմը. յետոյ քաջողջու֊թեամբ դուրս գալով, 300 հարիւր միանձանց հացկերոյթ մի ևս կու տայ, ըսելով. «Ուրախ լերուք ընդ իս, զի ներեաց ինձ Տէր»: Բայց երբ մեկնելով կ'երթայր 'ի փոքր զառիվերն Նորգոնեյ, կը տեսնէ յանկարծակի ուրուրընդոսուր անուց մէջէն գիսաւոր մարդ մի՝ արիւնաներկեալ սուր 'ի ձեռին, որով հարեալ և ինքն կարեվէր՝ մէկէն 'ի մէկ կը մեռնի: Արդ, այս տիկնոջս մահն, 'ի վերայ զառի֊վերին Նորգոնեյ, պատմական իսկ համարելով, մնացածն՝ այսինքն է Ս. Կարապետէն հարուածուիլը՝ բոլորովին շինծու համարելի է, ըստ իս, և Յ. Մամիկոնեանի այն գիւտերէն մին համարելի է, զորս հնարած է և յանձին Գայլ Վահանոյ. և հնարած է զայդ՝ կամ վերոյի֊շեալ ազգային աւանդութիւնն, իբրև Գրիգորի կանոն, անաղարտ և միշտ իւր ուժին մէջ պահելու համար, և կամ ժամանակին պէս֊պէս անտեղութեանց առջևն առնելու նպատակաւ:

Ազաթանգեղայ, յէջ 609, պարբերութիւնը՝ շարունակութիւն է անմիջապէս իւր նախընթաց պարբերութեանն, և մի և նոյն տիպն ունի: Հեղինակ հատուածոյս՝ որովհետև Ս. Գրիգորի մէկ աքանչելա֊

1. Այս Թոդիկս եղաւ որ զառաջինն յաջողեցաւ մաքրել զվանս Գլա֊կայ՝ յԱսորեաց անտի, և բարեկարգութեան կանոններ հաստատել:

2. Այս աւանդութիւնս ստուգիւ ազգային ըլլալուն ապացոյց է, նախ զի առ Յոյնս չկան այսպիսի զրոյցք: Բ. տիկնոջս բերանը դրուած այս խօսքերս իսկ. «Եթէ վասն թշնամութեան Կարապետին է ընդ մեզ, և ո՛չ ինքն 'ի կնոջէ ծնաւ»... և թէ, «Ո՛վ Տէր մի՛ առներ յիս զցասումն բարկութեան քո»: Գ. Մինչև ցայսօր իսկ այդ աւանդութիւնը կը տևէ Տարօնի բնակչաց բերանը: Բայց պէտք է ըսել և զայս, թէ Ս. Նփրեմ իսկ Յովհ. Կարապետին վերայ յօրինած ճառին մէջ, կը թուի ակնարկել նման աւանդութիւն մի և՛ առ Ասորիս, նկատմամբ ատելութեան Սրբոյ Կարապետին առ ազգն կանանց:

գործութիւնը պխտի պատմէր, այն նպատակաւ նախընթացին մէջ փութացել է ծանուցանել, թէ զօրքերն՝ ուզելով կործանել զբագինն՝ որոնեցին զդրունս նորա, բայց չի գտան․ զի « դուռն ծածկեցին 'ի նոցանէ․ և 'ի կողմանցն արտաքուստ ջանացան և ոչ գծեաց երկաթ զործոյն »: Ուստի և իշխանները ճարահատեալ կը փութան և կը պատմեն զայս Գրիգորի: Գեղեցի՛կ զիստ․ երկուստեք ձեռնթափ ըննելով զիշխանն: ապա ուրեմն կ'ածէ 'ի հանդէս զՍ․ Գրիգոր, հրաշափառ տէրունեան նշանաւ․ և 'ի տեսանազրելն՝ անդէն վաղվաղակի ուժգին հողմն մի կը շնչէ 'ի սուրբ խաչէն, կ'ընթանայ « լերինն հաւասար ». հիմնայատակ կը կործանէ զբագինն, և այնպէս անյայտ կը լինին, « զի չէր պիտոյից » ոչ այլ ինչ կը տեսնուէր, կ'ըսէ, 'ի տեղւոջն այնմիկ, « ոչ քար և ոչ փայտ », և թէ « եղ անդ զհիմունս եկեղեցւոյ »:

Այս վերջին խօսքերովս, որքան որ կը թուի հեղինակ հաստատօրէն համաձայնել յառաջագոյն աւանդելոցն 'ի Զենոբայ, սակայն նոյնքան ևս կը հեռանայ անտի նորանշան աքանչելագործութեան պատմութեամբը․ որովհետև ըստ վկայութեան Զենոբայ, յէջ․ 26, այն մեհենի կործանումն եղաւ միայն հայախումբ զօրաց բուռն պատերազմով և 'ի բացակայութեան Ս․ Գրիգորի։ Արդ, ըստ իս, 608 և 609 էջերու հատուածներն՝ Գրիգորի գործոց խմբագրողին աւելի կը թուին վերաբերիլ, զի Ագաթանգեղայ նախընթաց և հետևորդ տեղեացմէ կը տարաձայնին: Եւ եթէ իրօք այնպէս եղած է, առաջնոյն իբրև աղբիւր համարելու է Զենոբայ 34–35 էջերում եղած մէկ տեղին, ուր կ'ըսուի, թէ իշխանները « Քննէին զտաճարն Գիսանէին 'ի վեր բերել՝ և ոչ գտին … աղաչէին զքուրմն ցուցանել զօրեղին քանդակացն և զզօրանս քերթողաց տանն ». 32 իջի հետևեալ խօսքերը, թէ « Ընդ առաջ եղեն մեզ իշխանքն Հայոց, առեալս տարեալ մեզ, թէ Դեմետր կործանեցաւ. և հուսկ՝ 38 իջի մէկ տեղին, ուր ինչպէս տեսանք, կը պատմուի Յովհաննու և Աթանագինեայ նըշխարքը տանող Զօրեաց Նարէին և հրեշտակն յայտնականին։ Իսկ վերջինը՝ Փաւստոսի Գ․ Դպրութեան Գ․ գլխուն մէկ տեղւոյն հետ նոյն է, ուր կ'ըսուի Վրթանէսի համար, թէ « Երթեալ հասանէր 'ի մեծն 'ի մայրն եկեղեցեացն Հայոց, որ էր յերկրին Տարօնոյ, ուր նշանօքն եղիցէ կործանեցան բագինք մեհենիցն յայնժամ, վաղ ևս առ մեծաւ հանդիսաւորեալն Գրիգորիւ »: Ստուգիւ, այս բացատրութիւնս իսկ առ Ագաթանգեղ, թէ « Եւ այնչափ կորոյս՝ զի չէր պիտոյից ոչ ինչ յայնմ տեղւոջ նշմար էր գտանել », կը թուի ցուցնել, թէ հատուածոյս գրողն այն դիպաց և տեսլեան ականատես չէր, այլ այնպիսի ժամանակի մէջ կ'ապրէր, յորում վերոյիշեալ հեթանոսական մեհենին հետքն անգամ չէր տեսնուէր:

Ցէջս 610 և 611 երկու պարբերութիւններն՝ մի միայն յաղբերէ կը յառաջագային և մի և նոյն հեղինակին կը վերաբերին․ զի երկաքանչիւրին մէջ իսկ նոյն բառերով կը յիշուին առաջին եկեղեցիներն և նախընծայ սեղանները, զորս կանգնեց Գրիգոր Տարօն գաւառում, հետևեալ բացատրութեամբս․ « Զի նախ անդ արար սկիզբն շինելոյ

եկեղեցեաց և ուղղել սեղան յանուն սուրբ Երրորդութեան[1] »: Առաջնոյն մէջ բաց 'ի շինութենէ եկեղեցեաց՝ կը պատմուին Գրիգորի առաքելաշնորհ միւս գործերն եւ, որով կը դարձընէ զքրմական վիճակն (Դեմետրի և Գիսանէի)՝ յաստուածպաշտութիւն անդր և կը մկրտէ զնոսա՝ իրեն դէպ 'ի Կեսարիա ուղեկցող իշխանաց և զօրաց հետ: Իսկ յերկրորդումն կը պատմուի բազմաթիւ Քահանայից ձեռնադրութիւնն, և Կեսարիայէն բերուած սրբոց մեծ և աշխարհահանդէս Տօնի հաստատութիւնն, յաւուրն եօթներորդի՝ Սահմի ամսոյն: Երկաքանչիւրն իսկ՝ Գրիգորի գործոց և պատմութեան հարազատ մասն կը կազմեն. երկաքանչիւրն՝ են պատմական: Առաջնոյն ճըշմարտութիւնը՝ վերստին կը հաստատուի Զենոբայ, յէջ 35, մէկ տեղովն, ուր կ'ըսուի Սիւնեաց իշխանի համար, թէ յետ պատերազմին Արծանայ և շինութեան եկեղեցւոյն՝ « Երթեալ յաւանն Կուառս, հաւանեցոյց զզօրսն գեղջն (քրմաց) փոխ 'ի Մկրտութիւն. որք յանձն առին և եկին ընդ նմա »: Յովհաննու և Աթանագինեայ նշխարաց մասին միայն կը թուի տարաձայնիլ Գրիգորի կենսագիրն՝ 'ի Զենոբայ. զի Ասորին՝ նոցա մի մասն Դեմետրեայ մեհենատեղում շինուած եկեղեցւոյն մէջ, իսկ միւսն 'ի Մատրավանս զետեղուած կը պատմէ. իսկ կենսագիրս, ընդ հակառակն, այլուր եւ տարածուած կ'աւանդէ, յասելն, յէջ 611. « Եւ եբարձ նշխարս անդէն եւս մի 'ի սրբոցն, զի և յայլ տեղիս հաստատեսցէ զյիշատակս նոցա »: Սակայն Փաւստոս՝ յայլեայլ տեղիս կը հաստատրմացնէ մեզ զասացեալն կենսագրին, քան թէ Զենոբայ. զի Գ. Դպրութեան ժԴ գլխում բաց 'ի վերոյիշեալ եկեղեցիներէն՝ զՑաշտիշատ եւ կը յիշէ իբր հանգըստարան Յովհաննու: Իսկ Դ. Դպրութեան ԺԵ. գլխուն մէջ և Ե. Դըպրութեան ԽԳ. գլխում՝ որոշակի կը հաստատէ, թէ 'ի Բագաւան կային նշխարք Յովհ. Մկրտչին, ուր զօրավարն Մանուէլ՝ ուրացելոյն Մերուժանայ դէմ ճակատելէն յառաջ՝ ուխտի գնաց, յասելն. « Կազմեցաւ ամենայն զօրքն Հայոց գնդին, և Մանուէլ Սպարապետն. և մտին առաջի սուրբ ոսկերացն Յովհաննու, որ կայր յայնմ գեղջ »:

Այս պարագայիս մէջ կարելի է, ըստ իս, Փաւստոսի յիշեալ տեղերով վերջնականապէս պարզել Զենոբայ և Գրիգորի զործոց հեղինակի մէջ երևցած խորհրդական կնճիռն, նկատմամբ Գրիգորի կործանած մեհենաց և շինած եկեղեցիներուն: Արդ, Զենոբ՝ Դեմետրի և Գիսանէի մեհենատեղում շինուած եկեղեցիով՝ ուղղակի մատնանիշ կը ցուցանէ մեզ Ս. Կարապետի կամ Գլակայ վանքն, որ 'ի Կուառս աւանի, որ վեց[2] ժամօք հեռի կայ 'ի Ցաշտիշատայ դէպ յարևմուտըս: Այս բանս նախ և առաջ նա ինքն Զենոբ որոշակի կը ծանուցանէ մեզ, յէջ 15, խօսելով զյամենալոյն Գրիգորի 'ի Տարօն, և Ս. Գրիգորի առ Ղևոնդիոս գրուած նամակին մէջ, յէջ 8: Երկրորդ, այլ-

1. Դիտելու ենք, որ Երրորդութիւնն՝ աստ մասնաւոր եկեղեցւոյ մի անուն չէ, ինչպէս « եկեղեցեաց » յոքնակի դիմօք գրութենէն իսկ քաջ կը տեսնուի. այլ հեղինակը կ'ուզէ ըսել միայն, թէ սեղան կանգնեց կամ պատարագեց յանուն Երրորդութեան:

2. Ինճիճեան. Աշխարհ. հտ. Ա. Հայաստան, էջ 193:

ուր՝ այն տեղւոյն մասին ըրած նկարագրութենէն խսկ քաջ կը տեսնուի, որուն կը միաբանի զխտնագրյնն յայցելուաց Հ. Ներսէս Սարգխսեան [1]: Իսկ յէջ 38 'ի վերջկոյս Ա. Պատճենին կամ պատմութեան Տարօնոյ յիշատակած եկեղեցին՝ է Մատրավանքն, որ 5 ժամ հեռի կը գտնուի [2] 'ի Ս. Կարապետէն դէպ յարևելս: Ցաշտիշատու մեհենին՝ և անոր աւերածոցը վերայ կանգնուած եկեղեցւոյ մասին՝ բոլորովին լռած է Զենոբ, զոր Գրիգորի կենսագիրն և Փաւստոս նոխագոյնս և ստէպ կը յեղյեղեն. Յովհ. Մամիկոնեան՝ զերեսեանն ևս 'ի Ս. Գրիգորէ հիմնարկուած կ'աւանդէ [3], և կործանեալ 'ի ժամանակս արշաւանաց Արդուահիմայ 'ի Հայս: Գուցէ կարելի լինէր դիպուածական համարել Զենոբայ այսպիսի լռութիւնն, եթէ Գրիգորի կենսագիրն՝ իւր կողմանէ պատմէր մեզ ինչ մի Դեմետրեայ մեհենին և հոն շինուած եկեղեցւոյն վերայ. սակայն ոչ միայն չպատմէ ինչ, այլ և ոչ իսկ լոկ յիշատակութիւն մի կարելի է գտնել առ սմա: Յէջ 612, թէպէտև կը յիշէ Գրիգորի գալուստն 'ի Բագուան, ուր կը սպասէր նմա թագաւորն Տրդատ. սակայն եկեղեցւոյ շինութեան չիք ինչ յիշատակ: Բայց Փաւստոսի Գ. Դպրութեան ժԴ. գլխում յիշուած «Մարգարէանոցն» անշուշտ է նոյն ընդ Ս. Կարապետին՝ յիշելոյ 'ի Զենոբայ. ուստի չէ մարթ Ասորի հեղինակիս աւանդածին վերայ տարակուսիլ, ինչպէս նա չկարէր տարակուսել Ցաշտիշատու եկեղեցւոյ գոյութեան մասին: Ուրեմն ինչպէս մեկնելու է այս երևոյթս. Զենոբ՝ որ հրաման առաւ 'ի Գրիգորէ Տարօնի պատմութիւնը գրել, զիա՞րդ կարէր անդ հանդիպած նշանաւոր դիպաց մին 'ի լռութեան դատապարտել, առանց իրական և բանաւոր պատճառի մի: Սոյնը՝ անհասկանալի կը մնայ նաև Գրիգորի կենսագրի համար, որուն նպատակն էր Լուսաւորչի գործոց «Ծրագիր» պատմութիւնն ընել: Արդ, իմ կարծիքով այսպէս կարելի է մեկնել երկուտեք երևցած այդ զանցառութիւնքը. այսինքն թէ, Զենոբ և Գրիգորի կենսագիրը երկուքն մի և նոյն ժամանակամիջոցին ձեռք զարկին 'ի գրի առնուլ Գրիգորի գործերն. այնպէս որ Տարօնի պատմութեան կամ առ Ասորիս գրած թղթոց հեղինակն՝ իւր Ա. պատճէնն աւարտած ժամանակին, Ագաթանգեղայ Բ. գրոց այս էջերս հազիւ ուրեմն կամ տակաւին գրուած չէին. այն պատճառաւ իսկ կը տեսնենք, զի Մատրավանից եկեղեցւոյ շինութեան պատմութիւնը, որ առ Զենոբայ՝ Ա. պատճենի վերջին իջումը (38) կ'աւարտի և Ս. Կարապետի շինութենէն վերջ, առ Ագաթանգեղ, ընդհակառակն, առաջին տեղին ունի. և անկէ վերջ կը նկարագրուի Ցաշտիշատու մեհենի կործանումն և եկեղեցւոյ շինութեան պատմութիւնն: Ուստի աւելորդ համարեցաւ Գրիգորի կենսագիրը՝ վերստին 'ի գրի հարկանել Ս. Կարապետի շինութիւնն՝ հանդերձ Դեմետրի և Գիսանէի արարուածովք, զորս արդէն մանրամասն պա-

1. Տեղագ. 'ի Փոքր և 'ի Մեծ Հայս, Վենետիկ. 1864, էջ 228–230:
2. Ինճիճեան. Աշխ. հտ. Ա, 193: Սարգիսեան՝ Նոյն:
3. Պատմ Տարօնոյ, էջ 58:

ռազմափիւք պատմագրած էր Զենոբ այդ ժամանակ: Բնականապէս ուրեմն պէտք էր, որ նա իւր ուշադրութիւնն ուղղակի Յաշտիշատու մեհենի կործանման և եկեղեցւոյ շինութեան պատմութեանը վերայ դարձնէր և դարձուց իսկ, գրելով միանգամայն ուրիշ միջանկեալ դէպքեր՝ մինչև ցերթն Տրդատայ առ Կոստանդիանոս: Այնպէս որ՝ Տարօնի պատմութեան Բ. Պատճէնն երբ սկսաւ գրուիլ, Ագաթանգեղայ գրոց վերոյիշեալ կէտերն և Յովհ. Կարապետի մեծահանդէս Տօնի հաստատութիւնն՝ արդէն գրուած էին. անոր համար Տարօնի պատմութեան հեղինակն՝ ուղղակի անցաւ 'ի պատմագրել զերթն Տրդատայ 'ի Հռովմ, և Տարօնում կատարուած երկրորդ պատերազմն ընդդէմ Հիւսիսականաց, որ եղև յետ դարձին Տրդատայ յայցելութենէ Կոստանդիանոսի: Ստուգիւ այս պարագայս համարելու ենք դարձեալ պատճառ Գրիգորի կենսագրի երկրորդ լռութեանը. որ Զենոբէն նկարագրուած Տրդատայ գոռ պատերազմաց զէնքերն և զրահանքը դնելով առ ոտս խաղաղարար և փրկութիւնաբեր խաչին Քրիստոսի՝ կու տայ նմա այնուհետև զոյգ ընդ դիւցազին իւրոյ Գրիգորի՝ «պարապել զամենայն ժամանակս ընթերցուածոց գրոց՝ թաղեալ 'ի սէրն Քրիստոսի»:

ԾԺԶ. Գլխահամարով սկսող պարբերութիւնն՝ ուղղակի Տրդատայ կենսագրութեան հատուածով մի կը սկսի. բայց շուտով կ'ընդհատի յէջ 612, Գրիգորի կենսագրութեան հատուածով, որուն սկիզբն է. «Իսկ նա (Գրիգոր) շրջէր զի լցցէ զկողմանս կողմանս եկեղեցեօք և քահանայիւք» և կը վերջանայ. «Հասանէր առ ոտս Նպատական լերինն»: Առաջինն 'ի հատուածոցս՝ Գրիգորի պատմութենէն դուրս և միջանկեալ բան մի է, զոր ես խմբագրողէն ներմուծուած կը համարիմ. և ասոր ապացոյց է, այն պատճառաւ յառաջ եկած սոյն անտեղութիւնս. այսինքն է, մէկ կողմէն կը ծանուցուի գալուստն Գրիգորի 'ի Հայս և Տրդատայ ընդ առաջ երթալն 'ի Բագուան, հանդերձ Աշխէն տիկնաւ, Խոսրովիդխտաւ և արքունական զօրաց բազմութեամբ. իսկ միւս կողմէն՝ ամսօրեայ ժամանակաւ դեռ դեգերել կը տրուի Գրիգորի աստ և անդ, սպասեցնելով զթագաւորն յաւանի անդ: Արդ, եթէ այդ հատուածը մէջ տեղէն վերնար, այն անտեղութիւնն իսկ վերցուած կը լինէր, և 613 իջի. «Ընդ առաջ լինէր նմա թագաւորն ամենայն զօրօք» հատուածը քաջ պիտի միաբանէր անմիջապէս նախընթաց պարբերութեան հետ, և բաւական էր իրին ճիշտ եղելութիւնը ցուցանել. մինչդեռ այդ ինքնահնար հատուածի պատճառաւ՝ իբրև աւելորդ կրկնութեան կերպարանք առած է:

Յէջ 613, յանուն Կեսարիոյ հայրապետին Ղևոնդիոսի՝ առ Տրդատ գրուած թուղթը[1] շարունակութիւն է իւր անմիջապէս նախորդ

1. Ի տպագրութեան Լանգլուայի, Collection des Hist. Anciens de l'Arm., ch. CXVI, p. 177, կը պակսի այս թուղթս: Իսկ մեծ գիտնականն Լագարդ ամբողջապէս լրացուցել է յունարէն օրինակի այս պակասն՝ իւր յիշեալ տպագրութեան 73 և 74 էջերում:

պարբերութեանն, յորում թէպէտև Տրդատայ վերայ խօսք կը լինի՝ բայց այնպէս անցողաբար, զոր չէ մարթ Տրդատայ պատմութեան վերագրել, այլ ուղղակի Գրիգորի. այսպէս ուրեմն և այս թուղթս, որ անտի կը յառաջագայի այնպէս՝ ինչպէս ուղէշն՝ 'ի բնոյն: Առ Զենոբայ և Փաւստոսի չիք և ոչ իսկ յիշատակութիւն ինչ թղթոյս: Սակայն Ասողին, յէջ 12, յետ Բ.դի պատասխանական թղթոյն Ղևոնդիոսի՝ առ Գրիգորիոս, կ'ըսէ, թէ «Իբրև դարձան պատգամաւորքն 'ի Վաղարշապատ քաղաք, հանեալ զնամակն մատուցին առաջի ժողովրդեան, ուր ընթերցեալ տրտմեցան հանդերձ թագաւորաւն»: Կարելի՞ է արդեօք ըսել, թէ այս դէպքէս և կամ Ագաթանգեղայ 618 իջի մէկ յիշատակութենէն ներշնչուած ըլլայ այն: Թղթոյս զէթ սկզբնաւորութիւնը, այսինքն է մինչև «սիրեցեալքդ Տեառն» խօսքերը՝ կը թուին հաստատել այսպիսի ենթադրութիւն մի. սակայն մնացած պարբերութիւնքը՝ բոլորովին հակառակը կը ցուցանեն: Ուստի Կեսարիոյ հայրապետին կողմանէ պաշտօնական պատասխանւոյ մի եղելութիւնն՝ առանց երկբայութեան է: Բայց թէ այժմեան թուղթը՝ զոր ընծայեն մեզ Գիրք Ագաթանգեղայ, իցէ՞ այն ստուգիւ և կարէր լինել. այս կէտս քննութեան կը կարօտի:

Կոմիտաս Կաթողիկոսի առ Մոդեստոս Երիցապետն Երուսաղեմի գրուած պատասխանական թուղթն[1] այս պատճենիս նման երկու համառօտ հատուածներ[2] կը պարունակէ. սակայն այս երևոյթս ուրիշ նշանակութիւն չունի, ըստ իս, այլ պարզապէս արդիւնք համարելու է Կոմիտասայ կամ նորա քարտուղարի կողմէն եղած Ագաթանգեղայ շարայարութեան ծառայական նմանողութեանն. որուն ապացոյցը ուրիշ պարագայի[3] մէջ ևս նա ինքն տուած է: Պատճենիս սկզբնաւորութիւնը. «Գանեալքդ և խրատեալքդ», մինչև «Տեառն», ըստ իս, ոչ միայն օտար կ'երևի յունական ոճոյ, այլ նոյն իսկ քաջադիպութեամբ բանիցն՝ ուղղակի փոխադարձութիւն համարելի է Տրդատայ առ Ղևոնդիոս ուղեալ պատճենի Ա. պարբերութեանը և անոր վերայ ճիշդ ձևուած է. իսկ որովհետև այն պարբերութիւնն, ինչպէս տեսանք 'ի վեր անդր, անհարազատութեան տիպ ունի, այսպէս ուրեմն և Ղևոնդիոսի ընծայուած պատասխանւոյն զէթ սոյն մասը՝ տարակուսական համարելի է: Զի խմբագիրն՝ առաջնոյն անհարազատութիւնը ծածկելու համար՝ իւր կողմէն իբրև դիմակաւորեալ գլուխ մի՝ յարմարցուցել է Ղևոնդիոսի

1. Առ Սեբէոսի, Պատմ. 'ի Հերակլ, գլ. ԽԵ. էջ 86, տպ. Պետրբուրգի, 1879:

2. Որոնց առաջինը կը սկսի. «Գանալից եղելոցդ և խրատելոցդ» ... Իսկ երկրորդն. «Եւ 'ի վերայ այսր անդադար բերանովք և անհանգիստ լեզուօք զՏէրն մեր Յիսուս Քրիստոս, զբարերարն և զսքանչելագործն և զպարգևաբաշխն օրհնեսցուք»:

3. Այսինքն է, սրբոց Հռիփսիմեանց Շարականն իսկ՝ Ագաթանգեղայ Յառաջաբանին և Մ. Խորենացւոյ՝ Հռիփսիմեանց Ներբողեանի նմանողութեամբ յօրինած է, 'ի վար արկանելով նոցա յատուկ բացատրութիւնները և բառերը:

թղթին վերայ: Եւ իրօք այս բանիս մատնող է՝ « Վասն կենսատու փրկութեանդ հասելոյդ ձեզ յԱստուծոյ » երկրորդ պարբերութիւնն, որ ոչ միայն անձատ է յառաջնոյն, այլ տակաւին իբրև նոր խմն կը յիշէ զկենսատուր փրկութիւն թագաւորին:

Իսկ մնացածն, ըստ բովանդակութեան, հարազատութեան տխպ ունի, որ և կը սկսէր, ըստ իս, այսպէս. « Տրդատէս (Դու[1]) թագաւոր Հայոց մեծաց և այլն », բառերով: Ցիրաւի, ներքին հանգամանք իսկ կը հաստատեն իմ կարծիքս: Նախ և առաջ « Ագաթանգեղոս, Մեսրոպագրեր » պատուանուանքս, որք ընծայուած են Ղևոնդիոսի, և [illegible] (մեծ) մակդիրն՝ որ տրուած է Կեսարիոյ, ոչ միայն յունարէնի լոկ տառադարձութիւններ են, այլ պատմական կերպով իսկ ճիշդ են: Բաց յայսցանէ կան նաև ուրիշ յունաբանութիւնք[2]: Չորրորդ պարբերութեան. « Եւ հաստատեալ կայցէ վիճակաւորեալն 'ի մէջ երկոց կողմանցս, զի պարգևաբաշխութիւն նորոգեալ քահանայութեանդ ձեռոյդ նահանգիդ, — 'ի մէջ կայցէ անշարժ՝ յեկեղեցւոջս կեսարու, ... և հանդերձեցաւ չեւ պատրաստութիւն շինութեան յեւանդերա-րեալն » տեղւոյն մէջ՝ հետևեալ պատմական և ուշադրութեան կարևոր եղելութիւնքը կը յայտնուին, Ա. թէ Գրիգորի՝ եպիսկոպոսական ձեռնադրութիւն ընդունելովը՝ Հայաստանեայց Եկեղեցւոյ Քահանայապետութիւնը կամ հայրապետութիւնը ոչ եթէ նոր ինչ հաստատեցաւ, այլ նորոգեցաւ: Բ. թէ այս նորոգութիւնս եղաւ յԱրքեպիսկոպոսէն մեծին Կեսարիոյ: Գ. Թէ երկուստեք եղած գրաւոր դաշանց զօրութեամբը՝ մնաց այս իրաւասութիւնս Կեսարացւոց եկեղեցւոյն մէջ, ըստ պահանջել հարկին ձեռնադրել զԿաթողիկոսն Հայաստանեայց Եկեղեցւոյ:

Ցիրաւի, Ղևոնդիոսի թղթին մէջ նշանակած առաջին կէտն, այսինքն թէ, Հայաստանի առաջին դարձէն յառաջ՝ եղան ստուգիւ հաստատեալ հօտք և հօտապետք[3], որոնք ջանացին հալածանօք

1. Յունարէն օրինակին մէջ, ըստ հրատարակութեան Ղազարդի այսպէս է. Σύ Τιριδάτιος ὁ Βασιλεὺς τῆς μεγάλης 'Αρμενίας, καὶ 'Ασιχήνη βασίλισσα καὶ ἡ νεᾶνεις μεγάλη Κουσαρωδούκτα.

2. Օրինակի աղագաւ. 'ի վերջկոյս Գ. պարբերութեան կ'ըսուի. « Զի յիւր հանգիստն արժանիս արասցէ զամենեսեան ». Դ. Պարբերութեան մէջ կ'ըսուի. « Զի ոչ իմացայք դուք զմարդկանն՝ 'ի մարդկապէսն, զի տութիւն արար ձեզ 'ի չմարդկապէսն »: Հինգերորդ պարբերութեան մէջ կ'ըսուի. «Ուստի և հանդերձեցաւ ձեզ պատրաստութիւն շինութեան ձեռնադրութիւն »: Այժմեան յուն. օրինակը կը գրէ 'Εξ ἧς καὶ ἡτοιμάσθη ὑμῖν πὴν ἀρχὴν ἡ δωρεὰ τῆς χειροτονίας, որ չկարէ լինել ճիշդ թարգմանութիւն հայերէնին, և ոչ իսկ բնագիր . այլ պէտք է ըսել, թէ « շինութիւն » է թարգմանութիւն անյայտացած բնագրի Κτίσμα բառին, որ յառաջ կու գայ Κτείνω բայէն, որ կը նշանակէ ստեղծել, շինել: Այս բացատրութիւնս օտար է 'ի հայերէնէ, և յոյն լեզուի ազդեցութեամբ միայն կրնայ ըսուիլ, շինել զոք քահանայ, կամ պատրաստել զշինութիւն քահանայութեան և որ նման է այսմ:

3. Այս եպիսկոպոսներս են, ըստ տոհմային աւանդութեան, Զաքարիա՝ որ յամի Տեառն 33 ձեռնադրեցաւ 'ի Թադէոս Առաքելոյն եպիսկոպոս Արտազու և յամին 70 նահատակեցաւ յԾրուանդայ Բ.դէ: Զեմենտոս՝ որ էր հաւատարիմ Սանատրկոյ և յամին 79 նահատակեցաւ 'ի

հանդերձ շարունակել Թադէոս և Բարդուղիմէոս առաքելոց սկսած առաքելութիւնը՝ Մեծ և Փոքր Հայոց մէջ, անուրանալի ճշմարտութիւն է. որուն վերայ Եւսեբիոս և Տերտուղիանոս իսկ՝ երբեմն երբեմն յանկարծածագ լոյսեր կը ծագեն, բաց 'ի տոհմային մատենագրաց: Իսկ Հայաստանեայց Եկեղեցւոյ Ժողովոց Հաստատութեանց մէջ Թադէոս Առաքելոյն վերագրուած 29 Ցօղուածով Օրէնսդրութիւն[1] մի եւս կայ, որուն գրողն է Զաքարիա Սիւնեաց առաջին եպիսկոպոսն, գէթ ըստ վկայութեան յիշատակարանին, ուր կ'ըսուի այսպէս. «Զայս Օրէնսդրութիւնս ես Զաքարիա աշակերտ Առաքելոյն Թադէոսի գրեցի, որպէս լուայ 'ի նմանէ, ամենայն հաւատացելոց 'ի Քրիստոս»: Արդ, այս Օրէնսդրութիւնն՝ պէսպէս կանոններ կը սահմանէ եպիսկոպոսաց, քահանայից և ժողովրդեան համար. ուստի եթէ չիցէ անհարազատ, յայտնի ապացոյց է այդ ժամանակի Հայաստանեայց եկեղեցական Դասակարգութեան կամ Նուիրապետութեան մի: Այս բանիս վերայ պէտք չէ զարմանալ, եթէ Սանատրուկէն առաջ Հայաստան ստուգիւ ընդգրկեց զքրիստոնէութիւնն: Այլ հետևեալ կէտերն աւելի պէտք են մեր և ամենայն ճշմարտասիրաց հետազօտութեանը նիւթ լինել. այսինքն թէ, Ա. Արդեօք Սանատրուկէն ցՏրդատ՝ նոյնպէս շարունակուեցա՞ւ հայ հաւատացելոց հօտն և հօտապետութիւնն, եթէ ոչ: Բ. Վերոյիշեալ եպիսկոպոսներն եթէ իրօք եւս եղած համարինք, տակաւին կը մնայ այս հարցս, թէ արդեօք նոքա գլխովին անկա՞խ եկեղեցական վարչութիւն մի կը վարէին, թէ, ընդհակառակն, կախումն ունէին յայլոց Նախաթոռութեանց, ըստ եկեղեցական իրաւասութեան: Գ. Ուստի՞ կ'առնուին սովորաբար իրենց եպիսկոպոսական Ձեռնադրութիւնն, և ո՞ր թեմական Հայրապետին կամ Նախաթոռութեան իրաւասութեանը ներքև կը գտնուէին, ըստ վարչական Օրէնսդրութեան:

քրմապետէն Երուազայ: Կոմսի՝ ազգաւ պարսիկ, ձեռնադրեալ յԱռաքելոյն Բարդուղիմէոսէ՝ յԱգուլիս, յամին 67, և վախճանեալ յամին 90: Բաբելաս՝ ազգաւ պարսիկ, որ յամին 90 յաջորդեց Կոմսիին և յամին 120 վախճանեցաւ: Սոքա առ հասարակ կը հովուէին 'ի Մեծ Հայս: Իսկ յԵդեսիա կամ 'ի Միջագետս Հայոց՝ յաջորդեցին Առաքելոյն Թադէոսի՝ Ադդէ, զոր նահատակեց Անանէ: Տուբիաս՝ յամին 94, և Դոմետիանոս կայսեր հալածանաց ժամանակ նահատակուեցաւ. Բարսումա հայկազն, առ Տրայանոսիւ (108–120): Կոն՝ 291–295: Ակակիոս եպիսկոպոս Տիգրանակերտի 250–280: Արքեղայոս՝ 260–280: Իսկ փոքր Հայոց Կեսարիա քաղաքում յաջորդեցին յաթոռն Ս. Թադէոսի՝ Թէոփիլոս՝ 40–70: Զօթիկոս՝ 'ի Կոմանա, յամին 160–190: Աղեքսանդր՝ եպիսկոպոս Գամրաց 210–230: Մեհրուժան՝ 250–280, նահատակեալ 'ի մեծէն Խոսրովայ: Փիրմիլիանոս՝ 230–270: Կղէոնիոս՝ 272–290, նահատակեալ 'ի Դեոկղետիանոսէ: Վլասիոս՝ եպիսկոպոս Սեբաստիոյ, նահատակեալ յամի Տեառն 315: Ղևոնդիոս՝ 292–302 (310–326): Սոցա պատմութեան փափաքողները կը դրկեմ առ Շահխաթունեան, Ստորագ. Էջմ. հտ. Ա. «Արարատ» ամս. 1884. Յուլիս 31. էջ 295–298: Մուրատեանց, Պատմ. եկեղ. էջ 30–31: Ջամիչ Պատմ. Հայոց:

1. Տես Պատմ. Ժողովոց, գլ. Ա, էջ 9–18, Աբէլ արքեպիսկոպոսի: «Արարատ» ամս. 1884, Յուլ էջ 291. և յայլ կանոնագիրս, որ դեռ հրատարակուած չեն:

Արդ, այս երեք կէտերս ալ մեր եկեղեցական պատմութեան մէջ մի մի գողտրեան հանգոյցներ եղած են՝ Ն. դարէն և այսր. և ոչ որ կրնայ մինչև ցայժմ պարզել նոցա գաղտնիքը, թէպէտև այս տալկինելս եղան նշանաւոր անձինք [1], որոնք իրենց երկասիրութեանց մէջ կը համարին, թէ պարզեցին: Ես խսկ կը խոստովանիմ, թէ դժուարին են և կնճռոտ և փափուկ. մանաւանդ թէ, աւելի ևս դըժուարացան և կնճռեցան՝ երբ մարդկօրէն շահադիտութիւններ և կողմնակցութեան ոգիներ ևս՝ բազմադարեան մթութեան հետ՝ի միասին՝ փուն գործեցին քօղարկել զայնս, և շիջուցանել պատմութեան այն լուսաւոր ջահերն ևս, որովք միայն կարելի էր տեսնել նոցա սոյզ և իրական պատկերը: Իսկ ես ոչ այս դիտումներս ունիմ, և ոչ այլ եկեղեցական պատմութեան սահմանները կ՚ուզեմ աստ ընդարձակել. այլ իբրև քննասէր խօսել միայն այն պատմական իրաց մասին, որոնք թղթոյս բովանդակութեանը կը վերաբերին և կարող են հաստատել նորա հարազատութիւնը, և խօսել մանաւանդ առանց հոգւոյ կողմնակցութեան, որ մեծապէս վնասել է մեր տոհմային պատմագրութեան հաւատարմութեանը:

Արդ, դիտելու է, որ Քրիստոսի թուականին առաջին երեք դարուց մէջ, քանի որ հաւատոյ ախոյեան Մեծն Կոստանդիանոս դեռ միապետած չէր հռովմէական կայսրութեան մէջ, Եկեղեցեաց նուիրապետութիւնքը բոլորովին տարբեր վիճակի մէջ կը գտնուէին, քան որ ինչ եղեն յետոյ: Ցնփեսոս, ՚ի Հռովմ, ՚ի Պաղեստին (յԵրուսաղէմ) և յԵգիպտոս (Աղեքսանդրիա) ուր կանուխ քարոզեցաւ Քրիստոսի աւետարանը և ունեցաւ մեծ բազմութիւն հաւատացելոց, անդէն և անդ չունեցան իրենց կատարեալ կերպով կազմակերպուած նուիրապետութիւնքը. մանաւանդ երբ կայսերաց հալածանքները՝ ժամանակ ժամանակ կը ստիպէին զհովիւս նոցա փակիլ մեկթ գետնադամբաններու և մերթ այլ անել բանդերու մէջ, զրկեալ իրենց հօտէն: Այսպիսի պարագայից և ժամանակաց մէջ՝ ՚ի սփիւռս ազգաց ցան և ցիր քրիստոնէից մէջ ևս չկային տարբերութիւնք ազգային եկեղեցեաց, ոչ նախաթոռութիւնս կը նայէին և ոչ նուիրապետութիւնս, այլ ամենեցուն հասարակաց էր մի հաւատք Քրիստոսի, և պարտք՝ տալ վկայութիւն վասն Քրիստոսի: Արդ, ինչպէս Առաքեալք և Աշակերտք, այսպէս նաև այդ ժամանակաց անփառունակ եպիսկոպոսներն՝ զուրկ այն շքեղ տիտղոսներէն, զորս յետագայք անուանեցին Պատրիարք կամ Հայրապետ, Կաթողիկոս, Մետրապոլիտ, Արքեպիսկոպոս, Պրիմաս և Էքզարքոս. այլ էին իբրև հասարակաց հայր, տեսուչ և հովիւ. որք մահ և աքսոր յանձն առած՝ կ՚ընթանային զկնի հօտիցն վարատելոց, ուր պէտքը կը պահանջէր, առանց խտրութեան ազգի և ծիսի և լեզուի և իրաւասութեան. զի լռելեայն այդ ամենայն օրինաւոր համարուած էր նոցա:

1. Մաղ. Վ. Օրմանեան, «Աթոռ Հայաստանեայց», Վաղարշապատ, 1886: Մուրատեանց վերոյիշեալ գործում և այլուր: Վահան Վ. Դուրեան, «յԵրկրագնտի»:

Այսպիսի ժամանակաց և պարագայից մէջ, ուրեմն, եկան 'ի Հայս՝ Եւստաթէոս, և յՍղուանս՝ Եղիշայ, ձեռնադրեալք 'ի Տեառնեղբօրէն [1] Յակովբայ՝ յԵրուսաղէմ. և վերոյիշեալ Հայոց Մեծաց, Միջագետաց և Կեսարիոյ եպիսկոպոսներն, որոնք քարոզեցին զբանն Աստուծոյ և նահատակեցան: Արդ, ինչպէս բոլոր միւս Առաքեալներն և աշակերտք յայլևայլ աշխարհս՝ այսպէս և՛ Թադէոս և Բարդուղիմէոս հաստատեցին, բաց յայլոց տեղեաց, նաև 'ի Մեծն Հայս եպիսկոպոսական աթոռներ: Յիրաւի, Թադէոս Առաքելոյն գերեզմանն աստի, և անտի՝ Արտիթէսի, Դորոթէոսի գրութիւններն և Ղևոնդիոսի առ Ս. Գրիգոր գրուած թուղթն, զոր ընծայէ մեզ Զենոբ, և Բուզանդացւէն սկսեալ միւս տոհմային մատենագիրք [2] կը հաւաստարմացնեն այսպիսի եղելութեան մի գոյութիւնը: Սակայն չէ և չէ մարթ աստի ձեռնարկել Հայաստանեայց Եկեղեցւոյ կամ Թադէոս և Բարդուղիմէոս առաքելոց՝ 'ի Հայս հաստատած Եկեղեցւոյ կատարեալ նուիրապետութիւն մի այն ժամանակէն 'ի վեր. որովհետև ինչպէս վերոյիշեալ եպիսկոպոսաց ցուցակէն և պատմութենէն կը տեսնուի, դոքա ոչ էին պետք բազմաթիւ եպիսկոպոսաց, այլ առանձին և սակաւկան եպիսկոպոսներ էին, որք Սանատրուկէն վերջ գիսաւոր աստեղաց նման հազիւ թէ կ'երևնային հեթանոսիկ Հայաստանի սահմաններուն վերայ, աստ և անդ ծածկուած հաւատացելոց հոգևոր պէտքերն հոգալու: Սոցանէ ոմանք Ասորի էին ազգաւ, ոմանք Պարսիկ, և ոմանք Յոյն և Հայ. որք երբեմն 'ի Պաղեստին ձեռնադրուած՝ այնպէս կու գային 'ի Հայս, երբեմն յԱնտիոք և յԱղեքսանդրիա և երբեմն 'ի Կեսարիա Գամրաց և յԱրևմուտս. որք հազիւ ուրեք և կամ ոչ երբէք կը յաջողէին ձեռնադրել անձամբ իրենց յաջորդները: Բաց 'ի այս պատմական և անժխտելի իրողութեանց, պէտք չէ մոռնալ և զայս, թէ այդ հովուաց պատմութիւնն իսկ 'ի տոհմային յիշատակարանաց միայն գիտենք, որոնք ստուգութեան մեծապէս պէտք ունին:

Սակայն զարմանալին այս է, զի այսպիսի անստուգութեան մէջ, ուր ճշմարտասէրը կը դանդաղէ իւր ընթացքը, շահադէտք և ակնառուք, ընդհակառակն, անդր քան զանդր կը յառաջեն՝ ինքնահընար գիւտերով: Աստի յառաջ եկին բազմահոյլք կարծեաց: Առաջինը՝ կ'ըսէ, թէ Հայք Երուսաղեմայ նախաթոռոյն ստորակարգեալ էին, և անտի կ'առնուին զձեռնադրութիւն: Երկրորդն՝ Անտիոքայ նախաթոռոյն համար կը հաստատէ զայս: Երրորդն՝ Հռովմայ: Չորրորդը՝ Կեսարիոյ: Իսկ հինգերորդն՝ որ է մեծամասն հայ հասարակութեան կարծիք, կը համարի թէ Հայաստանեայց եկեղեցին անդուստ յԱռաքելոց անտի Թադէոսի և Բարդուղիմէոսի՝ անկախ և ինքնագլուխ եղած է միշտ և ունեցած է իւր նուիրապետութիւնն: Առաջին երեք կարծիքը՝ հաստատուած են պարզապէս առաջին ե-

1. Մ. Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից, գլ. Զ:

2. Փաւստոս, Գ. Դպրութիւն գլ. Ա, ԺԲ, ԺԴ. և Դ. Դպր. գլ. Գ: Զենոբ, Պատմ. Տարօնի, էջ 10: Մ Խորենացի, Գիրք Բ գլ. ՀԴ:

րեք դարուց մէջ, ըստ ոմանց և յետ այնորիկ, սակաւաթիւ հայ հաւատացելոց և վերոյիշեալ եկեղեցեաց մէջ տեղի ունեցած յարաբերութեանցը վրայ: Սակայն, ըստ իս, ոչ այն մի քանի եկեղեցական անուններն և ոչ այլ այնպիսի նախկին յարաբերութիւնք՝ կարեն լինել ապացոյց այսպիսի եղելութեան մի. և թէ վերոյիշեալ պարագայներով իսկ արդէն հերքուած կը համարիմ ես զայնս: Ուստի խնդիրը կը մնայ վերջին երկու կարծեաց վրայ: Բայց ուղղակի դեռ այդ կարծեաց վրայ չխօսած, կարևոր կը համարիմ մէջ բերել հետևեալ երկու պատմական ճշմարտութիւնքը, որոց առջև հարկ է թէ կամայ կամ ակամայ ամենքը զկայ առնում և խոստովանին. այսինքն թէ, Ա. Թադէոս Առաքեալն՝ ոչ միայն յԱրտազ գաւառի մէջ քարոզեց և եպիսկոպոսական աթոռ հաստատեց, այլ նաև յԾղեխիա և 'ի Կեսարիա Գամրաց. այս բանս վերոյիշեալ եպիսկոպոսաց ցուցակէն իսկ յայտնի է: Բ. Թէ յԱրտազ և 'ի Միջագետս Հայոց քարոզող այն եպիսկոպոսներէն ոչ մին 120 թուականէն աստին չանցնիր. իսկ Մեհրուժան, որ յամս 250–280 Խոսրովէն սպանուած կը համարուի, էր եպիսկոպոս Փոքր Հայոց և ոչ Արտազու. և թէ երբ Լուսաւորիչն մեր Գրիգոր՝ դարձոյց զՀայս վերստին 'ի քրիստոնէութիւն, չգտր 'ի Հայս ոչ եպիսկոպոս և ոչ քահանայ. այլ արդէն 'ի վաղուց հետէ դադարած էր եպիսկոպոսութիւնն 'ի վիճակէն Թադէոսի և Բարդուղիմէոսի: Այս բանս Ագաթանգեղոսէն և Զենոբէն իսկ այնքան յայտնի է, որ և ոչ իսկ մանրամասն ապացուցութեան կը կարօտի:

Արդ, այսպիսի դրութեան մէջ էր Հայաստանն՝ երբ նորադարձ թագաւորն և ժողովուրդը միաբան ընտրեցին զհայրն հաւատոց իւրեանց զԳրիգոր, և կը ճեպէին 'ի ձեռնադրութիւն եպիսկոպոսութեան: Կ'ուղևորի Գրիգոր նախարարաց բազմութեամբ, բայց ոչ յԱնտիոք կամ յԵրուսաղէմ և կամ այլուր 'ի նախաթոռ եկեղեցեաց, այլ ուղղակի 'ի **Կեսարիա Գամրաց** կամ Փոքուն Հայոց: Այս բանս կը ցուցնէ, թէ Գրիգորէն յառաջ հաստատ մի սովորութիւն կամ եկեցական իրաւասութիւն չկայր այն նախաթոռ եկեղեցիներէն միոյն կամ 'ի միւսոյն առնուլ զձեռնադրութիւն, զի եթէ եղած լինէր՝ անշուշտ երկուստեք պահանջն ևս ըստ այնմ պիտի լինէր: Արդ, բաց 'ի այն ձեռնադրուած ասորի և յոյն եպիսկոպոսներէ, զոր հրաւիրեց Գրիգոր 'ի Հայս, ինքն ևս բազմաթիւ եպիսկոպոսներ ձեռնադրեց: Գրիգորի յաջորդներն ևս, բաց յԱրիստակիսէ և Վրթանիսէ, զորս, ըստ տոհմային աւանդութեան, ինքը ձեռնադրեց և կարգեց 'ի տեղի իւր՝ հրաժարելով յաշխարհէ, Յուսկանէն սկսեալ՝ ցմեծըն Ներսէս հետևեցան Գրիգորի ճանապարհին՝ դէպ 'ի նախաթոռն Կեսարիոյ: Այս դէպքս իսկ գլխովին պատմական է, և բաց 'ի Փաւըստոսէ՝ բազմաթիւ ներքին և արտաքին պարագայք և վկայութիւնք իսկ քաջ կը հաստատեն զայն:

Ուստի ես զայս միայն կը հարցնեմ, թէ ի՞նչ էր պատճառ երթի նոցա 'ի ձեռնադրութիւն 'ի Կեսարիա, եթէ Եկեղեցին Հայաստանեայց յետ ձեռնադրութեան Գրիգորի՝ ունեցաւ իւր կատարեալ

նուիրապետութիւնը՝ լիուլի իրաւասութեամբ և անկախ 'ի նախա_ թոռութենէ Կեսարիոյ՝ ձեռնադրել իւր Կաթողիկոսներն: Զի Փաւըս_ տոսի պատմութեան զանազան տեղերը մերժելն՝ անկարելի է և ան_ ներելի. որովհետև ոչ ոք 'ի հին պատմագրաց յաւակնեցաւ այս փորձս ընել կամ ըստ կամս յառաջ բերել. ուստի յարդեաց ոմանք[1] սխալ ըստ կամս այսպէս մեկնել, թէ որովհետև Գրիգոր Կեսարիոյ մէջ կրթուած և ամուսնացած էր, և թէ այդ արքեպիսկոպոսանիստ քաղաքն՝ Հայաստանի մօտ էր՝ այն պատճառաւ հօն գնաց ձեռնա_ դրիլ: Այսպիսի մեկնութիւն մի Գրիգորի նկատմամբ՝ հասկանալի բան է. սակայն ոչ նոյնպէս և նորա յաջորդաց մասին՝ որոնց ձեռ_ նադրութիւնքը հանդիպեցան յետ ժողովոյն Նիկիոյ և յետ հաստա_ տութեան եկեղեցական նուիրապետութեանց: Փաւստոս՝ Ե. Դպրու_ թեան ԻԹ. գլխուն մէջ կ'աւանդէ, թէ յետ եղերգական մահուան Մեծին Ներսիսի, երբ թագաւորն Պապ ըստ կամս կաթողիկոս դրաւ զՅուսիկ 'ի զաւակէ Աղբիանոսի, այս բանս լսելով Արքեպիսկոպոսն Կեսարու (Ս. Բարսեղ) ծանրացաւ սրտմտութեամբ եղև, զի 'ի «Տեղի նորա կա_ ցուցին զՅուսիկ՝ առանց հրամանի նորա, զի ոչ որպէս առաջ էին առ հայրապետսն տանել 'ի Կեսարիա 'ի ձեռնադրութիւն ... և եդին ժողով ե_ պիսկոպոսաց սահմանակցաց նահանգին Կեսարու ... և գրեցին թուղթ ցասմամբ մեծաւ ... և լուծին զիշխանութիւն կաթողիկոսութեան. զի որ լիցին հայրապետ Հայոց ... մի՛ իշխեսցէ ձեռնադրել զեպիսկո_ պոսս Հայոց, որպէս սովոր էին 'ի բնէ: Եւ յայնմ հետէ բարձաւ իշ_ խանութիւն Հայոց զեպիսկոպոսս ձեռնադրել ... այլ երթային 'ի քաղաքն Կեսարացւոց և անդ լինէին եպիսկոպոսք»: Արդ, եթէ պարզապէս քաղաքավարական բան մի էր Գրիգորի յաջորդաց եր_ թըն 'ի Կեսարիա, Ս. Բարսեղ ինչպէս համարձակեցաւ ուրեմն ե_ պիսկոպոսական սիւնհոդոսիւ լուծել այդ նորընտիր կաթողիկոսի իշխանութիւնն, և վերստին հաստատել նախկին իրաւասութեան գործադրութիւնը:

Չամչեանը՝ Փաւստոսի այս տեղիս «հակառակասիրութեան» ար_ դիւնք կը համարի. իսկ Օրմանեան՝ անհարազատ կը դնէ զայն և «զհայս անուանարկ ընելու դիտմամբ» ներմուծուած կը վարկա_ նի: Արդ, ես իսկ այդպէս կը համարէի, եթէ ուրիշ տեղեր ևս չլի_ նէին թէ՛ առ Փաւստոսի[2] և թէ՛ առ այլս, որք այդ աւանդութեան

1 Գերպ. Մաղ. Օրմանեան, «Աթոռ Հայաստանեայց», էջ 30:

2. Զի Հեղինակս Դ. Դպրութեան ԺԵ գլխոյն մէջ կ'աւանդէ, թէ յետ մահուան Գնէլայ երբ Ներսէս այլ ոչ ևս յաւել տեսանել զԱրշակ, թա_ գաւորն ա՛ռ կացոյց փոխանակ այնր զՉունակ ոմն. և երբ հրաման ըրր_ կեց եպիսկոպոսացն Հայոց գալ ձեռնադրել զնա 'ի կաթողիկոս, ամէն_ քը յետ կեցան այս հրաւէրքէս, և միայն Աղձնեաց և Կորդուաց եպիս_ կոպոսներն եկան: Ահաւասիկ նորա խօսքերը. «Ապա հրաման տայր թագաւորն՝ կոչել զամենայն եպիսկոպոսս Հայոց աշխարհին, զի եկես_ ցեն ձեռնադրեսցեն զՉունակն 'ի կաթողիկոսութիւն Հայոց: Եւ ոչ մի ոք ոչ հաւանեաց գալ. բայց միայն Աղձնեաց և Կորդուաց եպիսկոպոսք ե_ կին, և զՉունակն ձեռնադրեցին, ըստ հրամանի թագաւորին»: Փաւըս_ տոսի այս տեղւոյս հարազատութեան մասին չէ պարտ տարակուսել.

գէթ մի մասին եղելութիւնը չհաստատէին: Ուստի իմ կարծիքով՝ Փաւստոսի այդ տեղւոյն առաջին[1] մասն՝ իբրև ստոյգ եղելութիւն ընդունելու է. այսինքն թէ, Կեսարիոյ Սիւնհոդոսն՝ եկեղեցական օրինօք կամ լաւ ևս Նիկիոյ ժողովոյն Զ. կանոնի[2] համաձայն լուծեց զԿաթողիկոսութիւն, ոչ թէ ընդհանուր յաջորդաց առ հասարակ, այլ այդ ապօրինաւոր կերպով Ներսիսի տեղ յաջորդող Կաթողիկոսին. նա միայն չէր կրնար եպիսկոպոս ձեռնադրել, և թէ Հայոց ապագայ եպիսկոպոսապետները միայն, և ոչ թէ որ և է եպիսկոպոսք, պէտք էին դարձեալ Կեսարիայէն առնուլ զձեռնադրութիւն. այս է հարազատ իմաստ բանից Փաւստոսի, եթէ 'ի տգիտաց ևս ձեռք խառնուած համարինք անդ. որովհետև «Հայրապետ» եզակի դէմքով՝ ուղղակի զկաթողիկոսը կը հասկնայ հեղինակ հատուածիս:

Թերևս հարցուի, թէ ինչ էր արդեօք Կեսարացւոց եպիսկոպոսին վերապահուած այդ իրաւասութիւնը, զոր երկուստեք 'ի վաք արկանէին Հայք և Յոյնք՝ առանց վիճի, նոքա յառնուլն զԿաթողիկոսական ձեռնադրութիւնն, և սոքա 'ի տալն զայն. և ինչպիսի՞ հիման վերայ հաստատուած էր այդ: Այդ իրաւասութիւնն էր համանման այնմ՝ զոր ունէին 'ի հերուն հետէ կաթողիկոսք Հայոց՝ 'ի վերայ Աղուանից և Վրաց, 'ի ձեռնադրութեան անդ և յայլ քանի մի դէպս. և թէ ինչ պատճառներ՝ որք յառաջ բերին Հայոց կաթողիկոսութեան մէջ զնախաթոռութիւնն և նորա յարակից իրաւասութիւնքը, նոքին իսկ յառաջ բերին Կեսարիոյ եպիսկոպոսապետութեան մէջ զգերակայութիւն: Արդ, այս պատճառներէն եթէ ոչ միակն և առաջինը՝ այլ գէթ գլխաւորն եղաւ այն գրաւոր դաշինքը զոր կնքեցին Հայք Վաղարշապատու ժողովոյն մէջ եղած որոշողութեամբ, յորում նախագահ բազմեցան Տրդատ և Գրիգոր. և Յոյնք՝ Գրիգորի ձեռնադրութեան առթիւ 'ի Կեսարիա գումարուած յոգնա-

զի Մեսրովբ Երէց ևս կը հաստատէ զայն (Պատմ. Ներս. տես Սոփ. հայկ. հտ. Զ. էջ 66): Արդ, եթէ եպիսկոպոսք հայոց ունէին [ի]րաւասութիւն ձեռնադրել զԿաթողիկոսն իւրեանց, ինչո՞ւ հրաժարեցան անտի և անսաստեցին հրամանաց թագաւորին: Երկրորդ, դիտելու է, որ երկու եպիսկոպոսով կաթողիկոս ձեռնադրելն՝ հակառակ էր թէ՛ հայաստանեայց և թէ՛ այլոց եկեղեցեաց սովորութեանը կամ Նիկիոյ ժողովոյն Գ. կանոնին: Բ. Մ. Խորենացին ևս, որ նայրենասիրութեան հետ ճշմարտասիրութեամբն ևս կը գերազանցէ քան զբազումս, Փաւստոսի առաջին տեղին իբրև հարազատ և անտարակուսելի իրողութիւն մէջ կը բերէ, ասելով այսպէս վասն Պապայ. «Ապա հարկաւորեալ յուզեաց և եգիտ զոմն յազգէ Աղբիանոսի, որում Շահակ կոչիւր, ոչ հեռի 'ի զօրութենէ. զոր կացոյց փոխանակ Ներսիսի՝ առանց մեծի Արքեպիսկոպոսին Կեսարու»: Մովսիսէն յիշուած անունը կը տարածայնի յիշատակելոցն 'ի Փաւստոսէ. այսինքն է, 'ի Յուսկայ և 'ի Զոնակայ, սակայն ըստ իս նոյն համարելի է ընդ վերջնոյս. և թէ Զոնակ՝ մականուն է Շահակայ և ոչ այլ ինչ:

1. Այս անտի իսկ յայտ է, զի 'ի վերջ կոյս մի և նոյն գլխոյն՝ խօսքը դարձեալ Յուսկան վերայ կը դառնայ և Յուսիկով կ'աւարտի, յասելն. «Եւ սա ... կայր 'ի լռութեան և 'ի հանդարտութեան զամենայն աւուրս կենաց իւրոց»:

2. Որ կ'ըսէ. «Իւրաքանչիւր տեղւոյ եպիսկոպոս կարգեսցի հաւանութեամբ եպիսկոպոսապետին» (վիճակական):

խումբ եպիսկոպոսաց ժողովոյն մէջ: Ցիրաւի, ճիշդ այս դաշինքս կ'ակնարկէ մեզ կենսագիրն Գրիգորի, Ղևոնդիոսի առ թագաւորն Տրդատ ուղղուած թղթոյն հետևեալ խօսքերով. «Եւ հաստատեալ կայցէ վիճակարանն 'ի մեզ Երկոտասան կողմանց, զի դպրեխաղացարանն նորոգեալ քահանայապետութեանդ ձերոյդ նահանգիդ — 'ի մերձ կայցէ անշարժ յեկեղեցւոջս Կեսարու»: Այնու Հայաստանեայց երկասիրութեան հեղինակն՝ այսպիսի կամակոր մեկնութիւն մի տուած է այդ խօսքերուն՝ յասելն, թէ «Ս. Ղևոնդիոսի առ Տրդատ թագաւորն գրած թղթոյն մէջ՝ ոչ Կեսարու Աթոռոյն գերիշխանութիւնն և ոչ իւր իրաւունքը Հայաստանի վերայ, այլ միայն բաւական կը սեպէ առաջարկել, որ Գրիգորի յաջորդները՝ իրենց նախորդին նման ձեռնադրութիւնը Կեսարիոյ աթոռէն առնուն, որպէս զի յաւերժական պահուի այդ մեծ դիպուածոյն յիշատակը»: Սակայն ըստ իս և ըստ ճշմարտութեան, պէտք է ըսել, թէ այս մեկնութիւնս բոլորովին օտար է 'ի բնագրէն. և թէ Տրդատայ պաշտօնական թղթոյն՝ այս պաշտօնական պատասխանոյս մէջ «հաստատեալ կայցէ վիճակարանն», ուրիշ բան չեն նշանակեր, բայց եթէ այս երկու ազգաց աշխարհական և եկեղեցական իշխանութեանց կողմէն կնքուած երրորդ դաշինք մի: Իսկ Օրմանեանի մէջ բերած մեկնութիւնն՝ ուղղակի կը վերաբերի միւս նախադասութեան, յորում կ'ըսուի. «Զի պարգևաբաշխութիւն նորոգեալ քահանայապետութեանդ՝ կացցէ անշարժ յեկեղեցւոջս Կեսարու». և այս վերջին նախադասութիւնս արգասիք համարելու է առաջնոյն, առանց շփոթելու ընդ իրեարս:

Երկրորդ պատճառն և հիմը Կեսարացւոց կողմանէ՝ Հայոց վերայ ունեցած իրաւասութեանն, եղան յամին 325 Նիկիոյ սուրբ ժողովոյն մէջ յաղագս բարեկարգութեան եկեղեցական վիճակաց և աթոռոց եղած որոշմունքներն և կանոնադրութիւնքը: Արդ, եկեղեցական պատմութեան մէջ իբր ընդհանուր ճշմարտութիւն ընդունուած է, թէ Նիկիոյ ժողովքէն յառաջ, Եկեղեցւոյ գէթ խաղաղական օրերուն մէջ, յԱռաքելոցմէ հաստատուած մի քանի Եկեղեցիներ, այսինքն է, Աղեքսանդրիոյ, Հռովմայ և Անտիոքայ՝ և Կեսարիոյ Պաղեստինացւոց Հայրապետութիւնքը կամ Պատրիարքութիւններն՝ արդէն գերագոյն իշխանութիւն և իրաւասութիւն ստացած էին և կը վարէին շրջակայ գաւառաց և նահանգաց վերայ: Այսպէս ևս առանց երկբայութեան է, թէ երեք ուրիշ բարձրաստիճան գլուխք կամ լաւ ևս հայրապետութիւնք կային 'ի Կեսարիա Կապադովկացւոց, յԵփեսոս և 'ի Հերակլիա Թրակացւոց: Բայց որովհետև յետ Կոստանդիանոսի դարձին կամ նոյնաժամանակ՝ մէկ կողմէն ուրիշ ազգեր և ժողովուրդք ևս դարձան 'ի քրիստոնէութիւն, յՆրևելս և յՆրևմուտս. իսկ միւս կողմէն ալ քաղաքային վիճակաց հետ 'ի միասին եկեղեցական վիճակք ևս փոփոխեցան, ուստի վէճերը դադրեցնելու համար հարկ եղաւ որ սուրբ ժողովն աթոռոց բարեկարգութիւններ հաստատէ: Ուստի այս բարեկարգութիւններս ըրած ժամանակ՝ երկու բան դիտեց. այսինքն է, նախ եկեղեցեաց կամ առաքելական աթոռոց մինչև այն ժամանակ շարունակուած սովո-

րութիւնն, որ իրաւասութիւն և օրէնք դարձած էր: Բ. Տէրութեանց և այն մայր քաղաքաց քաղաքական կացութիւնն՝ յորս կը գտնուէին հայրապետական աթոռք մասնական եկեղեցեաց: Այս բանս խիստ յայտնի է նոյն ժողովքին խօսքերէն [1]: Իսկ որովհետև մէկ կողմէն, թէ՛ ըստ հին քաղաքային վիճակագրութեան և թէ՛ յամին 325 (ինչպէս և յետոյ) Հայոց տէրութիւնն ստորակարգեալ կը համարուէր Հռովմէա–Բիւզանդական Կայսրութեան. իսկ միւս կողմէն ալ, ինչպէս տեսանք, Հայաստանեայք՝ իրենց առաջին հայրապետին (և նորա յաջորդաց) ծեռնադրութեան գործադրական սովորութեամբն և գրաւոր դաշամբք՝ Կեսարիոյ նախաթոռոյն իրաւասութիւնը ճանչցած էին. ուստի ըստ այնմ և որոշեց ժողովն որ շարունակուի: Սակայն Հայաստանեայց Հայրապետութիւնը կամ եկեղեցական աթոռըն ինչ պատճառներով որ ստորակարգեալ էր նախաթոռոյն Կեսարիոյ, նոյն կրկին պատճառաց համար գերիշխանութիւն կամ գերագոյն իրաւասութիւն ունէր իրեն (Հայոց) ստորակարգեալ Վրաց և Աղուանից աթոռոց վերայ:

Ցիրաւի, Դ դարու ծանրակշիռ հեղինակութեանց մին, այսինքն է, Գելասիոս Կիւզիկեցի եկեղեցական պատմագիրը՝ Նիկիոյ ժողովոյն պատմութեան Բ. գրոց Ի՛է գլխում՝ յայտնապէս կը հաստատէ Կեսարիոյ նախագահութիւնը նաև Հայոց Մեծաց վերայ, յասելն. «Ղևոնդիոս Կեսարիոյ Գամրաց, զարդ եկեղեցւոյն Աստուծոյ, ունէր իշխանութիւն եկեղեցեացն Գամրաց, Գաղատիոյ, Պոնտոսի, Պափղագոնիոյ, Պողեմոնականն Պոնտոսի, Հայոց Մեծաց և Փոքուն»: Օրմանեանը՝ ինքնահնար մեկնութեամբ Մեծ և Փոքր Հայք՝ առած է փոխանակ Առաջին և Երկրորդ Հայոց, ցուցանելու համար, թէ վերջինս միայն Պոնտոսի Եքսարքութեան նահանգներուն մէջ լինելով՝ Կեսարիոյ աթոռոյն իրաւասութեան տակն էր. իսկ Մեծ Հայք՝ ազատ էր անտի: Սակայն Գերպ. հեղինակն պէտք էր դիտել, իբրև պատմական և հանրածանօթ ճշմարտութիւն մի, թէ թէպէտև Տրայիանոսէն սկսեալ, երբ Փոքր Հայք Հռովմայեցւոց իշխանութեան ներքև գրաւեցաւ, մինչև Յուստինիանոս՝ երկուքի բաժնուած էր, այսինքն է, Առաջին և Երկրորդ. սակայն և այնպէս ոչ ոք 'ի պատմագրաց կամ յաշխարհագրաց Յունաց և Հռովմայեցւոց շփոթեց երբեք զանոնք Մեծին Հայոց հետ, այլ կամ ներքնական Արմենիա կը կոչէին և կամ Առաջին և Երկրորդ Արմէնիա: Արդ, այս բանիս վերայ տարակուսելն իսկ անտեղի է. զի Պտղոմէոսէն և Ստրաբոնէն (Գիրք. ԺԱ) սկսեալ՝ ամենքն ալ Մեծն Հայք (μεγάλη 'Αρμενία) ըսելով կը հասկնային միշտ Եփրատ գետոյն կամ Խաղտեաց արևե-

1. «Նախնեաց սովորութիւնք պահեսցին որպէս են յԵգիպտոս, 'ի Լիբիա և 'ի Պենտապօլիս, զի Աղեքսանդրիոյ եպիսկոպոսն ունիցի իշխանութիւն 'ի վերայ սոցա ամենեցուն, վասն զի և Հռովմայեցւոց եպիսկոպոսին այս սովորութիւն է. նոյնպէս և յԱնտիոք և յայլ ևս գաւառս (նահանգ կամ վիճակս) պահեսցին իշխանութիւնք և պատիւք և մեծութիւն իւրաքանչիւր եկեղեցեաց»: Կանոն, Զ. Ս. ժող. Նիկիոյ (Acta, II, 35, ըստ լատին և յունարէն բնագրին):

լեան կողմի երկիրն, որ կը ձգուի յարևելից մինչև Կասպից և Պարսկային ծովերն, և Կուր գետն 'ի հիւսիսոյ, և հարաւէն՝ զՄիջագետս Հայոց: Իսկ Փոքուն Հայոց սահմանքն և բաժանմունքը կը դնեն որիշ 'ի նմանէ: Սակայն այս բանիս ամենէն աւելի շօշափելի ապացոյցը կու տայ մեզ Նիկիոյ ժողովական սուրբ-Հարց և Հայրապետաց ցուցակը [1], յորում որոշակի կը յիշուի. «Արմենիակոն» կամ Ռըստակէս «Մեծին Հայոց»: Արդ, եթէ Մեծն Հայք՝ փոխանակ Առաջին անունք աստ, ըստ կարծեաց Օրմանեանի, այն ժամանակ Արիստակէս եղած պիտի լինէր Կեսարիոյ կամ Սեբաստիոյ և ոչ թէ Վաղարշապատու եպիսկոպոս: Դիտելու կէտ մի է և այս, զի այդ ցուցակին մէջ Փոքր Հայք երկիցս կը յիշատակուին, որ յայտնի ապացոյց է, թէ այդու կը հասկնային Առաջին և Երկրորդ Հայոց վիճակներն: Դարձեալ, Օրմանեան այդ Փոքր Հայոց կամ պոնտական վիճակները միայն ենթարկելով Կեսարիոյ հայրապետին գերիշխանութեանը, վերոյիշեալ մեկնութեամբ ջանացել է ջրել նաև Տեղեկագրոյ [2] և այլ վկայութիւններն, որոնք զՄեծն Հայս ևս կը դնեն Կեսարիոյ իրաւասութեան ներքև: Սակայն և այնպէս այն վկայութիւններն իրենց ուժի մէջ կը մնան. որովհետև պոնտական այդ կրկին վիճակներն՝ ոչ միայն լեզուով և ծիսակատարութեամբ արդէն 'ի վաղուց յոյն եկեղւոյն հետ մի մարմին կը կազմէին, այլ նոյն իսկ քաղաքականօրէն առնելով՝ հռովմէական տէրութեան ներքոյ անկեալ էին, ուստի նոցա մասին դժուարութիւն չկար. այլ Հայոց Մեծաց վերայ էր խօսքը, որուն թէպէտև աշխարհագրական սահմաններն՝ որոշ էին 'ի պոնտական սահմանաց, ինչպէս և քաղաքային վարչութիւնն անկախ էր ընդհանրապէս 'ի հռովմէական վարչութենէ. սակայն ըստ եկեղեցական վիճակագրութեան և իրաւասութեան, պոնտական թեմի աշխարհաց կամ վիճակաց մէջ կը թուէր: Եւ այս բանիս պէտք չէ բնաւ զարմանալ և ընդդիմադրել, զի Վրաց և Աղուանից կաթողիկոսութիւնքը կամ եկեղեցական վիճակներն՝ արդէն իսկ այսպիսի եղելութեան անժխտելի ապացոյցը տուած են, որոնք թէև քաղաքական վարչութեամբ և աշխարհագրական սահմանօք զատեալ էին 'ի Հայոց, բայց ըստ եկեղեցական վիճակագրութեան՝ անդստին Հայաստանեայց կաթողիկոսի իրաւասութեան ներքև կը գտնուէին: Եւ յիրաւի, յամին 372, ուղղափառ հաւատոյ մասին առ

1. Այս ցուցակս գրուած է, Ա. յունարէն լեզուով, առ Յակովբայ Մորէլի, Bibliotheca manuscripta græca et latina, I, p. 223–233. Bassani, 1802: Բ. լատիներէն առ Փիլ. Լաբբէի Sacrosanctis Conciliis, II, col. 50–54: Գ. ղպտիարէն և լատիներէն. առ Յ. Մ. Պիտրայ Spicilegio Solesmensi, I, 516–536, և ղպտիարէն միայն՝ առ Ե. Ռըվիյու, Le Concile de Nicée, Paris, 1881, p. 17–22: Դ. Ասորերէն՝ առ Հառիս Կովպէրի, Analectas Nicænis, p. 5 et seq.: Ե. Ասորերէն և հայերէն, և վերջինս ասորերէնէ թարգմանուած կ'երևի:

2. Notit. Dignitatum. Or. c. I, 2 et 23. — Boeckhing, ad Notit. — Cod. Theod. 7, 1, 15 8, 5, 57, 12, 6, 21 § 1 et 15 2 et Cod. Justinian. 8, 10, 10. — Թէոդոսի Բ. և Վաղինտիանոսի Nouvell. Constitut. a. 441, tit 5, et § 1.

*Արևմտեայս գրուած Ս. Բարսղի թղթոյն (ՂԱ) մէջ կը գտնուին 32 եպիսկոպոսաց ձեռնագրութիւնք, որոց 14ը կը վերաբերէին Կապա-դովկիացւոց կամ Կեսարիոյ արքեպիսկոպոսապետական թեմին, որոնց առանձին թէմերն գտաւ և որոշեց Տիլլըմոն* (T. IX, p. 172), *'ի միւս որոց կը յիշուին երկու եպիսկոպոսք 'ի Փոքուն Հայոց՝ և* Ἰω-σάχης *Յովհէն՝ ի Հայոց Մեծաց: Արդ, եթէ Ցուսիկս այս՝ է Փաւստո-սէն յիշուած եպիսկոպոսն կամ Շահակն, այնուհետև կը հաստատ-մանայ և այն, զոր աւանդեց այլուր Փաւստոս:*

*Երկրորդ, Մ. Խորենացի՝ Պատմութեան Գ. գրոց ԾԴ գլխուն մէջ խօսելով զվարդապետութենէն Մեսրովբայ, այսպէս կ'ըսէ. «Եւ ու-սոյց զընտ. կողմանս բաժնոյն Պարսից՝ բայց 'ի Յունաց մասէն, որք ընդ յիշխանութեանն՝ տուգանեցան վճարել յոյնաց կայսեր, վարել յունական դպրութեամբ և ոչ ասորւով»: Արդ, քաջ դիտե-լու ենք, զի Մովսէս իւր ժամանակի Պարսից բաժնի Հայոց ազա-տութեան միակ պատճառը կը դնէ զքաղաքական բաժանումն կամ տիրապետութիւնն 'ի կողմանէ Պարսից. իսկ Յունաց բաժնի Հայոց՝ Կեսարիոյ աթոռոյն վիճակելուն իբրև միակ պատճառ կը դնէ զե-կեղեցական իրաւասութիւնը կամ զՅիշխանութիւնն: Ուրեմն ասկէ կը հետևի, թէ քանի որ այդ քաղաքական բաժանումն և տիրա-պետութիւնը տեղի ունեցած չէր Պարսից կողմանէ, ըստ եկեղեցա-կան վիճակագրութեան կը ճանչնային բոլոր Հայք՝ Կեսարիոյ աթո-ռոյն գերիշխանութիւնը: Դիտելու ենք դարձեալ և՛ զայս, զի Յունա-կան բաժինը կը կազմէին ոչ միայն Արևմտեան և Երկրորդ Հայք, այլ մինչև յԱյրարատ նահանգ տարածուած երկիրներն, ըստ վկայու-թեան Մովսիսի* [1] *Խորենացւոյ:*

*Երրորդ պատճառն ձեռնադրութիւն առնլոյ Հայոց հայրապետին՝ 'ի Կեսարիոյ եպիսկոպոսապետէն, և սորայս իրաւասութեանն 'ի վե-րայ Հայաստանեայց՝ էր այս, ըստ Մեսր. Երիցու* [2], *զի Կեսարիա 'ի սկզբան անդ Արշակունի թագաւորութեան, որպէս և յառաջ, ընդ իշխանութեամբ Հայոց եղած էր, և Թադէոս անդ հաստատեաց նախ*

1. *Զի Գ. Գրոց ԽԲ. գլխում խօսելով զբաժանմանէն Հայաստանի յա-ւուրս Շապհոյ և Արկադեայ, այսպէս կ'ըսէ. «Վասն որոյ հաւանեալ՝ կամաւ յանձն առին բաժանել զՄիջագետս և զՀայոց աշխարհս կրկին սահմանադրութեամբ: Վասն որոյ թողեալ Արշակայ զբուն թագաւո-րութիւն հարց իւրոց զԱյրարատ և զամենայն մասն բաժնին Պարսից, գնաց տիրել արևմտեայ կողմանց աշխարհիս մերոյ, որ 'ի մասն բաժ-նին Յունաց էր»: ԽԴ Գլխում՝ զՍպեր և զՏայս՝ Արշակայ և Յունաց կու տայ. ԽԶ. գլխոյն մէջ կը ծանուցանէ, թէ Վանանդ գաւառն՝ Խոսրովու սահման էր, և թէ Արշակ արշաւեց անդր և եւ պատերազմ 'ի դաշ-տին Երևել:*

2. *«Բայց ասացից զպատճառս ձեռնադրութիւն առնլոյ Հայոց 'ի Կեսարացւոց. զի էր հանապազ լեալ Կեսարիա ընդ Հայոց իշխանու-թեամբ, և մտեալ անդ Առաքելոյն Թադէոսի լուսաւորեաց զնոսա և ձեռնադրեաց զմի ոմն յաշակերտաց իւրոց քահանայ և եպիսկոպոս, որում անուն էր Թէոփիլոս. զոր եթող առաջնորդ նոցա և ինքն գնաց 'ի Հայս: Այնր աղագաւ առնուին ձեռնադրութիւն Հայք 'ի Կեսարիա, մինչև 'ի ժողովն Քաղկեդոնի»: Սոփ. Հայկ. հտ. Զ, էջ 31;*

զաթոռ իւր, և ձեռնադրելով փոխանակ իւր զԹէոփիլոս, ինքն եկաւ 'ի Հայս: Սակայն, ըստ իս, պէտք է ասել, թէ այս չէ բուն պատճառ այնպիսի մի իրողութեան, այլ նոյն ինքն կատարուած իրողութեան պարզ յառաջբերութիւնն: Իսկ բուն պատճառն է հետևեալն, որովհետև Թադէոս Առաքելոյն 'ի Մեծ Հայս (յԱրտազ) հաստատուած եպիսկոպոսութիւնը, ինչպէս յառաջագոյն տեսանք նախագրիգորեան եպիսկոպոսաց ցուցակէն, հազիւ կը հասնի ցամ Տեառն 120. այնպէս որ Գրիգորի ձեռնադրութեան ժամանակամիջոցին՝ արդէն իսկ բոլորովին հատել էր նորա յաջորդութիւնն և յիշատակն հազիւ մնացել էր: Այսպէս էր յԵդեսիա հաստատուած աթոռն յամին 280: Իսկ Կեսարիոյ մէջ Առաքելոյս հաստատած եպիսկոպոսութիւնն՝ ոչ միայն անընդհատ յաջորդութեամբ կը շարունակուէր նաև յամին 326, այլ նոյն իսկ, ըստ հաւատարիմ վկայութեան Եւսեբիոսի [1], Թէոփիլոսի ժամանակէն 'ի վեր ունէր զնախագահութիւն 'ի վերայ շրջակայ վիճակաց: Այս պատճառաւ ուրեմն Լուսաւորիչն Հայոց և Հայք՝ գեղեցիկ խորհուրդ 'ի մէջ առին, Թադէոսի նախաթոռէն դարձեալ առնուլ զձեռնադրութիւն, և այնու սկիզբն տալ Թադէոսեան ընդհատեալ եպիսկոպոսութեանն. և այսու միայն կարող էին յորջորջել զաթոռն Հայաստանեայց՝ առաքելական կամ Թադէոսեան և իրօք յորջորջեցին, Զենոբէն սկսեալ, տոհմային մատենագիրք [2] առ հասարակ: Արդ, 'ի նկատի ունելով այս ճշմարտութիւնս, այս ինքն է, նախ զընդհատութիւն և ապա զնորոգութիւն եպիսկոպոսութեանն 'ի Հայս, չէ մարթ ինքնագլուխ անուանել զայն, առանց մեծապէս վնասելու և ստուերածս ածելոյ

1. Հեղինակս կը պատմէ իւր Եկեղ. Պատմութեան Ե. Դպրութեան մէջ, թէ երբ Զատկի խնդրոյն համար ժողով գումարեցաւ յԵրուսաղէմ (70–90), ուր էին ամենայն եպիսկոպոսք վիճակակալ Աթոռոց Արևելից և Արևմտից, անդէն կը յարէ, թէ «Որոց գահերէց նստէին Թէոփիլոս եպիսկոպոս Եկեղեցւոյն Կեսարիոյ և Նարկիսոս Երուսաղեմացւոց»: Արդ, Թէոփիլոսին՝ չգիտեմ հնութեա՞ն թէ անուանակոչութեան (Աստուածասէր) պատճառաւ՝ գոյութիւնը տարակուսի տակ ձգեցին արդի գիտնականներէն ոմանք. սակայն Եւսեբիոս կը վկայէ այդ տեղում, թէ «Կայ մինչև ցայսօր ժամանակի գիր այնոցիկ, որ ժողովեցան յայնժամ 'ի Պաղեստին»:

2. Նշանաւոր են առ այս Մեծին Վարդանայ Ս. Գրիգորի Ներբողենւոյն մէջ բերուած յետագայ խօսքերն, զորս ես իսկ կ'ախորժեմ աստ մէջ բերել. «Գերճ և պայծառ նախարարօք և արքունական կառօք 'ի Կեսարիա երթեալ 'ի մայրաքաղաքն Կապադովկացւոց և մայրն հիմնարկութեան՝ 'ի Հայաստանեայցս 'ի Թադէէ Առաքելոյ, ուր արար զառաջին ձեռնադրութիւնն և զհիմնարկութիւն Եկեղեցւոյ: Երթեալ առնու զառաքելական պատիւն՝ յառաքելական հօրէն Ղևոնդեայ, զի իցէ իրքն կարգաւոր և աստուածագործ հրաշ: Քանզի առ շիրմօքն նորա յղացաւ և էառ սկիզբն գոյութեան, 'ի նորին խնամոց ածաւ 'ի տեղի առաջին շնորհաբաշխութեան նորա. և ընկալաւ 'ի նմանէ զսկիզբն գոյութեան ընդ Աստուծոյ: Առաջին աթոռ, ուր զսուրբն Թէոփիլոս՝ եպիսկոպոս ձեռնադրեաց սուրբն Թադէոս. և 'ի նոյն աթոռոյ, ուր ընկալաւ զշնորհըս աւազանին 'ի Կեսարիա, այժմ էառ զամենակատար ծնունդն, և զբովանդակ շնորհս առաքելութեան…: Զի հասարակ ցնծացեն սերմանողքն առաջին՝ Բարդողիմէոս և Թադէոս, և վերջին հնձողքն և շտեմա‿

առաքելականութեան նորա, որ կայացած է Թադէոսի Առաքելոյն [illegible] շարունակութեան և լուր նախաթոռոյն հետ ունեցած իրաւասական և կրօնական յարաբերութեանը մէջ: Յիրաւի, մինչև ցհինգերորդ դար՞ քանի որ այս կրկին յարաբերութիւնքս սերտ էին, Յոյնք ոչ երբէք յանդգնեցան զհայս հերձեալ անուանել և ոչ այլ նուիրապետութեան մասին վէճեր յարուցանել: Սակայն որովհետև եղան և են, որք այս կարծիքս՝ այսինքն է, ինքնագլխութիւն Հայաստանեայց աթոռոյն պաշտպանեցին, կարծելով մեծ և նուիրական ծառայութիւններ մատուցանել նմա, ուստի տեսնենք, թէ ի՞նչ պարագաներով և ի՞նչ հիման վերայ:

Առ Յովհաննու Կաթողիկոսի, գլ. ԺԲ, կ՚աւանդուի, թէ Դ դարուն և յետ ձեռնադրութեան մեծին Ներսիսի՝ «Թագաւորն Արշակ և նախարարութիւնք Հայոց համարձակութիւն առեալ կացուցին ՚ի Պատրիարքութիւն տանս Թորգոմայ՝ զՄեծն Ներսէս, փաստս իրաւախոհս ըստ արժանին ՚ի մէջ առեալ զսուրբ Առաքեալսն, զԲարդուղիմէոս և զԹադէոս, որք Ասքանազեան ազինս վիճակեցան»:

Հեղինակիս մէջ բերած աւանդութիւնն և փաստն իրաւախոհ իսկ համարողաց՝ պէտք է ըսել, թէ պատմականէն աւելի ազգասիրական պահանջ մի է պարզապէս և ոչ աւելի: Յիրաւի, Փաւստոս Բուզանդացի Դ. Դպրութեան Դ. գլխում երկու ժողով կը յիշէ առ Արշակաւ, յորոց մին եղաւ ՚ի Վաղարշապատ, թագաւորին և Հայաստանեայց կողմանէ, ընտրել զոք ՚ի տանէն Գրիգորի կաթողիկոս, ըստ հնաւանդ սովորութեան Հայաստանեայց, յորում և ընտրեցաւ մեծն Ներսէս և ղրկուեցաւ ՚ի Կեսարիա: Իսկ միւսն եղաւ յԱշտիշատ Տարօնոյ՝ հրամանաւ Ներսիսի և յետ ձեռնադրութեան նորա, ուր ժողովեցան եպիսկոպոսք Հայոց, ըստ գրելոյ Փաւստոսի. բայց «Առ ՚ի կատարել անդ զաշխարհական կարգս եկեղեցւոյն և ժողովն հաւատոցն հաւասարութեան: Յայնմ՝ ժամանակի կարգեցին կանոնեցին և արարին զամենայն ժողովուրդս երկրին Հայոց՝ իբրև կարգ միաբանութեան վանականաց համաշխարհի, բայց միայն յամուսնութենէ օրինացն»: Արդ, Յոհան կաթողիկոսի վերոյիշեալ վկայութիւնը՝ Փաւստոսի այս տեղւոյս սխալ հասկացողութեանը վերայ հաստատուած է: Սակայն այս տեղւոյս մէջ խօսքը ոչ պատրիարքութեան վերայ է և ոչ այլ եկեղեցական նուիրապետութեան. այլ աշխարհական բարեկարգութեանց, վանական ընդհանուր հիմնարկութեան և նորա կալուածոց հաստատութեանը [1] համար էր,

բանողքն՝ Գրիգորիոս և որդիքն իւր քաջազօտիք»: Սոփ. հայկ., հտ. Ե էջ 49–50:

Այս է ահա ԺԳ դարու համբաւաւոր վարդապետին, մանաւանդ թէ ընդհանուր համոզումն, յորմէ այլազգ կը խորհին յարդի վարդապետաց ոմանք. սակայն ես չեմ տարակուսիր բնաւ, թէ Վարդանայ խօսքերն ոչինչ ընդհատ ՚ի պիրճախօսութենէ՝ են նոյնպէս և պատմական:

1. Փաւստոսի այս տեղիս, պատմական քննութեամբք հանդերձ գեղեցիկ կերպով բարգաւաճել է արդէն ազգասէր բանասէրն Րաֆֆի, իւր «Սամուէլ» վիպասանութեան մէջ, առանձին գլխով մի:

նպատակաւ օգնելու թշուառաց և անտերունչ մնացելոց: Յիրաւի՝ այս եղելութիւնս այլուր իսկ Բուզանդացին քաջ կը բացատրէ, երբ Ներսիսի բարենորոգութիւններն մի առ մի կը թուէ: Մովսէս Խորենացին [1] և Մեսրովբ Երէց ևս՝ Փաւստոսի այս տեղիս այսպէս հասկացած են և մէջ կը բերեն, առանց պատրիարքական գերիշխանութեան կամ անկախութեան յիշատակութիւնն ընելու: Մանաւանդ թէ երկաքանչիւրն իսկ 'ի հեղինակցս՝ կը հաստատեն, թէ ցժողովն Քաղկեդոնի՝ յաթոռոյն Կեսարիոյ կ'առնուին հայրապետք Հայոց զձեռնադրութիւն: Մեսրովբայ վկայութիւնն արդէն լսեցինք յառաջագոյն և խիստ յայտնի է. իսկ Մովսիսին վերջէն պիտի տեսնենք:

Երկրորդ, եթէ ամէն Առաքելոցմէ հաստատուած եկեղեցիներն և եպիսկոպոսութիւնքը բաւական փաստեր լինէին անկախ պատրիարքութեանց և նախագահութեանց, այն ժամանակ հարիւրաւոր պատրիարքութիւններ և նախագահ աթոռներ եղած պէտք է որ լինէին: Սակայն Նիկիոյ, Եփեսոսի և Քաղկեդոնի ընդհանրական և սուրբ ժողովներն, և նոցա հետ մերքս իսկ և նա ինքն Գր. Տաթևացի, չորիս ևեթ կը ճանչնան Պատրիարքութիւնս և նոյնչափ ևս զահերէց արքեպիսկոպոսութիւնս կամ մետրապօլտութիւնս: Այնպէս որ Երուսաղեմայ ('ի Տեառնեղբօրէն հաստատուած) նախաթոռոյն պարտուպատշաճ մեծարանքն մատուցանելով հանդերձ՝ Նիկիոյ սուրբ ժողովն [2], կ'ենթարկէ զեպիսկոպոսն նորա իշխանութեան եպիսկոպոսապետին իւրոյ կամ Մետրապօլտին Կեսարիոյ Պաղեստինացւոց. և այս Եփեսոսի Ս. Ժողովոյ Ե. Նիստի գործերէն իսկ լաւ կը տեսնուի:

Յովհ. կաթողիկոսի կարծեաց անհաստատութիւնը դեռ աւելի յայտնի կը լինի՝ յէ դարում լուսափայլ հանճարով և սրբութեամբ ծաղկող ծանրակշիռ հեղինակի մի, այսինքն է, Մաքենոցի վանահօր Սողոմոնի մէկ հատուածովը, զոր 'ի մէջ կը բերեն Ստեփանոս Սիւնեցին [3] և Մ. Կաղանկատուացի [4], խօսելով Յունաց՝ Հայոց հետ ունեցած մեծամեծ վիճաբանութեանցը վերայ, որք եղեն առ Մար-

1. Պատմ, Գ. գլ. Ի այսպէս կը խօսի զՆերսիսէ. «Ժողով արարեալ եպիսկոպոսաց և համօրէն աշխարհականօք, կանոնական սահմանադրութեամբ հաստատեաց զողորմածութիւն, խլելով և զանգթութեան արմատ, որ բնաբար սովորութեամբ էր յերկրիս մերում»:

2. Կանոն Է. «Եպիսկոպոսն Երուսաղեմի, ըստ առաջին սովորութեան, երևելի պատուով մեծարեսցի. բայց պահեալ զկարգ պատշաճ իշխանութեան եպիսկոպոսապետին իւրոյ»: Նոյնը տես և՛ առ Պիտրայի Analecta sacra Spicilegio Solesmensi. T. IV, p. 456. Paris, 1883: Յայտնի չէ, թէ այս եպիսկոպոսապետս, որուն կ'ենթարկուի Երուսաղեմայն՝ Անտիոքա՞յն իցէ թէ այլոյ եկեղեցւոյ: Հին ձեռագիր օրինակք ինչ, յառաջ քան զկանոնս անմիջապէս կը յիշեն զԵկեղեցին Հռոմայ: Այսպէս հասկացել է Շնորհալի (յԱ. Թուղթ առ կայսրն Մանուէլ), Մխ. Գօշ 'ի Դատաստանագ. գլ. ԾՁ. և Մխիթար կաթողիկոս, Ժող. Սսոյ:

3. Պատմ. տանն Սիսական. գլ. ԻԵ:

4. Պատմ. Աղուանից, Բ. գլ. ԽԸ:

կիանոսիւ 'ի Կ. Պօլիս, և յետոյ 'ի Թէոդոսուպօլիս գումարուած ժողովոց մէջ, եկեղեցական խնդրոց և հաւատոյ դաւանութեան մասին: Աստ, այսպէս կը գրէր վերոյիշեալն Սողոմոն. «Ոչ պարտեցան Հայք 'ի հաւատոյ մասին, այլ այսուիկ եղեն յոյժ պարտեալք, զի ասացին Յոյնք, եթէ կարգաւորեաց Աստուած զեկեղեցի իւր դասուք որպէս 'ի վեր անդր երկնայինքն՝ նոյնպէս գահակալեցան ներքին խորանիս Պատրիարքք, որ է հայրապետ և արքեպիսկոպոս, որ կոչին եպիսկոպոսապետք, մետրապօլիտք և եպիսկոպոսք, քահանայք և սարկաւագունք, կիսասարկաւագք և ընթերցողք և դպիրք. այսոքիկ ամենայն միաբանեալ՝ ապա կարեն ձեռնադրել զհայրապետն, և հայրապետն զամենեսեան: Արդ, եթէ ողջմտութեամբ հաւատայք՝ խոստովան լերուք, եթէ ո՞վ է Պատրիարքն ձեր, զի չորք միայն կացին 'ի վերայ երկրի. Աղեքսանդրին՝ Մարկոսի աթոռն, Անտիոքայն՝ Մատթէոսին, Հռովմայն՝ Ղուկասուն, Եփեսոսին՝ Յովհաննուն, ըստ չորեքթեւեան քերովբէից, ըստ քառավտակ գետոցն դրախտին, ըստ չորեքկերպեան կենդանեացն, ըստ չորից Աւետարանչացն, ըստ չորից Մովսիսական օրինացն, զի Յերկրորդումն օրինացն որիշ հաւաքի: Եւ մեք ամենեցուն հնազանդիմք. հնազանդեցարուք դուք միում 'ի նոցանէն կամ ամենեցուն, որ մի հաւատ լինիմք. քանզի մերն 'ի Կեսարիոյ եպիսկոպոսապետէն միայն ձեռնադրեցաւ Ս. Գրիգոր և յետ նորա մինչև ցայսօր. ապա եթէ այլ ոք եկեղեցի ուղղափառ էք զատ յայսցանէ, ցուցէք և զպատրիարքն՝ ընդ որ դասի արքեպիսկոպոսապետն ձեր, որ մինչև ցայսօր ընդ մեօք էր: Ապա եթէ պատրիարք ոչ ունիք և այլ կղերիկոս եկեղեցւոյ, հերձուածողք էք ...: Այնու իսկ անպատասխանիք՝ պարտեալք լինէին Հայք, զի այնպէս դրոշմեալ վարէր Եկեղեցի»:

Արդ, եթէ մեծն Ներսիսէն սկսեալ մինչև ցԳաբկէն կամ Աբրահամ ունեցած էին Հայք իրենց անկախ պատրիարքներն, և եթէ Յովհ. կաթողիկոսէն յիշուած փաստս իրաւախոհս առ ձեռն պատրաստ ունէին նոքա, ինչո՞ւ համար մէջ տեղ չբերին՝ ապացուցանել զայն, այլ եղեն անպատասխանիք: Արդ, Սողոմոնի այս վկայութեամբս կը ջրի և այն մտացածին կարծիքը, թէ Նիկիոյ ժողովքէն յառաջ և յետոյ, ինչպէս Կեսարիոյ և Հերակլիոյ՝ այսպէս ևս Հայոց և միւս գահերէց աթոռները՝ պատրիարքական աթոռն՚ց չէին հնազանդիլ, այլ էին գլխովին անկախ. զի աստ Յոյնք կը ծանուցանեն Հայոց, թէ իրենք կը հնազանդին չորից տիեզերական Պատրիարքութեանց. մանաւանդ թէ Տաթևացին իսկ իւր գրուածոց մէջ կը դաւանի զայս. իսկ Սարդիկէի ժողովոյն Դ և Ե կանոնները՝ զրկեալ կամ ամբաստանեալ եպիսկոպոսաց դատաստանը՝ միայն Հռովմայ Աթոռոյն կը վերապահեն:

Արդ, իրն սոյսպէս պարզելէն յետոյ, գանք ուղղակի 'ի լուծումն կնճռոտ խնդրոյս: Յայս վայր մէջ բերուած վկայութիւններէն և ամբողջ արտաքին և տոհմային պատմագրութեան ընթացքէն՝ բացայայտ և քաջ կը տեսնուի, թէ արդարև Արշակայ և Պապայ ժամանակ իսկ եղեն ընդհատութիւնք եկեղեցական յարաբերութեանց. բայց այս երևոյթս յառաջ բերին գլխովին քաղաքական՝ քան թէ

եկեղեցական դէպք: Արշակ թշնամանալով ընդ Վաղէսի, և Պապ՝ ընդ Թէոդոսի, կենդանոյն աթոռընկէց ըրին իրենց օրինաւոր հովիւքն և անոնց տեղ կարգեցին, ըստ կամս իւրեանց և հակառակ կամաց եպիսկոպոսացն Հայաստանեայց, արս անարժանս. ուստի այսպիսի թշնամական պարագայից մէջ՝ բնականապէս չէին կարող այդ եպիսկոպոսներն յուղարկել 'ի Կեսարիա կամ 'ի Յոյնս. զի եթէ առաքէին ևս՝ ոչ ոք պիտի ձեռնադրէր զնոսա, զի ապօրինի էր ընտրութիւն նոցա: Ահաւասիկ առաջին և կարճեցեալ ազատութիւնն եպիսկոպոսապետացն Հայոց, որք յաջորդեցին Ներսիսի՝ ցմեծն Սահակ: Ազատութիւն մի, որ ոչ ընդհանուր եկեղեցական իրաւասութեամբ և ժողովով իւր ծագումն ստացաւ, և ոչ այլ օրինաւոր կերպով շարունակեցաւ: Երկրորդ ազատութիւնը կամ անկախութիւնն եղաւ այն ժամանակամիջոցին, երբ Հայաստանի մէկ մասն եղաւ բաժին արքայից արքային, իսկ միւսը՝ կայսերն Յունաց: Արդ, մեծին Սահակայ ընտրութիւնն, որ եղաւ այս դէպքէս վերջ և Պարսից բաժնին մէջ, քաղաքական պատճառիս համար Հայաստանը չէր կրնար[1] իւր նորընտիր կաթողիկոսն յուղարկել 'ի Կեսարիա, նման առաջնոցն: Իսկ Բրքիշոյ և Սուրմակ՝ աւելի արքայից արքային ստրուկներ էին, ըստ ասելոյ Մովսիսի, քան թէ օրինաւոր յաջորդք Սահակայ: Այս ժամանակի Հայաստանեայց եկեղեցական պատմութեան այս սև կէտերս՝ սեաւ քօղի տակ ծածկելու, քան թէ յայտնելու արժանի են: Ուստի եկեղեցական այս ազատութիւնս իսկ հանգոյն առաջնոյն քաղաքական բռնակալութենէ, քան թէ եկեղեցական իրաւասութենէ ծագեցաւ: Սահակայ մահուամբ՝ հայրապետական իշխանութիւնն ևս հանգոյն թագաւորականին դատարկացաւ. Յովսէփ եպիսկոպոսն՝ էր պարզապէս տեղապահ կաթողիկոսական աթոռոյն և ոչ կաթողիկոս: Այս բանս խիստ յայտնի

1 Թէպէտև արդի մատենագիրք՝ Օրմանեանի հետ իբրև հաստատ իրողութիւն կը համարին Սահակայ ձեռնադրութիւնն՝ յեպիսկոպոսաց Հայոց. սակայն դիտելու ենք, որ ոչ ոք 'ի պատմագրաց կը յիշէ այդպիսի ձեռնադրութիւն մի: Մովսէս, Գ. գլ. ԽԹ. այսչափս կ'ըսէ, թէ յետ մահուն Ասպուրակէսի «Ի տեղի նորա յաջորդէ Խոսրով՝ զՍահակ որդի մեծին Ներսիսի»: Իսկ մի և նոյն գրոց Ծ. գլխում այնպիսի նոր պարագայներ կը յայտնէ, որք կը թուին հաստատել, թէ Սահակ ևս 'ի Յունաց էառ զձեռնադրութիւն կաթողիկոսութեան. այսինքն է. մէկ կողմէն կը ծանուցանէ, թէ Խոսրով խնդրեաց յԱրկադեայ՝ զՀայս Յունաց բաժնին. իսկ միւս կողմէն, թէ Շապուհ զսուրբն Սահակ իւր աթոռէն վար ձգեց. «Բարկանալով ընդ Խոսրովայ 'ի բարեկամանալն անձամբ Արկադեայ և յանհրամանն կարգելն յեպիսկոպոսութիւն զմեծն Սահակ»: Իրաւցնէ, զայս կը ցուցնեն նաև Սողոմոնի, Մեսրովբայ Երիցու և Վարդանայ վկայութիւնքը, թէ կաթողիկոսք Հայոց՝ մինչև ցժողովն Քաղկեդոնի՝ 'ի Կեսարիոյ կ'առնուին զձեռնադրութիւնն. որոնց քաջ կը միաբանին նաև յարտաքնոց՝ Փօտ, 'ի թղթին առ Զաքարիա կաթողիկոս, և Եւթիմիոս, Panopla, Pars 3 tit. 20. և մանաւանդ Սահակայ ժամանակի բարեկամական և սերտ յարաբերութիւնքն ընդ եպիսկոպոսապետին Յունաց՝ զայս կը քարոզեն մեզ անտարակոյս:

կը տեսնուի առ Եղիշէի և առ Մ. Խորենացւոյ [1], Գ. գլ. ԿԵ: Սակայն Վարդանանց պատերազմով և սրբոց Ղևոնդեանց մահուամբը՝ Հայաստան այնպիսի խղճալի դիրքի մէջ էր, զի Մովսէս՝ զինքն անբաւական համարելով ողբալ զայն՝ զԾրեմիա կը կոչէ յօգնս: Այսպիսի խառնաշփոթ ժամանակի մէջ հանդիպեցաւ Քաղկեդոնի ընդհանուր ժողովն, 666 եպիսկոպոսաց, որոնց նշանաւորագոյն մասն էին զոյգ ընդ Յոբնաղայ այն սուրբ հայրապետքը, որք Եփեսոսի ժողովոյն մէջ պաշտպանեցին զաստուածային բնութիւնն Բանին՝ միաւորեալ անբաժան և անշփոթ կերպով 'ի Քրիստոս, ընդդէմ Նեստորի. իսկ այժմ եկած էին նոյնպէս հաստատել և զբնութիւն մարդկային միաւորեալ 'ի մի անձն Քրիստոսի Տեառն մերոյ և մնացեալ անշփոթ: Արդ, գրգռութեամբ Ասորեաց ոմանց՝ մէկ կողմէն, իսկ միւս կողմէն ալ Զենոնի և Անաստասայ կայսերաց գայթոտ ընթացիւքը՝ Հայոց մէջ ևս այլ ընդ այլոյ բանիւք որոմներ ցանուեցան և գրգռեցան հոգիք եկեղեցականաց: Այսպէս ուրեմն վերոյիշեալ թագաւորաց ժամանակի քաղաքական դիպօք սկսած բաժանումն Հայոց 'ի Յունաց, այս ժամանակս կրօնականի փոխուեցաւ: Առիթ մի կը պակսէր Հայոց ինքնագլուխ լինելու, զի իրաւասութենէ զատ՝ հաւատոյ խնդիրն ևս ուծացոյց զնոսա 'ի միմեանց: Այս առիթս տուաւ Յուստինիանոս, որ իւր ժամանակի քաղաքական աշխարհական և եղեղեցական պահանջմանց համեմատ՝ նախաթոռոց ևս փոփոխութիւններ ըրաւ, զորս այսպէս կը ներկայացնէ մեզ վերոյիշեալ մեծանուն Սոլոմոն, Մաքենոցաց Հայրն. « Իսկ 'ի թագաւորելն Յուստինիանոսի ժողովեալ զմեծամեծ աշխարհակալս և զսուրբ Հարս՝ հրաման խնդրէ և նոքօք հանդերձ փոխէ զնշխարս և զաթոռ Ս. Յովհաննու Աւետարանչի յԵփեսոսէ 'ի Կ. Պօլիս, և հաստատէ անդ աթոռ հայրապետական. նոյնպէս և Մատթէոսին փոխէ յԱնտիոքայ՝ յԵրուսաղէմ, ասէ. Զի քաղաք է մեծի արքային: Յայնժամ շարժեցան ամենայն մեծամեծքն և իշխեցողք, և ուր Առաքեալ էր վախճանեալ՝ զամենեցուն անուն ընդհանրականի օրէնքն և պատրիարք խոստովանեցին: Անդանօր ապա և Մերոյս Բերրոա բան 'ի բերան, յետ շնորհ Նոյա ծնելոյն: Եւ զՀայս Պարսիկք և Յոյնք բաժանեալ էին. և Տէր Մովսէս էր յաթոռ Ս. Գրիգորի 'ի Դւնի, և 'ի կողմն Յունաց հակառակ նմա նստուցին զՅովհան ոմն մերձ առ նա »:

Արդ, այս տեղւոյս հարազատութեան մասին չէ մարթ տարակուսիլ և կամ ըսել, թէ 'ի Քաղկեդոնականաց ձեռք խառնուած ըլլայ, զի կը գտնուի առ Մ. Կաղանկատուացւոյ, որ այլուր ևս հակաքաղկեդոնեան տեղեր կը պարունակէ, և նորա հրատարակողն ևս հակաքաղկեդոնեան ոմն լինելով՝ բնաւ տարակուսած չէ: Ուրեմն իրաւամբ պէտք է ըսել, թէ այս է բուն ժամանակակէտ Հայաստանեայց հայրապետութեան ինքնագլխութեանը, յորում աշխարհական իշխանաց հետ՝ եկեղեցական դասն ևս կը զուգընթանայ:

1 « Իսկ զաթոռ եպիսկոպոսապետութեանն տեղապահութեամբ յաջորդեաց հրամանաւ երանելւոյն Մեսրովբայ՝ նորին աշակերտ Յովսէփ քահանայ 'ի Վայոց ձորոյ, 'ի Խողոցիմ գեղջէ »:

Յուստինիանոսի ըրածն՝ հաւանութեամբ համագումար ժողովոց նախաթոռ եպիսկոպոսաց, և փոխադրութեամբ պատրիարքական աթոռներուն՝ յինքեան հասկանալի բան է, և սոքա էին բաւական պատճառք օրինաւոր պատրիարքութիւններ լինելու 'ի Կ. Պօլիս և յԵրուսաղէմ. ինչպէս եղաւ երբեմն Լուսաւորչայ աթոռն 'ի Սիս, 'ի Հռոմկլայ և այլուր: Սակայն Հայոց այդ պատրիարքական աթոռոյ հաստատութիւնն՝ առանց ընդհանուր որոշողութեան և հեղինակութեան Եկեղեցեաց՝ անհասկանալի կը մնայ: Մանաւանդ թէ վերոյիշեալ անկողմնասէր հեղինակն ուրիշ այլ պատճառ չի ցուցաներ այնմ բաց աստի. « Եւ ապա յետ դաստիարակութեանն գլխաւորք եկեղեցականք՝ անձնահաճ կամօք, ըստ բիրտ բարուց Հայաստանեայցն, կարգեցին զԱբրահամ Պարբէցի, և Աղուանիցն՝ արքեպիսկոպոս, և Վրացն՝ մետրապօլիտ »: Այսպէս ուրեմն Բաբգենիւ սկսաւ կամակար բաժանումն յԵկեղեցւոյն Յունաց, և առ Աբրահամաւ՝ անկախ պատրիարքութիւն Հայաստանեայց Եկեղեցւոյ:

Սակայն այն հիմն՝ որուն վերայ հաստատեցին Հայք այդ ժամանակին իրենց Պատրիարքութիւնն, առ 'ի ցուցանել Յունաց, թէ իրենք ևս եկեղեցական ինն դասակարգութիւնս անթերի ունին՝ առ 'ի կարող լինելոյ ձեռնադրել զպատրիարքն, յետ սակաւուց քայքայեցաւ. վասն զի Մ. Կաղանկատուացի կ'ըսէ անդ, թէ « Խռեացաւ Մետրապօլիտն Վրաց՝ որում Կիւրիոն կոչէին և զհակառակութեան բերէր վճիռ. իսկ հայրապետն Աբրահամ ասէր լինել յառաջահաւատ քան զՎիրս և զԱղուանս, և նոցա անկ է եպիսկոպոսապետութիւն: Յայս մաքառմանէ և 'ի խնդիր ուղղափառ հաւատոյ դարձան Վիրք և եղեն քաղկեդոնիկք. իսկ Աղուանից՝ առաջին մայր եկեղեցեացն արեւելեայց զինքեանս աւանդեալ, դարձան 'ի Հայոց առ ինքեանս, չլինել ընդ ումեք իշխանութեամբ: Ապա Հայք վասն մեծաբանութեան Յունաց, որ փոքրկացուցանել ջանային զկայս հանգըստեան Թադէոսի, չունել եպիսկոպոսապետ և Մետրապօլիտ, խորհեցան առնել Մետրապօլիտ զՄարդպետականն եպիսկոպոս՝ տալով նմա խաչ և պատիւ միայն ... : Ապա Սիւնեաց ետուն զպատիւն լինել մետրապօլիտ Հայոց՝ խաչանիշ մեծարանօք »:

Հայք են այսուհետև, որք կը լուծանեն և կը հաստատեն զեկեղեցական նուիրապետութիւնս և զկինակս, և ոչ թէ կանոնք ընդհանուր ժողովոցն Նիկիոյ, Եփեսոսի և Կոստանդնուպօլսի. ամենայն ինչ կամայականութեան խաղալիք եղած կը տեսնուի. այլ ևս չեբևին այն գեղեցիկ յարաբերութիւնքը, զորս կ'ընծայեն մեզ Գիրք Ագաթանգեղայ, Ս. Սահակայ թուղթերն և Ե. դարու յոյն և հայազգի մատենագիրք. որովք երբեմն Հարք Հայաստանեայց՝ կրօնական և եկեղեցական բարեկարգութեանց հետ 'ի միասին՝ կը սնանէին յոյն և լատին Հարց վարդապետութեամբք և եկեղեցական օրինօք: Յունական գիտութեամբ մշակուած և ժամանակին ամենանըշանաւոր հանճարներն անգամ՝ թէպէտև ցաւ 'ի սիրտ կը ջանան, բայց ոչ կարեն խրամակարկատ առնել զայսպիսի խոռս: Ի զուր կը կոչէ աշակերտն Մաթուսաղայի մեծ աստուածաբանն Թէո‿

դորոս[1] առ իշխանս և Նուիրակս Հայոց սառաքեալս առ Հերակլ կայսր, թէ «Ընդէ՞ր վիճիք և տրտմեալ էք. ոչ գոյ 'ի Նոսա թերու_թիւն ինչ հաւատոյ՝ մի եմք մեք և Նոքա, – Նոքա բուն ուղղափառ են, և մեք ոչ մի 'ի Նոցանէ բաժանեալ և առեալ զհաւատս և զամենայն կարգս եկեղեցականս, – ոչ է պարտ աղաւաղել 'ի Նոցանէ և խլել յար_մատոյն մեր. այլ մեք կրտսերագոյնքս հնազանդիմք երիցագոյն հրամանաց Նոցին՝ և լիցի մի հօտ և մի հովիւ»: Ի զուր կը դաւա_նէր Նա ինքն ամենամեծն և պատգամատուն Հայաստանեայց Եկե_ղեցւոյ Մաթուսաղա՝ զուղղափառութիւն ժողովոյն Քաղկեդոնի, 'ի թղթին[2] առ Հերակլ, ասելով. «ՔՆՆութեամբ գտաք ըստ ամենայն Հարցն ճշմարիտ և ուղիղ խոստովանութեամբ, առ միասնական սուրբ Երրորդութիւն: Բայց զժողովն Քաղկեդոնի խոստովանեալ էր և կարգեալ ընդ երիս ժողովսՆ՝ ընդ Նիկիոյ 318 իցն, ընդ 150 իցն՝ որ 'ի Կ. Պօլիս, և ընդ երկերիւրոցն որ յԵփեսոս» ... : Զի Մայրա_գոմեցի ումն հակառակասէր՝ բաւական էր վեր 'ի վայր շրջել զա_մենայն կարգս առաջինս. փոյթ չէ, թէ կը տարագրի յիւրայոցն, իբրև հետևող աղանդոյն Յուլիանեայ և Սաբէլի, զի՛ առաչօք կ'ը_սէր եղեալ զչարչարանս և զմահ Քրիստոսի Տեառն մերոյ. թէպէտ և Նորա մոլորամիտ գրուածքը յաւիտենական մոռացութեան դա_տապարտեցան, այլ Նորա հոգին շնչեց և կը շնչէ տակաւին: Բայց թէ յօգո՞ւտ արդեօք եթէ 'ի վնաս Հայաստանեայցս, այս 'ի բազմա_պատիկ արդեանց անտի կարեն 'ի միտ առնուլ ճշմարտախոհք, իսկ իմ՝ նիւթէս դուրս է:

Այս է անհա ճշմարիտ պատկեր և պատմութիւն Նորաքաղկեդո_նեան Հայաստանեայցս հին և Նոր Եկեղեցւոյ, զոր ես հետևելով բը_Նական ընթացից տոհմային և արտաքին պատմագրութեանց՝ բար_գաւաճեցի, առանց բան մի յաւելցնելու ըստ կամս, և կամ՝ թիւ_րելու հանգոյն այլոց[3], ունելով ինձ իբրև միակ և գերագոյն Նպատակ

1. Ստեփ. Տիւնեցի, Պատմ. Սիւնեաց, գլ. ԽԻ. էջ 85. տպգ. Մոսկուայի, 1861:

2. Նոյն գլ. ԽԸ, էջ 87:

3. Առանց զարմանաց և կարեկցութեան չէ մարթ ընթեռնուլ «Ա_թոռ Հայաստանեայց» երկասիրութիւնն, որուն հեղինակը մի և Նոյն տեղերէն, զորս փոքր 'ի շատէ մէջ բերինք և մեք, բոլորովին տարբեր արդիւնքներ առաջ բերած է, շրջելով ամենուրեք Նոցա հարազատ ի_մաստն. իսկ զայլս 'ի լռութեան դատապարտած է, որոնք իւր Նպա_տակին չեն յարմարիր և կամ ամենուն յայտնի լինելով՝ չեն կրնար կա_մակորուիլ: Աստ գործս չի Ներեր այդ գործն ընդհանուր քննութեան ենթարկել. ուստի կը շատանամ Նորա մի քանի կէտերը միայն շօշա_փել: Հեղինակս՝ Ղազարայ՝ Փաւստոսի մասին թէպէտ և ընդհանուր կերպով զուրցուած այս խօսքերուս, «Թէ զուցէ՝ այլ ոք յանդուգն .... ձեռն արկեալ յիւրն գրեաց» վերայ հաստատուած,՝ մերժած է Բու_զանդացւոյ բոլոր այն տեղերն, որոնց Մովսիսէն սկսեալ միւս տոհմա_յին պատմագիրք կը համաձայնին: Գրիգորէն յառաջ Թադէոս առաքե_լոյն 'ի մեծ Հայս հաստատուած եպիսկոպոսութեան ընդհատութիւնն, որ պատմական յիշատակարանօք հաստատուած մի ճշմարտութիւն է, Նա յէջ 27 շարունակուած կը համարի մինչև ցԳրիգոր. իսկ այլուր հա_

*զճշմարտութիւն: Ուրեմն յետ այսպիսի քննութեանց կարեմք եզրակացնել, թէ Ղևոնդիոսի առ Տրդատիոս գրուած Թուղթը, վերոյիշեալ նշանաւոր տեղովն հանդերձ, հնագոյն և յոյն յաղբերէ կը յառաջագայի, և այս է պատճառ՝ ոյր վասն թէ՛ Փաւստոս և թէ՛ այլ մատենագիրք Յունաց և յիշատակարանք այնպէս քաջ կը համաձայնին այնմ՝ 'ի հաստատելն ցայս վայր կատարուած իրողութիւններն:*

## ԳԼՈՒԽ ԺԲ·

**Մկրտութիւն արքային Տրդատայ, արքունեաց և արքայազանց զօրաց. — Յուշ. Մկրտչէ և Անանագինեայ տոհմից հաստատութիւնն և Հայոց Նախարարք. — Գուտշմիդի կարծիքն Անանագինեայ մասին և նորա հերքումը. — Եպիսկոպոսաց յաջորդութիւնն և շինութիւնք եկեղեցեաց. — Եկեղեցական կալուածոց կամ հողերու հաստատութիւնն և նորա հնութիւնը. — Տրդատես էջքն Մնկինոս սարէ և յոյն դպրութեանց. — Աւետարանի թարգմանութեան և Հայաստանի սահմանքը. — Եզրակացութիւն:**

*Գեղեցիկ դրուագներէն մին է Ագաթանգեղայ գրոց ԺԺԸ. գլխահամարով սկսած նոր պարբերութիւնը, վասն զի կ'ընծայէ մեզ Հայաստանեայց նորակազմ Եկեղեցւոյ մէջ հրաշալի արալողութեամբ*

*կառակ այդմ կը հաստատէ: Գրիգորի և նորա յաջորդաց՝ Կեսարիայէն ձեռնադրութիւն առնուլը՝ պարզապէս դիպուածոյ կամ սովորութեան արգասիք կը համարի. մինչդեռ Ագաթանգեղոս՝ երկու ազգաց մէջ եղած գրաւոր դաշանց և իրաւասութեան հաստատութիւնը կը ծանուցանէ մեկն բանիւ, ինչպէս յետագայ պատմիչք ալ նորա անընդհատ գործադրութիւնը՝ ցժողովն Քաղկեդոնի: Եւ յիրաւի, Գրիգորի ըրածն եթէ պարզապէս եղած լինէր դէպք կամ ձև ինչ պատշաճութեան, և Հայաստանեայց աթոռը լինէր 'ի սկզբանէ ⁄անկախ, անկարելի էր, որ այդպիսի դէպքը օրէնք դառնայր և շարունակուէր: Ո՞ւր տեսնուեցաւ, մ՞րբ և ո՞ր արդիօք 'ի նախաթոռոց վարեցաւ այսպիսի սովորութեամբ, այսինքն է, յայլմէ նախաթոռոյ՝ արտաքոյ վիճակին իւրոյ երթալ առնուլ զձեռնադրութիւն: Յէջ 17–18 և 25, կ'ըսէ, թէ այսպիսի սովորութեանց վերայ հիմնուած Նիկիոյ Ս. Ժողովը (Կանոն Զ) հաստատեց նախաթոռոց վիճակներն և իրաւունքներն. իսկ յէջս 28, մանաւանդ 31 իջում հակառակ այդպիսի սովորութեան և նորա վերայ հաստատուած նիկիական կանոնադրութեան, զմեծն Ներսէս (լաւ ևս նորա յաջորդը) ինքնագլուխ պատրիարք ընել կու տայ, ըստ անտեղի կարծեաց Յովհ. կաթողիկոսի, որուն անտեղութիւնն արդէն տեսանք. մինչդեռ Եփեսոսի ժողովն ևս (Կանոն Ը.) կ'ըսէ, թէ «Մի՛ ոք առանց գիտութեան և գրութեան ամենաբարեպաշտ ժողովոյն յանդգնիցի ընտրել զոք մետրապօլիտ, այլ վճռով և համաձայնութեամբ ամենաբարեպաշտ եպիսկոպոսաց»: Սակայն մի՛ ժողով եպիսկոպոսաց հաւանեցաւ ընդ ընտրութիւն Շահակայ, Զաւենակայ և այլոցն: Յէջ 25–27 կ'ըսէ, թէ եկեղեցական*

կատարուած հրաշափառագոյն խորհրդոց առաջինն և ամենահարկաւորն: Ամսօրեայ պահոց և պատրաստութենէ վերջ, զոր պատուիրեց Գրիգոր յետ դարձին իւրոյ 'ի Կեսարիոյ, 'ի ծագել լուսապայծառ առաւօտուն կ'առնու զԱրքունիս ողջոյն և զզօրն արքայազունդ և կ'ածէ զնոսա առ եզերս Եփրատայ, — կ'իջուցանէ 'ի ջուրս, — անդէն և անդ կ'երևի սքանչելի նշանն Աստուծոյ, — գետին ալիքներն, որք յորդեալ զեղեալ կ'ընթանային դարիւ և դարիւ, յետս ընդ կրունկն դառնալով կը կենան անշարժ, — երկնից հաստատութենէն սաստիկ լոյս մի կը ձգուի մինչև յերկիր և կը կենայ լուսաւոր սեան ձևով, և տէրունեան փրկութիւնաբեր նշանը կը փայլի անոր վերայ, — նորա լուսաւորութենէն մինչև անգամ արեգական ճառագայթները կը նուաղին, — Գրիգոր սուրբ օծութեան իւղը կը թափէ մկրտելոց վերայ և ջուրը շրջան առեալ կը թևապարէ նոցա չորս կողմը, — մարդիկ առ հասարակ և փափկասուն բամբիշք սքանչացած և սպիտակածղի բազուկները դէպ 'ի յերկինս բարձրացուցած՝ կը կոչեն 'ի ձայն ուրախութեան և սուրբ երկիւղի առ Հայրն համայնից Աստուած, և Գրիգոր կը վերընծայէ զնոսա մի առ մի Հօրն երկնաւորի՝ յասելն. «Մկրտի ծառայս այս յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ». — Գիշերը վերայ կը հասնի և կը դառնան 'ի Դիցնաւան՝ ցնծութեան երգերով և օրհնութեամբ, — բորբոքեալ ջահերու, կան-

վիճակաց և աթոռոց բաժանման հիմը՝ եղած է հռովմէական կայսերութեան գաւառական բաժանմանց վերայ. իսկ կայսերութեան սահմաններէն դուրս գտնուող եկեղեցեաց հպատակութեան կարգն՝ աշխարհակալութեան օրինօք հաստատուեցաւ: Ուստի հռովմայ պատրիարքին՝ առաքելութեանց ձեռքով 'ի քրիստոնէութիւն դարձած և հաստատուած եկեղեցիները՝ հռովմայ Պատրիարքին իրաւասութեան ներքոյ անկեալ էին, Անտիոքայն՝ Անտիոքայ եպիսկոպոսապետին և Կեսարիուն՝ Կեսարիոյ եպիսկոպոսապետին: Իսկ հայոցը որովհետև 'ի Թադէոս Առաքելոյն հաստատուած էր, անոր համար այդ երկու կետերով ևս ազատ և ինքնագլուխ էր: Սակայն հեղինակն, պէտք էր յիշել, թէ Արտազու եպիսկոպոսութիւնը թէպէտ և յԱռաքելոցմէ հաստատեցաւ, բայց նորա յաջորդութիւնը Գրիգորէն դարով յառաջ դադարած էր: Բ. հայաստանի երկրորդ դարձն եղաւ Գրիգորի ձեռքով, և Գրիգոր էր Կեսարացի և հպատակ հռովմէական կայսերութեան, ուստի ինչպէս Կեսարիայէն ձեռնադրուելով էառ զեպիսկոպոսութիւն, այսպէս ևս Կեսարիոյ հայրապետին իրաւասութեան պէտք է որ ենթարկուէր. առ այս արդարև, կը դրկէ Ղևոնդիոս զբազմութիւն եպիսկոպոսաց, քահանայից և վանականաց 'ի հայս: Գ. Եթէ երբեմն Առաքելոցմէ հաստատուած աթոռներն բաւական պատճառներ եղած համարուէին նախաթոռութիւնս կազմելոյ՝ անկախ յայլոց նախաթոռոց, այն ժամանակ ոչ միայն հայոց՝ այլ մնացած բազմաթիւ աթոռներն ևս որ 'ի հնդիկս, յԵթովպիա, յԱղուանս և այլուր հաստատուեցան, պէտք էին նոյնպէս նախաթոռ լինել, և ինչ իրաւամբ Աղուանից կաթողիկոսն՝ հայոց կաթողիկոսի իրաւասութեան ներքոյ անկեալ պիտի մնար: Բայց որովհետև կային պատճառք, որով հայք նախաթոռ կը լինէին. ուրեմն նոյն պատճառներով կը ճանչնային հայրապետք հայաստանեայց եկեղեցւոյ՝ զիրաւասութիւն հայրապետին Կեսարիոյ, ինչպէս Կեսարիա ալ, յետ ժողովոյն Քաղկեդոնի, ստիպեցաւ ճանչնալ զիրաւասութիւն Պատրիարքին Բիւզանդիոնի:

թեղաց և լապտերներու լուսին մէջ՝ կը փայլին ամենքը սպիտակազգեստք՝ հրեշտակաց զուարթադէմ գունդերու նման, – կը մտնեն տէրունեան տաճարն, – անդ կը մատուցանէ Ս. Քահանայապետն Գրիգոր՝ Քրիստոսի Տեառն մերոյ անարիւն զոհը, – կը հաղորդին ամենքեան կենդանի և կենդանարար մարմնոյ և արեան Փրկչին մեր Յիսուսի Քրիստոսի: – Հոգևոր հանդիսին կը յաջորդէ մարմնաւորը, այն մեծ և նշանաւոր տօնխը, զոր հեթանոս Հայաստանը տօն Նաւասարդի կամ Ամանորաբեր և ամենաբեր դիցն Վանատրի կ'անուանէր: Սակայն Գրիգոր այդ Ամանորաբեր և Հիւրընկալ դից տօնը՝ կը փոխէ 'ի համաշխարհի տօն Յովհ. Մկրտչին և Աթանագինեայ վըկային:

Արդ, այս կէտերէս իւրաքանչիւրը՝ մի մի առանձին դրուագներ կազմելու և իրենց յատուկ երանգով և պարագայիւք նկարագրուելու արժանի էին. բայց գրոցս հեղինակը զրկած է զմեզ բոլոր այն ժամանակի Հայոց, քաղաքային և զինուորական կարգաց և հանդիսութեանց, երաժշտական գործեաց և երգեցողութեան վերաբերեալ տեղեկութիւններէն. սաղմոս և օրհնութիւն միայն կը յիշէ, կանթեղունս, ջահս և լապտերս, և ոչ այլ ինչ: Նաւասարդի այն մեծազոյն տօնն և աշխարհահանդէս ցնծութիւնն, որուն լոկ յիշատակը միայն հնգետասան դարերէ վերջ իբրև համապատկեր խմն պէսպէս դիպաց և յարափոփոխ տեսարանաց կը ներկայանայ մեզ, նա հազիւ թէ կը յիշատակէ և հարևանցի կ'անցնի. այնպէս որ լիովի իրաւունք ունէր գերմանացի քննադատն ըսելու, թէ Ագաթանգեղոս ոչ է ճարտար գրիչ և նկարագրող իրաց, այլ պարզապէս յառաջ բերող նոցին և դիպաց անցելոց՝ առանց կարգաբանու-

ցէջ 89, կ'ըսէ, թէ « Օտար եկեղեցիք՝ եպիսկոպոսական աստիճանէ վեր կարգ չեն ճանաչեր, և ձեռնադրութեամբ տրուած գերագոյն աստիճանն իրենց մէջ եպիսկոպոսութիւնն է. իսկ ինչ որ եպիսկոպոսութենէ վեր է, պաշտօնավարական աստիճան է անուանմամբ ստացեալ և ոչ կարգի աստիճան՝ ձեռնադրութեամբ ստացեալ: Մետրապօլտութիւնը, Արքեպիսկոպոսութիւնը, Պրիմասութիւնը, Էքսարքութիւնը, Պատրիարքութիւնը, Կ. Պօլսոյ տիեզերական Պատրիարքութիւնն և Հռովմայ Պապութիւնը՝ ձեռնադրութեան կանոն չունին. միայն մերս Հայաստանեայց կաթողիկոսութիւնն է, որ խորհրդական ձեռնադրութեամբ և միւռոնի օծմամբ կը տրուի. որով նուիրեալն յայդ աստիճան՝ կը ստանայ առաւել ինչ՝ քան զայլ եպիսկոպոսունս »: Հեղինակն՝ աստորքան ուզած է վեր բարձրացնել զԿաթողիկոսն, այնքան ևս 'ի վայր դասած է զՍ. Գրիգոր և զյաջորդս նորա, որք 'ի Հայրապետէն Յունաց կ'առնուին զձեռնադրութիւն մինչև ցեպիսկոպոսութեան աստիճան: Այս բանս խիստ յայտնի է Ագաթանգեղայ 604 իջէն: Սակայն այն անհասկանալի է, թէ ուստի՞ առին հայրապետք Հայոց այդ մասնաւոր ձեռնադրութիւնը, զոր չունին ընդհանուր եկեղեցիք Աստուծոյ: Եթէ 'ի Ս. Գրիգորէ, յայտ է թէ Ս. Գրիգոր իսկ 'ի Կեսարիոյ էառ. իսկ եթէ չէառ նա բաց յեպիսկոպոսութենէ, զիմրդ ապա տուաւ յաջորդաց իւրոց: Ըստ իմքեան զարմանալի չէ՞ այս վարդապետութիւնս. սակայն ես չեմ զարմանար, այլ կը կարեկցիմ միայն, որովհետև ժամանակն և պարագայներն աւելի, քան թէ պարզապէս ճշմարտասիրութիւնը, կը ստիպէին հեղինակին այսպէս խորհել և գրել:

թեան: Եւ ստուգիւ, վերոյգրեալ կէտերն, ամէքն ալ ուսկ յիշատակութիւնք են դիպաց և ոչ նկարագրութիւն հանգամանաց և պարագայից նոցին: Սակայն, ըստ իս, պէտք է ըսել և զայս, թէ հեղինակ գործոցն Գրիգորի այնպիսի պարունակի կամ վիճակի մի մէջ կ'ապրէր, որուն համար քաղաքային և զինուորական իրերն, ընտանեկան կենաց հանգամանքներն և ժողովրդական սովորութիւնք՝ այնքան նշանակութիւն չէին կրնար ունենալ նորա համար, այլ եկեղեցական և կրօնական իրք և արտաքոյ կարգի հրաշքներ մեծապէս գրաւած են նորա ուշադրութիւնը: Նորա բռնած այս լակոնական և ցամաք ոճը, այնպիսի նուիրական և հետաքրքրական ժամանակի և անցից նկատմամբ, առիթ պիտի տայր և տուաւ իսկ խմբագրին և թարգմանչին գրոցս, ոչ միայն այրարատեան կիրթ բարբառով և ասութեամբ գեղերեսել զայն, այլ նոյն իսկ ձեռք խառնել և ընդարձակել ուրեք ուրեք այն հայրենական քաղցր յիշատակներովը, զորս կենսագիրը զանցառութեամբ լռեցուցեր էր, բայց Ե դարուն տակաւին ազդևոր ձայնիւ կը խօսէին 'ի սիրտս և 'ի լսելիս հայկազն մուսայից և գրագիտաց: Սակայն եղածն՝ եղած է. իսկ մենք դառնանք այն տեղեաց և անցից հարազատութիւնն և պատմական արժէքը քննելու:

Դ Յայսմաւուրաց մէջ, էջ 20, անծանօթ հեղինակ մի յետ պատմելոյ զբորոտութիւն Կոստանդիանոսի և զկարծն նորա, անդէն կը պատմէ և նորա մկրտութիւնն 'ի ձեռն Սեղբեստրոսի. ուր նման Ագաթանգեղայ 621 իջին՝ կ'ըսուի, թէ երբ Կոստանդիանոս էջ 'ի ջուր, ծագեց լոյս յերկնից 'ի վերայ ջրոյն, և թէ նորա հետ մկրտեցան 12,000 զօրականք: Արդ, այս պատմութեանս գէթ առաջին մասն, այսինքն է, Կայսեր հիւանդութիւնն և բժշկութիւնը՝ գրեթէ բառ առ բառ Մ. Խորենացւոյ Բ. Գրոց ՁԳ գլխէն առնուած է. իսկ մկրտութեան մասին եղած աւանդութիւնը՝ գլխովին անհիմն է և հակապատմական. որովհետև Կոստանդիանոսի հաւատարիմ կենսագիրը՝ նորա մկրտութիւնն ոչ 'ի ձեռն Սեղբեստրոսի և ոչ այլ 'ի սկիզբն դարձի նորա եղած կ'աւանդէ, այլ կենաց վերջին օրերում, 'ի Նիկոմիդիա և առանձինն: Ուստի Յայսմաւուրքի այդ անհարազատ աւանդութիւնը չէ մարթ իբրև նախկին աղբիւր համարել Ագաթանգեղայ 621 իջի աւանդութեանը:

Ագաթանգեղայ այս և հետևեալ իջում յայտնուած պարագայներն իսկ կը ցուցնեն նոցա հնութիւնը. այսինքն է, արքունեաց՝ Եփրատ գետոյն մէջ ընկղմամբ մկրտուիլն, ըստ օրինակին Քրիստոսի, — իւղով կամ միւռոնաւ օծուիլն, այսինքն է, զոյգ ընդ Մկրտութեան առնուլ և զխորհուրդն Դրոշմի, — յետ այնորիկ սպիտակ հանդերձիւ դառնալն նոցա 'ի Դիցնաւան, և անտի լապտերօք գնալն յեկեղեցին, — և հուսկ հաղորդելն կենարար հացին և բաժակին, բոլոր այս արարողութիւններս՝ են ըստ առաքելական Սահմանադրութեան, զորս բարեպաշտութեամբ կը կատարէին նախկին դարու Արևելեան և Արևմտեան եկեղեցիք՝ մինչև ցԸ դար: Ցիրաւի, նախ Մատթէոսի Աւետարանէն գիտենք, թէ գետի մէջ մկրտութիւն առնուլն՝ ամենահին

սովորութիւն է. իսկ Եւսեբիոս՝ Կոստանդիանոսի Վարուց մէջ, Գ. գլ. ԿԲ կ'աւանդէ, թէ իւր ժամանակ իսկ շատեր կ'երթային մկրտիլ 'ի Յորդանան, և նոյն ինքն Կոստանդիանոս Մեծն՝ այս փափագս ունէր, բայց անակնկալ հիւանդութիւնն արգիլեց զնա: Ի ժամ ընկղման երեխայից 'ի ջուրն՝ առընթերակայ քահանայն իւղը կը թափէր ա֊նոնց վրայ և եպիսկոպոսը դնելով զաջն իւր անոնց գլխուն վերայ կ'արտաբերէր զանուն ամենասուրբ Երրորդութեան. ապա սպի֊տակ լաթով մի, որ կը կոչուէր Քրիսմանայէն, կը ծածկէր զմարմինս մկրտելոց: Հանդիսաւոր մկրտութիւնը կը կատարուէր Զատկին և Պենտեկոստէին. յետ մկրտութեան՝ բոլորովին ճերմակ զգեստներ կը հագուէին մկրտեալք՝ 'ի նշան շնորհազարդութեան, որ կը տևէր ութ օր: Այս բանն՝ բաց յայլոց որոշակի կը ծանուցանէ [1] մեզ Թէոդո֊սեան Օրինագիրքը, ժե, 515: Զմկրտեալս և զազատեալս 'ի գերու֊թենէ սատանայի երիցս կ'ողջունէին՝ ԼԱ Սաղմոսին հետևեալ խօս֊քերով. «Երանի այնոցիկ՝ որոց թողան մեղք նոցա և ծածկեցան ամենայն յանցանք» և այլն: Այս բանս յայտնի կը տեսնուի առ Ս. Կիւրղի Կոչումն ընծայութեան գրոց մէջ: Յետոյ վառած լապտերներ ձեռքերնին առած եկեղեցին կը դառնային՝ հաղորդելու աստուա֊ծային խորհրդոյն. ուր յետ աւարտման արարողութեանց նորակը֊նունքները ծունկ չոքած և ձեռքերնին վեր բարձրացնելով առ Աս֊տուած՝ կը խնդրէին զօգնութիւն, անարատ պահելու համար զսուրբ պատմուճան մկրտութեան մինչ 'ի գերեզման, ըստ ասելոյ Ս. Գրիգորի Նազիանզացւոյ: Նոցա իբրև մարմնաւոր սնունդ անմի֊ջապէս կը բաշխուէր կաթ և մեղր և անոյշ գինի, ըստ Ս. Կղեմէսի աղեքսանդրացւոյ՝ 'ի նշան մտանելոյ նոցա յերկիրն աւետեաց: Այս բանս պէսպէս մեկնութեան նիւթ եղած է. բայց առ Ագաթանգեղ փոխանակ ասոնց կ'ըսուի, թէ հաղորդէին կենարար մարմնոյ և արեան Տեառն: Ցէջ 619–620 մկրտութիւնը կոչուած է Վերածնութեան, Լուսաւորութեան, Օծութեան, Քրիստոնէական կնիք, և յէջ 621 Նշանակ որ֊դեգրութեան: Այս իսկ համաձայն է Կղեմէսի Աղեքսանդրացւոյ և այլոց հնագոյն Հարց Ցունաց: Սակայն հետևեալ բացատրու֊թիւնը. «Եւ լոյս սաստիկ երևեալ 'ի նմանութիւն սեան լուսոյ կայր 'ի վերայ ջուրց», ինձ այսպէս կ'երևի, թէ է այլաբանութիւն ինչ յունարէն φώτισμα (լուսաւորութիւն) բառին, որով Կղեմ. Աղեք֊սանդրացի (Ցաղագս հոգ. դաստ. Ա. 6) կը կոչէ զՄկրտութիւնն, և կամ է արտայայտութիւն նշանակի Մկրտութեան, զոր ընծայեն մեզ Գ և Դ դարուց նկարէն խորաքանդակներն, մերթ լոյս ցոլա֊ցեալ յերկնից, և մերթ ջուր սփռեալ՝ նշանակ Յորդանան գետոյ:

Արդ, հանդերձ այսու ամենայնիւ, պէտք է ըսել, թէ Մկրտու֊թեան հատուածոց մէջ՝ մկրտելոց թուոյն նկատմամբ չափազանցու֊թիւն կայ: Ցիրաւի, յէջ 610, կ'աւանդուի, թէ Ս. Գրիգոր մինչդեռ էր 'ի Տարօն մկրտեց իւր ուղեկից նախարարներն և զզօրս նոցա, և

1. Զի այսպէս գրուած է. « Quibus cœlestis lumen lavacri imitantia novam sancti *baptismatis lucem vestimento* testantur »,

*թէ քսան օրուան մէջ մկրտելոց թիւն էր « ԽՌՆ և տասն բիւր ». այս հասկանալի բան է: Իսկ յէջն 621 թագաւորին և արքայա_ գունդ զօրաց մկրտութիւնը պատմելով, կ'ըսուի, թէ մէկ օրուան մէջ մկրտելոց թիւն էր « աւելի քան զհնգետասան բիւր », այսինքն է* 190,000: *Ապա յէջ* 623 *կը պատմուի, թէ 'ի Դիցնաւան՝ մնացած եօթն օրուան մէջ՝ մկրտեց դարձեալ « յուրաքանչիւր բանակէ անտի՝ ընդ այր և ընդ կին և ընդ մանկտի աւելի քան զչորեքհարիւր բիւր », այսինքն է* 4,100,000: *Արդ, այս վերջին թիւս թէ՛ նկատմամբ ար_ քայազունդ զօրաց և նոցա ընտանեաց, թէ՛ գումարմամբ առաջին և երկրորդ անգամ մկրտելոց թուոյն՝ ընդ վերջնոյն, և թէ՛ մկրտո_ ղին Գրիգորի համար անկարելի*[1] *է: Գրիգորի 'ի Տարօն հասնելէն վերջ՝ մինչև ցմկրտութիւն Տրդատայ անցուցած քսան օրերը գու_ մարելով վերջէն յիշուած եօթն աւուրց հետ՝ կ'ունենանք գրեթէ* 612 *իջում յիշուած « ամսօրեայ ժամանակն », զոր հատուածիս ներմուծողը՝ կանխել ծանուցել է, անձնամատն լինելով իւր այդ գործողութեան: Սակայն այդ սուղ ժամանակամիջոցին Գրիգորի ձեռքով կատարել տուած այնչափ գործողութիւնքը, այսինքն է, քրմաց դէմ տուած պատերազմերն, մեհենաց կործանումն, եկեղե_ ցեաց շինութիւնքը, քահանայից ձեռնադրութիւնքն և* 4,290,000 *անձանց մկրտութիւնն, անհաւատալի կ'երևին: Բայց աւելի զար_ մանալին այս է, որ ոչ միայն կը մկրտէ զնոսա Գրիգոր, այլ Դրոշմի խորհուրդն ևս նոցա վերայ կը կատարէ և մի առ մի Հաղորդու_ թեան սուրբ խորհրդոյն ևս կը հաղորդէ զնոսա: Գործոց Առաքելոցի Բ. և Դ. գլխոց մէջ կը կարդանք, թէ Ս. Պետրոս 'ի միում նուագի մկրտեց* 3,000 *հոգիս, իսկ յերկրորդումն՝ հոգիս իբրև հինգ հազար: Այս բանս ոմանք ընդ Աբբէ Մարտինյի*[2] *անկարելի կը համարին, եթէ ընկղմամբ եղած համարինք, բայց ոչ նոյնպէս և սրսկմամբ: Իսկ առ Ագաթանգեղ՝ որոշակի ընկղմամբ եղած կ'աւանդուի, և փոխանակ հինգ հազարի՝* 4,290,000 *կը յիշուին: Արդ, Փաւստոս անգամ, որ այնքան նախ է և նոտմ 'ի թիւ և 'ի բանս իւր, եթէ իրօք այս տողերս կարդալու բաղդն ունենայր շատ պիտի զարմա_ նայր: Ուստի իմ կարծիքով Տրդատէն յառաջ և Տրդատայ հետ 'ի միասին զօրաց մկրտութիւնն՝ անժխտելի ճշմարտութիւն իսկ համա_*

1. *Գուցէ ըսուի, թէ կամ ուրիշ պաշտօնեայք ևս զոյգ ընդ Գրիգորի կը պաշտէին զխորհուրդն Մկրտութեան, և կամ հազարաւոր անձինս իջուցեալ 'ի գետն՝ 'ի միասին կ'արտաքերէր զձև Մկրտութեան: Սակայն ենթադրութեանցս առաջինն՝ ուղղակի կը հակառակի Պատմագրին, որ միայն Գրիգորի կը վերագրէ զայն: Իսկ վերջինը՝ կը հակառակի եկեղե_ ցական սովորութեանց և խորհրդոյս վաւերականութեանն, այնու զի մի և նոյն ժամանակ Դրոշմի խորհուրդն ևս կը կատարէր 'ի վերայ նորա_ կնքելոց*, 621, 620 *և* 627 *էջերու վկայութեան համեմատ: Իսկ արդ դրոշ_ մելու համար ըստ Սահմանադրութեան առաքելեան Նկեղեցւոյ (Փիրմի_ լիանոս*, Epistola ad Cyprianum – Euchologius Barberinus) *հարկ էր որ եպիսկոպոսն դրութեամբ ձեռաց օծանէր միւռոնաւ զճակատս կնքելոց և նշանաւ սուրբ խաչին դրոշմէր զշնորհս Հոգւոյն Սրբոյ:*

2. Dictionnaire des Antiquités chrétiennes. Paris, 1877, p. 80.

քելով, դարձեալ պէտք է ասել, թէ այս տեղ ներկայացուած թիւերն վերոնշանակեալ պարագայիւք՝ ոչ 'ի դիւանագրոց առնուած են, և ոչ ալ պատմական համարելի, այլ կամ եկամուտ անհարազատութիւնք են և կամ լաւ ևս ժողովրդական աւանդութիւնք: Եւ յիրաւի, ապացոյց կը համարիմ ես ըստ ծխս, նախ, հետևեալ երևոյթը. զի հեղինակ հատուածոցս՝ այդ թիւերն յիշած ժամանակ՝ երիցս կը դնէ առընթեր բառս «աւելի», որ յայտնապէս անորոշութեան է նշան: Բ. Ցունալէն Ագաթանգեղոսի մէջ՝ հայերէնի 621 իջում յիշուած «հնգետասան բիւրը» չկայ: Գ. Զենոբ Գլակացին ևս զոյգ ընդ Փաւստոսի (Գ. Դպր. գլ. ԺԳ), և Եւթիմիոսի (Panopla, II, c. 20) կը հաստատէ նախարարակոյտ զօրաց մկրտութիւնը. բայց մկրտելոց թուոյն նկատմամբ կը տարաձայնի Ագաթանգեղոսէն, յասելն յէջ 35. «Եւ որք մկրտեցանն՝ էին արք և մանկտի՝ ոգիք հինգ հարիւր և յիսուն»: Ասորի հեղինակիս քով ևս կը գտնենք լուսաւոր սեան կամ սքանչելեաց երևումը. սակայն Ագաթանգեղոս արքունեաց մկրտութեան ժամանակ հանդիպած կը պատմէ զայն, որուն կը համաձայնի նաև Մովսէս Գ. գլ. ԿԶ. իսկ Զենոբ յառաջին մկրտութեանը ժամանակ: Ըստ Զենոբայ՝ 3 ժամ միայն տևեց այն, իսկ ըստ Ագաթանգեղայ՝ մինչև ցերեկոյ. սակայն երկոքեան իսկ քաջ կը միաբանին, դնելով 'ի ժամ մկրտութեան նաև զիւղն օծութեան կամ զսուրբ միւռոնն Դրոշմի, որ կը ներկայացնէ մեզ զհնագոյն սովորութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ, 'ի նմին աւուր տալ և զկնի մկրտելոցն չափահասից:

Մկրտութեան տեղւոյն նկատմամբ ալ Ագաթանգեղոս, Զենոբ և Փաւստոս կը թուին տարաձայնել յիրերաց, զի առաջինը՝ կ'ըսէ. «Իջանէին 'ի ջուրն Եփրատ գետոյն». երկրորդին վկայութեան համեմատ «Իջուցանէ զնոսա (Գրիգոր) 'ի ջուրն Արածանւոյ, յարևելից կուսէ հանդէպ Կաճկոնից Աստղոնից բլրոյն»: Իսկ Փաւստոս՝ «Հացեաց դրախտ» կը յիշէ, ուր էր ծործոր՝ յորմէ կ'անցանէր վտակ մի: Արդ, դիտելու ենք, որ Փաւստոս և Զենոբ առաջին մկրտութեան տեղւոյն վերայ կը խօսին, և նոցա նկարագրութիւնը շատ լաւ կը միաբանի Ագաթանգեղայ 608 իջի Ա. պարբերութեանը: Ուստի Փաւստոս Հացեաց պուրակով՝ անտառ միայն կը հասկնայ. իսկ Զենոբ՝ Այծեաց նայ բառովն՝ ուղղակի Ագաթանգեղայ այդ իջում յիշուած ջուրակը կը հասկնայ, որ նոյն է 42 իջում եղած Որոտ անուանեալ փոսին հետ. և հնչումով իսկ նման է Զենոբէն յիշուած Այծեանայ անուան, միայն թէ առ Ասորիս « տառը չլինելուն պատճառաւ՝ ալափով (ܐ) գրուած էր, և ըստ այնմ Ա. ով տառադարձուած է սոյն անունը:

Ցոհաննու Մկրտչի և Աթանագինեայ տօնի հաստատութիւնն արդէն իսկ ծանոյց[1], յէջն 611, յատուկ պարագաներով. իսկ յէջ 623

1. Ցանելն այսպէս. «Եւ հրամայեաց կատարել անդ ամ յամէ 'ի տեղւոջ՝ ժողովել ամենեցուն 'ի յիշատակ սրբոցն, որ օր եօթն էր Սահմի ամսոյ. զի խնդութեամբ ժողովեալ՝ զօր տօնին խմբեսցեն»;

վերստին կը պատմէ [1] մեզ, բայց առաջինէն տարբեր պարագայիւք. այսինքն է, առաջին տեղւոյն մէջ՝ Գրիգորի ուղեկից և զօրախումբ նախարարաց մկրտութենէն անմիջապէս վերջ հաստատուած կ՚աւանդէ՝ Սահմի ամսոյ եօթնևտասներորդ օրն (՚ի մուտս Նաւասարդի), առանց յանուանէ յիշատակելոյ զսուրբ վկայսն: Իսկ երկրորդ տեղւոյն մէջ՝ արքունեաց և արքայազունդ զօրաց մկրտութենէն եօթն օր անցնելէն վերջ հաստատուած կ՚աւանդէ, Նաւասարդի մէկին և ՚ի ժամանակս Ամանորոյ և ամենաբեր հիւրընկալ դիցն վանատրի. սակայն այս անգամ յանուանէ կը յիշէ զՅովհաննէս և զԱթանագինէս: Արդ, եթէ առաջնոյ մկրտութիւնը 20 օր առաջ հանդիպեցաւ քան զՏրդատայն, և տօնիս հաստատութիւնը՝ եօթն օր վերջ հոսկ ուրեմն կատարուեցաւ, ուրեմն [ի]նչպէս կրնային երկաքանչիւրն ՚ի մուտս Նաւասարդի հանդիպած լինել. չիցէ՞ այս ուղղակի հակասութիւն. իսկ եթէ ստուգիւ են հակասական՝ [ի]նչպէս կարեն մի և նոյն աղբերէն յառաջագայիլ:

Արդ, առաջին տեղում որովհետև որոշակի ոչ Ամանոր և ոչ այլ Նաւասարդը յիշուած են, ուստի ես չեմ կարող այս տեսակէտով ուղղակի հակասական համարել վերջնոյն: Բայց որովհետև ՚ի սկզբան անդ Ս. Գրիգոր մի միայն տօն հաստատեց Յովհաննու Մկրտչին, և այդ տօնը տարին միանգամ նեթ կը տօնուէր Նաւասարդ ամսու մէկին, իսկ Սահմի՝ էր երրորդ ամիսն: Երկրորդ, այսպիսի տարբերութիւն մի Հայոց շարժական տարիով միայն կարելի էր արդարացուիլ. իսկ որովհետև Հայոց եկեղեցական տօներն և տումարն՝ Հռովմէական տումարին համաձայն անշարժ էին. ուրեմն այսպիսի տարբերութիւն մի Գրիգորի ժամանակ անկարելի է որ տեղի ունեցած լինէր: Երրորդ, յունարէն օրինակն յետ յիշելոյ զՍահմի՝ անդէն կը յարէ κατὰ δὲ Ῥωμαίους Ὀκτωβρίου. Արդ, Նաւասարդը ըստ անշարժ տումարին՝ Արեգ ամսոյն (այսինքն է, Մարտ 9–21) և կամ ըստ Յուլեան տումարին՝ Օգոստոս 11, և ոչ թէ Հոկտեմբերին պիտի համապատասխանէր: Ուստի պէտք է ըսել, թէ այդ կրկին տեղերը՝ նոյնպէս կրկին աղբերէ յառաջ եկած են:

Եւ յիրաւի, 611 էջի հատուածը՝ կը վերաբերի 607 էջի Բ. պարբերութեանն, որուն հեղինակն յանուանէ կը յիշէ Յովհաննու Մկրտչի և Աթանագինեայ վկայից ոսկերաց բերուիլն և զետեղիլն յեկեղեցին Մատրաւանից. անոր համար 611 էջում՝ երբ նոցա տօնի հաստատութեանը վերայ կը խօսի՝ այլ ևս յանուանէ չյիշեր զնոսա, այլ, թէ «Հրամայեաց կատարել անդ ամ յամէ ՚ի տեղւոջն՝ ժողովել ամենեցուն ՚ի յիշատակ սրբոցն, որ օր եւթն էր Սահմի ամսոյ»: Իսկ

1. Այսպէս. «Եւ զյիշատակս վկայիցն բերելոց ժամադրեաց տօն մեծ հռչակել, յառաջագոյն կարծեցեալ սնոտեացն պաշտաման ՚ի ժամանակի դիցն Ամանորոյ ամենաբեր նորոց պտղոց տօնից հիւրընկալ դիցն Վանատրի, զոր յառաջագոյն իսկ ՚ի նմին տեղւոջ պաշտէին յուրախութեան Նաւասարդ աւուր: Զի ժողովեալ ՚ի յիշատակ մեծի երանելւոյն Յովհաննու և սուրբ վկային Աստուծոյ Աթանագինեայ, յայնմ աւուր խմբեսցեն ՚ի նմին աւանի» (՚ի Բագաւան կամ Դիցնաւան):

երկրորդ տեղւոյն մէջ, այսինքն է, 623 իջի հեղինակն՝ որովհետև ալլուր յանուանէ յիշած չէր, այն պատճառաւ աստ ստիպուած է յիշել՝ հասկանալի լինելու համար: Յունարէն օրինակն՝ փոխանակ « Նաւասարդ աւուրն » (…), կը գրէ ἐν ἡμέρᾳ τῆς πληρώσεως τοῦ ἐνιαυτοῦ, այսինքն է, յաւուրն՝ յորում պտուղն կը լրանայր. և փոխանակ « 'ի նմին աւանի », կը գրէ և յանուանէ զΒαγαυάν: Արդ, այսպիսի տարբերութենէ մի կարող էր նոյնպէս տարբեր արդիւնք առաջ բերուիլ, նկատմամբ այն կրկին տեղեաց, որոնց վերայ է խօսքը, եթէ յունարէնը՝ հայերենին բնագիր եղած լինէր, և կամ գէթ Ե դարու հայերէնը՝ մի ուրիշ կատարեալ օրինակէ թարգմանուած: Սակայն այս երևոյթս ես յոյն թարգմանչի սխալ հասկացողութեանը պարզապէս արգասիք կը համարիմ. որովհետև Մ. Խորենացւոյ և տոհմային աւանդութեանն խսկ կը համաձայնի, որք Նաւասարդի առաջին օրն՝ յորում Ամանորը կը սկսէր՝ և ոչ թէ տարւոյն վերջին օրը կը դնեն հիւրընկալ դից աշխարհաժողով և մեծահանդէս տօնը:

Արդ, 623 իջի հատուածն՝ եթէ Գրիգորի կենսագրին համարիցիք և եթէ կենսագրին Տրդատայ, այս յայտ է, թէ նորա յայտնած պարագայն, այսինքն է, Ամանորոյ հիւրընկալ դից տօնին փոխուիլն 'ի սրբազան տօն և յաւէժ յիշատակ Մկրտչին Քրիստոսի և մեծի պաշտպանին Հայաստանեայցս՝ բոլորովին նոր է և յոյժ հետաքրքրական: Բայց տեղւոյ մթութեանը պատճառաւ՝ այլևայլ մեկնութիւններ տուին գիտնականք նորա մէջ պարունակեալ իրաց: Ես միայն երկու նշանաւոր կարծիք կ'ուզեմ աստ մէջ բերել, այսինքն է, Մ. Էմինին՝ նկատմամբ Ամանորոյ և Գուտշմիդին՝ Աթանագինեայ մասին: Առաջինը՝ հիմն դնելով իւր բանից զԱգաթանգեղոս՝ կը դասէ [1] զԱմանոր ընդ դիս Պանթէոնին Հայաստանի, մականուամբս Վանատուր, դնելով զմեհեան նորա 'ի Բագաւան՝ 'ի գաւառին Բագրևանդայ:

Արդ, այս կարծեացս համեմատ, Հայաստանը պիտի ճանչցած և երկրպագած ըլլար զԱմանոր իբրև անձնաւորութիւն իմն նոր տարւոյն: Կոռնոսի կամ, ըստ զրադաշտական վարդապետութեան, Զրուանայ այս գեղեցիկ ծնունդս, որ ամ յամէ անծերանալի առոյգութեամբ կը նորոգուէր՝ զոյգ ընդ ընթացից Արեգական, բնականաբար չէր կրնար նկատուիլ իբրև գիշատիչ իմն երկրածնաց. այլ իբրև նորոգիչ բնութեան, արգասաւորիչ սերմանց և բերող ամենազան պտղոց: Նորա նուիրուած պիտի լինէին նոր տարւոյն առաջին ամիսն կամ Նաւասարդի առաջին օրն: Արդ, ինչպէս յաւուրս Պա-

1. Ընելով, յէջ 23. " Dans la même famille de dieux se place aussi Amanor. Ce mot est composé de *am* = l'an, et *nor* = nouveau. Amanor veut donc dire : nouvel an. Agathange affirme que ce dieu était le protecteur des fruits et s'appelait aussi : Vanadour tik, dieu donnant asile ou abri „. Իսկ յէջ 24 կ'ըսէ: " Que le lecteur ne s'étonne pas de ce que, prenant pour base les paroles d'Agathange, ***nous rangions Amanor parmi les dieux,*** et que nous ne prenions pas seulement son nom dans le sens de l'idée du nouvel an „.

սեքին բոլոր Հրէայք կը դիմէին յԵրուսաղէմ, այսպէս ևս հեթանոս Հայաստանը կը խմբէր 'ի Բագաւան, յամենայն կողմանց բերելով զերախայրիս նորանոր պտղոց: Այս պատճառաւ ուրեմն ամսով յառաջ փութաց նա ինքն Տրդատ՝ հանդերձ արքունեօք և արքայազունդ զօրօքն 'ի Դիցնաւան, առ 'ի կատարել զօրն մեծ, զոր կենսագիրը՝ Գրիգորին ընդ առաջ երթալու համար եղած կը համարի: Այս նուիրական առաւօտս կատարուած հանդիսից ևթէ ոչ ճըշգրիտ և կատարեալ պատկերն, այլ գէթ քաղցր արձագանգը կու տայ մեզ քաջահնչող մուսայն արքունեաց արին Արտաշիսի՝ այսպէս. «Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի – Եւ զառաւօտն Նաւասարդի. – Զվազելն եղանց և զվազելն եղջերուաց. – Մեք փող հարուաք և թմբկի հարկանէաք», զոր ալարտիմք Գր. Մագիստրոսի: Նման է այս երգս Արուսեան եղբարց երգին, որ 'ի ժամանակս հնձոց կ'ելլէին և կը շրջէին յանդաստանս հնոյն Հռովմայ, և թմբկօք և պարուք կ'երգէին զօրհնութիւնս հնձանեան հօրն Դեմետրեայ կամ Ցերէրէի: Անշուշտ այսպէս կ'ընէին երբեմն ժամանակի նաև արքայեղբայր քրմապետըն Մաժան՝ իւրայովքն հանդերձ, 'ի մուտս Նաւասարդի, օրհնելով Եփրատայ և Երասխայ սրբազան գետոց ամենաբեր հովիտներն և հովտաց արմտիքը: Արմաւիր, Բագարան, Արտաշատ, Երուանդաշատ, սուրբն Անի, Թիլ, Երիզա, Բագայառիճ և Ցաշտիշատ իբրև նուիրական դստերք՝ Եղբօրն-հրոյ (Միհրայ) և Քեռն-Հրոյ (Անահտայ), զմիմեամբք ելևելս կ'առնէին 'ի հանդէս դիցն Ամանորոյ: Եւ Եփրատէս՝ ըստ հաւատարիմ աւանդութեան, «Առանց ինչ անձրևաց առատութեան՝ յորդեալ խրովի և ուռուցեալ՝ պսակս բոլորածև զփրփրադէզ ալեօքն բերէր ընծայ դիցն և 'ի նշանակ պէսպէս յաջողութեան Հայաստան երկրին»: Ազգի ազգի զոհեր և զուշակութիւններ կը լինէին 'ի մեհենին Բագաւանի: Որսորդութիւնք էրէոց և հաւուց՝ մէկ կողմէն, իսկ միւս կողմէն ալ խաղեր և երաժշտութիւններ վեց օր և վեց գիշեր զհամաշխարհի ելևոլսն կը զբաղեցընէին. որոնք ծրի կ'օթէին անդ ընդ յարկաւ և ընդ հովանեաւ Վանատուր դից. առանց արծաթոյ՝ կը հաղորդէին զոհից և կերակրոց, զորս իրենք կը բերէին 'ի դաշտաց և 'ի քաղաքաց: Կարելի է ըսել, թէ այդ օր միայն բարձրաբերձ լեռներով իրարմէ անջատուած Հայաստանի հնգետասան նահանգները կը միանային իւարու հետ եղբայրական սիրով և մեծ ցնծութեամբ, ոչ ինչ ընդհատ 'ի Համաթենական տօնից և ցնծութեանց հնոյն Ելլադայ:

Իսկ գալով Ամանորոյ ստուգաբանութեանն, ես Էմինէն տարբեր համոզումն ունիմ, այսինքն է, իմ կարծիքով չէ պարտ զԱմանոր Հայաստանի դից կամ աստուածոց կարգը դասել. այլ հասկանալի է՝ իբրև տօն ինչ կամ արձակուրդ, զոր անդստին 'ի հին ժամանակաց կը կատարէին Հայք՝ 'ի պատիւ հիւրընկալ դիցն, որոնց հետ մասնաւոր արարուածով միացած էր և՛ վանատուրն: Ո՞վ էր ուրեմն ամանորոյ ամենաբեր այդ աստուածն, և ո՞վ 'ի Բագաւան եկաւոր Հայաստանեայց հիւրընկալն և վանատուրը: Արդ, պէտք է դիտել, որ Ագաթանգեղայ այս խօսքերս «կարծեալ սնոտեացն պաշտա-

մամ », և « դիցն ամենորոյ ... դիցն վանատրի », կրկին և յոգնակի դիմօք եղած բացատրութիւնքը՝ չեն կրնար զԱմանոր յարաբերել պարզաբար, իբրև եզական անձնաւորութիւն ինչ. այլ ուղղակի են յայտարար բազմութեան աստուածոց կամ համօրէն դից Հայաստանի, որոնց մասին՝ մի առ մի խօսեցանք յառաջագոյն. և թէ ՚ի Բագաւան եղած մեհեանն՝ այս պատճառաւ կը կոչուէր Համայնադից Դիցան կամ պարզապէս Դիցաւան: Զայս կ՚ակնարկեն, ըստ իս, Ագաթանգեղոսի 612 իջի խօսքերն « քաղաքագեղն Բագուան, որ անուանեալ կոչի ՚ի պարթեւական լեզուէն Դիցաւան »: Ցիրաւի, ինչպէս ՚ի հնումն Եգիպտացիք, Յոյնք և Հռովմայեցիք բաց ՚ի այն առանձին աստուածներէն և աստուածոց տեղական պաշտամանէն՝ Համայնադից[1] մեհեան և տօն մ՚ևս հաստատած էին, զոր ՚ի տարւոջն միանգամ կը կատարէին աշխարհախումբ ցնծութեամբ. այսպէս ևս Հայք՝ պէտք էր որ ունենային և ունեցան իրօք իւրեանց Համայնադից տօնն. և այս է զոր Ս. Գրիգոր փոխեց ՚ի տօն սրբոց վկայից, և Եկեղեցի սուրբ՝ յետոյ ուրեմն անուանեց Տօն ամենայն սրբոց: Այս մեկնութեամբս միայն կը պարզուի Ագաթանգեղոսէն շեշտուած անուանց պաշտամունքն. այս պատճառաւ միայն հասկանալի կը լինի բովանդակ Հայաստանեայց գումարումն ՚ի փոքրիկն Բագուան:

Թերևս ըսուի, թէ անունս դիք՝ թէպէտև անեզական ըստ ինքեան, բայց աստ եզակի իմաստով մի միայն աստուած կը նշանակէ, ուստի այսպէս հասկանալի է և բառս Դիցաւան: Այսպիսի դժուարութիւն մի՝ ես արդէն լուծուած կը համարիմ կենսագրի վերոյիշեալ բացատրութեամբքը: Սակայն ուրիշ փաստեր ևս կան, որք կը ցուցնեն, թէ Ամանոր անձնաւոր աստուածութիւն մի չէր: Ցիրաւի, առ Ագաթանգեղ՝ դից անունը ճիշդ այն կերպով կը վերաբերի Ամանորոյ՝ ինչ կերպով որ կը վերաբերի Նաւասարդին, որովհետև այդ երկու անուանքը վերլուծելով խսկ կը տեսնենք, որ մի և նոյն նշանակութիւնն[2] ունին. իսկ արդ, դիք անունը կը վերաբերի Նաւասարդին՝ իբրև տօնի կամ աւուր տարեգլխոյ, ուրեմն այսպէս և ամանորոյ: Բ. ինչպէս ամանոր և նաւասարդ անուանց լեզուա‿

1. Առ Յոյնս՝ նշանաւոր էր Աթէնքում 120 մարմարեայ սիւներով Πανθέονը և Հռովմայ մէջ՝ Ագրիպպաս կայսեր ձեռքով կառուցուած անմամն Pantheonը: Արդ, ըստ վկայութեան Դիոն Կասիոսի 53, գլ. 27, և Մակրոբիոսի, 3. Sat. 17, 15. այսպէս և այլ Հռովմէական և յունական հնութեանց հաւաքմունք՝ կը հաստատեն, թէ այդ տաճարաց մէջ զետեղուած էին համօրէն դից պատկերներ և դիւցազանց անդրիք, և զոհիւք կը պատուէին՝ համօրէն դից և Համաթենական տօնից առթիւ, որ կը տևէր 80 օր: Իսկ Բէշըրէլ այսպէս կը գրէ զՊանթէոնէն: “ L'ensemble des figures panthées, petites statues, qui portaient les symboles de plusieurs divinités „. Dictionnaire, T. II, p. 757.

2. Զի Նաւասարդը կազմուած է սանսկրիտ–բակտրիարէն nava նոր և çarad ամ բառերէն, (Burnouf, Jaçna, 37. Lagard, Arm. Studien, p. 115, 111). Այսպէս նաև ամանորը կազմուած է սանսկ. sama, բակտրիարէն hama « ամ » և հայապարթև « նոր » բառերէն: Սակայն դիտելու է, որ ինչպէս sama և hama, այսպէս նաև հայերէն « ամ » բա‿

կան կազմութիւնն՝ է զուտ հնդ–արիական, այսպէս ևս նոցա դիցաբանական ծագումը՝ հնդ–արիական ազգերէն անցած պիտի լինէր առ Հայս. սակայն ոչ ոք 'ի գիտնականաց մինչև ցայսօր գտաւ Հնդիկ և արիական ժողովրդոց մէջ հետս ինչ Ամանոր դից: Պ. Էմին Կրէօցերի մէկ վկայութեանը վերայ հիմնուած՝ կ'ըսէ, թէ Տիւրոսի մէջ տաճարներ ևս կանգնած էին՝ Փիւնիկեցիք 'ի պաշտօն տարւոյն և ամսոց, իբրև նշանակ պարբերութեան երկայն և կարճ ժամանակաց. ուրեմն այսպէս և Հայք յանուն Ամանորոյ: Սակայն այդ աւանդութիւնն ստուգութեան կարօտ է: Մանաւանդ թէ, ըստ իս, պէտք է ըսել, թէ Տիւրացիք պաշտօն կը մատուցանէին ոչ թէ ժամանակին, այլ Արեգական և Լուսնի, որով տարւոյն և ամսոյ շրջանները կը կատարուին: Երկրորդ, եթէ ստուգիւ այնպէս ևս եղած համարինք, ինչպէս կը կարծէ Էմին, սակայն անտի բնաւ չի հետևիր, որ Հայք ևս նոյնպէս ընէին. որովհետև սոքա իբրև արիական ազգ՝ ինչպէս լեզուով՝ այսպէս նաև կրօնիւք և սովորութեամբ սեմականաց հետ վերաբերութիւն չունէին. ուստի պէտք է Հայոց դրացի և համաբուն ազգի մի մէջ որոնել զայն: Առ Պարսիկս՝ կը գտնենք զոյգ տօներ, այսինքն է, Նաւասարդ նոր օր, որ կը համաձայնի Հայոց Նաւասարդին՝ և Միհրական տօնը, զոր կը տօնէին ամառնային գիշերահաւասարին՝ Միհրկան ամսոյն մէջ: Սակայն Պարսիկք այդ տօներով՝ ոչ նոր տարին և ոչ միհրական ամիսն իբրև աստուածութիւն կը ճանչնային. այլ Միհրայ, Ահուրամազդայ և մեզի ծանօթ աստուածոց մեծահանդէս պաշտօններ կը մատուցանէին: Այսպէս ուրեմն պէտք է ըսել նաև Հայոց համար, որոնց կրօնքն և տօներն հասարակաց էին ընդ առաջնոցն: Գ. Բազաւան, որ կը թարգմանի, ըստ Մ. Խորենացւոյ Բ. գլ. ԿԶ. « Բագնեաց աւան », յայտնի կը ցուցնէ, թէ մէկ յատուկ աստուծոյ մի նուիրեալ չէր, այլ թէ բազմաթիւ աստուածոց և կիսաստուածոց բագիններ կային անդ, ընդ որս դասեալ էր և եղբայրն Տիգրանայ վերջնոյ՝ արքային Հայոց, ըստ աւանդութեան Մ. Խորենացւոյ: Արդ այս բազմահմուտ հեղինակս, առ որ ախորժելի է ինձ դիմել միշտ իբրև 'ի դեղփեանն Ապողոն՝ վասն նորապատում և դժուարականճիռն խնդրոց, իւր պատմութեան Բ. Գրոց ԿԶ գլխուն մէջ այսպէս կը խօսի Բագուանի մեհենին և անդ հաստատուած տօնի մասին. « Ցորում պատմէ 'ի մեհենիցն պաշտամանց, վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգերեզման եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի 'ի Բագնեացն աւանի, բագին 'ի վերայ գերեզմանին շինեալ՝ զի 'ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն, և ընդունիցին հիւրք գիշերօթիք: Ցորում և

ըր՝ կը նշանակէ « ամառ », որովհետև ինչպէս ըսուեցաւ, Հայոց ամանորն՝ ամառնային գիշերահաւասարին կը սկսէր, յերևել նորոց պտղոց. այնպէս որ դժուար է որոշել, թէ արդեօք ամառ բառը՝ « ամ » էն ածանցած է, թէ ընդհակառակն ամ բառը՝ ամառէն: Իմ կարծիքով, պէտք է ըսել, թէ ամառ նոյն է ընդ ամ բառին, միայն « առ » նախդիրը նորա վերայ յաւելցած է, նշանակելու համար, թէ ամ՝ առ կամ առընթեր կամ 'ի վերայ կայ:

Լինի վաղարշ տօն աշխարհախումբ կարգեալ 'ի սկզբան ամի Նորոյ, 'ի մուտն Նաւասարդի: Յայսմ պատմութենէ ասեալ մեր երկրորդեցաք քեզ »: Մովսէս ինքնին այս տեղիս մէջ կը բերէ իրմէ աւելի հնտագոյն Բարդածանի մեհենական պատմութեան յունարէն թարգմանութենէն: Արդ, այդ տեղին՝ եթէ Բարդածանին համարինք և եթէ Ողիւբի, այս յայտ է, թէ ամենայն ընդունելութեան արժանի գործ է, և կը պարզէ Ագաթանգեղայ վերոյիշեալ տեղւոյն մթութիւնքը: Ագաթանգեղոս Նաւասարդի տօնը միայն կը յիշէ. իսկ Մովսէս՝ այն տօնին հաստատութեան ժամանակամիջոցն և զպարագայս իսկ կը յայտնէ մեզ: Առաջինը՝ կործեալ անդրեաց պաշտօն մի կը ծանուցանէ, առանց ըսելու թէ ո՛յք էին այդոքիկ. իսկ վերջինը՝ զՄաժան ևս հանդերձ բագնաւ և զոհիւք կը դասէ ընդ նոսա: Առ Ագաթանգեղ իբր թէ Ամանոր և Վանատուր առանձին առանձին աստուածներ եղած լինէին. իսկ առ Մովսիսի թէ՛ Ամանորն և թէ՛ Նաւասարդ պարզապէս իբրև տարեմուտ և ամսամուտ առնուած են, բացատրութեամբ դից բառին: Իսկ վանատուր և հիւրընկալ բառերն՝ երկաքանչիւրին քով անորոշ մնացած են: Թէպէտև առ Մովսիսի՝ Մաժանայ քրմապետին ընծայուած կ'երևին, սակայն ես կախորժիմ իբրև լոկ մականուններ համարել դիցահօրն Արամազդայ: Ցիրսուի, ուրիշ հնդարիական և հնդևրոպական ազգեր ևս, ըստ ասելոյ Կիկերոնի և Ապուլէոսի, զԱրամազդ միայն հիւրընկալ կ'անուանէին, յասելն. Jupiter hospitalis! Hospitalia fulmina!

Իսկ Գուտշմիդ՝ կ'ընդունի, ընդհակառակն, Ագաթանգեղայ այդ և նորա նախընթաց հատուածոց հնութիւնը, բայց Աթանագինեայ պատմական անձնաւորութիւնն՝ առասպելեալ վիպասանութեան կամ դիւցաբանութեան մէջ կ'ընկղմէ, հիմնուելով մէկ կողմէն յանուն Մետափրաստեսի՝ այս սրբոյս մասին մեզի հասած մէկ աւանդութեանը [1] վերայ. իսկ միւս կողմէն այլ յօգուտ 'ի վար արկանելով հին Հայոց տարածայնութիւնն և սրբոյս վկայաբանութեան մէջ պատմուած զարմանագործութիւնքը: Հեղինակս իւր ծանօթ երկասիրութեան 56 իջում մեկնելով Մետափրաստեսի մէկ տեղին՝ կ'ըսէ, թէ Աթանագինեայ այդ՝ է հեթանոսական և նինուայց ապարած

1. Ուր այսպէս գրուած է վասն Աթանագինեայ. Ut autem appropinquavit monasterio, occurrit ei cerva et deosculata est pedes ejus. Dixit ad eam Sanctus : " Privata es fratribus ecce privaris etiam eo qui te enutrivit. Deus universorum sæculorum non permittat, ut quis dominetur tui, neque semen tuum capiant venatores, sed semen tuum ferat sobolem in memoriam nostram, et consumetur in laudem Dei „. Cerva autem flens procidit ad pedes ejus; sed eam obsignans sanctus martyr dixit: " Vade in pace „. Cerva autem adest in commemoratione Sanctorum martyrum adducens domum Deo hinnulum, et lecto evangelio appropinquat altari spectantibus omnibus, et positis genibus suis orat, et relicto pullo revertitur in pace ad locum suum: Hinnulus porro consumitur in gloriam Dei et in honorem sanctorum martyrum „. *Acta Sanct. Julii IV*, 218 *f.*

ԽՌ՝ ծածկեալ ընդ քրիստոնէական քօղով. բայց նա անդստին 'ի վաղ ժամանակաց համարուած էր իբրև պաշտպան և շահապետ անտառաբնակ էրէոց: Եւ այս բանիս ապացոյց կը բերէ Տակիտոսի մէկ տեղին, Տար. ԺԲ, գլ. ԺԳ, յորում կ'ըսուի, թէ Աղիաբենի մէջ կը պաշտուէր իբրև զՀերակլէս որսի աստուած մի:

Ցիրաւի, Աթանագինեայ վկայաբանութեան այն մասն, յորում նա ախուրակեայ զաւազանաւ կը սպանանէ զվիշապն ահագին, կարծէք, թէ ստուգիւ Հերակլէսի կամ վիշապաքաղն Վահագնի արարուածները կը յիշեցնէ: Սակայն իցէ՞ արդեօք բանաւոր, ամէն վիշապ սպանողներ Հերակլէսի կամ Վահագնի հետ շփոթել, և կամ կարծեցեալ եղնըկան հետ ունեցած յարաբերութենէ մի՝ որսի աստուած համարել զնա: Ոչ բնաւ. ապա թէ ոչ՝ Դանիէլ և Ս. Գէորգ եւս պիտի հարկադրուէինք վիշապաքաղ Հերակլէս կարծել: Գերմանացի քննադատը՝ ճարտար է նման անուններէ և դէպքերէ կամուրջ կապել, պատմական իրողութենէ մի՝ վիպասանականին անցնելու համար: Այլ 'ի հետևեալն՝ վիպասանականէն, ընդհակառակըն, կ'անցնի 'ի պատմականն. այսինքն է, առ Փաւստոսի յիշուած Ս. Գրիգորի թոռնորդին եւս որովհետև Աթանագինէս կը կոչուէր, ասոր կը հետևցնէ, յէջ 55, թէ որովհետև թէ՝ կարծեցեալ Ս. Աթանագինեայ նշխարաց բերուիլն 'ի Հայս, և թէ՝ Յուսկան որդւոյն ծնունդը կ'իյնայ մօտ յամն 312. ուրեմն Ագաթանգեղայ աւանդածըն այս վերջնոյս վերայ առնելու է. որովհետև առաջնոյն՝ առ Դիոկղետիանոսիւ նահատակուիլն և հաւատացելոցմէ միաժամանակ տօնուիլն հակասական է:

Սակայն Գուտշմիդ ինչպէս իւր առաջին եզրակացութեանն՝ այսպէս և երկրորդին մէջ կը սխալի. և նորա սխալ կարծիքը սոյն կըրկին Աթանագինէսնելու մասին՝ հիմնուած է Մետափրաստեսի և Փաւստոսի վերոյիշեալ տեղեաց թիւր հասկացողութեանը վերայ: Ցիրաւի, Փաւստոս՝ Գրիգորի թոռնորդւոյն անուան հետ 'ի միասին կը ծանուցանէ նոյնպէս նորա ծննդեան և վարուց պարագաները, որով սա այնպէս կը հակադրուի Ս. Աթանագինէսի, ինչպէս չարը բարւոյն. ուստի չէր կարող Գրիգորի Կենսագրին այնպիսի նկարագրութեան առիթ տալ, զոր կ'ընթեռնումք առ Ագաթանգեղ: Մանաւանդ թէ, նորա ծննդեան թուականն իսկ ընդունելով իբրև ստոյգ, այս հակառակ հետևութիւնն անտի կարելի է առաջ բերել, թէ որովհետև այն ժամանակ կամ անկէ քիչ առաջ բերուեցան Ս. Աթանագինէսի նշխարքն 'ի Հայս և ծանօթացաւ նոցա այս մեծ վկայս. ուստի Գրիգորի թոռնորդին այդ ժամանակ ծնանելով՝ արժանի եղաւ կրել իւր վերայ նորա անունը, թէպէտ և իւր զեղծ վարուքը գլխովին անարժան ըրաւ նա ինք զինքը իւր անուանակցին: Եւ յիրաւի, եթէ Աթանագինէս հեթանոս Հայաստանի ծանօթ դից անուն եղած լինէր, անշուշտ յառաջագոյն իսկ այդ անունը կրող պատմական անձինք պիտի լինէին առ Հայս, ինչպէս եղան Տրդատ և Միհրդատ՝ յանուն Տիր և Միհր դից: Իսկ Ս. Աթանագինեայ մասին՝ կ'երևի, թէ Գերմանացին միայն Սիմ. Մետափրաստեսի և Ս. Բարսը-

ղի Յաղագս Հոգւոյն Սրբոյ՝ ընդդէմ Ամփիլոքեայ գործերը կը ճանչնայ, որոնց աւանդածն իրարու հակասական կը դատի. որովհետև առաջինը՝ սրով գլխատուած կ'աւանդէ զնա, իսկ վերջինը՝ հրով այրուած: Ստուգիւ սրբոյս նահատակութեան պարագայից մէջ կայ հակասութիւն մի, այս անուրանալի է. սակայն երկոքեան խսկ նորա մահը Դիոկղետիանոսի հալածանաց ժամանակ կը դնեն, այսինքն է, 303–305: Ուստի յամին 311–312 կարող էր Գրիգոր բերել զնա 'ի Հայս: Սակայն Ս. Աթանագինեայ հայերէն և ամենահին վկայաբանութիւնն, որ 'ի Հիլարիոնէ ականատես անձնէ գրուած է, ըստ խորին քննութեան Հ. Մկրտ. Աւգերեան (Վարք Սրբոց, հտ. Դ, էջ 353, ծանօթ.), ոչ միայն վերոյիշեալ յոյն հեղինակաց մէջ եղած հակասութիւնը կը վերցնէ, այլ Գուտշմիդի կարծիքն ևս 'ի հիմանց կը տապալէ: Արդ, յայսմ կ'աւանդուի, թէ Ս. Աթանագինէս յիրաւի, ըստ ասելոյ Ս. Բարսղի, հրոյ դատապարտեցաւ, բայց հրոյ մէջ դեռ չի մտած, երբ բազկատարած կ'աղօթէր, «Կէս աւուր հեղձանօք» մեծատուն և ազնուազգի՝ յորմէ կ'ակնածէին սպասաւորք ատենին, և անուն նորա Նաւեբէա, անկաւ առաջի սրբոյն մեծաւ հառաչմամբ և ասէ. «Աղօթեա վասն իմ սուրբդ Աստուծոյ»: Աթանագինէս կը խոստանայ նմա կատարել զխնդրուածս, եթէ իւր մարմինն ամբողջովին հասցնէ յագարակն իւր Փիլակինոն, 'ի հանգիստ սրբոց, զոր նա ինքն շինած էր: Եւ երբ մտաւ նա 'ի հուրն և աւանդեց զհոգին, փութաց բարեպաշտուհին Նաւեբէա առ Ագրիկողայոս դատաւորն և խնդրեց զմարմին վկային. որ և շնորհեց նմա ծածուկ 'ի բազմութենէն և 'ի պատիւ մեծազգի կնոջն: Յետ այնորիկ կ'ըսէ, թէ երևցաւ Ս. վկայն՝ Նաւեբէայի, ծանուցանելով, թէ բարեխօսեցի վասն քո և թողան մեղք քո. իսկ կինն հաւատացեալ յԱստուած՝ «Վասն որոյ զամենայն ժամանակս կենաց իմոց դարձայց դարէ դայր խնկով և եղով անուշիւք, և զարժանաւոր պատիւն հատուցանէր նմա»: Արդ, վկայաբանութեանս պատմական կերպով կատարուած Նաւեբէայի դէպքն՝ այլաբանօրէն գրուելով, առ Մետափրաստէսի, փոխասանութեան կերպարանք առած է. սակայն cerva իգական բառս՝ յայտնապէս կը յարաբերէ զՆաւեբէա, և ես համոզեալ եմ, թէ առ Մետափրաստէսի եղած այդ վէպիկն ևս՝ պէտք է, որ շատ հին եղած լինի: ԶՆաւեբէա՝ եղնըկան նմանցնելու՝ փոխասանին շարժառիթն ևս շատ պարզ է և հիմնաւոր, եթէ նախկին դարու սրբազան հնութիւններն աչքէ անցնենք: Բազմաթիւ նկարներ և խորաքանդակներ, ինչպէս նաև Պոնտիանի մկրտարանն և այլ և այլ անօթներ՝[1] կը ներկայացնեն մեզ զեղջերուն՝ իբրև Նշանակ[2] մեծի տենչանաց երեխայից կամ նորադարձ հաւատացելոց՝ ընդունելոյ զմկրտութիւն: Ըստ այսմ ուրեմն հինաւուրց փոխագիրն հեթանոսիկ Նաւեբէայի՝ անձնաւորեց զնա յեղջերու կամ յեղնիկ, ցուցա-

1. Paciaud, De baln., p. 137.
2. L'abbé Martigny, Dictionnaire des Ant. chrétiennes, p. 79. Paris. 1877.

*նելու համար նորա յաւէժ յիշատակաց աւուր ժամանի սէլին առ Ս. վկայն Աթանագինէս: Ուրեմն իրն յինքեան այսպէս լինելով, իրաւունք ու նէին Զենոբ և կենսագիրն Գրիգորի, ստէպ ստէպ յեղյեղել Աթանագինեայ վկային Աշխարաց բերուիլն 'ի Հայս՝ զոյգ ընդ Յովհ. Մկրտչին, և փոխադրութիւն նոցա յայլևայլ տեղիս, առանց հակառութեան:*

*Այսուհետև տեսնենք, թէ այս պանծալի սրբոց տօնի հաստատութիւնը, զոր աւանդեն մեզ Գիրք Ագաթանգեղայ, յէջն 623, ինչ հիման վերայ հաստատուած է: Այս և սորա հետևեալ գլխահամարքն ամենայն իրօք կարող եմք այն սակաւագիտ տեղերէն համարել, որոնց մասին քաջ կը համաձայնին բոլոր հին մատենագիրք և աւանդութիւնք ազգիս: Յիրաւի, Զենոբ Տարօնի պատմութեան 35 էջում յետ մկրտութեան՝ անդէն և անդ կը յարէ այս նուիրական տօնախմբութեանս հաստատութիւնն, ասելով. « Եւ առեալ ածէ (Գրիգոր) զնոսա՝ 'ի տէրունական տաճարն. և* **տօն մեծ կարգադրեաց տայր կատարել**, *որ* **օր մի էր Նաւասարդի** *»: Ասորին այս տեղովս՝ կը միացնէ Ագաթանգեղայ 622 և 623 իջից անջատուած պարբերութիւնքը: Փաւստոս, Գ. Դպրութեան Գ. գլխում, խօսելով Վրթանիսի 'ի Տարօն երթալուն վերայ, իբրև միակ պատճառ այնմ՝ զայս եղած կը յիշէ. « Քանզի այսպէս իսկ սովոր էին եպիսկոպոսապետքն Հայոց, հանդերձ թագաւորօք և մեծամեծօք և նախարարօք և աշխարհախումբ բազմութեամբք պատուել զնոյն տեղիս, որ յառաջն էին տեղիք պատկերաց կռոցն, և ապա յանուն Աստուածութեան սրբեցան, մանաւանդ յայն 'ի գլխաւոր տեղին եկեղեցին ժողովել 'ի* **յիշատակ սրբոցն**, *որ անդ էին, կատարել ամի ամի* **եօթն** [1] *անգամ »:*

1. *Փաւստոսի այս բացատրութիւնս՝ գլխովին մի նոր իրողութիւն կը յայտնէ, զոր չէ մարթ գտնել ոչ առ Ագաթանգեղ և ոչ իսկ առ Զենոբայ: Արդ, հեղինակիս « եօթն անգամ » խօսքերն եթէ վերաբերենք « սրբոց, որք էին անդ », այսինքն է, Յովհաննու և Աթանագինեայ, դարձեալ անհասկանալի և անմիաբանելի կը մնան ընդ աւանդութեան կենսագրին Գրիգորի. որովհետև գիտեմք, թէ Ս. Գրիգոր մի միայն տօն հաստատեց նոցա, և ոչ թէ եօթն՝ 'ի տարւոջ: Զենոբ՝ Անդրէաս և Ղուկաս Առաքելոց նշխարքն ևս բերուած կը համարի 'ի Հայս. արդ սոցա հետ եթէ զՍուրբն Հռիփսիմէ, Գայիանէ և զմիւսորն ևս հաշուենք՝ կը լինին եօթն, 'ի յիշատակս որոց մարթ է ասել, թէ եօթն այլևայլ տօնախմբութիւններ կը կատարուէին: Սակայն ես կարծեմ, թէ այս մեկնութեամբս Փաւստոսէն խոտորած կը լինինք. որովհետև նորա խօսքն՝ ուղղակի Յովհաննու և Աթանագինեայ տօնին վերայ է: Ուստի ըստ իս կարելի է ըսել, թէ կամ առ Մեծն Ներսիսիւ հայաստանեայց եկեղեցին եօթնաթիւ տիտղոսներով կը տօնախմբէր զսուրբն Աստուծոյ, այսինքն է, Ա. իբրև զՅովհաննէս, Բ. զԿարապետ, Գ. զՄկրտիչ, Դ. զՄարգարէ, Ե. զԱռաքեալ, Զ. զՄարտիրոս և Է. իբրև զԱնապատական և ճգնաւոր: Յիրաւի, այս բանս կը տեսնուի նախ Յովհաննու վերայ երգուած Շարականին մէջ: Բ. Անդստին 'ի վաղ ժամանակաց հետէ այս տիտղոսներս իբրև յատուկ անուններ կը կրէին իրենց վերայ հայաստանեայք: Եւ կամ ըսել, թէ Գրիգորի ժամանակէն 'ի վեր եօթն տեղ տարածուած էին Յովհաննու նշխարքը և եօթն եկեղեցիք կանգնուած էին 'ի պատիւ սրբոյս, յորս առնէին տօնախմբութիւնս առանձինս՝ ամի ամի:*

Եւ Դ. Դպրութեան ժԵ գլխում, պատմելով զերթն Գնէլայ 'ի Շահա-պիվան՝ կ'ըսէ. « Եւ յայնմ աւուր (Նաւասարդի) Տօն դիպեցաւ յի-շատակի Մեծին Յովհաննու, որ 'ի Գրիգորէ և 'ի Տրդատայ հաստատե-ցաւ »: Մեծն Սահակ Պարթև 'ի Զ. կանոնի[1] անդ Յաղագս կարգաց Ուխտի և որդւոց Վանաց, կ'ըսէ. « Տօն սրբոյն Յովհաննու Մկրտչին և Վկային, զոր նախակարգեաց առաքեալն և խոստովանողն Քրիստոսի և հայր վերստին նորոգման բոլոր Հայաստան աշխարհիս Գրիգորիոս 'ի վանս »: Բաց 'ի սոցանէ Հայաստանեայց Եկեղեցւոյ միւս յիշատա-կարանք ևս, այսինքն է, հնագոյն Տօնացոյց և Ճաշոց և Յայսմա-ւուրք, անժխտելի վկաներ են այս տօնիս հաստատութեանը, զի կը գրեն. «Նաւասարդի Ա տօն է ծննդեան[2] Յովհ. Մկրտչին, զոր կար-գեալ է Ս. Գրիգոր Լուսաւորիչ» : Հուսկ ուրեմն անժխտելի կերպով կը վկայեն այսպիսի մի եղելութեան Հայաստանի ժողովրդեան կեն-դանի աւանդութիւնն և բազմադարեան ընթացքն, որ Դ դարէն սկսեալ մինչև ցայսօր դադարած չէ. այլ մանաւանդ, թէ իւրեանց բաղդաւորութեան և թէ անբաղդ օրերուն մէջ դիմած են գունդա-գունդ դէպ 'ի այն նուիրական սրբավայրն, ուր կը հանգչին ոս-կերք սրբոց՝ յընդունելութիւն պէսպէս խնդրուածոց. ո՛ր և է դժուա-րին ձեռնարկ մի սկսելու համար՝ կը կոչեն յօգնութիւն զիշխողն Մշոյ զՍ. Կարապետ, և գուսանք իսկ՝ տաղօք և նուա՛գօք կ'երգեն ա-մենուրեք նորա զարմանագործութիւններն. միով բանիւ, նոցա ըն-տանեկան կենաց և սրտի մէջ գոգցես իմն կենդանի է տակաւին մեծն 'ի ծնունդս կանանց Ս. Յովհաննէս՝ բոլոր իւր զօրութեամբք և նշանիւքը:

Եկեղեցական կալուածոց և հողերու մասին հատուածներն, որք կը պարունակուին 586–587, 589 և 624 էջերում, այնպէս քաջ կը համաձայնին իրերաց, որ տարակուսելու այլ ևս բանաւոր պատ-ճառ չկայ, թէ դոքա առհասարակ մի և նոյն հնագոյն յաղբերէ յա-ռաջ եկած լինին: Սակայն ոչ ինչ ընդհատ զարմանալի է նաև վե-րոյիշեալ երեք հնագոյն հեղինակաց համաձայնութիւնը: Փ. Բուզան-դացին, Ե. Դպրութեան ԼԱ գլխում, Պապայ անմիտ գործոց մէջ՝ կը

1. Սոփ. հայկ. հտ. Բ. էջ 110. և յայլևայլ Կանոնագիրս:
2. Դիտելու ենք, որ Ս. Գրիգոր, մի միայն տօն հաստատեց 'ի մէկն Նա-ւասարդի՝ որ է Օգոստոս 11, ըստ Յուլեան տումարի, յորում աւուր զոյգ ընդ Յովհաննու կը տօնուէր և Աթանագինէս վկայն, ըստ Ագաթանգե-ղոսի և Զենոբայ: Աւգերեան՝ յաւուրս թարգմանչաց վերածուած կը համարի զտօնս զայս 'ի պատիւ ծննդեան Ս. Կարապետին և զատեալ 'ի տօնէ տարեգլխոյ: Այս բանիս ես ընդդիմութիւն մի չունիմ. մանա-ւանդ թէ 611 և 623 իջից քննութեան մէջ իսկ արդէն դիտեցի այսպի-սի մի տարբերութիւն: Սակայն ինձ այսպէս կ'երևի, թէ Յունուար 14 կատարուած տօնն, յորում Յովհաննէս միայն կը տօնուի և Աթանագի-նեայ չիք յիշատակ, նոյն է Գրիգորէն հաստատուած տօնին հետ, բայց յետոյ Հայոց նոր թուականն հաստատուած ժամանակ, փոխեցին 'ի սկիզբն Յուլեան տարւոյն, յետ ութօրէից Յայտնութեան և Մկրտու-թեան, որ է սկիզբն Տօնացուցին մերոյ. որովհետև Ս. Յովհաննէս էր մեծն և առաջին՝ տօնելի սրբոց մէջ:

թուէ նաև եկեղեցական հողերու սեղանակապուտ յափշտակութիւնն, ասելով. «Եւ ձեռն եա յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր նախահօրն Տրդատայ առ ձեռամբ Գրիգորի քահանայապետիւ 'ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց: Զի եօթն հողոյն՝ զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր»: Փաւստոսի այս տեղւոյս իբրև անմիջական աղբիւր եղած է Ագաթանգեղայ 621 իջի հատուածն: Նոյնը կը հաստատէ մ' Զենոբ, Պատմ. Տարօնի էջ 37, խօսելով Գլակայ վանքի մասին, յանուանէ կը յիշատակէ նորա եօթնաթիւ կալուածները, այսինքն է, Կուառս, Մեղտի, Բրեխ, Մուշ, Խորնի, Կեղի և Բուղ մեծամեծ աւանները, զորս Գրիգորի կենսագիրն 'ի լռութեան թողած էր, և կ'ըսէ. «Արդ, այս աւանազեղք 'ի բնէ տուեալ էին նոցա 'ի ծառայութիւն, զոր և իշխանքն տարբեալ հասարակեցին 'ի սեր եկեղեցւոյն, առ երեսուն և երկու նուով: Զայս այսպէս կարգեալ էր որդւոյն Գրիգորի»: Արդ, առ Զենոբայ եղած այս հատուածս թէպէտ և համաձայն է Ագաթանգեղայ 587 և 589 իջից աւանդութեանն, ուր մեհենաց ստացուածքն՝ եկեղեցւոյ կը նուիրին, սակայն մի ուրիշ պաշտօնական կամ դիւանական աղբերէ հանուած է, այսինքն է, 'ի «Գրոց [1] Իշխանաց Մամիկոնէից», զոր մեկն բանիւ կը յիշէ անդ հեղինակն հատուածոյս: Սակայն դիտելու ենք, որ վերոյիշեալ եօթն

1. Այս գրուածքս տակաւին յայտնուած չէ. ցանկալի էր լսել 'ի Զենոբայ գէթ տեղեկութիւնս ինչ զայնմանէ: Սակայն ես կարծեմ, թէ ոչ ամբողջական երկասիրութիւն մի էր այդ, և ոչ այլ Զենոբ՝ Տարօնի պատմութիւնը գրած ժամանակ կարող էր զայն կարդալ: Արդ, բաց 'ի այդ տեղէն, այլուր Մամիկոնեան անուան հետքն անգամ չի գտնուիր առ Զենոբայ և չէր մարթ գտանիլ, զի նախահայրն Մամիկոնէից՝ Մամգուն՝ Տրդատայ թագաւորի վերջի տարիները եկաւ 'ի Հայս, և Սլկունեաց իշխանի սպանման առթիւ, որ ապստամբած էր ընդդէմ թագաւորին, իբրև վարձ իւր ծառայութեանն՝ ընդունեցաւ զերկիր նախապետութեան Սլկունեաց զՏարօն, ըստ վկայութեան Մովսիսի, Բ. գլ. ՁԴ և ՁԱ: Իսկ Զենոբ այդ ժամանակ արդէն իսկ կնքած էր իւր մահկանացուն. որովհետև Յովհ. Մամիկոնեանէն գիտենք, թէ Տրդատայ մկրտութենէն 20 տարի վերջ՝ այլ ոչ ևս էր. իսկ Տրդատ յետ այնորիկ 30 տարիներ դեռ ևս թագաւորեց: Ուստի յանուն Զենոբայ յիշուած Մամիկոնեան իշխանաց այդ գիրքն ուրիշ բան չէր, ըստ իս, եթէ ոչ Գլակայ վանքի դիւանական դաշնագիր մի, զոր կնքեցին Մամիկոնեան իշխանն Մուշեղ և վանահայրն Թոդիկ. և թէ վերոյիշեալ տեղին՝ Յովհ. Մամիկոնենոյ ընծայելի է, քան թէ Զենոբայ: Եւ իրօք այսպիսի եղելութեան շօշափելի ապացոյցը կու տայ մեզ նա ինքն Յովհաննէս՝ Տարօնի պատմութեան Ա. գլխուն մէջ, յասելն վասն Թոդկայ. «Սա 'ի տէրդայութենէ ստացաւ զառաքինութիւն ... որ եղև սիրելի իշխանին Մամիկոնէից Մուշեղայ. և իշխանն բազմացոյց սմա դաստակերտս բազումս: Սա բազում կրօնաւորս կարգեաց 'ի Գլակայ վանսն ... անձինս երեք հարիւր»: Իսկ յէջ 12 մի և նոյն գլխուն մէջ. Արծրունեաց իշխանին Վարդայ համար կ'ըսէ, թէ «Կշռեաց քսան և երկու հազար դահեկան և ետ իշխանին Տարօնոյ, և գնեաց զԿուառս և զՊարեխ և ետ զնոսա վանացն, զորս իշխան ումն անօրէն (Հայր Մարդպետն) տանն Մամիկոնէից (Արծրունեաց) կտրեաց զերկու աւանսն 'ի վանացն և ետ գուսանի ումեմն կնոջ:

աւաններով միայն չէին սահմանուիր եկեղեցական կալուածները, որովհետև ասոնք միայն մայրավանիցն Տարօնի սեփականուած էին. այլ Փաւստոսի վկայութեան համեմատ « Ընդ ամենայն երկիրն Հայոց », այսինքն է, Հայաստանի իւրաքանչիւր գաւառին մէջ, ագարակ տեղերը՝ չորս չորս, իսկ յաւանս՝ եօթն եօթն հող յատկացուցեալ էին Ուխտին Եկեղեցւոյ, ըստ ասելոյ Ագաթանգեղայ. այնպէս որ այդ ամէնքն 'ի միասին գումարելով, ո՛ր և է նախարարական կամ նոյն իսկ արքունի կալուածներէն աւելի ընդարձակ էին. և այս է բուն պատճառն, որուն համար յետոյ թագաւորն Պապ և Հայր Մարդպետ սկսան իրենց նախանձու և ատելութեան սուրը դարձնել ընդդէմ եկեղեցական ժառանգութեան և հետ զհետէ տկարացնել զայն: Ոչ ինչ ընդհատ քան զՓաւստոսին և Զենոբայն՝ նշանաւոր է նաև Սահակայ Պարթևի վկայութիւնն, որ 'ի Գիրս [1] կանոնադրութեան, « Յաղագս կարգի սպասաւորաց սրբոյ եկեղեցւոյ և պտղոց ժողովրդականաց ընծայելոց 'ի Տունն Աստուծոյ », ուր կ'ըսէ. « Քանզի Լուսաւորիչն Հայոց մեծն Գրիգոր ... մանաւանդ թագաւորն և պայծառացեալն հաւատով Տրդատ՝ ոչ սակաւ օժիտս տայր սպասաւորաց և որդւոցն քրմաց՝ ասելով. Անդէն հայրապետականն ամենայնիւ իրչս և ագարակս և երախայրիս 'ի սուրբ Եկեղեցւոյ »:

Ի Փոքուն Հայոց գունդագունդ կրօնաւորաց և եկեղեցականաց եկաւորութեանն և վանական կարգաց հիմնարկութեան հատուածները, որ յէջս 605 և 623, կրկին հաստատութիւն կ'առնուն նախ Զենոբայ երկասիրութեամբը. մանաւանդ թէ, ոչ ինչ առ Ագաթանգեղ անորոշակի և հարևանցի կերպով կը յիշուին, առ Զենոբայ՝ պարզուած և ընդարձակուած են, ուրոյն առանձին պատմութեամբ և ներքին և արտաքին վերաբերութիւններով: Թէպէտև այդ երկասիրութեան մէջ կան տեղիք ոչ սակաւք և տարակուսական անուանք բարձր աստիճան եկեղեցականաց. բայց անուրանալի են նաև շատ և շատ հարազատ աւանդութիւններ, որոց մասին կը համաձայնին Փաւստոս և Մովսէս իսկնին: Բ. Ս. Սահակայ Գ Կանոնին մէջ, ուր վանական հաստատութեան և նորա բարձրագոյն նպատակին վերայ կը խօսի, յասելն. « Զոր և երիցս երանեալն քաջ նահատակն Քրիստոսի Գրիգորիոս՝ կարգեաց (այսինքն է, հաստատեաց) շնորհելով նմա 'ի Հոգւոյն Սրբոյ զօգուտ մատակարարութեան »: Բայց ասոնցմէ աւելի հնագոյն և խօսուն վկայ՝ է Ս. Գրիգորի անուամբ մեզի հասած Յաճախապատում գիրքը, ուր բաց 'ի զանազան տեղեաց, վերջին գլուխն իսկ ամբողջապէս նուիրուած է 'ի խրատ և 'ի շինութիւն կրօնաւորաց: Արդ, այս բանս անհասկընալի կը մնայր՝ եթէ նա կրօնաստաններ հաստատած չլինէր:

Յէջ 625–626, հրամանաւ Տրդատայ, դպրոցաց հաստատութեան, — մանկանց հաւաքման և հելլէն և ասորի դպրութիւն ուսանելու հատուածներն՝ ըստ ամենայնի պատմական տիպ ունին, և Կորեան

1. Սոփ. հայկ. հտ. Բ. էջ 101:

լով բանաքաղութիւն վինել շատ հեռի են: Այսպիսի մի ստոյգ եղելութեան հնագոյն ապացոյցն է՝ Գրիգորի և Տրդատայ անուամբ առ նախարարս Նխաորացւոց և առ Տիմոթէոս Ագդենացւոց (?) եպիսկոպոսն գրուած Գլակայ վանաց դիւանական[1] թուղթն, որով Հայաստանի կրկին լուսաւորքն՝ քահանայներ կը խնդրեն, ասելով. « Զի ոչ եւս ձանձրանալոյ եղիցին 'ի տրտմոյ են, և ոչ ոք 'ի նոցանէ բաւական 'ի քահանայութիւն » : Բուզանդացին Փաւստոս, Դ. Դպրութեան Դ. գլխում, յետ ասելոյ վասն Ս. Ներսիսի. « Զի 'ի վերայ նորոգոյ՝ նմանեաց լուրոյ Հօրն Մեծին Գրիգորի, զնոյն նորոգեաց առաքելաշնորհս, նոյն գործ երևեալ», անդէն կը թուէ 'ի համանման գործս նորա և « շինուածոյն 'ի տեղիս տեղիս տաճարաց » յունարէն և ասորերէն յամենայն գաւառս Հայոց »: Բուզանդացւոյ այս տեղիս գրեթէ բառ առ բառ Ագաթանգեղոսէն առնուած է. և այս բանս՝ Ներսիսի գործերը՝ Գրիգորի գործոց հետ բաղդատելէն խսկ յայտնի կը լինի, զորս նա Ագաթանգեղայ գրութենէն կը ճանչնար:

Իսկ 626–627 էջ եղած պարբերութիւնն, որ կը սկսի. « Հասանէր յառաջագոյն 'ի դաստակերտն իւր յ[illegible]՝[2] յԱյրարատեան գաւառին՝ 'ի Վաղարշապատ քաղաքն », պակասաւոր կը

1. Որովհետև ոչ մի ազգային առանձնայատկութիւն կամ սնապարծութիւն չի տեսնուիր. այլ առանց ծածկելու կը պատմէ Հայոց՝ առ Յոյնս և առ Ասորիս դիմելու պէտքն, այս ժամանակիս մէջ: Մինչդեռ Գրիգորի կենսագիրն ըռելիայն կ'անցնի: Այսպիսի երևոյթներ այլուր ևս յայտնի կը տեսնուին. օրինակ իմն, Գրիգորի ուղեկից նախարարաց զժտութիւնն ընդ Կեսարացւոց՝ վասն նշխարացն Յովհաննու և Աթանագինեայ, և Անգեղտան իշխանի յանդուգն և ապերախտ խորհուրդն՝ այրելոյ զԿեսարիա, զոր Ասորին՝ մեկն բանիւ կը պատմէ, և որուն կը համաձայնի նաև Սիմէոն ոմն հայկազն (տես 'ի մեծ Տօնականն Պարիզու թիւ 46. ճառ ճկգ). իսկ Գրիգորի կենսագիրը բոլորովին ծածկել է՝ լռութեան քօղի տակ: Սակայն այս և սոյն օրինակ բազմաթիւ օրինակներ բաւական են ցուցանել, թէ նա ազգային ոմն էր:

2. Ցիրաւի, այս տեղւոյս խանգարման մի այլ նշան է, այդ յատուկ անունն, որ իւր նախընթաց և հետևորդ բառերովը կը պակսի յունարէն օրինակի մէջ: Իսկ հայերէն օրինակներէն ոմանք Ըռոտստակ, և այլք Ըռոտոտակ կը գրեն: Յովհ, կաթողիկոս՝ խօսելով զՍահակայ Գ. կ'ըսէ, թէ « Սա նախ կարգեալ էր յեպիսկոպոսութիւն Ռոտակաց »: Յովհաննէսէն յիշուած այս անունս՝ կը թուի ցուցանել մեզ գաւառ ինչ անյիշատակ մնացեալ 'ի Մովսիսէ: Ինճիճեան (Հնախ. հայ հտ. Գ, էջ 285), և Հ. Մ. Չամչեան, Պատմ. հայոց. հտ. բ. էջ 712, 761 և այլն, կը դնեն զայս 'ի Կորճեայս: Սակայն ոչ է ուղիղ. որովհետև Յովհաննէսի միւս տեղերէն կը տեսնուի, թէ Մեծ Ատրպատականի մէջ էր այդ գաւառն, և Ագաթանգեղոսէն յիշուած տեղւոյն հետ բնաւ վերաբերութիւն չունի: Հ. Ղևոնդ Ալիշան, Տեղգր. Հայոց Մեծաց, էջ 89, Ռոսաստակ գաւառ մի կը յիշէ « Ընդ Մեծ–կողմանս և ընդ Մեծ–իրանս », այսինքն.է, Ուտի և Արցախու մէջ: Սակայն այս իսկ օտար է 'ի յիշատակելոյն յԱգաթանգեղոսէ, զի հեղինակիս խօսքն ուղղակի Այրարատ գաւառին և Վաղարշապատու մօտ տեղւոյ մի վերայ է: Մեծանուն հեղինակս՝ այլուր (« Այրարատ », էջ 204), խօսելով Վաղարշապատու կամ քաղաքուդաշտի վերայ՝ Ագաթանգեղայ սոյն տեղին մէջ կը բերէ և կ'ըսէ, թէ Ռոտստակ յառաջ եկած է պարսկերէն رستاق (Ռուստակ) բառէն, ըստ վկայութեան Նազութի, որ կը նշանակէ երկիր մշակեալ, յորում

տեսնուի, որովհետև նախընթաց պարբերութեան մէջ Տրդատայ վերայ կը խօսուի. իսկ աստ յանկարծակի խօսքը Գրիգորի վերայ կը դառնայ, առանց յանուանէ յիշելոյ զԳրիգոր: Սակայն հանդերձ այսու՝ այս հատուածս թէ՛ ճԻ գլխահամարով սկսող և թէ՛ իւր յաջորդ պարբերութեանց հետ սերտ յարաբերութիւն ունի. իսկ Տրդատայ և նորա գործոց նուիրուած հատուածը՝ կցկցեալ մնացած է: Ուստի-հօս իսկ կը տեսնուին հետք կրկին աղբերաց: Բայց Գրիգորի կենսագիրն յառաջ վարելով իւր ընթացքը՝ կը ծանուցանէ զշինութիւնս եկեղեցեաց. այլ նորա միակ նպատակն է աստ զկատարումն շինութեան Կաթողիկէին Էջմիածնի ածել 'ի հանդէս, որուն ձևն և հանգամանքները նկարագրեց 'ի Տեսլեան անդ: Եւ յիրաւի, որովհետև յէջ 624 ծանուցուեցաւ արդէն շինումն եկեղեցեաց «յամենայն աշխարհս, 'ի կողմանս և 'յաւանս», և աստ վերստին ծանուցանելու բնաւ հարկ չի կար, բաց 'ի այս նոր պարագայէս, այսինքն է. «Եւ զնկարեալ տեղի տաճարն Աստուծոյ շինեաց զցուցեալն նմա 'ի Տեսլեան, զյառաջագոյն զդրոշմեալն իւր»:

Եպիսկոպոսաց ձեռնադրութեան և թեմակալութեան մասին՝ երեք պարբերութիւններ նուիրուած են. բայց երեքն ալ իրարմէ ընդհատուած են ուրիշ և բոլորովին տարբեր հատուածներով, և կապուած են այլևայլ պարագայից հետ: Յէջ 624, ուր դեռ առաջին անգամ խօսք կը լինի եպիսկոպոսաց վերայ, փոխանակ նոցա ձեռնադրութիւնը պատմագրելոյ՝ թեմակալութիւնը կը յիշէ, ըսելով. «Սոյնպէս և զեպիսկոպոսսն **վարժեցուցանէր 'ի գիտութեան** ժողովրդոցն Տեառն»: Սակայն նոցանէ ոչ միոյն թեմն յանուանէ յիշուած չէ: Յէջ 630, ճԻԱ գլխահամարում, ուր խօսքը շինակեաց, լեառնակեաց, անձաւամուտ և արգելական վանականաց վերայ է, յանկարծակի մի և նոյն պարբերութեան մէջ կը փոխուի քրմաց որդւոց և նոցանէ ձեռնադրուած 12 տասան եպիսկոպոսաց վերայ, զորս յանուանէ իսկ կը յիշէ, առաջնոյն և երկրորդին թեմը միայն ծանուցանելով. այսինքն է Աղբիանոսին՝ «'ի վերայ կողմանցն Եփրատական գետոյն», և Եւտաղիոսին՝ «վայրացն Բասենոյ»: Իսկ միւսներուն անուանց համար կ'ըսէ. «Թէ և կամիցի ոք, **ոչ կարասցէ**

իցեն աւանք, և այլ քաղաքք փոքունք: Այս մեկնութիւնս քաջ կը պատշաճի Վաղարշապատու: Սակայն դիտելու ենք որ Գրիգորի կենսագրին խօսքը ոչ եթէ Վաղարշապատու, այլ նորա մօտ գտնուած մի յատուկ տեղւոյ վերայ է, զոր և Դաստակերտ Գրիգորի կ'անուանէ: Արդ, զՎաղարշապատ նկատելով իբրև եկեղեցական վիճակ միայն՝ կարելի էր լինել դաստակերտ Գրիգորի: Սակայն աստ դաստակերտն յատկացեալ է Ըռոտստակին և ոչ Վաղարշապատու, այնու զի վերջինս առանձին իմն կը յիշուի յառաջնոյ անտի: Ուստի աւելի հաւանական կը թուի ինձ սեփականել այդ նորալուր անունը Ագաթանգեղայ, յէջ 545, յիշուած մշակեալ և ծառախիտ «այգւոյն», յորում կը գտնուէր հնձանն և Գրիգորի օթևանը, յառաջ քան զձեռնադրութիւն իւր: Եւ յիրաւի, այս ճշմարտութիւնս աւելի յայտնի կը տեսնուի նաև յէջն 171 մէկ տեղով և սանսկրիտ rôhanta բառէն, որ կը նշանակէ ծառս և տունկս պտտատուողս, կամ որթս, ըստ վկայութեան Բիւռնուֆի:

շարժել » : Արդ, դիտելու է, որ այս վերջին խօսքերուս հեղինակն ուզած է վերջնականապէս ծանուցանել, թէ բաց 'ի դոցանէ ուրիշ բազմաթիւ եպիսկոպոսներ ևս ձեռնադրած էր Գրիգոր, որոց անուանները դժուար էր նմա իմանալ կամ գրել: Սակայն, յէջ 637, հակառակ այսպիսի վերջնական ծանուցման, երրորդ անգամ մի ևս դարձեալ խօսքը կը դառնայ 'ի Գրիգորէն ձեռնադրուած եպիսկոպոսաց վերայ, բայց այնպիսի չհաւատալի պարագայներով, որուն վերայ յիրաւի է՛ տարակուսիլ. այսինքն է, նախընթաց պարբերութեանն, որ կ'աւարտի այս բառերով. « Երթեալ (Գրիգոր) ընտրէր անձին իւրում կայս հանգստեան յանապատ տեղիս, և անդ բնակէր, և յանապատին լուսաւորէր զամենեսեան », անմիջապէս յաջորդ պարբերութիւնն այս խօսքերով կը բացուի. « Եւ բազմացոյց կացոյց տեսուչս եպիսկոպոսս յամենայն գաւառս Հայոց իշխանութեան իւրոյ. և որ եպիսկոպոսական յաստիճան ձեռնադրեցան 'ի նմանէ, աւելի քան զչորեքհարիւր եպիսկոպոսունս » : Արդ, այս վերջին պարբերութիւնս նախ բնաւ վերաբերութիւն չունի ոչ իւր նախորդին և ոչ իսկ յաջորդող պարբերութեան հետ: Երկրորդ, նորա աւանդածը չափազանցութիւն է և հեռի 'ի ճշմարտութենէ կը թուի ինձ: Յիրաւի, մեծին Ներսիսի ժամանակ, երբ ամենէն աւելի ծաղկեցան կարգաւորութիւնք եկեղեցւոյ և բազմացաւ թիւ եպիսկոպոսաց, սակայն 400 եպիսկոպոսունս ոչ ոք կը յիշէ, թէ եղած լինին և հազիւ թէ կարէին՝ լինել, յայնժամու պահանջման համեմատ. ևս առաւել ուրեմն առ Գրիգորիւ: Արդ, այս թիւս անհաւանական կը մնայ նոյն իսկ կենսագրի հետևեալ խօսքերով. « Բազմացոյց կացոյց տեսուչս եպիսկոպոսս յամենայն գաւառս իշխանութեան իւրոյ »․ իսկ արդ այս գաւառացս թիւն էր ըստ Մովսիսի և Հ. Ղ. Ալիշանի (Տեղգր. Հայոց մեծաց) 189. իսկ ըստ ժամանակակից վկայութեան Զենոբայ՝ (Պատմ. Տարօնոյ, էջ 13) 620, և ոչ թէ 400: Մանաւանդ, դիտելու է Ասողկան յետագայ խօսքերն, թէ « Որ և գաւառին մին մի քահանայ կամ երկու լոկ թէ հանդիպի » : Արդ, Տրդատայ ժամանակի Հայաստանի գաւառաց թիւն եթէ 400 էն աւելի համարինք և եթէ նուազ, այս յայտնի է, թէ ուր մէկ մէկ քահանայ հազիւ կը գտնուէին, անդ անկարելի է, որ եպիսկոպոսական առանձին աթոռներ ևս եղած լինին: Կենսագրիս 400 թիւը՝ միայն առ Մեսրովբայ Երիցու տեղի ունի. բայց մեծին Ներսիսի պատմութեան հեղինակն՝ անկէ հաստատուած բերդից և իշխանաց կ'ընծայէ զայն և ոչ թէ եպիսկոպոսաց: Իսկ եթէ Գրիգորէն ձեռնադրուած համարիմք իրօք այն 400 եպիսկոպոսունքը, յայտ է թէ յընթացս 30 ամեայ հօտապետութեան նորա հաւանական է, կամ ցվախճան կենացն. յորմէ կը հետևի թէ, Ագաթանգեղայ գիրքն ևս պէտք է որ Գրիգորի մահուանէն տարիներ վերջ գրուած լինէր:

Արդ, Ագաթանգեղոսեան գրոց ինչպէս այս վերջին տեղիս՝ այսպէս նաև երկրորդն, այսինքն է 630 իջի տեղին՝ չկարէ Գրիգորի ժամանակակից Ագաթանգեղոսի գործ լինել: Եւ յիրաւի, նախ զի Զենոբայ վերոյիշեալ իջում, այսինքն է, առ Եղիազար և Տիմոթէոս եպիսկո-

պոռտնիս գրուած հրաւիրանաց թղթոյն մէջ՝ կ'ըսեն թագաւորն Տրդատ և իշխանք Հայոց, թէ « Դեռ մանկունք երկրիս 'ի դպրոց են » այլովքն հանդերձ: Սոյնը կը վկայէ որոշակի նոյն իսկ Ագաթանգեղայ 626 իջում Տրդատայ պատմութեան միջանկեալ հատուածագիրն. « Ածել յարուեստ դպրութեան ... առաւել զազգս պղծագործ քրմաց, ըմանկանս նոցա 'ի նոյն ժողովել գումարել », և այլն: Արդ, այս տողերս գրողն և իրին ականատես Ագաթանգեղոսն՝ [Մ]ինչպէս կրնար ուրեմն մի և նոյն ժամանակ և մի և նոյն երկարութեան մէջ ծանուցանել յական յանուանէ այդ քրմածին մանուկներէն ձեռնադրուած 12 եպիսկոպոսներն, առանց հակասութեան, ասելով. « Այսք՝ որ յորդւոցն քրմացն ընտրեցան լինել եպիսկոպոսք »: Բ. Հեղինակ հատուածիս կը ծանուցանէ, թէ միւս եպիսկոպոսաց անուանքն եթէ ուզէր ևս չէր կարող գտնալ[1]. արդ, եթէ նա ստուգիւ ժամանակակից լինէր և յարքունի կամ կաթողիկոսական դիւանաց առնելով գրած լինէր այս տողերս՝ կարելի բան չէ, որ անգիտանար նոցա անուանքը: Գ. Յորդւոց քրմաց կամ հնդկային եկացմէ ձեռնադրեալ եպիսկոպոսաց անուանքը, բաց 'ի Տէրէկէ-էն, միւսներն յունական և ասորի հնչումն ունին: Դ. Ե թէ այդ եպիսկոպոսներն առ Գրիգորիւ և 'ի Գրիգորէ ձեռնադրուած և թեմական առաջնորդութիւնս ստացած լինէին, հարկաւ ծանօթ պէտք էին լինել նաև Զենոբայ. սակայն ասորի հեղինակս ոչ ոք կը ճանչնայ յայտնապէս, բաց յԱղբիանոսէ. և Աղբիանոսի ոչ ազգը կը յիշէ և ոչ թեմը: Իսկ քրմական ցեղի մասին այնպիսի դառն կշտամբանօք կը խօսի Տարօնի պատմութեան Ա. Պատճենում, յէջ 36, յասելն. « Զի ազգն այն յորժամ դարձան 'ի Քրիստոս՝ չէին կատարեալ 'ի հաւատսն ... այլ խաբէութեամբ զայս հնարեցան, ծամ միայն թողուլ 'ի գլուխ մանկանցն, զի զայն տեսեալ՝ յիշեսցեն զպաշտօն պղծութեան իւրեանց: Զոր և ես աղաչեմ զձեզ, զգոյշ կացէք՝ զի մի այս և 'ի ձերում երկրիդ սերմանեսցի », զոր չէր մարթ խօսել առանց վիրաւորելոյ այն պատկառելի և բարձրաստիճան եկեղեցականաց պատիւն և անունն, եթէ իրօք 'ի քրմաց անտի ձեռնադրուած լինէին: Այս տեղիս՝ նման բանիւք՝ բայց տարբեր պարագայիւք կը գտնուի նաև Փաւստոսի Գ. Դպրութեան ԺԳ. գլխում, և 'ի հասարակի Հայոց վերայ առնուած. սակայն առ Զենոբայ՝ աւելի յարմարութիւն ունի և կարելի է ճշմարիտ համարել: Ե. Աղբիանոսի համար ըրած Ագաթանգեղայ այս բացատրութիւնս, թէ « Որ այդ (ժամանակաւ) կողմանցն եփրատական գետոյն լինէր վերակացու » ոչ միայն համեմատութեամբ յետին ժամանակի գրչութեան նշան է և ուղղակի կը հակասէ յաջորդ պարբերութեանն, ուր կ'ըսուի, ընդհակառակն, թէ « Եւ զԱղբիանոս վերակացու թո‿

1. Զի յունարէն օրինակն այսպէս կը գրէ, « τῶν δὲ λοιπῶν τὰ ὀνόματα δυσθεώρητα, εἰ καὶ βουληθείη τις ἐξειπεῖν », այսինքն է, իսկ զայլոց անուանս՝ դժուարին է գիտել, թէպէտև մէկը կամենար իսկ յայտնել:

դոյր արքունական դրան ճանաչին ». այլ ըստ իս Փաւստոսի Գ. Դպրութեան Դ. գլխոյն հետևեալ տեղւոյն բանաքաղութիւն է, ուր կ'ըսուի Վաչէի համար, թէ յետ ջնջելոյ զապստամբող տոհմս Մանաւազէից և Որդունեաց՝ հրամանաւ Խոսրովու և Վրթանիսի, « Եւ զգահն և զբուն գահոյից գեւղն նահապետին Մանաւազենից եպիսկոպոսին Աղբիանոսի՝ յեկեղեցի. զՄանաւազակերտ ամենայն սահմանօքն և գաւառականաւն հանդերձ՝ որ շուրջ զնովաւ էր, որ կայ 'ի կողմանս գետոյն Եփրատայ »: Չէ և չէ մարթ ըսել, թէ Փաւստոսի այդ տեղին յԱգաթանգեղոսէն առնուած է, որովհետև այն պարագաները՝ զորս կը յիշէ Բուզանդացին այդ գլխուն, չեն գտնուիր առ Ագաթանգեղ: Սակայն զԲուզանդացին այստեղ իսկ բաղդատր կը համարիմ ես, զի կը թուի ցուցանել մեզ, թէ Աղբիանոս Մանաւազէից տոհմէն եղած լինի: Եւ յիրաւի, զի այս պատճառաւ Աղբիանոս կը ղրկուի իբրև միջնորդ և բարեխօս առ Մանաւազեանս, այս պատճառաւ նոցա ժառանգութիւնն Աղբիանոսի կը շնորհուի, այս պատճառաւ դարձեալ ոչ միայն Աղբիանոս[1], այլ նոյն իսկ Աղբիանոսի տոհմէն ընտրուած Յուսիկ, Շահակ և Զաւէն կաթողիկոսներն ևս՝ Մանաւազակերտի կամ Մանազկերտի եպիսկոպոսներ ձեռնադրուած էին: Կը ցաւիմ, որ Փաւստոսի գրոց այդ գլխոյն վերջի տողերն խանգարուած են, յորում « եպիսկոպոսն Բասանու » և « յերկրին Բասանու » բացատրութիւններն անհասկանալի կը մնան: Սակայն ըստ իս, Փաւստոսի թէ՛ այս տեղէս և թէ՛ յայլոց տեղեաց կը տեսնուի, թէ Որդունեաց ժառանգութիւնն այլ՝ նոցա եպիսկոպոսին տրուեցաւ. և թէ այդ երկու իշխանական տոհմերն՝ հանգոյն տոհմիցն Կօլօննայ և Բօրգէզէի՝ Դ. դարում այն քան զօրացել էին և իրարու հակառակամարտ կանգնել, որ իրենց եպիսկոպոսներն անգամ լաւ և վատ կը ջանային արծաթով մատուցանել 'ի բարձ կաթողիկոսութեան, և զոչ եպիսկոպոսունս՝ յեպիսկոպոսութիւն երկրին իւրեանց: Բայց Մանաւազակերտի վերոյիշեալ անարժան եպիսկոպոսաց՝ զկնի միմեանց կաթողիկոսական գահուն վերայ բարձրանալը՝ արդիւնք համարելու է կամ Մանաւազեանց յաղթական հանդիսանալուն 'ի վերայ Որդունեաց, և կամ շնորհիւ մեծին Աղբիանոսի, որուն ազգակից և տոհմակից կ'անուանէ զնոսա Փաւստոս:

Առ Փաւստոսի կը գտնենք ագաթանգեղոսեան գրոց վերոյիշեալ տեղում յիշուած եպիսկոպոսներն ևս: Յիրաւի, Զ. Դպրութեան Դ. գլխոյն մէջ կը յիշուի Ասպուրակէս իբր եպիսկոպոս Մանազկերտի, « այր քրիստոնէամիտ, աստուածապաշտ և արդար, և առաջնորդ

1. Փաւստոսի Ն. օրինակն, որուն տարբերութիւնքը դեռ անցած չեն ոչ վենետկոյ և ոչ իսկ Պատկանեանի տպագրութեան մէջ, 530 էջում այսպէս կը գրէ. « Եւ ետ զաւանն և զբուն գահոյից գիւղն նահապետին, Մանաւազխենից (Մանաւազենից) եպիսկոպոսին Ալբիանոսի »: Արդ նահապետէն վերջ դրուած ստորակէտն, որ տպագրութեանց մէջ կը պակսի, աստ որոշակի կը ցուցնէ, թէ անունն՝ Մանաւազենից եպիսկոպոսին կը վերաբերի և ոչ թէ նահապետին: Նոյնը կ'աւանդուի նաև Ն. Դպրութեան ԻԹ. գլխում;

ղրանն Խոսրովու », որ յետ Շահակայ՝ եղև եպիսկոպոսապետ ամենայն Հայոց: **Արոէն՝** կը յիշուի Է գլխում, իբրև եպիսկոպոս Բասենոյ. « այր ծերունի պատուական », սրբութեամբ և գիտութեամբ երևելի 'ի մէջ ժամանակակից եպիսկոպոսաց, և աշակերտ Դանիելի: Ը, Թ, և Ժ գլխոց մէջ կը յիշուի **Յովհան** եպիսկոպոս և որդի Փառինայ, « այր կեղծաւոր, տգէտ, ագահ և խեղկատակ վարուք ». ԺԳ գլխում կը յիշուին **Տիրիկ** և **Մովսէս**, զոյգ « եպիսկոպոսք Բասենոյ գաւառին, արք լաւք և հրեշտակակրօնք »: Հուսկ ապա ԺԱ գլխուն մէջ կը յիշուի **Կիւրակոս** եպիսկոպոս Տայոց, որ Շահապ ևս կը կոչուէր, ըստ ասելոյ Փաւստոսի. էր « այր ճշմարիտ աստուածապաշտ, և ըստ կամացն Աստուծոյ վարէր զեպիսկոպոսութիւն իւր »: Իսկ **Եւտաղիոս**, **Ագապէս**, **Անտիոքէս**, **Բասսոս** և **Եւսեբիոս**՝ նիկիական Հայոց ցուցակէն առնուած են, որուն հայերէն օրինակն ևս ունինք, թարգմանեալ յասորերէնէ: Եւ յիրաւի, այս բանիս ակն յայտնի ապացոյց կը համարիմ ես, առաջին երեք անուանց ուղղագրութիւնն՝ որ ըստ ասորերէնին տառադարձուած են և ոչ ըստ յունարէնի. զի յունարէն Εὐθάλιοςը՝ պէտք էր որ Եւթաղիոս տառադարձուած լինէր, ինչպէս դարձուցել է Մ. Խորենացի [1], Բ. գլ. ՂԹ: Այսպէս նաև 'Αντίοχοςը՝ Անտիոքոս, և 'Αγάπιοςը՝ Ագապիոս, ինչպէս ըրած է Գործոց Առաքելոց թարգմանիչը: Լանգլուա (Agathangelos, p. 135), կ'ըսէ, թէ հայերէն Ագաթանգեղոսի **Ագապեան**՝ է սխալ ընթերցումն أجغيس անուանս: Ծիրանաւորն Պիտրա [2] ևս կը վկայէ, թէ Նիկիոյ ժողովական Հայոց անուանց հայերէն ցուցակին յասորի բնագրէն թարգմանուած լինելը՝ բնաւ տարակոյս չի վերցներ, և թէ այդ պատճառաւ այն անուանքն աղաւաղուած են:

Արդ, Ագաթանգեղայ 630 իջի տեղին այսպէս պարզելէն վերջ, այս եզրակացութիւնս պէտք է ընել. այսինքն է, այդ հատուածի գրողը՝ կամ Գրիգորի կենսագիրը՝ պէտք է որ Փաւստոսին ժամանակակից կամ լաւ ևս մերձաւոր եղած ըլլայ ժամանակաւ. որովհետև վերոյիշեալ եպիսկոպոսներէն ոմանք՝ Խոսրովու, իսկ այլք Տիրանայ և Արշակայ ժամանակներ կ'ապրէին: Եւ կամ գրոցս խմբագրողին ընծայելի է, որ յետոյ ուրեմն ներմուծեց անդ այն անուանքն և 400 եպիսկոպոսաց թիւն, զոմանս 'ի Փաւստոսէ և զայլս նիկիական Հայոց ցուցակէն և յազգային աւանդութենէ մուրալով. այսու միայն հասկանալի կը լինի նորա ըսածը, թէ « Եւ զայլոցն անուանս թէ և կամիցի ոք, ոչ կարասցէ շարժել »:

Յէջ 627–628 հատուածն՝ յորում մի առ մի կը յիշուին Գրիգորի

1. Եւթաղս այս, ըստ Մովսիսի, էր եպիսկոպոս Եդեսիոյ, որ Արիստակէսի, Յակ. Մծբնացւոյ և Յովհաննու Պարսից եպիսկոպոսին հետ 'ի Կեսարիայէն անցած ժամանակ՝ ականատես եղաւ սքանչելեացն, որ եղաւ Գրիգորի Աստուածաքանի հօր մկրտութեան ժամանակ՝ 'ի Ղևոնդիոսէ:
2. Analecta Sacra Spicilegio Solesmensi, T. IV. Parisiis, 1883, p. 462.

աւետարանական քարոզութեան սահմանքը[1], որք մեծագոյն հնութեան տիպ կը թուին ընծայել մեզ ըստ ինքեան. որովհետև այդ սահմանները՝ կը գծեն մեզ Հայաստանի աշխարհագրական այն տարածութիւնը, որում վերայ կարող եղեն իշխել մեծն Խոսրով և Տիգրան, բայց ոչ նոյնպէս և նոցա յաջորդքն: Արդ, այս տեսակէտովս մտածելով, պէտք է ըսել, թէ ոչ Փաւստոս և ոչ այլ ոք յետ նորա կարող էր այսպիսի նկարագիր մի ընել. զի Դ. դարու կէսէն վեր՝ Հայաստանի այս սահմաններս փոխուած էին և նորա իշխողաց տէրութիւնը կարի յոյժ ամփոփուած էր, ինչպէս յառաջագոյն տեսնուեցաւ Կոտակն Խոսրովայ և նորա յաջորդաց մասին խօսած ժամանակ: Արդ, Ագաթանգեղայ գրոց այս իջում գծուած Հայաստանի արևմտեան սահմանը խիստ յայտնի է. նոյնպէս արտաքին պատմագրութենէ իսկ կը գիտցուի, թէ հինաւուրցն Սատաղ՝ Հռովմայեցւոց կը վերաբերէր: Իսկ հարաւէն երբ կը դնէ Ամիդ, Կորդուք և Նոշիրական գաւառներն, այս անհասկանալի է: Ցիրափ, եթէ այդ գիծը կը քերէր առ Կ[illegible], անկարելի է որ նոյնը կարենար անցնիլ ՚ի նմին ժամանակի նաև առ սահմանօք Ասորւոց և առ Նոշիրական երկրաւ. որովհետև վերջնոյս և Կորդուաց մէջ կեցած են իբրև անանցանելի պատնէշք Տաւրոս լերանց գօտիքն՝ ուրիշ սեփական գաւառով: Դարձեալ եթէ մի միայն գաւառ ևս եղած համարինք Կորդուք և Նոշիրական, մին միայն կարէր սահման համարուիլ: Արևելքէն յիշուած սահմանագլուխը՝ Պարսից կամ մեծ Ատրպատականն է, և այս իսկ հասկանալի է: Սակայն աստի դէպ ՚ի հիւսիս գծուած սահմանն, այսինքն է Կասպից ծովէն՝ մինչև ցՄազքութս, ցԴրունս Ալանաց և ցԿաղարջս՝ դարձեալ անհասկնանալի կը մնայ. որովհետև այդ սահմանին համեմատ՝ Աղուանք և Վիրք Հայաստանի սահմանաց մէջ փակուած պիտի լինէին և ոչ թէ նորա սահմանից արծաններ. մանաւանդ զի Փայտակարանն իսկ՝ «քաղաք արքայութեան Հայոց» եղած կ՚աւանդուի անդ: Արդ, հօս յիշուած Փայտակարանը կամ տարբեր լինելու է այժմեան Վրաստանի մայրաքաղաքէն, որ յետոյ Տփղիս

1. Այսինքն է, արևմուտքէն՝ Սատաղ քաղաքն և Խաղտիք, յորոց ձգուած առաջին գիծը՝ կ՚անցնէր Եկեղեաց գաւառին և Դարանաղեաց արևմտեան եզերքէն, կը քերէր զԱկն, զԱրաբկեր և զՄելիտինոյ սահմանքն և կը հասնէր մինչև յԱմիդ և Տիգրանակերտ: Աստի կը սկսէր երկրորդ գիծն, որ հարաւէն կը քերէր, ըստ անտիպ Աշխարհագրութեան Հ. Ղևոնդ Ալիշանի, զՆոշիրական երկրաւ, և առ սահմանօք Ասորւոց, այսինքն է, Մերտնոյ և Մծբնայ գաւառօք, առ Կորդուօք և կը հասնէր մինչև յերկիրն Մարաց, այսինքն է, անցնելով Կապուտակ ծովուն հարաւային եզերքէն՝ կը հասնէր մինչև ցԱտրպատական: Երրորդ գիծը՝ կը սկսէր Կասպից ծովուն արևմտեան եզերքէն, կը հասնէր մինչև Բաքու. և անտի կ՚երկայնէր չորրորդ գիծը, անցնելով մինչև ՚ի սպառ ՚ի սահմանս Մազքթաց, մինչև ՚ի դրունս Ալանաց, առ Փայտակարան քաղաքաւ և մինչ առ Կաղարջօք, մինչև որ Պարխար և Խաղտեաց լեռներէն անցնելով կը միանայր առաջին գծին հետ. այսպէս կը բոլորէր Հայաստանի սահմանը, ըստ վկայութեան Ագաթանգեղայ:

կոչուեցաւ, և կամ Ագաթանգեղայ այդ աւանդութիւնն հակապատ_ մական համարելու է. որովհետև թէ՛ արտաքին և թէ՛ տոհմային պատմագիրք [1] շօշափելի փաստերով կ'ապացուցանեն մեզ, թէ առ Տրդատաւ, ինչպէս նախ քան զՏրդատ և յետ Տրդատայ, Վրաստան էր առանձին թագաւորութիւն. և թէ Փայտակարանը նոցա կը վե_ րաբերէր: Իսկ Փաւստոս Ե. Դպրութեան ժԵ գլխուն մէջ որոշակի կը ծանուցանէ, թէ հնոյն Հայաստանի սահմանը Կուր գետէն անդին չէր անցնէր, յասելն վասն Մուշեղայ. «Եւ զհին սահմանսն, որ յա_ ռաջն էր մեր յերկիրն Հայոց և ընդ երկիրն Վրաց, որ է ինքն մեծ գետն Կուր, այնուհետև յինքն վարեալ դառնայր անտի»: Ես ա_ ռաջին կէտը իբրև մի ստոյգ եղելութիւն կը համարիմ, և հետևեալ վկայութիւնքը կը հաստատեն զայն: Զենոբ՝ Տարօնի պատմութեան 35 իջում՝ բոլորովին տարբեր ուղղութեամբ մի վերայ կը դնէ զՓայ_ տակարան քաղաք, «ուր էին և պաշտօն քրմերից». և հօն կը ղրկէ իշխանն Անգեղտան՝ 438 որդիս քրմաց, Արծանայ պատերազմի ժամանակ: Մ. Խորենացի Գ. գլ. Գ դեռ աւելի կը պարզէ՝ դնելով զայն 'ի կողմանս «արևելեայ հիւսիսոյ», ուր կը թագաւորէր յետ մահուն Տրդատայ՝ իշխանն Աղուանից Սանատրուկ, և կը խորհէր տիրել բոլոր Հայաստանի: Այս գլխոյս մէջ՝ Մովսէս կը ծանուցանէ դալըծեալ, թէ Փայտակարանէն Տրդատայ կողմէն ղրուած իշխան_ ներն եկան առ Տրդատ և «ասեն ցարքայն. Եթէ կամիցիս ուղղոր_ դութեամբ վարել ըստ հաւատոյ կողմանցն այնոցիկ, առաքեա նոցա եպիսկոպոս 'ի զաւակէ Ս. Գրիգորի». իսկ միւս կողմանէ ընդհանուր աւանդութիւն է, թէ Գրիգորիս եկաց եպիսկոպոս Աղուանից և ա_ նոնցմէ սպանուեցաւ. ուրեմն պէտք է որ Փայտակարան քաղաքս նա՝ կամ յԱղուանս եղած լինի և կամ 'ի նահանգին Փայտակարա_ նու: Փաւստոս, Ե Դպրութեան ժԴ գլխոյն վերնագիր դնելով «Ցա_ ղագս Կասբից», անդէն կը յարէ, թէ «Մուշեղ խնդրէր զվրէժ 'ի Փայտակարան քաղաքէ»: Ագաթանգեղոս իսկ վերոյիշեալ իջում՝ Հայաստանի արևմտեան սահմանաց գիծը բռնելով՝ կ'անցնի Ալա_ նաց դռնէն, և հասնելով մինչև յարևելեայ հիւսիսային սահմանա_ ծայրն Կասբից՝ անդ կը յիշէ զՓայտակարան քաղաք: Ուրեմն Մով_ սիսի, Փաւստոսի և Ագաթանգեղոսի վկայութեան համաձայն՝ պէտք է, որ Փայտակարան քաղաքս եղած լինէր կամ Վարդանակերտն, որ և Սալիան, և կամ այժմեան Բաքու. և թէ իրօք Հայք՝ առ Տրդա_ տաւ վերստին նուաճեցին և կալան մինչև Կասբից ծով տարածուած երկիրներուն:

Արդ, այս մեկնութեամբս կը վերնայ Ագաթանգեղայ 628 իջի հակասութիւնը գէթ Փայտակարանի նկատմամբ. սակայն նկատ_ մամբ Մազքթաց և Ալանաց՝ դարձեալ իւր ուժի մէջ կը մնայ. որով_ հետև Վրաց տարեգիրք, որոնց կը համաձայնին և Յունաց և Հայոցն

1. Սոկրատ, Ա. գլ. Ի: Սոզոմէն, Բ. գլ. Է: Ռուփինոս, Բ. գլ. ԼԴ: Թէո_ դորետոս, Ա. գլ. ԻԴ: Իսկ Վրաց նախկին անկախութեանը կը վկայեն Ստրաբոն և Տակիտոս, հաւատարիմ պատմութեամբք:

իսկ կը ցուցանեն մեզ, թէ Մեծին Խոսրովու մահուանէն վերջ, յորում ժամանակի համդիպեցաւ նաև Վրաց Արշակունի թագաւորին Ասպակուրէ մահը, Սասանեանք տիրեցին նոյնպէս Վրաստանի, և Արտաշրի որդւոյն Միհրանայ ձեռքով վերականգնեցաւ Միհրական հարստութիւնն 'ի Վիրս: Ուստի 27 տարիէն վերջ երբ խոսրովածինն Տրդատ թագ կապելով եկաւ 'ի Հայս և, ըստ կենսագրին, «զհայրենեաց տէրութիւնն յինքն նուաճեաց, և զօրացաւ 'ի վերայ սահմանաց նորա», այսինքն է, մինչև ցԿասբից ծով եղած երկիրներուն, դարձոյց իւր յաղթական զէնքերը Վրաստանի վերայ: Սակայն Միհրան լրրև ազգակից և դաշնակից Պարսից՝ ընդդիմացաւ նմա. և կ'ըսուի, թէ յաղթելով իսկ Հայոց՝ արշաւեց 'ի սահմանս Հռովմայեցւոց, բայց յաղթուելով Կոստանդիանոսէն՝ յետս դարձաւ: Այնուհետև փոխանակ Հայոց՝ Հռովմայեցւոց գերիշխանութեանը ներքև ընկաւ: Այս ժամանակէն ուրեմն Կուր գետն եղաւ [1] իբրև յաւերժական սահման Հայոց և Վրաց թագաւորութեանց մէջ: Այսպիսի մի եղելութեան ուրեմն անժխտելի ապացոյց է Փաւստոսի վերոյիշեալ տեղին ևս: Այսպէս եղան նաև Աղուանք և Կովկասային միւս ազգերն, ըստ աւանդութեան Մ. Կաղանկատուացւոյ: Ուրեմն Ագաթանգեղայ վերոյիշեալ հատուածին հեղինակն՝ երբ Աւետարանի քարոզութեան հետ 'ի միասին՝ Տրդատայ ժամանակի աշխարհագրական սահմանին ևս հիւսիսէն կը ձգէ մինչև 'ի դրունս Ալանաց և Մազքթաց, այսինքն է, մինչև Վրաստանի հիւսիսային սահմանածայրը, չի կրնար ստոյգ և պատմական համարուիլ: Խորենացին՝ իւր Պատմութեան Գ. գրոց Զ. գլխուն մէջ կը թուի հաստատել զասացեալն Ագաթանգեղայ, խօսելով Տրդատայ որդւոյն Խոսրովու մասին այսպէս. «Եկեալ Անտիոքոս (զօրավար Կոստանդոսի) թագաւորեցոյց զԽոսրով, և զչորեսին սպարապետան մատոյց 'ի նոյն իշխանութիւն զօրու, որ հաշտեցեալ էր Տրդատայ յիւրում կենդանութեան ... առաջին՝ Բագարատ ասպետ, զօրավար արևմտեայ գնդին. երկրորդ՝ Միհրան առաջնորդ Վրաց և Բդեաշխ Գուգարաց»,

1. Ils traversèrent (Mihran et Chapouh) l'Arménie, sans résistence de la part du roi Trdat, qui se contenta de défendre les villes et les laissa dévaster le pays: ils pénétrèrent donc en Grèce. L'empereur Constantin par la force de J.-C., mit leurs bataillions en déroute, tailla en pièces cette multitude et la dispersa. Constantin les poursuivit et pénétra dans leurs domaines ... Mirian se tint dans la Géorgie. Il était très-découragé ... Il expédia un ambassadeur à l'empereur Constantin pour lui demander la paix et pour lui promettre de le servir et d'exterminer les Perses. L'empereur, qui rédoutait une nouvelle attaque du roi de Perse, fit sa paix avec Mirian. Il prit en ôtage le fils du roi Mirian, nommé Bakour, réconcilia ce dernier avec Trdat et lui procura son alliance ... Il fixa également leurs frontières de telle sorte, que les contrées dont les eaux coulent vers le Sud et tombent dans l'Araxe appartiendraient à Trdat; mais que celles dont les eaux vont au Nord, s'unir au Mtcouar, seraient à Mirian „. Brosset, Hist. de la Géorgie, I. Partie, p. 88, 89.

և այլն: Արդ, Մովսիսի այս աւանդութիւնս ստոյգ իսկ համարելով, պէտք է ըսել, կամ այս Միհրանս տարբեր է 'ի թագաւորէն Վրաց և միայն Գուգարաց կողմնակալ էր, և կամ բոլորովին կը հակառակի Փաւստոսի, Վրաց և Յոյն պատմագրաց ընդհանուր աւանդութեանը, որոնք Միհրանայ թագաւորութիւնը՝ Տրդատէն տարիներով յառաջ և Հայոցմէ ազատ եղած կը համարին: Ագաթանգեղոսեան գրոց 597 էջն ևս ուղղակի հերքումն կը համարիմ ես Մովսիսի, ուր Հայաստանի վեցտասան կուսակալութիւնքը յանուանէ կը յիշուին, բայց Վրաց և Աղուանից՝ բնաւ յիշատակութիւն չկայ. որոնք պէտք էր որ յիշուէին, եթէ իրօք Տրդատայ տէրութեան մասը կը կազմէին: Արդ, յետ այսպէս պարզելոյ Հայաստանի սահմանաց խնդիրն, պէտք է ըսել, թէ Ագաթանգեղոսի 628 էջի հատուածըն՝ ուղղակի 31 էջում եղած մէկ տեղւոյն վերայ յետոյ ուրեմն 'ի խմբագրէն յերիւրեալ է. և կամ ուրիշ պարագաներ ևս 'ի սկզբան անդ կը պարունակէր, որք Կոռնոսի գիշատիչ ժանեացը զոհ լինելով՝ նոցա կմախքը միայն այժմ կը ներկայանայ մեզ: Ցիրափ, Մ. Խորենացի, Բ. գրոց ՁԶ գլխում, զոր ուղղակի Սոկրատէն քաղելով բառ առ բառ մէջ կը բերէ՝ Վրաց առաքելուհւոյն Նունէի և նոցա դարձի մասին, մէջ ընդ մէջ ուրիշ հատուածներ ևս կը ներմուծէ, որոնք ոչ միայն չեն գտնուիր առ Սոկրատայ, այլ նոյն իսկ տրամագըծապէս կը հակառակին աւանդելոցն 'ի նմանէ. օրինակի աղագաւ, ուր Սոկրատ և Վրաց պատմութիւնը կ'ըսեն վասն երանելւոյն Նունէի, թէ յղեց արս հաւատարիմս առ Կոստանդիանոս և անտի խնդրեց քահանայս և այլն. Մովսէս, ընդհակառակն կ'ըսէ, թէ առ Ս. Գրիգոր յղեաց, այլովքն հանդերձ: Սակայն դիտելու է, որ Մովսէս Սոկրատէն խոտորած ժամանակ, ուղղակի Ագաթանգեղայ գրքէն հատուածներ փոխ կ'առնէ. յորոց մին է և հետևեալն վասն սրբոյն Նունէի. « Առաքելուհի եղեալ, քարոզեաց 'ի **Կղարջաց աշխարհն առ Դրամբէ Ալանաց** և **Կասբից** և մինչև 'ի սահմանս **Մասքթաց**, **որպէս առաջնորդէ տեղ Ագաթանգեղոս** »: Արդ, այս վերջին խօսքերս այժմեան Ագաթանգեղոսի թէ՛ հայերէն և թէ՛ յունարէն օրինակաց մէջ Լուսաւորչայ համար զուրցուած են: Իսկ եթէ, հնագոյն բնագրի մէջ ստուգիւ Նունէի համար զուրցուած լինէր, Վրաց և նոցա սահմանակից կովկասային ազգաց դարձի արարուածներով, ինչպէս կը պատմէ Մովսէս, այն ատեն ոչ միայն Ագաթանգեղայ 628 էջի հատուածի դէմ զինուող դժուարութիւնքը կը հալւէին, այլ նորա աւանդածը քաջ հասկանալի և պատմական ճշմարտութիւն կարէր համարուիլ. իսկ ճակառակ պարագայից մէջ՝ պէտք է ըսել, թէ Ագաթանգեղայ 627–628 էջերու հատուածն իսկ՝ 49 և 103–104 էջերու հեղինակին, այսինքն է խմբագրողին ընծայելի է, որ անտեղեակ լինելով Դ դարու Հայաստանի սահմանաց, ենթադրութեամբ ուզած է քան զչափն ընդարձակել իւր դիւցազին Տրդատայ օրով:

*լոկ բանաքաղութիւն լինելէ շատ հեռի են: Այսպիսի մի ստոյգ եղե֊
լութեան հնագոյն ապացոյցն է՝ Գրիգորի և Տրդատայ անուամբ առ
Եղիազար Նիւատրացւոց և առ Տիմոթէոս Ազդենացւոց (?) եպիսկո֊
պոսունս գրուած Գլակայ վանաց դիւանական* [1] *թուղթն, որով
Հայաստանի կրկին լուսաւորքս՝ քահանայներ կը խնդրեն, ասելով·
« Զի դեռ մանկամիտք երկրիս 'ի դոլոյ են, և ոչ ոք 'ի նոցանէ բաւա֊
կանս 'ի քահանայութիւն » : Բուզանդացին Փաւստոս, Դ. Դպրու֊
թեան Դ. գլխում, յետ ասելոյ վասն Ս. Ներսիսի. « Զի 'ի ձեռս նոր֊
ցոյ՝ նմանեաց իւրոյ հօրն Մեծին Գրիգորի, զնոյն նորոգեաց առաքե֊
լաշնորհս, նոյն գործ երևեալ », անդէն կը թուէ 'ի համանման
գործս նորա և « շինուածս 'ի տեղիս տեղիս գաւառաց » յունարէն և ասո֊
րերէն յամենայն գաւառս Հայոց »: Բուզանդացւոյ այս տեղիս գրե֊
թէ բառ առ բառ Ագաթանգեղոսէն առնուած է· և այս բանս՝ Ներ֊
սիսի գործերը՝ Գրիգորի գործոց հետ բաղդատելէն իսկ յայտնի կը
լինի, զորս նա Ագաթանգեղայ գրութենէն կը ճանչնար:*

*Իսկ* 626–627 *էջ եղած պարբերութիւնն, որ կը սկսի· « Հասա֊
նէր յառաջագոյն 'ի դաստակերտն իւր յՌշտունիս՝* [2] *յԱյրա֊
րատեան գաւառին՝ 'ի Վաղարշապատ քաղաքն », պակասաւոր կը*

1. *Որովհետև ոչ մի ազգային առանձնայատկութիւն կամ սնապար֊
ծութիւն չի տեսնուիր. այլ առանց ծածկելու կը պատմէ Հայոց՝ առ
Յոյնս և առ Ասորիս դիմելու պէտքն, այս ժամանակիս մէջ: Մինչդեռ
Գրիգորի կենսագիրն լռելեայն կ'անցնի: Այսպիսի երևոյթներ այլուր
ևս յայտնի կը տեսնուին. օրինակ իմն, Գրիգորի ուղեկից նախարարաց
գժտութիւնն ընդ Կեսարացւոց՝ վասն Աշխարացն Յովհաննու և Աթա֊
նագինեայ, և Անգեղտան իշխանի յանդուգն և ապերախտ խորհուրդն՝
այրելոյ զԿեսարիա, զոր Ասորին՝ մեկն բանիւ կը պատմէ, և որուն կը
համաձայնի նաև Սիմէոն ումն հայկազն (տես 'ի մեծ Տօնականն Պարի֊
զու թիւ* 46. *ճառ ճկԳ). իսկ Գրիգորի կենսագիրը բոլորովին ծածկել
է՝ լռութեան քօղի տակ: Սակայն այս և սոյն օրինակ բազմաթիւ օրի֊
նակներ բաւական են ցուցանել, թէ նա ազգային ումն էր:*

2. *Յիրաւի, այս տեղւոյս խանգարման մի այլ նշան է, այդ յատուկ
անունն, որ իւր նախընթաց և հետևորդ բառերովը կը պակսի յունարէն
օրինակի մէջ: Իսկ հայերէն օրինակներէն ոմանք Ըռոտստակ, և այլք
Ըռոտոտակ կը գրեն: Յովհ. կաթողիկոս՝ խօսելով զՍահակայ Գ. կ'ըսէ,
թէ « Սա նախ կարգեալ էր յեպիսկոպոսութիւն Ըռոտակաց »: Յովհան֊
նէսէն յիշուած այս անունս՝ կը թուի ցուցանել մեզ գաւառ ինչ անյի֊
շատակ մնացեալ 'ի Մովսիսէ: Ինճիճեան (Հնախ. Հայ. հտ. Գ, էջ* 285),
*և Հ. Մ. Չամչեան, Պատմ. Հայոց. հտ. Բ. էջ* 712, 761 *և այլն, կը դնեն
զայս 'ի Կորճեայս: Սակայն ոչ է ուղիղ. որովհետև Յովհաննէսի միւս
տեղերէն կը տեսնուի, թէ Մեծ Ատրպատականի մէջ էր այդ գաւառն,
և Ագաթանգեղոսէն յիշուած տեղւոյն հետ բնաւ վերաբերութիւն չունի:
Հ. Ղևոնդ Ալիշան, Տեղագր. Հայոց Մեծաց, էջ* 89, *Ըռոստստակ գաւառ մի
կը յիշէ « ընդ Մեծ–Կողմանս և ընդ Մեծ–Իրանս », այսինքն.է, Ուտի և
Արցախու մէջ: Սակայն այս իսկ օտար է 'ի յիշատակելոյն յԱգաթան֊
գեղոսէ, զի հեղինակիս խօսքն ուղղակի Այրարատ գաւառին և Վա֊
ղարշապատու մօտ տեղւոյ մի վերայ է: Մեծանուն հեղինակս՝ այլուր
(« Այրարատ »,  էջ* 204), *խօսելով Վաղարշապատու կամ քաղաքու֊
դաշտի վերայ՝ Ագաթանգեղայ սոյն տեղին մէջ կը բերէ և կ'ըսէ, թէ
Ըռոտստակ յառաջ եկած է պարսկերէն* رستاق *(Ըուստակ) բառէն,
ըստ վկայութեան Նազուէի, որ կը նշանակէ երկիր մշակեալ, յորում*

տեսնուի, որովհետև նախընթաց պարբերութեան մէջ Տրդատայ վերայ կը խօսուի. իսկ աստ յանկարծակի խօսքը Գրիգորի վերայ կը դառնայ, առանց յանուանէ յիշելոյ զԳրիգոր: Սակայն հանդերձ այսու՝ այս հատուածս թէ՛ ճԻ գլխահամարով սկսող և թէ՛ իւր յաջորդ պարբերութեանց հետ սերտ յարաբերութիւն ունի. իսկ Տրդատայ և նորա գործոց նուիրուած հատուածը՝ կցզիացեալ մնացած է: Ուստի-հօս իսկ կը տեսնուին հետք կրկին աղբերաց: Բայց Գրիգորի կենսագիրն յառաջ վարելով իւր ընթացքը՝ կը ծանուցանէ զշինութիւնս եկեղեցեաց. այլ նորա միակ նպատակն է աստ զկատարումն շինութեան Կաթողիկէին Էջմիածնի ածել 'ի հանդէս, որուն ծնն և հանգամանքները նկարագրեց 'ի Տեսլեան անդ: Եւ յիրաւի, որովհետև յէջ 624 ծանուցանեցաւ արդէն շինումն եկեղեցեաց «յամենայն աշխարհս, 'ի կողմանս և յաւանս», և աստ վերստին ծանուցանելու բնաւ հարկ չի կար, բաց 'ի այս նոր պարագայէս, այսինքն է. «Եւ զնկարեալ տեղի տանն Աստուծոյ շինեաց զցուցեալն նմա 'ի Տեսլեան, զյառաջագոյն զդրոշմեալն իւր»:

Եպիսկոպոսաց ձեռնադրութեան և թեմակալութեան մասին՝ երեք պարբերութիւններ նուիրուած են. բայց երեքն ալ իրարմէ ընդհատուած են ուրիշ և բոլորովին տարբեր հատուածներով, և կապուած են այլևայլ պարագայից հետ: Յէջ 624, ուր դեռ առաջին անգամ խօսք կը լինի եպիսկոպոսաց վերայ, փոխանակ նոցա ձեռնադրութիւնը պատմագրելոյ՝ թեմակալութիւնը կը յիշէ, ըսելով. «Սոյնպէս և զեպիսկոպոսսն **վիճակեցուցանէր 'ի գլխաւորութեան** ժողովրդոցն Տեսոյն»: Սակայն նոցանէ ոչ միոյն թեմն յանուանէ յիշուած չէ: Յէջ 630, ճԻԱ գլխահամարում, ուր խօսքը շինակեաց, լեռնակեաց, անձաւամուտ և արգելական վանականաց վերայ է, յանկարծակի մի և նոյն պարբերութեան մէջ կը փոխուի քրմաց որդւոց և նոցանէ ձեռնադրուած 12 տասան եպիսկոպոսաց վերայ, զորս յանուանէ իսկ կը յիշէ, առաջնոյն և երկրորդին թեմը միայն ծանուցանելով. այսինքն է Աղբիանոսին՝ «'ի վերայ կողմանցն Եփրատական գետոյն», և Եւտաղիոսին՝ «վայրացն Բասենոյ»: Իսկ միւսներուն անուանց համար կ'ըսէ. «Թէ և կամիցի ոք, **ոչ նուաւացէ**

իցեն աւանք, և ա՛յլ քաղաքք փոքունք: Այս մեկնութիւնս քաջ կը պատշաճի Վաղարշապատու: Սակայն դիտելու ենք որ Գրիգորի կենսագրին խօսքը ոչ եթէ Վաղարշապատու, այլ նորա մօտ գտնուած մի յատուկ տեղւոյ վերայ է, զոր և Դաստակերտ Գրիգորի կ'անուանէ: Արդ, զՎաղարշապատ նկատելով իբրև եկեղեցական վիճակ միայն՝ կարելի էր լինել դաստակերտ Գրիգորի: Սակայն աստ դաստակերտն յատկացեալ է Ըռոտստակին և ոչ Վաղարշապատու, այնու զի վերջինս առանձին իմն կը յիշուի յառաջնոյ անտի: Ուստի աւելի ճաւանական կը թուի ինձ սեփականել այդ նորալուր անունը Ագաթանգեղայ, յէջ 545, յիշուած մշակեալ և ծառախիտ «այգւոյն», յորում կը գտնուէր հնձանն և Գրիգորի օթևանը, յառաջ քան զձեռնադրութիւն իւր: Եւ յիրաւի, այս ճշմարտութիւնս աւելի յայտնի կը տեսնուի նաև յէջն 171 մէկ տեղով և սանսկրիտ rôhanta բառէն, որ կը նշանակէ ծառս և տունկս պտտատուողս, կամ որթս, ըստ վկայութեան Բիւռնուֆի:

*շարժել » : Արդ, դիտելու է, որ այս վերջին խօսքերուս հեղինակն ուզած է վերջնականապէս ծանուցանել, թէ բաց 'ի դոցանէ ուրիշ բազմաթիւ եպիսկոպոսներ ևս ձեռնադրած էր Գրիգոր, որոց անուանները դժուար էր նմա իմանալ կամ գրել: Սակայն, յէջ 637, հակառակ այսպիսի վերջնական ծանուցման, երրորդ անգամ մի ևս դարձեալ խօսքը կը դառնայ 'ի Գրիգորէն ձեռնադրուած եպիսկոպոսաց վերայ, բայց այնպիսի չհաւատալի պարագայներով, որուն վերայ յիրաւի է՛ տարակուսիլ. այսինքն է, նախընթաց պարբերութեանն, որ կ'աւարտի այս բառերովս. « Երթեալ (Գրիգոր) ընտրէր անձին իւրում կայս հանգստեան յանապատ տեղիս, և անդ բնակէր, և յանապատին լուսաւորէր զամենեսեան », անմիջապէս յաջորդ պարբերութիւնն այս խօսքերովս կը բացուի. « Եւ բազմացոյց կացոյց տեսուչս եպիսկոպոսս յամենայն գաւառս Հայոց իշխանութեան իւրոյ. և որ եպիսկոպոսական յաստիճան ձեռնադրեցան 'ի նմանէ, առաւել քան զչորեքհարիւր եպիսկոպոսունս »: Արդ, այս վերջին պարբերութիւնս նախ բնաւ վերաբերութիւն չունի ոչ իւր նախորդին և ոչ իսկ յաջորդող պարբերութեան հետ: Երկրորդ, նորա աւանդածը չափազանցութիւն է և հեռի 'ի ճշմարտութենէ կը թուի ինձ: Ցիրաւի, մեծին Ներսիսի ժամանակ, երբ ամենէն աւելի ծաղկեցան կարգաւորութիւնք եկեղեցւոյ և բազմացաւ թիւ եպիսկոպոսաց, սակայն 400 եպիսկոպոսունս ոչ ոք կը յիշէ, թէ եղած լինին և հազիւ թէ կարէին՝ լինել, յայնժամու պահանջման համեմատ. ևս առաւել ուրեմն առ Գրիգորիւ: Արդ, այս թիւս անհականալի կը մնայ նոյն իսկ կենսագրի հետևեալ խօսքերով. « Բազմացոյց կացոյց տեսուչս եպիսկոպոսս յամենայն գաւառս իշխանութեան իւրոյ », իսկ արդ այս գաւառացս թիւն էր ըստ Մովսիսի և Հ. Ղ. Ալիշանի (Տեղգր. Հայոց մեծաց) 189. իսկ ըստ ժամանակակից վկայութեան Զենոբայ՝ (Պատմ. Տարօնոյ, էջ 13) 620, և ոչ թէ 400: Մանաւանդ, դիտելու է Ասողկան յետագայ խօսքերն, թէ « Որ և գաւառին մէն մի թագաւոր կամ երկու լոկ թէ հանդիպի »: Արդ, Տըրդատայ ժամանակի Հայաստանի գաւառաց թիւն եթէ 400 էն աւելի համարինք և եթէ նուազ, այս յայտնի է, թէ ուր մէկ մէկ քահանայ հազիւ կը գտնուէին, անդ անկարելի է, որ եպիսկոպոսական առանձին աթոռներ ևս եղած լինին: Կենսագրիս 400 թիւը՝ միայն առ Մեսրովբայ Երիցու տեղի ունի. բայց մեծին Ներսիսի պատմութեան հեղինակն՝ անկէ հաստատուած բարձից և իշխանաց կ'ընծայէ զայն և ոչ թէ եպիսկոպոսաց: Իսկ եթէ Գրիգորէն ձեռնադրուած համարիմք իրօք այն 400 եպիսկոպոսունքը, յայտ է թէ յընթացս 30 ամեայ հովուապետութեան նորա հաւկանալի է, կամ ցվախճան կենացն. յորմէ կը հետևի թէ, Ագաթանգեղայ գիրքն ևս պէտք է որ Գրիգորի մահուանէն տարիներ վերջ գրուած լինէր:*

*Արդ, Ագաթանգեղոսեան գրոց ինչպէս այս վերջին տեղիս՝ այսպէս նաև երկրորդն, այսինքն է 630 իջի տեղին՝ չկարէ Գրիգորի ժամանակակից Ագաթանգեղոսի գործ լինել: Եւ յիրաւի, նախ զի Զենոբայ վերոյիշեալ իջում, այսինքն է, առ Եղիազար և Տիմոթէոս եպիսկո*

պոտոնս գրուած հրաւիրանաց թղթոյն մէջ՝ կ'ըսեն թագաւորն Տրդատ և իշխանք Հայոց, թէ «Դեռ մանկունք երկրիս 'ի դպրոց են» այլովքն հանդերձ: Սոյնը կը վկայէ որոշակի նոյն իսկ Ագաթանգեղայ 626 իջումն Տրդատայ պատմութեան միջանկեալ հատուածագիրն. «Անել յարուեստ դպրութեան ... առաւել զազգս պղծագործ քրմաց, [illegible] [illegible] 'ի նոյն ժողովել գումարել», և այլն: Արդ, այս տողերս գրողն և իրին ականատես Ագաթանգեղոսն՝ ինչպէս կրնար ուրեմն մի և նոյն ժամանակ և մի և նոյն երկարութեան մէջ ծանուցանել յական յանուանէ այդ քրմածին մանուկներէն ձեռնադրուած 12 եպիսկոպոսներն, առանց հակասութեան, ասելով. «Այսք՝ որ յորդւոցն քրմացն ընտրեցան լինել եպիսկոպոսք»: Բ. Հեղինակ հատուածիս կը ծանուցանէ, թէ միւս եպիսկոպոսաց անուանքն եթէ ուզէր ևս չէր կարող գիտնալ[1]. արդ, եթէ նա ստուգիւ ժամանակալից լինէր և յարքունի կամ կաթողիկոսական դիւանաց առնելով գրած լինէր այս տողերս՝ կարելի բան չէ, որ անգիտանար նոցա անուանքը: Գ. Ցորդւոց քրմաց կամ հնդկային եկացմէ ձեռնադրեալ եպիսկոպոսաց անուանքը, բաց 'ի [illegible], միւսներն յունական և ասորի հնչումն ունին: Դ. Եթէ այդ եպիսկոպոսներն առ Գրիգորիւ և 'ի Գրիգորէ ձեռնադրուած և թեմական առաջնորդութիւնս ստացած լինէին, հարկաւ ծանօթ պէտք էին լինել նաև Զենոբայ. սակայն ասորի հեղինակս ոչ ոք կը ճանչնայ յայսցանէ, բաց յԱղբիանոսէ. և Աղբիանոսի ոչ ազգը կը յիշէ և ոչ թեմը: Իսկ քրմական ցեղի մասին այնպիսի դառն կըշտամբանօք կը խօսի Տարօնի պատմութեան Ա. Պատճենում, յէջ 36, յասելն. «Զի ազգն այն յորժամ դարձան 'ի Քրիստոս՝ չէին կատարեալ 'ի հաւատսն ... այլ խաբէութեամբ զայս հնարեցան, ծամ միայն թողուլ 'ի գլուխ մանկանցն, զի զայն տեսեալ՝ յիշեսցեն զպաշտօն պղծութեան իւրեանց: Զոր և ես աղաչեմ զձեզ, զգոյշ կացէք՝ զի մի այս և 'ի ձերում երկրիդ սերմանեսցի», զոր չէր մարթ խօսել առանց վիրաւորելոյ այն պատկառելի և բարձրաստիճան եկեղեցականաց պատիւն և անունն, եթէ իրօք 'ի քրմաց անտի ձեռնադրուած լինէին: Այս տեղիս՝ նման բանիւք՝ բայց տարբեր պարագայիւք կը գտնուի նաև Փաւստոսի Գ. Դպրութեան ԺԳ. գլուխում, և 'ի հասարակի Հայոց վերայ առնուած. սակայն առ Զենոբայ՝ աւելի յարմարութիւն ունի և կարելի է ճշմարիտ համարել: Ե. Աղբիանոսի համար ըրած Ագաթանգեղայ այս բացատրութիւնս, թէ «Որ [illegible] (ժամանակաւ) կողմանցն եփրատական գետոյն լինէր վերակացու» ոչ միայն համեմատութեամբ յետին ժամանակի գրչութեան նշան է և ուղղակի կը հակասէ յաջորդ պարբերութեանն, ուր կ'ըսուի, ընդհակառակն, թէ «Եւ զԱղբիանոս վերակացու թո‿

1. Զի յունարէն օրինակն այսպէս կը գրէ, «τῶν δὲ λοιπῶν τὰ ὀνόματα δυσθεώρητα, εἰ καὶ βουληθείη τις ἐξειπεῖν», այսինքն է, իսկ զայլոց անուանս՝ դժուարին է գիտել, թէպէտև մէկը կամենար իսկ յայտնել:

ղոյր **տէրտանական դրան բանակին** » . այլ ըստ իս Փաւստոսի Գ. Դպրութեան Դ. գլխոյն հետևեալ տեղւոյն բանաքաղութիւն է, ուր կ'ըսուի Վաչէի համար, թէ յետ ջնջելոյ զապստամբող տոհմն Մանաւազէից և Որդունեաց՝ հրամանաւ Խոսրովու և Վրթանիսի, « **Եւ զտանն** և զբուն գահոյից գեւղն նահապետին Մանաւազենից **եպիսկոպոսին Աղբիանոսի**՝ յեկեղեցի. զՄանաւազակերտ ամենայն սահմանօքն և **դաստակերտօքն հանդերձ**՝ որ շուրջ զնորօք էր, **որ կայ 'ի կողմանս գետոյն Եփրատայ** »: Չէ և չէ մարթ ըսել, թէ Փաւստոսի այդ տեղին յԱգաթանգեղոսէն առնուած է, որովհետև այն պարագաները՝ զորս կը յիշէ Բուզանդացին այդ գլխուն, չեն գտնուիր առ Ագաթանգեղ: Սակայն զԲուզանդացին այսու իսկ բաղդատոր կը համարիմ ես, զի կը թուի ցուցանել մեզ, թէ Աղբիանոս Մանաւազէից տոհմէն եղած լինի: Եւ յիրաւի, զի այս պատճառաւ Աղբիանոս կը ղրկուի իբրև միջնորդ և բարեխօս առ Մանաւազեանս, այս պատճառաւ նոցա ժառանգութիւնն Աղբիանոսի կը շնորհուի, այս պատճառաւ դարձեալ ոչ միայն Աղբիանոս [1], այլ նոյն իսկ Աղբիանոսի տոհմէն ընտրուած Յուսիկ, Շահակ և Զաւէն կաթողիկոսներն ևս՝ Մանաւազակերտի կամ Մանազկերտի եպիսկոպոսներ ծեռնադրուած էին: Կը ցաւիմ, որ Փաւստոսի գրոց այդ գլխոյն վերջի տողերն խանգարուած են, յորում « եպիսկոպոսն Բասանու » և « յերկրին Բասանու » բացատրութիւններն անհասկանալի կը մնան: Սակայն ըստ իս, Փաւստոսի թէ այս տեղէս և թէ յայլոց տեղեաց կը տեսնուի, թէ Որդունեաց ժառանգութիւնն այլ՝ նոցա եպիսկոպոսին տրուեցաւ. և թէ այդ երկու իշխանական տոհմերն՝ հանգոյն տոհմիցն Կոլոննայ և Բօրգէզէի՝ Դ. դարում այն քան զօրացել էին և իրարու հակառակամարտ կանգնել, որ իրենց եպիսկոպոսներն անգամ լաւ և վատ կը ջանային արծաթով մատուցանել 'ի բարձ կաթողիկոսութեան, և զոչ եպիսկոպոսունս՝ յեպիսկոպոսութիւն երկրին իւրեանց: Բայց Մանաւազակերտի վերոյիշեալ անարժան եպիսկոպոսաց՝ զկնի միմեանց կաթողիկոսական գահուն վերայ բարձրանալը՝ արդիւնք համարելու է կամ Մանաւազեանց յաղթական հանդիսանալուն 'ի վերայ Որդունեաց, և կամ շնորհիւ մեծին Աղբիանոսի, որուն ազգակից և տոհմակից կ'անուանէ զնոսա Փաւստոս:

Առ Փաւստոսի կը գտնենք ազաթանգեղոսեան գրոց վերոյիշեալ տեղում յիշուած եպիսկոպոսներն ևս: Յիրաւի, Զ. Դպրութեան Դ. գլխոյն մէջ կը յիշուի **Աստղաբերկէս** իբր եպիսկոպոս Մանազկերտի, « այր քրիստոնէամիտ, աստուածապաշտ և արդար, և առաջնորդ

1. Փաւստոսի Ն. օրինակն, որուն տարբերութիւնքը դեռ անցած չեն ոչ վենետկոյ և ոչ իսկ Պատկանեանի տպագրութեան մէջ, 530 իջում այսպէս կը գրէ. « Եւ ետ զաւանն և զբուն գահոյից գիւղն նահապետին, Մանաւազխենից (Մանաւազենից) եպիսկոպոսին Աղբիանոսի »: Արդ նահապետէն վերջ դրուած ստորակէտն, որ տպագրութեանց մէջ կը պակսի, աստ որոշակի կը ցուցնէ, թէ անունն՝ Մանաւազենից եպիսկոպոսին կը վերաբերի և ոչ թէ նահապետին: Սոյնը կ'աւանդուի նաև Ն. Դպրութեան ԻԹ. գլխում;

ղրանն Խուսրովու », որ յետ Շահակայ՝ եղև եպիսկոպոսապետ ամե֊նայն Հայոց: **Արրին**՝ կը յիշուի Է գլխում, իբրև եպիսկոպոս Բասե֊նոյ. « այր ծերունի պատուական », սրբութեամբ և գիտութեամբ երևելի 'ի մէջ ժամանակակից եպիսկոպոսաց, և աշակերտ Դա֊նիելի: Ը, Թ, և Ժ գլխոց մէջ կը յիշուի **Յովհան** եպիսկոպոս և որդի Փառինայ, « այր կեղծաւոր, տգէտ, ագահ և խեղկատակ վարուք ». ԺԳ գլխում կը յիշուին **Տիրիկ** և **Մովսէս**, զոյգ « եպիսկոպոսք Բասե֊նոյ գաւառին, արք լաւք և հրեշտակակրօնք »: Հուսկ ապա ԺԱ գլխում մէջ կը յիշուի **Կիւրակոս** եպիսկոպոս Տայոց, որ Շահապ ևս կը կոչուէր, ըստ ասելոյ Փաւստոսի. էր « այր ճշմարիտ աստուա֊ծապաշտ, և ըստ կամացն Աստուծոյ վարէր զեպիսկոպոսութիւն իւր »: Իսկ **Եւթաղիոս**, **Աքիղէս**, **Անտիոքոս**, **Բասոս** և **Եւսեբիոս**՝ նի֊կիական Հարց ցուցակէն առնուած են, որուն հայերէն օրինակն ևս ունինք, թարգմանեալ յասորերէնէ: Եւ յիրաւի, այս բանիս ակն յայտնի ապացոյց կը համարիմ ես, առաջին երեք անուանց ուղ֊ղագրութիւնն՝ որ ըստ ասորերէնին տառադարձուած են և ոչ ըստ յունարենի. զի յունարէն Εὐθάλιος ը՝ պէտք էր որ Եւթաղիոս տա֊ռադարձուած լինէր, ինչպէս դարձուցել է Մ. Խորենացի[1], Բ. գլ. ՁԹ: Այսպէս նաև 'Αντίοχος ը՝ Անտիոքոս, և 'Αγάπιος ը՝ Ագա֊պիոս, ինչպէս ըրած է **Գործոց Առաքելոց** թարգմանիչը: Ղազարդ՝ (Agathangelos, p. 135), կ'ըսէ, թէ հայերէն Ագաթանգեղոսի **Ա֊քիղէսն**՝ է սխալ ընթերցումն اجفيس անուանս: Ծիրանաւորն Պիտրա[2] ևս կը վկայէ, թէ Նիկիոյ ժողովական Հարց անուանց հայե֊րէն ցուցակին յասորի բնագրէն թարգմանուած լինելը՝ բնաւ տարա֊կոյս չի վերցներ, և թէ այդ պատճառաւ այն անուանքն աղաւա֊ղուած են:

Արդ, Ագաթանգեղայ 630 իչի տեղին այսպէս պարզելէն վերջ, այս եզրակացութիւնս պէտք է ընել. այսինքն է, այդ հա֊տուածի գրողը՝ կամ Գրիգորի կենսագիրը՝ պէտք է որ Փաւստոսին ժամանակակից կամ լաւ ևս մերձաւոր եղած ըլլայ ժամանակաւ. որովհետև վերոյիշեալ եպիսկոպոսներէն ոմանք՝ Խուսրովու, իսկ այլք Տիրանայ և Արշակայ ժամանակներ կ'ապրէին: Եւ կամ գրոցս խմբ֊բագրողին ընծայելի է, որ յետոյ ուրեմն ներմուծեց անդ այն ա֊նուանքն և 400 եպիսկոպոսաց թիւն, զոմանս 'ի Փաւստոսէ և զայլս նիկիական Հարց ցուցակէն և յազգային աւանդութենէ մու֊րալով. այսու միայն հասկանալի կը լինի նորա ըսածը, թէ « Եւ զայլոցն անուանս թէ և կամիցի ոք, ոչ կարասցէ շարժել »:

Յէջ 627–628 հատուածն՝ յորում մի առ մի կը յիշուին Գրիգորի

1. Եւթաղս այս, ըստ Մովսիսի, էր եպիսկոպոս Եդեսիոյ, որ Արիս֊տակէսի, ցակ. Մծբնացւոյ և Յովհաննու Պարսից եպիսկոպոսին հետ 'ի Կեսարիայէն անցած ժամանակ՝ ականատես եղաւ սքանչելեացն, որ եղաւ Գրիգորի Աստուածաբանի հօր մկրտութեան ժամանակ՝ 'ի Ղևոն֊դիոսէ:
2. Analecta Sacra Spicilegio Solesmensi, T. IV. Parisiis, 1883, p. 462.

աւետարանական քարոզութեան սահմանքը[1], որք մեծագոյն հնութեան տիպ կը թուին ընծայել մեզ ըստ ինքեան. որովհետև այդ սահմանները՝ կը գծեն մեզ Հայաստանի աշխարհագրական այն տարածութիւնը, որուն վերայ կարող եղեն իշխել մեծն Խոսրով և Տիգրան, բայց ոչ նոյնպէս և նոցա յաջորդքն: Արդ, այս տեսակէտով մտածելով, պէտք է ըսել, թէ ոչ Փաւստոս և ոչ այլ ոք յետ նորա կարող էր այսպիսի նկարագիր մի ընել. զի Դ. դարու կէսէն վերջ՝ Հայաստանի այս սահմաններս փոխուած էին և նորա իշխողաց տէրութիւնը կարի յոյժ ամփոփուած էր, ինչպէս յառաջագոյն տեսնուեցաւ Կոտակն Խոսրովայ և նորա յաջորդաց մասին խօսած ժամանակ: Արդ, Ագաթանգեղայ գրոց այս իջում գծուած Հայաստանի արևմտեան սահմանը խիստ յայտնի է. նոյնպէս արտաքին պատմագրութենէ ևս կը գիտցուի, թէ հինաւուրցն Սատաղ՝ Հռովմայեցւոց կը վերաբերէր: Իսկ հարաւէն երբ կը դնէ Ամիդ, Կորդուք և Նոշիրական գաւառներն, այս անհասկանալի է: Յիրաւի, եթէ այդ գիծը կը քերէր առ [illegible], անկարելի է որ նոյնը կարենար անցնիլ 'ի նմին ժամանակի նաև առ սահմանօք Ասորւոց և առ Նոշիրական երկրաւ. որովհետև վերջնոյս և Կորդուաց մէջ կեցած են իբրև անանցանելի պատնէշք Տաւրոս լերանց գօտիքն՝ ուրիշ սեփական գաւառով: Դարձեալ եթէ մի միայն գաւառ ևս եղած համարինք Կորդուք և Նոշիրական, մին միայն կարէր սահման համարուիլ: Արևելքէն յիշուած սահմանագլուխը՝ Պարսից կամ մեծ Ատրպատականն է, և այս իսկ հասկանալի է: Սակայն աստի դէպ 'ի հիւսիս գծուած սահմանն, այսինքն է Կասպից ծովէն՝ մինչև ցՄազքութս, ցԴրունս Ալանաց և ցԿաղարջս՝ դարձեալ անհասկանալի կը մնայ. որովհետև այդ սահմանին համեմատ՝ Աղուանք և Վիրք Հայաստանի սահմանաց մէջ փակուած պիտի լինէին և ոչ թէ նորա սահմանից արձաններ. մանաւանդ զի Փայտակարանն իսկ՝ « քաղաք արքայութեան Հայոց » եղած կ'անուանի անդ: Արդ, հօս յիշուած Փայտակարանը կամ տարբեր լինելու է այժմեան Վրաստանի մայրաքաղաքէն, որ յետոյ Տփղիս

1. Այսինքն է, արևմուտքէն՝ Սատաղ քաղաքն և Խաղտիք, յորոց ձգուած առաջին գիծը՝ կ'անցնէր Եկեղեաց գաւառին և Դարանաղեաց արևմտեան եզերքէն, կը քերէր զԱկն, զԱրաբկեր և զՄելիտինոյ սահմանքն և կը հասնէր մինչև յԱմիդ և Տիգրանակերտ: Աստի կը սկսէր երկրորդ գիծն, որ հարաւէն կը քերէր, ըստ անտիպ Աշխարհագրութեան Հ. Ղևոնդ Ալիշանի, զՆոշիրական երկրաւ, և առ սահմանօք Ասորւոց, այսինքն է, Մերտնոյ և Մծբնայ գաւառօք, առ Կորդուօք և կը հասնէր մինչև յերկիրն Մարաց, այսինքն է, անցնելով Կապուտակ ծովուն հարաւային եզերքէն՝ կը հասնէր մինչև ցԱտրպատական: Երրորդ գիծը՝ կը սկսէր Կասպից ծովուն արևմտեան եզերքէն, կը հասնէր մինչև Բաքու. և անտի կ'երկայնէր չորրորդ գիծը, անցնելով մինչև 'ի սպառ 'ի սահմանս Մազքթաց, մինչև 'ի դրունս Ալանաց, առ Փայտակարան քաղաքաւ և մինչ առ Կաղարջօք, մինչև որ Պարխար և Խաղտեաց լեռներէն անցնելով կը միանայր առաջին գծին հետ. այսպէս կը բոլորէր Հայաստանի սահմանը, ըստ վկայութեան Ագաթանգեղայ:

կոչուեցաւ, և կամ Ագաթանգեղայ այդ աւանդութիւնն հակապատ‿մական համարելու է. որովհետև թէ՛ արտաքին և թէ՛ տոհմային պատմագիրք[1] շօշափելի փաստերով կ'ապացուցանեն մեզ, թէ առ Տրդատաւ, ինչպէս նախ քան զՏրդատ և յետ Տրդատայ, Վրաստան էր առանձին թագաւորութիւն. և թէ Փայտակարանը նոցա կը վե‿րաբերէր: Իսկ Փաւստոս Ե. Դպրութեան ժԵ գլխուն մէջ որոշակի կը ծանուցանէ, թէ հնոյն Հայաստանի սահմանը Կուր գետէն անդին չէր անցնէր, յասելն վասն Մուշեղայ. «Եւ զհին սահմանսն, որ յա‿ռաջն էր մուտ յերկիրն Հայոց և ընդ երկիրն Վրաց, որ է ինքն մեծ գետն Կուր, այնուհետև յինքն վարեաց դառնայր անտի»: Ես ա‿ռաջին կէտը իբրև մի ստոյգ եղելութիւն կը համարիմ, և հետևեալ վկայութիւնքը կը հաստատեն զայն: Զենոբ՝ Տարօնի պատմութեան 35 իջում՝ բոլորովին տարբեր ուղղութեան մի վերայ կը դնէ զՓայ‿տակարան քաղաք, «ուր էին և դրանք թագաւորաց». և հօն կը ղրկէ իշխանն Անգեղտան՝ 438 որդիս քրմաց, Արծանայ պատերազմի ժամանակ: Մ. Խորենացի Գ. գլ. Գ դեռ աւելի կը պարզէ՝ դնելով զայն 'ի կողմանս «արևելեայ հիւսիսոյ», ուր կը թագաւորէր յետ մահուն Տրդատայ՝ իշխանն Աղուանից Սանատրուկ, և կը խորհէր տիրել բոլոր Հայաստանի: Այս գլխոյս մէջ՝ Մովսէս կը ծանուցանէ դալձեալ, թէ Փայտակարանէն Տրդատայ կողմէն դրուած իշխան‿ներն եկան առ Տրդատ և «ասեն ցարքայն. Եթէ կամիցիս ուղղոր‿դութեամբ վարել ըստ հաւատոյ կողմանցն այնոցիկ, առաքեա նոցա եպիսկոպոս 'ի զաւակէ Ս. Գրիգորի». իսկ միւս կողմանէ ընդհանուր աւանդութիւն է, թէ Գրիգորիս եկաց եպիսկոպոս Աղուանից և ա‿նոնցմէ սպանուեցաւ. ուրեմն պէտք է որ Փայտակարան քաղաքս եա՝ կամ յԱղուանս եղած լինի և կամ 'ի նահանգին Փայտակարա‿նու: Փաւստոս, Ե Դպրութեան ժԴ գլխոյն վերնագիր դնելով «Ցա‿ղագս Կասբից», անդէն կը յարէ, թէ «Մուշեղ խնդրէր զվրէժ 'ի Փայտակարան քաղաքէ»: Ագաթանգեղոս իսկ վերոյիշեալ իջում՝ Հայաստանի արևմտեան սահմանաց գիծը բռնելով՝ կ'անցնի Ալա‿նաց դռնէն, և հասնելով մինչև յարևելեայ հիւսիսային սահմանա‿ծայրն Կասբից՝ անդ կը յիշէ զՓայտակարան քաղաք: Ուրեմն Մով‿սիսի, Փաւստոսի և Ագաթանգեղոսի վկայութեան համաձայն՝ պէտք է, որ Փայտակարան քաղաքս եղած լինէր կամ Վարդանակերտն, որ և Սալիան, և կամ այժմեան Բաքու. և թէ իրօք Հայք՝ առ Տրդա‿տաւ վերստին նուաճեցին և կալան մինչև Կասբից ծով տարածուած երկիրներուն:

Արդ, այս մեկնութեամբս կը վերնայ Ագաթանգեղայ 628 իջի հակասութիւնը գէթ Փայտակարանի նկատմամբ. սակայն նկատ‿մամբ Մազքթաց և Ալանաց՝ դարձեալ իւր ուժի մէջ կը մնայ. որով‿հետև Վրաց տարեգիրք, որոնց կը համաձայնին և Յունաց և Հայոցն

1. Սոկրատ, Ա. գլ. Ի: Սոզոմէն, Բ. գլ. Է: Ռուփինոս, Բ. գլ. ԼԳ: Թէո‿դորետոս, Ա. գլ. ԻԴ: Իսկ Վրաց նախկին անկախութեանը կը վկայեն Ստրաբոն և Տակիտոս, հաւատարիմ պատմութեամբք:

յիշուած Մաղաքիամ Մարուգէի աշակերտ է: [illegible] բառովս՝ ես չգիտեմ, թէ Փաւստոս սա՞ն կը հասկնայ, թէ պարզապէս նորա վարուց և առաքինութեան հետևող. այսչափս կարելի է ասել, թէ ժամանակագրութեան բնաւ չի հակառակիր, որ Շաղիտա նոյն ըլլայ ընդ Մաղաքիայ, որով և աշակերտ թէ՛ Մարուգէի և թէ՛ Դանիելի, զի երկոքեան սոքա էին ժամանակից: Ուրեմն ցայս վայր եղած դիտողութիւններէն այս կը հետևի, թէ Ագաթանգեղայ 649 իջի հատուածն ևս կամ յետոյ ուրեմն գրոցս խմբագրէն ներմուծուած է, և կամ եթէ Գրիգորի կենսագրին ընծայենք, պէտք է որ նա Ագաթանգեղայ կարծեցեալ ժամանակէն շատ տարիներ վերջ գրած լինէր:

Յէջ 650, կը պատմուի Տրդատայ երթն՝ 'ի Հռովմ, ըսելով. «Առնոյր ընդ իւր զմեծ արքեպիսկոպոսն Գրիգոր և զնորուն որդին զՌըստակէս» և այլն: Արդ, այս բանս ուղղակի կը թուի հակասել 638 իջում աւանդածին, ուր յետ ձեռնադրութեան եպիսկոպոսաց և եկեղեցական բարեկարգութեանց, կը հրաժարի Գրիգոր յարքունական ատեանէն. թէպէտև թագաւորը շատ կ'աղաչէ զնա «վասն հանապազորդ առ նմա կալոյ»: Սակայն Գրիգոր «ոչ հաւանեալ չառնոյր յանձն, այլ յանապատ տեղիսն հանեալ բնակութեամբ»: Եւ 642 իջին, ուր կ'ըսուի, թէ թագաւորն Տրդատ ճարահատեալ անձամբ կ'երթայ 'ի խնդիր Գրիգորի և կը գտնէ իրուցնէ 'ի Մանայարք անապատին, և կ'աղաչէ զնա, որ գէթ իւր տեղը ձեռնադրէ զԱրիստակէս: Երկրորդ, առ խոնարհութեան Նիկիոյ Ս. Ժողովը չի գացող Գրիգորն, ուր իւր նման խոստովանող Հարք յամենայն կողմանց խմբուած էին կրօնական ջերմ հաւատով վկայելու Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Աստուածութիւնն ընդդէմ ամպարշտին Արիոսի, կարելի՞ բան է, որ դիւրաւ զիջանէր երթալ 'ի տիեզերական քաղաքն՝ ուր ամենուստ արքայք և մեծամեծք երկրի ժողոված էին, ըստ ասելոյ Եւսեբիոսի, աշխարհական մեծ հանդէս մի կատարելու. երթալ այնպիսի ժամանակի մի մէջ, այսինքն է, յետ աւարտման Ս. Ժողովոյն, երբ կայսրը մի առ մի բոլոր այն Հայրապետներն և կենդանի նահատակները՝ մեծամեծ պատիւներով պիտի վարձատրէր: Կարելի՞ բան է, որ անապատի առանձնութեան խորը թաղուած և աստուածախօս տատրակն Գրիգոր, զոր Տրդատայ բոլոր աղաչանքը չի կարացին հաւանեցնել գալ յատեանն, յանկարծակի և առանց ինչ հրաւիրանաց 'ի կողմանէ թագաւորին, ինչպէս կը պատմուի այդ տեղ, եկած և ընկերած լինի նմա 'ի Հռովմ: Այս բանս ըստ ինքեան դժուարահաւատալի է. բայց հատուածոցս կէս մի հակասական և կէս մ'այլ կաղ 'ի կաղ և կցկըտուր ընթացքն աւելի ևս տարակուսելի կ'ընեն զայն:

Յիրաւի, յէջ 650, թագաւորին ընկերող իշխանաց շատերը՝ նոյն են զրեթէ Գրիգորին դէպ 'ի Կեսարիա ընկերող իշխանաց հետ. բայց յէջ 597 չորեքտասաներորդ իշխանն, որ կը կոչուի Շահապ՝ Ջաբաւանդ և Հեր գաւառին, աստ յիշուած է իբրև Շահապն՝ Շահապիվանի, որ է 'ի Ծաղկոտն գաւառի: Մազքութք, Նորշիրական,

Ասորեստան և Արուեստան, որք կը յիշուին յէջ 628, իբրև պարզ սահմանածայրք և արտաքոյ Հայաստանի, սատ նկատուած են իբրև Հայոց Թագաւորութեան սեփական չորս բդեշխութիւններ, և նոցա բդեաշխքն ևս կ'անուանին գահերիցունք տաճարին (°) Տրդատայ և կ'ընկերեն նմա 'ի Հռովմ: Յէջ 651, յիշուած **Սպասկապետութեան** իշխանը՝ չի գտնուիր առ այլս 'ի տոհմային մատենագրաց: Այս մակդիրս, կ'ելևի, թէ առ Արշակաւ՝ Աքեղենից տրուած էր. սակայն Մեսրովբ Երէց և Գահնամակն Ս. Սահակայ յանուանէ և 'ի պաշտամանէ թուելով զնախարարութիւնս Հայոց, կարգեալս 'ի Տրդատայ և 'ի Խոսրովայ, յիշել կը յիշեն զԱքեղեան կամ զԱքեղունիս՝ բայց առանց Սպասկապետութեան: Սակայն հասարակ անուանս գէթ կազմութեան հնութիւնն՝ անուրանալի է, որ յառաջ եկած է **Սպասէկ** = سپاهی և **պետ** բառերէն: Յէջ 653-634, հատուածներն ևս նոր օրինակ պարագաներ կը յայտնեն, յորս Տրդատայ՝ իւր և Հայաստանի մէջ հանդիպած դէպքերն մանրապատում ընել տալէն վերջ, ապա խօսքը **Դաշանց Հաստատութեան** վերայ կը դառնայ: Բայց, այս կարևոր նիւթս, զոր կարելի է իբրև առաջին նպատակ համարել Տրդատայ երթին առ Կոստանդիանոս, դժբաղդաբար այնպէս սղագունիւ մէջ բերուած է, որ կու տայ մեզ կարծել, թէ հատուածիս գրողն իսկ՝ նորա մասին ընդարձակ տեղեկութեանց կը կարօտէր: Սակայն անյարմարութեան հետ 'ի միասին՝ կասկած ևս կը յաւելու նա մեզ, երբ այսպիսի դէպքէ մի վերջ՝ դարձեալ խօսակցութիւնն Հռիփսիմեանց վերայ կը դարձնէ, պատմել տալով Կոստանդիանոսի նոցա անզուգական վարքն. իբր թէ կայսրն անձամբ կը ճանաչէր զնոսա և նոցա ազնուատոհմութիւնը՝ մինչդեռ էր 'ի Հռովմ: Սակայն դիտելու է, որ Հռիփսիմեանց 'ի Հռովմ եղած ժամանակ, Կոստանդիանոս 'ի Նիկոմիդիա կը գտնուէր [1]. արդ, եթէ 'ի Հռովմ ևս եղած համարինք, դարձեալ նա չէր կարող Ս. Պօղոսի վանաց խորը առանձնացող կուսանաց հետ ծանօթութիւն ունենալ: Ուստի այսպիսի աւանդութիւն մի բոլորովին ազգային տիպ ունի, որ այլուր ևս Կոստանդիանոսի ազգական կը վարկանի զՀռիփսիմէ, բայց չգիտեմ, թէ որքան պատմական արժէք ունի այդպիսի աւանդութիւն մի:

Յէջ 653, շարունակուած պարբերութիւնն՝ ուր հռովմէական մեծափառ կայսեր համար կ'ըսուի, թէ « Խոնարհեցուցեալ զանձն՝

1. Զի Մ. Խորենացի Բ. գրոց ՁԳ գլխուն մէջ խօսելով Տրդատայ հարսանեաց մասին, կը յաւելու, թէ « Ընդ նոյն աւուրս լինին հարսանիք և Մաքսիմինայ դստերն Դիոկղետիանոսի 'ի Նիկոմիդիա, փեսայանալով նմա Կոստանդիանոսի Կեսարի որդւոյ Կոստայ Թագաւորին ... Եւ յետ ոչ բազում ամաց մեռեալ Կոստանդ, փոխանորդ նմա առաքէ Դիոկղետիանոս զնորին որդի և զիւր որդեգրեալն Կոստանդիանոս »: Արդարև, եթէ Կոստանդիանոս որդեգրեալ էր Դիոկղետիանոսի և Դիոկղետիանոս 'ի Նիկոմիդիա հաստատած էր զարքունիս իւր, ուստի չէր կրնար նա լինել բնակութեամբ 'ի Հռովմ: Մովսիսի այս աւանդութիւնս ընդհանուր կարծիք է նոյնպէս յոյն և լատին պատմագրաց: Տես *Kaiser Licinius*, von Chrysanthos Antoniades, München, 1884, p. 36-37.

անկանէր առաջի Գրիգորի ... և բազում վայելուչ մեծարանօք պատիւ արարեալ նմա իբրև Խոստովանողի », գրեթէ բառ առ բառ նոյն է ընդ աւանդելոյն 'ի Փաւստոսէ Գ. Դպր. Ժ. գլխում վասն Ս. Յակովբայ Մծբընացւոյ: Կոստանդիանոսի վերաբերեալ, այսպէս նաև Տրդատայ 'ի Հռովմ գնալու, դրուագաց միջանկեալ լինելուն իբրև ակնյայտնի ապացոյց կարելի է համարել՝ այն դրուագաց, այսինքն է, ՃԻԵ գլխահամարէն անմիջապէս յառաջ եղած նախապատրաստիչ համառօտ պարբերութիւնն, ուր կ'ածէ զԳրիգոր յանապատէն և կը շրջեցնէ ընդ Արիստակիսի, յասելն. « Իսկ մեծ Արքեպիսկոպոսն Գրիգորիոս՝ . . . շրջէր զամենայն աշակերտելովք » և այլն: Ու յիրաւի, զի նոյնը կրկնուած է բառ առ բառ նաև 'ի վերջ դրուագին, այսինքն է յէջ 656: Դիպուածի՞ արդեօք, թէ ընդհակառակն մասնաւոր դիտաւորութեան մի իցէ այս արգասիք. չէ մարթ վճռել: Սակայն վերջինն՝ ինձ աւելի հաւանական կ'երևի՝ յետագայ պատճառներով. այսինքն է, վերոյիշեալ էջերու հատուածները, զորս քննեցինք, մասամբ Գրիգորի գործոց և Հռիփսիմեանց վկայաբանութեան տեղեաց վերայ, կարծէք, թէ ձևուած և յարմարուած են. և մասամբ այլ Տրդատայ կենսագրութեան նախընթաց գլխոցը վերայ: Օրինակ իմն, յէջ 554 Հռիփսիմեանց տոհմին վերաբերեալ հատուածը՝ ծնունդ է 115 իջի Բ. պարբերութեանն: Յէջ 653 Դաշանց պատմութիւնն աւանդող Բ. պարբերութիւնը՝ մատնանիշ կը ցուցանէ մեզ 48 իջի Բ. պարբերութիւնն: Յէջ 652 Տրդատայ վաբազակերպութիւնն ակնարկող Բ. պարբերութիւնը՝ կը յիշեցնէ ուղղակի 164 իջի Բ. պարբերութիւնն: Յէջ 651 Տրդատայ դէպ 'ի Հռովմ ուղևորութեան և հօն գտած ընդունելութեան երկու պարբերութիւնքը՝ գրեթէ բառ առ բառ նոյն են 602–603 էջերու պարբերութեանց հետ: Յէջ 650 նախարարաց վերաբերեալ հատուածն, ինչպէս տեսանք, նոյն է 596–597 էջերուն: 645–649 էջերում Կոստանդիանոսի գործոց նուիրեալ հատուածներն և նկարագիրքը՝ ամենանման են Տրդատայ գործոց նուիրեալ 591 և 592 էջերու հատուածոց հետ, որպէս թէ հեղինակն ուզած ըլլար այս երկու բարեպաշտ թագաւորաց և նոցա յաւէտ յիշատակաց արժանի գործոց զուգակշիռն ընել: Այսպէս ուրեմն մէկ կողմէն Կոստանդիանոսի դրուագին յՆաեբլոսէն պարզ փոխառութիւն լինելն, իսկ միւս կողմէն ալ Տրդատայ և Գրիգորի ուղևորութեան մասին աւանդելոց՝ լոկ ազգային տիպ և երանգ ունենալը, կը վստահացնեն զիս եզրակացնել, թէ ստուգիւ այդ կրկին դրուագաց հեղինակն՝ յոյն չէր կրնար լինել, զուցէ, թէ և ոչ իսկ Գրիգորի կենսագիրն էր. այլ Ագաթանգեղոսեան գրոց խմբագիրն, որ Կոստանդիանոսի գործոց վերաբերեալ հատուածներն՝ ուղղակի Նւսեբիոսէն քաղեց. իսկ զՏրդատայն՝ մասամբ Կոստանդիանոսի կենսագրութեան հետևողութեամբը, զոր այլուր տեսանք, մասն մի Գրիգորի կենսագրութենէն և մաս մ'այլ յազգային աւանդութեանց առնելով ձևացուցած է այդ գլխահամարներն. և թէ Ագաթանգեղոսի վերջին գրքի մէջ աւելի՝ քան թէ յառաջնումն՝ բազմաթիւ են և յայտնապէս կը տեսնուին խմբագրո‿

ղէս ներմուծուած հատուածներն, մանաւանդ եթէ Կորեան հետ
նմանաբան հատուածներն եա 'ի միասին առնունք:

Տրդատայ և Գրիգորի Հռովմ գնալու հատուածոց աղբերքն այս֊
պէս որոշելէն վերջ, դառնանք այսուհետև քննել կամ, եթէ կարելի
է, լուծել այդ դէպքին պատմական եղելութեան կամ չեղելութեան
դժուարակնճիռ հանգոյցը, որուն հետ սերտիւ միացած է յանուն
Ագաթանգեղայ մեզի հասած Դաշանց Թղթի խնդիրն:

Արդ, այսպիսի կարևոր եղելութեան ստուգութեանը նպաստաւոր
կ'երևի ազգիս ընդհանուր և հին աւանդութիւնն [1]: Իսկ արդի տոհ֊
մային մատենագրաց շատերն՝ զոյգ ընդ արտաքնոց պէսպէս կար֊
ծիս [2] ունեցան իրարու հակառակամարտ:

1. Ագաթանգեղոս.– Զենոբ, Պատմ. Տարօնոյ.–Մ. Խորենացի, Պատմ
Հայոց Բ. գլ. ՁԱ.– Յովհ. Կաթողիկոս, Պատմ Հայոց. – Ստեփանոս Ա֊
սողիկ, Բ. Ա.– Շնորհալի, Վիպասանութիւն, ՅԿ և ՅՀ. – Գրիգոր Տղայ,
Թուղթ առ արևելեան վարդապետս. – Վանական վարդապետ, ճառ
Հարցմանց. – Վարդան, Պատմ. Հայոց. – Կիրակոս – ճառընտիրք և
Յայսմաւուրք. – Եղիշէ, Պատմութիւն Վարդանանց պատերազմին, գլ. Գ:
2. Ստիլտինգ՝ (Acta Sanctorum, Sept. 30. T. VIII, p. 165–167) թէ
Տրդատայ և Գրիգորի երթի պատմութիւնն առ Կոստանդիանոս և թէ
Դաշանց Թղթոյ մի գոյութիւնն անվաւեր կը համարի: Նորա համակար֊
ծիք են Բարոնիոս, Տիլլըմոն և այլք ոմանք յեւրոպացի մատենագրաց:
Հ. Մ Չամչեան, Պատմ. Հայոց, հտ. Ա. էջ 636–644, ընդհակառակն զեր֊
կոսեանն իսկ առանց երկբայութեան կը համարի, և կ'ենթադրէ, թէ
Դաշանց Թուղթն՝ ուրեք ուրեք միայն խանգարուած է 'ի յետնագունից:
Հ. Յովսէփ Գաթըրճեան, Տիեզ. Պատմ. հտ. Բ. էջ 479, Գրիգորի և Տրդա֊
տայ երթն 'ի Հռովմ մօտ յամն 312 և դաշանց հաստատութիւնն՝ «ա֊
ռանց ինչ ուստեք հակառակութեան» կը համարի. իսկ այժմեան Թուղ֊
թըն իբրև գլխովին անհարազատ 'ի բաց մերժելով: Սակայն դիտելու է,
որ ամն 312 նշանակեալ 'ի հեղինակէն, չի համապատասխաներ ըստ
Եւսեբիոսի տեղւոյն, զոր նա մէջ կը բերէ. այսինքն է Կոստանդիանոսի
Կենսագրութեան Ա. Գրոց ԽԳ գլուխը. զի այդ ժամանակամիջոցին ոչ
Կոստանդիանոս իբրև քրիստոնեայ կայսր ծանուցուած էր առ ար֊
տաքս, և ոչ իսկ միապետեալ 'ի Հռովմ. ուստի ոչ առիթ կայր և ոչ այլ
կարէր Տրդատ երթալ առ նա. զի Մաքսիմինոսի դէմ տուած պատե֊
րազմներէն դեռ հազիւ հանգստացած էր կամ ոչ գլխովին. և թէ Եւսե֊
բիոսէն յիշուած դէպքը՝ գրեթէ 13 տարի վերջ հանդիպեցաւ: Մատ֊
թէոս Կաթողիկոսն՝ յամին 1858 Մոսկուա տպուած «Ճռաքաղի» մէջ
հրատարակուած յօդուածովը՝ ջերմ պաշտպան կը հանդիսանայ ոչ մի֊
այն Գրիգորի և Տրդատայ երթին 'ի Հռովմ, այլ նոյն իսկ այժմեան Դա֊
շանց Թղթին հարազատութեանը, միամտութեամբ մեղադրելով թէ այն
ուսումնական հետազօտութիւնն, որ բանաւոր տարակոյսներ կը յա֊
րուցանէր նորա մասին, և թէ զՄխիթարեանս, իբրու այն, թէ աչառու֊
թեան աղագաւ հրատարակած չեն այն Թուղթը՝ զոյգ ընդ գրոց Ագա֊
թանգեղոսի: Սակայն գիտնալու է, թէ Մխիթարեանք ոչ եթէ աչառու֊
թեան, այլ այն Թղթոյն՝ հնագոյն օրինակաց մէջ չգտնուելուն և անհա֊
րազատութեանը համար դուրս թողած են: Յամին 1862 եւս Էջմիածնայ
Միաբանից ուսումնատենչ վարդապետն Կր. Շահնազարեան, որ «Դա֊
շանց Թղթոյ քննութիւն և հերքումն Մատթէոսի» մակագրեալ փոքրիկ
երկասիրութեանը մէջ՝ անսովոր կորովով մտաց և գրչի՝ իւր նախոր֊
դին, մանաւանդ թէ հակառակորդի կարծեաց խեղճութիւնն՝ աններքե֊
լի փաստերով հերքեց և իւր ախոյեանը լռեցոյց: Բայց պէտք է ասել,
թէ Շահնազարեան հակահռովմէական հոգիէ մղուած՝ անդրագոյնս

Արդ, կարգաւ յառաջ խաղալու և յաջողութեամբ լուծելու համար այս հանգոյցս, կարևոր կը համարիմ ծանուցանել, թէպէտև սերտիւ իրարու հետ միացած՝ բայց իրարմէ որոշ երեք կէտերով նկատելու է զայն․ այսինքն է, Ա․ Տրդատայ երթն առ Կոստանդիանոս և նոցա մէջ եղած դաշանց հաստատութիւնը: Բ. Արդեօք այժմեան մեզի հասած Դաշանց թուղթն իցէ՞ վաւերական: Գ. Արդեօք Գրիգոր ևս գնա՞ց ընդ Տրդատայ 'ի Հռովմ և ի՞նչ նպատակաւ:

Այս հարցմանցս երկրորդն՝ այժմ այնքան յայտնի և պայծառ կերպով պարզուած է, որ նորա մասին ընդարձակօրէն խօսելն իսկ ժամավաճառութիւն կը համարիմ: Ես համոզեալ եմ, թէ այդ թուղթըն՝ է պարզապէս յիշեցուցիչ մի ուրիշ պաշտօնական Դաշանց թղթի, և ոչ երբէք մի և նոյն դաշանց թուղթը, որ կը յիշուի առ Ագաթանգեղ: Մանրազնին և արդարակշիռ խուզարկութեանց համեմատ, այժմեան Դաշանց թուղթը՝ մասամբ մի Ագաթանգեղոսի, Զենոբայ, Փաւստոսի և Եղիշէի տեղեաց, և մասամբ ալ Հռովմայ Քահանայապետաց առ Կաթողիկոսունս Հայոց գրած թղթոց վերայ յետոյ ուրեմն յօրինուած և շինծու գրութիւն է, և ոչ թէ հնագոյն յոյն բնագրէ մի եղած թարգմանութիւն: Թերևս ոմանց մտքէն անցած լինի, թէ նորա մէջ գտնուած փռանկերէն, թրքերէն և այլ օտարաբանութիւնք՝ թարգմանութեան ձեռքով մտած լինին անդ, ուստի և անբաւականք, առ 'ի ցուցանել նորա անհարազատութիւնը: Այս ստոյգ կը լինէր, եթէ լոկ այդ օտարաբանութիւնքը միայն լեալ էին․ սակայն երբ ակներև կը տեսնենք, որ պատմական դէպք իսկ, ժամանակագրութեան հսկայաձև սխալներ, աշխարհագրական անուանք, հակասութիւնք, լոկ ազգային առանձնայատկութիւններ, ընթացք՝ հակառակ արտաքին պատմագրութեան. միով բանիւ բովանդակութիւնն ինքնին գրութեան՝ գլխովին այլազգ են և այլ ինչ ցուցանեն մեզ, քան թէ Դ դարու Հայաստանեայց և այլ եկեղեցեաց վիճակն և իրաւասութիւնքը, այլ ևս չէ պարտ տարակուսիլ, թէ այս թուղթս գրուած է կամ ,,ամին 1080՝ պատեհաւ երթին **Գրիգորի Վկայասէրի** 'ի Հռովմ և յԵրուսաղէմ, և կամ լաւ ևս

ևս վարեց իւր յաղթական քայլերն, և մերժեց ոչ միայն Գրիգորի երթն 'ի Հռովմ, այլ նոյն իսկ մր և է եկեղեցական դաշին և յարաբերութեանց գոյութիւնն՝ Հայաստանեայց և Արևմտեան եկեղեցեաց մէջ, և զՏրդատայն իսկ տարակուսի տակ ձգեց: Նորա կարծիքով, տոհմային պատմագրութեան յիշուած Դաշինքը՝ ոչ թէ առ Կոստանդիանոսիւ, այլ Ներոնի, Տրայիանոսի և Դիոկղետիանոսի ժամանակ եղած հասկանալի է: Ապա Գուտշմիդ՝ իւր բազմիցս յիշեալ երկասիրութեանը մէջ Ագաթանգեղայ վերոյիշեալ դրուագի հատուածոց անհարազատութեան հետ 'ի միասին՝ Տրդատայ երթն ևս 'ի քաղաքն յաւիտենական՝ իբրև հակապատմական համարեցաւ: Հուսկ ապա յիշելու եմք զԳերպ. Մ. Օրմանեան. սա իւր «Աթոռ Հայաստանեայց» երկասիրութեան 59 էջում, որոշակի կ'ըսէ, թէ «Ս. Գրիգոր և Ս. Տրդատ թագաւոր 'ի Հռովմ գնացած չեն», և թէ Տրդատ թագաւորին՝ Կոստանդիանոսի օրով 'ի Հռովմ երթալուն պատմութիւնը՝ Ներոնի օրով Տրդատ անունով Հայոց թագաւորի մը Հռովմ երթալուն վրայօք՝ Հռովմայեցի պատմիչներուն պատմութենէն առաջ եկած շփոթութիւն մըն է»:

յամին 1185–1186 առ. Գրիգորիւ Տղայ կոչեցեալ կաթողիկոսիւ, ո֊րում յամին 1184 ուղարկեց մեծ Քահանայապետն Հռովմայ Լուկիոս Գ. զպալլիոնն և զխոյր կամ զմիտրա, հանդերձ թղթով և լիազօր իշխանութեամբ և իրաւասութեամբ, զոր Ն. Լամբրոնացի այլով խմն և ճիշդ բացատրութեամբ կ'ըսէ. « Ի լրումն պատարագաց կանոնականին »: Ցիրաւի, այսպիսի մի եղելութեան իբրև ակն յայտնի ապացոյց հա֊մարելու ենք Վարդան պատմչին մէկ տեղին, յորում յետ յիշելոյ զընծայս Լուկիոսի Գ-ի՝ առ Գրիգոր Տղայ, անդէն կը յարէ Դաշանց թղթոյ հետևեալ խօսքերն. « Գրեաց գիր հրամանաւ սուրբ Առաքե֊լոցն՝ 'ի նոցա երեսաց, եթէ Հայոց պատրիարքն՝ յայնկոյս ծովու իշխա֊նաւորն կոչցի 'ի մերոյ Հայոց և Յունաց և ամենայն ազգաց, որպէս մեք յայսմ կողմանէ, երկրաւոր բանալեօք »: Ինչպէս Վարդանայ՝ այսպէս և նորա մէջ բերած Դաշանց թղթի այս չափազանց բա֊ցատրութիւնն՝ Հայք միայն կարէին ընել և ոչ Քահանայապետն. ո֊րովհետև երեք տարի վերջ Կղեմէսի առ նոյն կաթողիկոսն գրած թուղթը [1], զոր թարգմանեց Լամբրոնացին, բոլորովին այլ ինչ կը ցուցանէ: Դաշանց թղթոյ աններդաշնակ (?) զօրեղ ապացոյց֊ներն՝ արդէն 'ի վաղուց տուած է Տաղնազարեան իւր վերոյիշեալ երկասիրութեան՝ հայերէն և գաղղիարէն հրատարակութեանց մէջ: Ուստի ես այժմ մի ուրիշ կէտի վերայ կը հրաւիրեմ ընթերցանե֊լեաց ուշադրութիւնը. այսինքն է, արդ եթէ Գրիգորի կենսագիրն կամ գէթ Գրոցս խմբագիրն եղած լինէր գրիչ այժմեան Դաշանց թղթոյն, անշուշտ 653 իջում, ուր կը լինի յիշատակութիւն Դաշանց հաստատութեան, զետեղած կը լինէր նաև այդ թուղթը, ինչպէս զետեղեց նա 106–112 յէջս Տրդատայ հրովարտակներն, 124 իջում Դիոկղետիանոսի թուղթն, և հուսկ յէջսն 598 և 613 Տրդատայ թուղ֊թըն՝ առ Ղևոնդիոս, և սորայն Պատասխանին՝ առ Տրդատ, անմի֊ջապէս զկնի յիշատակութեան թղթոցս: Իսկ ընդհակառակն Ագա֊թանգեղայ գրոց և Գրիգորի Գործոց թէ յունարէն օրինակաց մէջ, որք գրուած են Ժ դարուն մէջ, և թէ հայերէն հին օրինակաց մէջ, որպիսի են Վիեննայի կրկնագիրն և Պարիզու մատենադարանի ըն֊տիր օրինակն, չկայ այժմեան դաշանց թուղթն. այլ միայն ԺԲ դարէն շատ վերջ գրուած մի քանի օրինակաց մէջ կը գտնուի այն: Այս բանս ամենազօրեղ ապացոյց է այժմեան Դաշանց թղթի ան֊գոյութեանն 'ի Ժ դարու:

Գալով առաջին և վերջին խնդրոց՝ լսենք նախ Դ և Ե դարուց պատմագրաց աւանդածն, որոնք մերձաւոր գոլով ժամանակաւ Գրիգորի, անշուշտ այնպիսի եղելութեանց իսկ կարող էին լինել քա֊ջածանօթ: Զենոբ [2] երիցս կը խօսի Տրդատայ 'ի Հռովմ երթալուն

1. Տես « Սիսուան » յէջ 466–468, որուն բանիբուն հեղինակն ևս թէ֊պէտև աստ և « Այրարատի » մէջ իսկ Տրդատայ և Գրիգորի՝ Հռովմ եր֊թալը գլխովին պատմական կը համարի, բայց սոյն թղթի հարազա֊տութիւնը կը մերժէ բացէ 'ի բաց:

2. Նախ յէջ 14 խօսելով Տրդատայ և Գրիգորի առ Եղիազար գրած թղթին առաքման վերայ, կ'ըսէ. « Իսկ Եղիազար եկեալ 'ի ճանապար֊

վերայ. բայց յառաջին տեղում միայն՝ յանուանէ կը յիշուի Գրիգոր, իբրև ուղեկից Տրդատայ դէպ 'ի Հռովմ: Երկրորդ տեղւոյն մէջ՝ Տրդատայ կողմէն որոշակի կը ծանուցուի Հռովմ երթալու պարզ դիտաւորութիւնը միայն. բայց երբ զօրօք Ապահունեաց գաւառը կը հասնի՝ այնուհետև խնդիրը յունական զօրաց գալուն, Վրաց օգնելու և ամսօրեայ պատերազմի կը փոխուի, ընդդէմ իշխանին Բասլաց, հանդերձ Անտոնի և Կրօնիդեայ արարուածովքն: Իսկ յետ այնորիկ՝ « [illegible] » անորիշ բառով կ'արտայայտուին գնացողք, որ յայտնի չէ թէ ո՞յք լցեն դոքա, և ո՞յք եկաւորքն 'ի Հռովմայ. Գրիգո՞ր արդեօք, թէ Աղրիանոս ընդ Տրդատայ:

Արդ, առ Զենոբայ եղած առաջին տեղին, եթէ հարազատ իցէ, այնուհետև ամէն դժուարութիւն գրեթէ լուծուած կարելի էր համարել, նաև Ս. Գրիգորի Հռովմ գնալու մասին: Իսկ երկրորդ տեղւոյն վկայութեամբը՝ Դաշանց հաստատութեան և թղթոյ մի գոյութիւնը կը ստուգուէր: Շահնազարեան՝ սոյն տեղեաց հարազատութիւնն ընդունելէն յետոյ, երբ Գրիգորի երթն 'ի Հռովմ և դաշանց հաստատութիւնն ընդ մէջ երկուց թագաւորաց կը ժխտէ, մեծ հակասութեան մէջ կ'անկանի. այսպէս նաև Օրմանեանի համար ըսելու է, երբ առանց այս տեղեաց անհարազատութիւնը ցուցանելոյ՝ աղեքսանդրեան սրով կ'ուզէ կտրել այն բազմակնճիռ հանգոյցը, մերժելով Տրդատայ 'ի Հռովմ երթի աւանդութիւնն: Արդ, ինչպէս Ագաթանգեղոսին՝ այսպէս ևս Զենոբայ այս տեղիքս, վստահութեամբ ընդունողաց համար, եղան քար գայթակղութեան ընդունելոյ անխտիր և՛ զերթն Գրիգորի ընդ Տրդատայ 'ի Հռովմ և՛ զհարազատութիւն այժմեան անհարազատ թղթոյն Դաշանց: Իսկ առանց քննութեան և կամ քննաբանօրէն զանոնք մերժողները՝ ստիպեցան և՛ մերժել զերեսեան դէպս միանգամայն: Բայց ես կ'աղորժիմ այս երկու դէմ ընդդէմ շաւղաց՝ միջինն ընտրել, զի համոզուած եմ, թէ կայ և պէտք է որ լինի իրօք միջին շաւիղ մի, ըղձացեալ ճշմարտութեանն հասնելու համար. և այս իսկ է զգուշաւոր քննութիւն տեղեացս, առ որս հասեալ կամք:

Զենոբայ առաջին տեղւոյն մէջ՝ Տրդատայ և Գրիգորի համար կ'ըսուի, թէ կացին 'ի Հռովմ « [illegible] ». իսկ յերրորդումն՝

հին հանդիպեցաւ սրբոյն Գրիգորի, և խնդացեալ յոյժ՝ դարձաւ զկնի նոցա մինչև 'ի Հռովմ քաղաք: Եւ անդ կացեալ բազում աւուրս ապա խնդրեաց 'ի նշխարաց սրբոց Առաքելոցն մասն ինչ, զահեակ ձեռն Անդրէի Առաքելոյն և Ղուկասու Աւետարանչին: Զոր առեալ մեծաւ խնդութեամբ դարձան յաշխարհն հայոց » և այլն: Բ յէջ 40 կ'ըսէ. « Իժամանակսն յայնոսիկ լուր եհաս 'ի դուռն արքային, թէ Կոստանդիանոս կայսրն հաւատաց 'ի Քրիստոս Աստուած... Ապա խորհուրդ 'ի մէջ առեալ արքային Տրդատայ գնալ 'ի դուռն կայսեր վասն դնելոյ դաշինս խաղաղութեան 'ի մէջ իւրեանց. եկին հասին 'ի քաղաքն Մանազկերտ »: Գ. յէջ 43 կ'ըսուի. « Եւ ինքեանք յառաջեալ գնացին. բազում աւուրց օթևանօք զանց առնէին մինչև հասին 'ի Հռովմ քաղաք. և անդ կացեալ սակաւ աւուրս, դարձան մեծաշուք պատուով, և բազում ուրախութեամբ գային հասանէին ընդ գաւառն Պալունեաց », և այլն:

ընդհակառակն գրուած է « [illegible] » : Արդ, ինչպէս սակաւը՝ բազումին, այսպէս ևս առաջին տեղին՝ ուղղակի կը հակառակի երրորդին, և անհասկանալի կը մնայ, եթէ զերկաքանչիւրն իսկ ընծայենք մի և նոյն հեղինակին: Ծրարոցիս ծայրը ձեռքերնիս. ունենալով՝ կարեմք դեռ ուրիշ դէմ ընդդէմ խրողութիւնս ևս յայտնել առաջին տեղւոյն մէջ: Նու յիրաւի, անմիջապէս փոքր ինչ յառաջ Ղևոնդիոսի առ Ս. Գրիգոր գրուած թղթոյն մէջ կը. ծանուցուի, թէ Եղիազարն՝ հալածեալ 'ի հերետիկոսաց գնաց փախստական 'ի Հռովմ, և Տիմոթէոս՝ յԵրուսաղէմ, վասն թարգմանութեան Աւետարանին 'ի հելլենացի գիրս. իսկ աստ ընդհակառակն, Եղիազար՝ 'ի միջագետս Ասորւոց գացած կը պատմուի [1], և Տիմոթէոս՝ 'ի Կորընթոս՝ վասն թարգմանութեան ԺԲ մարգարէից: Տրդատայ և Գրիգորի թուղթն տանողները՝ Կեսարիայէն կու գան և դարձեալ 'ի Կեսարիա և յՈւռհա կը վերադառնան. շարունակ յոռի շրջանի մէջ են, Հռովմէն յԵրուսաղէմ և աստի դարձեալ 'ի Հռովմ զչուն առնելով: Գայիոս (Կայիոս) կը յիշուի նախ իբրև եպիսկոպոս Եփեսոսի, և քանի մի տող վերջ՝ ապա կը ծանուցուի ձեռնադրութիւն նորա Հայրապետ Երուսաղեմայ: Այլ դիտելու ենք, ու Երուսաղեմայ եպիսկոպոսաց ցուցակին [2] մէջ կը գտնուին ստուգիւ Գայիոս Ա և Գայիոս Բ երկու համանուն եպիսկոպոսներ. սակայն վերջնոյս ժամանակամիջոցն է ամ Տեառն 168. ուրեմն նոյնը չէր կարող լինել միանգամայն և յամին 320, առանց Քրիստոսի բարեկամին Ղազարու բաղդին հանդիպելու: Եղիազարու և Տիմոթէոսի յԵրուսաղէմ երթալուն իբրև մի այլ պատճառ կը տրուի՝ Մենանդրի հեթանոսական աղանդոյն քննութիւնն, յասելն. « Որ և յայնժամ բազումք դեռ ունէին զնորա պղծութիւնն »: Սակայն դիտելու է, որ ոչ միայն յայնժամ, այլ նոյն իսկ ցԶ դար կը տևէր այն աղանդն, ըստ ասելոյ եկեղեցական պատմութեան, զոյգ ընդ աղանդոյն Դոսիթէոսի. ուստի վեցերորդ դարուն և նոյն իսկ յեօթներորդումն ապրող մէկն ևս կարէր ասել զայս. և թէ հաւանօրէն նա էր այս տողերս գրողը՝ քան թէ Զենոբ: Նիկոպօլս և Աղդէն անուանքս իսկ տարակուսական են. զի առաջինը՝ չէ մարթ գտանել ուրեք. իսկ գալով երկրորդին՝ կը յիշեն աշխարհագիրք, արդարև, Աղդէ (Aghde) բերդաքաղաք մի Պարսից Եզդ նահանգին մէջ, և Հռոմկլայն՝ քաղաք Հայոց առ Եփրատաւ: Արդ, այս քաղաքներս, եթէ իրօք եղած համարինք, սակայն և այնպէս Տիմոթէոսը՝ չէր կարող այդ քաղաքաց ոչ միոյն և ոչ միւսոյն եպիսկոպոս եղած լինել 'ի ժամանակի անդ դարձին Հայոց: Ուստի ինձ հաւանական կը թուի, թէ Նիկոպօլս՝ է սխալ ուղղագրութիւն Նիկոպօլսի, և Ագդենացւոց՝ Աթենացւոց կամ Անտիոքացւոց: Ցիրավի, Սոկրատայ պատմութեան հայերէն թարգմանութեան Դ. օրինակն, որ Զենոբայ Ե. օրինակին հետ կազմուած է և մի և նոյն

1. Զենոբայ Ե օրինակին մէջ, որ կէս երկաթագիր և ընտրելագոյնն է 'ի ձեռագրատան Ս. Ղազարու, թիւ 693, ը. Զ, այդպէս գրուած է:
2. Տես P. Pius Bonifacius Gamr, Ratisbonæ, 1873, p. 452.

ընտիր գլշութեամբ գաղափարուած է, Սեղբեստրոսի **Կենսագրութեան**[1] Ա գլխոյն մէջ այսպէս կը գրէ. « Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ հալածեալ լինէր **Տիմոթէոս հայրապետն Անտիոքայ** յամբարըշտացն. և փախստեայ լեալ գայր հասանէր 'ի Հռովմ ... և այսպէս զտարի մի և զվեց ամիս զճշմարտութիւն հաւատոց և վարուց ուսուցանէր ժողովրդեանն կամօք հայրապետին Մելտեայ » (այսինքն է Միլտիադեայ): Իսկ Բ. գլխուն մէջ կը ծանուցուի, թէ եպարքոս քաղաքին Հռովմայ՝ արկ զնա 'ի բանդ և 'ի տանջանս, և սրով եհատ զգլուխ Ս. հայրապետիս: Արդ, ես չկարեմ ըսել, թէ ո՛ր արդեօք 'ի տեղեաց աստի եղած է աղբիւր Զենոբայ. այլ այս յայտ է, թէ վերջինս ոճով խմն կը պատմէ Տիմոթէոսի մասին և ուղղակի կը հակադրի առ Զենոբայ եղած աւանդութեանը: Բայց երկաքանչիւրին աւանդածն իսկ՝ յանհարազատ պատմագրութենէն Սեղբեստրոսի առնուած կ'երևին, զոր հաւանօրէն թարգմանաբար յօրինեց Փիլոն յէ դարուն. և աստ ապացոյց կը համարիմ ես Տիմոթէոս եպիսկոպոսի մի անգոյութիւնն 'ի ցուցակի եպիսկոպոսացն Անտիոքայ:

Զենոբայ առաջին և երրորդ տեղեաց մէջ ուրիշ հակասութիւն մի ևս կայ. զի յառաջնումն կ'ըսուի, թէ Հռովմէն 'ի Հայս դառնալուն պէս Տրդատ, « անցեալ գնաց յաշխարհն իւր յԱյրարատ 'ի Վաղարշապատ քաղաք ». իսկ յերրորդումն, թէ մնաց 'ի Տարօն, զի վատակեալ էին զօրքն. և թէ հօն յանկարծակի պաշարուեցաւ 'ի զօրաց Գեղռեհոնի՝ դաւաճանակալութեամբ իշխանին Աղձնեաց: Ուստի ես չեմ տարակուսիր զառաջին տեղին անհարազատ համարել, զի երրորդը քաջ կը կապակցի անկէ վերջ պատմուած դէպքին հետ: Ուրեմն պէտք է, ըստ այնմ ևս եզրակացնել, թէ առ Զենոբայ եղած առաջին տեղւով՝ չի հաւատարմանար Գրիգորի երթն 'ի Հռովմ՝ ընդ Տրդատայ. որով կը մնայ քննել զՏրդատայն ևեթ:

1 Ի սկիզբն գրոցս՝ այսպէս մակագրեալ է « Պատմութիւն Սոկրատայ՝ ըստ Հռովմայեցւոց նահանգին, Եպիսկոպոսաց և թագաւորաց և որ 'ի նոյն յարմարին բանք սրբոց և անսրբոց, զոր բացայայտէ պատմութիւնս »: Բայց Ցառաջաբանին մէջ կ'ըսէ. « Սկիզբն Սեղբեստրոսի պատմութեան արասցուք », և այլն. և իրօք կ'ընէ Սեղբեստրոսի պատմութիւնը՝ ԺԵ գլխահամարներու բաժնելով: Թէպէտև անհարազատ կը տեսնուի, բայց շատ հետաքրքրական է՝ Կոստանդիանոսի և Հեղինէի առ միմեանս գրած թղթոց յառաջբերութեամբքը: Հրէից Աբիաթար քահանայապետին առաջնորդութեամբ՝ հարիւրաւոր րաբունեաց համախըմբումն և Սեղբեստրոսի՝ նոցա հետ ունեցած՝ Քրիստոսի Աստուածութեան մասին, վիճաբանութեամբ շքեղ յաղթանակը՝ 'ի ներկայութեան ԺԲ եպիսկոպոսաց և Կոստանդիանոսի և Հեղինէի, զոր Հրէայք ուզեցին պատրել: Ցետոյ կու գան մեծին Բարսղի, Գրիգորի Նազիանզացւոյ մասին և այլն տուած ընդարձակ տեղեկութիւնքը: Սակայն դիտելու է, որ Սոկրատայ Պատմութեան յունարէն բնագրին Ա գիրքն, յէջն ԽԶ, հազիւ ուրեմն կը սկսի. « Եւսեբի Պամփիլեայ 'ի տասներորդ գիրսն եղեալ է » բառերով: Արդ, որովհետև Սոկրատայ պատմութեան թարգմանաբար յօրինողն Փիլոն ումն Հայազգի, յէ դարուն, եղած կ'աւանդուի, ուստի շատ հաւանական է, որ այս անվաւերական կարծեցեալ գիրքս ևս նա խմբագրած ըլլայ՝ յանուն Սոկրատայ, բայց թէ ինչ հիման վերայ, այս քննելի է:

*Յետ Զենոբայ՝ կու գայ Փաւստոս Բուզանդացին, որ իւր Գ. Դպրութեան ԻԱ գլխուն մէջ համաձայն Ամ. Մարկեղոսի (ԺԵ. գլ. Թ) և Նւտրոպիոսի (Ժ. գլ. ԺԷ), Յուլիանոս կայսեր ամօթալի դաշամբը՝ Տիրանայ գերեվարութիւնն և Հայաստանի ոտնակոխ լինելն 'ի Թագաւորէն Պարսից պատմելէն վերջ, կը ծանուցանէ, թէ իշխանք Հայոց միաձոյլ ժողովով որոշեցին դիմել վերստին առ Թագաւորն Յունաց, « Զի ծառայեսցեն նմա հնազանդութեամբ, և նա լիցի նոցա թիկունք օգնականութեան ... : Մանաւանդ զի սուրբն յիշեալ պաշտանցն կուսից, գերեզմանացն հանգստարանեան, որ միջնորդութեամբ 'ի մէջ կայսերն Կոստանդիանոսի և 'ի մէջ Խոսրովորդին Տրդատայ եղեալ էր » :*

*Արդ, Փաւստոսի այս տեղւոյս մէջ բնաւ յիշատակութիւն չկայ Գրիգորի, այլ որոշակի Կոստանդիանոսի և Տրդատայ օրով կնքուած դաշինքին մի հաստատութիւնը, որուն վերայ չէ մարթ տարակուսիլ, առանց տարակուսելոյ այս տեղւոյս հարազատութեանը վերայ: Յիրաւի, ես իսկ կ'ուզեմ պահ մի տարակուսել, բայց տարակոյսս լուծելու աղագաւ: Մ. Խորենացի, Գ. գլ. ԺԷ և ԺԸ, Փաւստոսէն բոլորովին տարբեր կերպով կը թուի պատմել զկալանաւորումն Տիրանայ, և նորա որդւոյն Արշակ Բդի թագաւորելն իսկ՝ Շապհոյ ձեռքով եղած կը պատմէ և ոչ թէ թագաւորին Յունաց: Այս վերջին տեսակէտով Մովսիսի աւանդածն աւելի բանաւոր կ'երևի, եթէ Փաւստոսի վերոյիշեալ « թագաւորն Յունաց » բացատրութեամբն՝ ուղղակի զՅուլիանոս հասկանանք. որովհետև պարտեալն Յուլիանոս, որ վատութեամբ՝ իւր նախորդ կայսերաց՝ Հայոց թագաւորաց հետ հաստատած դաշինքն ևս ցրեց, մատնելով զՀայս 'ի ժանիս Սասանեան վիրազին, նոյնը չէր կարող վերստին պաշտպանել զուէրութիւն իւր, թող թէ զՀայս՝ իւր անպարտելի յաղթողին դէմ: Բայց որովհետև Արշակայ թագաւորելու մասին՝ Յուլիանոսի ձեռնտուութիւնը կամ զնոյն ինքն Յուլիանոս չի յիշեր, այլ մի ուրիշ կայսր, մանաւանդ թէ մի և նոյն գլխուն մէջ՝ խօսք բացուելով գերելոց փոխանակութեան վերայ, զՎաղէս կը յիշէ յանուանէ. ուստի եթէ այդ ժամանակին Վաղէս կը թագաւորէր Յունաց (ըստ Մովսիսի՝ Վաղենտիանոս) և նորա ձեռնտուութեամբը թագաւորեաց Արշակ, ես այլ ևս չեմ տարակուսիր, աւելի Փաւստոսի՝ քան թէ Մովսիսի տեղւոյն պատմական կարևորութիւն տալ, որով և ամենահարազատ կը համարիմ Փաւստոսի վերոյիշեալ տեղին. մանաւանդ այսու իսկ, զի անջատ և միջանկեալ լոկ արտայայտութիւն մի չէ, այլ սերտիւ միացած է նախընթաց աւանդութեան հետ, ուր Հայք հրեշտակս կ'արձակեն 'ի դուռն Կայսեր՝ վաղընջական դաշանց ջերմագոյն հրովարտակօք. և կ'ըսուի, թէ կայսրն « Իբրև լուաւ զերն դոյնանէն, մեծաւ փութով և բազում պատրաստութեամբ 'ի խնդիր ելանէր իւրն հասելոյ և օգնական և թիկունք լինէր աշխարհին Հայոց »:*

*Փաւստոսի այն տեղւոյն հարազատութեան հետ՝ դաշանց հաստատութիւնն ևս առանց երկբայութեան գոլով, այժմ այս հարցն ընդ առաջ կ'ելլէ մեզ, այսինքն թէ. Արդեօք հռովմէական ինքնակալին Կոստանդիանոսի և Արշակունւոյն Տրդատայ բացակայու-*

*թեամբը կռեցաւ այսպիսի դաշն մի, թէ, ընդհականակն, նոցա միմեանց ներկայութեամբն։ Ես վերջինս եղած կը նկատեմ Փաւստոսի վերոյիշեալ բացատրութեանցը մէջ։ Ցիրաւի, նա՝ հետևեալ երեք կէտերը կ'արտայայտէ մեզ, Ա. իրապէս կռած դաշինքն. Բ. երդումն հաստատութեան կամ հաւատարիմ մնալու յայն՝ երկուստեք. Գ. միջնորդութիւն Կոստանդիանոսի և Տրդատայ։ Արդ, « միջնորդութեամբ » հեղինակս կամ երկու վեհապետաց ներկայութիւնը կ'ուզէ նշանակել, որ կը պահանջուի առ յերդնուլ. և կամ ուղղակի յէջ 653 առ Ագաթանգեղ նշանակուած « զհաւատսն որ 'ի Տէր Քրիստոսն էր »։ Սակայն երկու կերպով իսկ՝ Փաւստոս կը հաստատէ զաւանդեալն յԱգաթանգեղոսէ, և Ագաթանգեղոս՝ կը հաւատարմացնէ զասացեալն Փաւստոսի, դաշանց հաստատութեան մասին։*

*Երրորդ ծանրակշիռ վկայութիւնն երթին Տրդատայ առ Կոստանդիանոս և նոցա մէջ հաստատուած դաշինքի մի՝ յանախ մէջ բերուած է յանուն Վրթանիսի առ Կոստանդ կայսր գրուած թղթի հետևեալ տեղին, զոր կ'ընծայէ մեզ Մ. Խորենացին՝ իւր Պատմութեան Գ գրոց Ե գլխում այսպէս. « Յուշ լիցի քեզ ողջման ուխտի հօրն քո Կոստանդիանոսի, զոր առ մերում նախահօրն Տրդատայ. և մի տացես զաշխարհն քո Պարսից անաստուածից, այլ օգնեսցես մեզ զօրօք թագաւորեցուցանել զորդի Տրդատայ զԽոսրով։ Քանզի Աստուած զձեզ ոչ միայն Եւրոպիոյ, այլ և ամենայն Միջերկրեայց տիրեցոյց. և ահ զօրութեան ձերոյ եհաս մինչև 'ի ծագս երկրի »։ Սակայն այս թուղթս, թէ ըստ ներքին հանգամանաց և թէ բաղդատութեամբ Փաւստոսի յԳ. Դպրութեան աւանդածին հետ՝ անհարազատութեան նշաններ կու տայ։ Արդ, Մովսէս այդ թղթով կը ներկայացնէ մեզ անմիջապէս յետ մահուն Տրդատայ՝ զտէրութիւնն Հայոց իբրև տկար և անզօր և հասեալ 'ի մեծ վտանգ կործանման, այնպէս որ Յունաց կայսեր կը կարօտի առ 'ի կալ 'ի վերայ ոտին. և Խոսրով ինքնին՝ Կոստանդայ ձեռնտուութեամբը միայն կը յաջողի իւր հօր գահուն վերայ բարձրանալ։ Իսկ Բուզանդացին, ընդհականակն, իւր կարծեցեալ յոյնութեամբ հանդերձ՝ առանց Յունաց օգնականութեան մասին խօսք ինչ առնելոյ, կը հանէ զԽոսրով 'ի գահն Արշակունեաց, « որդի քաջի և առաքինւոյ » համբաւելով զնա. իսկ նորա ժամանակը՝ « ժամանակ շինութեան, խաղաղութեան, մարդաշատութեան, ստացուածաշատութեան » և անընդհատ յաղթանակաց եղած կը նկարագրէ, 'ի ձեռն քաջի և անպարտելի զօրավարին Վաչէի։ Եւ յիրաւի, նորա աշխարհաշինութեանը կը վկայեն նոյն իսկ Խոսրովակերտ, Տիգրանի քաղաքն և Մայրի անտառն, զոր Մովսէս ինքնին կը յիշէ այլուր։ Խորենացին՝ գոգցես իմն մարզ կը համարի զՀայս՝ կայսերն Յունաց, յասելն. « Մի տացես զաշխարհն քո անաստուածից », և դեսպանս իսկ աղաչաւորս կը ղրկէ առ նա։ Իսկ բազմիցս և 'ի զուր տարապարտուց իբրև հակառակորդ Հայոց և ազգատեաց զրպարտուած Բուզանդացին՝ բոլորովին անկախ կը համարի զայն յօտարաց, որպէս և էրն յաւուրս Տրդատայ։ Եւ յի‿*

բաւի, ցմահն Տրդատայ անկախ և շուրջանակի իւր թշնամեաց ահարկու եղող տէրութիւն մի՝ չէր կարող առանց նորանոր դիպաց և բանաւոր պատճառաց այն վիճակին հասած լինել, և նոյն ինքն Մովսէս բաւական փաստեր չի տար առ այս: Երկրորդ, Խոսրովու ժամանակ նորոգուած Հայոց 400 իշխանաց և գահուց կարգաւորութեան ցուցակն ևս, զոր 'ի մէջ կը բերէ Մեծին Ներսիսի վարուց հեղինակն, աւելի Բուզանդացւոյն՝ քան թէ Խորենացւոյ աւանդածները կը հաստատեն: Ըստ Մովսիսի, Մար՝ Ծոփաց իշխան և Գագ՝ (Դատ) իշխանն Հաշտենից էին, որք ղրկուեցան աղերսարկուք առ Կայսրն. մինչդեռ ըստ Փաւստոսի նոքա կը ղրկուին 'ի Խոսրովայ 'ի վերայ ապստամբ իշխանին Աղձնեաց, և ոչ թէ 'ի Բիւզանդիոն: Եթէ յառանձին ինչ կամ յարքունական յիշատակարանաց առած լինէր զայսոսիկ Մովսէս, այն ժամանակ կարելի էր նախադասել քան զՓաւստոս. բայց որովհետև նա ինքն Մովսէս կը ծանուցանէ Գ. գրոց Ա գլխուն մէջ, թէ « Հասարակաց խօսիւք անցանէ ընդ պատմութիւնն », որ յետ Տրդատայ. մանաւանդ թէ Խոսրովու և Վրթանիսի վերայ դեռ ուրիշ բաներ ևս կ'աւանդէ, քաղելով 'ի Փաւստոսէ՝ առանց նորա անուան յիշատակութեան. ուրեմն այսպիսի պարագայից մէջ, երբ նա Փաւստոսի հակառակ բաներ կը պատմէ, չէ կարելի իբրև ստուգագոյն համարել զայն: Վրթանիսի թղթոյն պաշտօնական և դիւանական չլինելոյն նշան է՝ Կոստանդայ կողմէն ներկայացուցած վեց տող պատասխանին, որուն վերնագիրն աւելի ընդարձակ է, քան թէ նոյն ինքն թուղթը: Արդ, ինչպէս անտեղի է ենթադրել կայսեր կողմանէ առ մեծ Կաթողիկոսն Հայոց և առ նախարարս այսպիսի խայտառակ թուղթ մի, այսպէս ևս դժուարահաւատալի կը տեսնուի Վրթանիսինը: Ուստի ինձ կը թուի, թէ Մովսէս կարէր տեսած կամ լսած լինել այնպիսի թղթոյ գոյութիւնը, բայց նորա մեզի հաղորդածներն այնպիսի պաշտօնական թղթոյ ոչ տիպն ունին և ոչ իսկ բովանդակութիւնը:

Սակայն այս յայտ է, թէ Մովսիսի վերոյիշեալ տեղին՝ առ Եղիշէի եղած դաշանց հաստատութեան վերաբերեալ մէկ նշանաւոր տեղւոյն[1] շատ նման է, զոր իբրև չորրորդ հեղինակութիւն կ'ուզեմ աստ առնուլ 'ի քնին: Արդ, Եղիշէի այս տեղիս՝ չորս այլևայլ մա-

1. Վարդանանց պատմութեան ստուգաբան հեղինակս, որուն հաւատարմութեանը վերայ ցարդ ոչ ոք տարակուսեցաւ, Հայոց նախարարական և եպիսկոպոսական ժողովքէն՝ առ Փոքրն Թէոդոս ուղղած նամակին մէջ այսպէս կը գրէ. « Որ խաղաղասէր մարդասիրութեամբ ձերով տիրէք ծովու և ցամաքի, և չիք ոք յերկրաւորացս, որ ձերում անարգել տէրութեանդ ընդդէմ դառնայցէ, — որպէս մեք իսկ ունիմք զանսուտ յիշատակարանսն զառաջինն նախնեացն ձերոց. ունելով զԵւրոպէ՝ անցին և տիրեցին և Ասիացւոց կողմանցն 'ի սահմանացն Սերայ մինչև 'ի կողմանս Գադերոնի, և ոչ ոք գտաւ ստամբակեալ և ելանել ըստ ձեռն նոցա: Եւ այնչափ մեծ իշխանութեամբ՝ դաստակերտ մեծ և սիրելի զՀայոց աշխարհս անուանէին: Վասն որոյ և նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, որ 'ի տղայութեան փախուցեալ 'ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն իւրոց՝ ապրեալ

սունս կը պարունակէ, Ա. սկիզբէն մինչև «Ընդդէմ դառնայցէ» ուղղակի Թէոդոսի և նորա տէրութեանը կը պատկանին. Բ. անտի մինչև «հայրենի աշխարհիս» Ներոնէն սկսեալ ցԴիոկղետիանոս՝ հռովմէական և հեթանոս կայսերաց՝ Հայոց հետ ունեցած վերաբերութիւնները կը յիշեցնէ. Գ. «սոյնպէս» էն՝ «ցկողմանս հիւսիսոյ» եղած մասը՝ Կոստանդիանոսի և Տրդատայ ժամանակամիջոցի կրօնական յարաբերութիւնը կը ծանուցանէ: Դ. աստի՝ մինչև ցվերջ եղած մասը՝ կը հաստատէ մեզ Կոստանդիանոսէն յառաջ և յետ այնորիկ ցԹէոդոս կայսրն եղած հնագոյն պաշտօնագրոց և դաշանց թղթոց գոյութիւնն՝ հանդերձ երկուստեք եղած, այսինքն է թագաւորացն Հայոց և կաթողիկոսաց և կայսերաց առ իրեարս գրուած թղթերով. այս բանս Փաւստոս ինքնին քաջ կը հաստատէ, զի ամէն անգամ, երբ նորընտիր կաթողիկոսաց երթն 'ի ձեռնադրութիւն կը պատմէ, կը յիշէ և զգրութիւն պաշտօնական թղթոց թագաւորացն Հայոց:

Սակայն սիրաքան Եղիշէի այս տեղւոյս մէջ պարունակուած այդ որիշ կէտերն չտեսնելով Կ. Շահնազարեան՝ յիշեալ երկասիրութեան 75–78 էջերում, անխտիր և ամբողջապէս այդ տեղին Կոստանդիանոսի և Տրդատայ նախորդ հեթանոս կայսերաց մասին եղած կը հասկնայ: Իսկ դաշանց թղթոյ մի գոյութիւնն ուրանալու համար, կը պնդէ, թէ «յիշատակարան» բառն ո՛չ Հայոց ո՛չ Յունաց և ո՛չ այլոց ազգաց մէջ **Թուղթ դաշանց** կամ **Ոսկի հաւատարմութեան** երբէք կը նշանակէ: Բայց նա եթէ ուշի ուշով կարդացած լինէր Եզրայ[1] Ա. գրոց Զ գլուխն, անդ պիտի գտնէր ակներև, թէ զէթ Հայք յիշատակարան բառով դուն ուրեք պատմութիւն կամ մատեան, այլ հրովարտակս, դիւանագիրս, և այլն, կ'իմանան: Այլ եթէ Եղիշէի 122 իջի այդ բացատրութիւնը չընդունեցաւ, զէթ 124 իջինը պէտք էր ընդունել, ուր յետ յիշելոյ զմատեանս, կը յաւելու, թէ անոնց մէջ կը գտնուէին թուղթք դաշանց կամ ուխտն հաստատութեան: Ուստի առանց «հոգետես» լինելու իսկ և «մասնաւոր շնորհաց», առանց Վարդանեանց՝ առ Թէոդոս գրած թղթոյն «խորհրդական մեկնութիւն մի տալու», ինչպէս կը կարծէ նա, կա-

նաւ յերկրիդ Յունաց, և 'ի ծէնջ թագաւորեալ տիրէր հայրենի աշխարհիս.—Սոյնպէս և զհաւատսն որ 'ի Քրիստոս ընկալեալ 'ի սուրբ եպիսկոպոսէն Հռովմայ՝ լուսաւորեաց զխաւարային կողմանս հիւսիսոյ»: Յետ կարգելոյ թղթոյն բովանդակ՝ անդէն կը յարէ, յէջ 124, թէ «Եւ իբրև յանդիման եղեն մեծի թագաւորին, և ընթերցան զգիր պադատանաց Հայոց աշխարհին և զյիշատակարանսն նախնեացն, բազում մատեանք, որ զնոյն ուխտ հաստատութեան 'ի ներքս գտանէին»:

1. Զի սրբազան գրիչը խօսելով առ Դարեհ, վասն հրովարտակին Կիւրոսի, կ'ըսէ. «Խնդիր արա՛ և տես 'ի տուն մատենագրաց, ուր կան գիրք յիշատակարանաց 'ի պահեստ թագաւորին Կիւրոսի, և եթէ գտցի հրամանաւ Կիւրոսի և բանիւ նորա, շինեսցեն զտուն Տեառն ... : Եւ գտաւ յԱմաթտանի Բատանացւոց (յեկբատան Մարաց), 'ի տեղւոջ ուր կային գիրք Յիշատակարանաց, ուր գրեալ էր այսպէս. «Յամին» ...:

րնմք ասել, թէ Եղիշէ կամ Յովսէփ կաթողիկոս և Վասակ Մարզպան թէ՛ իրենց յիշատակարանաց և թէ՛ յունական մատենից մէջ կը հաստատէին ուղղակի և՛ զգոյութիւն ուխտին հաստատութեան, զոր կնքեցին Կոստանդիանոս և Տրդատ. և թէ այս է ստուգիւ Եղիշէի տեղւոյն հարազատ իմաստն. զի Եղիշէ թէեւ Կոստանդիանոսի և նորա անմիջական յաջորդաց անուանքն « առաքինոյ նախնեաց ձերոց » բանից ներքև ծածկել է, սակայն Զենոնայ, Փաւստոսի և Մովսէսի վերոյիշեալ տեղիքն՝ որոշակի կը ծանուցանեն: Բաց աստի, նոյն խսկ Տրդատայ համար ըսածէն խսկ, թէ « Նոյնպէս զհաւատսն որ 'ի Քրիստոս ընկալաւ 'ի սուրբ եպիսկոպոսապետէն Հռովմայ » կ'իմացուի, թէ խօսքը քրիստոնեայ թագաւորաց և քրիստոնեականն Հռովմայ վերայ է, և ոչ թէ հեթանոս: Այս բանս ուղղակի ես հերքումն կը համարիմ նոյնպէս Օրմանեանի կարծեաց, որ ուզեց անուամբ Տրդատայ՝ զնախնին իմանալ, որ էր առ Ներոնիւ: Ցիրաւի, եթէ Եղիշէէն և նախայիշեալ երեք հեղինակութիւններէն յիշուած դաշինքը կամ ուխտն հաստատութեան՝ Կոստանդիանոսէն յառաջ հեթանոս կայսերաց հետ կնքուած լինէր, ինչ անհրաժեշտ հարկ կարէր ստիպել զնոյն ինքն Կոստանդիանոս, զԿոստանդ, զԱրկադիոս, զՎաղենտիանոս և զԹէոդոս, նոյն իսկ վտանգաւ իրենց տէրութեան՝ ձեռն կարկառել Հայոց ընդդէմ Պարսից, քանիցս անգամ երբ Հայք կը յիշեցնէին նոցա՝ իւրեանց նախնի թագաւորաց դաշանց հաւատարմութիւնը. մանաւանդ զի գիտէին քաջ թէ Մաքսիմիանոսի օրով խպառ խզուած էր այն վաղնջական դաշինքը, զոր կնքեց Դիոկղետիանոս: Ինչո՛ւ համար ուխտադրուժ կը համարին և նախնիք մեր զՄարկիանոս, որ դանդաղեցաւ օգնելու անօգնական Հայաստանին: Արդ, ըստ իս քրիստոսական պարտաւորիչ հաւատքէն դուրս՝ ուրիշ անհրաժեշտ հարկ մի չկար, զոր երբեմն միջնորդ կալան երկու քրիստոսասէր թագաւորքն, Կոստանդիանոս և Տրդատէս, իրարու օգնել՝ ընդդէմ հեթանոսաց, երբ մանաւանդ միհրական կրօնքը քրիստոնէութեան վերայ զէնք վերացնել կամենար: Արդարև, ցուցնելու աղագաւ, թէ այն դաշինքն երկուց թագաւորութեանց՝ սեփհական և մշտատև լինելու բնադրոշմն ունէր, և ոչ թէ պարզապէս առ կենդանութեամբ Տրդատայ և Կոստանդիանոսի, շատ է լսել առ Ագաթանգեղ եղած 653 իջի հետագայ խօսքերն. « Դաշինս կռէր ընդ նմա, միջնորդ կալեալ զհաւատսն, որ 'ի Տէր Քրիստոսն էր. զի անշուշտ մինչ 'ի բուն զհաւատարիմ սէրն 'ի մէջ երկոցուն թագաւորութեանց պահեսցեն. զի ևս քան զևս առաւելագոյն արքայն Հայոց հաստատէր 'ի յԵրրորդութեան 'ի հաւատս »: Դիտելու ենք որ Եղիշէի վերոյիշեալ տեղւոյն երրորդ մասը, զոր յառաջագոյն կրօնական անուանեցի, այսինքն է. « Սոյնպէս և զհաւատսն որ 'ի Քրիստոս ընկալեալ 'ի սուրբ եպիսկոպոսէն Հռովմայ՝ լուսաւորեաց զխաւարային կողմանս հիւսիսոյ », քաջ կը միաբանի Ագաթանգեղոսի տեղւոյն վերջի բացատրութեանն, և կարելի է վերջնոյս փոխառութիւն իսկ համարել, եթէ նորա արտայայտած իմաստով առնունք. այսինքն է, ոչ թէ Հռովմայ եպիսկոպոսին ձեռքով դարձաւ

*Տրդատ 'ի քրիստոնէութիւն, այլ թէ իւր հաւատակից կայսեր օրհնակաւն և բանիւք՝ ևս քան զևս հաստատեցաւ 'ի հաւատս Քրիստոսի: Երկրորդ, Եղիշէի այս խօսքերս՝ Նիկիական դաւանանքն ևս կարող են արտայայտել, որ եղև առ Սեղբեստրոսիւ, և առ Ագաթանգեղ, յէջ* 656, *կը կոչուի « Ամենայն տիեզերաց ընդունելութեան աւանդութեան հաւատք »: Ցիրաւի, այսպիսի պարագայի մէջ Եղիշէէն աւելի հնագոյն և ծանրակշիռ հեղինակ ոմն, որպիսին է Ս. Սահակ Պարթև, կու գայ և կը հաստատէ առաջնոյն խօսքերը. զի առ Ս. Պրոկղ և Ակակ հայրապետս գրած թղթոց մէջ, որոնց հարազատութիւնը բնաւ տարակոյս չի վերցներ, այսպէս կ'ասէ. « Պահել զհաւատարմութիւն հաւատոյ, զոր 'ի սկզբանէ 'ի ձեր ծնողաց վարդապետութենէ ընկալեալ ունէք »: Անտարակոյս, աստ Ս. Սահակ « հաստատութիւն հաւատոյ » բառերով, զնիկիական հաւատքը կը հասկնայ. « 'ի սկզբանէ » բառով անդստին Ս. Գրիգորի ժամանակը կը ցուցանէ. իսկ « 'ի ձէնջ » բացատրութեամբ՝ ոչ եթէ Պրոկղ կը հասկնայ, այլ յունական Եկեղեցին, որ դեռ Ե. դարուն մէջ իսկ միացեալ էր ընդ Հռովմայում կամ արևմտեան Եկեղեցւոյն հետ. յունական եկեղեցին կ'ըսեմ, յորմէ յետ երկրորդ դարձին ընդունեցաւ զսուրբ քահանայութիւն, զնիկիական դաւանութիւնն և զկարգս Եկեղեցւոյ: Ուրեմն ցայս վայր ըրած քննութիւններս եզրակացնելով, պէտք ենք ըսել, թէ Տրդատայ երթն առ Կոստանդիանոս 'ի Հին կամ 'ի նորն Հռովմ, և Դաշանց հաւատարմութիւնն՝ ըստ ամենայնի պատմական[1] է և առանց երկբայութեան։ Իսկ Գրիգորիոսը՝ առասպելական է և անստոյգ[2], որովհետև կը պակասին առ այն գրական, շօշափելի, հա-*

1. *Ցիրաւի, Եւսեբիոս 'Կոստանդիանոսի կենսագրութեան Դ. գրոց Է. գլխուն մէջ այնպիսի նկարագրութեամբ և պարագաներով կը գրէ յՈ․րևելից և յԱրևմտից իշխանաց և թագաւորաց եկաւորութիւնն և ընծայաբերութիւնն առ Կոստանդիանոս, որ տարակուսելու այլ ևս չիք տեղի: Անհիմն է Ստիլտինգի և Գուտշմիդի այս ընդդիմադրութիւնս, իբրու այն թէ Եւսեբիոս ոչ յիշէ յանուանէ՝ զՏրդատիոս: Սակայն դիտելու է, որ նոցանէ և ոչ մին կը յիշուի յանուանէ. բլէմմիւս, հնդիկ և եթովպացի անուանքը միայն կը գտնուին անդ. բայց տարազք և նկարագիրք՝ են բազում յոյժ: Բ. Ամենէն աւելի Տրդատ պէտք էր որ երթայր առ ինքնակալն Հռովմայ, մի՝ որպէս զի առ Դիոկղետիանոսիւ կռած՝ բայց առ Մաքսիմիանոսիւ խզուած դաշինքը՝ վերստին հաստատէր. երկրորդ հին բարեկամութեան և քրիստոնէական եղբայրակցութեան համար: Գ. Այս ժամանակի Հայաստանի քաղաքային վիճակն ևս, զոր կ'ընծայեն մեզ Զենոբ և Խորենացի, զնոյնը կը թուի հաստատել. այսինքն է Աղուանից և Աղձնեաց իշխանաց ապստամբութիւնն և Պարսից շուրջանակի յարձակմունքն 'ի Հայս, որ Տրդատայ բացակայութեանն ակն յայտնի նշան է:*

2. *Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի տօնից հաստատութիւնն յԵկեղեցիս Հայաստանեայց՝ կարելի էր նշան համարել վաղնջական վերաբերութեանց. բայց քանի որ որոշ չի գիտցուիր այդ տօնից հաստատութեան ժամանակամիջոցն, չէ մարթ զնոյնս արգասիք համարել Գրիգորի և Տրդատայ հետ ունեցած բարեկամութեան:*

*Նշանաւոր իմն կ'երևի նաև Նիկեփորոս Կալիստոսի յոյն պատմագրի վկայութիւնն, որ իւր Ը. Գրոց ԼԵ. գլխումը կ'ըսէ, թէ « Եւ որք աւանդեն, թէ Գրիգորիոս հանդերձ Տրդատաւ եկն առ մեծ ինքնակալն Կոս-*

ատարաքեմ և քաղցայոց յիշատակարանէ Դ և Ե դարուց. իսկ եղածները ինչպիսի են, բաց 'ի վերոյիշելոց, նաև Գիւտ կաթողիկոսի վկայութիւնն՝ առ Մ. Կաղանկատուացւոյ (Ա. գլ. ԺԱ), և Ղուսաւորչայ յոյն ներբողիչի աւանդածն, այսպէս նաև Տարօնի Առաքելոց վանքում Գրիգորի ընծայուած Սահմանագիրն [1], որ ԺԱ. դարում թարգմանուած կ'աւանդուի յունական լեզուէ 'ի հայ, հրամանաւ Զորտուանելի Մամիկոնենոյ, անքաւական են առ,այս:

Դառնանք այսուհետև պարզել Ագաթանգեղայ գրոց, յէջ 651, մէկ տեղին, ուր կ'ըսուի վասն Տրդատայ. «Առնոյր ընդ իւր զմեծ արքեպիսկոպոսն Գրիգոր ... զՌըստակէս և զեպիսկոպոսն Աղբիանոս ... և Խօսհանական (ԽօԹՆ?) Հայրաբ ընտիր զօրօք խաղայր գընայր յԱյրարատ գաւառէ 'ի Վաղարշապատ քաղաքէ անցանել 'ի կողմանս Յունաց»: Հատուածիս հեղինակին միայն այս պարագայս, այսինքն է 70 հազար զօրօք երթն 'ի Հռովմ, բաւական պատճառ մի է և լիուլի իրաւունք կու տայ քննասէր մտաց. կասկածելու այն դէպքին ճիշդ եղելութեանը վերայ: Ցիրաւի, ինչ հարկ կար կամ ուր տեսնուած է երբէք, բարեկամական սոսկ այցելութեան մի համար 70 հազար զօրաց ահաւոր բանակ մի՝ անբաւ ծախիւք շարժել տանել ամսօրեայ ճանապարհաւ Հայաստանէն մինչև Իտալիոյ հարաւային եզերքն, և տանել առանց նաւատորմղի, թողլով զՀայաստան յորս և յաւար ոխերիմ թշնամեաց, զորս բազմապատիկ պատերազմներով յարուցած էր Տրդատ ընդդէմ իւր շուրջանակի: Արդ, եթէ այդ առթիւ և այդ ժամանակի մէջ առ Կոստանդիանոս եկաւորող ամէն իշխանք և թագաւորք՝ այսպիսի զօրաց բանակներ տարած լինէին, կարծեմ, թէ Հռովմէական ընդարձակածաւալ դաշտն՝ հազիւ կարենար զանոնք պարունակել, թող թէ պարենաւորել: Այս բանս յետնագոյն և յայնժամու կացութեանն անտեղեակ ումն կարէր երազել, քան թէ իրագործել: Ցիրաւի, եթէ ուշի ուշով քննենք զՁեռնոբ, ականերև պիտի տեսնենք, թէ 70 հազարի պատմութիւնը բոլորովին այլ ինչ եղած և հասկանալի է: Աստրին՝ յէջ 40 Տարօնի պատմութեան մէջ Հայոց արքայի մեծաշուք մեկնիլը կը պատմէ մեզ յոստանէն, հանդերձ արքունական զօրօք, և նորա գալուստն՝ 'ի գաւառն Ապահունեաց, որուն կ'ընկերեն մինչև ցայն վայր նաև Գրիգոր և Աղբիանոս, առանց ինչ յիշատակութեան Ռըստակիսի. և այս ունի իւր պատճառն: Անդ, 30,000

տանդիանոս. որ և լուեալ զսքանչելի և զանակնունելի գործս՝ խնդալից եղև»: Սակայն պէտք է ըսել, թէ «են որք աւանդեն» բացատրութեամբս՝ Նիկեփորոս կամ իւր ժամանակակցաց կենդանի աւանդութիւնքը կը հասկնայ, և կամ ուղղակի Ագաթանգեղայ գրոց յունարէն օրինակն, յորմէ Ն դարու յոյն գրիչներ ևս հատուածներ փոխ կ'առնուն: Ցիրաւի, յոյն հեղինակիս վերջին նախադասութիւնը՝ գրեթէ նոյն է Ագաթանգեղայ 653 իջի մէկ նախադասութեան հետ, որ կ'աւարտի «ուրախութեամբ մեծաւ»:

1. Ցոյն բնագրի գոյութիւնն ընդունելով հանդերձ, հաւանական է ըսել, թէ այդ Սահմանագրի մէջ նոր պարագաներ և յաւելուածներ ներմուծուած լըյան, 'ի ժամ թարգմանութեան:

զօրաց բանակ մի Վրաց թագաւորին օգնութեամբ կը ղրկէ Տրդատ, և ինքն ամիս մ'ամբողջ յետաձգելով իւր չուն նոցա վերադարձին կը սպասէ: Արդ, այս պարագայիս մէջ, անհաւասին 70,000 էն 30 հազարը պակսեցաւ: Սակայն դիտելու է, որ մէկ կողմէն այդ 30 հազար զօրաց առաքումն 'ի Վիրս, իսկ միւս կողմէն ալ Տրդատայ անդ յամենալն, ուղղակի կը ցուցանեն, թէ Ագաթանգեղոսէն յիշուած 70 հազար զօրքը՝ կամ առ պատշաճութեան ուղեկից եղան Տրդատայ մինչև ցսահմանագլուխն Հայոց, և կամ 'ի պատերազմ կը վարէր զնոսա թագաւորն Հայոց ընդդէմ Հիւսիսայնոց և կամ մի այլ զօրաւոր թշնամու դէմ: Արդ, Զենոբ վերոյիշեալ Հիւսիսայնոց դէմ տուած պատերազմն և Վրաց գերեդարձն յիշելէն վերջ, երկրորդ պարբերութեամբը ժամանակի ընդարձակ միջոց մի կը թուի պարզել ընթերցողին դիմաց, յորում թէ Տրդատ և թէ իւր ուղեկիցքը գլխովին յայլ ինչ կը պարապին 'ի կողմանս Տաշտից, քան թէ գնալ 'ի Հռովմ, այսինքն է պատրաստուիլ 'ի պատերազմ: Եւ յիրաւի այդ ժամանակին կը ծանուցուի Յունական կամ Հռովմէական ծանր զօրաց գալուստն, որում իրազգած լինելով թագաւորն Հայոց կը բանակի և կ'ամրանայ Արծանի ընդարձակ բարձրութեան վերայ: Այս մեծագոյն դէպքս՝ լոկ ծանուցանելով կը փոխէ Զենոբ իւր պատմութեան նիւթը, զի Գրիգորի հրամանը զայն կը պահանջէր 'ի նմանէ: Սակայն Կեսարացին Եւսեբիոս և հանգամանք ժամանակին կը հաւաստեն մեզ զարշաւանս Դժնէին Մաքսիմոսի 'ի Հայս յամին 312 և կորակոր պարտութիւն նորա 'ի Հայոց և Վրաց. որով կը մեկնուի Ագաթանգեղայ 651 իջում 70,000 բանակի գաղտնիքը: Սակայն պէտք է ըսել, թէ Ագաթանգեղոսի վերոյիշեալ տեղւոյն գրողն՝ ոչ ժամանակակից կարող էր լինել այն դէպքին և ոչ իսկ արքունական յիշատակարաններ ունեցած է իւր դիմաց. ապա թէ ոչ՝ մեծազօրին Տրդատայ՝ Մաքսիմոսի վերայ տարած յաղթութիւնը ոչ լռելու էր և ոչ իսկ շփոթելու ընդ երթին Տրդատայ 'ի Հռովմ, որ այդ ժամանակամիջոցին ոչ տեղի ունեցաւ և ոչ իսկ կարէր ունենալ. Թեպէտև տոհմայինք մեր այնպէս կարծեցին, հաստատելով Ագաթանգեղայ գրոց հակաժամանակագրական և առանց կալգաբանութեան մէջ բերուած այն տեղւոյն վերայ: Ստուգիւ այս վերջին ենթադրութիւնս՝ մի պատմական իրողութիւն դարձած կը տեսնենք Զենոբայ 43 իջում, ուր 39 իջի, այսինքն է Տրդատայ 'ի Հռովմ երթալէն յառաջ՝ 'ի Վիրս ղրկուած զօրաց դարձի հատուածը՝ Տրդատայ Հռովմէն դառնալէն վերջ դարձեալ կը կրկնուի. բայց այս անգամ ոչ իբրև մի միջանկեալ և անջատ իրողութիւն, այլ նորա հետ իբրև մի մարմին միացած են յաջորդ էջերն՝ Հիւսիսայնոց դէմ տուած պատերազմովն, որ 'ի Հռովմ երթալէն և դառնալէն վերջ հանդիպեցաւ, Գեղռեհոնի հետ ըրած մենամարտութեամբը: Այնպէս որ Տրդատին 'ի Հռովմ երթալու դէպքն, այս երկու պարագաներուս մէջ իսկ, կը մնայ իբրև անյարիր և անհասկանալի մի բան թէ առ Ագաթանգեղ և թէ առ Զենոբայ: Սակայն թողլով այս պարագայս և դառնալով մեր առաջին կէտին, զայս

միայն կ'ընթեռնումք առ Զենոբայ, յէջն 43. «**Ինքեանք** յառաջեալ գնացին 'ի Հռովմ»: Արդ, այս բացատրութենէս կը տեսնուի, թէ յառաջագոյն յիշուած զօրաց բազմութիւնն ևս հօն թողուցին, և իրենք միայն գնացին. մանաւանդ թէ, ըստ իս, այդ երկրորդ չուն տարիներով վերջ հանդիպած լինելու է:

Այս տեղ կրկին հարցեր ընդ առաջ կ'ելլեն մեզ, և հարկ է պարզել զնոսին. այսինքն է ո՞յք էին արդեօք գնացողքս, յի՞նչ ժամանակի մէջ արդեօք և յի՞նչ առթիւ կ'երթային առ մեծ ինքնակալն Հռովմայ:

Բաց յԱգաթանգեղոսէ, եղան և այլք բազումք 'ի տոհմայնոց, յորս դասելի են և Հ. Մ. Չամչեան, Հ. Յ. Գաթըրճեան և Հ. Ղևոնդ Մ. Ալիշան (Այրարատ, էջ 388–389), որք զերիս ուղևորութիւնս կը դնեն. այսինքն է, Ա. երթն Գրիգորի 'ի Կեսարիա. Բ. Տրդատայ երթն 'ի Հռովմ, որ բաց 'ի վերոյիշեալ նախարարակոյտ բազմութենէն՝ ընդ իւր ունէր և զՍ. Գրիգոր, զԱրիստակէս և զԱղբիանոս: Գ. Երթն Արիստակիսի 'ի Ս. ժողովն Նիկիոյ: Արդ, առաջնոյն և վերջին ուղեգնացութեան ժամանակն և պարագաներն խիստ որոշ են, և նոցա ստոյգ եղելութիւնն իսկ շօշափելի յիշատակարանօք հաստատուած է: Բայց երկրորդը՝ տակաւին քննութեան կը կարօտի: Գաթըրճեանի կարծիքն արդէն յիշեցի այս մասին, որ յամին 313 զկնի մահուան Մաքսիմիանոսի անմիջապէս եղած կը համարի Տրդատայ և Գրիգորի երթն առ Կոստանդիանոս 'ի Հռովմ, և պատեհաւ Եւսեբիոսէն յիշուած հանդիսադրութեանն. իսկ ըստ Հ. Ղևոնդ Ալիշանի՝ յամին 315: Սակայն ուշադրութեամբ քննելով Եւսեբիոսի այն տեղին, կը տեսնենք, որ բոլորովին տարբեր ժամանակի և պարագայից մէջ կը նկատէ Կոստանդիանոսի հանդիսադրութիւնն և օտարազգի իշխանաց ընծայաբերութիւնքը, քան թէ յամն 313 կամ 315: Եւ յիրաւի, ըստ վկայութեան նորին իսկ Եւսեբեայ, Կոստանդիանոս կրկին տօներ կատարեց յետ յաղթութեան իւրոյ 'ի վերայ բռնաւորաց. այսինքն է, նախ իւր **կայսրութեան Տասնամեակն**, որ անկանի յամն 315, որովհետև յամին 306 յաջորդեց իւր հօրը Կոստասայ: Երկրորդ անգամ կատարեց **կայսրութեան Քսանամեակն**, որ հանդիպեցաւ յամի Տեառն 325: Բայց դիտելու է, որ առաջին նանդիսադրութիւնը կամ Յոբելեանն եղաւ միայն Հռովմայ համար, և օտարք չի մասնակցեցան այնմ. այս բանս ամենաորոշ կերպով կը տեսնուի Կոստանդիանոսի **Կենսագրութեան** Ա Գր. ԽԸ. գլխում: Իսկ միւսոյն նկարագիրը կ'ընէ Եւսեբիոս մի և նոյն երկասիրութեան Դ Գրոց Ե գլխում, և այս է, ըստ իս, այն մեծ և համաշխարհական հանդէսն, յորում ներկայ գտնուեցան իշխանք և մեծամեծք ազգաց և նա ինքն մեր Տրդատէս: Իսկ արդ այս տօնս պէտք էր՝ որ տեղի ունեցած լինէր յամին 325–326 'ի Նորն Հռովմ կամ Կոստանդիանոսի քաղաքում և ոչ թէ Հռոմուլոսին: Յիրաւի, Եւսեբիոս Գ գլ. ԺԵ ոչ միայն զկնի մահուան Լիկինիոսի, որ եղև յամին 324 և միահեծան ինքնակալութեանն յԱրևելս և յԱրևմուտս, այլ նոյն իսկ զկնի Ս. Ժողովոյն Նիկիոյ ան‿

միջապէս եղած կը պատմէ զայն, որ աւարտեցաւ յամին 325: Ուստի նորա Դ Գրոց Ն գլուխն, որուն վերնագիրն է Βαρβάρων διαφόρων πρεσβεῖαι, καὶ δωρεαὶ πρα' αὐτοῦ, ուղղակի շարունակութիւն համարելու է Գ Գրոց ԺՆ գլխում աւանդուած **Քրոնիկէ** հանդիսի պատմութեանն: Իսկ արդ այս թուականէս առաջ ամենեին անհիմն կը լինէր Եւսեբիոսի՝ ենթադրել պէսպէս նուիրակութիւնս արևելեան ազգաց, որովհետև այդ ժամանակամիջոցին Լիկինիոս՝ հակառակորդն Կոստանդիանոսի և ոչ թէ ինքն Կոստանդիանոս կ'իշխէր և կը հրամայէր Յոնիացւոց, Դորիացւոց, Կիպրացւոց, Փիւնիկեցւոց, Փռիւգացւոց, Կապադովկացւոց, Եգիպտացւոց, Ասորւոց և Եթովպացւոց, և այլն, ըստ վկայութեան Զոսիմոսի, Բ. ԻԲ, և այլոց. մանաւանդ թէ, Կալլիպօլսոյ քով Կոստանդիանոսի դէմ գումարած Լիկինիոսի նաւական զօրութիւնն իսկ՝ վերոյիշեալ ազգերը կը կազմէին[1]: Ուստի բնականապէս Լիկինիոսի կենդանութեան ժամանակ ոչ կարող էին և ոչ ալ կամէին այդ ազգերն նուիրակութեամբ ընծայաբերք լինել Կոստանդիանոսի, և ճանաչել զնա իբրև միահեծան Տէր Արևելից և Արևմտից. ևս առաւել ուրեմն մերս Տրդատ՝ իւր կարծեցեալ 70,000 աւն, զի էր բարեկամ և երախտապարտ Լիկինիոսի՝ իբրև խնամակալուի: Ուրեմն պէտք էր, որ Լիկինիոսի մահուանէն կամ գէթ նորա վերջնական պարտութենէն վերջ հանդիպած լինէր Կոստանդիանոսի փառաւորութեան և մեծութեան այդ համաշխարհական տեսարանը, զոր վերնախնամ տեսչութիւնն յարոյց, յետ տխուր և մառախլապատ ժամանակաց, իբրև արեգակն իմն քաղաքային և կրօնական լուսաւորութեան ազգի մարդկան, և նորա զօրութեանն ենթարկեց Սև ծովու հիւսիսային եզերքէն մինչև ցծովն Կասպից, և Բրիտանական կամ արևմտեան Ովկիանոսէն՝ մինչև ցՀնդկային Ովկիանոս բնակող ազգերն և ժողովուրդքը: Երկրորդ, Եւսեբիոս որոշակի կ'աւանդէ այդ, թէ ինքն իսկ տեսած էր աչօք բացօք այդ բարբարոս ազգաց նուիրակներն և նոցա բերած հիանալի ընծաներն, Կոստանդիանոսի ապարանից մէջ:

Իբրև դրական ապացուցութիւն, յամին 313 կամ 315, երթին Տրդատայ 'ի Հռովմ՝ մէջ կը բերուի Թէոդոսեան **Օրէնսգրոց** (տպգ. Լայպցիկի. 1738. հտ. Գ. գիրք ԺԱ. Տիտղ. Ա. էջ 5–6) Մեծին Կոստանդիանոսի մէկ օրէնսդրութիւնն հետևեալ մակագրութեամբս. De immunitate a tributis nulli tribuenda, exceptis tantum quatuor, tum rebus, tum personis; Constantini M... imp. Constantinus A. ad Proclianum: Արդ, այս Օրինագրիս կամ Արտօնագրիս վերայ յերիւրեալ է Կոստանդիանոսի որդւոյն Կոստանդնի առ թագաւորն մեր Արշակ տուած մէկ առանձնաշնորհութիւնն, որով Հայոց թագաւորին՝ Յունաստանի մէջ ունեցած կալուածքը ազատ կը մնան 'ի հարկաց, վասն դաշանց կռելոց առ

1. Crysanthos Antoniades, "*Kaiser Licinius*", München, 1884, p. 64.

*Տրդատաւ և Կոստանդիանոսիւ: Եւ յիրաւի այս Արտոնագրիս տակ այսպէս ստորագրուած է.* «Data XV, Kalend. Jul. Constantinopoli. Constantino A. IV. et Licinio, IV Coss.», (315). *Արդ, դիտելու ենք որ փակագծի մէջ դրուած* 315 *տարեթիւն՝ տպագրողէն ներմուծուած է, ուստի և զօրաւոր փաստ մի չէ: Բ. այդ Արտօնագիրն 'ի Կ. Պօլիս գրուած է, (և ոչ 'ի Հռովմ), որ* 315*ին ոչ շինուած էր և ոչ իսկ կարէր լինել արքունիք Մեծին Կոստանդիանոսի: Ուրեմն աստի իսկ յայտնի կը տեսնուի, թէ ստուգիւ Կոստանդիանոսի վերոյիշեալ* **Բիւզանդիոն**՝ *կամ նորոյն Հռովմայ և կամ լաւ ևս Նիկոմիդիոյ մէջ կատարեցաւ, զկնի ժողովոյն Նիկիոյ, ներկայութեամբ իսկ սուրբ Հարց ժողովոյն, զորս մեծապարգև ընծաներով մեծարեց:*

*Արդ, իրն յինքեան այսպէս լինելով, աստի իսկ յայտնի կը տեսնուի, թէ Ագաթանգեղայ գրոց* 650 *իջի հատուածին հեղինակն՝ ոչ ժամանակակից*[1] *և ոչ իսկ մերձաւոր ոք էր ժամանակաւ վերոյիշեալ դէպքի կատարմանն, երբ կ'ուզէ հաւատարմացնել մեզ, թէ Արիստակէս ևս ընդ Տրդատայ չոգաւ առ Կոստանդիանոս. որովհետև Արիստակէս՝ Տրդատէն և Գրիգորէն յառաջ արդէն պէտք էր՝ որ չոգած լինէր 'ի սուրբ ժողովն Նիկիոյ. այլ յաւանդութենէ միայն լսելով կը գրէր զայս: Ուստի շատ աւելի պատմական կը լինէր, եթէ նա Արիստակիսի դարձը միացընէր ընդ դարձին Տրդատայ՝ քան թէ նորա երթն, որ, ըստ իս, կանխելոց էր ամ մի կամ ամիս ինչ: Իսկ Աղքիանոսի ուղեկցութեանն՝ ոչ միայն չիք ուստեք հակառակութիւն, այլ մանաւանդ թէ նորա վիճակն իսկ զայդ կը պահանջէր, որովհետև Ագաթանգեղայ 630 իջի Բ պարբերութեան համաձայն, «էր նա վերակացու արքունական դրան բանակին». ուստի հարկ էր որ նա ինքն ևս գնայր ընդ նոսա:*

*Արիստակիսի երթն 'ի Ս. ժողովն Նիկիոյ և քսանաթիւ կանոնօք վերադարձն 'ի Հայաստան՝ է պատմական և ամենաստոյգ ճշմարտութիւն, և այնքան բազմապիսի յիշատակօք և հանգամանօք հաստատուած, որուն վերայ տարակուսելն իսկ աւելորդ է: Եւ յիրաւի, բազմահմուտն Փոտ՝ առ Զաքարիա Կաթողիկոսն գրած թղթին մէջ՝ կը յիշէ զԱրիստակէս 'ի Հայոց Մեծաց 'ի ժողովական Հարս: Նոյնը յանուանէ յիշատակուած կը գտնեմք հայերէն և ասորերէն, յունարէն և ղատիարէն լեզուներով գրուած Նիկիոյ Ս. Ժողովոյն Հարց կարգին մէջ: Բաց աստի Մ. Խորենացի Բ. գլ. ՁԹ և Ղ, և Փաւստոս,*

1. *Զի յէջս* 651՝ *Բ և Գ պարբերութիւնքն, և յէջ* 654՝ *Բ պարբերութիւնը՝ կորեան ընծայուած հատուածներէն են. իսկ յէջ* 655 *Բ պարբերութիւնն, որ կը սկսի «Եւ բերէին զպարգևս» և այլն, նմանութիւն է Կոստանդիանոսի կենսագրութեան Գ գրոց ԽԳ և ԾԸ գլխոց, յորս կը պատմէ Եւսեբիոս՝ Կոստանդիանոսի և Հեղինեայ ձեռքով Բեթղեհեմի տաճարին և Կ. Պօլսոյ Առաքելոց վկայարանին շքեղազարդութիւնն ոսկւով և արծաթով և այլ անգին ընծայատրութեամբք: Տրդատայ գործոց պատմիչն՝ ինչպէս յայլ ամենայն պարագայս, այսպէս և յայսմ ջանացել է համանման Կոստանդիանոսի ընծայեցնել զՏրդատ, հանգոյն նմին տօնելի և յարգելի ընելու աղագաւ՝ յեկեղեցիս Հայաստանեայց այդ ժամանակամիջոցին:*

Գ Դպրութիւն գլ. Ժ, որոշակի կը հաստատեն մեզ զներկայութիւնն Արիստակեայ՝ այն աստուածազգեաց Հարց ժողովոյն մէջ: Աւելորդ կը համարիմ մի առ մի մէջ բերել յետագայ դարերու մատենագրաց վկայութիւնքն, առ որս ոչ միայն նորա երթն ՚ի Ս. Ժողովն, այլ և նշանագործութիւնքն անգամ այէսպէս արարուածներով կը պատմուէին և ՚ի գրի հարան, յորոց մին է և՛ զծովն Բիւթանիոյ արօրադրելն՝ անհետ ընթացիւք, ՚ի մեծ զարմանս և ՚ի պարտութիւն Արիանոսաց ոմանց, ոյք մչակ մականուամբ կը թշնամանէին զնա: Ես չեմ կարող հաւաստել, թէ ստուգիւ արօրադրեաց նա ՚ի վերայ ծովուն. սակայն կարեմ ասել, թէ այդ ժողովրդական վէպն, եթէ հին համարինք և եթէ նոր, է այլաբանութիւն իմն՝ հետևեալ պատմական իրողութեանն, այսինքն թէ նաւարկեց երբեմն ժամանակի նաև մերս Արիստակէս Ի վերայ ծովուն Բիւթանիոյ՝ առ ՚ի գըտնալ ՚ի Ժողովն Նիկիոյ, յամօթ և ՚ի պարտութիւն Արիանոսեանց:

Արդ, Արիստակիսի գնալն ՚ի Ս. Ժողովն Նիկիոյ դնելով իբրև մի պատմական և անժխտելի եղելութիւն, իցէ՞ մարթ ասել, թէ այդ դէպքի պատմութիւնն իսկ, որ կը գտնուի առ Ագաթանգեղ, է գործ նորա ժամանակակից գրչի մի: Այս կէտս՝ տարակուսական կը թուի ինձ. և ահաւասիկ այդպիսի մի բանաւոր տարակուսի պատճառներն: Ա. Եթէ ստուգիւ Ագաթանգեղոս ոմն էր ժամանակակից և «ըստ օրինի ժամանակագիր մատենից» գրած լինէր 656–657 յէջս պարունակուած երկու պարբերութիւնքը, պէտք էր, որ Նիկիոյ ժողովոյն և Արիստակիսի երթի պատմութիւնը՝ կանխէր քան զՏրդատայն և Գրիգորին, այս բանիս պատճառն արդէն ՚ի վեր անդր ցուցինք Նաեբիոսի վկայութեամբը. իսկ առ Ագաթանգեղ ընդհակառակն՝ յետոյ ուրեմն եղած կը պատմուին: Բ. Այդ զոյգ պարբերութիւնքն՝ իբրև միջանկեալ հատուածներ կեցած են Գրիգորի պատմութեանը մէջ. և այս անտի իսկ յայտ է, զի սոցա նախընթաց պարբերութեան մէջ Գրիգորի վերայ կը խօսուի, յասելն. «Եւ Մեծն Գրիգոր էառ շրջել ընդ աշակերտեալսն». այսպէս է, նաև անմիջապէս յաջորդ պարբերութիւնն. «Ապա յետ այսպիսի գործոյ սկսեալ երանելւոյն Գրիգորի», իբր թէ լինէր շարունակութիւն յիշուած տեղւոյն: Գ. Այս ժողովոյս գլխաւոր նպատակն էր հաստատել ընդդէմ Արիոսի մարդադաւանի՝ զճշմարիտ Աստուածութիւնն և զհամագոյակցութիւն Բանին՝ ընդ Հօր և Սուրբ Հոգւոյն. իսկ հեղինակ հատուածոցս՝ հերետիկոսապետին անունն խապառած է, և ՅԺԸ հայրապետաց որոշողութեան գլխաւոր կէտն իսկ հետևեալ ընդհանուր բացատրութեամբ կ՚արտայայտէ. «Ուր ամենայն տիեզերաց կարգեցաւ ընդունելութեան աւանդութեան հաւատք»: Արդ, այս երևոյթս կը ցուցնէ, թէ նա այնպիսի ժամանակի մէջ կ՚ապրէր, յորում այս երկու բաներս այլ ծանօթ էին ամենուն. այսինքն թէ գիտէին, թէ որուն դէմ եղաւ այդ ժողովն և թէ ինչ որոշուեցաւ անդ, ուստի հարկ չի կար յատուկ բացատրութեանց: Դ. Անունս Ռստակէս (Ῥστάκης), ինչպէս քաջ կը ծանուցանէ Ղազարդ, խառնածին ձև մի է. որովհետև թէ առ Հայս և թէ

առ Ցոյն՝ Բէով գրուած անուն չկայ, այլ ասորերէն լեզուի [1] մէջ միայն գոյութիւն ունի. և ասոր ապացոյց կը տեսնենք, որ թէ Ագաթանգեղոսի յունարէն թարգմանութեան և թէ Գրեգորի Տուրծոյ Վատիկանեան յունարէն ձեռագիր օրինակաց մէջ 'Λρωστάκης դարձուած է. այսպէս և առ Փաւստոսի և թարգմանչաց՝ Արիստակէս եղած: Արդ, 'Aρ (Ար) կը մեկնուի ز ر ا = ز ا ر · սխալ ընթերցմամբը և կամ ասորի բնագրով մի: Ուստի հաւանական է, որ Նիկիոյ ժողովական Հարց ասորերէն ցուցակէն ուղղակի առնուած լինի այն, ուր ստուգիւ այն ձևով գրուած է, և թարգմանիչն ստիպուած է ը գիրն զետեղել ասորերէն բաղաձայնից մէջ, նոցա խըստութիւնը մեղմացնելու համար 'ի հայ լսելիս: Ե. Ցէջս 656 և 657 երկիցս Կաթողիկէ վերադիրը կը տրուի Գրիգորի, մինչդեռ բոլոր գործոյն մէջ կամ Եպիսկոպոս, կամ մեծ Արքեպիսկոպոս և կամ Քահանայապետ տիտղոսներով կը կոչուի նա: Ցունական անունս καθολικός (ընդհանրական) հաւանօրէն 'ի Ե դարէն և այսր եղև գործածական 'ի Հայս: Առ Փաւստոսի ևս մի անգամ 'ի վար արկեալ կը տեսնենք. սակայն այն տեղին միջանկեալ մի բան է. երկրորդ, եթէ հարազատ ևս համարինք զայն, կարելի է ասել, թէ թարգմանութեան ձեռքով ներմուծուած լինի անդ՝ փոխանակ արքեպիսկոպոսի:

Զ. Ցէջ 657 յետ ծանուցանելոյ, թէ Արիստակէս բերաւ զկանոնս Ս. Ժողովոյն առ Գրիգոր, անդէն կը յաւելու, թէ « Սրբոյն Գրիգորի 'ի նոյն լուսաւորական կանոնաւ յաւելեալ, առեալ զիւր վիճակն ... լուսաւորէր »: Դիտելու է, որ աստ առանց որոշ թուոյ կը յիշուին Նիկիական կանոնները, անորոշ թողուած են նոյնպէս Գրիգորէն յաւելեալ կանոնները: Արդ, այսպիսի երևոյթ մի չէ կարելի ընծայել այն ժամանակամիջոցին ապրող և այնպիսի կանոնաց ականատես եղող գրչի մի, այլ յետնագունի ուրումն ժամանակաւ, որ թէ Նիկիոյ և թէ լուսաւորչեան կանոնաց՝ մի մասին միայն ծանօթ լինելով, կը տարակուսէր ամբողջին ոլքանութեանը վերայ, ինչպէս մենք կը տարակուսինք այսօր: Ի Մովսիսէ Խորենացւոյ, Բ. գլ. Ղ, կ'իմանամք, թէ « Քսան կանոնեալ գլխովք ժողովոյն զայ հանդիպի (Արիստակէս) հօրն և արքային 'ի Վաղարշապատ քաղաքի ». և այս քաջ կը միաբանի արտաքին յիշատակարանաց: Սակայն Գրիգորի կանոնաց մասին՝ Մովսէս ինքնին նոյնպէս կը թուի անգիտանալ, զի նմանաբան բացատրութեամբ մի կ'անցնի, յասելն. « Ընդ որ ուրախացեալ սրբոյն Գրիգորի, որոց ինչ գլուխս յինքենէ 'ի կանոնս ժողովոյն յաւելու »: Ի Կանոնագիրք [2] կը գտնուին երեսուն

1. Ցիրաւի, սորա յայտնի օրինակ է առ Ս. Եփրեմի, Մեկն Աւետ. համաբարբառ, յէջ 17, անունս Բեքկայ, որ և Ռեքեկայ, այսինքն է Ռ = Բ:

2. Ցես « Հաւաքումն Հ. Եփրեմ վ. Սեթեան », բաղդատութեամբ չորս գրչագիր օրինակաց, յէջն 63, բայց տակաւին կը մնան անտիպ 'ի ձեռագրատան Ս. Ղազարու: Լուսաւորչայ վերագրուած այս կանոնները՝ թէպէտև Նիկիոյ առաջնական և ամենուն ծանօթ կանոններէն կը տարբերին, սակայն ԺԺԴ երկրորդական կոչուած կանոններուն՝ քաջ կը

Կանոնք՝ յանուն « Ս. Գրիգորի Առաքելոյն Հայոց » վերնագրով: Այս Կանոններս ստուգիւ եթէ Գրիգորի լեալ էին, կարելի էր այնուհետեւ ըսել, թէ ինն միայն կանոնք յաւելցուած են ՚ի Գրիգորէ: Սակայն այդ կանոններն աննարազատութեան տիպ ունին. նախ զի ոմանք՝ մի տող և այլք՝ երկու թէ շատ երեք տողերէ բաղկացած, ցամաք և մթին բաներ են, այնպէս որ Նիկիոյ Ժողովոյն առաջնական կանոնաց և ոչ իսկ կմախք կարեն համարուիլ՝ թող թէ լուսաբանութիւն: Երկրորդ, Նիկիոյ ժողովոյն սոյն կանոններն քանիւ չափ առհասարակ գրեթէ եկեղեցական բարեկարգութեանց համար են. իսկ լուսաւորչեան կանոններն, ընդհակառակն, ժողովրդեան բարոյականի մասին են, հազիւ թէ երկու կամ երեք հատ միայն կը գտնուին քահանայից պատկանող: Ուստի ես համոզեալ եմ, թէ Սրբոյն Սահակայ մեզի հասած կանոններն՝ [1] են Ագաթանգեղոսէն և Մովսիսէն յիշուած Գրիգորի յաւելեալ կանոններն, յորս Ս. Սահակ ինքնին թարգմանած ժամանակ՝ իւր ժամանակի պահանջմանց համեմատ նորանոր բացատրութիւններ ներմուծեց. և երրորդ գլուխն՝ որուն վերնագիրն է. « Նորին (Սահակայ) Ըն ո՞րպէս պարտ է եպիսկոպոսաց առնել զընտանիս տուրք Եկեղեցւոյ », բոլորովին յաւելուած է ՚ի Ս. Սահակայ: Եւ իմ այս համոզմանս իբրև անժխտելի հաւաստիք կը համարիմ ՚ի վերջկոյս Բ գլխուն գրուած այս հարազատ յիշատակարանս. « Այս Սահմանադրութիւն կարգաց գրեցաւ հրամանաւ սրբոյն Սահակայ մեծ հայրապետին Հայաստան աշխարհի. ընկալեալ ՚ի ձեռն Նահապետին ՚ի թոռանէն Գրիգորի՝ Լուսաւորչացս մերոյ ՚ի յունէ ՚ի հայս », և այլն: Է. Ս. Գրիգոր բոլոր Հայաստանեայց համար այնպիսի խիստ և պատժական կանոններ դրած ժամանակ՝ ՚ի հարկէ պէտք էր՝ որ եկեղեցական ժողով մի գումարած լինէր, և իրօք գումարեց ՚ի Վաղարշապատ, ըստ վկայութեան յետին ժամանակի պատմագրաց մերոց. իսկ հեղինակ հատուածիս՝ այսպիսի եղելութեան մի գոյութիւնն իսկ լսպառ լռած է, որ ըստ ինքեան թէ Գրիգորի և թէ Հայաստանեայց եկեղեցական պատմութեան մէջ պէտք էր՝ որ իւր յատուկ տեղին գրուած լինէր: Արդ, այս կէտս իսկ կը ցուցնէ, թէ սոյն տողերը գրողն՝ զԳրիգոր տեսած չէր, այլ և ոչ իսկ ականատես եղած էր Մերուժանայ ձեռքով աւերեալ Հայաստանին, յորում ժամանակի այրուած լինելով ուրիշ գրուածոց հետ՝ նաև եկեղեցական և արքունական յիշատակագիրքը, նա չկարաց

համաձայնին, որոնք նոյնպէս ամենահամառօտ են և բարոյական նիւթեր կը ներկայացնեն մեզ: Բայց գիտնալու է, որ սոցա հարազատութիւնն ևս տարակուսական է:

1. Առաջին գլուխն, որուն վերնագիրն է. « Կանոնք Ս. Սահակայ, Յաղագս քորեպիսկոպոսաց, թէ ո՞րպէս պարտ է զկանոնական զկարգն հաստատուն պահել յեկեղեցիս Աստուծոյ », կը պարունակէ ԺԳ կանոններ: Իսկ երկրորդ գլխուն վերնագիրն է այսպէս. « Նորին կարգ քահանայից առ ժողովրդականս, և նոցուն ժողովրդականաց հնազանդութիւն և կարգ ուղղութեան առ քահանայս », և կը պարունակէ ԻԳ կանոնս:

ըստ ամենայնի իրազէտ լինել Գրիգորի ժամանակ կատարուած ամենայն իրաց, ինչպէս նաև վերոյիշեալ կանոնաց և գումարելոյ ժողովոյն: Ըստ աւանդելոյն Մովսիսի, Գրիգոր և Տրդատ խոստովանութեան թուղթ ևս ղրկեցին ընդ Արիստակեայ 'ի Ս. Ժողովն Նիկիոյ. այս բանս իսկ անյիշատակ թողուած է առ Ագաթանգեղ, որ անհասկնալի է ժամանակագիր քարտուղարի մի համար:

Գալով Ագաթանգեղայ գրոց Վերջաբանին՝ դիտելու է, որ բառ առ բառ նոյն է ընդ վերջաբանին Կորեան: Ցէջ 662 հետևեալ երկու կէտերը դիտողութեան արժանի են, այսինքն է, նախ կ'ենթադրուի թագաւորին ողջութիւնն, առ որ կ'ուղղէ հեղինակն վերջաբանովս իւր գրուածքն, ասելով. « Որք ոչ մեզ միայնոյ թագաւորաց (ըստ յունարէնին, ով թագաւոր »), այլ յորժամ դու խոկ առաջի ըզմատեանդ ընթեռնուցուն » : Բ. Հանգուցեալ սրբոյ գործերն, ասելով. « Քանզի չետ իսկ համբարձման զամենայն առաքելոցն 'ի սրբոյ գիտակաւ զիւրաքանչիւրն նշանակել » : Արդ սրբոյ յոգնակի դիմօք բացատրութիւնս, եթէ Գրիգորի վերաբերենք, ուղղակի կը հակառակի 660 իջի հատուածին, յորում հեղինակն եզակի դիմօք խօսելով զԳրիգորէ՝ կը կնքէ նորա կենաց և գործոց վերջաբանն այսպէս. « Արդ, այսու օրինակաւ զամենայն աւուրս կենաց առաքելական առաքելագործ վարեալ ... մինչև 'ի վախճան կատարածին զայս առնէր, ամ յաւէ թաղեալ 'ի սէրն Քրիստոսի » : Իսկ եթէ Հռիփսիմեանց համար գրուցուած համարինք, այս բոլորովին անյարմար և անյարիր է նիւթոյն. որովհետև նոցա նահատակութեան և գործոց նոխ պատմութիւնն՝ արդէն իսկ յԱ մասին մէջ և 'ի Ցառաջաբանին լրովին աւարտեց. ուստի աւելորդ էր, որ 'ի վերջկոյս Տրդատայ և Գրիգորի պատմութեանն՝ նորէն խօսքը նոցա վերայ դարձնէր: Բաց աստի՝ նոյնպէս 'ի սուրբ Գրոց մէջ բերուած հարց և որդւոց օրինակներն իսկ, կարծէք, թէ աւելի ուրիշ ծնողս և վարդապետս կ'ակնարկեն, « որոց ծնունդք աշակերտելոց էին յազգս ազգաց », քան թէ զՀռիփսիմեանս: Այս նմանատիպ վերջաբանս, որքան քաջայարմար կը տեսնուի Ս. Մեսրովբայ պատմութեան ետև, նոյնքան ևս անյարմար է առ Ագաթանգեղ. որովհետև առ վերջինն՝ պարզապէս կրկնութիւն է Ցառաջաբանին, առանց նորութեան. իսկ առ առաջինն՝ է սեփական կնիք պատմութեան սրբոց վարդապետացն, և յառաջաբանի մի պակասը կը լրացնէ, տալով այն տեղեկութիւնքը, որք հարկաւոր էին առ 'ի ցուցանել մեզ յետագայիցս, ինչպէս նաև ժամանակակցաց՝ իւր գրութեան բուն շարժառիթը, նպատակն և պարագաներն: Ուստի ամենայն հաւանականութեամբ կարելի է եզրակացնել, թէ Ագաթանգեղայ վերջաբանը՝ Ցառաջաբանին մի մասն է, և թէ Ցառաջաբանն իսկ՝ է արգասիք գրչին Կորեան: Եւ յիրաւի, այս բացատրութիւնս իսկ. « Ձէաք հանդուրժող (այսինքն է չկարէաք) զամենայն արարեալսն գիտակաւ նշանակել » (այսինքն է գիտնալով գրել) կը ցուցնէ, թէ հեղինակ վերջաբանիս և նորա նախընթաց բազմաթիւ հատուածոցը՝ Կորիւն եղած է և ոչ այլ ոք, որ ժամանակաւ հեռի գոլով՝ կ'անգիտանար

Գրիգորի և Տրդատայ գործոց շատերն. արդարև երբ նա կը խոստովանի այս բանս՝ մենք իրաւունք չունինք այլ ազգ պնդել. մանաւանդ եթէ յիշենք վերստին ցայս վայր պատմուած և քննութեան առնուած իրաց տիպն և հանգամանքները: Սակայն ուղղակի հորեան իսկ ընծայելով այդ մասը, դարձեալ կ'ըսեմ, թէ այն ժամանակէն 'ի վեր ներմուծած էր նա զայսոսիկ Ագաթանգեղայ գրոց մէջ, երբ դեռ Ս. Մեսրովբայ Պատմութիւնը գրելու ձեռք զարկած չէր. և թէ վերջինը գրած ժամանակ՝ իւր առաջագոյն գրածներէն քաղուածներ ըրաւ, սակս պէսպէս պատճառաց՝ զորս այլուր ծանուցինք:

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Վերջնական հայեացք և եզրակացութիւն ընդհանուր քննութեան Գրոցն Ագաթանգեղայ. — Չորս իրարմէ տարբեր աղբերք և նոցա առանձնայատկութիւնքը. — Ցուցակ երից տարբեր հեղինակութեանց. — Գիրք կամ Պատմութիւն Գրիգորի և նորա նշանակութիւնն. — Պատմութիւն Արշակունեաց. — Բարդածան Ասորին և նորա Հայոց պատմութեան մէջ խառնուած դերը. — Ագաթանգեղեան արձանագրութիւնն և Ղ. Փարպեցի. — Սիմոն Ապարանեցին և մի անյայտացած գրութիւն. — Կրկին խմբագրութիւնք գրոցն Ագաթանգեղայ և նոցա առանձնայատկութիւնքը:

Խորհրդաւոր մատենիս առանձին մասանց բոլորական քննութեան վերջի սահմանածայրն հասած ժամանակ, եթէ դառնանք միօք և վերջին հայեացք մ'ևս ձգենք պարզած կէտերուն և խնդրոց վերայ, յայտնապէս պիտի տեսնենք և իմանանք, թէ ստուգիւ յայլ և այլ աղբերաց կը յառաջագային նորա աւանդածները. ոչ թէ Տրդատայ քարտուղար հռովմայեցի Ագաթանգեղոսին հարազատ և միապաղաղ գործ, այլ տարբեր ժամանակաց և պարագայից մէջ ապրող և գրող հեղինակութեանց խմբագրութիւն մի: Եւ յիրաւի, Արտաւանայ մահուանէն՝ մինչև ցՍ. Ժողովն Նիկիոյ, այսինքն է յամէն 222 մինչև ցամն 325, ուր 103 ամաց միջոց կայ. մանաւանդ եթէ 666 իջի համաձայն՝ մինչև ցմահն Գրիգորի ձգելու ըլլանք այդ գրութեան ժամանակը, որ եղաւ Տրդատայ թագաւորութեան 46 տարին, ըստ վկայութեան Խորենացւոյ, կունենանք 110 տարուան միջոց մի: Իսկ եթէ Վրթանիսի ձեռնադրութիւնն ևս 'ի նկատի առնունք, որ եղաւ 339ին, կունենանք 117 ամաց միջոց մի: Արդ, կարծեցեալ Ագաթանգեղոսը՝ նահապետաց երկարատև կենաց բաղդին ևս եթէ իրօք հաղորդ եղած լինէր, դարձեալ չէր կարող առնել զայս: Մատենիս Յառաջաբանին և Վերջաբանի գրողն կամ ներմուծողն, ոչ միայն երկիցս, այլ և երիցս և չորիցս իսկ եթէ հաս-

տատէ, թէ « Ոչ եթէ 'ի հին համբաւուց տեղեկացեալ և մատենագրեալ զայս կարգեցաք, այլ որոց մեզէն իսկ ականատես կերպարանացն և աւընթերակայ գործոցն և լսողք շնորհապատում վարդապետութեան և նոցին աչքանեակք ըստ աւետարանական հրամանացն », դարձեալ չէ մարթ իրօք իսկ այնպէս եղած ընդունել. որովհետև նա ոչ Արտաւանայ, Արտաշրի և Խոսրովու գործոց, ոչ Տրդատայ և Գրիգորի մանկութեան և ոչ ալ Կոթանիսի ծեռնադրութեանը կարող էր ականատես լինել. զի առաջնոց ժամանակ՝ նա դեռ 'ի Հայս եկած չէր, իսկ վերջնոյս ծեռնադրութեան ժամանակ (339) 'ի կեանս չէր: Երկրորդ, այդ գրոց մէջ պատմուած շատ բաներ՝ կարծեցեալ Ագաթանգեղոսի ժամանակ կատարուած չեն, իսկ կատարուածներէն ոմանք այլ ստոյգ չեն, այլ այլընդայլոյ բաներ: Եթէ անցեալ դարուց տոհմային մատենագիրք բարեմտութեամբ գոչեն 'ի մի, թէ Ագաթանգեղայ գիրքը՝ ծայրէ 'ի ծայր Տրդատայ քարտուղարը գրեց, դարձեալ ես չպիտի կասիմ զոյգ ընդ ճշմարտութեան բողոքել այսպիսի անտեղութեանց դէմ: Այո, կը բողոքեն նոյն իսկ այդ երկասիրութեան մէջ բովանդակուած տարբեր երանգով և հոգւով գրուած իրերն, զորս ցայս վայր եկակոչ առնելով խօսեցուցի. կը բողոքեն ակն յայտնի հակասութիւնք տեղեաց, այլազան տիպք և նկարագիրք պատմական և աշխարհագրական տեղեաց. կը բողոքեն կցկտուր վէպք և արարուածք 'ի ներքս մուծեալք, որք բռնազբօսիկ կերպով իրարու քով բերուած և ծեռք ծեռքի տուած կ'երևին. միով բանիւ, կը բողոքէ մ' բովանդակ ընթացք գործոյն, որ ըստ քմաց խմբագրողաց մերթ յառաջ մղուած է և մերթ անյաջող ելիւք յետս նահանջած, Դ դարուն վերջերը ծաղկող յոյն հեղինակներէն, որպիսի են Մեծն Բարսեղ և Եւսեբիոս, և այլն և այլն քաղուած հատուածներն և գրութեան խեղճ կողմերը պատսպարելու նպատակաւ:

Արդ, դիտելով քաջ այս և բոլոր այն հակապատկեր եղելութիւնքը, զորս մի առ մի հարկադրուեցայ քննել յէջս գործոյս, այժմ կը վստահիմ եզրակացնել այսպէս, թէ առանց նկատելու Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութիւնը, մնացած երկու գիրքը պէտք է, որ 'ի չորից հեղինակութեանց բաղկացած լինին. Ա. Պատմութիւն կամ Կենսագրութիւն Գրիգորի: Բ. Պատմութիւն Մեծին Խոսրովու և Տրդատայ: Գ. Վկայաբանութիւն սրբոց Հռիփսիմեանց: Դ. Համառօտեալ հարցուածք խմբագրեալ գրոց:

Առաջինն՝ է տիրապէս և ստուգապատում պատմութիւն, ըստ ճշդագոյն նշանակութեան բառիս, վասն զի կը պատմէ մեզ Գրիգորի ազգատոհմը, մանկութիւնն, անցուցած աշխարհիկ կեանքն, կրած չարչարանքներն և բոլոր կենաց գործերն, մանրամասն պարագաներով և անընդհատ շարայարութեամբ, որոնք թէ արտաքին և թէ տոհմային յիշատակարանօք հաստատուած ստոյգ եղելութիւնք են գէթ ըստ էական մասանցն. լաւագոյն և հնագոյն յաղթերաց հանեալ, յորս զգալի կերպով կը տեսնուին յոյն և ասորի բնագրութեան հետքեր, թէ և ուրեք ուրեք մերթ կենսագրին առաւե_

լաՏաատ ՕՂկարազրութեամբք և մերթ ալ խմբագրին եկամուտ հա_տուածներով՝ վիպասանական գոյներ առած կը տեսնուին և գոգցես իմն համեմատութեամբ Ե դարու տիպ զգեցած:

Ցիրալի ասորերէն բնագրի մի առՏաւատչեայ կարեն համարիլ, բաց 'ի Գ. Լազարդէն քննուած յատուկ անուանց, նաև հետևեալ օտարաբանութիւնքն և բացատրութիւնքը, որք Ե դարու ինքնագիր երկասիրութեանց մէջ գործածուած չեն և կամ խիստ քիչ, և այն մասամբ ասորերենի և մասամբ ալ յունարենի ազդեցութեան ներ_քև: Ցէջ 39 կ'ըստի. « Անդուստ ուրեմն ճրագէնց եղեն ճրագն որ ե_դին » – յէջ 41 « Եւ ոչ թողին յերկրասաարդաց մինչև յայն՝ որ բնա_կեալ և շահեալ ոչ էիրէք ». – յէջ 52 « Այլ յարարչէն որոյ են ստա_ցուածք իւր ». – յէջ 54 « Այլ զոր դու կոչես մեծ Անահիտ տիկին, լեալ էին արդեօք մարդիկ ոչ յայնժամ երբեմն ժամանակի ». – յէջ 55 « Խնդրեսցէ վրէժ ամենայն ամպարշտութեան անաչառ դատաստանն արտաքսութեամբ պահանջել յամենեցունց » : – յէջ 59, « Ոչ առ նա դարձ ոչ մարթայցէք մերձենալ ». – յէջ 60, « Զորոյ դու առեալ նորա զպատիւն՝ ումպէտ կարդաս արարիչ ». – յէջ 62, « Զորս չարաչային անցք անցանիցեն ընդ քեզ ». – յէջ 65, « Կախել նորա բեռինս ծանրութեան ամենայն ընդդիմակաց ». յէջ 69, « Որք վասն որոյ դարս տարագիրս յաշխարհի չարչարանօք մեռան ». – « Նե_ղէին և ճնշմունքն նորա տկարացան ». – « Որ վասն որոյ ընդ յարու_ցեալ 'ի մեռոց իմ պատերազմ ոչ երկիցէ սիրտ իմ, ընդ յարուցեալ 'ի մե_ռոց իմ ճակատամարտ 'ի քեզ եմ յուսացեալ ». – յէջ 71, « Որ վասն զի սիրեցին մարդիկ պաշտել զպատկերս ». – յէջ 73, « Որոյ ոչ գու_ցեն բանք յանդիմանութեան 'ի բերան իւրում ». – « Եկեալ 'ի քաղ_աքս ժողովրդեան խաչն իբրև 'ի մեռոց քաղցր դիտակէ եկեալ ». – յէջ 81, « Որ կամօք քովք փոփոխի 'ի կերպարանս որպէս կամք են հրամայեցին լի_նել ». – յէջ 82, « Որոյ փառաւորեալ են մահք խորհրդոց ». – յէջ 83, « Որ դու միայն կարող ես թողուլ զմեղս ». – « Որ ասէր եթէ յարէ, յուղարկէ դատաստան յետոյ ասել և յուղարկէ 'ի մշտնջենաւորն արքայութեան ». – յէջ 156, « Որոյ ասացեալ և նորա զայս ». – յէջ 84, « Զբեւրա-մարմին մարդկութեան մերոյ և նկարեաց տպաւորեաց զանձն իւր 'ի ստեղծուած ձեռաց իւրոց, զի ընկեցցէ զմարմին մարդկային ». – յէջ 100, « Ինչ ոչ է քոյդ զոյնման, ինչ ոչ է ոչէր զոյնման ». – յէջ 105, « Հրաման էր հրովարտակ առնել, հրաման հանելով օրինակ զայս » :

Արդ, երբ ասորերենէ եղած և Ս. Գրոց թարգմանութեանց մէջ միայն կը գտնենք յարաբերական դերանուանց ընդ ենթակային 'ի մտացն բարեբանութիւնն և կրկնաբանութեան ձևերն, այլ աս տարակու_սելու պատճառ չիկայ, թէ մէջ բերուած օրինակներն սեմական լեզուի հետքեր են ստուգիւ: Այսպիսի մի եղելութեան հաստատելու համար, աւելորդ թող չհամարուի՝ մէջ բերել Ս. Եփրեմի Համաբար_բառ Աւետարանաց Մեկնութենէն համանման օրինակներս: Ցէջ 6, « Զի խորհուրդ Աստուծոյ Քրիստոս է, որ նովաւ յայտնեցան ամե_նայն ծածկեալք ». – յէջ 18, « Բղխեսցէ զաւազանն յարմատոյ անտի Յեսսեայ, բղխեսցէ և ծաղկեսցէ ծաղիկ յարմատոյ անտի նորա ». – յէջ

41, « Որպէս ասաց ինքն, ասէ. Մի՛ մնայցէ », և այլն. — յէջ 43, « Սոյնպէս և Գողիաթ սրովն որով սատակէր զբազումս, նովին սրով եհատ Դաւիթ զգլուխ նորա ». — « Ջուրբն որով հեղձուցանէր Փարաւոն զմանկտին, նովիմբ հեղձաւ ». — յէջ 45, « Վասն առաջին մօրն՝ որ անիծաւ, վասն այսորիկ մայրն երկրորդ օրհնեալ ». — յէջ 55, « Ետես, ասէ, Տէր մեր զհաւատս նոցա զայնոցիկ ». — յէջ 58, « Արդարոց սիրտն նոցա սուրբ է ». — յէջ 66, « Ու այնոցիկ որ կարծէին թէ ունիցին նոքա ». — յէջ 240, « Որ բաւական եղև ընդարձակութեան նորա լրութեան մարմնապէս ». — յէջ 250, « Որ կաղազոյն իցեն ճառք արգասաւոր արդարոց ». — յէջ 256, « Զի նկարեն մեզ զնա գործք նորա զօրաւորին ». — « Զի կարող իցես շօշափել զնա՝ զայն զմարմինն ». — « Քեզ երկրպագել յամենայնէ ուէր նորա առ սակաւս է ». — յէջ 158, « Ոչ երկիւղն որ ապաւինեցան 'ի նա նոքա՝ զոյ նուազեալ »:

Արդ, մասնաւոր կերպով դիտելու ենք, որ Ագաթանգեղոսին մէջ բերուած այն օտարաձև ոճերն և բացատրութիւնքը՝ Ա գրքին մէջ միայն կը գտնուին, և 'ի մասնաւորի Գրիգորի Կենսագրութեանը մէջ. իսկ Բ գրքին մէջ գրեթէ հազուագիւտ են: Այս և դեռ ուրիշ երևոյթներ՝ ինձ կարծել կու տան, թէ Գրիգորի Կենսագրութիւնը, որ վկայաբանութեան ձև ունի, ուղղակի ասորի բնագրէ մի յառաջ եկած է, և Գրիգորի Գործոց կամ Բ Գրքէն անկախ էր 'ի սկզբան. բայց յետոյ առաջին՝ կամ լաւ ևս յունարէն հին Խմբագրութեան ժամանակ, որուն վերայ յետոյ պիտի խօսուի, միացած է. իսկ Բ գրքին կամ Հայաստանի դարձի պատմութեան՝ փոքրագոյն և էական մասը միայն յունարէն խմբագրութեան արդիւնք համարելի է. իսկ մեծագոյն մասը՝ Ե դարու առաջին կիսում կատարուած հայերէն խմբագրութեանն ընծայելի է: Այս եղելութեանս կը վկայեն բաց յայլոց տեղեաց, որք յետնութեան տիպ ունին, նաև Կորեան ընծայուած խիտ առ խիտ և հոծ հատուածներն և դարձուածք բանից:

Երկրորդը՝ թէպէտև Ա գրոց մէջ ուրոյն առանձին պատմութիւն կամ պատմութեան մի շարունակութիւն եղած կ'երևի, սակայն յամբողջութեան անդ՝ իրօք այնպէս չի ներկայանար. որովհետև այնպէս սերտիւ միացած է Գրիգորի Կենսագրութեան և նորա Գործոց պատմութեան հետ և անոր ստորակարգուած, յորմէ յայտնապէս կը տեսնուի, թէ վերջինս է տիրող նիւթն. իսկ առաջնոյն հատուկտիր հատուածներն այնպէս ընկղմած են նորա մէջ, ինչպէս շիթք՝ 'ի ծովուն և կամ պատահմունքն՝ յենթակայի: Ցիրաւի, այս բանս ակներև կը ցուցանեն, բաց յայլոց, նաև Ա գրոց հետևեալ երկու տեղիքը. այսինքն է նախ յէջ 41–42, ուր փախստեամբ 'ի կողմանս Յունաց կը սկսի Գրիգորի պատմութիւնը, անմիջապէս քիչ ետքը նոյն կերպով կը լինի և Տրդատայ պատմութեան սկզբնաւորութիւնը, բայց այնպիսի ժամանակագրական սխալով մի, որ յայտնապէս կը ցուցնէ, թէ այդ հատուածը չէ կարող Տրդատայ մի առանձին և ստուգապատում պատմութեան սկիզբն համարուիլ: Այս տեղւոյս հեղինակը՝ Խոսրովայ որդւոյն փախուստն՝ Անակայ որդւոյն հետ զուգելով, ուզած է լոկ պատմական յարաբերութիւն

*մի հաստատել, և ոչ թէ ժամանակակից դիպաց ճիշդ հանդիպութիւն. որովհետև ինչպէս նախնաբար ըսուեցաւ, Արտաշրի ձեռքով թէ Հայաստանի գրաւումն և թէ արքայորդւոց կոտորածն և Տրդատայ փախուստը՝ յետ քանի մի ամաց հազիւ ուրեմն հանդիպեցաւ ըստ արտաքին պատմագրութեան: Բ. Յէջ 42–43 Բ պարբերութեան մէջ դարձեալ կը զուգընթանան Տրդատ և Գրիգոր, երկաքանչիւրն ևս 'ի-նմին ժամանակի կեան 'ի կողմանս Յունաց, երկաքանչիւրն յունարէն կ'ուսանին, իրարու կենցաղակից և բնակակից եղած կը պատմուին. և հուսկ ուրեմն երկաքանչիւրն 'ի միասին կը վերադառնան 'ի Հայս, մին հեթանոս և միւսն քրիստոնեայ: Այնպէս որ գոգցես իմն անմարթ է այս հատուածս բաժնել և Տրդատայ առանձին կենսագրութեան մի մասին վերագրել՝ առանց բաժնելոյ ինչ մի 'ի Պատմութենէ Գրիգորի, որոյ գոյութիւնն առանց երկբայութեան է: Դիտելու կէտ մի է և այս, զի Տրդատայ պատմութեան վերաբերեալ հատուածները՝ լի են չափազանցութեամբ, երբեմն օտար 'ի ճշմարտութենէ, հակառակ արտաքին պատմագրութեան և ժամանակագրութեան, և իրարու իսկ հակասական, զորս չէ կարելի ստուգիւ գործ համարել ժամանակակից յոյն հեղինակութեան մի: Ուստի իրաւամբ կարելի է ասել, թէ այն հատուածոց մի մասը պարզապէս ազգային հին զրոյցներ և վէպեր են, որք այլընդայլոյ բանիւ Տրդատայ վերայ պատշաճեցուած են, և թէ նոցա հաւաքողն և պատշաճեցնողը ազգային ոմն միայն կարէր լինել և ժամանակաւ կարի բացական: Այս բանիս բացայայտ ապացոյց են հայկական աւանդութեանց և աշխարհագրական տեղեաց մասին ունեցած մեծ հմտութիւնը մէկ կողմէն, իսկ միւս կողմէն ալ արտաքին պատմութեան և աշխարհագրութեան մասին 'ի բազում տեղիս ցուցուցած հեղինակին ·տգիտութիւնն, և հակապատմական իրաց յառաջբերութիւնքն՝ այլընդայլոյ յարաբերութիւններով: Արտաւանայ, Արտաշրի և Խոսրովու վերաբերեալ այն տասն գլուխները, որք յունարենի մէջ միայն ամբողջապէս կը գտնուին, ուղղակի Պարսից դիւաններէն և կամ նոցա հին պատմագիրներէն առնուած պատմական և արժանահաւատ յիշատակարաններ են, որովհետև Արտադխտոյ մասին Ֆիրտուսի և այլ հնագոյն պատմիչք իսկ կը խօսին, Գուլնար անուանելով զնա այլաբանօրէն, ինչպէս այլուր ըսուեցաւ: Բայց թէ ինչո՞ւ այդ մասը կը պակասի հայերէն Ագաթանգեղոսի մէջ, և թէ ինչպէս ներմուծուեցաւ յունարէն օրինակի մէջ, դժուարին է ստուգել: Ի նկատի ունելով պահլաւիկ անունն՝ Արտադուխտ, որ բոլորովին օտար է վերջին անուանէն, կարելի է ասել, թէ յունարէն հին բնագրին մէջ ևս հաւանօրէն կը գտնուէր այդ մասն, անկախ 'ի մատենագրաց Պարսից. բայց հայերենի թարգմանիչը այլևայլ նպատակներով դուրս է թողել՝ ուղղակի Խոսրովու և նորա որդւոյն պատմութեան անցնելու համար. և կամ թարգմանած էր, բայց յետոյ ուրեմն անյայտացաւ. առ այս ստուգիւ ոտից կռուան համարելու ենք զՄ. Խորենացի, որուն, ինչպէս տեսանք, ծանօթ էին Արտաշրի և նորա սիրուհւոյն պռնկական*

գործերն, և Արտաւանի դէմ լարած դաւաճանութեան աւանդութիւնքն՝ այլովք հանդերձ: Իսկ գալով յունարէն այժմեան օրինակին՝ ամենայն հաւանականութեամբ կարելի է ասել, թէ նորա թարգմանիչն ուղղակի պահլաւիկ գրուածքէ մի հանեց զայն 'ի ժամանակին այնմիկ, և թէ այդ պահլաւիկ յիշատակարանին իբրև աղբիւր կարելի է դարձեալ Ագաթանգեղայ գրոց հին բնագիրն եղած համարել, եթէ իրօք Սեբէոսի և Մ. Կաղանկատուացոյ վկայութեան համաձայն՝ յաւուրս Շապհոյ Բի և հրամանաւ նորա այդ բնագրին գէթ վերոյիշեալ Արտաշրի և Արտաւանայ վերաբերեալ մասն 'ի պարսիկ լեզու թարգմանուած համարինք:

Երրորդ հեղինակութիւնն, այսինքն է, Հռիփսիմեանց պատմութիւնն ոչ այլ ինչ է իւր արտաքին և ներքին առանձնայատկութեամբը՝ բայց եթէ մին 'ի Դ դարու յունարէն լեզուով գրուած վկայաբանութեանց, զորս եկեղեցականք ժամանակին աւելի հոգևորական ավիւնով լցուած և ժողովրդեան մէջ շրջող աւանդութեանց վերայ հիմնեալ՝ քան թէ վաւերական յիշատակարանս 'ի ձեռին ունելով գրեցին: Ցիրաւի, աստ ոչ սրբոց Հռիփսիմեանց ազգատոհմն և ոչ այլ նոցա կրօնաւորելուն պարագաներն և կրօնաստանին անունն և տեղին պատմաբանօրէն մէջ բերուած են, որ անհրաժեշտ էր. այնպէս որ Խորենացին Ե դարուն ստիպեցաւ ուրիշ աղբերաց դիմել՝ ստուգելու համար: Իսկ Դիոկղետիանոս կայսեր՝ Հռիփսիմէի հետ ամուսնանալու պատրաստութիւնն հանդերձ այլովք արարուածովք՝ բոլորովին այլ ընդ այլոյ, քան թէ պատմական ճշմարտութիւններ են: Այսպէս նաև Տրդատայ հետ ժամս բազումս մենամարտիլն և յաղթելը՝ ազգային վիպասանութեան և յետնութեան տիպ ունին: Ցէականս յունարէն գրուած լինելուն՝ բաց յայլոց բանից, որք այլուր յիշուեցան, ապացոյց է Մ Հայոց մասին տուած քարքարոս ածականը: Բազմաթիւ յունաբանութիւնք իսկ, զորս այլուր մէջ պիտի բերեմք, զայս կը թուին հաստատել:

Վկայաբանութիւնս կ'աւարտէր Հռիփսիմեանց և Գայիանեանց նահատակութեամբն, որ զետեղուած է Ագաթանգեղայ խմբագրութեան Ա Գրոց մէջ. իսկ նշխարաց փոխադրութիւնն՝ այս վկայաբանութեանս հետ վերաբերութիւն չունէր հաւանօրէն՝ նախ քան զխմբագրութիւն գրոցս: Վկայաբանութեանս բնագիրն՝ մինչև ցառաջին քառորդ Ե դարու առանձինն ունէր իւր գոյութիւնն և շատ կը տարբերէր այժմեան հայերէն և յունարէն օրինակներէն և ծանօթ էր Յունաց և Ասորւոց: Այս բանիս ապացոյց համարելի է հնուց 'ի վեր 'ի յիշատակ սրբոցս այդ եկեղեցեաց մէջ հաստատուած տօնն և եկեղեցական մաղթանքներն: Բայց այն ժամանակին՝ երբ Գրիգորի և Տրդատայ գործոց հետ՝ այս ևս յեղաւ 'ի հայ բարբառ և խմբագրեցաւ, նշանաւոր յաւելուածներով մեծ կերպարանափոխութիւն կրեց. այս յաւելուածոց կարգէն են Դիոկղետիանոսի արարուածներն, Տրդատայ հետ ունեցած մենամարտի նկարագիրն և ոմանք այն երկայն աղօթքներէն, որք նոցա բերանը դրուած են և յունարենի մէջ կը պակսին:

Չորրորդ հեղինակութիւն անուանածս՝ ուրոյն առանձին մասն չի կազմեր. այլ են Յառաջաբանէն սկսեալ մինչև ցվերջաբանը՝ շըրջող և անկապ հատուածներն, որք գրոցս խմբագրէն ներմուծուեցան և մերթ ընդ մերթ կու գան յերևան ամբողջ գրուածքին մէջ, երբեմն կրկնութեան ձևով և երբեմն այլ նորանոր վիպօք և առանձնայատկութեամբք. բայց աւելի զգալի են Բ կամ վերջին գըրքին մէջ, յորում խմբագրի հատուածներն աւելի տեղ գրաւած են, քան թէ հին բնագրին յատուկ եղածներն: Յիրաւի, այս դերս ստիպած էր խաղալ Ագաթանգեղայ գրոց թարգմանիչն և խմբագիրը՝ սակս այլևայլ պատճառաց, որոց մի քանիսն եղած են, ըստ իս, հետևեալները: Ա. որպէս զի կարենար վերոյիշեալ առանձին գրութիւններն յաջողութեամբ 'ի մի ձուլել և Հայաստանի մէջ հանդիպած այն մեծազոյն դէպքին ամբողջական և կատարեալ պատմութիւն մի կազմել, յորում մեծապէս փայլեցան թէ Գրիգոր թէ Տըրդատ և թէ Հռիփսիմեանք. այնպէս՝ որ ալ չի տեսնուէին անոր մէջ զգալի զանազանութիւնք և խորոցք: Բ. Որովհետև Հայոց 'ի Քրիստոնէութիւն դառնալու այդ նշանաւոր դէպքն և դիւցազունքը՝ յընթացս պարազայց ամաց՝ հայ ժողովրդեան և վիպասանից բերանը տարբեր վիպաց և զրուցաց զոյներ և կերպարանք առած էին, քան որ ինչ գտանէին վերոյիշեալ գործոց մէջ և առ օտարազգի մատենագիրս, ուստի խմբագիրն ինքնին հայազգի լինելով և հայերէն դպրութեան և գրոց գիտովը զուարճացած, բնականաբար հարկ էր որ զայնս ևս ներմուծէր իւր խմբագրութեան մէջ, թէ զինքն և թէ իւր ժամանակակից համազգիները գոհացնելու աղագաւ: Գ. որպէս զի այն գրութեանց ցամաք կմախքները՝ մարմնաւորելով և գեղերեսելով՝ ազգային և ազգայնոց առհասարակ ընդունելի և փաբելի ընէր, յորում և լաւ յաջողել է. այս բանս յետագայ պատմագրաց վերայ ունեցած այն ամենամեծ ազդեցութենէն իսկ քաջ կը տեսնուի, որովհետև Ե դարու առաջին կիսէն սկսեալ յետագայք առ հասարակ նորա խմբագրութիւնը ամենամեծ յարգանօք ընդունեցան, դրուատեցին և անոր հետևեցան. օրինակ իմն, Մ. Խորենացւոյ Բ գրոց ԿԵ գլուխը բառ առ բառ Ագաթանգեղայ գրոց Բ գլխահամարէն քաղուած է:

Ստուգիւ, Հռիփսիմեանց վկայաբանութեան մի առանձին գործ լինելն՝ անոր գրաւած տեղէն, բռնած դիրքէն և ներքին առանձնայատկութիւններէն իսկ այնքան յայտնի է, որ տարակուսիլն իսկ նորա մասին աւելորդ է: Իսկ Տրդատայ և Գրիգորի գործոց իրարու հետ ունեցած շղթայաշար կցորդութիւնը՝ կը ստիպէ զիս այս հարցըս և փորձս ընել. Արդեօք 'ի հնումն այս անդրանիկ և պատկառելի երկասիրութիւնս՝ Պատմութիւն կամ Գիրք Գրիգորի՞ մակագրուած էր, և նորա գործերը միայն կը պարունակէր. թէ, ընդհակառակն, կայր մի այլ գիրք, որ կը կանխէր քան զնա, բովանդակելով իւր մէջ Սանատրուկէն սկսեալ ցՏրդատ՝ մեր թագաւորաց գործերն, և կը կոչուէր Պատմութիւն Հայոց կամ Արշակունեաց:

Այս դժուարակնճիռն խնդրոյս հետ սերտիւ կապուած է Ագա_

*Թանգեղոս անուան և անձնական գոյութեան կամ ոչ գոյութեան խնդիրն, և առաջնոյն լուծմամբը՝ կարելի է վերջնականապէս լուծուած համարել և վերջինը: Սերէոս (գլ. ԼԳ) Հայոց առ կայսրն Յունաց Կոստանդին գրած նամակին մէջ՝ յիշելով զժողովն, զոր արար Կաւատ արքայ Պարսից, այսպէս կ'ըսէ. « Դիպեցան անդ երկու եպիսկոպոսք յաշխարհէն Հայոց, Կոմիտաս՝ Մամիկոնէից եպիսկոպոս և Մատթէոս՝ Ամատունեաց: Ունէին պատրաստական անդ ընդ ինքեանս զԳիրս սրբոյն Գրիգորի »: Ստեփանոս Ուռպելեան (գլ. Թ) և Մ. Կաղանկատուացի յաւուրս Շապհոյ Բ.ղի կատարուած բարձի և պատուոյ խնդրոյ վերայ խօսելով՝ կ'ըսեն. « Եւ իշխանք Հայոց մատուցին առաջի թագաւորին զցանկալին ամենայն տառից զգրաւորական զԳիրս ցանկալւոյն Գրիգորի, որ Ագաթանգեղոն[1] կոչի »:*

*Սոկրատայ պատմութեան մէջ՝ հայ թարգմանիչն Փիլոն՝ իւր կողմէն ձեռք խառնելով, կը պատմէ Նունէի և Հռիփսիմեանց մասին, զհաւատալն Հայոց Մեծաց՝ մեծ սքանչելեօք 'ի ձեռն սրբոյն Գրիգորի, և անդէն վերայ կը բերէ. « Որպէս ստոյգ ցուցանէ Նոյն Գիրքն »: Լիոնի Հասարակաց մատենադարանին Արևելեան ձեռագրոց միոյն մէջ (թիւ 14), զկնի պակասաւոր Յառաջաբանին՝ անմիջապէս գրուած է հետևեալ մակագիրս. « Պատմութիւն Ցաղագս ծննդեան և սննդեան և վարուց վարդապետութեան սրբոյն Գրիգորի մեր Լուսաւորչին ». Եւ յետոյ գրուած է « [illegible] [illegible] », բայց այլն ամենայն կը պակասի: Կարելի էր այս մակագիրս յետագայ վարդապետէ մի հնարուած կարծել, իբրև բնաբան ինչ Գրիգորի վերայ `յօրինած Ներբողեան ճառի մի կամ մասնաւոր պատմութեան մի, որոնց ստէպ կը հանդիպինք ճառընտիրներու և Յայսմաւուրաց մէջ, եթէ Ագաթանգեղայ գրոց Յառաջաբանը չի կանխէր քան զայն և 'ի հետևեալն չկարդայինք. « Ընդ նուաղել ժամանակաց թագաւորութեան Պարթևաց, 'ի բառնալն », այլովք հանդերձ և ուրիշ տեղեաց կցկտուր հատուածներ: Անտարակոյս այս վերջին պարագաներս կը ցուցնեն, թէ այդ ձեռագիրն կամ Ագաթանգեղոսի ամենահին օրինակի մի և Կոռնոսի գիշատիչ ժանեաց զոհ եղած նշխարեալ մնացորդներն իւր մէջ կ'ամփոփէր, և կամ նա ինքն Գրիգորի գործոց յունարէն մակագրին ճիշդ թարգմանութիւն էր: Եւ յիրաւի, Վատիկանի գրատան մէջ մինչև ցայժմ անծանօթ մնացած և Պ. Լազարդի ձեռքով 'ի լոյս եկած Գրիգորի գործոց երեք յունարէն ձեռագիրքն, որք ԺԱ դարուն գրուած են, ճիշդ նոյն մակագիրը կը կրեն իրենց ճակատին վերայ, այսպէս.* Βίος καὶ πολιτεία καὶ μαρτύριον τοῦ αγίου ἱερομαρτύρου Γρηγορίου τῆς μεγάλης ᾿Αρμενίας. *Դիտելու է, որ այս մակագրիս մէջ չիք բնաւ յիշատակութիւն ոչ Ագաթանգեղայ և ոչ ալ Տրդատայ, այլ պարզապէս Գրիգորին է վերագրուած. բայց նորա ներքոյ եղած գիրքը՝ կը բովանդակէ համառօտիւ Պարթևաց ազգատոհմին,*

*1. Դիտելու ենք, որ հեղինակս իբրև տիտղոս իմն կը յիշէ զԱգաթանգեղոս՝ Գրոցն Գրիգորի, և ոչ իբրև հեղինակ:*

*Տրդատայ, Հռիփսիմեանց և Հայաստանի դարձի պատմութիւնն, որքան որ են սոցա վերաբերութիւնքն ընդ գործոց Գրիգորի, և կամ կը պահանջէր Գրիգորի գործոց պատմութիւնն: Հուսկ ուրեմն Ղազար՝ 'ի Ցառաջաբանի անդ Պատմագրութեան իւրոյ՝ խօսելով զԱ Գրոց կամ զՊատմութենէն Հայոց և զԳրիգորէ, կ'ըսէ. « Ցորոյ առնուն և զԳիրսն [illegible] կոչեն Գրիգորիսի »: Սակայն ասկէց աւելի նշանաւոր է առ Վահան գրած թղթոյն հետևեալ տեղին. « Իսկ զյառաջագոյն զլինելոցս սրբոց արանցն, զորս 'ի Պատմութեան նահատակին Գրիգորի դրոշմեալ յիշատակէ, զմինչ եւ ասացից զարդար և զարժանաւոր կաթողիկոսէն՝ զսրբոյն Ներսիսէ … և զմեծ [illegible] Հայոց զՏէր Սահակայ և զայլոց բազմաց »: Արդ յայտնի չէ, թէ ո՞յք էին այդ սուրբ անձինքը, ո՞վ այն որ դրոշմեալ յիշատակէր զնոսա 'ի Պատմութեան անդ Գրիգորի: Սակայն այս քաջայայտ է, թէ այժմ Ագաթանգեղոս կոչուած գրուածքը՝ Ե դարուն մէջ Գրիգորի պատմութիւն մակագրութեամբ ծանօթ էր. և Ղազարայ « յառաջագոյն զլինելոցս սուրբ արանցն » բացատրութեամբ, եթէ* 583 *իջում յիշատակուած Ցունաց սուրբ Հարքն իմանանք, և եթէ զյաջորդս Գրիգորի զՍ. Սահակ, կը հետևի, թէ Գրիգորի Պատմութիւնն այլ ինչ կը բովանդակէր երբեմն՝ քան զոր ընծայէն մեզ Գիրք Ագաթանգեղայ. և թէ նորա գրութեան ժամանակը՝ պէտք էր որ կարծեցեալ ժամանակէն շատ տարիներ վերջ եղած լինէր: Բայց ինձ հաւանական կ'երևի, թէ այդ խօսքերով Ղազար կամ* 578–579 *էջերում յիշատակուած նահապետները կը հասկանայ, որք նոյնպէս յիշուած են նաև Գրիգորի ընդարձակ վարդապետութեանը մէջ. և կամ առ իշխանն Մամիկոնէից գրուած մի այլ թուղթ, և կամ Փաւստոսի պատմագրութիւնը, որ Գրիգորի յաջորդ սուրբ Հարց և հօտապետաց գործերը կը պարունակէր, իբրև շարայարութիւն Բ գրոցն Ագաթանգեղայ կամ գործոցն Գրիգորի: Առաջին պարագայով կը հաստատուի, թէ Ե դարուն վերջեր՝ այդ վարդապետութիւնն արդէն ներմուծուած էր Գրիգորի պատմութեանը մէջ: Իսկ երկրորդ պարագայի մէջ՝ կը հաստատուի, թէ մի ուրիշ մասն եւս կը բովանդակէր այդ պատմագրութիւնը, յորում կը պատմուէին մանրամասն պարագաներով Տրդատայ և Գրիգորի և Արիստակիսի ողբերգական մահուանքը, որոնք խորհրդաւոր քօղի տակ դեռ ծածկուած կը մնան:*

*Ցիրաւի, Տրդատայ մահուան և յուղարկաւորութեան այն անանուն՝ բայց ոսկեդարեան դրուագը, զոր յիշեցի ԺԱ գլխում ծանօթութեան մէջ, կարելի է այդ գրքէն մասն մի համարել, թէպէտև Թովմ. Արծրունի և Հ. Ղևոնդ Ալիշան Մովսիսի անյայտացած Դ Գրոցը կ'ընծայեն: Բ. Փաւստոս՝ Գ Դպրութեան Ա գլխում մէջ՝ որոշակի կը յիշէ թէ՛ Տրդատայ և թէ՛ Գրիգորի մահը, բայց առանց խօսելու կ'անցնի: Արդ կարելի բան չէ, որ Բուզանդացին լռութեամբ անցնէր Հայոց այդ կրկին լուսաւորաց, ինչպէս նաև Արիստակիսի մահուան սև օրերն, եթէ նոցա առանձին պատմութեան մէջ գրուած չլինէր: Արդ բոլոր այս վկայութիւններս կը հաստատեն, թէ*

անդստին 'ի վաղ ժամանակաց կայր ստուգիւ Գրիգորի հնագոյն **Պատմութեան** մի:

Սակայն Զենոբ գլակացին և Փաւստոս՝ Արշակունի թագաւորաց Պատմութիւն մ'ևս կը թուին ընծայել մեզ: Առաջինը՝ առ ատրի եպիսկոպոսունս ուղղեալ պատասխանւոյն մէջ՝ ուզելով յայտնել զպատճառ համառօտագիծ պատմութեան իւրոյ, կ'ըսէ յէջ 19. « Զթագաւորաց ժամանակն չգրեցի, վասն զի՝ սուրբն Գրիգոր պատ֊ շաճ համարեցաւ **զԱրշականի** և զքաջ **Լուսաւորչայ Գիրք** թողուլ տանս Հայոց »: Եւ յաւարտ պատմութեան առաջին պատերազմին Տա֊ րօնի, հետևեալ բացատրութեամբս. « **Զի Լուսաւորչայ ժամանակա֊ գիրք են** », վերստին կը հաստատէ այնպիսի գրութիւն մի և նորա որպիսութիւնն: Իսկ երկրորդը՝ իւր Գ Դպրութեան յԱ գլխում կը ծանուցանէ, թէ « Ի քարոզութենէն Թադէոսի Առաքելոյ և նո֊ րուն յելից և մարտիրոսութենէն մինչև 'ի կատարումն վարդապե֊ տութեան Գրիգորի և իւրոյ հանգստեանն և առաքելասպան Սա֊ նատրկոյ արքային՝ մինչև յակամայ հնազանդիլն Տրդատայ զան֊ ցեալ իրացն զառաջնոցն զվարսն զլաւացն և որ զնոցուն հակա֊ ռակ ընդդիմակացն՝ այն ամենայն 'ի ձեռն այլոցն գրեցան »: Եւ յիրաւի, եթէ Բիւզանդացիէն յառաջ իրօք այնպիսի գրութիւն մի ե֊ ղած չլինէր Արշակունեաց մասին, նա իւր պատմութիւնը փոխանակ Խոսրովէն և Վրթանիսէն սկսելու՝ Սանատրուկէն անշուշտ կը սկսէր և պէտք էր որ սկսէր պատմագրել. մանաւանդ այնու՝ զի նա ինքն կը ծանուցանէ իւր նախագիտելեաց խոստաբանութեան մէջ, թէ իւր պատմութեան չորս Դպրութիւններն՝ « Են միոյ իրաց յիշատա֊ կարանք, **յերեւեցուցիչ Պատմութեանց** ազգացն Հայաստան աշխար֊ հին, ժամանակագիր արարեալ 'ի թագաւորութենէն Խոսրովու որ֊ դւոյ Տրդատայ »: Արդ Փաւստոսի նախագիտելեաց մէջ եղած այսպիսի ծանուցման համաձայն՝ նորա Պատմութիւնն, այսինքն Գ Դպրու֊ թիւնը՝ ճիշդ այն կէտէն կը սկսի և յառաջ կը վարի, ուր որ Ագա֊ թանգեղայ գրոց հեղինակն իւր պատմութեան թելը կտրած էր, ոչ քայլ մի առաջ և ոչ յետոյ: Այս հրաշալի երևոյթս՝ ոչ ըստ դիպաց ինչ է, այլ ըստ կարգի ժամանակագրական պատմութեան, որով յայտնապէս կը տեսնուի, թէ Փաւստոս նոյն կերպով շարունակող է Գրիգորի և Տրդատայ Պատմութեան, որուն երկու գրքերն անդըս֊ տին 'ի հերուն հետէ ունէին զտեղի Ա և Բ Դպրութեանցն Փաւստո֊ սի, զորս ոմանք վարկպարազի խորհրդով կորուսած կը համարին, իբրև **Բուզանդարան** և ոչ Հայոց պատմութեան. իսկ այլք 'ի քննա֊ սիրաց՝ օտարս ինչ 'ի պատմութենէ Հայոց կարծեցին, որք վասն և թողեալ 'ի բաց: Անշուշտ այսպիսի անտեղի կարծեաց հերքումն տալու համար, կամ թարգմանիչն գրոց Բիւզանդացւոյն և կամ նոյն ինքն հեղինակն՝ Գ Դպրութեան ներքև անմիջապէս դրած է « **Սկիզբն** » բառը, ցուցնելու աղագաւ, թէ ուղղակի աստի կը սկսի այս երկասիրութիւնս: Երկրորդ, վերոյիշեալ տեղում Գրիգորի և Տրդատայ գործոց հեղինակութիւնն յիշելէն անմիջապէս վերջ՝ կը յարէ, թէ « Բայց և մեք 'ի մերում աստ եդաք (այսինքն է նորա

ւանդածներէն) փոքր 'ի շատէ 'ի կարգի պատմութեան, ոչ զանց արարեալ թողաք վասն պատշաճ իրաց կարգին»: Եւ յիրաւի, ինչպէս տեսանք յընթացս գործոյս շատ և շատ տեղեր իւր նախորդին պատմագրութենէն կը քաղէ՝ Գրիգորի և Տրդատայ մասին, կամ նոցա ձեռքով կատարուած իրաց վերայ խօսած ժամանակ և կամ Մեծին Ներսիսի գործերը՝ Լուսաւորչայ գործոց հետ բաղդատելու առթիւ: Գ. Ամենէն աւելի խօսուն և շօշափելի փաստն Ագաթանգեղայ գրոց առաջնութեան և Փաւստոսի յետնութեան՝ են այդ կրկին պատմագրութեանց պարունակութիւնքն և պատմագրուած իրաց ժամանակներն: Արդ մենք կը տեսնենք, որ Ագաթանգեղայ գիրքը կը պատմէ դարով յառաջ կատարուած և Հայոց համար ամենամեծ կարևորութիւն ունեցող իրաց, այսինքն է նոցա Գործն, Լուսաւորչայ, Տրդատայ և Հռիփսիմեանց գործերն. արդ եթէ այդ գիրքը Փաւստոսէն յառաջ գրուած չլինէր, անկարելի է որ Բուզանդացին զանց ընելով զայդ ամենայն, սկսէր Կոտակն Խոսրովէն և Վրթանիսէն գրել Հայոց պատմութիւնն, թողլով ահագին միջոց մի ժամանակի պարապ:

Արդ, այս պարագայս քաջ 'ի նկատի առնելով ուրեմն, պէտք է ըսել, թէ կամ Փաւստոսի Պատմագրութեան հեղինակն՝ էր նոյնպէս և հեղինակ և շարունակող գրոցն Ագաթանգեղայ, և կամ այս վերջնոյս գրիչն՝ էր միանգամայն և գրող Բուզանդացւոյ ընծայուած Պատմագրութեան. ուստի այս երկու ենթադրութեանցս զորն և ընդունինք իբրև ստոյգ, կը հետևի, թէ Ագաթանգեղայ պատմագրութիւնն յառաջ գրուած է քան զԲուզանդայն. որովհետև վերջինս՝ ուղղակի շարունակութիւն է առաջնոյն, և կը շարունակի ճիշդ այն կէտէն, ուր կը դադարի Ագաթանգեղայ գրութիւնն. այս բանս բնաւ տարակոյս չի վերցներ:

Ղազար Փարպեցին իսկ իւր Յառաջաբանին մէջ այս բանս կը հաստատէ, երբ Հայոց պատմագրաց մէջ իբրև առաջին կը յիշէ զԳիրքն Գրիգորիսի: Իսկ զՓաւստոսին՝ երկրորդ, յառաջնոյ անտի սկզբնաւորեալ, յասելն. «Երկրորդ գրոց (այսինքն է պատմագրութեան) սկիզբն արարեալ 'ի Կարգի առաջնոյն գրոյն (կամ պատմագրութեան), Փաւստոս ումն Բուզանդացի»: Ուրեմն ինչպէս նախնաբար մէջ բերուած հեղինակութիւնները՝ կը ցուցնեն մեզ Գրիգորի Պատմութեան մի գոյութիւնն, այսպէս ևս Զենոբայ և Փաւստոսի այս վկայութիւնքս ալ՝ յատկապէս կը ցուցնեն Արշակունի Թագաւորաց Պատմութեան մի գոյութիւնն, որուն չպատմածներուն՝ Զենոբ եղաւ լրացուցիչ, իսկ ընդհատութեանցն ալ Փաւստոս եղաւ շարունակող:

Սակայն այժմ այս հարցս ընդ առաջ կ'ելլէ մեզ. Արդեօք այս կրկին հեղինակներէն յիշուած Թագաւորաց Գիրքն ո՞ր իցէ: Զենոբայ տեղւոյն նկատմամբ՝ այնքան մեծ դժուարութիւն չկայ. որովհետև նորա խօսքը ժամանակակից հեղինակի մի և նորա գրութեան մասին է, որով հեշտեաւ կու տայ մեզ իմանալ զՊատմութիւն Ս. Գրիգորի, որ կը պարունակէր յինքեան զԽոսրովուն և զՏրդատայն ևս: Իսկ Փաւստոսի վերոյիշեալ տեղւոյ՝ ումանք 'ի բանասիրաց իմա-

ցան 1. Թուղթն Աբգարու 'ի Հայս գալստեան, քարոզութեան և վկայութեան հնազոյն Պատմութիւնն, թարգմանեալ յասորի բնագրէ 'ի ձեռն Սամուէլի Կաթողիկոսի, կամ լաւ ևս, Սամուէլի թարգմանչի դասեալ ընդ Ղևոնդեանս, և հրատարակուած է Սոփերաց Ը. հատորին մէջ: 2. Պատմութիւն Ագաթանգեղայ, զոր շարունակեց Բուզանդացին, կամ Սահառունի ումն:

Սակայն դիտելու ենք, որ Փաւստոսի վերոյիշեալ տեղւոյն մէջ իրարմէ տարբեր երկու եղելութիւնք որոշակի կը յայտնուին. այսինքն է, Ա. Հայաստան աշխարհի եկեղեցական պատմութիւնն, որ սկսեալ 'ի Թադէոս Առաքելոյն կամ յառաջին դարձէն Հայոց, կը հասնէր մինչև ցհանգիստ Ս. Գրիգորի: Բ. Աշխարհական կամ թագաւորաց Պատմութիւն մի, որ սկսեալ 'ի Սանատրկոյ կը հասնէր «մինչև ակամայ հնազանդելն Տրդատայ» կամ նորա դարձն: Եւ յիրաւի, այս նպատակաւ հեղինակս յետ յիշելոյ զՆոռաքեալն Թադէոս՝ անմիջապէս կ'անցնի «մինչև» բառով յիշել զՍ. Գրիգոր. ապա ուրեմն կը վերադառնայ յիշել զժամանակակից թագաւորն Թադէոսի՝ զՍանատրուկ՝ զուգելով ընդ անզուգականին Տրդատայ: Երկրորդ, Թադէոս Առաքելոյն և Սանատրկոյ պատմութիւնն առանձին մի դէպքի և ժամանակի պատմութիւն է, որ Գրիգորի և Տրդատայ պատմութենէն մեծ խտրոցաւ 'ի բացեայ կը մնար և չէր կարող միանալ վերջնոյս հետ. մինչդեռ Փաւստոս այսպիսի պարապ միջոց մի չէր տեսնար՝ Հայոց պատմութիւնը գրած ժամանակ, և եթէ տեսած ըլլար՝ անշուշտ կը լեցնէր:

Թէպէտև Թադէոս Առաքելոյն պատմութենէն դուրս՝ ամբողջ գրաւոր երկասիրութիւն մի հասած չէ դժբաղդաբար՝ ձեռքերնիս, սակայն մէկ կողմէն յանուն Առաքելոյս՝ նորա Զաքարիայ աշակերտին ձեռքով գրուած ԻԹ յօդուածով [illegible] վասն Հայաստանեայց, իսկ միւս կողմանէ ալ այլևայլ յիշատակարաններէ հանուած բազմաթիւ եպիսկոպոսաց անուանքն իրենց պատմութեամբ հանդերձ, զորս այլուր տեսանք, կը թուին երաշխաւորել մեզ այնպիսի եկեղեցական պատմութեան գոյութիւնը: Իսկ Արշակունի թագաւորաց Պատմութեանը՝ կը վկայէ մեզ բազմահմուտն Մ. Խորենացի, և կը վկայէ այնպիսի պարագայիւք և տեղեօք, որ յետ այնորիկ այլ ևս բանաւոր կերպով տարակուսելու չիք տեղի։ Հեղինակս՝ Աբգարու, Անանէի և Սանատրկոյ պատմութեան մասին՝ կը դնէ Ղերուբնայի և Թադէոս Առաքելոյն պատմութեանց հեղինակներուն. և նոցա աւանդածին համեմատ կը կարգէ զնոսա: Բայց հասնելով Սանատրկոյ յաջորդ թագաւորաց, այսինքն է Արտաշէսի և Երուանդայ պատմութեանն, ուրիշ աղբեր մի կը դնէ, այսինքն է Հանւոյ քրմին Ողիւպի կամ Ոլիմպիոսի, կոչելով (Բ. գլ. ԽԸ) զնա «գրող Մեհենական Պատմութեան»: Անկէ վերջ եկող թագաւորաց պատմութեան մասին ևս՝ թէպէտև ստէպ ստէպ ազգային զրուցաց և երգոց համաձայն բաներ կը յօրինէ, բայց նորա գրաւոր աղբիւրն՝ Հանւոյ մեհենական կամ թագաւորաց պատմութիւնն է. որովհետև հասնելով 'ի վախճան պատմութեան Վաղարշու, վերսս

տին կը յիշէ զայն՝ (Բ. գլ. ԿԶ) Բարդածան մեծանուն մատենագրին արարուածովն, այսպէս. «Եմուտ նա յամուրն յԱնի, և ընթերցեալ զՄեհենական Պատմութիւնն, յորում և շփոթ նախնեաց, յաւելուլ իւր և որ ինչ առ խորհեան, և փոխեաց զամենայն 'ի լեզու ասորի, որ և ապա անտի յեղաւ 'ի յոյն բան: Յորում պատմէ 'ի մեհենիցն պաշտամանց, վերջինն Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգե_րեզման եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի 'ի Բագնացն աւանի», և այլն: Աստ պատմելով Վաղարշու վերջին գործը, այսինքն է, Ա_մանորոյ կամ Նաւասարդի աշխարհախումբ տօնի հաստատութիւնը՝ Վաղարշու պատմութեան հետ՝ կը կնքէ նաև մեհենական կամ թա_գաւորաց ըսուած պատմական մատեանն ևս. նորա որդւոյն Խոս_րովայ Մեծի գործերը յանձնելով Ագաթանգեղայ և յանուանէ կը յիշէ զնա: Աստի ուրեմն կը սկսէր Ագաթանգեղայ գիրքն, և էր ուղ_ղակի շարայարութիւն Թագաւորաց Պատմութեանն, ինչպէս Փաւըս_տոսի գիրքն է շարունակութիւն գրոցն Ագաթանգեղայ: Եւ յիրաւի, այս բանիս կարելի է ապացոյց համարել Ագաթանգեղայ 623 իջի երկրորդ պարբերութիւնը՝ Նաւասարդի մասին, որ Բարդածանի թարգմանութեանէն մէջ բերուած տեղւոյն հետ գրեթէ նոյն է: Սա_կայն որոշ չի գիտցուիր, թէ արդեօք Ագաթանգեղայ գրոց հեղինակն ևս հանգոյն Մովսէսի Բարդածանի թարգմանութենէն օգտուած է, թէ ընդհակառակն ուղղակի մեհենական պատմութեան յունարէն բնագրէն. իսկ՝ վերջինն աւելի հաւանական կ'երևի. որովհետև Գրի_գորի պատմութեան հեղինակին պէտք է որ ծանօթագոյն եղած լինէր վերջինը, քան զԲարդածան: Իսկ առաջին ենթադրութիւնն՝ Ագաթանգեղայ գրոց խմբագրի վերաբերութեամբ միայն կարէ ընդ_ունելի լինել, որ յետոյ ժամանակաւ 'ի խմբագրելն զայն՝ օգտուած լինի Բարդածանէն ներմուծուած յաւելուածներէն ևս. որով միայն կը ստուգուի մէկ կողմէն Փաւստոսի այն խօսքը, թէ «Է՛ ինչ մեր պատմութիւն որ առաջին է (այսինքն է նկատմամբ Բարդածանէն եղած յաւելուածոց) և է՛ ինչ՝ որ վերջին է» (նկատմամբ Գրիգորի Պատմութեան). իսկ միւս կողմէն ալ կը մեկնուին Ագաթանգեղոսի մէջ երևցած ասորերէնի հետքերը, զոր նկատեցինք:

Արշակունի թագաւորաց յունարէն Պատմագրութեան մի գոյու_թիւնը կը հաստատուի նոյն իսկ Սրբոց Ոսկեանց հակիրճ բայց հնագիր պատմութեամբը, որ և տպուած է Հայկական Սոփերաց ԺԹ հատորին մէջ, յէջն 59: Արդ գրութեանս հեղինակը կը ծանու_ցանէ 'ի սկզբան անդ, թէ «Գտի միւս ևս այլ պատմագիր 'ի կող_մանս Յունաց, այր ընթերցասէր Տարխանու անուն, որ լեալ էր յա_ւուրս Վաղենտինիանոսի կայսեր. Բազում ինչ պատմեաց նա մեզ 'ի յամենայն Մարինէից, որոյ գրեանն անթիւ շատաբանութեամբ զրոյցք և այժմ 'ի միջի մերում գտանի. զոր իմ ընթերցեալ գտի 'ի ճառս նորա, եթէ «Արք ոմանք՝ որք յաշակերտաց լեալ էին մեծին Թա_դէոսի առաքելոյ, որոց անուն գլխաւորին Խոսրովու», և այլն: Յի_րաւի, այս յունահնչիւն անունս իսկ յայտնի նշան է յունարէն բնա_գրին: Սակայն մենք դիտելու ենք, որ աստ Ոսկեանց պատմութեան

հետ սերտիւ կապուած են Արշակունի թագաւորին Արտաշիսի Բ դի, Սաթինկան, նոցա որդւոց Վնոյնի և Վրոյնի կամ Վրոնի, Վաղարշու և Վաղարշակերտի և Գրիգորի Լուսաւորչի արարուածներն և Աբ․․․ երէցն, զոր Գրիգոր կը կարգէ առաջին վանաց վանահայր, և կարելի է առ Ագաթանգեղ յիշուած Ագապէսին իբրև նախատիպ համարել: Ուստի շատ հաւանական է կարծել, թէ ինչպէս հայ հեղինակն վկայաբանութեան Ոսկեանց՝ յոյն Տատիանոսի պատմութենէ մի առած, այսպէս և վերջինս Արշակունի թագաւորաց յունարէն Պատմագրութենէն. յորում վերոյիշեալ թագաւորաց և սրբոց արանց գործոց մասին՝ Մովս. Խորենացւոյ, մանաւանդ թէ նորա աղբեր Բարդածանի աւանդածներուն լաւ կը համաձայնի:

Բարդածանով կը լուսաւորի նաև առ Սեբէոսի (Ա. Դպրութիւն) գտնուած և Ագաթանգեղոսի ընծայուած Արշակունի հինգ թագաւորաց արձանագիրն: Ես համոզուած չեմ, թէ ստուգիւ այդ արձանագրութիւնը Տրդատայ դպրապետ Ագաթանգեղոսէ մի գրուած ըլլայ, որովհետև Սանատրուկէն մինչև Տրդատ երկուց և կէս դարուց միջոց կայ. ուստի և ոչ այլ Սեբէոս է, որ զայն մէջ կը բերէ: Առ այս նշանաւոր է Սիմոն Ապարանեցու (Վիպաս. Պատմ. Պահլաւունեաց և Մամիկոնեանց) մէկ տեղին: Հեղինակս խօսելով յանուանէ զՂազարայ՝ կ'ըսէ. «Պատմագիր Հայոց եղեալ – Ի Մովսիսէ կարգ ընկալեալ – Ու մնացեալս վիպասանեալ. –Ի Մար Աբայ մատեանս մտեալ – ԸզՄծուրնացունըն վերծանեալ – Ու զվաղընջուցըն թարգմանեալ – Հելլէն գրով սուրբն գտեալ – ՅԱգաթանգեղոսէ դրոշմեալ – Ի վերնագրէն զայս իմացեալ. – Արանց հնգից թագաւորեալ – Ու Պարթևաց Հայոց տիրեալ – Ու Բելայ բուռն հարեալ – Ու գեղեցիկ ոճով պատմեալ»:

Ապարանեցու այս տողերը կը ներկայացնեն մեզ. Ա, զՂազար իբրև հեղինակ Ա և Բ Դպրութեանց այն անանուն գրութեանը, զոր տպագրողք մի և նոյն ձեռագրի մէջ օրինակուած գտնելով, առանց քննութեան իբրև սեփական գործ՝ Սեբէոսի ընծայած են: Բ. թէ Ղազար զանց առնելով զմարիբասեան աւանդութեամբքն (որ առ Մովսիսի) Մծուրնեցուն հետևեցաւ, կամ լաւ ևս, ած 'ի լոյս, զոր Խորենացի մոռացութեան դատապարտած էր, Բագրատունեաց նպաստաւոր չլինելուն համար: Գ. թէ Մծուրնեցու այս մատեանը կը պարունակէր 'ի Մծբին կոթողի մի վերայ գրուած հինգ թագաւորաց արձանագիրն և հակիրճ պատմութիւնն: Դ. Իբր թէ այս արձանագիրս Ագաթանգեղոս գրած ըլլար, և թէ այս բանս վերնագրէն իմացած էր Փարպեցին:

Արդ Տրդատայ դպրապետը բացարձակապէս չէր կարող Սանատրուկոյ ժամանակ գրուած արձանագրութեան մի գրիչ լինել. և այս վերստին կը հաստատէ այն կարծիքը, թէ երկրորդ թարգմանիչք մեր Ագաթանգեղայ գրոց լոկ վերնագրէն հնարեցին նորա անձնական գոյութիւնն: Այս ստոյգ է, թէ Ղազարայ պատմութեան Ա գիրքը՝ Ցառաջաբանով հանդերձ շատ խառնակ և պակասաւոր է. բայց ատի չէ արժան հետևցնել, թէ առ Սեբէոսի հրատարա-

*կուած այն երկու Դպրութիւնքը՝ 'ի սկզբան անդ Ղազարայ Պատմութեան Ա գրքի մէջ կը գտնուէին, առանց ապացուցանելոյ նորա Ցառաջաբանի հարազատութիւնն. որովհետև յայսմ որոշակի կ'ըսուի, թէ « Ի [illegible] [illegible] Պատմութեան Փաւստոսի անճցուցանէ յառաջ և գրէ ». մինչդեռ անդ՝ ընդհակառակն Բուզանդացիէն դարերով առաջ Հայոց պատմութեան համառօտ ժամանակագրութիւնը կը լինի: Այսպիսի եղելութեան մի վերայ՝ Ապարանեցու ժամանակակից Հայք ևս կը տարակուսէին, որոնց դէմ կը ճգնի նա հաստատել զճշմարտութիւնն ասելով. « Զոր 'ի գլուխ գըրոց գրեալ — Զհինգ թագաւորս նախաճառեալ, — Նմին իրի [illegible] — Զեւս նոցա ճառէ անսխալ, — թէ ո՞վ ոք են՝ ուստի եկեալ, — Այս ճոխութեանըս պատահեալ. — Զփիլիսոփային վրկայ առեալ՝ — Զիրողութիւնս [illegible] ատուգեալ, — վերջնոյս զվասն էրըն ծանուցեալ, — Ցորմէ և իմ վահան առեալ, — Զի ներհակին դիմի հարեալ — Եւ ճշմարտին բան զօրացեալ. — Զի պատմագիրն ոչ ախորժեալ. — Զքերթողին կըրկնաբանեալ, — ԶՄամիկոնեանսն զեկուցեալ — Վասն նոցա դըրուագեալ. — Բայց Մովսիսի ոչ ծայնակցեալ՝ — Ագաթանգեղայ զոլ հետևեալ, — Այն որ զդեսպանս ծենաց հարցեալ՝ — Ի նոցանէ զըստոյգն ուսեալ, — Մամն և Կոնակըն ճոխացեալ, — ծենաստանէ 'ի Պարս անցեալ »:*

*ԶԱպարանեցին՝ ես երկոքումբք բաղդատր կը համարիմ, նախ զի « հելլէն գրով [illegible] գտեալ » բացատրութեամբը՝ կը լուսաբանէ Ղազարայ առ Վահան ըրած այս բացատրութիւնս. « իսկ յառաջագոյն գրելոցս [illegible] [illegible], զորս 'ի պատմութեան նահատակին Գրիգորի յիշատակէ ». և կը հաստատէ, թէ իրօք ինքը կարդացեր էր Փարպեցւոյ կամ մեր ձեռքն հասած թղթոյն և կամ նորա մի ուրիշ գրութեան մէջ այն աբանց պատմութիւնը: Բ. Թէ Ապարանեցին կարդացել էր Ղազարայ պատմութեան մի կատարեալ և հընագոյն օրինակն, որուն սկիզբը զետեղուած էին Սեբէոսի պատմութեան առընթերակայ երկու Դպրութիւնքը. և այսու կը մեկնուի այն գաղտնիքը, թէ ինչու համար Ղազար իւր պատմութեան Ա. գրոց մէջ գրեթէ ծայրէ 'ի ծայր Մովսիսի հետևելով, սակայն նորա անունն անգամ յիշատակած չէ. որովհետև Փարպեցու պատմութեան Ա գրոց հարազատութիւնը՝ տարակուսական է: Ցիրաւի, այս բանիս կը նպաստէ այդ գրոց Ցառաջաբանը, յորում օտար ձեռքէ մի ներմուծուած ուրիշ յառաջաբան մի ևս կը տեսնուի. և այս է հակառակորդի ուրումն Մովսիսի Խորենացւոյ առ 'ի ծածկել զփառս քերթողահօրն, և ոչ թէ Ղազարայ, որ այլուր մեծապէս պանծացուցանէ զՄովսէս: Արդարև, 1 և 2 էջերում յետ յիշելոյ զպատմութիւն Ագաթանգեղայ և Փաւստոսի, անդէն կը յարի և « [illegible] » իբրև Ղազարայ, և կը ծանուցուի, թէ պիտի հասնի այն մինչև ցսկիզբն մարզպանութեան Վահանայ կամ ցթագաւորելն Վռամայ որդւոյ Բ. Ցազկերտի. և իրօք այնպէս ալ կ'աւարտի: Իսկ 4 էջում Բ գլխահամարով մի նոր Ցառաջաբանութիւն ևս կը սկսի. « Ընդ բազում ճառս մատենից առաջնոցն պատմագրացն*

Հայոց անցի », յորում իբրև նոր իմն կը յիշուին Ագաթանգեղայ և Փաւստոսի Բիւզանդացւոյ պատմութիւնքն՝ իրենց նիւթոց յառաջբերութեամբք. ապա կը յիշուի Ղազարայ Պատմութիւնը, հանդերձ գրութեան պատճառով և նպատակաւն: Առանց երկբայութեան այս վերջինս է հարազատ Յառաջաբան Բ Դրուագին Ղազարայ. իսկ առաջինն՝ բանաքաղի ուրումն է: Ուրեմն համարելով, ըստ Սիմէոնի Ապարանեցւոյ, թէ առ Սեբէոսի (տպ. Ք. Պատկ. Ս. Պետերբուրգ, 1879) Ա Դպրութիւնը մինչև ցէջն 10 « Ապա լինին Պարթևաց տէրութեանն ամք ՇՀԳ », և Բ Դպրութիւնը ցէջն 18 « Յամի երկրորդի Յազկերտի ... վճարեցաւ », իրօք կը գտնուէին առ Ղազարայ, կը հետևի, թէ Ղազար այդ Դպրութեանց գէթ առաջինը՝ յունարէն գրուած Հայ և Պարթև թագաւորաց գրքէն կամ մեհենական պատմութենէն առած է ուղղակի կամ անուղղակի կերպով, և թէ նորա Հայկէն սկսեալ մինչև ցՎաղարշակ ճառող մասին՝ ոչ թէ Ուղիւպ կամ Ագաթանգեղոս ումն, այլ նոյն ինքն ասորին Բարդածան համարելու ենք աղբիւր, որ իբրև աշակերտ Մարաբայ Մծուրնեցւոյն կամ լաւ ևս Եդեսիոյ համբաւատենչ դպրոցին, 'ի թարգմանելն զգիրս Ուղիւպի յասորի լեզու՝ յաւելցուց անոր մէջ՝ ոչ միայն հայկազունի դիւցազանց, այլ նոյն իսկ Վաղարշակայ արձանագրութեան և Սանատրկոյ ժամանակ 'ի Մծբին գտնուած սեան պատմութիւնն, առնելով 'ի Մծուրնեցւոյն. և թէ այս գիրքս Խորենացւոյն իսկ ծանօթ էր: Յիրաւի, այսու նախ հասկանալի կը լինի Ա Դպրութեան հետագայ բացատրութիւնը. « Անդ հայելով 'ի մատեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնեցւոյ, զոր եգիտ (Մծուրնեցին) դրոշմեալ 'ի վերայ արձանի 'ի Մծբին քաղաքի ... զամս և զաւուրս հինգ թագաւորացն Հայոց և Պարթևաց ... զոր իմ (այսինքն է Ղազար [1] կամ Տրդատայ և Գրիգորի պատմութեան հեղինակն) գտեալ 'ի Միջագետս 'ի նորին աշակերտաց (այսինքն է 'ի Բարդածանայ), կամեցայ ձեզ գրուցակարգել »: Երկրորդ, Բարդածան միայն և ոչ Ագաթանգեղոս կարող էր տեսնել Արտաւանայ և մեծին Խոսրովու ժամանակ 'ի ճենաց թագաւորէն ղրկուած դեսպաններն և ասել. « Ազգ մի մեծ (այսինքն է Մամիկոնեանք) 'ի Հայաստան երկրի կայ, զորմէ ասեն, եթէ 'ի ձերմէ աշխարհէն գնացեալ են », և այլն, ինչպէս կը կարդանք յԲ Դպրութեան անդ: Իսկ նորա յաշխարհս Արևելից և 'ի Հայս ըրած ճանապարհորդութեանց և բազմապատիկ գրութեանց կը վկայեն ոչ միայն Մովսէս և Հերոնիմոս, այլ Եւսեբիոս ինքնին **Աւետարանի Պատրաստութեան** մէջ, անկէ երեք թուղթ հատուած մի մէջ կը բերէ, որ գրուած էր

1. Յիրաւի, ինչպէս ասորին Բարդածան 'ի հայս գալով կարող էր յաւելուլ ինչ ինչ Արշակունի թագաւորաց պատմութեան մէջ և կամ թարգմանել զայն 'ի լեզու ասորի, այսպէս և մերս Ղազար՝ հալածեալ յաքեղայից երբ կը դեգերէր 'ի Միջագետս, կարող էր վերստին թարգմանել զգործն Բարդածանի 'ի հայ բարբառ կամ գէթ օգտուիլ անտի, քան զոր չգոյր աւելի օգտակար զբաղումն վասն իւր և հանդոյական ընծայ վեհին վահանայ:

ընդդէմ աստեղաբաշխին Աքիղայ. յորում ազգաց սովորութիւնք մի առ մի կ'ածէ 'ի հանդէս, և Հայոց համար կ'ըսէ, թէ առ նոսա մարդասպանները ոչ եթէ օրինօք՝ այլ սպանելոյն ազգականնե_րը կը դատէին, և թէ իւրաքանչիւր ընտանեաց հայրը՝ տէր էր սպա_նելու իւր որդին կամ ամուսինը. իսկ առ Պարսիկս սովորութիւն էր ոչ միայն հարց՝ իրենց դստերաց հետ, այլ և որդիք իրենց մարց հետ կ'ամուսնանային: Իսկ Ագաթանգեղեան գրոց հեղինակն, եթէ իրօք այդ կրկին, այսինքն է սորի և յունարէն աղբերացմէ Հայոց և Պարթևաց թագաւորաց մասին շատ բաներ ևս առած լինէր, ինչպէս կը վկայեն Ապարանեցին, և ըստ Ապարանեցւոյն՝ Ղազար Փարպեցի. այս յայտ է, թէ անյայտացած են. և այժմ միայն յու_նարէն օրինակին մէջ գոյութիւն ունեցող նախկին տասն գլխահա_մարներն անեթ կարելի է պահուած համարել. որով պէտք է թա_գաւորաց գիրքը՝ պարզապէս իբրև աղբիւր եղած նկատել Գրոցն Ագաթանգեղայ, և ոչ երբէք կազմիչ ուրոյն ամբողջական մասին: Ուստի կը մնան խմբագրին եկամուտ հատուածներն, Գրիգորի Պատմութիւնն և Հռիփսիմեանց վկայաբանութիւնը, որոց վերջին երկուքն, ըստ իս, Դ դարուն առաջին կիսում գրուած էին և ոչ թէ Եին, ինչպէս կը հետևցնեն Հ. Ց. Գաթըրճեան և համախոհք նորա. հիմնուելով մի քանի տող եկամուտ հատուածոց վերայ, կամ լաւ ևս ըսել նոյն երկու կամ երեք հատուածները միայն փոխառու_թիւնս վարկանելով, որոնք ընդհակառակն, դեռ աւելի հնագոյն աղբիւրներ մեզ կը ցուցնեն, յորոց Գրիգորի ժամանակակից ումն կա_րէր քաջ օգտուած լինել: Ուրեմն ըստ այսց երից գլխոց կարևոր կը համարիմ. ցանկել աստ զգիրս Ագաթանգեղայ, քննութեանցս ար_դիւնքն ակներև ընելու և ընթերցողացս նորանոր ուսումնասիրու_թեան դիւրութիւն հայթհայթելու համար:

| ՆԿԱՄ. ՀԱՏՈՒԱԾՔ ԽՄԲԱԳՐԻՆ | ՊԱՏՄ. ԳՐԻԳՈՐԻ |
| --- | --- |
| Էջ 5 " Իղձք ըղձացեալ ., ցէջն 27 " ծովավաստակ նաւաստեացս „: | |
| | Էջ 29 " Ընդ նուաղել ժամանակի „ ցէջն 43 մինչև " Պաշտէր առաջի նորա „: |
| Էջ 43 " Ընդ ժամանակս ընդ այնո_սիկ իշխանն Յունաց „ ցէջն 49 " զօ_րացեալ 'ի վերայ սահմանաց նո_րա „: | |
| | Էջ 49 " Յառաջին ամին Տրդատայ արքայութեանն „ ցէջն 103 մինչև " 'ի Հայոց աշխարհ յարևելս „: |
| Էջ 103 " Իսկ թագաւորն Տրդատ „ ցէջն 104 մինչև " զկողմանս Պար_սից „: | |
| | Էջ 105 " Եւ զայն ամս երեքտա_սան „ ցէջն 110 մինչև " ողջ եմք „: |

| ԵԿԱՄ. ՀԱՏ. ԽՄԲԱԳ. | ՊԱՏՄ. ԳՐԻԳՈՐԻ | ՎԿԱՅԱԲ. ՀՌԻՓՍԻՄԵՆՑ |
|---|---|---|
| Էջ 110 “ Իսկ զամենայն ամս ժամանակաց „ մինչև “ կենաց իւրոց „: | | |
| | Էջ 110 “ Իսկ միւս ևս այլ հրովարտակ „ ցէջ 112 մինչև “ Ողջեմք „: | |
| | | Էջ 112 “ Եւ եղև ընդ ժամանակսն „ ցէջն 123 մինչև “ պարենի ռոճիկ „: |
| Էջ 123 “ Ցայնմ ժամանակի „ ցէջն 127 մինչև “ ամենայն պատուով „: | | |
| | | Էջ 127 “ Եւ եղև իբրև ընթերցան „ ցէջ 128 մինչև “ Որ յերկինս է „: |
| Էջ 128 “ Տեսանես „ ցէջն 129 մինչև “ լցին զտիեզերս „: | | |
| | | Էջ 129 “ Արդ զտեալ լինէին „ ցէջն 134 մինչև “ ցաւոց մերոց „: |
| Էջ 134 “ Որ պահեցեր զԱբրահամ „ ցէջն 138 մինչև “ և պատկառանաց „: | | |
| | | Էջ 138 “ Եւ արդ եղեալ որոտումն „ ցէջն 157 մինչև “ Թռչնոց երկնից „: |
| Էջ 157 “ Իսկ թագաւորն թողեալ „ ցէջն 159 մինչև “ ինձ յաղթեցին „: | | |
| | | Էջ 159 “ Իսկ 'ի վաղիւ անդր „ ցէջ 163 մինչև “ առին զպսակն յաղթութեան „: |
| Էջ 163 “ Արդ աւուրս վեց „ ցէջն 165 մինչև “ վասն հարուածոցն լինէր „: | | |
| | Էջ 165 “ Ցայնմ ժամանակի „ ցէջն 187 մինչև “ փառաւորչաց իւրոց „: | |
| Էջ 187 “ Իսկ եթէ զծեզ „ ցէջն 193 մինչև “ սրտի մտօք լուիջիք „: | | |
| Էջ 541 “ Արդ եկայք, եղբարք „ մինչև “ զամենայն պատմեցաք ծեզ „: | | |
| | Էջ 542 “ Արդ եկայք ամփոփեսցուք „ ցէջ 546 մինչև “ աւետարանաւն Քրիստոսի „: | |

### ԽՄԲԱԳՐԻՆ

էջ 546 “ չամօրէն տեղեկացուցեալ„ ցէջն 547 մինչև “ գրեաց նորին զօրութեամբ „:

էջ 548 “ Մանաւանդ թագաւորն „ ցէջն 550 մինչև “ հասանէր յայն տեղին „:

էջ 568 “ Արդ ամենարարն „ մինչև “ ՚ի նորոգութիւն „ :

էջ 573 “ Իսկ թագաւորն Տրդատ „ ցէջն 577 մինչև “ զվաստակսն մատուցանէր „ :

էջ 579 “ Արդ իբրև ժողովեալք „ ցէջն 580 “ Եւ թագաւորն մինչ կայր „ մինչև “ բժշկեցաւ „ : 582 մինչև “ պատուիրանացն Աստուծոյ „ :

էջ 587 “ Առնոյր այնուհետև զԱրշակունեաց „ ցէջն 588 մինչև “ ըսպաս տարցին „ :

էջ 589 “ Իսկ երանելին „ մինչև “ զնոսա ևս հաստատէր „ :

էջ 592 “ Եւ յորժամ գայս „ ցէջն 593 մինչև « առաջի ամենեցուն „ :

էջ 596 “ Իսկ անդէն տեսիլ երևեալ „ մինչև “ կամք Աստուծոյ կատարեսցին „ :

էջ 598 “ Ի վաղնջենէ հետէ կորուսեալք „ ցէջն 600 մինչև “ և սրբութեանդ „ :

### ՊԱՏՄ. ԳՐԻԳՈՐԻ

էջ 547 “ Իսկ նոքա ժողովեալ „ ցէջն 548 մինչև “ յարդար դատաստանէն „ :

էջ 550 “ Իսկ երանելին Գրիգորիոս „ ցէջն 573 մինչև “ հանգիստըն մատուցանէր „ :

էջ 577 “ Արարեալ շինեալ „ ցէջն 579 մինչև “ վարդապետութեան փութային „ :

էջ 580 “ Նոյնպէս և ամենայն մարդիկն „ ցէջն 581 մինչև “ Քրիստոսի „ :

էջ 582 “ Առնոյր այնուհետև „ ցէջն 587 մինչև “ նշան կանգնէր „ :

էջ 588 “ Եւ ապա յանձն արարեալ„ ցէջն 589 մինչև “ և անդ կանգնէր „ :

էջ 589 “ Ապա երթեալ „ ցէջ 592 մինչև “ ծառայութեան Քրիստոսի „ :

էջ 593 “ Ապա փութացեալ հասանէր „ ցէջն 595 մինչև “ խնդրեալ գտցեն „ :

էջ 596 “ Իսկ թագաւորն „ ցէջ 598 մինչև “ հրովարտակ գրել „ :

էջ 600 “ Ղևոնդիոս Արքեպիսկոպոս „ ցէջն 605 մինչև “ զխոստովանողական անուն ժառանգեաց „ :

| ԽՄԲԱԳՐԻՆ | ՊԱՏՄ. ԳՐԻԳՈՐԻ |
| --- | --- |
| Էջ 605 «Եւ յետ այսորիկ» ցէջն 606 մինչև «՚ի Հայաստան աշխարհ»: | Էջ 606 «Եւ իբրև եկն եհաս» ցէջն 607 մինչև «բագինս մնացեալս»: |
| Էջ 607 «Իբրև դարձեալ գայր» ցէջն 608 մինչև «զշինուած մատրանն կազմէին»: | Էջ 608 «Հրաման ետ Գրիգոր զօրականին» մինչև «զշինուած բագնացն»: |
| Էջ 608 «Որ ելեալ շատ ջանացան» ցէջն 609 մինչև «լեալ ինչ իցէ անդ» էջ 612 «Իսկ նա շրջէր»: | Էջ 609 «Եւ կոտորեցան մարդիկ զաշտաման» ցէջն 613 մինչև «ողջոյնաբեր թղթոյն»: |
| Էջ 613 «Չի գրեալ էր զպատճէնն՝ օրինակ զայս» ցէջն 614 մինչև «սիրեցեալքդ Տեառն»: | Էջ 614 «Տրդատէս թագաւոր Հայոց մեծաց» ցէջն 619 մինչև «յայնժամ կեցցես»: |
| Էջ 619 «Այսպէս բազում աշխատութեամբ» ցէջն 620 մինչև «յեր կիւղն Աստուծոյ»: | Էջ 620 «Իսկ ՚ի լնուլ կետին» ցէջն 631 մինչև «զօրութիւնն Քրիստոսի»: |
| Էջ 627 «Եւ այսպէս» ցէջ 630 մինչև «ոչ կարացէ շարժել»: Էջ 631 «Անդ էր չարբենալ գինուվ» ցէջն 632 մինչև «անձին մատուցանէր»: | Էջ 632 «Եւ թէ երբէք» ցէջն 633 մինչև «ծաւալեցուցանէր»: |
| Էջ 633 «Եւ զայս արարեալ» ցէջն 637 մինչև «հայերէնախօս գտաւ»: | Էջ 637 «Արդ ըստ գաւառաց գաւառաց» մինչև «լուսաւորէր զամենեսեան»: |
| Էջ 637 «Եւ բազմացոյց կացոյց» ցէջն 638 մինչև «զհրամանսն»: | Էջ 638 «Իսկ թագաւորն շատ աղաչեաց» ցէջն 645 մինչև «զվարդապետութեանն սատարութիւնն»: |
| Էջ 645 «Իսկ մեծ Արքեպիսկոպոսն» ցէջն 656 մինչև «՚ի ճշմարիտ քարոզութեան»: | Էջ 656 «Ապա յետ այսորիկ» ցէջն 657 մինչև «կենաց իւրոց լուսաւորէր»: |
| Էջ 657 «Ապա յետ այսպիսի գործոյ» ցէջն 663 մինչև «Տէր Աստուած մեր դու ես»: Վերջ: | |

Արդ, այսպէս կարգելէն վերջ զցանկս երից հեղինակութեանց, ինձ պարտք կը համարիմ յաւելուլ և զայս, թէ ոմանք այն հատուածներէն, (օրինակի աղագաւ, Տրդատայ խոզակերպութեան և Գրիգորի 'ի Հռոմ երթին հատուածներն՝ այլովք հանդերձ, զորս ես իմ քննութեանցս՝ համաձայն խմբագրին վերաբերեալ հատուածոց ցանկին մէջ դասեցի), կարելի է որ իրօք և ուղղակի Գրիգորի պատմութեան հեղինակին եղած լինին, և կամ Հռիփսիմեանց վկայաբանութեան հեղինակին, նկատելով որ նոցա գրութիւնքը՝ կարծեցեալ ժամանակէն վերջ իրագործուած են. այսպէս ևս վերջնոցս ցանկին մէջ դասածներէն ոմանք՝ (օրինակ իմն, Տրդատայ զոյգ հրովարտակներն, առ Ղևոնդիոս գրուած թուղթն, նորա պատասխանին և Տեսլեան նկարագիրն, և այլն), կարեն խմբագրին եղած լինել: Սակայն մէկ ընդհանուր իրողութիւն մի՝ որուն վերայ այլ ևս չեմ տարակուսիր, է այս. թէ՛ խմբագրին և թէ՛ Գրիգորի կենսագրին ընծայուած հատուածքն առհասարակ՝ յայտնապէս և բացարձակօրէն ազգային տիպ և հանգամանքներ ունին, պատմական և աշխարհագրական տեսակէտերով, և այս շատ է ինձ:

Ագաթանգեղայ գրոց և հեղինակութեան խնդրոյն՝ կը յաջորդէ այժմ նորա խմբագրութեան հարցը. այսինքն է, արդեօք մի՞ միայն, թէ այլևայլ խմբագրութիւնք տեղի ունեցան յընթացս ժամանակաց. ե՞րբ արդեօք և ի՞նչ առթիւ և պարագաներով: Եւ յիրաւի, այսպիսի մի հարց՝ ունի իւր կարևորութիւնն հետևեալ տեսակէտով. այսինքն է, ենթադրելով, թէ ըստ թուոյ խմբագրութեանց՝ այնչափ ևս կարող էին աճել և բազմապատկել յայնմ նորանոր անհարազատութիւնք, որք թէ՛ ոճին կողմանէ և թէ՛ պէսպէս առանձնայատկութեամբք իրարմէ տարածայնէին: Սակայն հայերէն օրինակն, որուն վերայ է խօսքս, բազմիցս բանասիրելով՝ այս օրինակ և զգալի զանազանութիւններ չեմ կարողացեր գտնել առաջին և վերջին գրոց մէջ գէթ, 'ի մասին հայկաբանութեան կամ շարաբանութեան լեզուին. զի ոսկեդարեան միապաղաղ լեզուն և ասացուածոց գեղեցկութիւնքը՝ ոսկիէն աւելի կը փայլին հաւասարապէս երկաքանչիւրին մէջ. թէպէտև նկարագիրք դիպաց ոչ միշտ նովին ճարտարութեամբ և վսեմական երևակայութեամբ եղած կը տեսնուին. մանաւանդ օտարաց և աշխարհական իրաց յառաջբերութեանց մէջ: Իսկ ուր ազգային և հոգևորական են նիւթք՝ անդ աւելի ևս կը տեսնուին ճոխութիւնք բանից և վարդապետութեան գրոց, որով կը տեսնուի, թէ վերոյիշեալ հեղինակութեանց թէ՛ գրողքն և թէ՛ խմբագիր թարգմանիչք՝ եկեղեցական դասէն էին, բայց առլցեալք միանգամայն արտաքնոցն գիտութեամբք: Այրարատեան վսեմաշուք բարբառով գրուած այդ կանոնաւոր, յստակ, սեփական և կորովաբան գրութիւնն՝ իւր մնացած առանձնայատկութեամբքն՝ ոչ միայն Ե դարէն աստին բացարձակապէս չի կրնար անցնիլ և եկամուտ տարերս բովանդակել, ինչպէս ոմանք կարծեցին, այլ նոյն իսկ Ե դարու երկրորդ թարգմանչաց պարունակէն իսկ վեր է և որիշ: Աստի պատրեալ անշուշտ և գերեալ բազումք 'ի հայ բա֊

նախիրաց և օտարազգի հայագիտաց կարծեցին և կը կարծեն, թէ այդ լեզուն եղած ըլլայ հոգի և շունչ և մարմին Ագաթանգեղայ նախկին բնագրին: Սակայն՝ այս բանս բնագրի և թարգմանութեանց խնդրոյն ուղղակի կը վերաբերի, և ես կը թողում զայն յաջորդ գլխոյն:

Իսկ գալով գրոցս պատմական և այլ հանգամանաց՝ զորս արդէն իբր 'ի հայելւոջ տեսանք 'ի բազում ուրեք, իրենց հնկապատկեր երևոյթներովը կը թուին ընծայել մեզ կրկին խմբագրութիւնս, որոց մին եղած լինի Դ դարուն երկրորդ կիսում, հաւաքմամբ յոյն և ասորի աղբերաց կամ ցիրւցան յիշատակարանաց: Եւ իրօք այսպիսի մի եղելութեան նպաստաւոր կ'երևին, ըստ իս, Ա. Ստեփ. Ուռպէլեանի (գլ. Թ) և Մ. Կաղանկատուացոյ վկայութիւնը, զոր յիշեցինք այս գլխոյս մէջ. այսինքն թէ Շապհոյ Բ-ի օրերը կայր [illegible] անուամբ ծանօթ [illegible] մի, որ [illegible] կը կոչուէր, զոր և Նախարարք Հայոց նելկայացուցին արքային՝ իրենց տոհմականութիւնն և Տանուտէրութիւնքը պաշտպանելու համար: Այս բանս կը հաստատէ նաև Փաւստոս՝ Սիւնեաց իշխանին [illegible] և Պարսից թագաւորին [illegible] արարուածներովը, որուն վրէժը հանեց ապա Շապուհ 'ի Փառանձեմայ և 'ի կանանւոյն Սիւնեաց: Բ. Տրդատէն և Մեծին Ներսեսի ձեռքով հաստատուած այն յունարէն և ասորի լեզուաց դպրոցներն և դպրութիւնքն իսկ կը պահանջէին, որ Հայաստանի դարձին, Լուսաւորչին, առաջին քրիստոսապսակ թագաւորին և Հռիփսիմեանց պատմութիւնն և գործերն 'ի գրի առնուէին: Գ. Փաւստոսի Բուզանդացւոյ [illegible] և Ոսկեբերանի Լուսաւորչայ վերայ յօրինած յունարէն գրութիւնն իսկ, որոնց Ագաթանգեղայ հետ ունեցած նմանութեանցը մասին յետոյ ուրեմն պիտի խօսիմ, զայս յայտնապէս կը ցուցանեն: Դ. Բոլոր այն ասորայունական [illegible] [1] և [illegible] յատուկ անուանքն և բացատրութեանց ձևերն, որոնց մի մասն արդէն իսկ մատնանիշ ըրինք և մնացածը յետոյ պիտի ընենք, հաւանօրէն այսպիսի խմբագրութեան մի արդիւնք են և զայն կը թուին հաստատել: Սակայն այս փաստերով հանդերձ՝ ես տակաւին իբրև կարծիքական կը համարիմ այսպիսի խմբագրութիւն մի, զի պարզապէս այլևայլ աղբերաց կիրառութեամբ իսկ կարող էին գտնուիլ Ագաթանգեղոսի մէջ այսպիսի օտարաբանութեանց հետքեր:

Իսկ միւսն՝ որ թէ՛ բառին ճիշդ նշանակութեամբ, և թէ՛ իրապէս կարելի և պէտք է, ըստ իս, կոչել խմբագրութիւն, եղած է Ե դա-

1. Ագապէս՝ թուի լինել ընթերցումն اجفيس . Անգեղտուն, Աղբիանոս البينوس . Այրարատ אררט = 'Αλαρόδοι, Ռըստակէս رآز = ارز և τάκης. Աշխէն՝ אשכבז. Բարշիմնիա بر شمينا Լիկինէս (Λικινιανος Licinnius) ليقينيس = ليقنيس . այսպէս նաև Աւտա կամ Ոտա, Մաղխազ կամ Մախազ, Խաղխազ, և այլն, որք սեմական ծագումն կը ցուցնեն, ըստ վկայութեան Ղազարդի:

րում առաջին քառորդին, որուն վերայ տարակուսելն իսկ աւելորդ է, յետ այնքան ակն յայտնի նշանաց: Այդ խմբագրութեան իրագործման պատճառքն և պարագաներն՝ սերտիւ միացած են այն պատճառաց և պարագայից հետ, յորոց շարժեալ երանաշնորհ թարգմանիչք մեր, ինչպէս ուրիշ յունարէն և ասորի գրոց՝ այսպէս և առաւել Գրիգորի և Հռիփսիմեանց գործոց համառօտ բնագիրներն յեղին 'ի հայ բարբառ: Հաւանօրէն, կ'ըսեմ դարձեալ, այս խմբագրութեամբս ներմուծաւ Ագաթանգեղայ գրոց մէջ Գրիգորի կարծեցեալ ընդարձակ Վարդապետութիւնն, և վերջին գիրքն այլ ընդարձակ յաւելուածներով նոր կերպարանք առաւ: Տեսնենք զայս յաջորդ գլխոց մէջ:

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Ագաթանգեղայ գրոց բնագրի խնդիրն և կարևորութիւնն. — Ի նպաստ հայերէնի մէջ բերուած կարծեքական փաստերն և նոցա հերքումն. — Հինգերորդ դարէն առաջ հայերէն լեզուով գրութիւն ոչ եղած է երբեք և ոչ իսկ կարէր ըլլալ. — Նշանագիրք և նոցա նշանակութիւնն. — Ագաթանգեղայ գիրքը յունարէն գրուած է և նորա շօշափելի ապացոյցներն. — Փաւստոս Բուզանդացի և Յով. Ոսկեբերան և բանաւոր գրոցն Ագաթանգեղոսի, և նոցա հասարակ տեղեաց բաղդատութիւնքը. — Պրոկոպիոս է բանաւոր Փաւստոսի և եղբակցութիւն. — Ս. Գրոց տեղիքն առ Ագաթանգեղ և նոցա առանձնայատկութիւնքը. — Տարբերութիւնք նախկին բնագրի և հայերէն թարգմանութեան Ս. Գրոց՝ յերկրորդէն. — Եզրակացութիւն 'ի նպաստ յունարէն բնագրին Ագաթանգեղայ։

Ինչպէս այլուր ըսուեցաւ, ազգային և օտարազգի գիտնականաց շատերու կարծիքը՝ մինչև ցայսօր այս եղած էր, թէ Ագաթանգեղայ գրոց բնագիրն հայերէն է և պէտք էր որ եղած լինէր: Եւ առ այս մէջ բերուած փաստերն են Ա. որովհետև այժմեան յունարէն օրինակն ըստ բազմադիմի հանգամանաց, հայերէնէն թարգմանուած կ'երևի. մանաւանդ եթէ մտածուի, որ Լուսաւորիչ գոլով հայ՝ ուստի բնականապէս նորա գործերն ևս և վարդապետութիւնն ինչպէս Հայոց համար խօսուեցան, այսպէս ևս պէտք էր որ հայերէն գրուած լինէին: Բ. Ագաթանգեղոս թէպէտև ազգաւ և քաղաքաւ Հռովմայեցի, բայց ընդ երկար մնալով 'ի Հայս՝ զարմանք չէ որ նոցա լեզուն ուսած և այնու գրած լինէր զգործս մեծին Գրիգորի այլովքն հանդերձ: Գ. այս Գիրքս զուտ հայկական բարբառով գրուած է, և նորա մէջ բնաւ յունարէնի հետքեր կամ օտարաբանութիւններ չեն տեսնուիր: Դ. Ագաթանգեղայ գրոց մէջ՝ Դ դարուն վերջեր գրուած հեղինակաց և Ե-ին մէջ թարգմանուած գործերէն հատուածներ կան, որոնք յայտնի նշաններ են, թէ այդ գրուածքը Ե

դարում, այսինքն է, հայերէն նշանագրոց գիւտէն վերջ և բնականապէս հայերէնով գրուած է: Իբրև հինգերորդ փաստ մ'այլ ես ինքնս կը շնորհեմ այսպիսի կարծիք պաշտպանողաց, այսինքն թէ, առ տոհմային մատենագիրս չիք բնաւ որոշ յիշատակութիւն յունարէն բնագրի մը, այլ մանաւանդ Կորիւնէն սկսեալ՝ ամէնքն ալ հայերէնը միայն կը թուին ճանաչել, և անտի հատուածներ մէջ կը բերեն բառ առ բառ։ Դարձեալ, Ագաթանգեղոս լուր հայերէն գրութեամբ է փառք և պարծանք հայկական Դպրութեան, ուստի ով որ կը ջանայ ժխտել զայն՝ կը կապտէ հայերէն դպրութեան մեծագոյն պարծանքը:

Սակայն, ըստ իս, առաջին փաստով այս հետևութիւնս միայն յառաջ կու գայ, թէ այժմեան յունարէն օրինակին՝ հայերէնն եղած է բնագիր, և ոչ այլ ինչ: Երկրորդը լոկ ենթադրութիւն է՝ պարզապէս կարելիութեան վերայ հաստատուած. և Տերենտիոս Կարքեդոնացւոյն առ Հռովմայեցիս վարժելու և լատիներէն հրաշազան քերթուածներ յօրինելու օրինակն անգամ, որ մէջ կը բերուի առ այս՝ անբաւական է իրականութիւն ընել զայն. որովհետև գեղեցիկ դպրութեամբ արդէն 'ի վաղուց ծաղկեալ հռովմէական ազգին հզօր ազդեցութենէն՝ բանաւոր չէ փաստս եզրակացուցիչս յառաջ բերել առանց դպրութեան, և ներուի ինձ ասել, կէս բարբարոսիկ Հայոց ազդեցութեանն 'ի նպաստ, որուն զաւակունք անգամ այդ ժամանակին ստիպած էին յունական վառարաններու դիմել և նոցա դպրութիւնն ուսանել. ո՛ւր թողից ասել, թէ Հայաստանի կեդրոնում իսկ՝ յունարէն դպրութիւնը կը տիրէր: Երրորդ կարծիք յայտնող փաստին առաջին մասն՝ եթէ ստուգիւ իր իսկ համարինք, սակայն նորա երկրորդ մասն՝ ուղղակի կը հակառակի Ագաթանգեղայ գրոց վերայ ցայս վայր եղած քննութեանց յառաջ եկած արդեանցը, որոնց մի մասն՝ արդէն նախընթաց գլխում տեսանք. իսկ մնացածը՝ պիտի տեսնենք յետ սակաւուց: Երկրորդ՝ ոչ ինչ ընդ հատ քան զԱգաթանգեղոս ընտիր լեզու և հայկաբանութիւն կը փայլի նաև Աստուածաշունչ գրոց, Մատթէի մեկնութեան և Եզնկայ ընդդէմ իմաստասիրաց Յունաց գրքին մէջ. սակայն ո՞վ կարէ ըսել, թէ այդ գործոց մէջ բնաւ օտարաբանութիւններ չկան և թէ հայերէն լեզուով գրուած են անդուստ 'ի վերուստ: Չորրորդ կարծիք յայտնող փաստը՝ մէկ կողմէն Կորեան նմանաբան հատուածոց վերայ հաստատուած է, իսկ միւս կողմէն ալ Ս. Բարսղի պատարագէն իբր թէ փոխ առնուած մի կամ երկու համառօտ հատուածոց: Սակայն պէտք է ըսել, թէ այդ երկու հիմունքն ևս խախուտ են այն տեսակէտներով՝ զորս յառաջագոյն շօշափեցինք: Երկրորդ, ընդունելով իսկ իբրև եկամուտ այդ և ուրիշ հատուածներ, այտի բնաւ չի հետևիր, թէ ուրեմն ամբողջ Գրիգորի և Հռիփսիմեանց գործոց պատմութիւնքը Ե դարում հայերէն գրուած են. որովհետև բաւական չէ միայն եկամուտ անհարազատութեան հետքերը միայն տեսնել, այլ պէտք է աւելի ուշ դնել հնութիւն յայտնող առանձնայատկութեանց, և պատմական և լեզուական և այլ եղելութեանց, ո-

*րոնք շատ աւելի բազմաթիւ են և աչքի զարնող կերպով յաճախ ընդ առաջ կ'ելլեն մեզ: Իսկ հինգերորդ փաստին նկատմամբ՝ այսպէս կարելի է պատասխանել, և չէ ինչ վարկպարազի, թէ տոհմային մատենագիրներէն ոչ ոք կը յիշէ նոյնպէս, թէ Ագաթանգեղայ գիրքն հայերէն լեզուով գրուեցաւ. արդ եթէ ուրիշ ակն յայտնի ապացոյցներ առձեռն պատրաստ չունենայինք՝ ո՞վ կարող էր աստի հետևցնել, թէ ուրեմն յունարէն լեզուով գրուած է: Իսկ այն երևոյթն՝ որով Ագաթանգեղոսէն ամբողջ հատուածներ կը գտնուին առ Կորեան, Մովսիսի և Ղազարայ, ըստ հայերէն օրինակին՝ զայս միայն կը ցուցնէ, թէ գրոցս թարգմանութիւնը բոլոր վերոյիշեալ թարգմանչաց գործերէն յառաջ կատարուած էր. և թէ կամ յունարէն բնագրի անյայտանալու պատճառաւ, և կամ հայեցի երկասիրութեանց պատեհն իսկ այսպէս կը պահանջէր, որ հայերէն թարգմանութենէն տեղիս 'ի մէջ բերէին:*

*Այսպէս մէկ կողմէն ակներև տեսնելով բոլոր վերոյիշեալ փաստերու անբաւականութիւնն, իսկ միւս կողմէն ալ արդի քննադատութեան բանաւոր պահանջն, որ դրական և շօշափելի փաստեր կ'ուզէ մեզմէ, և ոչ միայն լոկ ենթադրութիւններ, կարելի՞ է այլ ևս յանդգնութիւն համարիլ այն ճշմարտասիրութեան ոգին կամ զգուշաւոր քննութիւնը, որ յանուն գիտութեան կը ստիպէ պատռել հնութեան այդ մութ վարագոյրները՝ նոր լոյս և նոր հորիզոն տեսնելու համար: Ոչ բնաւ. մանաւանդ թէ ապահով ճամբան է երկուց ծայրահեղութեանց մէջ տեղէն ընթանալ, որուն առաջին բևեռին կը հանեն Ա. Բ. և Գ. փաստերն, ենթադրելով հայերէն դպրութեան մի առանց դպրութեան ժամանակամիջոցին. իսկ երկրորդ բևեռին կը մղէ Դ. ընծայութիւնն՝ որ վարկպարազի քննութեամբ ենթադրել կու տայ, թէ հայերէն նշանագրոց գիւտին և դպրութեանն հետ սկզբնաւորած լինին 'ի Հայս և յունարէն գրութիւնք. և կամ գլխովին կ'ուրանայ սոցա գոյութիւնն: Ուստի հինը նորոգելու և նորը չափաւորելու համար, ըստ իս, պէտք է ասել, թէ Գրիգորի պատմութիւնն և Հռիփսիմեանց վկայաբանութիւնը, գէթ ըստ հարազատ մասին յունարէն գրուած լինին, թէպէտ և նոցա գրողներն աւելի հայազգւոյ տիպ ունին: Եւ յիրաւի, այսպիսի մի եղելութեան 'ի հաստատութիւն՝ բազմաթիւ ապացոյցք առձեռն պատրաստ կան, զորս կարելի է կրկին դասակարգութեան վերածել. այսինքն է. Ա. այն փաստերը, որ բացէ 'ի բաց կը հերքեն ո՛ր և է հայերէն գըրութեան մի գոյութիւնն 'ի չորրորդում դարու: Բ. այն փաստերը, որք ուղղակի կը հաստատեն մեզ յունարէն դպրութեան կիրառութիւնն 'ի Հայս այդ ժամանակամիջոցին, և կը ցուցնեն, թէ այժմու հայերէն օրինակն՝ յունարէն հին բնագրէն եղած թարգմանութիւն է: Յառաջնոց անտի սկսինք, որոնց եզրակացութիւնն ինքնին պիտի լինի զօրեղ սկիզբն յառաջբերութեան վերջնոց:*

*Արդ, ենթադրելով, որ Ագաթանգեղայ բնագիրն յունարէն եղած չլինէր, այս բանս երկու կերպով կարելի է մեկնել. այսինքն է, կամ այն է թէ հայերէն լեզուով՝ բայց յոյն նշանագրերով գրուած էր, և*

կամ հայերէն լեզուով և նշանագրով. ուրիշ միջին հնարք չկայ: Սակայն այս ենթադրութեանց երկաքանչիւրն խիստ հակառակ է պատմութեան, երկաքանչիւրն խիստ անիրագործելի: Նախադասու թեանս առաջին մասն՝ իբրև աներկբայելի ճշմարտութիւն ընդունելու ենք. և յիրաւի, եթէ կարելի լինէր հայերէն լեզուն յունական նշանագրերով դրոշմել և հասկանալի կերպով 'ի վար արկանել, անշուշտ Ագաթանգեղայ գրքէն աւելի հարկաւոր և կենսական էր Ս. Գրոց տառագրութիւնն 'ի սոյն բարբառ. սակայն տոհմային պատմութիւնն այսպիսի մի եղելութեան բոլորովին հակառակը կը վկայէ: Ղ. Փարպեցին գլ. Ժ. այսպէս կ'ըսէ վասն Հայաստանեայց. « Բայց տարակուսեալք կային յընթերցուածն Գրոց Սրբոց. քանզի ոչ գոյին գիրք եւ հայերէն լուսաւորեալք (լեզուով) սուրբ կտակարանք »: Իսկ Մովսէս Խորենացի Գ. գլ. Խէ խօսելով զքարոզութենէ Ս. Մեսրովպայ յառաջ քան զգիւտ գրոցն, կ'ըսէ. « Եւ 'ի վարդապետել երանելւոյն Մեսրովպայ՝ ոչ փոքր կրէր վտանգս. քանզի ինքն էր ընթերցող և թարգմանիչ. և եթէ այլ ոք ընթեռնոյր, ուր նա ոչ հանդիպէր՝ ընթեռնուլ 'ի ժողովրդոցն լինէր, յաղագս ոչ լինելոյ թարգմանչի. վասն որոյ եդ 'ի մտի հնարել գտանել նշանագիրս Հայոց լեզուիս »: Արդ Մովսիսի վկայութենէն կը տեսնուի յայտնապէս, թէ այդ ընթերցած մատեանը՝ ոչ միայն օտար տառերով, այլ և օտարախօսիկ բարբառով գրուած էր. ապա թէ ոչ՝ հարկ չկար որ Մեսրովբ միշտ առընթեր գտնուէր և թարգմանէր զայն 'ի լսելիս ժողովրդեան, այլ բաւական էր ընթեռնուլն միայն, և ժողովուրդն ինքնին պիտի իմանայր զիմաստս գրելոցն: Իսկ եթէ այնու խիստ չմնէր իմանալի, ուրեմն առաւ խիստ յայտ է, թէ հայերէն լեզուն՝ յունարէն տառերով գրելը բոլորովին վախճանազուրկ մի բան էր. որովհետև յունական տառերը՝ չէին բաւական ողջ ածել և արտասանել զխօսս հայերէն լեզուին: Այս բանիս կը ձայնակցին նաև Կորիւն և բոլոր այն մատենագիրները, որոնք խօսեցան և գրեցին Ս. Մեսրովբայ յաւէրժ յիշատակաց արժանի գործը. և զրոց գիւտէն յետոյ խիստ մեծապէս կը խնդան այնու, իբր զի ազատեցան ասորի և յոյն լեզուներէն և ոչ թէ նշանագիրներէն: Երկրորդ՝ թէ իրենց բնիկ լեզուով կը լսէին այնուհետև զամենայն, և ոչ թէ օտարին:

Բ. Ոչ ինչ ընդհատ աներկբայելի և պատմական է և այս, թէ անդստին 'ի Գրիգոր լուսաւորչէն, մանաւանդ թէ 'ի վաղ ժամանակաց հետէ ցՍ. Մեսրովբ՝ հայերէն լեզուով ոչ գիրք և ոչ ալ արձանագրութիւն եղած է երբէք, այլ յոյն և ասորի, և յիրս իրս զպարսկերէնն ևս 'ի վար արկանէին: Առ Ագաթանգեղ, յէջ 626, կ'ըսուի վասն Տրդատայ, թէ « Ժողովեաց զբազմութիւն մանկտւոյ, և զնոսա յերկուս բաժանեալ, զոմանս յասորի դպրութիւն կարգեալ և զոմանս 'ի հելլէն »: Փաւստոս, որ Գրիգորի պատմութենէն տարիներ վերջ գրեց իւր գործը, Դ Դպրութեան Դ գլխում նոյնը կը հաստատէ, խօսելով զՆերսեսէ. « Կարգէր և 'ի տեղիս տեղիս դպրոցս յունարէն և ասորերէն յամենայն գաւառս Հայոց »: Կորիւն, որուն կը ձայնակցի և Խորենացի Գ. գլ. Խէ, մեծին Ներսիսի արժանընտիր

աշակերտին Մեսրովբայ համար կ'ըսէ, թէ «Ի մանկութեան տիսն վարժեալ հելլենական դպրութեամբն»: Հուսկ ուրեմն Ղ. Փարպեցի գլ. Ժ կ'ըսէ. «Վասն զի [illegible] և [illegible] գրով վճարէին յայնժամ (այսինքն է յաւուրս Խոսրովու) զգործ թագաւորին Հայոց՝ արքունի դպիրքն, զվճռոցն և զհրովարտակացն»: Արդ այս և ասոնց նման ուրիշ վկայութիւնքն ուղղակի և բացէ 'ի բաց կը հաստատեն զոչ գոյութիւն հայկական գրականութեան և գրաւոր յիշատակարանաց. ուստի սորա մասին տարակուսելն իսկ՝ չէ բանաւոր:

Իսկ միակ գաղտնիքն, որ յետ այսքան ակն յայտնի վկայութեանց կը թուի տակաւին տարուբերել զմիտս, այսինքն են մէկ կողմանէ դանիէլեան հինաւուրց նշանագիրքն՝ հանդերձ պէս պէս արարուածովքն, զորս կ'աւանդեն մեզ յոյն իմաստասէրն Թէոփրաստէս և մերս Վարդան, և Գողթան երգոց գոյութիւնն. իսկ միւս կողմէն այլ վերոյիշեալ յունական և ասորի դպրութեամբ վարժող առաջին թարգմանչաց յանկարծակի այնպիսի քերականական կանոններով ճշդուած, կոկած և վսեմացուցած լեզուով հայերէն շարագրութիւնն անդէն և անդ 'ի սկիզբն գիւտի գրոց, որ զոգցես հին անկարելի էր առանց դպրութեան. մանաւանդ թէ ազգ ինչ հայերէն դպրութեան ենթադրել կու տայ:

Սակայն, ըստ իս, այս բանիս վերայ ոչ զարմանալ արժան է և ոչ իսկ անտի հետեւցնել հայերէն դպրութեան գոյութիւնն: Եւ յիրաւի, եթէ դանիէլեան կամ հայական կարծեցեալ նշանագրերը՝ Վաղարշու ժամանակի Հայերը գործածած և այլ գրուածներ թողուցած լինէին, պէտք էր որ այդ գրուածներէն ինչ ինչ պահուած լինէր, եթէ ոչ մինչև մեր օրեր, այլ գէթ 'ի սկիզբն Ե դարու. սակայն Կորեան հետ ամենքը կը վկայեն, թէ այդ ժամանակամիջոցին երբ Ս. Մեսրովբ գրոց գիւտին հետամուտ էր, դանիէլեան նշանագրոց կամ այդ նշանագրերով գրուածքի մի հետքն անգամ չէր գտնուէր 'ի Հայս: Արդ, այս երևոյթս բաւական չէ՞ ցուցանել, թէ այդ հայկական կարծուած գրերն Եդեսիոյ դպրոցին Գ կամ Դ դարու Ասորւոյ մի գիւտ էր՝ ասորական կամ ղպտիարէն այփաբէտին վերայ յերիւրեալ. և թէ գլխովին առանց գործադրութեան մնացած էր անդէն 'ի սկզբան, ինչպէս անգործադրելի եղաւ յետոյ յաւուրս Մեսրովբայ: Իսկ գալով երկրորդ մասին, այսինքն է Ս. Մեսրովբայ և Սահակայ գործածած այն կոկիկ կանոնաւոր և մշակուած լեզուին, աւելի արգասիք համարելու ենք զայն Հայոց մտաւորական մշակութեան և խօսուն բարբառին, քան թէ հայկական նշանագրոց կամ գրաւոր վարդապետութեանը: Ցիրաւի, մարդկային ազգի պատմութենէն արդէն քաջածանօթ է, և դարերու փորձն իսկ կը հաստատէ, թէ միտքեր՝ ինչպէս եղան ծնող՝ այսպէս և զարգացուցիչք լեզուաց ազգաց. որովհետև ինչպէս բան մտաց և մտաւորական գաղափարներն և դատումներն՝ յառաջ են քան զկենդանի բարբառն, այսպէս և կենդանի բարբառոյն ծագումն և բարգաւաճումը՝ կանուխ է քան զգիր կամ դպրութիւն. ուստի կը հետևի, թէ դպրութիւնը չէ որ անհրաժեշտ կերպով կը կոկէ և կը կա-

նոնաւորէ զլեզուն. այլ մտաց կաղապարին մէջ արդէն կոկած և ձևաւորուած և յօդաւոր բարբառով արտասանուած գաղափարներն պարզապէս դրոշմող. այնպէս որ առանց անոր իսկ՝ Մեսրովբ կամ նախամեսրովբեան ոմն կարող էր կենդանի ձայնիւ նոյն հայերէն լեզուն այնպէս ուսուցանել, ինչպէս կ'ուսուցանէր յետ գիւտի գրոց. բայց այս տարբերութեամբս միայն, որ կենդանի ձայնին և վարդապետութեանն՝ ուսանողաց վերայ ներգործիչ ազդեցութիւնն ևս զոյգ ընդ ձայնին վաղանցուկ է և սակաւ արդիւնաբեր. իսկ գրովն կամ դպրութեամբն՝ մնայուն և լի արգասեօք վասն տկարաց: Այս սկզբան համեմատ՝ կարելի է ասել, թէ Գողթան բլրոց և Արտաշէսի արքունեաց մուսայից երգերն, հոմերական դիւցազանց քերթուածքըն և Նիբէլունգէն տաղերն ևս այնպէս երգուեցան երբեմն, առանց դպրութեան և յառաջ քան զդպրութիւնն, ինչպէս որ յետոյ դպրութեան ձեռքով 'ի գիր արձանացան: Այսպէս կը յօրինուին և կ'երգեցուին այսօր նա և այն ժողովրդական երգերն և զրոյցները, ըստ չափու մտաւորական մշակութեան այլևայլ ժողովրդոց: Բաց աստի կարելի է մի ուրիշ պատճառ ևս նշանակել մեր թարգմանչաց՝ գրոց գիւտէն առաջ մշակուած և կանոնաւոր լեզու գործածելուն, և այս պատճառս է դրացի և քաղաքակրթեալ ազգաց լեզուաց մէջ ունեցած կատարեալ հմտութիւնն, որով կը կանոնաւորէին և իրենց բնիկ լեզուն և գաղափարաց արտաբերութիւնքը:

Արդ, հայկական նշանագրոց գոյութեան և Ագաթանգեղայ գրոց՝ յոյնու գրուած լինելուն պաշտպանողաց փաղանգն այս անձուկ և անել կրճիս մէջ պաշարուելէն յետոյ՝ հուսկ վերջին ապաստանարան մ'ևս կ'որոնէ, ասելով, թէ կարելի էր որ հայերէն լեզուով՝ բայց յունարէն տառերով գրուած լինէր: Սակայն դիտելու ենք, որ պարզապէս կարելիութենէ ձեռնարկուած այդ փաստն իսկ՝ գործադրութեան մէջ անկարելի էր. վասն զի այդու այնքան մեծամեծ դժուարութիւնք ընդդէմ կ'ելլեն, որքան որ նոքա չեն կարծեր: Սակայն որպէս զի այդ պատրանքն և վերջին ապաստանարանին անբաւականութիւնն ևս ակներև լինի, յոչ կամս ստիպուած եմ զայդ ևս ուսումնասիրել:

Առ այս թողունք պահ մի ենթադրութեանց անհուն ասպարէզն, և իջնենք պատմական և լեզուախօսական պարունակի մէջ. առնունք ամենուն ծանօթ և ամենուն ընդունելի և ճշմարիտ եղելութիւններ, կ'ուզեմ ըսել, հայերէն լեզուն և լեզուին ներկայացուցիչ նշանագրերն: Ով որ գիտէ հայերէն և յունարէն լեզուները, նոյնը պէտք է՝ որ գիտնայ նոցա ինքնուրոյնութիւնը կազմող առանձնայատկութիւնքն ևս, թէ՛ ըլլայ գաղափարաց և բանից կազմակերպութեան և թէ՛ հնչմանց կամ ձայնական արտաբերութեանց մասին: Լեզուաց ծագման, ինքնուրոյնութիւններ կազմելուն և նոցա գլխաւոր պատճառաց մասին՝ արդէն ընդարձակաբար յայտնած եմ իմ կարծիքս յամին 1889 «Բազմավիպի» թերթերուն մէջ: Իսկ այժմ այսչափս կ'ըսեմ, թէ հայկական բարբառն իբրև հնդեւրոպական և քոյրաթիւ լեզու, թէպէտև ըստ լեզուական կազմութեան և

ըստ քերականական կանոնաց՝ յունարէնէ բոլորովին օտար չէ, վասն զի 'ի սկզբան անդ ազգաց ծագման և լեզուական կազմութեան նախածնող խանձարրոց մէջ իբրև երկու քոյրեր ծնան և սընան. սակայն երբ ընդհանուր ժողովրդոց բաժանման բաղդաւճիռ և մեծ պատահարքն ուղղեց նոցա բաղդին և բնակութեան անիւն յայսկոյս և յայն, այն օրէն 'ի վեր սկսան որոշիլ յիրերաց Ելլադայի կղզեաց և երասխական հովտի բնակիչներն: Տարբերութիւնք կլիմայից, երկրաբանական կազմութիւնք հողոյ և ջրոյ, բարձրութիւնք լերանց և խորութիւնք դաշտաց, ճիշդ այն տարբեր ազդեցութիւններն ունեցան այդ քոյրաթիւ ազգաց ֆիզիքական և մտաւոր կազմութեան վերայ, զոր ինչ ունեցան և ունին տնկոց և կենդանեաց վերայ: Նոցա նորածին և անընդհատ իրարու յաջորդող սերնդեան հետ՝ լեզուքն ևս նորանոր ընծիւղներ արձակեցին. թօթափեցան յընթացս դարուց հինաւուրց տերևքն և անոնցմէ բողբոջեցին նորք: Հասաւ հուսկ ուրեմն այն կէտն, յորում այդ երկու ազգերն և նոցա լեզուներն այն վիճակին հասան, որուն կը հասնին մի և նոյն կլիմային տակէն և հողին վրայէն՝ երկու տարբեր կլիմայից և հողերու վերայ փոխադրուած տունկերն՝ ընդ պարագայս ամաց: Այսպէս ուրեմն լեզուին հետ 'ի միասին և լեզուէն աւելի փոփոխեցան հայ ազգաբնակութեան հնչմունքն և արտասանութիւնն. որք բնական և համեմատական հետևանք են գլխաւորապէս ֆիզիքական կազմութեան: Իսկ արուեստականն և բռնականն ալ յառաջ բերին նոցա մէջ, անդստին 'ի աղ ժամանակաց, սեմական ազգաց բոլորովին այլասեռ տարերքն, որոց ազդեցութեամբը բոլորովին պիտի հեռանար հայկական բարբառն և արտասանութիւնն 'ի յունարէնէ, եթէ բարեբաղդաբար զկնի Մակեդոնացի աշխարհակալին՝ յունական լեզուն ևս չտարածէր իւր աշխարհակալ ազդեցութիւնն Արևելքի մէջ, և չարմատանայր 'ի Հայս: Սակայն պէտք է ասել, թէպէտև յունարէն բարբառոյն հետ՝ դպրութիւնն ևս տարածեցաւ 'ի Հայս, թէպէտև եօթն դար անընդհատ այն դպրութեամբ վարեցան Հայք, բայց ոչ երբէք կարող եղաւ հայերէն լեզուն զուգիլ այն դպրութեան հետ և ոչ ալ այն դպրութիւնը կարէր ճշգրիտ նմանահանութեամբ կենդանագրել 'ի քարտիսի կամ 'ի վէմս հայերէն լեզուին բոլոր արտասանութիւններն. որովհետև հայերէն բարբառն և արտասանութիւնքն որքան որ կը տարբերէին ասորերէնէ գրեթէ նոյնքան ևս կը տարբերէին 'ի յունարէն արտասանութեանց: Եւ յիրաւի, այսպիսի տարբերութեանց շօշափելի և ակնյայտնի ապացոյցը կ'ընծայեն մեզ հայերէն ալփաբետի տառերն, յորոց ոմանք կը պակսին յունարէն ալփաբետի մէջ, որպիսի են Ժ, Ծ, Ձ, Հ, Ճ, Ջ, Չ, Ց, Ղ, Շ, և Ը. իսկ ձայնաւորներն ալ ասորերէնի մէջ, և զորս հայերէն լեզուին և արտասանութեան անհրաժեշտ պահանջը հնարել ստիպեց: Իսկ որովհետև այս մի անժխտելի ճշմարտութիւն է, թէ գրերը կամ տառք են և պէտք են լինել մի մի կատարեալ գործիներ՝ կենդանի բարբառոյն ձայներն ամենայն ճշդութեամբ կենդանագրելու 'ի քարտիսի և հնչեցնել յունկն լսողաց. և միւս կողմէն քաջ կը գիտ-

ցուի, թէ յառաջ քան զգիւտ հայերէն նշանագրոց՝ ոչ դանիէլեան կամ ասորերէն նշանագրերն պռանձինն և ոչ իսկ յունարէն տառերը կարացին ողջ ածել զամենայն բանս և ձայնս հայկական բարբառոյն, բոլոր նորա առանձնայատկութեամբը. ապա թէ ոչ՝ չպիտի հարկադրուէին Ս. Մեսրովբ և Հայաստանեայք՝ հետամուտ լինել նորոգ իմն գիւտի գրոց. և եթէ իրագործուած լինէր այս, հարկ էր որ յիշատակարանք ինչ կամ լոկ պատմական վկայութիւնք մեր ձեռքը հասած լինէին. սակայն չիք և ոչ ինչ. ուրեմն աստի ուղղապէս կարեմք հետևցնել, թէ աւելի հեշտ էր ո՛ր և է յունարէն դըպրութեան վարժ անձի մի համար յունարէն բարբառով ուղղակի գրել և գրեցին իսկ, ինչպէս պիտի տեսնենք զկնի, զգործս իւրեանց, քան թէ հայերէն բարբառը զուգել յունարէն կամ ասորերէն այլաձայն տառերու հետ:

Եւ յիրաւի, առ այս հարկաւոր կը համարիմ մէջ բերել պատմական եղելութիւն մի, որ իբրև ճշմարիտ ընդհանուր կերպով ընդունուած է յԱսորւոց, որուն կը համաձայնին և Ասսեմանի Bibl. Orient. I, p. 63, 521, 607. III, II. 378, և Վայզման Hor. Syr. p. 182. այսինքն է մօտ յամն 785 Թէոփիլոս Եդեսացի Մարոնիտն երբ ձեռք առաւ զՀոմերոս յեղուլ յԱսորի բարբառ, ստիպուեցաւ փոխ առնուլ յունարէն ալփաբետէն հետևեալ հնգաթիւ նօտրգիր տառերն A, E, H, O, Y. Այս տառերուս գոյութիւնն իսկ յայտնի է այն ժամանակի ասորերէն գրուածոց մէջ, բայց որովհետև Ասորիք յաջէն դէպ 'ի ձախ կը գրեն, ուստի այս տառերս ևս, տարբեր դիրք և երևոյթ ստացեր էն, ինչպէս կը վկայէ և Ասսեմանի, Biblioth. Orient. I, pag. 63. Արդ, եթէ Թէոփիլոս այս պարզապէս յունական անուններն յարմարագրելու համար՝ դիմեց վերոյիշեալ տառերուն, ուրեմն Ագաթանգեղայ գրոց հեղինակն ի՞նչպէս կարէր առանց հայերէն նշանագրոց օգնութեան յարմարագրել, ոչ միայն զանուանս ևեթ, այլ և զբովանդակ գիրսն կամ մանաւանդ հայկական լեզուն և արտասանութիւնքը. իսկ հայերէն նշանագիրքն չէին տակաւին 'ի միջի: Արդ, դնելով α = ա, β = բ, γ = գ, δ = դ, ε = ե, ζ = զ, η = է, ϑ = թ, ι = ի, κ = կ, λ = լ, μ = մ, ν = ն, ο = ո, π = պ, ρ = ռ, σ = ս, τ = տ, υ = ւ, φ = փ, χ = խ, տեսնենք, թէ կարիցեն արդեօք ողջ ածել, գէթ տողս ինչ, հայերէն դասական լեզուին. « Ηλσχ ελσασεαλχ σανκασελωσ ι ναυανγιστν. ασουσανελ χνδουθυν η, ουασν ζι ι μεζ ενδωστουσεαλ αλεασν ορ ενδδεμ δαρναν, μρρκαζιν οδουχ ι μαρτ πατραστιν ενσαχαλσισν ευ ογτασαραυιασν ζαμ εδεαλ βαζμας. μιαβαν σανσεαλ ϑιακοΧ ζεριυαλς ταχτακαγορσασν ζμιμιαν: χασαλερελου, κασκας ερκυλιυ σερτιυ ι καποιτ δαστιν ανχαιλ γνασιυχ οτιυχ ϑρουσεαλ ι ουερα σουουν μκανανς σουρσν αλεασν κουτακελος. Արդ, այս տողերս տառ առ տառ կարդալով հանդերձ իսկ չէր մարթ իմանալ, թէ Ագաթանգեղայ գրոց Յառաջաբանէն է, ո՛ւր մնաց ուրեմն իմանալ և 'ի միտ առնուլ զիմաստս ինչ, եթէ յունարէն ընթերցանութեան կանոնաց համաձայն կարդացուին, եթէ կարելի լինէր կարդալ: Իսկ

արդ եթէ մենք Աղաթանգեղայ հայերէն օրինակը ձեռքերնիս ունե֊նալով և բազմիցս կարդալէն վերջ, դարձեալ չենք կարող հասկա֊նալ, ուրեմն ինչպէս պիտի կարենային կարդալ և հասկանալ նորա ժամանակակից անձինքը, որք առաջին անգամ կը լսէին դեռ այս֊պիսի ծենքենայս: Երկրորդ, դիտելու է, որ այժմ շնորհիւ Մես֊րովբայ և յունարէնէ փոխ առեալ տառերու դասպտրութեամբն ո֊րոշ գիտնալով, թէ հայերէն որ հնչմունքներն կամ հնչական տա֊ռերն են համազօր և համաձայն յունարէն տառերուն, ըստ այնմ ևս կարենք փոքր 'ի շատէ հաստատուն օրինօք և միակերպութեամբ մարմնաւորել զայնս յունարէն տառերով. իսկ այն ժամանակամի֊ջոցին՝ երբ այս բանս ևս դեռ չկար, ամենայն ինչ ուրաքանչիւր գրողի կամայականութեան թողուած էր, իսկ գրողն որչափ որ կա֊րելի է պիտի ջանայր իւր կողմանէ նմանաձայն տառեր որոնել և անոնցմով գրել, եթէ կային, բայց ոչ միշտ միօրինակ. այլ մի և նոյն ձայները՝ երբեմն այս ինչ տառերով պիտի գրէր և երբեմն այն ինչ: Երրորդ, որ և է պարագայից մէջ հետևեալ անտեղութիւնքն անխուսափելի կերպով յառաջ պիտի գային, այսինքն է, նախ ծ ով և ճ ով, ձ ով և ջ ով, յ ով և ց ով հնչուած ձայները՝ միօրինակ պէտք էր որ ó ով գրուէին, որով այն բազմաթիւ բառերն, որ մէկ ձայնով մի միայն իրարմէ կը տարբերին, այն ժամանակ յունարէնի մէջ իրարու հետ պիտի շփոթէին. օրինակի աղագաւ, ծաւել՝ ծած֊կել բային հետ, հաց՝ հասին, դար՝ տարին, ճար՝ չարին, գէշ՝ քէշին, աստուած՝ հաստուածին, շար՝ սարին, խար՝ քարին, յիւն՝ սիւնին, յագ՝ սագին, բեր՝ բերին, և այլն: 2. յ, զ, ց նախադրութիւնները, կամ բոլորովին պիտի ոչընչանային, վասն զի յունարէնի մէջ այս տառերէս առաջին և վերջինը չկան. և կամ այն անուանց հետ պիտի շփոթէին. և ս, դ, ն դիմորոշ յօդերն՝ իրենց նախընթաց բա֊ռերու հետ խառնուելով անխմանալի պիտի լինէին: 3. Մեծ շփոթու֊թիւն պիտի լինէր նոյնպէս բայերու դէմքերուն և ժամանակաւոր լծորդութեանց, անուանց հոլովմանց և շարք մի նոյնայանգ եզակի և յոգնակի գոյական անուանց, որոնք հայերէնի մէջ այլևայլ հըն֊չումներով միայն կը զանազանին իրարմէ. իսկ յունարէնն այդ հընչ֊ման համազօր տառեր չունենալով բոլորն ալ գրեթէ մի օրինակ պիտի գրէր: Որչափ դեռ աւելի պիտի լինէին այդ օրինակ անտե֊ղութիւնք, եթէ մէկ կողմէն 'ի նկատի առնունք Հայոց գաւառա֊բարբառներուն և նոցա արտասանութեանց իրարմէ ունեցած տար֊բերութիւնքն, որով միոյն տառատպածը՝ միւսին անհասկանալի էր. իսկ միւս կողմէն ալ դիտենք որ, ըստ Աղաթանգեղայ աւանդու֊թեան, այդ գրութեան գէթ մի մասը օտարազգի նոտարաց ձեռ֊քով գրուած էր, որոնք նոյնպէս իրենց համար նորալուր Հայոց արտասանութիւնը պիտի նշանագրէին: Կնքելով յանտեղութեանց և յանհնարութենէ մէջ բերուած փաստերն՝ հակառակ Աղաթանգե֊ղայ գրոց հայերէն լեզուով՝ բայց յունարէն տառերով գրուած լինե֊լուն. անցնինք այսուհետև նորա յունարէն լեզուով գրուած լինելու դրական ապացուցութեանցն, որոնք դարձեալ կրկին դասուց կը

վերածուին, այսինքն է, ոմանք են արտաքին, իսկ այլք՝ ներքին։ Ցառաջնոց անտի սկսինք։

Ա. Թէ արտաքին և թէ տոհմային պատմագրութենէ ծանուցեալ և ընկալեալ ճշմարտութիւն է, թէ Աղեքսանդրի աշխարհակալութեամբ յունարէն դպրութիւնն այն ատոինան տարածուեցաւ և տիրապետեց Ասիոյ մէջ, որ ըստ Հերոնիմոսի, բաց 'ի Գաղատացւոց՝ իշխանք ազգաց և ժողովուրդք առ հասարակ՝ ոչ միայն յունարէն կը խօսէին, այլ նոյն իսկ Պարթևք, որք յատուկ նշանագրեր ևս ունէին, իրենց դահեկաաց վերայ յունարէն կը գրէին, և իրենք զիրենք φιλέλληνες յունասէր իսկ կ'անուանէին։ Իսկ արդ Հայք և Վիրք, որոնք ցայն վայր յատուկ այբուբենական տառեր ունեցած չէին, վասն զի մերթ Ասորեստանեայց և Պարսից սեպաձև գրութեամբը կը վարուէին, և մերթ ալ զանդիկ նշանագրովք, հառանորէն այդ ժամանակին սկսան ոչ միայն արքունական դիւանադպիրք՝ այլ նաև մատենագիրք անգամ յունական լեզուով և տառերով մատենագրել։ Ցիրաւի, այսպիսի մի եղելութեան շօշափելի ապացոյցներ են, նախ, Հայ և Պարթև թագաւորաց դահեկաններն [1], որք բարեբաղդաբար մինչև առ մեզ հասած են։ Բ. Պլուտարքոսի հետ՝ Հռովմայեցւոց պատմագիրք ևս կը վկայեն, Խորենացիէն թողլ և որ, սասէր կոչուած Արտաւազդայ համար, թէ այլևայլ երկասիրութիւններ յօրինած էր՝ յունարէն լեզուով։ Արդ նախանձոտ բաղդը թէպէտև զլացաւ զանոնք մեզ աւանդել, սակայն այսպիսի հաւատարիմ պատմագրաց վկայութիւնն իսկ բաւական զօրեղ փաստ է հաստատելու, թէ իրօք յունարէնն էր առ Արտաւազդաւ իբրև լեզու դպրութեան հայ գրագիտաց։ Գ. Հանոյ մեհենական պատմութեանն և Վաղարշապատու արքունական հրովարտակներն և վճռոց գիրքերն յունարէն գրուած էին։ Դ. Մեծն Խոսրով՝ Խազրաց և՛ Բասլաց դէմ տարած յաղթութեանն առթիւ կանգնած կոթողին վերայ «Հելլենացի գրով» կը հաստատէ իւր տէրութեան նշանակը։ Զայս 'ի գրոց Բարդածանայ կամ 'ի մեհենական պատմութենէն առնելով կ'աւանդէ Մովսէս, ասելով այսպէս. Բ. գլ. ԿԶ. «Ցայսմ պատմութենէ առեալ երկրորդեցաք քեզ 'ի թագաւորէն Արտաւազդայ մինչև յարձանն Խոսրովու»։ Այսպէս նաև 26–30 տարի վերջ եկող Մեծն Տրդատ՝ Գառնոյ ամրոցին և արքունական ապարանին

1. Βασιλευς βασιλεῶν Τιγρανου (*Տիգրանայ Մեծի*), Βασιλευς Βασιλεων Αρταυασδου, *այլուր* Αρταβαξου (*Արտաւազդայ*), Ζαθριαδου Βασιλεως Βασιλεων (*Զադրիադայ կամ Զարիադրեայ կուսակալին փոքուն Հայոց*), Βασιλευς μεγας νεος Τιγρανης (*Թագաւոր մեծ կրտսեր Տիգրանէս*), Ερατω Βασιλεως Τιγρανου αδελφη (*Երատոյ Տիգրանայ արքայի քոյր*), Σανατροικής (*Սանատրուկ*), Βασιλευς Ονωνης νικησας Αρταβανον (*Ոնոն թագաւոր*), Γοταρζης βασιλευς (*Գոտարզ թագաւոր*), Αρσακου του καλουμενου Αρταβανου (*Արտաւան*), Αρσακου Πακορου (*Բակուր*), Βασιλευς Βασιλεων Ολασου *կամ* Βολαγασου (*Վաղարշու*) *հետաքրքրական է առ վիսկոնտի հետևեալն* Ουσας πιτιαξης Ιβηρων Καρχηδων (*Աշուշայ բդեաշխ Վրաց կարքէդաց*)։

վերայ դարձեալ յունարէն[1] լեզուով կ'արձանագրէ իւր յիշատակն: Ե. Տարօնում Արշամի պատերազմին մէջ անկող Հայոց քաջաց և քրմաց գերեզմանական արձանագրութիւնն՝[2] Հելլենացի և ասորի լեզուով կը գրեն, և հայերէնի բնաւ յիշատակութիւն չիկայ: Արդ այս յիշատակարանս, եթէ Զենոբայ հարազատ համարիցի ոք և եթէ գիտ նորա թարգմանչին, յայտնապէս կը ներկայացնէ մեզ Հայոց ընդհանուր հաւանութիւնը, թէ Հայք մինչև ցՆ դար յունարէն և ասորերէն լեզուով կը կարդային և կը գրէին: Զ. Առ Զենոբայ 33 կ'աւանդուի, թէ Յովհ. Կարապետին և Աթանագինեայ դամբարանին վերայ և կանանց համար արգելիչ կանոնն իսկ՝ օտար լեզուով գրուած էր 'ի տախտակս պղնձիս, և թէ Պեհլեւեան ումն Ասորի թարգմանն ընթերցած էր զայն: Է. Տարօնի Առաքելոց վանքի ձեռագրի մի մէջ հնագիր արձանագրութիւնն, զոր տեսաւ և օրինակեց Հ. Ներսէս Սարգիսեան[5], յունարէն գրուած է 'ի Ս. Գրիգորէ Լուսաւորչէ: Այս հետաքրքրական և յոյժ կարևոր արձանագրիս յունարէն բնագիրն, ծանօթ էր ամենում մինչև ցՇԻԸ թուին Հայոց, զոր իշխանն Մամիկոնէից Զորտուանէլ փոխեց 'ի հայ բարբառ, ինչպէս կը վկայէ նորա ինքնագիր յիշատակարանն[4], որ դրուած է 'ի ստորև արձանագրութեան: Ը. Առ Սեբէոսի յանուն Ագաթանգեղի մէջ բերուած Արշակունի հինգ թագաւորաց արձանագիրն ևս յունարէն գրուած էր, որուն համար կանխաւ ըսուեցաւ, թէ կամ Ողիւպի երկասիրութենէն կը յառաջագայի և կամ Բարդածանի յունարէն թարգմանութենէն: Թ. Սրբոյն Սահակայ հեղինակութեամբ՝ Լուսաւորչայ մեզի հասած կանոններն ևս, զոր այլուր ևս առիթ ունեցայ յիշատակել, յունարէն լեզուով գրուած էին, և անտի յեղեալ 'ի հայ բարբառ հրամանաւ Ս. Սահակայ. որուն հարազատութիւնն անանց երկբայութեան է վերոյիշեալ սուրբ Կաթողիկոսին մատանեաւ և նզովիւք կնքեալ հնագոյն յիշատակարանէն իսկ: Ժ. Էջմիածնի եկեղեցւոյ հիւսիսային պատին արտաքին կողմը ագուցուած

1. Տես Մ. Խորենացի Գիրք Բ. գլ. ՂԱ:
2. Զենոբայ թարգմանիչն այսպէս կ'ածէ 'ի մէջ.

« ԱՌԱՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄ ՈՐ ԵՂԵՒ ՑՈՑԺ ՄԱՍՏԻԿ:
ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ԳԼԽԱՒՈՐՔ ԱՐՋԱՆ ՔՐՄԱՊԵՏՆ:
ՈՐ ԿԱՑ ԱՑՍՐ Ի ԹԱՂՄԱՆ.
ԵՒ ԸՆԴ ՆՄԱ ԱՐՍ ՀԱԶԱՐ ԵՐԵՍՈՒՆ ԵՒ ՈՒԹ.
ԵՒ ՋԱՑՍ ՊԱՏԵՐԱԶՄ ԱՐԱՐԱՔ ՎԱՍՆ ԳԻՍԱՆԵԱՑ ԿՌՈՑ
ԵՒ ՎԱՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ »:

3. Տեղագրութիւն 'ի փոքր և 'ի Մեծ Հայս. Վենետիկ, 1864. էջ 234:
4. « Ես Զորտուանէլ Մամիկոնեան, որդի Տաճատայ մեծի իշխանին Տարաւնոյ և ամենայն աշխարհիս Հայոց, տեսի զայս գիր սահմանաց գրեալ հելլէն և յոյն գրով (այսինքն լեզուաւ) 'ի Լուսաւորչէն մերմէ սրբոյն Գրիգորէ Պարթևէ, և թարգմանեցի 'ի հայ գիրս և հաստատեցի, զի մնացական հայրենիս լիցի սուրբ Առաքելոցն. և յինէն յաւելեալ 'ի հայրենիս նորա զիմ ծննդեանն գեղն զԲերդակն կայսրովն և իր ամենայն սահմանովն, այգեստանաւք և բուրաստանաւք »:

երկու վիմաքանդակքն ևս, զորս Հ. Ղ. Ալիշան՝ առաջին կամ երկրորդ շինութենէն մնացած և նախ քան զգիւտ հայերէն գրոց իրագործուած կը համարի[1], յունարէն լեզուով և տառիւք գրուած են: Յուսամ, թէ ժամանակն և հետազօտութիւնք՝ դեռ ուրիշ յիշատակարաններ ևս պիտի յայտնեն յապագայն. սակայն մինչև ցայս վայր յայտնուածներն յայտնի և անժխտելի կերպով կը հաստատեն, թէ Հայաստանի գրաւոր յիշատակարանքն և երկասիրութիւնք առ հասարակ, թէ շատ թէ սակաւ, յունարէն, և ասորերէն լեզուով և գրով գրուած էին և պէտք էին գրուիլ, յորոց մին էր և Ագաթանգեղայ գրոց բնագիրն: Եւ իրօք այս բանիս շօշափելի ապացոյցները կը գտնենք 'ի ձեռքս իսկ Ագաթանգեղ և Ագաթանգեղոսէն օժանդակուած գրուածոց մէջ: Սակայն քննենք նախ վերջինները:

Ագաթանգեղայ բանաքաղներուն մէջ պէտք է ասել, թէ առաջինն է Փ. Բիւզանդացին: Յիրաւի, այս հեղինակիս քով, ոչ միայն կը գտնուին ամբողջական հատուածներ, այլ նոյն իսկ կիրառութիւնք ձևոց և յատուկ անուանց, աւանդութիւնք կամ յիշատակութիւնք այլևայլ անցից և վիպաց և բացատրութիւնք, որք և մեծ նմանութիւն ունին ընդ բովանդակելոցն 'ի գիրս Ագաթանգեղայ, թէպէտ և ոչ միշտ բառ առ բառ կամ նովին շարաբանութեամբ. իսկ որովհետև Փաւստոսի երկասիրութիւնը, գէթ ըստ նախնական պարունակութեան և բնագրին, յունարէն գրուած էր, ուրեմն պէտք է եզրակացնել, թէ Ագաթանգեղայ գիրքն ևս պէտք է որ յունարէն լեզուաւ գրուած լինէր, որով կարաց նա կարդալ և անտի տեղիս ևս 'ի մէջ բերել, և իբրև շարունակութիւն առաջնոյն՝ այնպէս ըզբանս և զոճ գրութեանն յարմարել. թէպէտ և եկամուտ յաւելուածներու պատճառաւ՝ բոլորովին տարբեր երևոյթ առած կը տեսնուի այժմ:

Երկու ազգային բանասէրք՝ իրարմէ երկու տարբեր կարծիք ունեցան Բիւզանդացւոյ երկասիրութեան վերայ: «Քննասիրի» հեղինակին կարծիքով՝ երկու տարբեր գրիչներ կան 'ի Պատմութեան աստ Բուզանդացւոյ, մին՝ Յոյն է ազգաւ և աշխարհիկ ոմն (Փաւստոս). իսկ միւսն՝ Ասորի եկեղեցական ոք (անանուն): Իսկ Հայր Յովս. Գաթըրճեանի կարծիքով՝ Ե դարուն և յետ գիւտի գրոց ծաղկող Սահառունեաց տոհմէն հայի մը գործ է, «որ իւր սեփական գրուածքը՝ ծանօթ յոյն ժամանակագրի մ'անուամբ կը զարդարէ, իբրև թէ անոր ժամանակագրութիւնն է, որուն հետևած ըլլայ ... թէ յունարէն Պատմութիւն մը, կամ ինչպէս ինքը կ'ըսէ χρονογράφος մը առջևն ունի, յայտնի է քանի մը գլուխներէն, ուր ամբողջ ժամանակի կարգաւ անցքեր կը յիշուին Ամմ. Մարկեղղոսի համեմատ»:

Այս հեղինակներս որչափ որ իրարմէ տարբեր համոզմունքներ կը յայտնեն, սակայն և այնպէս ստիպուած են, իբրև անհրաժեշտ արդիւնք իրենց քննութեան, ընդունել զգոյութիւն յունարէն բնա֊

1. «Այրարատ», էջ 212:

գրի մի կամ հնագոյն աղբեր: Արդ թէպէտև իմ գործս չի ներեր, որ մատէն պարապիմ ես Փաւստոսի երկասիրութեան մանրամասն քննութեամբ, սակայն այսչափս կարեմ ասել, թէ այդ երկասիրութիւնն ոչ Յոյնի գործ է և ոչ ալ Ե. դարուն հայերէն լեզուով գրուած, ինչպէս ուզեցին հետևցնել ոմանք փարկպարազի քննութեամբք այս վերջին ժամանակներս. այլ նորա հեղինակն պէտք է, որ Դ. դարուն վերջերը ապրող հայ մի եղած լինի, և իւր գործը՝ ոչ թէ հայերէն, այլ յունարէն լեզուով շարադրած է, օգտուելով ասորի և յոյն յիշատակարաններէ. որուն մէջ ապա Ե. դարում կամ թարգմանութեան և կամ մի ուրիշ առթիւ անծանօթ գրչէ մը այլ և այլ եկամուտ հատուածներ ներմուծուած են: Ցիրաւի, չէր կարող նա յոյն լինել, որովհետև Սոկրատ, Սոզոմէն և Պրոկոպիոս[1] երբ Արշակայ գործերը կը պատմեն՝ իբրև Հայ հեղինակութիւն կը յիշեն այդ երկասիրութիւնը կամ լաւ ևս Արշակունի թագաւորաց այն յունարէն Պատմութիւնն, որուն վերայ ընդարձակուելով ապա ծնած է այժմեան Բուզանդը: Չէր կարող Ե. դարում և գլխովին հայերէն լեզուով շարադրուած լինել. ապա թէ ոչ՝ վերոյիշեալ հեղինակներն ոչ կարդալ պիտի կարենային զայն և ոչ այլ անոր հատուածս մէջ բերել. և սակայն, ինչպէս տեսանք 'ի ծանօթութեան, Պրոկոպիոս ըստ յունարէն բնագրին մէջ բերած է բոլոր Արշակայ պատմութիւնն, և ոչ թէ ըստ բերանացի աւանդութեան կամ ըստ հայերէն գրութեան; Երկրորդ, դիտելու ենք, որ Ղ. Փարպեցի, Մ. Խորենացի և Կորիւն իրենց երկասիրութիւններն յօրինած ժամանակ՝ Փաւստոսի երկասիրութիւնն ունէին իրենց աչաց առջև, և ու-

1. Procopii de bello persico, lib. I, c. 5. (Ed. Paris, p. 15 et seq. – Ed. Bonn. t. I, p. 26 et seq.). Այս երկասիրութեանս մէջ դիտելու ենք, որ յոյն հեղինակը՝ Փ. Բիւզանդացւոյ հետևելով գրեթէ քայլ առ քայլ և բառ առ բառ՝ կը պատմէ Հայոց թագաւորին Արշակայ բի՝ Շապհոյ բի դէմ տուած երեսնամեայ պատերազմներն ասելով. Πόλεμος ποτὲ Πέρσαις τε καὶ Ἀρμενιοῖς ἀκήρυκτος γέγονεν. εἰς δύο καὶ τριάκοντα ἔτη ἐπὶ Πακουρίου μὲν Περσῶν βασιλεύοντος, Ἀρμενίων δὲ Ἀρσάκου Ἀρσακίδου ἀνδρός. Յետոյ կը պատմէ զկոչիլն Արշակայ 'ի դուռն Պարսից թագաւորին, – նորա երդմամբ և պատուով յետս դառնալն 'ի Հայս, – վերստին թշնամանալն ընդ Շապհոյ, – ամբաստանուիլն առաջի արքայից արքային, – նենգութեամբ վերստին կոչուիլն յարքունիս Պարսից, – Մոգուց տուած խորհուրդն Շապհոյ, – Արշակայ հայ հողոյն վերայ ըրած սիգութիւնն և յԱնդմըշն բերդին մէջ բանդարկուիլն, – նորա քաջ զօրավարին Վասակայ՝ զոր Βασίκιος կը կոչէ, մորթեզերծ լինելն, – Դրաստամատի առ արքայն Պարսից մատուցած մեծ ծառայութիւններն ընդդէմ բարբարոսաց և նորա խնդրանօք Արշակայ արձակուելն 'ի շղթայից, այլովքն հանդերձ: Այնպէս որ այս պարագաներս դիտելով, պէտք է ասել, թէ կամ Փաւստոս՝ Պրոկոպիոսէն օգտուած է, և կամ Պրոկոպիոս 'ի Փաւստոսէ. իսկ որովհետև ոչ միայն Փաւստոս այլ նոյն իսկ նորա գրոց թարգմանիչը կամ Սահառունին, ըստ ասելոյ Գաթըրճեանին, յառաջ է դարիւ միով քան զՊրոկոպիոս. ուրեմն կը մնայ ըսել, թէ Պրոկոպիոս ուղղակի Փաւստոսէն օգտուած է, յասելն Ἅπαξ δὲ ἡ τῶν Ἀρμενιῶν ἱστορία φῆσὲ νόμου τοῦ ἀμφὶ νῷ λήδης φρουρίῳ παραλελῦσθαι τὴν δύναμιν Πέρσαις τρόπῳ τοιῷδε.

նէին ըստ հայերէն թարգմանութեան. այս բանս խիստ յայտնի կը տեսնուի այն բազմաթիւ տեղեացմէ, զորս մէջ բերած եմ, վերոյիշեալ հեղինակներն, իրենց երկասիրութեանց մէջ: Արդ. այս բանս իբրև մի շօշափելի և կատարեալ իրողութիւն առաջի աչաց ունելով, կարելի չէ այլ ևս ըսել, թէ Ե. դարուն գրուած է այդ երկասիրութիւնն. որովհետև Կորեան կամ Մեսրովբեան դպրոցէն յառաջ Հայք ոչ թարգմանիչս և ոչ այլ հայերէն երկասիրողներ կարող էին ունել կամ ունեցան. իսկ եթէ առ Կորեան ևս կը գտնուին Բուզանդացիէն փոխ առեալ տեղիք, այս երևոյթս ուրիշ կերպով ալ չի մեկնուիր, բայց եթէ ըսել, թէ կամ Բուզանդացւոյ երկասիրութեան հեղինակն յետոյ էր քան զԿորիւն, զՄովսէս և զՂազար և սոցանէ առաւ այն տեղիքն, և կամ ընդունել նորա յունարէն բնագրին գոյութիւնն և անդրանիկ թարգմանութիւնն. իսկ որովհետև առաջին ենթադրութիւնն՝ անհիմն է այնու զի Կորիւն՝ Ս. Մեսրովբայ Պատմութեան, յէջ 2 և վերջաբանի մէջ ըրած ծանուցման համեմատ, եւթեք չորս հատուածներ ևս մէջ բերած է 'ի Փաւստոսէ բառ առ բառ, ըստ հայերէն թարգմանութեան, իսկ Ղազար իբրև երիցագոյն հեղինակութեամբ՝ այնպէս կը խօսի Փաւստոսի և նորա երկասիրութեան վերայ. և այդ հեղինակութեան հնութիւնը միայն կարող էր պատճառ տալ Ղազարայ կամ լաւ ևս նորա ժամանակակցաց պէսպէս տարակոյսներ ունենալ նորա հեղինակութեան և սասծնելուն ստուգութեանը վերայ. ուրեմն կը մնայ իբրև անժխտելի ճշմարտութիւն՝ երկրորդ ենթադրութիւնն: Ուստի ինչպէս յետոյ հայերէնաբարբառն Կորիւն՝ այսպէս ևս բազում ամօք յառաջ քան զնա յունագիրն Բիւզանդացի կամ Սահառունի՝ եղաւ բանաքաղ գրոցն Ագաթանգեղայ, ըստ յունարէն բնագրին: Այսպիսի փոխառութիւնս և նման տեղիս արդէն իսկ տեսանք յընթացս գործոյս. իսկ այս առթիւ կ'ուզեմ դիմացէ դիմաց ևս կարգել այդ հասարակ տեղեաց ցանկերն, ասածիս ստուգութիւնն այլոց ևս ակներև ընելու աղագաւ:

| ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. | Փ. ԲՈՒԶԱՆԴԱՑԻ. |
|---|---|
| Էջ 642 սկսեալ. Որ Առաւել քան զհայրն. — հայրենեաց. — և էջ 639. — Պահովք ծգել — վախճանին: | Էջ 6 սկսեալ — Հօրն էր զօրծակից — հանգստեան իւրոյ: |
| Էջ 606. յերկրին Տարօնոյ — էջն 607. քանդեսցէ և զայն: | Էջ 7. յերկրին Տարօնւոյ — առ Գրիգորիւ. — այսպէս և յէջն 37: |
| Էջ 622. Եւ անդ մատուցանէր — ամենայն աշխարհի. այսպէս և յէջն 610: | Էջ 7. Սա կարգէր անդ — Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: |
| Էջ 625. Զի ժողովեալ — խմբեսցեն 'ի նմին աւանի: | Էջ 7. Ժողովել 'ի յիշատակ — խմբեալ ցնծասցեն. այսպէս է նաև յէջն 119 'ի ստորև: |

| ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. | Փ. ԲՈՒԶԱՆԴԱՑԻ. |
| --- | --- |
| *Էջ 653. Կոստանդիանոս անկանէր – ըստ արժանաւորութեան նորա:* | *Էջ 25. Կոստանդիանոս – մեծապարգև մեծարեաց զնա:* |
| *Էջ 602. Եւ հանէին զԳրիգոր – հանել 'ի սահմանս Յունաց:* | *Էջ 29. Զի նստուցեն զերանելին Յուսիկ – հասին 'ի քաղաքն Կեսարացւոց:* |
| *Էջ 601. Եւ եղեալ ժողով բազում եպիսկոպոսաց – զի ձեռնադրեսցեն զսուրբն Գրիգոր:* | *Էջ 72. Եւ ժողովէր առ ինքն – եպիսկոպոսապետ Հայոց մեծաց:* |
| *Էջ 613. Ընդ առաջ լինէր նմա թագաւորն – յաւանն դառնային:* | *Էջ 73. Եւ արքայն Արշակ ընդ առաջ երթայր նմա – յաշխարհն դարձան. այսպէս և յէջն 30 յԲ. պարբերութեան:* |
| *Էջ 652. Իսկ նա պատմեաց – 'ի կերպարանս անասնոյ:* | *Էջ 34. Ցանախեաց զերևոյթ նշանս – 'ի կերպարանս անասնոյ:* |
| *Էջ 620. Առեալ Գրիգոր զաշխարհաբանակն – մկրտէր զամենեսին. այսպէս և յէջ 610 'ի ստորև:* | *Էջ 38. Այս այն աղբիւր է – զմկրտութիւն զօրաց բազմաց:* |
| *Էջ 544. Եւ վկայքս այս – զյաղթող զօրութեան. այսպէս և յէջն 178 և 551:* | *Էջ 39. Եկին բազմութիւնք վկայից – որդւոյն Աստուծոյ:* |
| *Էջ 658. Զաւետարանական ընթացսն – ամենայն մարդոյ:* | *Էջ 13. Զաւետարանական ընթացսն – եռանդն ածէր:* |
| *Էջ 591. Եւ կուտեցան զօրքն – հովիւ կացուցանել:* | *Էջ 67. Ի մի ժողով կուտեցան – հովուել բանաւոր խաշանց:* |
| *Էջ 626. Հասանէր յառաջագոյն – 'ի հանգիստ սրբոցն. այսպէս և յէջն 612 բ. պար. և 594 բ. պրբ:* | *Էջ 74. Եւ ինքն երթեալ հասանէր – հաւատոցն հաստատութեան:* |
| *Էջ 624. Եւ բազմացուցանէր զպաշտօնեայս – ժողովրդոցն Տեառն:* | *Էջ 76. Բազմացան կարգք – բազմութիւնք կրօնաւորաց:* |
| *Էջ 626. Եւ զնոսա յերկուս բաժանեալ – և զոմանս հելլէն:* | *Էջ 77. Կարգէր և 'ի տեղիս տեղիս – յամենայն գաւառս Հայոց:* |
| *Էջ 629. Եւ բազում բանդականաց – պայման փոխեաց:* | *Էջ 77. Եւ բազում նեղելոց – դարման տանէր. այսպէս և յէջն 75 բ. պարբ:* |
| *Էջ 624. Սոյնպէս և թագաւորն Հայոց – Տեառն մատուցանէր:* | *Էջ 230. Եւ թագաւորն Պապ – երիցանց և սարկաւագաց:* |
| *Էջ 20. Ընդ կոյս հարկանելոյ:* | *Էջ 208. 'ի վերնագիրն – զբազում կոյս կոյս հարկանէր:* |

Այս երկասիրութեանցս մէջ, բաց 'ի այս ցանկուած տեղեացմէ, կամ դարձեալ ուրիշ մանր մունր հատուածք բանից նման բացատրութիւններ կամ դարձուածք բանից, զորս ես կը զգուշանամ բերել խճողել անտ 'ի ձանձրոյթ լսելեաց. բայց իւրաքանչիւր ոք ուսումնասիրելով զանոնք՝ չպիտի դանդաղի վերահաստատել զոր ասեմս. իսկ ուսումնասիրողք անշուշտ եմ, թէ քաջ գիտեն զայս: Դիտելու կարևոր կէտ մի է և այս, որուն վերայ կը հրաւիրեմ ընթերցողաց ուշադրութիւնը. զի Կորիւն ինքնին բոլոր այս պարագաներուս մէջ՝ գրով և գրչով երկաքանչիւրին ևս քաջ կը ձայնակցի. և այսպիսի ձայնակցութիւն մի կամ բանակցութիւնն՝ պէտք է որ ունենայ իւր խորհրդական քողին տակ ծածկուած՝ բայց բանաւոր պատճառն, զոր վերջէն պիտի պարզեմ:

Ագաթանգեղայ յունարէն բնագրի գոյութեան արտաքին և յայտնի փաստերէն մին ևս կ'ընծայէ մեզ Ս. Յով. Ոսկիբերան [1]: Արդ այս ճառիս մէջ՝ Գրիգորի պատմութենէն և Հռիփսիմեանց վկայաբանութենէն բազմաթիւ տեղիք մէջ բերուած են, այնպէս որ պատեհաւ

1. «Ներբողեան ասացեալ Յաղագս վարուց և Նահատակութեան Գրիգորի հայոց մեծաց հայրապետի, 'ի Կոկիսոն հայոց, մինչ յաքսորանս էր, 'ի խնդրոյ հայազին ուրումն եպիսկոպոսի համազգոյ նորին Դիոսկորոս անուն կոչեցելոյ»: Յամին 1878 'ի Ս. Ղազար հանդերձ լատին թարգմանութեամբ հրատարակուած այս ճառս պէտք չէ շփոթել այն միւս հայերէն Ներբողեան ճառին հետ, զոր Մոնֆոկոն, վիլֆրուայ հայագիտին ձեռքով, թարգմանեալ 'ի լատին բարբառ՝ արդէն'ի վաղուց հրատարակած է Ոսկեբերանի անհարազատ գործոց մէջ 'ի վերջկոյս ԺԲ հատորին: Սորայս հրազատութիւնն, ընդհակառակն կ'ապացուցուի ըստ բազում գլխոց: Ա. Աստ յայտնապէս կը տեսնուին սկզբնաւորութենէն սկսեալ սրբազան պերճախօսին և մեծ ճարտասանին յայլևայլ ներբողեանս գործածած յատուկ դարձուածք բանից, հռետորական ձևերն, կորով լեզուի և կայծակնաբորբոք եռանդն հոգւոյ և աշխոյժ մտաց. այնպէս որ, եթէ այլ ոք ևս գրած լինէր զայս, կարելի էր կոչել զնա նոր ումն Ոսկեբերան: Բ. Կը յիշէ իւր կենաց և աքսորանաց դառն պարագաներն: Գ. Ի յիշել անդ զհսկող հովիւն հոգւոց զԳրիգոր, անդէն կը փոխէ զբանս իւր ժամանակակից և փառամոլ հովուաց վերայ (որպիսի եկաց Թէոփիլոս Աղեքսանդրացի) որք անիրաւութեամբ յափշտակեցին զիրաւունս իւր: Դ. Յիշելով զԱռաքեալն հեթանոսաց զսիրելին իւր բնաւից զՊօղոս, անդէն և անդ կը դառնայ ներբողել զնա, որպէս և յամենայն 'ի գիրս իւր: Ե. Թուելով մի առ մի զամենայն պարագայս կենաց և գործոց Ս. Գրիգորի՝ լռած է բոլորովին խօսել նորա մահուան և նշխարաց գիւտի մասին. որովհետև այդ ժամանակ դեռ յայտնուած չէին Գրիգորի սուրբ նշխարքն որով և մահուան հանգամանքներն: Զ. Այս ճառիս վերջ Ն. Շնորհալւոյ պէս մեծ հեղինակութեամբ գրուած յիշատակարանն, որ կը վկայէ, թէ Ոսկեբերանի հնագոյն ձեռագրէ մի թարգմանուած է, յասելն. «Ի Թուականիս ՇՂ (1141) թարգմանեցաւ ճառս 'ի յունականէն 'ի մերս 'ի ձեռն Աբրահամու Ղրամատիկոսի, 'ի հին և յեղծ օրինակաց. իսկ յարմարեցաւ ըստ բանից դպրութեան և բառից՝ յիմոյ նուաստութենէ Ներսիսի, հրամանաւ Տեառն իմոյ և հարազատի, Գրիգորիսի հայոց կաթողիկոսի»:

Թէպէտև յոյն վարդապետն գրագէտ և մերս Շնորհալի՝ Ոսկեբերանէն 740 տարի վերջ գտան այս ճառիս յունարէն բնագիրն, բայց շատ հաւանական է, որ Ե դարուն գաղափարուած լինի, որով միայն կարէր հին և եղծուած լինել, ըստ վկայութեան յիշատակագրին:

բաղդին եթէ նորա բնագիրը գտնուէր, նա միայն բաւական էր Ագաթանգեղոսի յունարէն բնագրին ներկայացուցիչ հանդիսանալ: Սակայն ոչ ինչ ընդհատ եզրակացուցիչ է առ այս՝ նորա վրայէն եղած հաւատարիմ և ընտիր թարգմանութիւնն, յորում տեղեաց նմանութեան համար, քան թէ այլ ինչ պատճառաւ նորա թարգմանիչն՝ Ագաթանգեղայ գրոց բացատրութեամբ և բառերով 'ի բազում ուրեք հիւսած է զշարայարութիւնն իւր: Կը դնեմ աստ Ագաթանգեղայ գրոց և Ոսկեբերանի ճառին հասարակ տեղիքն, երեն եղելութիւնը ճիշդ ցուցանելոյ աղագաւ:

| ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. | ՈՍԿԵԲԵՐԱՆ. |
| --- | --- |
| Էջ 42 կ'ըսուի Գրիգորի 'ի Կեսարիա տարուելուն և դաստիարակուելուն համար. « Եւ մերձաւորեալ սնոյց զնա դայեակն երկիւղիւն Քրիստոսի. և ուսեալ ևս զքրիստոսական դպրութեան հանգամանս՝ ընտանի եղեալ գրոց Աստուծոյ և մերձեալ յերկիւղըն Տեառն »: | Էջ 6. « Ցորում տեղւոջ վարժեալ իսկ լինէր 'ի դաստիարակութիւն տնօրինական խորհրդոցն Քրիստոսի, վերահասու լինելով 'ի դոյզն ժամանակի »: |
| Էջ 179 և 176 կը պատմէ Գրիգոր զնեղութիւն իւր 'ի վիրապին. « Հասին ինձ նեղութիւնք վշտաց և անհնարին ցաւոց ... 'ի մէջ օձիցն էր բնակութիւն իմ »: | Էջ29. « Ո՞վ բաւական իցէ պատմել զանտանելի ճգնութիւն երանելւոյն և զանհանդուրժելի նեղութիւն, որ 'ի մէջ իժից և քարբից ունէր զբնակութիւն »: |
| Էջ 113–4 կ'ըսուի վասն Հռիփսիմեայ. « Եւ սանն (Գայիանեայ) 'ի թագակալ տոհմէ, պարկեշտազեղ և սքանչելատեսիլն »: | Էջ 18. « Կոյս ումն գեղեցկութեամբ հռչակեալ Հռիփսիմէ, քաջատոհմիկ ոստն, պարկեշտութեան օրնակն »: |
| Էջ 150 կը խօսուի զխրատուէ Գայիանեայ. « Ոչ շրջեաց զբանս իւր խօսել ընդ աղջկան այլ ինչ, այլ զոր սկիզբն արարեալ էր բանից իւրոց, և զնոյն յաճախեալ բազմացուցանէր »: | Էջ 18. « Զի՞ ոչ և վասն իմաստնախոհ դայեկին ասացից, Գայիանեայ, անփոխադրելի խրատուն, որ ոչ յաղթէր 'ի փաղաքշական պատրանաց բանիւք զօրանալ քաջալերէր »: |
| Էջ 158 կ'ըսուի վասն պարտութեան Տրդատայ 'ի տղայ կուսէն, « Որ այնչափ հզօր զօրաւոր բուռն ոսկերօք էր, և յաղջկանէ միոջէ յաղթահարեալ լինէր »: | Էջ 18. « Որ զանբաւ զօրութիւն սկայազին բռնաւորին 'ի պարտութիւն դարձուցանէր իբրև զտղայ »: |
| Էջ 164–5 « Պատուհաս 'ի Տեառնէ 'ի վերայ հասանէր. նա և ըստ նմանութեան Նաբոգոդոնոսորայ, ելեալ ըստ մարդկային | Էջ 20. « Ցետ այսորիկ պատուհասեալ լինէր բռնաւորն հանդերձ զօրօք. քանզի փոխեալ լինելով 'ի մարդկային բնութենէն |

ընութեան արտաքս 'ի նմանութիւն վայրենի խոզաց իբրև զնոսա ընդ նոսա 'ի մէջ նոցա երթեալ բնակէր ... Եւ ամենայն ընտանիք թագաւորին և ծառայք հարուածովք հարեալ լինէին »:

Էջ 165 և 166 կը խօսուի Խոսրովիդխտոյ տեսլեան վերայ. « Տեսիլ Աստուծոյ երևեալ 'ի վերայ քեռ թագաւորին ... իսկ նորա վաղվաղակի յղէին անդր նախարար զոմն հանել զնա 'ի բանտէ խոր վիրապին ... Իսկ նորա զարմացեալ ասէին. ո՞ գիտէ թէ կայցէ, զի բազում ամք են զի ընկեցին զնա անդր »:

Էջ 186 վասն Գրիգորի. « Զի և ես 'ի խոր վիրապի անդ զամենայն օր տեսեալ զհրեշտակ Աստուծոյ, որ հանապազ քաջալերէր զիս, որպէս և այժմ իսկ տեսանեմ, և այլն »:

Էջ 168–9 վասն Տրդատայ կ'ըսուի. « Յայնմ ժամանակի առ վտանգի տարակուսանաց ցաւոցն՝ ելեալ թագաւորն դիւին առեալ ածէր ընդ առաջ ... Եւ նախարարքն. և այլ բազում մարդիկ ընդ առաջ խաղացեալ մոլեգնելով և ուտելով զմարմինս, դիւահարէին և փրփրէին առաջի նորա... Եւ մատուցեալ թագաւորն և նախարարքն բուռն հարեալ զոտիցն Գրիգորի և ասէին. խնդրեմք 'ի քէն թող մեզ զյանցումն մեր »:

Էջ 171. վասն Թաղման Հռիփսիմեանց կ'ըսուի. « Պատուատուն հանդերձիւն պատէր զսուրբսն ... Եւ ամփոփեաց ա՛ռ գընաց 'ի հնձանն՝ ուր վանքն իսկ լեալ էր նոցա. և իւր իսկ վանս անդէն կալեալ օթևանս առնէր »:

Էջ 573. և 574 վասն բժըշ-

'ի կերպարանս խոզի, որպէս արքայն Ասորեստանեայց...: Իբրև զկինճ յանտառի բնակելով որպէս զնոսա 'ի մէջ նոցին »:

Էջ 22. « Զանազգին զմահապարտեալն խնդրէին հաւատով, ոչ մարդկային ինչ յուսով, այլ յայտնութեամբ տեսլեամ՛ որ երևեցաւ քեռ թագաւորին, և քանզի զհա՛րդ յուսային յետ այնչափ ժամանակաց կեալ նմա յայնպիսի անհանդուրժական վայրի »:

Էջ 22. « Նաև զմեծն Գրիգորիոս պահեաց անարատ 'ի Խոր վիրապի անդ ... որ յանդիմանն տեսլեամբ երևէր. այն՝ որ ընդ նմա գոլով հանապազ և ոչ երբէք մեկնէր 'ի նմանէ »:

Էջ 26. « Յայնժամ և բռնաւորն ելեալ 'ի միջոյ գազանացն ընդ առաջ ընթանայր նմա. որ երբեմն թագաւոր՝ այժմ խոզ անտառի, կատաղի մոլութեամբ, հանդերձ այսամտեալ բազմութեամբն փրփրելով և զանձինս ցտելով առ ոտս սրբոյն անկանէր աղերսէր զողորմութիւնն »:

Էջ 28. « Հաւաքէր խնդութեամբ և մեծաւ պատուով ամփոփէր զգանձսն պատուականս 'ի հնձանայարկս նոցունց. ուր և ինքեան վանս կալեալ թագաւորաւն »:

Էջ 26 և 28. « Յայնժամ խոզ

| Ագաթանգեղոս. | Ոսկեբերան. |
| --- | --- |
| կութեան. Թագաւորին կ'ըսուի․ « Ցայնժամ էր յամենայն կերպարանս խոզի, բայց 'ի մարդկապէսն խօսելոյ … իսկ երանելին Գրիգոր ծունր կրկնեալ ամենատեառն Աստուծոյ ամենայն ժողովելոցն և Թագաւորին բժշկութիւն հայցէր: Ապա դարձաւ առ Թագաւորն շնորհելով Քրիստոսի զոտսն և զձեռսն բժշկէր »: | անտառի զանգրագոյն կերպարանօք: Մինչև անկեալ նահատակըն Քրիստոսի 'ի վերայ երեսաց իւրոց երկիր պագանէր Տեառն Աստուծոյ, հեղլով աղբիւրս արտասուաց… Շնորհեաց ամենեցուն առժամայն զբուժումն 'ի դիւական ախտիցն, և զմարդկապէսն մտաւորութիւն և զխօսս Թագաւորին »: |
| Էջ 580. « Եւ Թագաւորն մինչ կայր 'ի տեսիլ խոզի ընդ ժողովեալսն, յանկարծակի և զխորխն 'ի բաց ընկենոյր, և դէմք երեսացն դարձան յիւր կերպարանն. և մարմինն փափկացեալ մատաղացեալ լինէր »: | Էջ 30. « Թօթափէր նոյնժամայն զզգեստ խաւարային, մերկանայր և զկերպարանս անասնեղէն, զգեցեալ զառաջին կերպարանացն զվայելչութիւն, նա և զարմանագոյն և հրաշալի »: |
| Էջ 633 և 636. « Եւ իրաց իլաց պիտոյից յոլովագոյնս և պարարտագոյնս ամենայն աստուածեղէն զանձուցն վայելչութեամբք լցեալ պարարտացուցանէր ամենութեամբք զամենեսեան »: | Էջ 30. « Այսորքիւք ամենեքումբք յաճախագոյն գիտութեամբ և առատ վարդապետութեամբ, ըստ ժամանակին՝ պիտոյիցն վկայութեամբք և օրինակօք յաստուածաշունչ գրոց հաստատէր զնոսա »: |

Այս տեղեացս նմանութիւնն առանց երկբայութեան գոլով, կը մնայ ասել, թէ կամ հայերէն օրինակէն ուղղակի առնուած են կամ Դիոսկորոսի կողմանէ տուած համառօտ տեղեկութիւններ են. և կամ ուղղակի Ագաթանգեղայ գրոց յունարէն բնագրէն: Առաջին ենթադրութիւնն՝ Ոսկեբերանի և Դիոսկորոսի կողմանէ անկարելի է. որովհետև հայերէն Ագաթանգեղոսի խմբագրութիւնն՝ 420–430ին հազիւ ուրեմն իրագործուած կարէր լինել. իսկ Ոսկեբերանի աքսորանքն 'ի Կոկիսոն և ճառախօսութիւնն՝ եղաւ 404ին, այսինքն է նշանագրոց գիւտէն յառաջ: Չի կրնար եղած լինել նոյն իսկ Աբրահամ Գրամատիկոսի կամ Շնորհալոյ ձեռքով. որովհետև այդ տեղիքդ այլով ամենայնիւ որչափ որ նոյն են, սակայն շարադրութեամբ իրարմէ կը տարբերին: Ուրեմն կը մնան վերջին երկու ենթադրութիւնները․ և սոցանէ որն ևս ընդունինք՝ այնու կը հաստատուի Ագաթանգեղայ յոյն բնագրի գոյութիւնն. որովհետև Դիոսկորոսի ժամանակն եթէ իրօք գրոցս բնագիրը ծանօթ չլինէր, նա թէ շատ՝ մի քանի կէտեր կամ նիւթեր պիտի կարենար միայն բերանացի հաղորդել. իսկ այս տեղերս՝ ընդհակառակն, գրեթէ տող առ տող Ագաթանգեղայ գրոց տեղեաց կը համապատասխանեն, թէպէտև

պլով իմն թարգմանութեամբ: Ցիրաւի, նոյն ինքն Ոսկեբերան կը թուի հաստատել զայս, զի յէջ 6 յետ մի առ մի բովանդակելոյ համառօտիւ զամենայն պարագայս կենաց և գործոց Լուսաւորչին, անդէն, յէջ 8, կը յարէ այսպէս. « Սոյնպէս տարաշխարհիկ անուն պաշտօնատեղոյն են քան շարեգականն, յորմէ ոչ ինչ արգելու զմեզ »: Իսկ եթէ յառուրս Ոսկեբերանի ծանօթ էին Գրիգորի պատմութեանն և Հռիփսիմեանց վկայաբանութեան յունարէն բնագրերն, այն ժամանակ դեռ աւելի կը հաստատուի նախնաբար ըրած մեր ենթադրութիւնը, թէ հաւանական է, որ Դ դարուն վերջին կիսում գլոցս նախկին խմբագրութիւն մի ևս եղած լինի:

Մի այլ ապացոյց Ագաթանգեղայ յունարէն բնագրին՝ կ'ընծայէ մեզ Պրոկոպիոս [1] յոյն պատմագիրն, երբ Հայոց Արշակունի.հարըստութեան ծագումն 'ի Պարթևաց անտի. կը դնէ, առնելով 'ի պատմագրութենէն [2] Հայոց:

Գանք այժմ ուղղակի այն ներքին փաստերուն, զորս կ'ընծայեն մեզ Գիրք Ագաթանգեղայ: Ա. Արդ, ինչպէս Ս. Գրոց՝ այսպէս նաև Ագաթանգեղայ հայերէն թարգմանութիւնն՝ իւր ընտիր հայկաբանութեամբ հանդերձ, պահած է 'ի բազում ուրեք նաև յունաբանութիւնս կամ ոճս ինչ յունականս, ոյց աղագաւ ոչ միայն մասնաւոր առանձնայատկութեամբ կը տարբերի յայլոց ինքնագիր երկասիրութեանց, այլ ուրեք ուրեք դժուարահասկանալի կամ գլխովին իսկ անիմանալի է: Ոմանք 'ի բանասիրաց՝ հայերէն լեզուի դեռ մանկական տիոց և անկատար կազմութեան ընծայեցին այս երևոյթս, բայց առանց հիման. որովհետև Ագաթանգեղայ գործածած լեզուն և լեզուին առանձին բառերն՝ ոչ միայն մանկական տիոց անիմաստ թոթովանքներ չեն, այլ նոյն իսկ իմաստախոհ և իմաստազեղ մտաց կաղապարէ, մանաւանդ թէ յունական մշակուած լեզուէն և բնագրի [3] զօրութեամբը կազմակերպուած և յղկուած բարդ բառեր են, որք նոյնպէս լծորդեալ կամ բարդ գաղափարներ կ'արտայայտեն մեզ, զորս այլուր դժուար է գտնել. օրինակ իմն, պայծառակերպ, հաստակուռ, շնորհաբաշխ, քաղցրաբեր, պղնձակուռ, նմանակից, գեղեցկախօսք, պատկառելի, երկնաբերական, յառաջախնդիր, հնազանդարար, պարզաբանական, երկնախաղաց, պարապակեցութեան, քրքրական, կայսերական, խորհրդական հրաշագործ, աստուածածին, անմահական, ա-

- 1. *De Ædificiis*, III, 1. Καὶ τότε τὶς τῶν ἐν Πάρθοις Βασιλεῶν τὸν αὑτοῦ 'Αρμενίοις βασιλέα κατεστήσατο 'Αρσάκην ὄνομα ὥσπερ ἡ τῶν 'Αρμενίων ἱστορία φησί.

2. Արդ Հայոց պատմագրութեան անուամբ թէ և կարելի է հասկանալ նաև Արշակունեաց մի ուրիշ և անյայտացած պատմութիւն, որուն վերայ խօսուեցաւ. բայց քանի որ այնպիսի մի գրութիւն դեռ յայտնուած չէ. և Պրոկոպիոսի աւանդածը կը գտնենք առ Ագաթանգեղ, հետևութիւնն յայտնի է:

3. Ցիրաւի, այսպիսի մի եղելութեան իբրև շօշափելի օրինակ ունինք ձեռքերնիս իմաստութեան Սողոմոնի վսեմ թարգմանութիւնն, որ բարդ բառից քաջավայելուչ կազմութեամբը նշանաւոր է, շնորհիւ յունարէն բնագրին;

մենաւորէն, ողջոյնադրատամ, աշխարհաքանակ մարգարէաբէր, առաւելու_թանօքն, ամերապանահամատէ, և այլն, և այլն: Ուստի յետ բազմիցս կարդալոյ և ուսումնասիրելոյ զԱգաթանգեղոս՝ կ'ախորժիմ մասամբ՝ նախընծայ թարգմանութեան արգասիք համարել այս երևոյթս, և մասամբ ալ մի և նոյն հայկական բառից՝ տարբեր առմանց, որոնք յետագայից քով գլխովին ուրիշ նշանակութեամբ 'ի կիր արկեալ են. օրինակ իմն յէջ 94 « պնդել զոտս նորա 'ի հրապոյր տկաց » և յէջ 72 « կրել համբերութեան » բոլորովին այլ ինչ կը հասկանար Ագաթանգեղայ գրոց թարգմանիչն, քան ինչ որ այսօր կը նշանա_կեն առ մեզ այդ բառքն: Այլ եթէ հարցուի, թէ արդեօք այսպիսի տարբեր առմունքներ՝ նախնեաց հայերէնին սեփական ինչ համա_րելու է, թէ յունարէն բնագրէն պատճառեալ, ես վերջինն աւելի հաւանական կը համարիմ:

Եւ յիրաւի, Ագաթանգեղայ գիրքն ընթերցած ժամանակ՝ անդէն և անդ յերևան կու գան հանգոյն խայտախարիւ հօտիցն Յակովբայ բազմաթիւ յունական դարձուածք բանից. յորոց մի քանին միայն բաւական կը համարեմ աստ 'ի մէջ բերել: Յէջ 43 « իշխանն Յու_նաց 'ի հալածել կայր զեկեղեցին Աստուծոյ »: Յէջ 44 « Մերքս (մեր կեանքս) քեզ նուաճին »: Էջ 59 « Որ երբէք և պատուելոյն չնաա_ռանէ ոչ զգան » (դիք): Յէջ 108 « Եւ աշխարհի մեծ տիրս վնա_սուց 'ի նոցանէն ընդդատապարտանէցն »: Յէջ 111 « Չի հաւար և բեւր դեռ եփն փոյց օք » (որպէս զհարդ և զտցի): Յէջ 118 « Զամենե_սեան յիւրայել անսան աստուածածարուն փրեալ »: Յէջ 89 « Ի բա մը_տանել 'ի տանչանս կոփահարութեանդ »: Անդ. « Զի երկարեսցի խօս ղործել 'ի ներսանելն »: Յէջ « Ոյժ դիւացն որ 'ի նմայն հարեալ էին »: Յէջ « Արդ և ոսկրոտին խսկ ո՞ւր իցէ »: Յէջ 90 « Զի չար_դեալ էր զամենայն մարմինսն՝ յադարածեսն տանել »: Յէջ 615 « Ոչ իմանայք դուք զմարդկանն 'ի մարդկանէ, փխրութեանն տեղ ձեզ 'ի մարդկանէ »: Յէջ 605 « Յեցեալ յերեկօթս աւուրս ոչ սակաւս »: Յէջն 172 « Գանալից առնէ զորդի՝ զոր 'ի յակն առնու » (այսինքն է, սիրէ): Յէջ 173 « Օտար են 'ի խնամոց և 'ի սիրոյ մարդասի_րութենէ անտի նորա »: « Երևեցուցանէ տալ զբարիսն »: Յէջ 131 « Զի զերանելին հոգիսիմէ տանել յարքունիս »: Անդ. « Անարգեցեր զանցաւորս բայց քնութեանս ծիրանիսն »: Յէջ 133 « Յաղթեն 'ի թագ_ւորս աշխարհիս »: Յէջ 174 « Կորստական ճանապարհաց ողորմ հասարակեցին »: Յէջն 615 « Ա— եր (ինքն) թևարկէ »: Անդ. « Յեր հանգիստն արժանիս արասցէ »: Յէջն 617 « Զօրհնութեան սրբոցն եղե_բել ուրախութեամբ »: Անդ. « Համբերելով պատրաստութեան չնոր_հեան ձեռնադրութիւն »: Անդ. « Արժանի լինել շնորհի ողջոյնին ար_քայութեան »: Յէջ 116 « Մերկեալ չենք զգեցեալ չխառան հեթա_նոսութեան »: Յէջն 651 « Աշխարհամուտ դրան »: Յէջն 146 « Խորամ յանձնեաց մատուցանել »: Յէջ 105 « Հրաման առեալ յոր_հանաց »: Յէջն 104 « Մէգ իսկ էր առ հանդերձ »: Յէջն 68 « Որ առ նախանձ բանսարկուին »: Յէջ 86 « Մտանել 'ի հաճութեան հնա_զանդութեան գալստեան »: Յէջն 97 « Ծակոտեալ լինէին մարմինք

(σωματα ամբողջութիւն) նորա »: Յէջն 98 « Զեհան զքեզ ապրել 'ի ձեռաց իմոց »: Յէջ 100 « Այրեցին զմարմինս նորա առ հասարակ »: Յէջն 101 « Այն է պահպանութիւն նորա և ուրախութիւն »: Յէջն 102 « Զայն և հասանէր թագաւորն 'ի վերայ իրաց »: Յէջն 612 « Լուսաւորել զամենեսեան մկրտութեամբն առնելով »: Յէջն 614 « Որ 'ի մէջ յերկրում աշխարհիդ փառաւորեցան »: Յէջն 616, « Զի որ կափուցեալ ողջ ձեր համբերէիք խաւարի »: Յէջն 644, « Պաշտել զնոյն ամենակեցոյց խաչեցելոյն ». « Հաճել զոր հրամանաց պայմանն »: « Զկուռս ոչ կալայ երբէք և Աստուածն ճշմարիտ »: Յէջ 643, « Ցանկալի եղեալ օրինապահին նշխարք »: Յէջ 78, « Զի մի կորիցուք յանդգնութեանց հեթանոսութեան »: Յէջ 86, « Մտանել 'ի հաւատոյն հնազանդութեան զալստեան նորա »: Յէջ 127, « Ղօղեալ էին յարքայական կայանին 'ի նմին Նաւասարդ 'ի Վաղարշապատ քաղաքի »: Յէջ 89, « Զի երկրպագել նմա պարծել 'ի նեղութիւնս տանջանաց »: Յէջ 606, « Անուանեալն վիշապաքաղն Վահագնի » (Հերակլի): Յէջ 127, « Եւ յետ սակաւ ինչ աւուրցն այնոցիկ »: Յէջ 588, « Զի անդրանկանելոց զսուտ աստուածոցն զբագինսն կործանեսցէ »: Յէջ 130, « Մարդ և մարդ զարմանալի յանձինս »: Յէջ 87, « Վայելեցէք 'ի համբերութենէ քումմէ »: Յէջ 114, « Ղեոնդէս արքեպիսկոպոս Մեծաւն Կեսարու »: Յէջ 50, « Եւ և այն օր պահել հրամայեաց »:

*Բ.* Ապացոյցը կուտան մեզ այն բազմաթիւ բառերն, որոնք զուտ յունարէն են ծագմամբ, և առաջին անգամ Ագաթանգեղոսի մէջ գործածուած են՝ և Ագաթանգեղոսով՝ հայերէն դպրութեանը մէջ մուտք գտած, հայերէն տառից լոկ յարմարագրութեամբ միայն հայանալով. օրինակի աղագաւ, յէջ 42 կոմս = ϳ. κόμης, յէջ 128 կաթեդրայց = καθέδρα(ων), յէջ 129 Լեգէոն = λεγεών, յէջ 133 բարբարոս = βάρβαρος, յէջ 157 ողիմպիադա = ὀλυμπιάδα, յէջ 563 կաթողիկէ = καθολική, յէջ 581 պոդագրոս = ποδαγρός, յէջ 603 կաթողիկոս = καθολικός, յէջ 604 եպիսկոպոս = ἐπίσκοπος, յէջ 614 մեգաղէ = μεγάλη, և մետրապօլիտ = μητροπολίτης, իերեց = ἱερεύς, յէջ 636 ամիթ (այսինքն է, հաստատուն սնունդ) = ἄμιθα, յէջ 637 անագնոստ = ἀναγνώστης, յէջ 645 արքեպիսկոպոս = ἀρχιεπίσκοπος, յէջ 655 աւգոստոսական = αὔγουστος, բալասան = βάλσαμον, յասմիկ ἴασμη, մենաստան = μοναστήριον, Յէջ 647 մարտիրոս = μάρτυρος, Յէջ 651 պալատ = παλάτιον, փիլիսոփայական = φιλοσοφικὸς, քարտէս = χάρτης, և այլն:

*Գ.* Ապացոյց Ագաթանգեղայ գրոց՝ յունարէն բնագրէ թարգմանուած լինելուն ասորա–պարսիկ և հայ անուանքն՝ որք իրենց նախկին ձևին վերայ՝ յունական վերջաւորութիւններ ևս առած են. և յունա–հռովմէական անուններըն՝ որոնք ըստ բնիկ ձևոյն և ուղղագրութեան յարմարագրուած են: Օրինակի աղագաւ. հայեցի անունս Մաժաք՝ հազիւ թէ մէկ անգամ գործածուած է, և այն խակ իբրև մեկնութիւն դրուած է փակագծերու մէջ՝ գրոցս հեղինակին կամ նորա թարգմանչի ձեռքով. իսկ այլուր միշտ Կեսարիա գրուած է, ըստ յունական յորջորջման: Այսպէս նաև փոխանակ Գամիրք

բնիկ անուամ՝ երիցս Կաղադովկէ գրուած է: Արսակէ՝ որ, ըստ կարծեաց Լազարդի, հաւանօրէն եգիպտական է՝ (Ἀρσύχ-ης) հայե֊րէնի մէջ յունական ձև առած է, շնորհիւ բնագրին: Ափրոդիտէ = ʿΑφροδίτης, յունարէնի վերջաւորութիւնը պահելով՝ յայտնի կը ցու֊ցանէ, թէ հայերէնը աւելի յարմարագութիւն է քան բնագիր: Վըր֊թանէ՝ հայերէն Վրթան կամ Վարդանն է՝ որուն վերայ յունական ης = էս յաւելցուած է: Տրդատէ և Տրդատիոս՝ է յունացումն հայե֊ցի հինաւուրց անուան Տրէդատ կամ Տիրէդատ կամ Տիրդատ, որ իր֊րև պարզև իմն՝ կը յառաջագայի յանուանէ Տրէ կամ Տիր դից: Այսպէս նաև Գրիգորիոս՝ է յունական վերջաւորութիւն հայեցի ա֊նուանս Գրիգոր: Անունս Պարթեւ՝ է յունացումն հինաւուրցն Պար֊թաւայ = Parthava: Այսպէս նաև Տիրիկ՝ եղած է Տիրիկէ, Ան֊տիոքոս՝ Անտիոքէ, Լիկինիոս՝ Լիկինիանէ կամ Լիկիանէ, Արտիթ՝ Արտիթէ, Ագապիոս կամ Ագապ՝ Ագապէ, Նւթադ՝ Նւադէ, և այլն: Յէջ 597 Կորդուաց յոգնակի սեռական անունն իսկ՝ զյոյն բնագիրն մատնանիշ կ'ընէ մեզ, որովհետև ըստ բնիկ լեզուին պիտի լինէր Կորդուք (սեռ. Կորդուաց). անունս Գուգարացւոց՝ նոյնպէս յունարէնի երևոյթ ունի, այսպէս նաև Բագաւան, որ ըստ բնիկ հնչման՝ է Բագաւան, որովհետև կազմուած է Բագին և աւան բա֊ռերէն, բայց հակառակ կանոնաց շաղկապման հայերէն անուանց, և կը ցուցնէ մեզ կամ յունարէն αου կամ լաւ ևս ου կրկնաձայնը, որ = վ կամ ւ: Եւ յիրաւի, այս բանիս ապացոյց է մի և նոյն ար֊մատէն կազմուած մի ուրիշ անուն, որ այլուր Բագ–արան գրուած է և ոչ թէ Բագ–ուրան կամ Բագուարան: Արուեստան կամ ա֊րուեստական՝ է խանգարումն պարթևարէն Arvaçtan անուան (Մուսուլ), որուն սը՝ յունարէն բնագրի մէջ ου 'ի փոխուած է, զոր գրոցս հայ թարգմանիչն յետոյ ու յարմարագրած է ճիշդ: Արդ առ Փաւստոսի ևս այս անուանց շատերն՝ սոյն յունական ձևերով գոր֊ծածուած են, ուստի ենթադրելով, որ նորա եկսսիրութիւնն 'ի սկզբան առդ յունարէն լեզուով գրուած էր, այս դիտողութիւնքս ա֊ւելի ևս կը հաստատուին նորա հեղինակութեամբ:

Դ. Ապացոյցը կ'ընծայեն մեզ մերթ յունարէն և մերթ ալ հայերէն խմբագրէն ներմուծուած այն մեկնողական բացատրութիւնները, զորս ոմանք, չգիտեմ ինչ իրաւամբ, ուզեցին աւելի հայերէն բնա֊գրի մի իբրև ակն յայտնի փաստեր համարել: Օրինակի աղագաւ, յէջ 122 յետ ասելոյ, թէ « Գային հասանէին ... 'ի Վաղարշապատ », անդէն կը յարի. « զոր և Նորաքաղաքն կոչեն »: Արդ դիտելու ենք, որ Նոր քաղաքն՝ է մեկնութիւն Վաղարշապատ, որ կը գտնուէր 'ի յոյն բնագրի անյայտացելոյ. իսկ այսպիսի մեկնութիւն մի յետ խըմ֊բագրին գրոցն հայերէն Ագաթանգեղայ՝ կը գտնենք և առ Մովս. Բ. գլ. ԿԵ· ուստի չեմ կարծեր որ Ե դարէն առաջ այդ մակդիրը գոր֊ծածական լինէր առ Հայս: Յէջ 593 « Գայր հասանէր ... 'ի գիւղն զոր Բագայառինն կոչեն, բառ պարթևարէն լեզուին »: Յէջ 598 « Ա֊ռաքեաց զնոսա 'ի կողմանս Կապադովկացւոց 'ի քաղաքն Կեսա֊րացւոց, զոր բառ հայերէն լեզուին Մաժաք կոչեն »: Յէջ 607, « Եր֊

րորդ մեհեանն անուանեալ Աստղկան դից, Սենեակ Վահագնի (Հերակլեայ) կարգացեալ ըստ յունականին, **որ է ընդ Ափրոդիտեայ** »: Ցէջ 612, « Հասանէր 'ի քաղաքագիւղն Բագուան, **որ անուանեալ կոչի 'ի պարթևական լեզուէն՝ Դիցաւան** »: Արդ այս և ասոնց նման օրինակներ, որ Ս. Գրոց և ուրիշ թարգմանութեանց մէջ ևս կը գըտնուին, ինչպէս և առ Փաւստոսի, կը ցուցնեն, թէ հայերէն Ագաթանգեղոսը՝ յունարէն թարգմանուած է, և թէ այդ առթիւ մտած են աստ յիշեալ յաւելուածները. ինչպէս յունարէն օրինակին մէջ եղածները ալ՝ զհայերէնը բնագիր կ'ենթադրեն:

Ե. Ապացոյց մ'ալ Ագաթանգեղայ յունարէն բնագրութեան՝ համարելու ենք 'ի Ս. Գրոց մէջ բերուած բազմաթիւ տեղիքն, որոց ոմանք գրեթէ ամբողջապէս կը տարբերին սրբոցն Սահակայ և Մեսրովբայ թարգմանութենէն, ոմանք՝ են համաձայն այնմ, իսկ այլք՝ կիսով չափ միայն կը համաձայնին: Դնենք օրինակս ինչ երկուստեք:

| ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. | Ս. ԳԻՐՔ. |
| --- | --- |
| Ցէջ 57. Եւ պահէ զոսկերս ամենայն մարդկան: | Սաղմ. ԼԳ. 21. Եւ պահէ զամենայն ոսկերս նոցա: |
| Ցէջ 59. Որ 'ի ժամանակի իւրում 'ի սանձս և 'ի դանդանաւանդս ճմլեսցէ զկզակս ձեր, որ առ նա դուք ոչ մարթայցէք մերձենալ: | Սաղմ. ԼԱ. 9. Ի սանձս և 'ի դանդանաւանդս ճմլեսցես զկզակս նոցա, որ առ քեզ ինչ ոչ մերձենան: |
| Ցէջ 59. Քան զեզն և զէշ պակասագոյն գտայք, զի ոչ ծանեայք զձեր հաստիչն: | Եսայ. Ա. 2. Ծանեաւ եզն զստացիչ իւր և էշ զմսուր Տեառն իւրոյ. և Իսրայէլ զիս ոչ ծանեաւ: |
| Ցէջ 64. Իջցեն որպէս զվէմս 'ի ջուրս բազումս: | Ել. ԺԵ. 5. Ընկլան յանդունդս իբրև զվէմ: |
| Ցէջ 64. Հուր վառեցաւ 'ի վերայ ամենայն փայտի ազարակի, և այրեսցէ զմեղաւորս և մի շիջցի: | Եզ. Ի. 48. Հարից զքէն հուր, և կերիցէ 'ի քեզ զամենայն փայտ դալար և զամենայն փայտ չոր, և ոչ շիջցի բոցն բորբոքեալ, և այրեսցի ամենայն դէմք յարևելից մինչև հիւսիսի: |
| Ցէջ 66. Մի ուտիցէք յայդմ ծառոյ: | Ծննդ. Բ. 17. Բայց 'ի ծառոյն գիտութեան բարւոյ և չարի մի ուտիցէք: |
| Ցէջ 66. Հոգիդ սուրբ որ 'ի քէն բղխէ [1]: | Յովհ. ԺԵ. 26. Զհոգին ճշմարտութեան, որ 'ի Հօրէ ելանէ: |
| Ցէջ 68. Ի նմանութիւն պատկերի կերպարանաց իմոց արարի | Ծննդ. Թ. 6. Զի 'ի պատկեր Աստուծոյ արարի ես զմարդն: |

1. Դիտելու է, որ բղխել բայը յունարէնի զօրութեամբ մտած է աստ, որովհետև Յոյնք կ'ըսեն վասն Հոգւոյն Սրբոյ բղխել և յՈրդւոյ և ոչ ելանել, իսկ Հայք ելանել ասեն՝ և ոչ բղխել:

*ես զմարդն, և կացուցի զնա տէր ամենայնի:*

Ցէջ 68. *Առ նախանձ թշնամւոյ բանսարկուին՝ հրապոյրք ցոփացուցիչք մտին յաշխարհ, և արկին զմարդիկ 'ի կենաց և 'ի հանգստեանց:*

Իմաստ. Բ. 24. *Նախանձու բանսարկուին եմուտ մահ յաշխարհ, և փորձեն զնա՝ որ նորա վիճակին սակի են:*

Ցէջ 73. *Զպարարակ իմ զենեալ է, և զճաշ իմ պատրաստեալ է:*

Մատթ. ԻԲ. 4. *Ահաւասիկ զճաշ իմ պատրաստեցի. զուարակք իմ և պարարակք զենեալ են, և ամենայն ինչ պատրաստ է:*

Ցէջ 69. *Ընդ յարուցեալ 'ի վերայ իմ պատերազմ՝ ոչ երկիցէ սիրտ իմ. և ընդ յարուցեալ 'ի վերայ իմ ճակատամարտ՝ 'ի քեզ եմ յուսացեալ:*

Սաղմ. ԻԶ. 3–4. *Թէ պատրաստեսցի 'ի վերայ իմ պատերազմ՝ ոչ երկիցէ սիրտ իմ. Թէ յարիցէ 'ի վերայ իմ ճակատամարտ՝ սակայն և այսուիկ 'ի քեզ, Տէր, յուսացայ:*

Ցէջ 72. *Եղէ ես որպէս զխուլ՝ որ ոչ լսէ, և իբրև զհամր՝ զի ոչ բանայ զբերան իւր:*

Սաղմ. ԼԷ. 14. *Այլ ես որպէս խուլ՝ զի ոչ լսէ, որպէս համր՝ որ ոչ բանայ զբերան իւր:*

Ցէջ 72. *Արարից զքեզ համր, և կապեցից զլեզու քո 'ի քիմս քո. և եղիցես դու իբրև զայր մի՝ որոյ ոչ գուցեն բանք յանդիմանութեան 'ի բերան իւրում:*

Եզ. Գ. 26. *Եւ զլեզու քո կապեցից 'ի քիմս քո, և եղիջիր դու համր. և ոչ եղիցես դու նոցա իբրև զայր մի յանդիմանիչ:*

Ցէջ 79. *Քո է տիւ և քո է գիշեր, որ կարգեցեր լուսաւորս 'ի պէտս:*

Սաղմ. ՀԳ. 16. *Քո է տիւ և քո է գիշեր, զլոյս և զարև դու հաստատեցեր:*

Ցէջ 87. *Ետուր զանձն քո ամենայն համբերութեամբ, և ոչ դարձուցեր զանձն քո յանարգանաց ընդ երեսս թքանելոյ, և մատուցեր հարկանելեաց զծնօտ քո:*

Եսայ. Ծ. 6. *Զթիկունս իմ ետու 'ի հարուածս, և զծնօտս իմ յապտակս, և զերեսս իմ ոչ դարձուցի յամօթոյ ընդ երեսս թքանելոյ:*

Ցէջ 121. *Որ թողէ զքմակութիւն իւր վասն անուան իմոյ, 'ի միասանգամ զալստեան իւրոյ զկեանս յաւիտենականս ժառանգեցուցանիցէ նմա:*

Մատթ. ԺԹ. 29. *Եւ ամենայն որ ոք եթող զտուն կամ զեղբարս... վասն անուան իմոյ, հարիւրապատիկ առցէ և զկեանս յաւիտենականս ժառանգեսցէ:*

Ցէջ 125. *Սուրբ եղիցի անուն քո 'ի վերայ մեր:*

Մատթ. Զ. 9. *Սուրբ եղիցի անուն քո:*

Ցէջ 148. *Այլ զարթուցէ զզօրութիւնս իւր, և եկեսցէ կեցուսցէ զմեզ, և մեք զանուն Տեառն*

Սաղմ. ՀԹ. 3–4. *Զարթո զզօրութիւն քո, և եկ կեցուցանել զմեզ. Աստուած զօրութեանց*

| ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. | Ս. ԳԻՐՔ. |
| --- | --- |
| կարդասցուք. երևեցուսցէ զերեսս իւր 'ի մեզ և կեցցուք: | դարձո զմեզ, երևեցո զերեսս քո 'ի մեզ և կեցցուք: |
| Ցէջ 153. Զի մեք 'ի ժողովրդենէ քումմէ եմք և 'ի խաշնէ արօտի քո: | Սաղմ. ՀԸ. 13. Մեք ժողովուրդք և խաշն արօտի քո: |
| Ցէջ 172. Զոր սիրէ Տէր խրատէ, և գանալից առնէ զորդի՝ զոր 'ի յակն առնու: | Եբր. ԺԲ. 6. Զի զոր սիրէ Տէր՝ խրատէ, տանջէ զամենայն որդի զոր ընդունի: |
| Ցէջ 175. Մատիջիք առաջի աթոռոյ շնորհաց նորա, և գտջիք զողորմութիւն 'ի նմանէ: | Եբր. Դ. 16. Մատիցուք այսուհետև համարձակութեամբ առաջի աթոռոյ շնորհաց նորա, զի ընկալցուք զողորմութիւն և գտցուք շնորհս 'ի դէպ ժամանակի օգնականութեան: |
| Ցէջ 178. Արքայութիւն նորա արքայութիւն յաւիտենից, և տէրութեան նորա վախճան ոչ գոյ: | Դան. Է. 27. Եւ արքայութիւն նորա արքայութիւն յաւիտենական և ամենայն իշխանութիւնք նմա ծառայեսցեն: |
| Ցէջ 543. Պարծանաց խաչին՝ որ կորուսելոցն յիմարութիւն է, և մեզ որ զտայքդ՝ իմաստութիւն զօրութիւն և փրկութիւն է: | Ա. Կրթ. Ա. 8. Զի բան խաչին կորուսելոցն յիմարութիւն է, այլ փրկելոցս զօրութիւն Աստուծոյ: |
| Ցէջ 544. Եւ կցորդիցէք չարչարանացն Աստուծոյ, և փառացն հաղորդելոց էք: | Բ. Կրնթ. Ա. 7. Որպէս կցորդ էմ չարչարանացն, նոյնպէս և մխիթարութեան: |
| Ցէջ 560. Որ հայի յերկիր և տայ դողալ. մերձի 'ի լերինս, և ծխին: | Սաղմ. ՃԳ. 32. Որ հայի յերկիր և տայ դողալ սմա. մերձի 'ի լերինս, և ծխեսցին: |
| Ցէջ 563. Ամենայն մարմին յօդիւք և խաղալեօք և անդամօք հաստատեալ և կազմեալ: | Կողս. Բ. 19. Ուստի ամենայն մարմին յօդիւք և խաղալեօք տարաբերեալ և խառնեալ՝ աճէ զաճումն Աստուծոյ: |
| Ցէջ 567. Հասանել ամենեցուն 'ի չափ կատարման հասակի հաւատոցն Քրիստոսի: | Եփս. Դ. 13. Մինչև հասցուք ամենեքեան 'ի մի միաբանութիւն հաւատոց և գիտութեան Որդւոյն Աստուծոյ, յայր կատարեալ 'ի չափ հասակի կատարման Քրիստոսի: |
| Ցէջ 631. Յորժամ տկարանամ, յայնժամ զօրացեալ լինիմ: | Բ. Կրթ. ԺԲ. 10. Զի յորժամ տկարանամ, յայնժամ զօրանամ: |
| Ցէջ 634. Արթուն կացէք, յաղօթս կացէք, զի մի՛ մտանիցէք 'ի փորձութիւն: | Ղուկ. ԻԲ. 46. Զի՞ ննջէք, արիք կացէք յաղօթս՝ զի մի մտանիցէք 'ի փորձութիւն: |

| ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. | Ս. ԳԻՐՔ. |
| --- | --- |
| Ցէջ 635. Հոգին 'ի թիկունս հասանել անմռունչ հեծութեամբն բարեխօս զկոէ: | Հռմ. Ը. 26. Հոգին 'ի թիկունս հասանէ տկարութեանս մերում 'ի հեծութիւնս անմռունչս: |
| Ցէջ 642. Փոխանակ հարց՝ եղիցին որդիք կալ իշխան 'ի վերայ երկրի: | Սաղմ. ԽԴ. 17. Եւ փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո: Կացուսցես զնոսա իշխանս ընդ ամենայն երկիր: |

Իսկ մնացած տեղիքն՝ բառ առ բառ համաձայն են Ս. Գրոց մեսրովբեան թարգմանութեան. օրինակի աղագաւ էջ 60 եղած տեղին =Սաղմ. ԾԺԳ. 5–6, էջ 64=Եզեկ. Է. 17, էջ 67,=Կրթ. Բ. 9, էջ 69=Սաղմ. ԻՋ. 2, էջ 76=Մատթ. Ե. 45, էջ 77=Մատթ. ԼԳ. 20, էջ 92=Կորթ. ԺԵ. 42–43, էջ 128=Մատթ. Ե. 16, էջ 152= Սաղմ. ԾԽԳ, 10, էջ 154=Սաղմ. ՁԹ. 15, էջ 162=Սաղմ. ԽԳ. 22, էջ 174=Եբր. ԺԱ. 8, էջ 177=Սաղմ. Ջ. 13, և էջ 633=Գործ. Առաք. Ա. 1:

Արդ, եթէ ուրիշ պատճառներ ևս չլինէին, այս վերջին տեղեացս կատարեալ համաձայնութիւնը՝ կը ցուցնէ, թէ մեսրովբեան նշանագրոց գիւտէն և Ս. Գրոց թարգմանութենէ վերջ մտած են անոնք Ագաթանգեղայ գրոց մէջ: Իսկ անհամաձայն տեղեաց մասին՝ երեք ենթադրութիւն կարելի է ընել. այսինքն, է Ա. կամ այն է թէ բոլոր այդ տեղերն ևս, ըստ ինքեան նկատելով, մեսրովբեան թարգմանութենէն առնուած են և պէտք էին համաձայն լինել, բայց որովհետև Ագաթանգեղայ գրոց հեղինակը զանոնք Գրիգորի և Հռիփսիմեանց բերանը դնելով՝ ուրիշ այլևայլ պարագայից և անձանց վերաբերած է, ուստի բնականապէս այսպիսի մի անհամաձայնութիւն յառաջ եկած է. կամ այն է, թէ Գրիգոր ազատաբար մէջ բերած էր զանոնք, ըստ որում իւր յիշողութեան մէջ ունէր. և կամ հուսկ ուրեմն ըսելու է, թէ վերոյիշեալ տեղերն՝ մի ուրիշ բնագրի համաձայն առնուած և թարգմանուած են: Արդ առաջին ենթադրութիւնն՝ այն տեղերէն ոմանց համար՝ յորս իրօք կը տեսնուին մէկ կողմէն բառեր, որք մեսրովբեան թարգմանութեան բառից հետ նոյն են. իսկ միւս կողմանէ ալ պարագաներ՝ որք ստուգիւ կը պահանջէին փոխել այդ բառերն և բայերու ժամանակներն և դէմքերը, մերթ նորանոր իրաց յաւելուածներով և մերթ ալ յապաւմամբ մէջ բերուած տեղեաց, կարելի է ճշմարիտ համարել: Իսկ մնացածներուն նկատմամբ, որոնք պարզաբար և առանց ուրիշ իրաց և պարագայից հետ լծորդելու մէջ բերուած են, և սակայն մեծապէս կը տարբերին Ս. Գրոց թարգմանութենէն, անլնդունելի կ'երևի ինձ և անհասկանալի: Ուստի վերջին երկու ենթադրութեանց զօրն ևս ընդունինք, այնու կը հաստատուի, թէ Ագաթանգեղայ հայերէն օրինակն նախկին և անծանօթ յոյն բնագրէ մի թարգմանուած է: Ցիրաւի, մենք չենք գիտեր, թէ Ս. Գրոց նախկին թարգմանութիւնն՝ ո՛րքան կա-

տարեալ էր, և թէ յունարէն ընտիր բնագրէն եղած երկրորդ թարգմանութիւնն ինչ աստիճան կը տարբերէր յառաջնոյն, վասն զի այս գեղեցիկ և յոյժ կարևոր նիւթիս վերայ մինչև ցարդ դեռ ցանկացեալ ուսումնասիրութիւնք չեղան յազգիս. սակայն և այնպէս շատ հաւանական կ'երևի ինձ, թէ Ս. Գրիգորի պատմութեան մէջ թէ՛ ազատաբար և թէ՛ ճշդութեամբ մէջ բերուած տեղիքն կամ ասորերէն և կամ մի ուրիշ յոյն բնագրէ, որպիսի են Սիմաքոսին և Դէոդիտոնին և այլն, փոխ առնուած ըլլան. և իրօք այսպիսի եղելութեան մի ոտից կռուան համարելու ենք Ս. Եփրեմի հին և նոր կտակարանաց մեկնութիւնն, յորում ակներև կը տեսնուին Եօթանասնից և Ասորի թարգմանութեանց տարբերութիւնքը: Իսկ այդ պատմագրութեան հայ թարգմանիչն (եթէ Ս. Գրոց նախկին թարգմանութենէն անմիջապէս վերջ եղած համարինք և եթէ զկնի երկրորդին) վերոյիշեալ տեղերէն զոմանս Ս. Սահակայ և Մեսրովբայ թարգմանութեան յարմարցուց, իսկ զայլս՝ զորս կամ նա ինքն չանդրադարձաւ, թէ Ս. Գրոցմէ փոխ առեալ տեղիք են, և կամ 'ի բնագրին յոյժ ազատաբար մէջ բերուած գտաւ, ուստի անոնց հաւատարիմ մնալու համար՝ իւր յատուկ լեզուով փոխեց զնոսա 'ի հայ բարբառ, ուրեք ուրեք իրեն և իւր ժամանակին ընտանի Ս. Գրոց թարգմանութենէն բառեր 'ի վար արկանելով յայնս:

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Ագաթանգեղայ խմբագրութեան և թարգմանութեան խնդիրն. — Պարոնեանի կարծիքն և նորա անյարմարութիւնն. — Ագաթանգեղայ գրոց խմբագիրքն և թարգմանիչք. — Ներքին և արտաքին հատուածք. — Ագաթանգեղայ գրոց խմբագրութեան և թարգմանութեան ժամանակամիջոցն և պարագայք. — Ագաթանգեղայ և Գրիգորի քարոզոց թարգմանութեանն անդրանիկ է հայկական դպրութեան մէջ, յետ թարգմանութեան Ս. Գրոց. — Նորա արժէքն և հզօր ազդեցութիւնը ռամկային ժողովրդոց վերայ:

Ագաթանգեղայ բնագրի՛ խնդրոյն՝ անմիջապէս կը յաջորդէ նորա թարգմանութեան և խմբագրութեան խնդիրն: Այս երկու կէտերս ևս՝ նախընթաց գլխոյն մէջ ըսածներէս փոքր 'ի շատէ յայտնի եղաւ արդէն. ուստի այսուհետև կը մնայ տեսնել, թէ ո՞յք եղան այդ գրոց խմբագրութիւնն և թարգմանութիւն իրագործողներն, և թէ յինչ պատեհաւ և ժամանակի մէջ իրագործեցին զայն: Եթէ կը յիշեն ընթերցողք այն կէտը՝ որուն վերայ ուզեցի մասնաւոր ուշ դարձնել նախընթաց գլխուն մէջ. այսինքն թէ Կորիւն ոչ միայն Ագաթանգեղայ և Փաւստոսի վերոգրեալ հասարակ տեղեաց մասին կը համաձայնի. այլ նոյն իսկ բառերու ընտրութեամբ և դարձուածովք բանից. ես չեմ կարող առանց երկբայութեան եզրակացնել աստի,

թէ Միսրովբայ վարուց և գործոց հեղինակն՝ եղած ըլլայ բացար-ձակ թարգմանիչ և ձեռք խառնող Բուզանդացւոյ երկասիրութեան մէջ, թէպէտև մէկ կողմէն վերոյիշեալ նմանութիւնքն և միւս կող-մանէ ալ Փաւստոսի պատմութեան երիցագոյն թարգմանութիւնը՝ կը թուին հաստատել, թէ գէթ մասնակցած ըլլայ այնմ Կորիւն ուղղելով և յղկելով. որովհետև հեղինակս՝ ինչպէս Ագաթանգեղայ գրոց՝ այսպէս ևս Փաւստոսի տեղեաց առաջբերութեամբն՝ յայտ-նապէս կը ցուցնէ, թէ իւր երկասիրութիւնն յօրինած ժամանակ՝ այն երկու գրուածքն ևս ունեցած է իւր դիմաց, ըստ հայերէն թարգմանութեան. և թէ Կորեան ժամանակակից ուրիշ թարգման-չաց գոյութիւնը՝ թէպէտև առանց երկբայութեան է, բայց մենք իրաւունք չունինք նոցա՝ քան թէ Կորեան ընծայել զայն, որուն նմանութիւնն իսկ բաւական և շօշափելի ապացոյց է ըստ ինքեան: Երկրորդ՝ այսպիսի պատեհաւ և պայմանաւ միայն կարէր յանձն առնուլ Կորիւն երևել բանաքաղ Բուզանդացւոյն՝ և լռել գլխովին նո-րա անունն: Իսկ նկատմամբ Ագաթանգեղայ գրոց թարգմանու-թեանն՝ իմ համոզումս այնքան հաստատուն է և մեծ, որքան հաս-տատուն կերպով և մեծապէս կը նմանի Ս. Մեսրովբայ Պատմու-թեան հեղինակին լեզուն և շարաբանութիւնը՝ Ս. Գրիգորի պատ-մութեան լեզուին և շարաբանութեանը: Բայց որովհետև Ագաթան-գեղայ գրոց խմբագրութիւնն առ նուազն յերկուց տարբեր բնագրոց կազմուած է, և զերրորդն ալ կը կազմէր Փաւստոսի երկասիրու-թիւնն՝ իբրև շարունակութիւն իմն առաջնոյն, ուրեմն ըստ թուոյ բնագրոց պէտք էր որ եղած լինէր և թիւ թարգմանչաց, որոնց գլխաւոր նպատակն էր՝ ընկերասէր մեղուաց նման առանձին մի մի բան թարգմանելով՝ քովէ քով բերել ռնով և կարգաւ և մինչև ի-րենց ժամանակ հանդիպած դիպաց և յեղափոխութեանց, կամ լաւ ևս Հայաստանի կատարեալ պատմութիւն մի ընծայել 'ի լոյս: Այս յաւերժայիշատակ թարգմանիչներէն մին պէտք է որ եղած լինի Եզնիկ Կողբացի, զոր գովութեամբ կը յիշէ Կորիւն՝ ասելով. « Գնաց 'ի կողմանս Յունաց 'ի Բիւզանդիոն ... թարգմանիչ եղեալ ըստ հել-լենական լեզուին »: Սակայն դեռ աւելի նշանաւոր կերպով շեշ-տուած են հետագայ խօսքերը, թէ « Ղևոնդ և Կորիւն երթեալք յա-ռին յԵզնիկն՝ իբր առ ընտանի և սննդակից ... և անդէն [illegible] [illegible] »: Դիտելու ենք, որ Կորեան վերջի խօսքերովը՝ գլխովին այլ ինչ հասկանալի է, քան թէ Ս. Գրոց թարգ-մանութիւնն. որովհետև յետոյ ուրեմն կը ծանուցուի 'ի յաջորդ պար-բերութեան, թէ « Իսկ երանելեացն սրբոցն Սահակայ և Մեսրովբայ զեկեղեցական գրոց գումարութիւնն կանխաւ 'ի յունարէն բարբառոյ 'ի հայերէն թարգմանեալ ... Դարձեալ յետ այսորիկ առեալ հանդերձ Եզնկաւ զյառաջագոյն զյանկարծագիւտ զփութանակի թարգմա-նեալսն՝ հաստատէր ճշմարիտ օրինակօքն բերելովք »:

Արդ, բաց 'ի Կորեան այդ վկայութենէն, որ զԵզնակ և զՂևոնդ իրեն ընտանի, սննդակից և գործակից կը համարի, կան դարձեալ ուրիշ գրաւոր յիշատակարանք, որք զԵզնակ ևս առնեն նմին գոր-

ծակից 'ի նոյն գործն մեծ և կարևոր: Ցիրաւի, Պարիզու արքունա֊կան մատենադարանի ձեռագրի [1] մի մէջ կայ համառօտ պատմու֊թիւն մի յաջորդաց Ս. Գրիգորի Լուսաւորչի՝ մինչև ցԿոմիտաս կա֊թողիկոս, և 'ի ստորև պատմութեան գրուած է այսպէս. « Եղիցի յիշատակ Եզնակն 'ի թարգմանել զԳիրս »: Պարոնեան բանասէր վարդապետն՝ այս յիշատակարանիս վերայ հաստատուած՝ բոլորո֊վին մի նոր կարծիք յայտնեց [2], զոր ապացուցանելն, ըստ իս, ան֊կարելի է: Նորա կարծիքով իբր թէ հայերէն Ազաթանգեղոսն՝ Ե. դարում յունարէն բնագրէն թարգմանուած է՝ Եզնկայ, ուրումն Եբրէ֊ցւոց ձեռքով, որ լեալ իցէ ատենադպիր Կոմիտաս կաթողիկոսին: Սակայն Եզնակ անուանէն պարզապէս՝ Եզնկայ Երիցու մի գոյու֊թիւնն ենթադրել այդ ժամանակամիջոցին՝ կամայական մի բան է: Արդ՝ եթէ կարծեցեալ Եզնիկ Երիցու գոյութիւն 'ի բիւր դէպս ապա֊ցուցուած լինէր, սակայն դարձեալ չէ և չէ մարթ ընծայել նմա ըզ֊հայերէն թարգմանութիւնն Ազաթանգեղայ, այնու զի հինգերորդ դարու հեղինակաց քով իսկ, որպիսի են Ս. Սահակ, Կորիւն, Մով֊սէս և Ղազար, կը գտնուին այդ թարգմանութենէն ամբողջական հատուածք բանից բառ առ բառ, զորս այլուր 'ի մէջ բերի մասամբ ինչ և կարելի էր մնացածն իսկ ածել 'ի հանդիսի: Այս բանիս չգի֊տեմ թէ Պարոնեան ինչ մեկնութիւն կու տայ և ինչ հիման վերայ հաստատեալ: Բայց դիտելու ենք որ բաց 'ի այս յիշատակարանիս վերնագրէն, չիք այլ ուր յիշատակ Եզնկայ Երիցու և քարտուղարի, ոչ առ մատենագիրս Ե դարուն և ոչ իսկ առ յետինս: Ես Պարիզու վերոյիշեալ ձեռագիրը տեսնելու բաղդն ունեցած չեմ. բայց մեր մա֊տենադարանի մէջ գտնուող գրչագիրն, որ կը պարունակէ Ազա֊թանգեղայ Զ օրինակն, վերջաբանին այս խօսքերէս « Թէ դու ես Տէր Աստուած մեր », անմիջապէս վերջ կը յարէ. « Նշանագիրք կար֊գաց բանից [illegible] Եբրէցւոց, և այլն »:

Արդ, այս յիշատակարանիս մէջ՝ մի առ մի թուելով մեր Արշա֊կունի թագաւորաց ոմանց հետ՝ նաև կաթողիկոսաց յաջորդութիւնը՝ կը հասցնէ մինչև ցՍ. Սահակ և ցգիւտ Նշխարաց սրբոց Հռիփսի֊մեանց. ապա և անդր յետագայ ձեռք մի՝ 'ի բաց թողլով շարք մի կաթողիկոսաց, յաւելցուցել է միայն զԿոմիտաս կաթողիկոս՝ Հռիփ֊սիմեանց Նշխարաց երկրորդ գիւտին և կաթուղիկէի վերաշինու֊թեան արարուածով: Սորան կը յաջորդէ ապա երրորդ անծանօթ ձեռքէ մի գրուած. « Ժամանակագրութիւն կաթողիկոսացն Հայոց » ժամանակա֊գրական ցուցակ մի, որ կը հասնի մինչև ցՍտեփանոս Բ: Արդ՝ այս երեք յիշատակարաններս տարակոյս չկայ, թէ իրարմէ տարբեր ե֊րեք ժամանակաց մէջ գրուած են. այսինքն է առաջին մասը՝ գործ

1. Թիւ 50. O: Այս ձեռագիրս՝ որոյ վերնագիրն է. « Ճառք և վար֊դապետութիւնք Սրբոյն Գրիգորի լուսաւորչի վասն հայոց », հանդերձ վարուք նոյն սրբոյն և այլ գործք որք վերաբերին առ այն, գրուած է 'ի թուին հայոց ՉԴ (1255) ընտիր և միայար գրչութեամբ:

2. Տես V. Langlois, Coll. des Hist. de l'Arménie. p. 103. Note additionnelle.

*է Ն. դարուն. երկրորդը՝ Է երրորդին. իսկ վերջինը՝ պէտք է որ Ժ դարուն գրուած լինի. զի Ստեփանոս Բ՝ յամին 925 ընտրուեցաւ կաթողիկոս և 926 մեռաւ: Ուրեմն ուշի ուշով քննելով այս ձեռագիրս և Հ. Արսէն Բագրատունու ձեռքով պարիզեան ձեռագրէն ընդօրինակուած յիշատակարանն՝ որուն վերայ է խօսքերնիս, յայտնի նշաններ կան, որք կը ցուցնեն, թէ այդ յիշատակարանի « Ցետ Տրդատայ թագաւորեաց որդին իւր » բառերով սկսեալ՝ մինչև « Եւ եղև այս 'ի յամս Աբդլսի վանաց Երիցու սրբոյ 'ի Վաղարշապատ քաղաքի » մասն՝ է կամ կարէ լինել Եզնկայ Կողբացոյ հարազատ*[1] *գործ, զի Ս. Սահակաւ կը կնքէ զկարգս Կաթողիկոսացն Հայոց, և աստ դրուած էր գրոցն թարգմանչի կամ Եզնկայ անունը: Իսկ մնացած մասն՝ որ Կոմիտաս կաթողիկոսէն կը սկսի, յասելն. « Մինչև յաւուրս Կոմիտասայ սրբոցն Հռիփսիմեանց սպասաւորի », մինչև ցվերջ՝ է բանաքաղութիւն Սեբէոսի ԻՆ. գլխոյն վերջին իջում Կոմիտաս կաթողիկոսի ձեռքով Վաղարշապատու կաթողիկէի նորոգութեան մասին տուած տեղեկութեանցը, զոր ոչ թէ Է դարուն՝ այլ Ժ դին մէջ ապրող մէկն առաւ և ընդլայնմամբ ներմուծեց անդ՝ որով և հարկադրուեցաւ Եզնկայ անունն իսկ փոխադրել 'ի ստորև յաւելուածին: Եւ յիրաւի, այսպիսի մի եղելութեան յայտնի ապացոյց են, Ա. վերոյիշեալ յիշատակարանին վերայ յետոյ ուրեմն յարմարցուած վերնագիրն, «* **Նշանակէր նորեալ բանիցն՝ և Եզնկանն Երիցու**, *թէ ուստի էին » և այլն, որ բնաւ չի յարմարիր ստորագրութեանն, յորում պարզապէս* **Եզնոյ** *կը գրուի: Բ. 'ի վերջկոյս յիշատակարանին «* **Կաճկեղէ** *նորին Հռիփսիմէի վանաց երիցու », ունիտորական բացատրութիւն եւ՝ ոչ Ե դարու: Իսկ եթէ համարիցի ոք յատուկ Ե դարում ապրող Երիցու, այդ իսկ բաւական է ցուցնել, թէ այդ խեղճ լեզուն ունեցող Երէցը բացարձակապէս չէր կրնար միանգամայն ունենալ Ագաթանգեղայ հրաշաբան լեզուն և շարաբանութիւնն: Գ. Առաջին մասին մէջ՝ անընդհատ յաջորդութեամբ կը յիշուին զոյգ ընդ թագաւորաց նա և ամենայն կաթողիկոսունք Հայոց ցմեծն Սահակ. իսկ երկրորդին մէջ ընդհակառակն, թողլով մեծ խորոց մի՝ ուղղակի Կոմիտասայ անցուած է և Կոմիտասով աւարտուած: Արդ՝ ոճոյ այս յանկարծական փոփոխութիւնս կը ցուցնէ, թէ ձեռք խառնող անծանօթ հեղինակին միակ կէտ և նպատակն էր, Էջմիածնայ կաթողիկէի վերաշինութիւնն և Հռիփսիմեանց ոսկերաց կրկին յայտնութիւնը ծանուցանել՝ յարելով ընդ առաջնոյն, որ 'ի ժամանակս*

1. *Ցիրաւի, զի խօսելով զմեկնաւ թագաւորէն մերմէ Վռամշապհոյ՝ կ'ըսուի այսպէս. « Ցետ Վռամշապհոյ որ կողմանն Պարսից թագաւորեաց, ապա ամս հարուստս մարզպանք Պարսից կալան (զաշխարհս) մինչև առ մեզ: Իսկ ապա Արտաշէս որդի Վռամշապհոյ թագաւորէ հրամանաւ Պարսից արքային. և ապա Մարզպանք պարսիկք կալան մինչև առ մեզ. առ որով Ասպուրակէս կաթողիկոս »: Արդ, « մինչև առ մեզ » խօսքերն՝ միայն Եզնկայ Կողբացոյ բերանը հասկանալի բան է. վասն զի Ն. դարուն ոչ ևս Պարսիկ՝ այլ հայ մարզպաններ և արաբացի ոստիկաններ կը վարէին զաշխարհս մեր:*

Ս. Սահակայ. այնպէս որ ականատեսն՝ ոչ եթէ նա ինքն եղած է, այլ Սեբէոս: Ուստի աւելի հաւանական է զՍեբէոս եղած համարել ատենադպիր Կոմիտաս կաթողիկոսին՝ քան զկարծեցեալն Եզնիկ Երէց: Ուրեմն կը մնայ Եզնիկ կողբացի իբրև թարգմանիչ գրոցն Գրիգորի, եթէ այդ յիշատակարանը վաւերական համարինք:

Կորեան և Եզնկայ երկասիրութիւնները բաղդատելով ընդ Գրոցն Ագաթանգեղայ, այլ ևս չէ կարելի տարակուսել, թէ երկաքանչիւրն իսկ եղած են գլխաւոր գործիչներ 'ի խմբագրել և 'ի թարգմանել զայն՝ ընդ ուղղութեամբ վարժապետին իւրեանց և մեծ սոփեստեսին Մեսրովբայ, որուն յաւէտ յիշատակաց արժանի գործին վերայ՝ ուրիշ պատեհաւ պիտի խօսուի։ Յիրաւի, Կորեան խմբագիր լինելուն Ագաթանգեղայ գրոց զօրեղ ապացոյց են նորա Յառաջաբանը, վերջաբանն և այն բազմաթիւ նոյնաբան հատուածներն՝ որք կը գտնուին թէ 'ի Պատմութեան անդ Գրիգորի և թէ 'ի Պատմութեան Ս. Մեսրովբայ, որոց մասին արդէն ընդարձակաբար խօսուեցաւ: Իսկ թարգմանիչ լինելուն առհաւատչեայ են նախ խրթնութիւն կամ մթութիւն լեզուի, որ իբրև յատուկ իմն բնադրոշմ կը տեսնուի այդ զոյգ երկասիրութեանց վերայ և կ'որոշէ զանոնք Ե. դարու միւս երկասիրութեանց մէջ: Բ. Յաճախ կիրառութիւնք քաջակազմ և վայելչահիւս բարդութեանց, կորովի բանից և մասնաւոր ոճերու, որք այդ երկասիրութիւններէն դուրս հազիւ ուրեմն կամ բնաւ չեն գտնուիր: Ուստի աւելորդ համարելով բոլոր այդ առանձնայատկութիւնները բերել 'ի մէջ, այլ ևս չեմ դանդաղիր եզրակացնել, թէ Ագաթանգեղայ զէթ վերջին գիրքը՝ հաստատ կերպով պէտք է որ Կորիւն թարգմանած և ընդարձակած լինի, որովհետև այդ մասին մէջ աւելի աչքի զարնող կերպով կը տեսնուին նմանութիւնք: Իսկ Ա. Գրոց մէջ, ընդհակառակն, բայց 'ի մասնաւորի Գրիգորի համառօտ վարդապետութեան մէջ՝ կան բազմաթիւ վարդապետական տեղիք և դարձուածք բանից, որք Եզնկայ երկասիրութեան մէջ եղած տեղեաց և դարձուածոց հետ մեծ նմանութիւն ունին: Օրինակի աղագաւ, Աստուածային էութեան և կատարելութեանց, — բարի և չար հրեշտակաց, նոցա բնութեան և թուոց, — ծառոյն կենաց և պատուիրանազանցութեան, — Նախանկար օրինակաց և գալստեան Որդւոյն Աստուծոյ, — երկնային լուսաւորաց և բնական ազդմանց կենդանեաց, — բանին Աստուծոյ մարդակերպ երևնալուն առ նահապետս և մի քանի ուրիշ տեղեաց հատուածքը՝ հասարակ են երկաքանչիւրին:

Արդ այս եղելութիւնս առանց երկբայութեան լինելով, ուրիշ կերպով չէ մարթ մեկնել. այլ կամ այն է թէ Եզնիկէն առաջ Ագաթանգեղայ գիրքը խմբագրուած էր և թարգմանուած 'ի ձեռն Կորեան և Եզնիկ յետոյ ուրեմն անոր հետևեցաւ ծառայական նմանողութեամբ. և կամ այն է, թէ նա ինքն ևս հանգոյն Կորեան նախնաբար Ագաթանգեղայ խմբագրութեան և այդ գրոց թարգմանութեանը գործակցելով, յետոյ ուրեմն իւր « Եղծ Աղանդոց » երկասիրութիւնը գրած ժամանակ՝ նախկին տեղիքն և դարձուածս բանից

'ի կիր էարկ վերստին: Առաջին ենթադրութիւնն ինծ անհաւանական կ'երևի, որովհետև Եզնիկ միշտ կը յիշուի իբրև առաջին և քաջավարժ 'ի թարգմանիչս և յամենայնի գործակից Սրբոցն Սահակայ և Մեսրովբայ, ուստի անկէ ոչ երիցագոյն և ոչ իսկ աւելի հեղինակութիւն ունեցող թարգմանիչ ոք գոյր՝ բաց յերկուց աստի, որոց կարող լինէր նա հետևել, մանաւանդ թէ մուրալ բանս: Ուստի կը մնայ երկրորդն:

Ցիրաւի, այս վերջին ենթադրութիւնս՝ կատալեալ հաստատութիւն պիտի առնուր Եզնկայ երկասիրութեամբն, եթէ նորա գրութեան ժամանակամիջոցը ճիշդ և որիշ կերպով նշանակուած լինէր: Արդ որչափ որ նշանակուած չէ, սակայն յոյժ հաւանական է կարծել, թէ կամ 425–431 միջոցին գրած լինի, երբ իրեն վարդապետաց հրամանաւ դեգերեցաւ յեդեսիա և 'ի Բիւզանդիոն առ 'ի թարգմանել զգիրս յԱսորոցն և 'ի յունէն՝ 'ի հայ բարբառ. և կամ յամէն 441–445, երբ Յազկերտ Բի հրամանաւ սկսաւ **Երկրպագութեան** կամ մոխրապաշտութեան կրօնքը տարածուիլ 'ի Հայս և նոցա մէջ ճարակ գտնել: Ստուգիւ այսպիսի մի եղելութեան առաջին ապացոյցը կու տայ մեզ Եզնկայ վերոյիշեալ երկասիրութիւնն, որուն Ա, Գ և Դ գրքերն՝ ըստ մեծի մասին թարգմանաբար քաղուածոյք են Ս. Եպիփանի **Յաղագս Հերձուածոց** գրքին և իմաստասիրացն Յունաց, որոնց հետ 'ի Միջագետս և կամ 'ի կողմանս Յունաց եղած ժամանակ՝ աւելի առիթ ունէր ծանօթանալու քան 'ի Հայս: Իսկ երկրորդ ապացոյցը կ'ընծայէ մեզ յամին 449 Յովսեփայ նախագահութեամբ յԱրտաշատ համախմբուած և առ Միհրներսեհ ուղղուած Հայոց **Պատասխանին** առ Եղիշէի, յորում Եզնկայ վերոյիշեալ երկասիրութենէն այլևայլ տեղիք մէջ բերուած են ընդդէմ Պարսից: Արդ՝ այս բանս սակնեւ կը ցուցնէ, թէ ոչ միայն այդ թուէն առաջ արդէն գրուած և ամենուն ծանօթ էր Եզնկայ երկասիրութիւնն, այլ թէ գուցէ նոյն ինքն Եզնիկ շարագրած լինի նաև այն պատասխանական թուղթն իբրև քաջ աստուածաբան և լեզուագէտ. որովհետև այդ թղթի ոճերն և լեզուն իսկ Եզնկայն բերէ զտիպ, քան Եղիշէի: Ուրեմն Եզնկայ «Եղծ Աղանդոց» երկասիրութիւնն՝ ինչպէս առ Միհրներսեհ գրուած թղթէն առաջ գրուած լինելով՝ կարաց անոր նիւթ մատակարարել, այսպէս ևս Ագաթանգեղայ թարգմանութենէն յետոյ գրուած լինելով՝ միայն կարող էր անտի տեղիս և դարձուածս բանից փոխ առնուլ: Առ այս ուրեմն կը ճշմարտի Կորեան վկայութիւնը, զոր 'ի՝վեր անդր 'ի մէջ բերի, այսինքն թէ, Եզնկայ 'ի Բիւզանդիոն եղած ժամանակ՝ Ղևոնդ և Կորիւն իսկ միաբանեալ ընդ նմա՝ վճարեցին զհոգևոր պիտոյից խնդիրն, որով կը հաւկցուին թարգմանութիւնք պէսպէս գրոց Հարց, անշուշտ և մերոյ Լուսաւորչին, յընթացս եօթն ամաց, և ոչ թէ Ս. Գրոց կամ ժամերգութեան, զորս նոցա բացակայութեան ժամանակ կատարեցին Ս. Սահակ և Մեսրովբ, ըստ վկայութեան Կորեան: Եւ իրօք այս բանս քաջ կը հաստատուի Եզնկայ անուամբ ծանուցեալ այն պատուական յիշատակարանին հետևեալ խօսքերով. «Եւ կարգք **Գործոյն. Գրիգորի**

նորոգեալ արամբ միով երանելեաւ Տարաւնացւոյ՝ որում անուն Մաշտոց ճանաչէր, որ էառ զձեռնադրութիւն երիցութեան 'ի ձմին Սահակայ կաթողիկոսէ ... Եւ նոցուն աշակերտք Ղեւոնդ, Արձան և Կորիւն և Եզնիկ և **արբանեակք** նոցուն Ղուսաւոր **հանդերձեցին** »:

Առաջին թարգմանչաց ձեռքով կատարուած Ագաթանգեղայ հայերէն թարգմանութիւնը՝ լինելով ճշմարտութիւն իմն առանց երկբայութեան, այժմ քննենք նորա մերձաւոր պարագաները և ժամանակն յորում կատարուեցաւ այն. որովհետև ճիշդ տարեթիւն որոշելն ամենադժուարին է, այնու զի նախնի մատենագիրք մեր որոշ բան մի աւանդած չեն: Արդ, Ս. Գրոց առաջին թարգմանութիւնը պէտք է, ըստ իս, դնել իբրև չուակէտ կամ լաւ ևս եզր այսպիսի խուզարկութեան, յորմէ և անդր չէ մարթ անցանել. որովհետև, ըստ վկայութեան Կորեան, զկնի գիւտի գրոց այս եղև **առաջին յանկարծադէպ** և **փութանակի** թարգմանութիւնը: Երկրորդ, ինչպէս կանխաւ տեսնուեցաւ, այդ թարգմանութենէն համաձայն տեղիք մէջ բերուած են յԱգաթանգեղ: Չէ մարթ բնաւ Ե դարու վերջին կիսում կամ մօտ յամն 480 եղած համարել Ագաթանգեղայ թարգմանութիւնն, որովհետև Մովսէս՝ որ իւր պատմութեան գիրքն այդ ժամանակամիջոցին գրեց, Ագաթանգեղոսէն ամբողջական հատուածներ մէջ կը բերէ Խոսրովու, Անակայ, Տրդատայ և Գրիգորի և այլն մասին, բառ առ բառ. որով յայտնի կը լինի, թէ այդ ժամանակէն շատ առաջ կատարուած և ամենուն ծանօթ մի բան էր: Կարելի՞ է արդեօք 445–450 ամին թարգմանուած համարել զայն: Ոչ, որովհետև Կորիւն, որ այդ ժամանակամիջոցին գրեց Ս. Մեսրովպայ պատմութիւնը, Ագաթանգեղայ հատուածներով կը ճոխանայ, և իւր վարդապետին համանման գործերն՝ այնու Գրիգորի գործոց հետ կը զուգակշռէ: Ցամին 435 Ս. Սահակայ և Մեսրովբայ կողմէն առ սուրբ հայրապետսն Ցունաց Պրոկղ և Ակակ գրուած թղթոց մէջ՝ Ագաթանգեղայ 71–74 էջերէն փոխ առնուած երկու հատուածներ կան խաչափայտին և Քրիստոսի մեռեալ պատկերի մասին, տեղ տեղ գրեթէ բառ առ բառ: Արդ այս երևոյթս կը ցուցընէ զէթ, թէ Ագաթանգեղայ հայերէն թարգմանութիւնն այդ թուականէն վերջ չէր կարող եղած լինել: Ուստի դեռ աւելի ընդարձակելով մեր հետազօտութեան սահմանները, ես չեմ տարակուսիր այլ և՝ ամփոփել գրոցս թարգմանութեան ժամանակն 426–430 ամաց պարունակի մէջ:

Եւ յիրաւի, այս բանս կը հաստատուի չորս հնագոյն և վաւերական յիշատակարանօք: Ա. Ըստ վկայութեան Կորեան, յամին 426 Ս. Սահակ Վաղարշապատու ժողովը գումարելով եկեղեցական բարեկարգութեանց համար, հրաշալի առենաբանութիւններ և այլ և այլ հանրական թուղթեր գրեց առ եպիսկոպոսունս՝ դնելով առաջի պէսպէս կանոնս վասն քորեպիսկոպոսաց, եպիսկոպոսաց և քահանայից և 'ի վերայ նուիրաց: Արդ այս կանոններուս մէջ՝ որդւոց քրմաց առ Ս. Գրիգոր ըրած հարցմունքն և Գրիգորի առ նոսա ուղղեալ պատասխանին թէ. « Ծառայեցէք Աստուծոյ ճշմարտի և կեն-

դանւոյ». այսպէս նաև Տրդատայ՝ առ նոսա ըրած պարգևաց և երախայրեաց մասին հատուածներն՝ համաձայն են Ագաթանգեղայ 610 և 626 էջերում աւանդածին: Իսկ որովհետև այդ կանոնական թղթերէն վերջ դրուած յիշատակարանի[1] վկայութեան համաձայն՝ Գրիգորի գործոց յունարէն բնագրէն թարգմանուած էին. ուրեմն հետևութիւնն ինքնին յայտնի է: Բ. **Օրհնութիւնաբեր ցուցակի** կարգաւորութեան մէջ, որ կը գտնուի[2] թէ՛ ՚ի գրչագիր մատենին Գ Վատիկանու (թիւ 8), և թէ՛ ՚ի հնագիր **Կանոնագրքէ** ուրեք գրատան վանացս և կ'ընծայուի Մովսիսի ատենադպրին[3] Ս. Սահակայ, կը ծանուցանէ, Ա. թէ յետ ՃԺԱ ամի (քարոզութեան) Ս. Գրիգորի «եղև սկիզբն թարգմանութեան ՚ի հայերէն լեզուս». այսինքն է յամին 412. որովհետև ինչպէս այլուր տեսնուեցաւ, յամին 286 հանդիպեցաւ Գրիգորի մուտն ՚ի վիրապ ըստ տոհմային պատմագրութեան, և յետ 15 ամաց այսինքն է, 301ին ելքն ՚ի վիրապէն և քարոզութիւնն: Բ. Ս. Սահակայ կաթողիկոսութիւնը կը դնէ ճիշդ այս տարւոյս մէջ, այսինքն է յամն 412: Գ. Կը ծանուցանէ, թէ Օրհնութիւնաբեր ցուցակի կարգաւորութիւնն սկսաւ յառաջին ամի կաթողիկոսութեան Սահակայ և աւարտեցաւ յետ երեքտասան ամաց. այսինքն է 413–426, յորում ամի երեր, կ'ըսէ, Ղազար (կամ Ղազրիկ և կամ Եղիազար) ումն զաղօթս և զօրհնութիւնս սրբոց Հարցն Գր. Աստուածաբանի, Բարսղի, Եփրեմի և Կիւրղի, Ցուստոսի և Թէոդորոսի, զորս թարգմանեցին Կորիւն Արջևան (Արծան), Խոս-

1. Այս յիշատակարանիս մէջ ծայրագոյն հեղինակութեամբ տրուած նզովքն իսկ՝ ընդդէմ անհնազանդից, որ կ'ըսէ. «Արդ եթէ ոք չհնազանդեալ կանոնիս նորաձևել կամեսցի զկարգեալ սահմանադրութիւնս, մի՛ ընկալցի մասն և վիճակ ժառանգութեան յարքայութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ», յայտնի ապացոյց է նորա հարազատութեանը:

2. Այսպիսի վերնագրով. «Կարգաւորութիւնք ցուցմանց Օրհնութիւնաբեր ցուցակին, եթէ ո՛վ ոք կամ յորում ժամանակաց հայրապետաց են արարեալ զկարգս օրհնութիւնաբեր ցուցակիդ. և թէ ո՛վ ոք երեր ՚ի Հայաստան աշխարհ և որո՞ց հրամանաւ կամ կարգաւ տառեցին: Երանելւոյն Մովսիսի Խորենացւոյ թարգմանչի, որ էր գրիչ սրբոյն Սահակայ հայրապետին Հայոց որդւոյ Ս. Ներսիսի»:

3. Բանաւոր կերպով տարակոյսներ հանելու իրաւունք ունէր Չամչեան (Պատմ. Հայոց հտ. Ա. էջ 778), թէ այս Մովսէսը մեզի ծանօթ Խորենացին չի կրնար ըլլալ, այլ լինելոց է Մանազկերտացին այն և առաջին աշակերտ Ս. Սահակայ, որ Գիւտէն յառաջ եկաց կաթողիկոս. և կամ Տարոնացին Մուշէ, որ է Մովսէս. որովհետև այդ ժամանակ Խորենացին հազիւ ուրեմն ծնած էր, թէ շատ 10–15 ամեայ մանուկ, համարելով որ 412–426 աւարտեցաւ այն կարգաւորութիւնն: Ցիրաւի, դիտելու ենք, որ Օրհնութիւնաբեր ցուցակին մէջ՝ հեղինակն, ինքզինքն պարզապէս Մովսէս կ'անուանէ, յասելն. «Ձեռամբ իմով Մովսիսի՝ գրչի Սահակայ Պարթևի»: Ուստի ինձ կը թուի, վերոյիշեալ Օրհնութիւնաբեր ցուցակի վերնագիրն, յետնագունէ միջէ ներմուծուած է, որ Մովսէս անունը վրիպակ ենթադրութեամբ Խորենացւոյն վերագրել է: Ուստի այս յիշատակարանիս վկայութիւնն աւելի եզրակացուցիչ է ՚ի վեր անդր ասացելոցս, եթէ ստուգիւ Խորենացիէն աւելի երիցագոյն Մովսիսի մի գործ իցէ և կամ նոյն ինքն Խորենացւոյ երիտասարդ հասակին;

րով և այլք, իրենց բացակայութեան ժամանակ 'ի Միջագէտս և 'ի Բիւզանդիոն: Սակայն յիշատակարանս այնու աւելի բաղդատր է, զի յետ յիշելոյ զթարգմանութիւն գործոցն Ս. Գրիգորի մերոյ Լուսաւորչին. մասնաւորապէս « Վասն որ զնշխարսն 'ի հանգիստ փոխեն », անդէն կը յաւելու, թէ այս գործս կատարուեցաւ « 'ի նաւասարդի ամսոյ որ աւր մի էր և յիշատակ սրբոյ Կարապետին ... 'ի Վաղարշապատ քաղաքի 'ի վկայարանի սրբոյն Հռիփսիմէի » : Արդ՝ թէպէտև ես չկարեմ ասել, թէ նշխարաց 'ի հանգիստ փոխադրելու և այլն կանոններով՝ հեղինակս ուղղակի Ագաթանգեղայ վերջին գիրքը կը հասկնայ, յորում ամենայն ինչ մանրամասն նկարագրուած են և ոչ ալ Հռիփսիմեանց այդ վկայարանով՝ զնոր նորոգեալն 'ի Ս. Սահակայ իմանալ: Սակայն Նշանաւոր կարգաց բանից Եզնկայ, զոր 'ի վեր անդր յիշատակեցի կը թուի հաստատել զայս. որովհետև անդէն զկնի առաջին թարգմանութեան Ս. Գրոց՝ կը յիշէ զնորագունեան կամ լաւ ևս զթարգմանութիւն « Գործոցն Գրիգորի » : Երկրորդ, ճիշդ այդ ժամանակամիջոցին կը դնէ զհանումն նշխարաց սրբոց Հռիփսիմեանց և զնորոգութիւն վկայարանաց նոցա, յաւելն այսպէս. « Եւ եղև հանումն և նորոգումն ոսկերացն սրբոցն Գայիանեայ և Հռիփսիմեայ և ընկերաց նոցին 'ի Սահակայ կաթողիկոսէ, զի եղածովն Գրիգորի կային նոքա: Եւ շինեաց զվկայարանսն վիմատաշ կոփածոյ քարամբք 'ի Վաղարշապատ քաղաքի և նորոգեաց զտուն Աստուծոյ, այսինքն է զսուրբ եկեղեցին: Զի մեծին Գրիգորի եղեալ էր զհիմունս զայն, որպէս ցուցեալ էր Տեառնն Եւսեբեայ »: Այսպէս ուրեմն կարելի է ասել, թէ զլոց գլխոյ մեծագոյն արդիւնքն և թարգմանչաց նուիրական և առաջին գործն եղաւ, փութալ թարգմանել զՍ. Գիրս և զԳործ Ս. Գրիգորի. որովհետև, ըստ վկայութեան Օրհնութիւնաբեր ցուցակին, « մինչև ցայն վայր՝ հռոմն, (այսինքն է յունարէնով) վարէին » զկարգս Գործոցն Գրիգորի:

Ցիրաւի, այս բանիս ապացոյցն՝ այսինքն թէ Ագաթանգեղայ գրոց խմբագրութիւնն և թարգմանութիւնը կատարուեցաւ Հռիփսիմեանց նշխարաց հանման և Էջմիածնայ շինութեան ժամանակ կամ քիչ ետքը, յայտնապէս կը տեսնուի նաև առ խմբագրի նորա. զի այս առթիւ ներմուծուած է Ցառաջաբանի մէջ 13–18 էջ Հռիփսիմեանց ներբողեանն. այս առթիւ՝ Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութեան հեղինակն յէջ 400 Հոգւոյն Սրբոյ բաժակին վրայ խօսելով, զոր արբին Առաքեալքն, անդէն յանկարծակի խօսքը Հռիփսիմեանց և Գայիանեանց վերայ կը դարձնէ՝ ասելով. « Ահա երեսուն և եօթն բաժակք քրիստոսեանք՝ որ եկին պաշտել զձեզ »: Այս առթիւ կազմաւ երկեցաւ այժմեան ձևով Գրիգորի Տեսլեան դրուագն և ներմուծաւ անդ:

Գ. Ապացոյց մ'այլ, Ագաթանգեղայ գրոց վերոնշանակեալ ժամանակին մէջ թարգմանուած և խմբագրուած լինելուն՝ կ'ընծայէ մեզ Հռիփսիմեանց ներբողեան ճառն [1], զոր գրեց Մովսէս

1. Այս ճառիս հարազատութեան մասին՝ արդէն իմ կարծիքս յայտնած եմ 'ի « Քննադատութեան » անդ Մ. Խորենացւոյ առ Սահակ Արծրունի գրուած թղթոյն. և այժմ իսկ նոյն համոզումն ունիմ:

մօտ այս ժամանակիս, այսինքն է նախ քան զառաքումն իւր յուսումն 'ի տար աշխարհս: Ցիրաւի, այս բանս Մովսէս ինքնին բարեբաղդաբար կը ծանուցանէ մեզ նախ 'ի մուտս Ներբողենւոյն այսպէս. « Չիմն ստիպէ դեռաբոյս անձն՝ զսրբոյ մօրս և կուսի աստուածավայելուչ փառաց ներբողել 'ի յարախմբմունս հոգւոր սորա ծննդոց ». և 'ի վերջաբանի անդ կ'ըսէ. « Այսոքիկ քեզ յիմոց բանիցս պտուղ երջանիկդ ի կանայս ... Ընծն քրտունք իմոյ նորաբոյս հոգւոյս, որ զքեզ սիրէ՝ սիրեցեալդ իսկապէս բարւոյն »: Իսկ արդ այս ճառիս մէջ համնարեղ պատանին ոչ միայն քայլ առ քայլ հետևած է պատմելոցն 'ի գիրս Ագաթանգեղայ՝ զՀռիփսիմեանց, այլ 'ի բազում ուրեք հատուածս [1] ևս և զոնս բանից իսկ կը քաղէ անտի բառ առ բառ: Ուրեմն աստի իսկ պէտք է հետևցնել, թէ Մովսէս՝ այդ ճառը գրած ժամանակ՝ Ագաթանգեղայ հայերէն թարգմանութիւնն ունէր արդէն 'ի ձեռին:

Դ. Փաստ մ'ալ կ'ընծայէ մեզ Ցունական եկեղեցւոյ ժամակարգութեան և Պատարագամատոյցի թարգմանութիւնն, որ հասած է մեզ յանուն Ս. Բարսղի, Գր. Նազիանզացւոյ, Աթանասի, և մերոյս Լուսաւորչի, յորմէ՝ ինչպէս ըսուեցաւ, հատուածք բանից և բացատրութիւններ կը գտնուին յԱգաթանգեղ. իսկ որովհետև այս թարգմանութիւնս և կարգաւորութեան ժամանակն իսկ նոյն է ընդ ժամանակի կարգաւորութեան Օրհնութիւնաբեր ցուցակին, ուրեմն բոլոր այդ եղելութիւնքն 'ի նկատի ունելով, կարելի է եզրակացնել, թէ ստուգիւ յետ նախկին և յանկարծագիւտ թարգմանութեանն Ս. Գրոց և կարգաւորութեան Օրհնութիւնաբեր ցուցակաց, Ագաթանգեղայն եղած է անդրանիկ 'ի մէջ այլոց թարգմանութեանց. նա ինքն եկաց իբրև հնագոյն և հրաշապատում մատեան անցից Հայաստան աշխարհիս և իբրև փարոս իմն լուսաճաճանչ նախկին լուսաւորութեան ազգիս և ազգային դպրութեան, յորմէ լոյս առին և

1. Ցիրաւի, յէջ 307 Հռիփսիմեանց ազնուատոհմութեան, մեծատանին և նոցա սրբասէր զգաստասէր կենցաղավարութեան մասին աւանդածը՝ բանաքաղութիւն է Ագաթանգեղայ գրոց 113 իջին: Ցէջ 308 և 310 բանսարկու օձին սադրանաց, Դիոկղետիանոսի անկարգ տռփանաց և ընդդէմ Եկեղեցւոյ յարուցած հալածանաց հատուածքը՝ նոյն են Ագաթանգեղայ 114–115 էջերուն: Այսպէս նաև Տրդատայ մեծայոյզ քննութեան և վաղարշապատցոց կայթիւք և փողօք զհարսանիս թագաւորին յօրինելոյն հատուածը՝ փոխառութիւն է Ագաթ. 127 և 143 էջերուն: Ցէջ 311 զգաստութեան մօր Գայիանեայ յորդորն առ հոգևոր դուստրն իւր՝ նոյն է 146 իջին Ագաթանգեղայ: Ցէջ 313 սէգն Տրդատայ վերայ յօրինուած առակաւոր հատուածն՝ բառ առ բառ Ագաթ. 103–104 էջէն մէջ բերուած է. ինչպէս Տրդատայ ամօթապարտ պարտութեան հատուածն ալ՝ 150 իջէն: Ցէջ 114 Հռիփսիմեայ յաղթական կերպով 'ի հնձանայարկն հասնելն և իւր ընկերաց աւետիս տալը՝ նոյն է Ագաթ. 151 իջին: Ցէջ 320 Հռիփսիմեանց դառնակսկիծ մահուան հատուածը բանաքաղութիւն է Ագաթ. 155 իջին: Այսպէս նաև յէջ 324 բ. պարբերութիւնը, թէ « Սոքա են մերոյ աշխարհիս որպէս լուսաւորք փայլեալք » այլովքն հանդերձ, նմանութիւն է Ագաթանգեղայ գրոց Ցառաջաբանի 14 իջում եղած դրուատեացը:

որում հետևեցաւ ոչ միայն բոլոր տոհմային մատենագիրք, այլ և ոչ սակաւք յարտաքնոց անտի: Այս տեսակէտովս՝ ոչ խմբագրին եկամուտ հատուածները կը կրտսերացնեն զայն, և ոչ ալ պատմական և աշխարհագրական անճշդութիւնք բաւական են բառնալ'ի մէնջ նորա վարկն և արժանիքն. այլ կարեմք միշտ կոչել զայն հարուստ թանգարան հայկական լեզուի, պատմութեան, աշխարհագրութեան և դիցաբանութեան և պարծանք անցելոց, ներկայից և ապագայ հայ սերնդոց:

Մինչև հիմայ Ագաթանգեղայ նախկին յունարէն և հայերէն խմբագրութեանց հնութեանն 'ի նպաստ մէջ բերուած փաստերէն խակ ակներև կը տեսնուի, թէ ո՛րքան օտար են 'ի ճշմարտութենէ **Հանդէսներու** և պարբերական թերթերու մէջ շրջող այն անհաստատ կարծիքներն, որովք համարեցան ոմանք, թէ Կորեան **Պատմագրութիւնն** յառաջ գրուած է՝ քան զԲուզանդայն, որպէս և վերջնոյս՝ քան զԱգաթանգեղայն: Մինչդեռ ապացուցեալ ճշմարտութիւն մ'է (Տես «Հանդէս ամսօրեայ», 1887, թիւ 1, էջ 9–12. Հ. Ց. Գաթրճեան յօդուածը), թէ Կորիւն յամին 445–450 գրած է Ս. Մեսրովբայ Պատմութիւնն:

# ԳԼՈՒԽ ԺԻ·

Այժմեան յունարէն Ագաթանգեղոսի բնագիր կամ ընդհակառակն թարգմանութիւն ըլլալու խնդիրը. — Ագաթանգեղոս և Գրիգորի գործոց յունարէն և նորագիւտ ձեռագիրք և նոցա քննութիւնք. — Թէ՛ «Գրիգորի գործերն» և թէ՛ յունարէն «Ագաթանգեղոսն» չեն կարէին ըլլել բնագիր հայերէնի. — Այժմեան յունարէն Ագաթանգեղոսն ուղղակի հայերէնէն թարգմանուած է. — Լեզուական և պատմական ապացոյցք առ այս. — Եզրակացութիւն։

Յետ ապացուցանելոյ, թէ հայերէն Ագաթանգեղոսն է թարգմանութիւն յունարէն բնագրէ, այժմ այս խնդիրս ընդ առաջ կ'ելլէ մեզ. Արդեօք այժմեան ծանօթ յունարէնն իցէ՞ այն բնագիրը, թէ, ընդհակառակն, նա ինքն իսկ յետոյ ժամանակաւ հայերէնի վրայէն եղած թարգմանութիւն է: Ես՝ յետ բաղդատութեան այդ կրկին օրինակաց ընդ իրեարս և յետ մանրազնին հետազօտութեան երկաքանչիւրին մէջ յայտնուած պարագայից, այլ ոչ ևս իբրև կարծիք կամ ենթադրութիւն, այլ իբրև մի կատարեալ եղելութիւն ստիպուած եմ ընդունել և ապացուցանել զվերջին մասն հարցմանս: Բայց որովհետև ձեռագրաց խուզարկութիւնը՝ հետ զհետէ յունարէն Ագաթանգեղոսի և Հայոց լուսաւորութեան հօր Գրիգորի վարուց և գործոց նորանոր ձեռագրեր կամ լաւ ևս հնագոյն ձեռագրաց հատակոտորներ կը յայտնէ ուսումնատենչ աշխարհի դիմաց, ուստի լուրջ քննադատութիւնը կը թելադրէ ինձ նախ այդ նորոգ յայտ_

նուած յիշատակարանաց վերայ ակնարկ մի տալ, տեսնելու համար, թէ կը տարբերի՞ն արդեօք դորա Վիկ. Լանգլուայի և Գ. Լազարդի հրատարակութեամբ մեզ ծանօթ Փլորենտեան (Plut. 7. Cod. 25) յունարէն Ագաթանգեղոսէն:

Պարիզու թիւ 1489 և թիւ 1491 ձեռագրաց վրայէն Մինյի ձեռքով եղած Գրիգորի Գործոց հրատարակութիւնը [1], որ համառօտ է Սիմէոնի Մետափրաստեայ գործի հրատարակութեան 943–996 էջերուն, արդէն 'ի վաղուց ծանօթ պէտք է որ եղած լինի ազգային բանասիրաց գէթ ոմանց. ուստի այս մասին ես ուրիշ ըսելիք բան մի չունիմ: Սակայն յամին 1887 հանրածանօթ գիտնական Պ. Դը Լագարդի անխոնջ ուսումնասիրութեամբը Վատիկանի երեք ձեռագրոց [2] վրայէն՝ 'ի Գեօտտինգէն եղած հրատարակութիւնն (Die Akten Gregors von Armenien), մեծապէս իմ ուշադրութիւնս առ ինքն գրաւեց: Օգտակար ծառայութիւն և միանգամայն մեծ դիւրութիւն պատճառած կը լինէր մեծանուն գիտնականն, եթէ նախ այդ հրատարակութեան համար 'ի գործ ածեալ ձեռագրաց վերայ մանրամասն տեղեկութիւններ հաղորդէր: Բ. իւր ձեռնհաս հեղինակութեամբը բաղդատելով հրատարակութեան սոյն մասը, այսինքն է «Գրիգորի Գործերը», միւս մասին, այսինքն է «Ագաթանգեղոսի» հետ՝ նոցա իրարմէ ունեցած տարբերութիւնքն 'ի հանդիսի կացուցանէր, գէթ լեզուական տեսակէտով: Նա ինքն յէջ 89 համառօտիւ կը ծանուցանէ, մանաւանդ անմեղադիր առնէ զանձն իւր նկատմամբ առաջին կէտին, ասելով, թէ ձեռագրաց վերայ աշխատած ժամանակ՝ 'ի գրի առած էր պահանջուած տեղեկութիւններն՝ բայց յետոյ չգիտեմ զիմրդ, կորսնցուցել էր զանոնք: Իսկ առանձին նամակաւ զիս վստահացուց, թէ ԺԱ դարուն գրուած են այդ ձեռագրերն:

Իմ կողմանէս ըրած բաղդատութեանցս արդիւնքն՝ ահաւասիկ այսպէս կը համառօտեմ: Ի սկզբնաւորութենէն սկսեալ՝ ցվերջաւորութիւնն, շարադրութեան կազմութիւնը բոլորովին կը տարբերի յունարէն Ագաթանգեղոսի շարաբանութենէն. այնպէս որ անմարթ է գտնել տողս ինչ, (թէ և մի և նոյն նիւթին վերայ կը խօսի) որ բառ առ բառ վերջնոյն հետ զուգընթանայ. – Յատուկ անուանց շատերը՝ լռուած են կամ չգոն 'ի միջի՝ իւրեանց յարակից վիպաց և նկարագրութեանց հետ 'ի միասին, զորս անթերի ունին Ագաթանգեղայ թէ՛ յունարէն և թէ՛ հայերէն օրինակներն. իսկ յիշատակուած անուանքն ալ՝ երբեմն տարբեր ուղղագրութեամբ և շեշտաւորութեամբ գրուած են. – Տրդատայ և Գրիգորի դէմ ընդդէմ խօսակցութիւնքն, որ յունարէն Ագաթանգեղոսի մէջ՝ վեց թուղթ կը լեցնէ և հայերէնի համեմատ է, յայսմ, ընդհակառակն՝ երկու թղթի մէջ բովանդակուած են՝ հանդերձ տանջանաց նկարագրութեամբք.

1. Patrologia græca, t. 115:
2. a = Vaticanus 794: Blatt 251[a] ff.
b = „ 795: „ 216[a] ff.
c = „ 796: „ 379[a] ff.

*իսկ եօթնօրեայ կախաղանին վրայէն ըրած վարդապետութիւնն իսպառ կը պակսի. — Տրդատայ զոյգ հալածանաց հրովարտակները չի պտրունակեր. — Դիոկղետիանոսի առ Տրդատ գրուած թղթոյն յիշատակութիւնն անգամ կը լինի աստ. — Հռիփսիմեայ և Գայիանէի բերանը դրուած երկայն աղօթքներէն և յորդորներէն՝ մասն մի միայն կ'աւանդէ մեզ. — Գրիգորի վիրապէն ելլելէն մինչև ցերթն նորա 'ի Կեսարիա յԱգաթանգեղ ընդարձակաբար պատմուած դէպքերն՝ աստ հազիւ թէ երեք թուղթ միջոց մի գրաւած են, զի չեն պարունակեր զնախապատրաստիչ հատուածսն՝ առ ընդարձակ վարդապետութիւն անդր, ոչ զնկարագիրս Տեսլեան Գրիգորի, ոչ Տրդատայ՝ Մասեաց լեռնէն արաստոյ վէմս բերելն և ոչ աւ կռոց կործանման առանձին առանձին նկարագիրսն՝ տեղեօք և պարագայիւք. — Տրդատայ խոզակերպութեան և Հռիփսիմեանց նշխարաց փոխադրութեան մասին յաճախ և տարբեր պարագաներով յեղյեղուած հատուածքն առ Ագաթանգեղ, աստ ոմանք հազիւ ուրեմն յիշատակուած են, իսկ այլք՝ ոչ գտանին. — Գրիգորի 'ի Կեսարիա ընկերող նախարարաց վեշտասան թուոյն միայն յիշատակութիւն կայ, բայց ոչ նոյնպէս և անուանց. — Գրիգորի ձեռքով կատարուած Աւետարանի քարոզութեան սահմաններէն՝ Պարսք, Ասորեստան, Հոնք և Մարք միայն կը յիշուին. — Յետ դարձին 'ի Կեսարիոյ Գրիգորի ձեռքով կործանեալ կռոցմէ՝ զՀերակլէս միայն կը յիշէ յանուանէ. — Լուսաւորչէն ձեռնադրուած եպիսկոպոսներէն՝ Բասոս միայն և Աղբիանոս (ըստ Ա. ձեռագրին Ալկինոս) կը յիշուին յանուանէ. — Տրդատայ՝ առ Ղևոնդիոս գրուած թղթոյն նման թուղթ մի կ'ընծայէ, բայց թերի և աննման յունարէն և հայերէն Ագաթանգեղոսի ընծայածներուն. — Ղևոնդիոսի առ Տրդատ գրուած թուղթն իսպառ կը պակսի. — Կոստանդիանոսի՝ բռնաւորաց դէմ տարած բոլորական յաղթանակը թէպէտև կը յիշուի, բայց 'ի լռութեան· թողուած են նոցա անուանքը. — Տրդատայ 'ի Հռովմ երթին նկարագիրն և ուղեկից նախարարաց անուանքը՝ չգոն 'ի միջի. — Չկան դարձեալ ոչ յԱշտիշատայ մեհենին կործանման ժամանակ՝ խաչիւ յարուցած հրոյն պատմութիւնն, ոչ Ջորեաց զկայ առնուլն, ոչ Տրդատայ մկրտութեան ժամանակ կատարուած սքանչելեաց, ոչ հրեշտակին երևման առ Գրիգոր և առ Տրդատ, ոչ Կոստանդիանոսի թագին, ոչ ազգային տիպ ունեցող ցիր և ցան հատուածոց և ոչ աւ Կորեան նմանաբան տեղեաց հետքերն:*

*Արդ, բոլոր այս և ասոնց նման ուրիշ մանր պարագաներ յայտնապէս կը թուին ցուցանել, թէ երեք ձեռագրաց մեզի ընծայած* **Գրիգորի Գործերը**՝ *ոչ հայերէն Ագաթանգեղոսին բնագիր լինելու յատկութիւնները ունին և ոչ իսկ նորա վրայէն եղած մի թարգմանութեան. որովհետև հազիւ թէ քառորդ մասն է գրոցն Ագաթանգեղայ և զուրկ է յայնմ ամենայնէ, զորս ընծայեն մեզ յունարէն և հայերէն օրինակք Ագաթանգեղայ: Ուրեմն կը մնայ ըսել, թէ կամ այդ յունարէն երկասիրութիւնն իբրև հնագոյն ծրագիր իմն և աղբիւր՝ ծառայած է յերբեմն ժամանակի ընդարձակ խմբագրութեան*

գրոցն Ագաթանգեղայ՝ և կամ, ընդ հակառակն, յետոյ ժամանակաւ Ագաթանգեղայ գրոց վրայէն եղած համառօտ կենսագրութիւն մի է, զոր գրեց յոյն ոմն յատուկ ոճով և շարաբանութեամբ, 'ի բաց թողլով բոլոր այն մասերն, որոնք լոկ ազգայնութեան և անհարազատութեան տիպ ունէին յԱգաթանգեղ: Ագաթանգեղայ յունարէն օրինակի լեզուին և շարաբանութեանն համար՝ արդէն 'ի վաղուց վըկայած են Լազարդ և Գուդշմիտ, թէ բարբարիկ և անկեալ ժամանակի գրութիւն է. իսկ «Գրիգորի Գործոց» լեզուին և շարաբանութեան համար ոչ ոք 'ի ձեռնհաս յունագիտաց դատաստան մի ըրաւ, ըստ իմս գիտութեան. իսկ ես անձեռնհաս կը համարիմ զիս վճռել զայն իբրև աւելի դասական և յստակ և կամ ընդհակառակն: Սակայն և այնպէս յերկուսին դէպս իսկ աւելի հաւանական կը համարիմ հետևութեանս վերջին մասը:

Թանուքեցւոց և Ակուիլացւոց եպիսկոպոսն Գէորգ ասորի՝ առ Յէշու ոմն ճգնաւոր յամի Տեառն 714 գրած ընդարձակ թղթոյն մէջ, զոր արդէն հրատարակած է Լագարդ[1], Գրիգ. Լուսաւորչայ համառօտ պատմութիւնը կ'ընէ, առնելով նորա Կենսագրութենէն, զոր ինքը կը կոչէ «Պարծանքն որ 'ի վերայ նորա», այսինքն է Գրիգորի:

Արդեօք ասորի եպիսկոպոսէն՝ Գրիգորի Պատմութիւն կոչուած այս երկասիրութիւնս՝ նոյն համարելի է ընդ Ագաթանգեղայ, թէ, ընդհակառակն, բոլորովին մի ուրիշ աղբիւր եղած է, անկախ 'ի գրոց Ագաթանգեղայ, և կամ Գրիգորի Գործոց Պատմութենէն, զոր հրատարակեց Պ. Դը Լագարդ, առընթեր Ագաթանգեղոսի:

Արդ Գէորգայ թղթոյն Ե. գլխոյն մէջ արտայայտուած պարագաներուն եթէ ուշ դնենք, վերջին կէտը կը թուին հաստատել, որովհետև թէ՛ Ագաթանգեղոս և թէ՛ Գրիգորի գործոց մէջ չեն գտնուիր այդ պարագայքը. այսինքն է, նորա ասածով, Ա. Գրիգոր. էր ազգաւ Հռոմայեցի: Բ. Ի մանկութենէ, Դիոկղետիանոսի հալածանաց կամ մի ուրիշ պատճառաւ, 'ի Հայս եկած, հոն սնած, Հայոց լեզուն ուսած, մեծ համբաւ տարածած և տարիներ Վաղարշապատու արքունեաց մէջ իբրև մերձաւոր՝ Տրդատայ մեծամեծ ծառայութիւններ մատուցած է: Գ. Վաղարշապատու գբոյն մէջ փոխանակ 15ի՝ 13 տարի կեցած կը համարի: Դ. Ոչ Հռիփսիմեանց և ոչ այլ նոցա պատմական անցից յիշատակութիւն մի կ'ընէ: Ե. Տրդատայ դիւահարութիւնը յիշելով՝ նորա խոզակերպութեանը մասին բնաւ խօսք չըներ: Զ. Կ'ըսուի, թէ թագաւորն՝ Խոր քնոյ Հոգեւորին յիշեց հանել զսուրբն 'ի գբոյն, և Խոսրովիդուխտ բնաւ յիշուած չէ: Է. Կ'ըսէ, թէ Գրիգոր՝ Կեսարիոյ եպիսկոպոսապետին Ղևոնդիոսի հետ գնաց 'ի սուրբ ժողովն Նիկիոյ: Ը. ԶՏրդատ թագաւոր կը համարի ոչ միայն Հայոց, այլ նաև Պարթևաց:

Արդ, Ասորի եպիսկոպոսին՝ մեզի աւանդած յիշեալ տեղեկու-

1. P. Lagardii Analecta Syriaca (Lipsiæ). Londini, 1858. XX. 208 էջ: Իսկ թարգմանութիւնը տես «Հանդէս Ամսօրեայ», 1890, թիւ Ա;

թիւններս ստուգիւ եթէ զրաւոր երկասիրութենէ մի քաղուած լի-նէին, այն ժամանակ հաստատուած կը լինէր մեզի անծանօթ մի ուրիշ աղբեր գոյութիւնն: Սակայն ինձ շատ հաւանական կը թուի, թէ վերյիշեալ կէտերն՝ Գէորգ ասորին մասամբ Ագաթանգեղոսէն կամ Գրիգորի կենսագրութենէն, մասամբ այլ Զենոբայ գործէն գու-շակելով կամ զանոնք լաւ չի հասկանալուն պատճառաւ, ըստ կամս յերիւրած է: Նւ յիրաւի, այսպիսի մի իրողութեան յայտնի ապացոյց են նորա խօսքերն, որ վերյիշեալ տեղեկութիւններէն անմիջապէս յետոյ և « Այս է պարզ և համառօտագոյն պատմութիւն Գրիգորիո-սի ուսուցչին Հայոց » բացատրութենէն վերջ, կ՚ըսէ այսպէս. « Բայց կ՚արժէ, որ առաւել ՚ի հաւատարմութիւն մեր խօսքին, սակաւ բանս քաղեմք այս մարդուն, (այսինքն է Գրիգորի) կենսագրութե-նէն »: Նւ իրօք, այս անգամ աւանդած կէտերն ըստ մեծի մասին ՚ի վեր անոր աւանդածներէն կը տարբերին, և Ագաթանգեղոսի և Զենոբայ աւանդածներուն քաջ կը համաձայնին. այսինքն են Դիոկ-ղետիանոսի ժամանակ Տրդատայ Հայաստանի վերայ թագաւորելն, — Տրդատայ պալատին մէջ Գրիգոր անուամբ մարդու մի քրիստո-նեայ յայտնուիլն, — նորա կրած չարչարանքներն, վիրապի մէջ ձգուիլն, և Ագաթանգեղայ 103 իջի համաձայն, 13 տարի նորա մէջ կենդանի պահուիլն, — զօրաց բազմութեամբ Տրդատայ որսի ելնելն և պատուհասուիլն, — Գրիգորի Տեսլեան յիշատակութիւնն և Աստուծոյ զօրութեամբ թագաւորի ոտքերն և ձեռները բժշկելն և մարդկային բնութեան վերայ դարձնելն, — նախարարականոյտ բազմութեամբ ՚ի Կեսա-րիա երթալն և Ղեոնդիոսէն ձեռնադրուիլն: Յետ որոց դարձեալ կը յաւելու. « Այս սակաւս դրինք հոս Գրիգորիոսի ընդարձակ պատմու-թիւնէն,» (այսինքն է Ագաթանգեղոսէն): Իսկ Գրիգորի՝ Նիկիոյ սինհո-դոսի 318 հայրապետներէն մին լինելուն ՚ի հաստատութիւն՝ մէջ կը բերէ այս անգամ, ոչ թէ Գրիգորի Պատմութիւնն, այլ յիշեալ ժողո-վոյն Աշխատութիւններն, զորս յունարէն բառով πεπραγμένα ա-նուանած է: Սակայն դիտելու է, որ Նիկիոյ ժողովական Հարց այլ և այլ լեզուներով մեզի հասած ցուցակին մէջ Գրիգ. լուսաւորչի ա-նունը չկայ, այլ նորա որդւոյն Արիստակէսի: Մի և նոյն արձանա-գրութեամբ կ՚աւանդէ նաև Ղեոնդիոսի երթն ՚ի ժողովն Նիկիոյ, և Գրիգորի Աստուածաբանին իւր հօր ներբողենւոյն խօսքերով կ՚ու-զէ հաստատել իւր ասածն: Արդ, Գէորգայ յիշած արձանագրու-թիւնն՝ եթէ մեզի ծանօթ 318 հայրապետաց ցուցակին հետ նոյն է, այնուհետև կարելի է եզրակացնել, թէ երկու պարագայից մէջ ևս՝ ասորի հեղինակիս վկայութիւնը կասկածելի է. և թէ նա Գրիգորի մեզի ծանօթ յունարէն պատմութենէն դուրս ուրիշ մի հնագոյն կամ նոր աղբիւր ունեցած չէ իւր ոլիմաց, բաց ՚ի բերանացի զրոյցներէն։ Յիրաւի, այս երկու եղելութիւնքս դեռ աւելի կը պարզուին, եթէ մէկ կողմէն դիտենք, որ նա իւր ազգակից միաբնակեցին Յէշուայ՝ այն ժամանակի Հայոց հետ ունեցած կրօնական դատի մի ձեռ-ընտու ուզած է լինել, յիշեալ տեղեկութեամբք, որք իբրև նորա առանձին տեսութիւններ մէջ բերուեցան և վերջիններուն հետ չեն

համաձայնիր. և թէ Յեշուայ առ նա գրած թղթով՝ դեռ աւելի պիտի յայտնուէին, եթէ կարելի լինէր ձեռք բերել զայն: Իսկ միւս կողմէն այլ դիտելու է, որ նորա վերջին տեղեկութիւնները, զորս Գրիգորի **Կենսագրութեան** անուամբ մէջ կը բերէ, թէ և համառօտուած են, սակայն և այնպէս կարելի է Ագաթանգեղոսի հետ բառ առ բառ նոյն համարել:

Դիտելու է և այս, որ Գէորգայ աւանդածները, եթէ ստուգիւ ասորերէն բնագրէ մի առնուած լինէին և նորա հետքը կրէին իրենց վրան, անտարակոյս Ղազարդ՝ որ Գրիգորի **Գործոյ** հրատարակութեան մէջ այնչափ մանրախուզիւ հետամուտ եղած է Ագաթանգեղոսին՝ ասորերէն բնագրի մի հետքեր գտնել, անշուշտ զանց չէր ընել մէջ բերել առ այն և Գէորգայ իւր ձեռքով հրատարակած թղթոյն վերոյիշեալ և այլ պարագաները: Ու սակայն նա ամենևին յիշած չէ զայն, որ յայտնի նշան է, թէ մեծանուն գիտնականն ևս Գէորգայ թղթոյն մէջ նոր աղբեր մի գոյութեան բաւական ապացոյց մի չէր նկատել:

Ղազարդէն ամօք յառաջ մի նոր գիւտ ըրաւ յոյն հնագէտն Պապատօպուլոս Կերամեւս, Մակեդոնիոյ Կոսինիցա մենաստանի գրատան մէջ, 'ի լոյս ածելով փոշիներու տակ թաղուած Ժ. դարու մի ձեռագիր, յորում կը գտնուին 17, 97, 109, 110, 132, 174, 237 թուով հին ձեռագրական թերթեր, ըստ վկայութեան[1] հեղինակին, որք կը պարունակեն յունարէն Ագաթանգեղայ բազմաթիւ պատմական հատուածներ և սակաւ 'ի վարդապետութենէն լուսաւորչի: Սոցա մասին այսպէս կը գրէր առ իս յոյն հնախոյզն. « Toutes ces feuilles forment une grande partie de l'ouvrage d'Agathangélos grec, d'après le texte de Florence qui a été publié par les Bollandistes et réimprimé par Langlois dans sa Collection. Le texte de ces fragments n'a aucun rapport avec la rédaction de Métaphraste. Il comprend plusieurs fragments de la partie historique et peu du doctrinal ». Հեղինակիս վերջի խօսքով կարելի է հասկանալ թէ համառօտ վարդապետութենէն մասն ինչ և թէ ընդարձակէն. սակայն հաւանօրէն առաջնոյ անտի լինելու է, յորմէ Թէոդոր Ստուդիտ և այլք ոմանք իսկ 'ի մէջ կը բերեն յերկասիրութիւնս իւրեանց յանուն Գրիգորի Լուսաւորչի: Ուրեմն Կերամեւսի ըսածին համեմատ, վերոյիշեալ թերթերու պարունակութիւնը նոյն լինելով ընդ Փլորենտեան ծանօթ ձեռագրին, փոխանակ միոյ կ'ունենանք յունարէն Ագաթանգեղոսի զոյգ օրինակներ. և այս վերջինս հաւանօրէն պէտք է որ աւելի հին եղած լինի քան զառաջինը: Ցանկալի էր որ յոյն հայագէտն բաղդատելով իրարու հետ հրատարակէր 'ի վայելս ուսումնասիրաց: Արդ իրն այսպէս լինելով՝ չեմ կարող համաձայնիլ Կերամեսի 'ի յետագայն արտայայտեալ կարծեաց, թէ « J'ai tou-

1. ΕΚΘΕΣΙΣ Παλαιογραφικῶν καὶ φιλολογικῶν ἐρευνῶν ἔν Θράκη καὶ Μακεδονίᾳ, Κωνσταντινοπόλει 1886, էջ 28:

jours l'idée que le texte grec d'Agathangélos est le prototype du texte arménien, qui me paraît être altéré avec le temps par des anachronismes ». *որովհետեւ այդ այլակերպութիւնը՝ զոր նա ինքն անգամ ստիպած է խոստովանել, միայն ժամանակագրական անճշտութեանց մէջ կայացած չէ, այլ նոյն իսկ լեզուին, բացատրութեանց, յատուկ անուանց ուղղագրութեան և բովանդակ գրուածքին մէջ, զորս 'ի միասին 'ի նկատի առնելով անմարթ է չորրորդ դարու յոյն հեղինակութեանց մէջ դասել զայն:*

*Մինչև այս վերջին ժամանակներս՝ Ժ. դարէն վերջ եկող յոյն հեղինակաց քով միայն կարելի էր գտնել ուղղակի զյիշատակութիւն Գրիգորի Լուսաւորչին, և զյառաջբերութիւնս հատուածոցն Ագաթանգեղայ. սակայն բազմահմուտ ծիրանաւորն Պիտրա՝*[1] *գտաւ է դարու յոյն մատենագրի մի, այսինքն է Ս. Նիկեփորի Կ. Պօլսոյ պատրիարքին «Ընդդէմ Հերետիկոսաց» երկասիրութենէն այլ և այլ գլուխս անյայտացած հատուածոց և հրատարակեց, յորս կը պարունակուին և հատուածք ինչ վարդապետութեան Ս. Գրիգ. Լուսաւորչին, յաղագս խաչելութեան և մեռեալ պատկերին Քրիստոսի Տեառն մերոյ, հետևեալ վերնագրով.* Τοῦ ἁγίου Γρηγορίου Ἀρμενίας Χρήσεις, *որք բառ առ բառ նոյն են հայերէն Ագաթանգեղայ* 71, 72, 73, 74 *էջերուն: Դնենք աստ դիմացէ դիմաց ընդ հայերէնին այդ հակիրճ հատուածները, զորս իբրև սակաւս 'ի բազմաց մէջ բերած կը համարի սուրբ հայրապետն, հանդերձ Գրիգորի նախերգական ներբողենին:*

*Ցոյն հեղինակս կը գրէ այսպէս.* «Μαρτυρεῖ γὰρ ἡμῖν ὁ μέγας μάρτυς εἰσβήσεται, ὁ τῶν Ἀρμενίων τὸ φῶς τῆς θεογνωσίας ἐπιλάμψας Γρηγόριος, καὶ τὸν θεῖον κατηχήσας λόγον· ἐν οἷς ἐν τῇ ἀκμῇ τῶν κινδύνων καὶ τῷ σκάμματι τῶν ἀγώνων ἔτι ὢν, καὶ τοῖς μαρτυρικοῖς ἱδρῶσι περιῤῥεόμενος, πρὸς τῶν ὅλων Θεὸν τὸν εὐχαριλήριον ὁμοῦ καὶ ἱκέσιον συντιθεὶς λόγον, τοιάδε τινὰ τούτων ἕνεκεν διεξέρχεται». *«Ցիրաւի, յառաջ անցցէ մեզ 'ի վկայութիւն մեծ վկայն, նա ինքն լոյսն Հայոց, Գրիգոր՝ որով բացափայլեաց 'ի նոսա աստուածածանօթութիւնն, յորմէ հոսեալ և աստուածային բանին. զի յորժամ պաշարեալ կայր յանձուկս վտանգաց և 'ի մրցանս մարտից՝ մինչև ցհոսումն մարտիրոսական կայլականն, ուղղեաց զբանս իւր մաղթողականս առ Աստուածն բոլորից բնութեանց 'ի սուրբ Հաղորդութեան. և 'ի միջի այլոց ասաց և զայսոսիկ՝ զորս ածեմք 'ի մէջ».*

| *Ս. ՆԻԿԵՓՈՐ.* | *ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ.* |
| --- | --- |
| « Ἐπειδὴ ἠγάπησαν οἱ ἄνθρωποι σέβειν τὰς ἀνθροπομόρφους εἰκόνας ξυλογλύπτους | *« Որ վասն զի սիրեցին մարդիկ պաշտել զպատկերս մարդաձեւս փայտագործս հիւսանց, եւ* |

1. Spicilegium Solesmense, etc. T. I, p. 499-502. Parisiis.

τέχνῃ τῶν τεκτόνων, ἐγένετο Αὐτὸς ἀληθινὴ εἰκὼν ἀνθρώπου ἵνα τοὺς εἰκονοκτίστας, καὶ εἰκονογλύφους, καὶ εἰκονολάτρας τῇ ἰδίᾳ εἰκόνι τῆς θεότητος ὑποτάξῃ. Καὶ ἐπειδὴ ἦσαν οἱ ἄνθρωποι, συνεθισθέντες τὰ ἄψυχα εἴδωλα τὰ νεκρὰ προσκυνεῖν, ἐγένετο Αὐτὸς νεκρὰ εἰκὼν ἐν τῷ στουρῷ, καὶ ἀπέθανε, καὶ ἄψυχος γέγονεν· ἵνα διὰ τοῦ συνήθους ἐν τάχει αὐτοὺς ὑποτάξῃ τῇ ἰδίᾳ εἰκόνι· τὸν δὲ σταυρὸν ὡς ἄγκιστρον κατασκευάσας, τὸ σῶμα αὐτοῦ ποιήσῃ βρῶμα τῇ οἰκουμένῃ, ὅπως ἐν τούτῳ θηρύσῃ πάντας εἰς τὴν βασιλικὴν τράπεζαν τῆς θεότητος αὐτοῦ. Καὶ ἀντὶ τῶν γλυπτῶν ζύλων, ἔπηζε τὸν σταυρὸν ἐν μέσῳ τῆς οἰκουμένης· ἵνα οἱ ἐθισθέντες προσκυνεῖν τὰ ζύλα, διὰ τῆς τοιαύτης συνηθείας πιστεύσωσι προσκυνεῖν τὸν σταυπὸν αὐτοῦ, καὶ τὴν ἐπάνω ἀνθρωπόμορφον εἰκόνα ».

Καὶ μεθ' ἕτερα·

« Καὶ ἐπειδὴ ἐν συνηθείᾳ ἦσαν οἱ ἄνθρωποι εὐφραίνεσθαι εἰς τὰ ἱερὰ τῶν εἰδώλων ἐν κνίσαις ἅς τοῖς ἀψύχοις προσέφερον, διὰ τοῦτο καὶ αὐτὸς ἐκάλεσας τὴν οἰκουμένην εἰς τὴν σφαγὴν τοῦ Υἱοῦ σου, καὶ εἶπες· Ὁ μόσχος μου ἐσφαγμένος, καὶ τὸ δεῖπνόν μου ἠτοιμασμένον. Καὶ ἐπλήθυνας τὴν εὐφροσύνην ἀπὸ τοῦ σταυροῦ τοῦ Υἱοῦ σου, καὶ ἐχόρτασας πάντα τὰ πέρατα ἀπὸ τοῦ ζωοποιοῦ αὐτοῦ σώματος ».

*ինքն պատկեր մարդկան, զի զպատկերագործսն և զպատկերասէրսն և զպատկերապաշտսն՝ իւր պատկերի աստուածութեանն հնազանդեցուսցէ:*

*Եւ վասն զի սովոր էին մարդիկ երկիր պագանել անշունչ պատկերաց մեռելոց, եղև ինքն պատկեր մեռելոյ 'ի վերայ խաչին, և մեռաւ և անշնչացաւ, զի ընդելականաւն զնոսա արագ առ արագ հնազանդեցուսցէ իւրում պատկերին:*

*Իբրև զկարթ երևեցուցեալ զխաչն, և զմարմինն իւր առնէր կերակուր տիեզերաց. զի այնու որսասցի յարքունական սեղանն, մշտնջենաւոր արքայութեան իւրոյ: Եւ փոխանակ դրօշելոյ փայտիցն՝ զխաչ իւր կանգնեաց 'ի մէջ տիեզերաց. զի որով սովոր իցեն երկիր պագանել խաչին փայտի, սովորականաւ ընդելականաւն հաւատասցեն երկիր պագանել խաչին փայտի, և որ 'ի վերայ նորա պատկերն մարդադէմն իցէ »:*

*Եւ յետոյ դարձեալ*

*« Եւ վասն զի սովոր էին մարդիկ ուրախ լինել 'ի մեհեանս կռոցն զոհիւքն՝ զոր անմռնչոցն մատուցանէին, վասն այնորիկ և դու կոչեցեր 'ի զենումն որդւոյ քոյ զտիեզերս, և ասացեր.*

*« Զպարարակ իմ զենեալ է, և զճաշ իմ պատրաստեալ է ». Եւ բազմացուցեր զուրախութիւն 'ի խաչելոյ որդւոյ քոյ. և յագեցուցեր զամենայն տիեզերս 'ի կենդանարար մարմնոյ, որ էն կերակուր և կենդանութիւն բաւականի ամենայն երկրպագուաց քոց »:*

Καὶ μετ' ολίγα.

« Καὶ ἐπειδὴ ἔπινον οἱ ἄνθρωποι τὸ αἷμα τῶν θυσιῶν ἐν τῷ λατρεύειν τοῖς δαίμοσι, διὰ τοῦτο ἐκένωσε τὸ ἴδιον αἷμα ἐπι τοῦ σταυροῦ· ἵνα τὸ ζύλον ἀντὶ τοῦ γλυπτοῦ· καὶ αὐτὴ ἡ ἀνθρωπόμορφος εἰκὼν, ἀντὶ τῆς βδελυρᾶς εἰκόνος· καὶ τὸ αἷμα αὐτοῦ ἀντὶ τῶν αἱμάτων τῆς κνίσης, γένηται ἀνακαίνισις τῶν σωμάτων, εἰς τὸ ἀναθάλλειν τὴν ἀνθρωπότητα ».

Եւ զկնի ապա.

« Եւ քանզի ուտէին և ըմպէին մարդիկզ արիւն զոհից անասնոց դիցապաշտութեան, վասն այսորիկ եհեղ զարիւնն իւր 'ի վերայ փայտին. զի փայտն ընդ դրօշեալ փայտիցն, և ինքն ընդ մարդադէմ պատկերացն պղծութեան, և արիւնն ընդ նուագացն ուրախութեան արեանցն, որով և նորոգումն մարմնոց դալարութեան մարդկան »:

Արդ այս հատուածներս, որոց դիմաց աւելի կ'արտափայլի հայերէնի արտաքին շքեղութեան հետ՝ նոյնպէս և լակոնական ճշդութիւնն, կը պակսէին թէ՛ Փլորենտեան յոյն օրինակին մէջ և թէ՛ Գրիգորի վերոյիշեալ գործոց հրատարակութեան մէջ, ուստի բնականապէս ծանօթ չէր ոչ Ստիլտինգի և ոչ Լանգլուայի. և կարէ լեցնել և իրօք, 'ի զարմանս ինծ, լեցուցեր է յունարէն Ագաթանգեղոսի պակասաւոր միջոցն՝ Գ. Լագարդի հրատարակութեան 20 և 21 էջերուն մէջ: Գիտնական հրատարակիչս կը ծանուցանէ ինծ, թէ ինքը Գիտրայէն փոխ առած չէ, և ոչ իսկ նորա երկասիրութիւնն 'ի ձեռին ունեցած է. սակայն կը լռէ ասել, թէ յինչ աղբերէ հանած է զայնս:

Հուսկ ուրեմն յամին 1888 Վատիկանի գրատան երկրորդ տեսուչն բազմահմուտ Բարսեղեան Հ. Կոցցա Լուցցի գտաւ մի և նոյն գրատան մէջ 2302 թուով (cod. di Gio. Bassanese) նշանակեալ կրկնագիր (Palimpsesto) ձեռագրի[1] մի մէջ, այսինքն է 33–48

1. Որուն գրութեան թուականը կը պակսի, բայց Հ. Կոցցա Լուցցի Է և Ը դարերու մէջ գրուած կը համարի: Եւ յիրաւի, եթէ ուրիշ նշաններ ևս չլինէին կրկնագիր լինելն իսկ բաւական ապացոյց էր առ այս. սակայն 'ի լուսանցս իջի միոյ կ'ընթերցուին այս տողերս. " Fragmentum codicis rescripti in quo persecutio contra Christianos in Armenia, rege Tiridate *facta ab ethnico quodam* describitur „. Այս տողերս նշանաւոր Հուդդէնի ձեռքով գրուած են, ինչպէս կը ցուցնէ ուրիշ ձեռքէ մի գրեալ յետագայ տողս: Manuscr. cl. viri Hudden Borussi. — H. Amatius. և յետոյ ուրեմն Մայ Ծիրանաւորին ձեռքով յաւելեալ տեղեկութիւնը, թէ Non video qua ratione cl'. Hudden narrationem hanc ab ethnico quodam scriptam putavit. Mihi potius una est ex illis *legendis*, quæ et a Christianis et ad quorum Christianorum solatium et excitationem scribebantur atque in Ecclesiis prælegebantur. Սակայն դիտելու է, որ Հուդդէն կամ ձեռագրիս ձնութեան պատճառաւ հեթանոսէ մի գրուած կը համարի, և կամ հեթանոսի ձեռքով ոչ եթէ պատմութիւնը գրուած, այլ յարուցած հալածանքն հասկանալի է ուղ-

յէջս յունարէն հատուածներ, զորս և անձախանձ հոգւով և ազնուութեամբ շնորհեց ինձ, առ որ պարտք կը համարիմ և հրապարակաւ յայտնել իմ խորին շնորհակալութիւնս: Արդ այս պատառիկներս թէ և ուրեք ուրեք խանգարեալ, բայց բաղդատելով յունարէն Ագաթանգեղոսի հետ, տեսայ որ կը համապատասխանեն 59, 60, 61, 62, 67 և 68.§ գլխահամարներուն թերի կերպով, և կը կազմեն Հռիփսիմեանց և Գայիանեանց վկայաբանութեան մի մասը, բառ առ բառ նոյն են, բաց 'ի մի քանի փոքրիկ տարբերութեանց, ուք կը կայանան մի քանի բայերու դէմքերու և ժամանակաց և հասարակ անուանց ուղղագրութեան մէջ, զորս ես ձեռագրի խանգարմանէն և դժուար ընթերցանութենէն յառաջ եկած կը համարիմ: Թէպէտ և Ագաթանգեղոսի ցանկացած և նախկին բնագրի մի հետքը չեղև հնար գտնել նաև այս նորագիւտ պատառիկներուս մէջ, սակայն և այնպէս գէթ այս գոհութիւնս ունեցայ և այլ ոչ ևս տարակուսիմ եզրակացնել, թէ մինչև ցայսօր յայտնուած պատառիկներն՝ ամէնքն ալ նոյն են ծանօթ յունարէն Ագաթանգեղոսի հետ, [illegible] իրար մէ տարբեր և հնագոյն օրինակներէ յառաջ եկած. և թէ այժմ կարելի է զայն միայն առնուլ 'ի յուսումնասիրութիւն, ըստ նորոգ հրատարակութեան Լագարդի, որ կատարելագոյն է քան զայլս, թէ ըստ պարունակութեան և թէ ըստ ուղիղ ընթերցանութեան:

Սակայն նախ քան զամենայն դիտելու ենք, որ յունարէն Ագաթանգեղոսի հրատարակիչք և որք միանգամ այդ հրատարակութեան վերայ հաստատուած գրեցին զԱգաթանգեղայ, այսինքն է Ստիլդինգէն՝ սկսեալ ցԳուդշմիդ, ուրեք ուրեք պակասաւոր միջոցներ նկատեցին. օրինակ իմն Ոստի գաւառին, — Պահլաւայ, — Քուշանաց, — Արտաւազդայ, — Ծոփաց, — Գարգարացւոց, — Տիրիկէսի և Կիրակոսի, — Յովհաննու կարապետին և Աթանագինեայ վկային անուանց մասին զորս ունի հայերէն օրինակն անթերի. և ուրեք ալ հայերէնի հակառակ բառեր ընթերցան և արտագրեցին, յորս նշանաւոր է Լանգլուայի, § 10 'Ανακάμψας δὲ ἐπ' 'Ερασενεῖς (Երասխական հովիտ) և § 154 συηλίτας καὶ ἀποκλείτους, զոր Գուդշմիտի կարծիքով կարելի է փոխել 'ի σπηλαΐτας և ասել, թէ յամին 423 գրուած ըլլայ այդ տեղին. յորում Ս. Սիմէոն Սիւնակեաց զառաջինն եկաց 'ի վերայ սեան: Սակայն Լագարդ, § 649 և Տէզա (էջ 5) կը կարդան որոշակի Փլորենտեան ձեռագրի մէջ προφήτου καὶ βαπτιστοῦ 'Ιωάννου καὶ 'Αθενογένους τοῦ μάρτυρος, καὶ φθάσας ... համաձայն հայերէնի, և στηλῖται (անձաւամուտ). Իսկ 'Ερασενεῖςի և ոչ իսկ հետքը կը գտնեն անդ, այլ կը գրեն ἀνακάμψας δὲ ἐπέρασεν εἰς τὴν ἰδίαν πατρίδα, որով ընդ օդս կը ցրուին Գուդշմիդի ենթադրութիւնք:

դելով այսպէս Tiridate facta, ab ethnico quodam describitur. Ցանկալի էր, որ այդ ձեռագրին, որուն վերայ Ս. Կեսարիոսի Ներբողեանը գրուած է, մնացած մասերն ևս արուեստով ընթերցանելի ընէին, որով գուցէ թէ յայտնուէին չուղղէնի ենթադրութեան պատճառներն և Ագաթանգեղայ մասին նորանոր տեղեկութիւններ:

Երկրորդ դիտելու ենք, որ յունարէն Ագաթանգեղոսի մէջ կան ուրիշ մի քանի առանձնայատկութիւնք, որք ոչ համաձայնին հայերէնին. որպիսի են Արտաւանայ և Խոսրովու պատմութեան Ժ. գլխահամարները, զոր յառաջագոյն նկատեցինք արդէն՝ յէջ 8 Οὐαλερίον. (Վաղարշ?), յէջ 'Ευσέβιος փոխանակ Սեղբեստրոսի, յէջ 82 Γαλλίων, ուր հայերէնն Իտալացւոց կը գրէ, յէջ 67 Κρόνος և Θισδίας (Թիլ?) :

Արդ՝ այս և այսպիսի սակաւաթիւ բացառութիւնք, որք հաւանօրէն յունարէնի թարգմանչին ձեռքով յետոյ ուրեմն ներմուծուած համարելի են, բացարձակապէս չեն կարող արգելուլ զիս ասել, թէ առանց երկբայութեան արդի յունարէն Ագաթանգեղոսն՝ հայերէնէ թարգմանուած է. մանաւանդ զի ամենայն ինչ ստուգիւ զայս մատնանիշ կը ցուցանէ՝ բաղդատելով զանոնք իրարու հետ:

Ցիրաւի, հայերէնը մի և նոյն յատուկ անուանքն՝ ո՛ր և է տեղւոյ և պարագայի մէջ հաստատուն կերպով և միաձև կ'ուղղագրէ. իսկ յունարէնն, ընդհակառակն, այն անուններէն զոմանս միակերպ կը գրէ և զոմանս մերթ այսպէս և մերթ այնպէս: Արդ այս երևոյթըս յերկուսին դէպս իսկ՝ յայտնապէս կը ցուցնէ, թէ յունարէնն՝ հայերէնի բնագիր չէ և ոչ իսկ կարող է լինել, որովհետև յունական դասական մատենագրաց սովորական ուղղագրութիւններէն կը խոտորի. մերթ ծառայական նմանութեամբ հայերէն Ագաթանգեղոսի կը յարմարագրէ զհայեցի անուանս, ուր 'ի ձեռին ունի համազօր տառս. և մերթ իրեն յատուկ ձևով, ուր կը պակասին հայերէնի համազօր յունական տառեր: Յէջ 5 զԱրտաշիր σασανηκαν կը կոչէ, որ է ուղղակի յարմարագրութիւն « [illegible] » ածականին. որովհետև ըստ յունարէն ձևոյն պիտի լինէր կամ παῖδα Σασάνου, ինչպէս ըրած է մի և նոյն յիշում կէս տող առաջ. և կամ Σασανίδαι: Յէջ 77 գրելով 'Ατραπατακάν, անդէն կը յարէ, ἥτις καλεῖται Πυροχαρία κατὰ τῆν περσικην γλωτταν· Դիտելու է, որ դասական ձևն է, ըստ Պտղոմէոսի և ըստ Ստրաբոնի, 'Ατροπατηνή· իսկ յաւելուածով եղած թարգմանութիւնն՝ ուղղակի յոյն թարգմանչէն ներմուծուած է, հայերէնի ազդեցութեան ներքև. զի [illegible]՝ հուր պարունակող կամ հրոյ երկիր կը նշանակէ: Յէջ 12 գրուած է Φοσεῶν πύλας = « դրունք [illegible] ». առաջին բառն՝ է պարզապէս յարմարագրութիւն հայերէն փոսից, զոր անհմուտ թարգմանիչն յատուկ անուն կարծելով՝ խիղճ ըրած է յունարէն թարգմանել:

Մի և նոյն տեղ՝ հայերէնի մէջ յիշուած յատուկ անունս « [illegible] » ընդհակառակն իբրև հասարակ անուն χάσματος թարգմանած է, որ յերկաքանչիւր լեզուս իսկ՝ [illegible], [illegible] տեղ կը նշանակէ: Յէջ 45 հայերէն դաշտն « փառական [illegible] » կամ եմակաց՝ իբրև յատուկ անուն կարծելով զերկուսին իսկ՝ յարմարագրութեամբ նոյնը պահած է Φαρακάνῃ Σεμάκων (ըստ Լանգլ. տպ. Φαρακάνης ἐμάκων) մինչդեռ վերջինը գոյական է և ոչ թէ յատուկ անուն: Յէջ 8 կ'ըսուի ἀπολέσαντος δὲ 'Αρταβάνην τὸν αὐτοῦ ἀδελφόν.

Թարգմանիչը « ազգատոհմին եղբայրութեան » բացատրութիւնը սխալ կողմէն հասկանալով՝ զԱրտաւան եղբայր թարգմաներ է Խոսրովու. մինչդեռ իրօք եղբայրութիւնը ազգատոհմին կը վերաբերի, զի Յունաց պատմագիրք [1] իսկ տարբեր հարց որդիս կը համարեն զսոսա, և ժամանակակից յոյնի մի համար անհասկանալի կը լինէր այս: Յէջ 4. կը գրուի Ουαλάρς ըստ յարմարագրութեան հայերէն Ագաթանգեղոսի. մինչդեռ դրամոց վերայ՝ մերթ Ολαγας և Ολας և մերթ ալ Βολαγας կը գրուի. Սինկելլոս՝ Φὐλιγισσος, Ակաթիաս՝ Βάλας. իսկ այլուր Ουάλας. ուստի ρ տառն ուղղակի հայերէն բնագրէն անցած է 'ի յունարէնն: Յէջ 67 գրուած է βωμὸν Κρόνου, τοῦ πατρὸς Δίος παντοδαίμονος. աստ թէպէտև թարգմանիչը Կռոնոս անունը իւր քովէն ներմուծած է, սակայն այնու աւելի կը մատնէ, որովհետև նախ Կռոնոս փոխանակ Զրուանայ դրուած է աստ, որ յամին 301 տակաւին նշանակութիւն չունէր, այլ Ե դարէն և այսր զարգացաւ զոյգ ընդ Զրուանականներն կամ Երկուութեան վարդապետութեան Մանեայ, որում դէմ զինեցաւ և Եզնիկ. զի Զենտաւեստեայ գրոց մէջ հազիւ թէ նորա անունը կը յիշուի: Երկրորդ այդ անունը ներմուծելով հանդերձ՝ զΔίος ևս պահած է իւր նախորդ և հետևորդ բառերով, որ կը համապատասխանէ հայ բնագրի « Արամազդայ հօրն անուանեալ դիցն ամենայնի »: Երրորդ, եթէ յունարէն օրինակն եղած լինէր բնագիր հայերէնի, անշուշտ Կռոնոս անունս պէտք է որ թարգմանուած լինէր անդ: Այլ, ընդհակառակն հայերէնն է որ, յամենայնի կ'ընծայէ զտիպս բնագրի՝ դեռ աւելի յայտնի կը տեսնուի 'ի հետագայսն. զի յէջ 71 կ'ըսուի զԱստղկայ βομὸς ἀστέρος θεῶν: Դիտելու է, որ առ Յոյնս Աստղիկ միշտ Ἀφροδίτη կը կոչուի, և ոչ երբէք Ἀστλιχ կամ αστερος θέον: Յունաց դիցաբանութեան մէջ կը յիշուի Ἀστραῖος իբրև Տիտանումն, և Ἀστραῖα, իբրև դուստր Արամազդայ. սակայն յունարէն Ագաթանգեղոսն ոչ միոյն և ոչ միւսոյն կը համաձայնի, այլ ուղղակի հայերէնին հետևած է, որում անեզակի դէց բառն իսկ, որ անդ դիցուհի կը նշանակէ, յոգնակի սեռականով թարգմանած է այսինքն է θεῶν, որ թէ՛ սեռիւ և թէ՛ թուով անյարմար է Աստղկան: Մի և նոյն իջում կ'ըսուի ἐν τοῖς Χαρχαρεῶν ὄρεσιν, որ կը համապատասխանէ հայերէնի 606 իջի « 'ի սնարս լերին Քարքեայ »: Արդ առ Զենոբայ իսկ Քարքէ՝ եկական անուն ինչ է լեռան միոյ. իսկ յունարէնի թարգմանիչն խոտորելով յԱգաթանգեղայ՝ Քարքարացոց ըրած է, շփոթելով ընդ Գարգարացիս, որ ըստ Ստրաբոնի Γάργαρα կը գրուի: Ուստի մէկ կողմէն խոտորելով յունական դասական ձևէն, իսկ միւս կողմէն ալ հայերէնի համազօր բաղաձայն տառերը՝ կը ցուցնէ, թէ վերջինէն թարգմանած է: Յէջ 68 Βαγααρίζ և յէջ 69 Μασάχ յատուկ անուանքն իսկ հայերէնի սոսկ յարմարագրութիւններ են. որովհետև Ստրաբոն և Պտղոմէոս զվերջինը՝ Μάζαχα կը գրեն, առանց նորա հայերէն ծագման յիշատակութիւնն

1. Դիոն Կասիոս. Հն. 9:

ընելու․ ուստի չիք տարակոյս, թէ այս ընտանեկան անունս հայ թարգմանչաց ձեռքով մտաւ յԱգաթանգեղ փոխանակ Կեսարիոյ, յորմէ ապա անցաւ 'ի յունարէնն։ Ցէջ 77 յատուկ անունս [illegible] կը պակսի, չգիտեմ առ ինչ. բայց այս անուանս գոյութիւնը միայն 'ի հայերէնի, նշան է թէ հայերէնը՝ յունարէն Ագաթանգեղոսէն առած չէ։ Ցէջ 11 Երասխ գետն՝ ըստ հայերէն ձայնին 'Ερασάχ [1] յարմարագրուած է. մինչդեռ ըստ դասական մատենագրաց նորա յունական ձևն էր 'Αράξης։ Մի և նոյն իջում զգետն Մեծամօրէ՝ իբրև սոսկ ածական իմն համարելով, փոխանակ յարմարագրելու՝ βάθεος (առ Լանկլուայի՝ սխալ ընթերցմամբ Μάδεος) թարգմանած է, որ է սեռական βάθος (խոր, ընդարձակ) բառին։ Արդ՝ ենթադրելով, որ այժմեան յունարէնը՝ բնագիր եղած լինէր, անհասկանալի կը մնայ, թէ հայերէնի թարգմանիչն ինչպէս կարաց βάθος բառով զՄեծամօրին իմանալ և ոչ զԵրասխ կամ մի ուրիշ գետ. ուրեմն պէտք է ըսել, թէ յունարէնն աւելի հայերէնի թարգմանութիւն է։ Ցէջ 8 խօսելով զզօրաժողով լինելոյն Տրդատայ, կ'ըսուի. τῶν 'Αλανῶν καὶ Ζουάρου πύργου, որ կը համապատասխանէ հայերէնի յէջ 30, « Ալանաց և Ճորայ պահակին » բացատրութեանը. յոյն թարգմանիչն ՚ւ նախդրիւ ստացական դերանունն՝ յատուկ անուն կարծելով՝ պարզապէս յարմարագրած է, կոյր զկուրայն հայերէնի հետևելով։ Գուտշմիտ Ζόυαρος Ճորայ պահակին հետ նոյն վարկանելով, զհայերէնը խանգարուած կը համարի, իսկ Նոր այբ Բիւզանդացին՝ Ճորայ աշխարհագրական անուն մի կ'ենթադրէ։ Սակայն այս անընդունելի է, որովհետև նախ հայերէն Ագաթանգեղայ բոլոր ծանօթ օրինակները « զկուրոյ » կը գրեն։ Բ. պատմագիրք [2] Յունաց յիշել կը յիշեն զպահակն ծորայ, բայց Τζοὺρ կը գրեն զայն։ Գ. Դիտելու ենք, որ Պահակն ծորայ և դուռն Հոնաց նոյն են․ իսկ արդ թէ հայերէն և թէ յունարէն Ագաթանգեղոսի մէջ կը յիշուին Հոնք. ուստի աւելորդ էր յիշել և զՃոր՝ իբրև սառանձին ինչ։

Ցէջ 12, Դիոկղետիանոս՝ իշխան Յունաց կ'անուանի ὁ τῶν Ἑλλήνων ἄρχον. Արդ այս բանս Դղարու յոյն պատմագրի մի համար անհասկանալի է և ուղղակի հայերէն Ագաթանգեղոսէն թարգմանուած է. այնու զի՝ Հայք զՅոյնս՝ յաճախ 'ի վար արկանեն փոխանակ Հռովմայեցւոց, ոյպէս է տեսանել յէջ 43, 44 հայերէն Ագաթանգեղոսի և այլուր։ Ցէջս 14 և 66, 'Ερης=Երէզ, և 'Εκελήση կամ 'Εκελευσεν=Եկեղեաց, յայտնապէս հայերենէն յարմարագրուած են. որովհետև երկոքեան իսկ Յունաց դասական ձևէն կը

1. Անուանս վերջին α անհասկանալի է. այս երևոյթս կամ յունարէնի թարգմանչին կամայականութեանն ընծայելի, որ ուրիշ հայեցի անուանց մէջ ևս ըստ կամս նոյն դերը խաղացել է. և կամ χ=ք, խէ արտասանելու համար, ինչպէս յէջ 63 Աշխէնը, 'Ασιχῆνη ըրած է, χ ի դիմաց ւ ձայնաւորն յաւելացնելով, և կամ ձայնագրութեան կանոնաց համաձայնել է։

2. Պրոկոպիոս. Յաղագս Գոթ. պատերազմին, Գիրք Դ;

խոտորին և հայերէնին տառ առ տառ կը համաձայնին: Ցիլաւի, դահեկանք Ցունաց ևս կը ներկայացնեն մեզ Ἔριζα, ինչպէս նաև առ Հերոկլ. § 30 է տեսանել Ἔρεζος. սակայն դիտելու ենք, որ այս անուանքս թէ՛ ուղղագրութեամբ տարբեր են և թէ՛ իրօք կ'ընծայեն զքաղաք ինչ Կարիոյ, տարբեր 'ի մերոյս Երիզայ, որ, ըստ վկայութեան Լազարդի, հաւասար է զենտաւետեան Arezahi. Իսկ երկրորդ անունը, Պտղոմէոս և Ստրաբոն Ἀκιλίνη և Ἀκιλήση կը գրեն, որոց երկուքէն իսկ կը տարբերի յունարէն Ագաթանգեղոսն. ուրեմն հետևութիւնն յայտնի է: Անդստին 'ի վաղ ժամանակաց ծանօթ էր Ցունաց ազատն Մասիս τὸ Μάσιον ὄρος յորջորջմամբ. իսկ յունարէն Ագաթանգեղայ 63 իջում համաձայն հայերէնի Μασὶς գրուած է: Հայերէն բնագրի ազդեցութեամբ դարձեալ դասական մատենագրաց Δαρανίσσα եղած է յԱգաթանգեղ Δαραναλιτῶν = Դարանաղեաց, ինչպէս դասական անուանքս Χαλδαῖοι կամ Χάλυβες 'ի Χάλτῶν = Խաղտեաց, Νιφάτης 'ի Ναπάτ = Նպատ, Δερξήνη 'ի Δερζαν = Դերջան, յորս ակներև կը տեսնուի հայերէնի ազդեցութիւնը: Այսպէս են Νορσιράκ(αν)ων = Նորշիրական, Μαχουρτ(αν)ῶν = Մահքրտան, Μαλχαζίων = Մաղխազութեան, որք հայերէնի մէջ եզակի են, բայց յունարէնի թարգմանիչն իւր քմաց համեմատ յոքնակի շինած է. ինչպէս նաև Βασην[1]-ῶν = Բասենոյ, Ἀγγελιτῶν = Անգեղտան, Ἀσπετῶν = Ասպետութեան, Ἀλσενῶν = Աղձնեաց, Ῥουστινῶν = Ռշտունեաց, Συνιτῶν = Սիւնեաց, Σουδαιῶν = Ծաւդէից, Οὐτίων = Ուտիացւոց, Ἀρσουρουνῶν = Արծրունեաց, Σαταλῶν = Սատաղաց, Καλαρσῶν = Կաղարջաց, Θορδαν = Թորդան, Φα:ακαρανης = Փայտակարանի, Ἀρουαστ(αν)ῶν = Արուաստանի, Σααπιαν-ῶν = Շահապիվանի, Σπασκαπετεῶν = Սպասկապետութեան, Σαρουανδῶν = Զարաւանդայ. յէջ 11 Ἀρταζάτ = Արտաշատ գրուած է հակառակ դասական ձևոյն՝ որ է Ἀρταζάτα. Վաղարշապատ ևս բազմիցս համաձայն հայերէնի Οὐαλαρσαπάτ գրուած է, իսկ այլուր հակառակ ձևով Οὐαλεροκτίστη.

Հայերէնի կամ ասորերէնի ազդեցութեամբը՝ նոյն իսկ յունական անունս Կեսարիա՝ 'ի սեռականն Καισαραίων կը գրէ, փոխանակ Καισαρέων գրելոյ, որ ինչպէս կը ծանուցանէ Լազարդ, Ցոյնի մի համար՝ սխալ է: Հռովմէա-յունական անունս Λικιννιος, Liciniusը՝ Λικινιανός գրուած է. α կարելի էր ասել, թէ հայերէն Ագաթանգեղոսէն մտած ըլլայ 'ի յունարէնն, ուր Լիկի•նէս գրուած է: Սակայն դիտելու է, որ նոյն իսկ հայերէնի մէջ Ւ• վերջաւորութիւնն օտար է վերոյիշեալ անուան ուղղագրութենէն որ առ Հռովմայեցիս: Յէջ 66, Βαρσάμην ասորական անուան ուղղագրութեան մէջ իսկ՝ ուղղակի հայերէն Ագաթանգեղոսի Բարշիմնիայ կամ Բարշամինի ազդեցութիւնը կը տեսնուի, որովհետև Ցոյնք փոխանակ αρ 'ի α կամ ηλ կը գրեն. այսինքն է Βηλ–σάμην կամ Βααλ–σάμην.

1. Դիտելու ենք, որ անուանս յունարէն դասական ձևն է Φασιανή.

ցէջ 81, Μαναάρχ=Մանայ-արք, դժուար է պատմաբանօրէն ապացուցանել, թէ լերանս անունը 'ի սրբունոյն Մանեայ[1] առաջ եկած է, և թէ անկէ յառաջ չէր ինչ գործածական առ Հայս. սակայն Մանեայ գոյութեան մասին եղած ազգային աւանդութիւնն, եթէ իբրև ստոյգ ևս համարինք, այնու աւելի անբացատրելի կը մնայ յունարէնի Μαναάρχ կազմութիւնը. որովհետև ցոյնք կամ Μάνη-կը գրէին սրբունւոյս անունը կամ Μάννα և կամ Μανᾶ. ուստի թէ ⁓ր⁓ հասարակ անուան հետ շաղկապած ժամանակ և թէ առանց շաղկապման գրելով, պէտք էր, որ նորա սեռականը Μάνης կամ Μαννᾶς և կամ Μανάσ-αρχ լինէր, վասնզի ⁓=α միայն հայերէն անուանց շաղկապման մէջ տեղի ունի: Ուրեմն կը մնայ ըսել, թէ ուղղակի հայերէն Ագաթանգեղայ Մանեայ կամ Մանայ-արք ին յարմարագլութիւնն է յունարէնը: Բազմիցս կը գրուին Ἰωνίας և Ἰωνίων փոխանակ ընդհանուր Յունաստանի և Յունաց: Արդ այս բանս յունարէն բնագրի մէջ և ցոյնի մի համար անհասկանալի է. որովհետև առ ցոյնս Ἴωνία և Ἴωνες կը կոչուէին 'ի հնումն Պեղոպոնէսի մի առանձին գաւառն և գաւառացիք. իսկ յետոյ գաղթականաց ձեռքով անցաւ այդ անունը Փոքուն Ասիոյ կողմանց և Միջերկրականի կղզեաց. ուստի ընդհանուր նշանակութեամբ հազիւ ուրեք և այն իսկ յօտարաց գործածուած է և կամ ոչ բնաւ. այլ ընդհանրական Ἕλληνες և Ἑλλήνων է դասական ձևն առ ցոյնս. իսկ հռովմայեցիք Græcia և Græcos կ'անուանէին: Ուրեմն աստի իսկ կը հետևի, թէ հայերէնի « Յունաստան և Յունաց » ձայներէն յարմարագրուած են յունարէն Ագաթանգեղայ այդ անուանքը: ցէջ 72, հռովմէական հոկտեմբեր Ὀχτώβρις ամսոյն առընթեր կը գրուի և հայոց Սահմի=Σαομί ամիսն ևս համաձայն հայերէն բնագրին, քան զոր չիք այլ յայտնի: Այս երևոյթս կը ցուցնէ, թէ առաջինը պարզապէս յաւելուած է յոյն թարգմանչին՝ κατα δὲ Ῥωμαίους բառերով հանդերձ, և թէ Σαομὶ ուղղակի հայերէն Ագաթանգեղոսէն իբրև 'ի բնագրէ մէջ կը բերէ: ցէջ 34 գրուած է. τότε οὖν ἐλθοῦσαι φθάνουσιν εἰς Ἀραρὰτ τὴν πατρίδα καὶ Οὐαλαρσαπὰτ τὴν καλουμένην Νέαν πόλιν. ինչպէս յառաջագոյն դիտեցի այս վերջին բառերս, այսինքն է. « Ջոր Նոր բաղաք կոչին », հայերէն խմբագրէն ներմուծուած յաւելուած մ'է, զոր

1. Մանէ անունն ըստ ինքեան հռովմէական չի երևիր ծագմամբ: Սակայն դիտելու է, որ 'ի դիցաբանութեան Նտրուսկացւոց կը յիշուի Mana իբրև դիցուհի ոմն, յորոց ապա առին հռովմայեցիք, կարգելով զնա պաշտպան ծննդաբերաց: Ուստի չէ ինչ անտեղի կարծել, թէ անտի անցած լինի և յաւանդութիւնս հայոց և վրաց և սեփականուած կանանց ոմանց: Արդ ինչպէս Mana Մանէի այսպէս ևս Nana կամ Nane կարելի է, թէ նախապատկեր եղած լինին Նունէի, զորս հեթանոս հայաստանի և վրաստանի ժողովրդական աւանդութիւնն, անձնաւորած ըլլայ, անդէն 'ի սկզբան դարձին իւրեանց 'ի քրիստոնէութիւն, այն անանուն և անաշխարհիկ առաքելուհեաց: Նւ յիրաւի, Սոկրատ և Սոզոմէն իսկ առանց անուան կը յիշատակեն զառաքելուհին վրաց, պարզապէս կին ոմն անուանելով:

յոյն թարգմանիչը՝ թարգմանած է. մինչդեռ յէջն 77 նմանաձայն անունս Νορσιραχὰν ճիշտ ըստ հայերենին տառադարձուցել է: Յէջ 64 յատուկ անունս Θολγώμ ճիշտ ըստ հայերէնի գրուած է. որովհետև յունարէն Եօթանասնից թարգմանութեան համաձայն՝ Յոյնք Θοργαμά կը գրեն: Կան դարձեալ դեռ ուրիշ ակներև հետքեր հայերէն բնագրին՝ յունարէնի մէջ. սակայն ես ցայս վայր մէջ բերուածները բաւական կը համարիմ:

Արդ ցայս վայր մէջ բերուած օրինակներէն՝ երեք բան ակներև կը տեսնուի. Ա. Խոտորումն ’ի դասական ձևոց յանուանագրութիւնս. Բ. կատարեալ համաձայնութիւն հայերէն Ագաթանգեղոսի. Գ. գոյութիւն եկամուտ յաւելուածոց, որոնք Ե դարէն վերջ և կամայականութեամբ յունարէնի թարգմանչէն մուտք գտած են յունարէն Ագաթանգեղոսի մէջ. և այս երեք կէտերս իսկ յայտնապէս կը ցուցնեն, թէ ոչ միայն յունարէն Ագաթանգեղոսն՝ հայերէնէ թարգմանուած է, այլ թէ նոյն իսկ նորա թարգմանիչը հաւանօրէն հայազգի ոմն եղած լինի, որ գոզցես իմն այնքան ծանօթ էր հայերէն դասական լեզուին, որքան յունարէնի:

Սակայն մի ուրիշ զօրեղ ապացոյց հայերէն բնագրին և յունարէնի թարգմանութեանն՝ են Ս. Գրոցմէ փոխ առեալ այն տեղիքն ’ի յունարէն Ագաթանգեղ, որոնք ’ի բազում ուրեք կը տարբերին յունարէն բնագրէն և հայերէն Ագաթանգեղոսի կամ նորա մէջ գտնուած թարգմանութեանը կը համաձայնին: Այս բանիս համար երախտապարտ եմք Պ. Ղազարղին, որ ինձ եթէ ոչ գլխովին նորութիւն այլ գէթ մեծ դիւրութիւն պատճառեց, յորմէ և բանս ինչ ’ի մէջ կ’ախորժեմ բերել, նախ դնելով յունարէն Ագաթանգեղոսի և Ս. Գրոց յունարէն բնագրի այդ տեղիքը դիմացէ դիմաց, և ’ի ստորև հայերէն Ագաթանգեղոսի տեղիքն: Նշանագրաւս Այ. կը հասկնամ յունարէն Ագաթանգեղոսը, ըստ Ղազարղի հրատարակութեան. Յբ. ով Ս. Գրոց յունարէն բնագիրն. և հուսկ ապա Ահ. ով հայերէն Ագաթանգեղոսն:

Մատթէոս Ե. 45.

Այ. էջ 22. Βρέχεις ἐπὶ δικαίους καὶ ἁμαρτωλούς.

Յբ. Βρέχει ἐπὶ δικαίους καὶ ἀδίκους.

Ահ. էջ 76. «Ածես անձրև ’ի վերայ արդարոց և մեղաւորաց». Արդ յունարէն Ագաթանգեղոսի αμαρτωλους բառը ճիշդ թարգմանութիւն է հայերենի [illegible] բառին, զի ἁμαρτολός կամ αμαρτία = մեղք արմատէն կ’ածանցի: Իսկ ἀδίκους, ընդհակառակն, անարդար կամ անիրաւ կը նշանակէ (Տես Ղուկ. ԺԶ, 10, ԺԶ, 11, և ԺԸ, 11, Հռովմ. Գ, 5, Ա. Կորթ. Զ. 1, Զ. 9. Եբր. Զ, 10, Պետր. (Ա) Գ. 18. Պետր. (Բ) Բ. 9): Երկրորդ, դիտելի կէտն է Այ. βρέχεις բայն, որ համաձայն Ահ. ին երկրորդ դէմքով դրուած է:

Մատթէոս Ժ. 23.

Այ. էջ 33. Ἐὰν διωζωσιν ὑμας ἀπὸ τῆς πόλεων ταύτης, φεύγετε εἰς τὴν ἑτέραν. ἀμὴν λέ-

Յբ. Ὅταν διώκωσιν ὑμᾶς ἐν τῇ πόλει ταύτῃ. φεύγετε εἰς τὴν ἄλλην. ἀμὴν γὰρ λέγω ὑ-

| | |
|---|---|
| γω ὑμῖν, οὐ μὴ πληρώσιτε τὰς πόλεις τοῦ Ἰσραὴλ ἕως τῆς ἐμῆς παρουσίας. | μην, οὐ μὴ τελέσητε τὰς πόλεις τοῦ Ἰσραήλ, ἕως ἂν ἔλθῃ ὁ υἱὸς τοῦ ανθρώπου. |

*Ահ. էջ* 118. *«Թէպէտ և հալածեսցեն զձեզ քաղաքէ 'ի քաղաք՝ ոչ կարասջիք սպառել զքաղաքս Իսրայէլի, մինչև 'ի դարձ գալստեան իւրոյ* [1] *այսրէն»* :

*Ափսոս որ հայերէնը թերի է աստ. սակայն յունարէն Ագաթանգեղ* τῆς παρουσίας *հայերէնի վերայ հիմնուած է. մինչդեռ* τὴν ἑτέραν *փոխանակ* τὴν ἄλλην *համաձայն է Ս. Գրոց հայերէն թարգմանութեան, որ թէ «*[illegible]*» կը դնէ և թէ «*[illegible]*», երկիցս գրելով զբայն «*[illegible]*»*: Ἐάν— *«թէպէտ», թէ և անճիշդ է բաղդատելով Ս. Գրոց թարգմանութեան հետ, ուր «յորժամ» դրուած է՝ համաձայն* ὅταν*ի բնագրին, սակայն և այնպէս հայերէն Ագաթանգեղոսէն թարգմանուած է*: Πληρῶσητε *անճիշդ է, զի* [illegible] *կը նշանակէ և ոչ թէ սպառեսջիք որպէս գրի թէ 'ի Ահ. և թէ 'ի Ս. Գիրս:*

*Մատթէոս, Ժ.* 23.

| | |
|---|---|
| *Այ. էջ* 21. Αὐτοὶ τὸ σῶμα μόνον δύνανται βασανίσαι. | *Յր.* Τῶν ἀποκτεινόντων τὸ σῶμα-. |

*Ահ. էջ* 75, *«Սոքա զմարմին և եթ կարող են չարչարել»:*

*Դիտելու ենք, որ Ահ. համաձայն հայերէնի «չարչարել» բային՝* βασανίσαι *դրած է, խոտորելով թէ Յր.* αποκτείνω *և թէ հայերէն թարգմանութեան «*[illegible]*» բայէն: Բայց Յայտնութեան գրոց թարգմանիչն ևս, որ յետոյ է ժամանակաւ քան զթարգմանիչն յունարէն Ագաթանգեղոսի. նոյնպէս չարչարել բայը կը գործածէ Թ.* 5, *ԺԱ.* 10 *և Ի.* 10 *գլխահամարներում:*

*Մատթէոս, ԺԱ.* 28.

*Առ Այ. էջ* 74. εὐβάστακτον *կը գրէ, ուր Յր.* ἐλαφρόν *ունի. իսկ Ահ համաձայն Ս. Գրոց թարգմանութեան կը գրէ յէջ* 615. *«Եւ բեռն իւր* [illegible] = ἐλαφρόν: *Սակայն յէջ* 63–64, *քաջ կը համաձայնի յունարէն Ագաթանգեղոսի գրելով փոխանակ փոքրոգւոյ՝ «*[illegible] *լուծն». որով յայտնի կը լինի, թէ թէ հայերէն Ագաթանգեղոսն և թէ յունարէնը՝ Ս. Գրոց թարգմանութենէն վերջ թարգմանուած են:*

*Մատթէոս, ԻԲ.* 4.

| | |
|---|---|
| *Այ. էջ* 21. Ὁ μόσχος μου ἐσφαγμένος, καὶ τὸ δεῖπνον μου ἡτοιμασμένος. | *Յր.* Τὸ ἄριστόν μου ἡτοίμασα, οἱ ταῦροί μου καὶ τὰ σιτιστά (μου) τεθυμένα. |

*Ահ. «Զզուարակ իմ զենեալ է, և զճաշ իմ պատրաստեալ է»:*

*Աստ երկոքումբ կը համաձայնին յունարէն Ագաթանգեղոսն՝ հայերէնի, այսինքն է նախ շարադրութեամբ բանից, երկրորդ՝ 'ի բաց բարձմամբ* οἱ ταῦροί μου *բառերուն: Սակայն դիտելու է, որ* μόσχος *չէ պարարակ, որ պարարել* = λιπαίνειν, *բային կը վերաբերի. այլ* [illegible], *ինչպէս դրուած է Մատթէոսի հայերէն թարգմանու-*

1. *Ագաթանգեղոսի Դ. օրինակին մէջ իմոյ գրուած:*

*թեան ԻԲ գլխում:* δεῖπνόν *իսկ ոչ եթէ ճաշ՝ այլ ընդհակառակն ըն_թրիք կը նշանակէ, ինչպէս կը տեսնուի Ղուկ. ԺԱ. 38. և 'ի մասնաւորի ԺԴ գլխուն 12 տան մէջ, ուր ասի* ˮΑριστον ἢ δεῖπνόν = *ճաշ կամ ընթրիք:*

*Ա. Կորնթ. Ա.* 23 *և* 24.

*Այ. էջ* 54. Τοῖς ἀπολλυμένοις μορία ἔστιν, τοῖς δὲ εὑρεθεῖσιν ὑμῖν σοφία σωτηρίας καὶ δύναμις θεοῦ ἐστίν.

*Յր.* . . . μορίαν αὐτοῖς δὲ τοῖς κλητοῖς . . . θεοῦ δύναμιν καὶ θεοῦ σοφίαν.

*Ան. էջ* 543. *« Կորուսելոցն յիմարութիւն է, և ձեզ որ գտայքդ՝ իմաստութիւն և զօրութիւն Աստուծոյ »:*

*Դիտելու է, որ նախ յունարէն Ազաթանգեղոսի* τοῖς εὑρεθεῖσιν *որ_չափ որ կը հեռանայ Յր.ի* τοῖς κλητοῖς *բացատրութենէն, այն_չափ ևս կը համաձայնի հայերէն Ազաթանգեղոսի « որ փրկին » բա_ցատրութեան: Բ. Այ. և Ան. կը համաձայնին իրարու դարձեալ, երբ հակառակ Ս. Գրոց թարգմանութեան,* σοφία *յառաջ կը դնեն քան զ*δύναμις:

*Բ. Կորնթ. ԺԲ.* 9.

*Այ. էջ* 78. Εἰ δεῖ με καυχᾶσθαι, ἐν τῇ ἀσθενείᾳ μου καυχήσομαι, ἵνα οἰκίσῃ ἐν ἐμοὶ ἡ δύναμις τοῦ Χριστοῦ.

*Յր.* ˮΗδιστα οὖν μᾶλλον καυχήσομαι ἐν ταῖς ἀσθενείαις μου, ἵνα ἐπισκηνώσῃ ἐπ' ἐμὲ ἡ δύναμις τοῦ Χριστοῦ.

*Ան. էջ* 631. *« Թէ լաւ ևս լիցի պարծել տկարութեամբ, զի բնակեսցէ յիս զօրութիւնն Քրիստոսի »:*

*Ս. Գրոց թարգմանութեան մէջ « [illegible] » գրուած է համաձայն Յր.ին. սակայն աստ Այ.* τῇ ἀσθενείᾳ *եզակի դնելով քաջ կը համապատասխանէ հայերէն Ազաթանգեղոսին:* Εἰ δεῖ με καυχᾶσθαι *յունարէն Ազաթանգեղոսի բացատրութիւնը՝ հակառակ է Յր.ի* ἥδισαμᾶλλον καυχήσομαι *բացատրութեանն, աւելի հայերէնի՝ քան թէ յոյն լեզուի ազդեցութեան արգասիք համարելի է. որովհետև [illegible] բառը հայերէնի մէջ [illegible] և [illegible] իսկ կը նշանակէ. այս պատճառաւ անշուշտ Այ.ի մէջ փոխանակ* μᾶλλον *ի՝* δεῖ *դրուած է, որ [illegible] կը նշանակէ:*

*Եփես. Բ.* 21 *և Դ.* 16. — *Կողոսացւոց Բ.* 19.

*Այ. էջ* 59. Ἐν αὐτῷ πᾶσα οἰκοδομὴ συναρμολογεῖται καὶ αυξεῖται εἰς αὔξησιν τοῦ θεοῦ.

*Յր.* Ἐν ᾧ πᾶσα ἡ οἰκοδομὴ συναρμολογουμένη αὔξει εἰς ναὸν ἅγιον ἐν κυρίῳ.

Ἐν ᾧ πᾶν τὸ σωμα σὺν τοῖς ἄρθροις καὶ μέλεσι καὶ ἁρμονίαις ἐν βεβαιότητι κοσμεῖται.

Ἐξ οὗ πᾶν τὸ σῶμα συναρμολογούμενον καὶ συμβιβαζόμενον διὰ πάσης ἁφῆς τῆς ἐπιχορηγίας... τὴν αὔξησιν τοῦ σώματος ποιεῖται.

Ἐξ οὗ πᾶν τὸ σῶμα διὰ τῶν ἀφῶν καὶ συν δέσμων ἐπιχορηγουμενον καὶ συμβιβαζομενον αὔξει τὴν αυξησιν τοῦ θεοῦ.

*Ահ. էջ 563. «Ի նա ամենայն շինուածն պատշաճի և աճէ զաճումն Աստուծոյ, յոր ամենայն մարմին յօդիւք և խաղալեօք և անդամօք հաստատեալ և կազմեալ է»:*

*Դիտելու է, որ Յր.ի* συναρμολογουμένη = *«յօդեալ և պատշաճեալ» կրկնաբայով հայերէն թարգմանութեան. իսկ յունարէն Ագաթանգեղոսի* αὔξειται *առանձին իմն կիրառութիւն է: Դարձեալ Յր.ի* ἁφή = յօդ *և* σύνδεσμος = խաղալէ՝ *ուղիղ են. իսկ Այ.ի* ἄρθα μέλη ἁρμονία *սխալ են. և այսպիսի սխալանաց բնագիր է Ահ. որուն խղճօրէն հաւատարիմ մնալ ուզած է յունարէնի թարգմանիչը:*

Եփես. Դ. 13.

*Այ. էջ 61.* Εἰς μέτρον ἡλικίας τῆς πίστεως τοῦ Χριστοῦ.

*Յր.* Εἰς μέτρον ἡλικίας τοῦ πληρώματος τοῦ Χριστοῦ.

*Ահ. էջ 567. «Ի չափ կատարման հասակի հաւատոցն Քրիստոսի»:*

*Ըստ կարծեաց Լագարդի, այս երևոյթս կը ցուցնէ, թէ ինչպէս հայերէն Ագաթանգեղոսն՝ 'ի յունարէնէ, այսպէս ալ յունարէնն՝ 'ի հայերէնէ կարէ թարգմանուած լինել. և թէ Այ. և Ահ. հակառակ կ'ելլեն Յր.ին և նորա թարգմանութեան, յորս միայն* πληρώματος = *«կատարման» բառը կը գտնուի՝ փոխանակ* πίστεως = հաւատոյ *բառին. ուստի հայերէն Ագաթանգեղոսի «կատարման» բառը 'ի բաց բառնալի է: Իրաւացի է Գերմանացի գիտնականին խորհրդածութիւնն, զի այդ տեղին խանգարուած կը տեսնուի. որովհետև ինչպէս Ագաթանգեղայ Բ. և Գ. օրինակաց մէջ «հաւատոց» բառը կը պակսի, այնպէս ալ կարելի է, թէ միւս օրինակներուն մէջ հաւատոցին տեղ՝ «կատարման» բառը մտած լինի:*

Փիլիպ. Գ. 14.

*Այ. էջ 78.* Εἰς τὸ ἔμπροσθεν ἐπεκτείνεσθαι ἐν τῷ τοῦ Χριστοῦ σταδίου.

*Յր.* Τοῖς ἔμπροσθεν ἐπεκτεινόμενος, τρέχω πρὸς τὸν σκοπιὸν διὰ τὸ βραβεῖον τῆς ἄνω κλήσεως τοῦ θεοῦ ἐν Χριστῷ Ἰσοῦ.

*Ահ. էջ 632. «Առ 'ի յառաջադէմ ընտրութիւն պսակահամբար քրիստոսադիր կիտին»:*

*Հայերէն Ագաթանգեղոսի «Առ 'ի յառաջադէմ» բառերն թէև յոռի կերպով կազմուած են հակառակ Ս. Գրոց թարգմանութեան «'ի յառաջադէմսն» բացատրութեանն, որ կը համաձայնի Յր.ի* τοῖς ἔμπροσθεν *բացատրութեան. սակայն յունարէն Ագաթանգեղոսի թարգմանիչն կուր զկուրայն հետևած է այնմ* εἰς τὸ ἔμπροσθεν *թարգմանելով:* σταδιὸς *իսկ = «պսակահամբար կիտին»:*

Ա. Տիմոթ. Դ. 13.

*Այ. էջ 86.* [13] Προσέχειν τῇ ἀναγνώσει καὶ τῇ παρακλήσει καὶ τῇ διδασκαλίᾳ. — [14] μὴ ἀθένει τὴν ἐν σοὶ Χάριν. — [15] ἐν

*Յր.* [13] Πρόσεχε τῇ ἀναγνώσει, τῇ παρακλήσει, τῇ διδασκαλίᾳ. — [14] μὴ ἀμέλει τοῦ ἐν σοὶ χαρίσματος. — [15] ταῦτα με-

ταύτῃ ἴσθι καὶ μελέτα, ἵνα σου ἡ προκοπὴ φανερὰ γένηται. – 16 πρόσεχε σεαυτῷ καὶ τῇ διδασκαλίᾳ, καὶ ἐν αὐτῇ χρονίσεις· τοῦτο γὰρ ποιῶν σεαυτὸν σώσεις καὶ τοὺ ὑπακούοντάς σου.

λέτα, ἐν τούτους ἴσθι, ἵνα σου ἡ προκοπὴ φανερὰ ᾖ ἐν πᾶσιν. – 16 ἔπεχε σεαῦτο γὰρ ποιῶν καὶ σαυτὸν σώσεις καὶ τοὺς ἀκούοντάς σου.

*Ա. էջ 659. « 13 Մինչ դիր ընթերցուածոց մխիթարութեան վարդապետութեան. 14 մի անփոյթ առներ զշնորհացդ՝ որ առ քեզդ են. 15 յայդ խորհեաց և 'ի դոյն կանխեսջիր, զի քո յառաջադիմութիւնդ յայտնի լիցի ամենեցուն. 16 զգոյշ լինիջիր անձինդ և վարդապետութեանդ և 'ի դմին յամեսջիր. զի եթէ զայդ առնիցես զանձն քո ապրեցուսցես և զայնոսիկ որ քեզ լսիցեն » :*

*Դիտելու է, որ հայերէն Ագաթանգեղոսի այս տեղիս՝ Ս. Գրոց թարգմանութեան հետ նոյն է, բացի մի քանի աննշան բաներէ, այսինքն է* ի *նախդիրն՝ որ 'ի 14 տան,* դ *դիմորոշ յօդն՝ որ 'ի 15 և 16 տան, և* զ *մակբայն 'ի նմին տան: Իսկ Այ. թէ՛ շարաբանութեամբ և թէ՛ բառից կիրառութեան մէջ մեծապէս կը տարբերի Ցբ.րէն 13 տան երկու* καὶ *երը, ըստ Լազարդի, կարեն* ס *էն առաջ եկած լինել: 14 տան՝* ἀθέτει *սխալ է, որովհետև=*անտեսել *(տես Մարկ. Զ. 26, Ղուկ. Է. 30, Յովհ. ԺԲ. 48, Գաղ. Բ. 21), և ոչ թէ* անփոյթ առնել*, որ է=*ἀμελεῖν*: 15 տան եզակի* ἐν ταύτῃ *միայն* յայտ *բառէն կարէ յառաջագայիլ, ինչպէս* γένηται *ալ՝* մէջ *բայէն: 16 տան՝* πρόσεχε *կարէր լինել տարբերութիւն ինչ. եզակի* αὐτῇ *և նորա առջև դրուած նախդիրն* ἐν *'ի դրին էն յառաջ կուգան:*

*Բ. Տիմոթ. Դ. 7.*

*Այ. էջ 23.* Τελειῶσαι τὸν δρόμον.

*Ցբ.* Τὸν δρόμον τετέλεκα.

*Ա. էջ 81. « Կատարել զընթացս իմ »: Ըստ Ս. Գրոց թարգմ. « զընթացսն կատարեցի »:*

*Ցունագէտ ոք կ'իմանայ, թէ* τελειῶσαι δρόμον *ոչքան անիմաստ է. որովհետև ոչ նշանակէ վարել զընթացս դէպ առ վախճան, այլ կատարեալ կերպով ընթանալ կը նշանակէ և երրայաբանութիւն մն է. իսկ* τελεῖν *և* τελειοῦν*=կատարել: Սակայն այս թերութեամբ հանդերձ՝ Ա.ի համաձայն՝ անորոշ ժամանակ դրուած է:*

*Արդ դիտելու է, որ ինչպէս 'ի հայերէն Ագաթանգեղ կան Ս. Գրոցմէ շատ տեղեր, որոնք մեսրովբեան թարգմանութենէն կը տարբերին, որովհետև հայ թարգմանիչը չանդրադառնալով, թէ նոքա Ս. Գրոց տեղիք են՝ ազատ թարգմանած է. այսպէս ևս յունարէն Ագաթանգեղոսի թարգմանիչն, հանդիպելով իւր բնագրին, այսինքն է հայերէն Ագաթանգեղոսի մէջ այս և ասոնց աղընթեր մէջ բերուած ուրիշ Ս. Գրոց տեղեաց, և չանդրադառնալով, թէ 'ի Ս. Գրոց փոխ առնուած են, կամ ուզելով հաւատարիմ մնալ իւր բնագրին, փոյթ չէ ըրած Ցբ.րին Ս. Գրոց յարմարցնել, այլ ազատ թարգմանած է;*

ծիրաւի, այս բանս շատ բնական է, և նման օրինակներ պակաս չեն, յորոց մին միայն կը յիշեմ ես աստ. այսինքն է Նփեսոսի Ս. Ժողովոյն Գործոց հրատարակութեան մէջ կը հանդիպինք Կեղեստի֊նոս Քահանայապետին՝ առ Հարս Ժողովոյն և առ Նեստոր գրուած թղթոց, որոնք 'ի լատին լեզուէ յեղան 'ի յոյն բարբառ, Ս. Ժողովոյն մէջ ընթեռնլու համար: Արդ այս թղթոցս յունարէն թարգմանու֊թեամբ եղած Ս. Գրոց տեղիքը, Ցր. րէն տարբեր շարաբանութեամբ կը ներկայանան մեզ:

Ուրեմն Ս. Գրոցմէ փոխառեալ տեղեաց քննութիւնք իսկ ակնե֊րև և առանց երկբայութեան կը ցուցնեն, թէ Ա. հայերէն Ագաթան֊գեղոսն՝ 'ի յունարէն բնագրոց թարգմանուած է, որովհետև յունա֊կան եկեղեցւոյ ժամակարգութեան և պատարագի մէջ եղած Ս. Գրոց տողեր և բացատրութիւններ կան, զորս չորրորդ դարուն ևս Հայք 'ի վար արկանէին և գրիչ մատենից գիտէր 'ի բերան: Բ. Թէ յունարէն Ագաթանգեղոսն՝ հայերէնէն թարգմանուած է, և չէ կա֊րող բացարձակապէս հայերէնի բնագիր լինել, որովհետև սորա մէջ Ե. դարում մտած Ս. Գրոց տեղիքն, ըստ հայերէն թարգմանութեան մէջ կը բերուին: Գ. Այսու վերստին կը հաստատուի նախընթացա֊բար ըրած մեր այն ենթադրութիւնը, թէ հայերէն Ագաթանգեղոսն Ս. Գրոց առաջին թարգմանութենէն անմիջապէս վերջ պէտք է որ եղած լինի. որովհետև, թէ՛ հայերէն Ագաթանգեղոսի և թէ՛ յունա֊րէնի մէջ բերուած Ս. Գրոց տեղեաց մէջ, զոր փոքր ինչ առաջ բաղդատեցինք, շատ անճշդութիւններ կան, հակառակ Ցր. ւին և նորա կատարեալ օրինակին վրայէն եղած երկրորդ թարգմանու֊թեան, յորոց կարելի է իմանալ զյարգ և զպատճառ երկրորդ թարգմանութեան:

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Յունարէն Ագաթանգեղոսի ճշման, և Զ կամ Է դարուց բնա֊գրոշմ 'ի վերայ նորա. — Ագաթանգեղոսի յունարէն թարգմանու֊թեան շարժառիթն և պարագայք. — Պատմական և ժամանակագրա֊կան հաստատիք՝ Զ կամ Է դարու թարգմանութեան. — Գուտշմիդ և Հայոց շարժական դարձով գծած Ագաթանգեղոյ թարգմանութեան սահմանք. — Հակառակ ապացոյց և լուծումն խնդրոյս. — Վախ֊ճան քննադատութեանս:

Յետ ապացուցանելոյ, թէ այժմեան յունարէն Ագաթանգեղոսն՝ հայերէնի թարգմանութիւն է. բնականապէս կը հետևի որոնել գի֊տել այսպիսի մի թարգմանութեան շարժառիթները, ժամանակն պարագայս և թարգմանչին ինքնին գլխովին: Գուտշմիդի և Լազար֊դի վկայութեան համեմատ՝ յունարէն Ագաթանգեղոսի լեզուն և ոճը շատ հեռի են Դ և Ե դարու յոյն մատենագրաց լեզուէն և ոճէն.

*մանաւանդ թէ* **Բարբարոսական** *իսկ կ՚անուանեն, յորում մերթ հասարակ լեզուի բառեր և բացատրութիւններ և մերթ օտարաբանութիւնք կը վխտան: Արդ այս երևոյթս մէկ կողմէն, և միւս կողմէն այլ ժամանակագրական, աշխարհագրական և պատմական վրիպակք կամ արտայայտութիւնք, զորս պիտի քննեմ, կը ցուցնեն ստուգիւ, թէ վերոյիշեալ դարերէն շատ ուշ պէտք է որ եղած լինի այն: Հելլէն դպրութեան մէջ զրեթէ մի եզականութիւն[1] կը կազմէ Ագաթանգեղայ գրոց յունարէն թարգմանութիւնը. սակայն այսպիսի եզականութեան պատճառն և պատեհը՝ սովորական և դիւրահասկանալի բան է, նոյն իսկ Յունաց կողմանէ, եթէ մտածենք Հայոց լուսաւորութեան հօր Ս. Գրիգորի և Հայաստանեայց եկեղեցւոյ նախկին դարուց սերտ յարաբերութիւնն ընդ յունականին աստի, և անտի՝ նորա և Հռիփսիմեանց տոնից հաստատութիւնն առ Յոյնս: Արդ յունական այն եկեղեցականք, որք անդստին 'ի Զ դարէ և այսր ձեռն արկին կարգաւորել զատոնս սրբոց և յօրինել զվկայաբանութիւնս և զճառս, հաւանական է, թէ Ս. Գրիգորի և Հռիփսիմեանց գործերն ևս հաւաքէին և յեղուին 'ի յոյն բարբառ: Եւ յիրաւի, այս բանս շատ բնական և անհրաժեշտ իսկ էր, եթէ վերոյիշեալ սրբոց գործոց նախկին և յոյն բնագիրքն ևս արդէն այդ ժամանակամիջոցին անհետացած համարինք, Բիւզանդիոնի նոխ մատենադարանի հրկիզութեամբ և կամ ուրիշ պատճառներով: Բայց որովհետև մէկ կողմէն այդ դարու կարծեցեալ Յայսմաւուրք կը պակասին, և հնագոյնն անգամ՝ որպիսի է Վասիլ կայսերն, որ Թ դարէն անդին չի անցաներ և հազիւ թէ մի քանի տողով կը դնէ Լուսաւորչայ և Հռիփսիմեանց մասին և տօնախմբութիւնն, և Մետափրաստէսի խմբագրութիւնն. իսկ միւս կողմէն՝ յունարէն Ագաթանգեղոսի առաջին իննամթիւ գլուխներն, որոնք Գրիգորի և Հռիփսիմեանց հետ բնաւ վերաբերութիւն չունին, և դեռ մի քանի ուրիշ հանգամանքներ՝ կը թելադրեն ինձ ասել, թէ այդ թարգմանութիւնն՝ իրօք Յունաց կողմանէ կատարուած չէ: Հետևապէս ուրեմն Հայոց պատմութեան և եկեղեցական խնդրոց պարունակին մէջ որոնելու է նորա բուն պատճառքն և պարագայքը:*

*Այս պատճառներէն գլխաւորն և ամենահաւանականը պէտք է, որ եղած լինին Զ դարուն և Է ին սկիզբներ Քաղկեդոնականաց և Հակաքաղկեդոնեանց մէջ տեղի ունեցած կրօնական և եկեղեցական խնդիրքն, որք երկար և աղէտալի վիճաբանութիւններ տածեն Հայոց*

1. *Թէպէտև Դաւիթ Անյաղթի ընծայուած երկասիրութեան ևս կրկին օրինակներ կան, այսինքն է յունարէն և հայերէն, բայց կրկին պատճառներ ևս առ ընթեր կային այս բանիս. այսինքն է, կամ այն է, թէ յունարէնն ուղղակի Արիստոտելի վերագրելի է. և կամ նոյն ինքն Դաւիթ 'ի սկզբան անդ առ Յոյնս ուսած և Յունաց իմաստնոց հետ 'ի պայքար մտած ժամանակամիջոցին, յունարէն գրած լինի զայն, ոչ միայն դիւրութեան, այլ մանաւանդ թէ իւր վարդապետական վկայականն ընդունելու և իբրև Թեզիս Յունաց ներկայացնելու համար, ինչպէս կ՚ընեն այսօր Եւրոպիոյ համալսարանաց մէջ պսակուող հայազգի ուսանողք. բայց յետոյ վերածուեցաւ հայերէնի:*

և Յունաց մէջ: Արդ այս ժամանակներս երբ Հայք ստիպեցան 'ի կայսերաց Յունաց և յաստուածաբանից նոցա՝ կամ ընդունել զդաւանումն Քաղկեդոնի ընդհանուր ժողովոյն, և կամ ճանաչել զինքեանս հերձեալ յընդհանուր Եկեղեցւոյ, նոցա միակ ապաւէնն և նեցուկն եղաւ դիմել առ հայրն հաւատոց իւրեանց Ս. Գրիգոր, զոր նաև եկեղեցին Յունաց կը տօնէր իւր խորաններուն վերայ և դասած էր ընդ նախանիկիական և աստուածաբան հարս. և որուն անուամբ հասած էր նոցա Ագաթանգեղայ չնաշխարհիկ գիրքը՝ ընդարձակ և ճոխ վարդապետութեամբ մասանց հաւատոյ: Բ. այնու քան այլովք ամենեքումբք կարելի էր նոցա զգուշացուցանել, մանաւանդ թէ սպառազինել զՀայս Յունաց բաժնին՝ ընդդէմ Ս. Ժողովոյն այնորիկ և հետևողաց նորա. որովհետև այդ Հայերն արդէն 'ի վաղուց կիրառութեամբ յունարէն լեզուին և ծիսակատարութեամբ՝ յարեալ էին առ Յոյնս. ուստի առ այս հարկաւոր էր թարգմանել « զԳիրսն Գրիգորի » 'ի յունարէն հեշտալուր բարբառ և ընծայել նոցա: Արդ այսպիսի մի ձեռնարկ կարելի էր իրագործուած համարել նոյն իսկ Հայոց այն լըջամիտ, յունական սուրբ Հարց և հօտապետաց գիտութեամբ մշակեալ և նոցա եկեղեցւոյն համակրող եկեղեցականաց կողմէն, որոնք բնաւ չի պատրեցան յասորի մոլորեցուցչաց և 'ի յաջողութիւնս և 'ի ձախողութիւնս միշտ անդրդուելի մնացին 'ի հաւատս, զոր ուսուցանէ ընդհանուր եկեղեցի, առ 'ի ցուցանել իրենց սադրեալ և վրդովեալ համազգեաց, թէ տեսէք Լուսաւորչէն և Տրդատէն սկսեալ՝ Հայաստանեայց եկեղեցին և եկեղեցական սուրբ հարք միշտ միացեալ և հաւատարիմ մնացին ընդ մայր եկեղեցւոյն, և թէ պէտք չէ խնդրոյն սխալ նշանակութիւն տալով՝ խզել Յունաց հետ ունեցած և սնուցած դարաւոր յարաբերութիւններն: Սակայն իրն յինքեան այսպէս եղած չէ. որովհետև այս բաներուս նորանոր ցուցակութեան պէտք չկայր. այնու զի յունական բաժնի Հայերն՝ յառաջագոյն իսկ քաջածանօթ էին այնպիսի ճշմարտութեանց՝ մինչև ցայն վայր եկած Հայաստանեայց եկեղեցւոյ գործադրական ընթացքէն և 'ի բազմապիսի յիշատակարանաց Յունաց և Հայոց, զորս կարդալու թէ՛ միջոցներ ունէին և թէ՛ բաւականութիւն. ուստի ես զառաջին ենթադրութիւնն աւելի իրական և պատմական եղած կը համարիմ:

Եւ յիրաւի, իմ այս կարծեացս ապացոյց կը համարիմ, նախ, Ագաթանգեղայ գրոց մէջ զետեղուած ընդարձակ վարդապետութիւնը: Ես յայսմ վայրի դիտաւորութիւն չունիմ զկայ առնուլ յընթացիցս և քննել, թէ ստուգիւ այս վարդապետութիւնս իցէ Լուսաւորչին մերոյ, եթէ ոչ. այլ զայս միայն կ'ըսեմ և կ'ըսեմ լիուլի վստահութեամբ (նոյնը նկատեց և նորադանդ քննադատն Գուտշմիդ), թէ այս վարդապետութեանս նշանաւոր մասն ուղղակի գրուած լինելով ընդդէմ Նեստորական մոլորութեանց, զէթ ըստ արտաքին երևութին՝ Միաբնակաց վարդապետութեան և համակացողութեան կը նըպաստէր, և նոցա համախոհից զէնքեր կը մատակարարէր զինքեանս պաշտպանելու համար. թէպէտև զայս բնաւ պէտք չէ մոռ-

նալ, թէ այդ վարդապետութեան հեղինակին մտքէն իսկ անցած չէր Եւտիքականութեան կամ Միաբնակաց համախոհ լինել, զի սոցա վարդապետութիւնը տակաւին չգոյր յայնժամ: Այլ նորա միակ նպատակն էր հերքել զմոլորութիւնս Նեստորականաց եկողաց 'ի Հայս յառաջին կէս Ե դարուն, որոնք յերկուս դէմս կամ անձինս կը բաժանէին զՏէրն մեր Յիսուս Քրիստոս, ցուցանել զմի միայն անձն կամ դէմս 'ի Քրիստոս Յիսուս՝ միացեալ անշփոթ և անբաժանելի կերպով յերկուց բնութեանց կամ գոյացութեանց, այսինքն է յաստուածայնոյն և 'ի մարդկայնոյն, ինչպէս մի և նոյն անձնաւորութիւն մարդոյ՝ բաղկացեալ է յերկուց գոյացութեանց, այսինքն է 'ի հոգւոյ և 'ի մարմնոյ. և ոչ թէ մի միայն գոյացութիւն աստուածային կամ մարդկային, և կամ այլ ինչ շփոթեալ յերկաքանչիւրոց՝ որ ոչ աստուածային լինէր կատարելապէս և ոչ ալ մարդ կատարեալ:

Երկրորդ ապացոյցն է՝ յէջ 82 յատուկ անունն Μαρκιανὸς: Արդ դիտելու ենք, որ ոչ Գ և Դ դարուն Մարկիանոս անուամբ կայսր եղած է և ոչ իսկ 'ի գրչագրաց անտի ըստ դիպաց սպրդած է յունարէն Ագաթանգեղոսի մէջ այդ անունը. այլ Լիկինիոսի հետ ընդդէմ Կոստանդիանոսի պատերազմող **Մարտինիանոս** է, զոր յիշէ հայերէն Ագաթանգեղոսն յէջ 646, և արտաքին պատմագիրք մերթ Մարտինոս կը գրեն, մերթ Մարտիանոս և Մարտինիանոս. սակայն յունարէնի թարգմանիչը հակաքաղկեդոնական ոմն լինելով, փոխանակ Մարտիանոսի՝ **Մարկիանոս** բարեպաշտ կայսեր անունը չարութեամբ զետեղած է աստ, ամպարիշտ կայսերաց մէջ դասելու համար զնա, և զգործս նորա ատելի ընելու աղագաւ յաչս համազգեաց իւրոց, որ իբրև երկրորդ ոմն Կոստանդիանոս պաշտպան հանդիսացաւ ուղղափառ հաւատոց և Ժողովոյն Քաղկեդոնի: Յիրաւի, յունարէն Ագաթանգեղոսի թարգմանիչն եթէ միայն եղած լինէր թշնամանիչ բարեպաշտ կայսերս, գուցէ տարակուսելու պատճառ ունենայինք այնպիսի մի եղելութեան վերայ. սակայն դիտելու ենք, որ ուրիշ հակաքաղկեդոնական հայ մատենագիրներ ևս կան, որք այլուր **ամպարիշտ** և անիծեալ և այլ անլուր հայհոյանօք կը յիշեն զՄարկիանոս բարեպաշտոն, և ընդհակառակն զԶենոն և զԱնաստաս անարժան կայսերս՝ մինչև յերկինս կը բարձրացնեն:

Երրորդ, յէջ 76 յետ ասելոյ համաձայն հայերէն Ագաթանգեղայ ἔταξεν εἰς τὴν μεγάλην πανήγυρω. «Ժամադրեաց տօն մեծ հրաչակել», անդէն կը դնէ յաւելուածով τῆς λεγομένης Διαπομπῆς, այսինքն է, **Թափօրէ** կամ ելանելոյ 'ի Թափօր և կամ արձակուրդի — dimissio: Մ. Խորենացի **Վարդավառի ճառին** մէջ, կ'ըսէ թէ Յոյնք. «Զսա Պայծառակերպութեան (Μεταμόρφωσις) և Պսակաց (Στεφάνων) կոչեն տօն և Հայք **Վարդավառ**»: Արդ այս տօնիս հեթանոսական և քրիստոնէական ծագման մասին՝ արդէն այլուր խօսեցանք, նկատմամբ Հայոց. իսկ այժմ ըստ քերթողահօրն վկայութեան, եթէ Յունաց ևս ծանօթ համարինք զայն 'ի Ե. դարուն, սակայն և այնպէս յայտ է, թէ տակաւին հաստատուած չէր յեկեղեց֊

տոչ նոցա, և բոլորովին տարբեր անուամբ կը յիշէ Մովսէս կամ լաւ ևս Վարդավառի անհարազատ ճառին անծանօթ հեղինակն՝ 'ի թարգմանչէ անտի յունարէն Ագաթանգեղայ: Ուստի պէտք է ասել, թէ այդ թարգմանութիւնն այնպիսի ժամանակի մի մէջ եղած է, յորում Յոյնք աշխարհօրէն հանդիսիւ կը տօնէին զՏօն Այլակերպութեան Քրիստոսի. իսկ արդ Այլակերպութեան տօնի հաստատութիւնը Զ դարում վերջեր կամ 'ի սկիզբն Է. ին եղած կը կարծուի առ Յոյնս: Եւ յիրաւի, այդ ժամանակէն առաջ գրաւոր յիշատակարաններ կը պակսին, իսկ եղածներն [1] անկէ վերջ եկող դարուց մէջ յօրինուած են: Միսյն Նիկիոյ երկրորդ ժողովոյն գործոց մէջ ընդ այլ գրութիւնս Ղևոնդի Կիպրացւոյ՝ կայ և ճառ մի 'ի վերայ Այլակերպութեան Յիսուսի, De Transfiguratione Domini մակագրով. սակայն այս յիշատակարանս, եթէ հարազատ ևս համարինք, անկէ չի հետևիր սոյն տօնիս հաստատութիւնն 'ի յունական եկեղեցւոջ. որովհետև եթէ Դ. դարէն 'ի վեր հաստատուած լինէր Այլակերպութեան տօնը Յունաց եկեղեցւոյն մէջ, կարելի բան չէ որ Յովհ. Ոսկիբերան և այլ սրբազան պերճախօսք Յունաց՝ սուանձին ներբողենիւ և քարոզիւ փառաւորած չըլլային զայն:

Չորրորդ և իբրև պատմական ապացոյց կարելի է մէջ բերել այն հաւաստի յիշատակարանը, զոր ընծայէ մեզ Է դարու պատմագիրն Սեբէոս [1] և այլք կը հաստատեն: Հեղինակն՝ իւր այդ երկասիրութեան ԼԳ գլխոյն մէջ կը բերէ Ներսէս [2] Կաթողիկոսի և Թէոդորոս Ռշտունեաց իշխանի նախագահութեամբ 'ի Դուին համախմբուած (527) ժողովին կողմանէ առ Կայսրն Կոստանդին ուղղուած պատասխանական թուղթը, յորում կ'ըսուի, թէ Խոսրով Որմզդի (ոմանք Կաւատայ արքային կը դնեն) հրաման ետ ամենայն եպիսկոպոսաց կողմանցն արևելից ժողովել 'ի դուռն արքունի վասն Միաբանութեան. « Եւ ժողովեցան ամենեքեան 'ի դահլիճն արքունի, և եղև աղաղակ մեծ, քանզի էին ոմանք ուղղափառ հաւատով, գրով և կնքով հին թագաւորացն ...: Դիպեցան անդ արք երկու եպիսկոպոսք յաշխարհէն Հայոց, արք հաւատարիմք, զոր վասն բռնութեան աշխարհին էին արձակեալ, զի ծանուսցեն թագաւորին, Կոմիտաս Մամիկոնէից եպիսկոպոս և Մատթէոս Ամատունեաց: Ունէին պատրաստական անդ ընդ իւրեանս զԳիրս սրբոյն Գրիգորի »: Սոյն տեղիս կը գտնուի և առ Ստեփ. Տարօնեցւոյ՝ [3] յաւելուածովս. « և զայլ ևս վարդապետական պատմութիւնս »:

Անտարակոյս Գրիգորի Գրքով՝ զԱգաթանգեղոսը կը հասկանայ աստ Սեբէոս. և 'ի յետագայն՝ բացայայտիչ բացատրութիւններ ևս կ'ածէ 'ի վերայ յասելն. « Սուրբ և ճշմարիտ կաթողիկոսն մեր Գրի-

1. Պատմ. 'ի Հերակլ. տպգ. Ք. Պատկանեանի 'ի Ս Պետրբուրգ, 1879:

2. Ըստ քաջախոյզ քննութեան Ջամչեանի, զՆերս. Շինող պէտք է հասկանալ այդու, և ոչ Աշտարակեցին. որովհետև վերջինս լինելով 527 ին, չէր կարող նոյնը լինել ժամանակակից Կոստանդին կայսեր, որ էր 654 ին:

3. Տպագ. Կ. Շահնազարեանի, Պարիզ, 1859:

գործոս ՚ի Կեսարիա Կապադովկացւոց ընեալ և ուսեալ վարդապետաց մեզ, ՚ի վարդապետելն զՏրդատ արքայ և զիշխանս Հայոց աշխարհին, յոր հիմնեալ անշարժ կամք մինչև ցայժմ »: Քիչ յետոյ ամբողջական հատուած մ՚ևս մէջ կը բերէ յԱգաթանգեղայ, որուն սկիզբն է. « Որ ՚ի մարմինն հաւատացին » ... և վերջն է « յանման աստուածութենէն իւրմէ »: Ուստի խնդիրը կը մնայ նորա թարգմանուած կամ չթարգմանուած լինելուն վերայ, և թէ ո՞ր լեզուաւ թարգմանուած կարէր լինել: Ցիրաւի, Սեբէոսի վերոյիշեալ տեղւոյն մէջ որոշակի չիք յիշատակութիւն յունարէն թարգմանութեան իրիք. սակայն նախ այս բացատրութիւնս, թէ « Ունէին դպրութիւն անդ ըստ ինքեանս », յայտնապէս կը ցուցնէ զայն: Արդարև ի՞նչ բանի կու գար Ագաթանգեղայ գիրքն ունել ըստ ինքեանս՝ առանց թարգմանութեան, որ պիտի լինէր մատեան լոկն կնքեալ՝ Պարսիկ, Ասորի և Ցոյն և այլն եպիսկոպոսաց համար. ուստի զայն ներկայացընելն իսկ՝ վախճանազուրկ և միանգամայն ծաղրական բան մի կը լինէր, որովհետև նոքա հայերէն չէին հասկանար. իսկ եթէ Հայք բերանացի թարգմանել ուզէին, նոքա չպիտի հաւատային՝ պատճառ բերելով, թէ կը կամակորէք զմիտս Գրիգորի և զգիրս նորա: Ուրեմն հարկ էր ունել թարգմանութիւն ինչ յունարէն լեզուով, որ էր նաև այն ժամանակամիջոցին Արևելքի մէջ տիրող, հասարակաց, դիւրալուր և Հայոց համար սիրելի և գործածական լեզու, ըստ վկայութեան հայ մատենագրաց Ե և Ը դարուց, յորոց ոմանք մանաւանդ յունարէն քան թէ հայերէն դպրութեան մէջ պայծառ կը փայլէին:

Գրիգոր Անաւարզեցին՝ առ Հեթում թագաւոր՝ վասն եկեղեցական խնդրոց և միաբանութեան՝ աշխարհիկ բարբառով գրած թղթոյն [1] մէջ կ՚ըսէ. « Տես յիմ քեռոյն գիրքն, զոր ունի Ստեփանոս Սարկաւագն. և կամ հարց ՚ի վաներդ, թէ ո՞րպէս կու ասեն գիրքդ, զոր ցուցանեմք ՚ի ժողովն: Ու կու ասէ Աղուանից պատմիչն ՚ի հոս և յամէն Արևելք. թէ Պարսից թագաւորին հրամանաւն տասն եպիսկոպոսք ՚ի Դվին փոխեցին զոր ինչ օրէնք եկեալ էր ՚ի Ս. Գրիգորէ ՚ի վեր »: Նոյնը նաև յէջ 444 կ՚ըսէ. « Թէ փոխած է ՚ի Դվին սրբոյն Գրիգորի սահմանն, և դրած (գրած) պարսից թագաւորովն »: Դիտելու է, որ փոխել բայն երկու իմաստ ունի, այսինքն է, մի կը նշանակէ փոփոխել. միւս ևս յեղուլ կամ թարգմանել: Աստ եթէ երկրորդ նշանակութեամբ առնունք զբանն Անաւարզեցւոյ, ոլ ինձ աւելի հաւանական կ՚երևի, Սեբէոսի վերոյիշեալ տեղին վերստին հաստատութիւն կ՚առնու և կը պարզուի գլխովին՝ նոր պարագայիւք:

Ագաթանգեղայ գիրքը Զ դարուն վերջին կիսում կամ Է.ին սկիզբը թարգմանուած լինելուն հինգերորդ ապացոյց կարելի է համարել հետևեալ երևոյթն. այսինքն է, ինչպէս այլուր տեսանք, յունա-

1. Տես առ Կղ. Գալանոսի. Միաբանութիւն Հայոց սուրբ եկեղեցւոյն, և այլն, հտ. Ա. էջ 441:

րէն օրինակէն մէջ բերուած հատակոտորներն՝ Ը դարէն անդին չեն անցնիր, գէթ մինչև ցայսօր եղած յայտնութիւններէն չափելով. որոնց հնագունի ներկայացուցիչն է Ս. Նիկեփոր: Արդ այս երևոյթէս կը հետևի, թէ կարելի է թէ նոյն իսկ Ը դարէն առաջ եղած լինի յունարէն թարգմանութիւնը, բայց ոչ բնաւ յետոյ. որովհետև կ'են թադրուի, թէ Նիկեփորի ժամանակ, այսինքն է Զ–Ը դարում՝ արդէն այլևայլ օրինակներ տարածուած էին նոյն իսկ յունական շրջաններու և մատենադարանաց մէջ, որով կարաց նա իբրև ամենուն ծանօթ գրուածքէ մի՝ այլևայլ տեղիս մէջ բերել հերետիկոսաց դէմ. մանաւանդ այն ժամանակներ, երբ տարածման միջոցներն իսկ՝ խիստ քիչ էին, դժուար և երկար ժամանակի կարօտ:

Արդ այժմեան յունարէն Ագաթանգեղեայ թարգմանութեան շարժառիթն և մերձաւոր ժամանակամիջոցն՝ որքան որ բանաւոր և հաստահիմն են, նոյնքան ևս, պէտք է խոստովանել, թէ նորա ճիշդ տարեթիւն և թարգմանիչն որոշելն ամենադժուար է. որովհետև Քաղկեդոնականաց և Հակաքաղկեդոնեան կուսակցութեանց մէջ յամին 640 սաստիկ կերպով յուզեալ խնդիրներն, յամէն 489 արդէն սկսած էին սաղրանօք Ասորւոց ոմանց՝ տարաձայնութեանց և երկպառակութեանց նիւթեր պատրաստել Հայաստանեայց մէջ. և այս պատճառաւ համախմբուած ժողովոց, կաթողիկոսաց և նոցա գործոց մասին ևս մեծ շփոթութիւն կը տիրէ առ տոհմային մատենագիրս: Սակայն այնու իսկ բարեբաղդ կ'երևի ինձ յունարէն Ագաթանգեղայ թարգմանիչն, որ այսպիսի անորոշութենէ մ'ազատելու համար՝ երկու նշանաւոր յաւելուածներ ևս կը ներկայացնէ մեզ, զորս կարելի է ունել 'ի ձեռին իբրև թել ինչ ժամանակագրական: Նա յէջ 45 Հայոց Հ—ի ամսոյն տեղ՝ Հռովմէական Σεπτεμβρίος ամիսը կը կարգէ, և յէջ 72 Ս—հ—ի ամսոյն դիմաց՝ Հոկտեմբերն ևս կը դնէ, յաւելն τοῦ μηνὸς Σαομι, κατὰ χώραν λεγομένου, κατὰ δὲ Ῥωμαίους Ὀκτοβρίου: Արդ այս երևոյթս կը թուի ցուցանել մեզ, թէ յունարէն թարգմանութիւնն այն տարւոյն մէջ կատարուած է, յորում հաւանօրէն Հայոց Հոռի ամիսը կը համապատասխանէր ճիշդ հռովմէական Սեպտեմբեր ամսոյն: Սակայն ըստ իս յունարէն թարգմանութեան այդ լնծայութիւնը չէ մարթ առնուլ իբրև ծանուցեալ ժամանակ ինչ, այլ իբրև x՝ անծանօթ. որովհետև այդ տեղերով ոչ որոշակի հռովմէական տարեթիւը նշանակուած է և ոչ իսկ յաւելուածով դրուած ամսոց օրերն: Բ. Հայք անդստին 'ի վաղ ժամանակաց երկու տեսակ տարիներ կը գործածէին, այսինքն է, մին շարժական կամ աննահանջ, իսկ միւսն հաստատուն կամ նահանջաւոր. բայց այժմ չի գիտցուիր, թէ այդ տարիներէն որն արդեօք 'ի վար արկանելով՝ հայերէն Ագաթանգեղայ թարգմանիչը՝ դրած է Հոռի և Սահմի ամիսներն. այսպէս նաև յունարէնի թարգմանիչը՝ չենք գիտեր, թէ որ տարւոյն բաղդատմամբ Սեպտեմբեր և Հոկտեմբեր ամիսներն համեմատեցուցել է Հոռի և Սահմի ամսոց, այլ այսչափ միայն յայտնի է, թէ երբ Ս. Գրիգոր առաջին անգամ Յովհաննու և Աթանագինեայ տօնն հաստատեց, Ամանորոյ առաջին

օրն կամ Նաւասարդն Հայոց կ'իյնար Սահմի ամսոյն մէջ, համա_րելով որ հայերէն Ագաթանգեղայ յէջ 623 տեղին՝ նոյն ըլլայ յէջ 611 տեղւոյն հետ: Եւսեբիոսի Ժամանակագրութեան թարգմանիչն յու_նական δαίσιος (Յունիս) ամսոյն տեղ Հայոց Մարերի ամիսը դրած է երկիցս: Այսու կարելի էր խպառ պարզել յունարէն և հայերէն Ագաթանգեղոսի վերոյիշեալ տեղիքն, եթէ թարգմանութեանս տա_րեթիւը նշանակուած լինէր. բայց դժբաղդաբար թէ Եւսեբիոսի այդ գործոյն թարգմանիչն և թէ այլք առ հասարակ խոր լռութիւն պա_հած են:

Գուտշմիդ ըստ շարժական տարւոյն նկատելով զԱմանորն Հայոց՝ այն եզրակացութեան կու գայ, թէ ինչպէս Եւսեբիոսի Ժամանակա_գրութեան թարգմանութիւնն՝ յամին 467, այսպէս ևս յունարէն Ա_գաթանգեղայ թարգմանութիւնն 591 էն աստին չանցնիր. որովհե_տև, կ'ըսէ նա, Հայոց Նաւասարդն, այսինքն է Ամանորայ առաջին օրը՝ յամին 344 հանդիպեցաւ, Սեպտեմբեր 1 ին. յամին 468՝ Օ_գոստոս 1 ին, և յամին 592՝ Յուլիսի 1 ին. և ըստ այսմ յունարէն Ագաթանգեղայ թարգմանութեան ժամանակի մերձաւոր սահմա_ները կ'որոշէ 555–591 ամաց մէջ:

Գերմանացի քննադատին գծած սահմանները, թէպէտև վերոյի_շեալ պատմական ապացուցութեանց ուղղակի չեն հակառակիր, սակայն ինձ կը թուի, թէ Հայոց շարժական տարիէն ձեռնարկած ոչ հաշիւը ճիշդ է և ոչ այլ այնու կարելի է ուղղակի որոշել յունա_րէն և հայերէն Ագաթանգեղոսի վերոյիշեալ տեղեաց և թարգմա_նութեան ժամանակի վերաբերեալ գաղտնիքը: Գուտշմիդի հաշիւն անհասկանալի է այնու, զի չի ծանուցաներ, թէ արդեօք այդ շար_ժական տարւոյ՝ Նաւասարդի մերթ այս ինչ և մերթ այն ամսոյն մէջ հանդիպումը՝ ըստ Հայկեայ կոչուած, թէ մի այլ շրջանի համե_մատ կ'ընէ: Բ. Իւր ընթերցողներն առանց ինչ նախապատրաստիչ տեղեկութեան կը թողու՝ նկատմամբ Հայոց մէջ գործածուած այդ շրջանին և նորա այլևայլ հանգամանաց, Դ – Զ դար: Ուս_տի առ այս դիտելու ենք, որ Հայկայ շրջանն է բոլորումն 1461 ան_նահանջաւոր ամաց, որուն համար կը կոչուի նաև Մեծ Բոլորակն, որուն առաջի շրջանն՝ սկսած է յամին 2492 նախ քան զՔրիստոս, և բոլորած է յամին 1032 նախ քան զԹուական նորին: Երկրորդ շրջանը կը սկսէր 1032 էն և կը բոլորէր յամի Տեառն 428: Իսկ եր_րորդն՝ սկսեալ աստի՝ բոլորեցաւ յամին 1888: Դիտելու ենք դար_ձեալ, որ այդ շրջանն ինչ ամսով որ սկսաւ զառաջինն, 'ի լրանալ ընթացից 1461 ամաց, դարձեալ նոյն ամսոյն առաջին օրը կը սկը_սէր երկրորդ շրջանը: Հուսկ ուրեմն դիտելու է, որ այդ ամսն, որ է նոյն ինքն Նաւասարդ ըստ քաղաքական Տումարին Հայոց կամ Յայսմաւուրաց՝ էր տարեմուտ շարժական տարւոյն, և կը համա_պատասխանէր Օգոստոս 11 ին՝ ըստ Յուլեան տումարին, իսկ ըստ Գրիգորեան Տումարին 23 ին Օգոստոսի: Իսկ ըստ հին եկեղեցական Տումարին՝ տարեգլուխն կամ ամսամուտն էր Արեգ ամիսն, որ կը համապատասխանէր 9–21 Մարտի, ըստ Յուլեան և Նոր տումարի.

որովհետև բնական տարեմուտ է, լինելով գարնանամուտ և հաւասարակած տունջեան և գիշերոյ: Յիրաւի, Հայոց Արեգ ամիսն՝ 'ի ժամանակի թարգմանութեան Ս. Գրոց կը համեմատէր Մարտ ամսոյն, որովհետև Եսթերայ Գրոց ԺԱ. 2 մէջ կ'ըսուի այսպէս. «Ամսոյն Ադարայ՝ որ է հայերէն Արեգ»: Եւ Եբրայեցւոց Ադար ամիսն այդ ժամանակ կը սկսանէր 'ի Մարտի:

Արդ գիտելով քաջ, թէ Հայոց շարժական կամ Հասարակ տարին 'ի միջոցի 120 ամաց՝ մի ամիս առաջ կը խաղար, նահանջ չըլնելուն պատճառաւ. այսինքն է 'ի սկսանել շրջանին՝ տարեմուտն անկանէր յ'1. Նաւասարդի, բայց յետ 120 ամաց՝ գայր անկանէր յ'1. Հոռի ամսոյ, եթէ առնումք Հայկայ թուականին Բ. շրջանը, որ սկըսաւ յամին 1032 նախ քան զՔրիստոս և լրացաւ յամն 428 յետ Քրիստոսի, կը տեսնենք, նախ որ բոլորովին տարբեր ամսոյ մէջ կը հանդիպէր տարեմուտն կամ Նաւասարդն Հայոց, քան որ ինչ գըրուած է հայերէն Ագաթանգեղոսի մէջ: Եւ յիրաւի, յամի Տեառն 428–429 շարժական տարեմուտն կամ Նաւասարդը կը հանդիպէր 'ի 11 Օգոստոսի. իսկ ըստ հին եկեղեցական տումարին յ'9 Մարտի (Արեգ): Յամին 332, յորում Ագաթանգեղայ բնագիրն յօրինուած կը համարուի, կը հանդիպէր Յուլիս 18ին (Հրոտից). Իսկ ըստ հին եկեղ. տումարին՝ Փետրուար 14ին (Մեհեկան): Յամին 325, յորում եղև ժողովն Նիկիոյ և Ագաթանգեղայ պատմագրութեան ընթացքը կ'աւարտի, անկանէր 'ի 19 Յուլիսի. ըստ հին եկեղ. տումարին 'ի 15 Փետրուարի: Յամին 304, յորում ձեռնադրուած կը համարուի Ս. Գրիգոր և կարգեալ զաշխարհահանդէս տօն Յովհ. Կարապետին և Աթանագինեայ վկային, կ'իյնար 'ի 10 Յուլիսի. ըստ եկեղ. տումարին 'ի 6 Փետրուարի: Իսկ ըստ ժամանակագրութեան Սամուէլի Անեցւոյ, որ «'ի ծննդենէն Քրիստոսի մինչև ցսուրբն Գրիգոր ամք ՅԺԲ» կը հաշուէ, կը հանդիպէր 'ի 12 Յուլիսի. ըստ եկեղ. տումարին յ'8 Փետրուարի:

Սոյն անհամաձայնութիւնը կը տեսնուի նոյնպէս յունարէն Ագաթանգեղոսէն նշանակուած ամսոց մասին: Եւ յիրաւի, եթէ սկսինք յամէն 428, յորում կը սկսի Հայկայ Գ շրջանն, մինչև ցամն 551՝ Նաւասարդը կը հանդիպէր Օգոստոս 11–10 Յուլիս ամսոյ. իսկ ըստ հին եկեղեցական տումարին՝ Մարտի 9–1 ն Փետրուարի: Այսպէս նաև Հայկական կոչուած թուականին հաստատութեան առաջին ամէն, որ եղաւ յամի Տեառն 552՝ մինչև ցամն 595՝ Հայոց շարժական տարւոյն Նաւասարդն՝ ըստ յառաջխաղացութեան ամաց և ըստ յետադարձ գնացից ամսոց՝ կը հանդիպէր 11–1 Յուլիսի. իսկ ըստ եկեղ. տումարին Փետրուարէն Յունուար ամսոց մէջ: Այսպէս նաև 600 էն ց627՝ միշտ Յունիս և Յունուար ամսոց մէջ կը հանդիպէր, ըստ երկաքանչիւր տումարին: Ուրեմն այս անհամաձայնութենէս կը հետևի, թէ հայերէնի և յունարէն Ագաթանգեղոսի վերոյիշեալ ամսոց հանդիպումը Հայոց շարժական տարիով չէ մարթ մեկնել, այլ ընդ հակառակն մի նահանջաւոր և եկեղեցական անշարժ տումարի համաձայն պէտք է եղած համարել, զոր Հայք յետ դարձին իւրեանց 'ի քրիստոնէութիւն սկսան 'ի վար արկանել:

Ցիրաւի, Լուսաւորիչն մեր և յաջորդք նորա, որք 'ի Յունաց և 'ի Հռովմայեցւոց անտի առին իրենց եկեղեցւոյ տօները և տօնելի սուրբերն, կ՚ուզէին այն շարժական և անհաստատ տումարով անշարժ և հաստատուն կերպով կատարել զնոսա և ընդ նոսա. այս անհասկանալի է: Որն էր ուրեմն այդ անշարժ տումարն, որուն գոյութիւնն անհրաժեշտ կերպով կը պահանջուէր, և որ հասարակաց էր այլոց եկեղեցեայց: Այս տումարս էր կամ **Կանոն զատկական** կոչուածն՝ մեծահռչակ եպիսկոպոսին Աղեքսանդրացւոց Անատոլիոսի, որ, ըստ վկայութեան Եւսեբիոսի և Հերոնիմոսի, յամին 270–277 Իննևտասներեակի (ennéadecacteride) վերայ հաստատուած **Լուսնա-արեգականային շրջանն** հնարեց, որև **Աղեքսանդրացւոց** իսկ կոչեցաւ. որովհետև նախ Աղեքսանդրացիք ընդունեցան զայն իբրև կատարեալ քան զամենայն դրութիւնս Յունաց, վասն խնդրոյ Զատկին, ինչպէս նաև Ժողովն Նիկիոյ և յետ Ժողովոյն ամենայն եկեղեցիք Արևելից և Արևմտից, և այնու սկսան վարիլ իբրև ճշդագունիւ: Եւ կամ **Յուլեան տոմարն**, որուն տարին կը բաղկանայր դարձեալ արեգակնա-լուսնային 365 ¼ օրերէ, և անդստին 'ի վաղ ժամանակաց մուտք գտաւ յԱրևելս և յԱրևմուտս, և անոր վերայ կարգեցին և կանոնեցին գրեթէ բոլոր քրիստոնեայ ազգերն իրենց տօներն և տօնախմբութիւնքը: Այնպէս որ **Երկհարիւրեակն** Անդրէասայ, **Հինգհարիւրեակն** Նէասայ, **Կանոնն** Անատոլիոսի և միւս Աղեքսանդրեան շրջանները յուլեան տարւոյն պէս արեգակնա-լուսնային դրութեան վերայ յարմարուած էին: Սակայն ես մէկ կողմանէ տոհմային հին ժամանակագրաց և տումարագիտաց վկայութեանը վրայ հաստատուած, իսկ միւս կողմէն ալ Հայաստանեայց եկեղեցւոյ նախկին վիճակը զննելով, այլ ևս չեմ տարակուսիր ըսել, թէ Հայք անդէն յետ դարձին 'ի քրիստոնէութիւն մինչև ցժամանակ հաստատութեան հայկական թուականին, այսինքն է ցամն 551՝ զԱղեքսանդրեանն 'ի վար արկանէին. և թէ այդ տումարն ոչ եթէ ուղղակի յԱղեքսանդրացւոց անտի՝ այլ յեկեղեցւոյն Կեսարիոյ Կապադովկացւոց ընդունեցան Հայք, որ նոյնպէս յամէն 277–353 այնու կը վարէր. և յետ այնորիկ սկսաւ վարիլ Երկհարիւրեկաւն Անդրէասայ, որուն հետևեցան նոյնպէս և Հայք: Իսկ յամի Տեառն 552 (ըստ Ասողկայ 553) երբ Երկհարիւրակը լրացաւ և տօներն սկսան շփոթել, Յուլեան տումարին համեմատ հաստատուեցաւ մեծ թուականն Հայոց, թէպէտև ոչ նոյնպէս անշարժ կերպով շարունակուեցաւ. որովհետև Հայք կամ տգիտաբար նահանջ չընելով, և կամ դիտմամբ բաժնուելու 'ի Յունաց՝ դարձեալ իրենց շարժական տարւոյն ընթացքը բռնեցին: Սոցա անտեղութիւնքը քաջ նկատելով ապա մեծիմաստն Սարկաւագ վարդապետ յամին 1113–1166, կարգեց փոքր անուանեալ թուականն [1], որ Աղեքսանդրեան և Յուլեան

1. Արդ ցայս վայր ըսած իրին ստոյգ եղելութեանն 'ի հաստատութիւն և միանգամայն փոքր թուականին վերայ որոշ գաղափար մի տալու համար, կարևոր կը համարիմ դնել աստ 'ի ծն. հաւաքմունքէ Նախնեաց Սարկաւագայ երկու հատուածները, զոր ընդօրինակեց երբեմն

տումարին համեմատ էր, այսինքն է Իննևտասներեկի վերայ հաստատուած է և անշարժ կերպով կ'ընթանայ զոյգ ընդ տօնից և ամսոց Հոռոմոց:

Հ. Ղևոնդ Ալիշան Պարիզու գրատան թիւ 114 տումարական մատենէն: Առաջնոյն վերնագիրն է. «Յովհաննու Քահանայի և իմաստասիրի ասացեալ Ցաղագս ամսոց Հայոց և տօնից, և յաղագս չորեքտասանորդաց լուսնոյ Զատկին»: Իսկ երկրորդին՝ է «Յովհաննու ...: և իմաստասիրի որ մականուանի Սարկաւագ, ասացեալ յառաջ քան զդրութիւն իւրոյ տումարին». «Անմարաց և ոչ քաջահմուտ արանց կարգուածք երևին՝ ըստ Հայոց ամսոց անշարժ իմն դիրք, եթէ ոք ասիցէ շարժումն եղանակաց և տօնից ոմանց, զորս պարտ էր ընդ Հռովմայեցւոց և Եբրայեցւոց և այլոց ևս ազանց համանգամայն խաղացմամբ ընթացիցն օրինեալ շարժմունս յորմէ անմոլար և անտարակոյս զամենայն գիտել պատահէր, և ոչ դժուարին ինչ և սխալական յանարուեստութենէ զարուեստից սայթաքմունս առանձնակի նահանջիցն հաւաքմանէ: Ոչ գիտեմ յինչ արդեօք կամ վասն որո՞յ պատճառի զայսքան գործեցին ծիծաղելի և անհանճարութեանդ իրս. չիմացեալք և ոչ զվրիպանսն յանտի դժպատեհութենէն, զյաւելուածն ընդ շրջագայութեան յեղանակացն 'ի նահանջից պնտի. հակառակ ստուգագրութեան ժամանակացն թուոյ, և զանշարժ կանոնացն զանցմունս կարգելոց 'ի նախնեացն արանց, արուեստիւ և վարուք առաքինեաց: Քանզի ոչ միայն յետ գալստեան Փրկչին արուեստագէտք իրացս, այլ և 'ի մարգարէից ոմանց արարին յիշատակ, թէ ո՞ր ամիսք ընդ ո՞րս Եբրայեցւոց զուգիցին Հայոց: Զի թէպէտ ոչ նմանապէս, սակայն համընթացս և զոյգս մտից և ելիցն սկսմամբք և փախճանիւք գտանեմք զամիսս Հայոց՝ այլոց ազգաց ամսոց 'ի բանս և 'ի կանոնս արուեստաւորաց, որում և պահանջէ իսկ ճշմարտութիւնն: ... Արդ որպէս ասացաք ըստ Եբրայեցւոց հնագիտակաց և զմարգարէիցն ոմանց, 'ի Դ ամսոյն Արեգ՝ հանդիպի հասարակութիւն տունջեան և գիշերոյ, ըստ եղանակին գարնայնոյ, ըստ որում գտանի 'ի գիրս Եզրի: Քանզի ասէ. Յամին վեցերորդի Դարեհի արքայի կատարեցաւ տաճարն սուրբ 'ի ԻԳ Ադար, որ է Մեհեկի ԻԳ: Իսկ 'ի Զաքարիա մարգարէ 'ի քսաներորդի և 'ի չորրորդի՝ մետասաներորդի ամսեան, որ է ինքս Արաց: Արդ ըստ այսմիկ գտցես զչորրորդ օր աւելեաց Եբրայեցւոց կշիռ զոյգ հանդիպեալ ընդ չորիցն Արեգ ամսոյ՝ յորում սկիզբն է եղանակին գարնայնոյ: Ունի և այլ զմարգարէիցն յիշատակեալ զմերոց ամսոց, թէ ո՞յք որո՞ց նոցայոցն հանդիպին զոյգ: Իսկ ըստ այլոց այլազգ, ոմանց անշարժապէս կարգողաց. իսկ ոմանց շարժեալ եղանակացն զամիս, որպէս յայտնի է ընթերցասիրացն: Ոչ վայրապար գտեալ գրէ դարձեալ մի ումն 'ի մանկանց Եկեղեցւոյ՝ վասն Ղե երեկի բոլորակին, թէ նոյն աւուրբք գան և 'ի նոյն շաբաթս ըստ թուոյ Դիւստրոս ամսոյ կամ Քսանդիկոսի, որ է Մարտի կամ Ապրիլի, և հայերէն Մեհեկանի կամ Արեգ. և սուղ ինչ աւուրբք սա զանազանի յառաջնոյն: Գտցես և 'ի զուգաւորութեան ազգաց կանոնս յառաջնոցն կարգեալս Հայոց հաւասար ասացելոցդ: Բայց հաւանեալ ընտրեցաք ընտրել ըստ երանելւոյն Կիւրղի առ Թագաւորն Կոստանդիանոս վասն խաչին պատուականի, որում ասէ եօթն Մայիս ամսոյ, այսինքն է 'ի գլուխ Ահեկանոյ. Քանզի ըստ այսմ 'ի վերջն տեսանելով գտանեմք յ'ԺԲ դում ամսոյն զհասարակօրեան եղանակ, որ ըստ գարնան: Վկայեն և այլք ոմանք 'ի հակառակէն, զի ոչ այդպէս արար ըստ որում վարին ոմանք: Գուցէ ոք ուրեք զանուանիսն վկայել նաև զարուեստն, հաւանի վասն յոլովակի սխալման յայնպիսւոյ յօրինէ. վասն զի լինի յաւելուած թիւ —, 'ի ժողովմանէ նահանջիցն յէտ ՌԿ ամաց. որով այլայլեալ ապականի կանոնն. և ոչ այսքան միայն, այլ և յամենայն լրմունս ԺԹ երեկացն ամաց և արեգակնայինսն ընդ չորից, որով լինի յաւելումն և պա-

*Արդ խնդիրն այսպէս պարզելէն յետոյ՝ հետևեալ կերպով կարելի է լուծել յունարէն Ագաթանգեղոսի վերոյիշեալ տեղեաց և թարգմանութեան ժամանակի գաղտնիքն: Բաղդատելով, ըստ նշանատր*

*կաւութիւն վերադրացն՝ որ ըստ Հայոց: Զայսպիսւոյ սահմանէ անգիտանան բազումք. մանաւանդ յորժամ դիպեսցի եղանակն գարնան զանցանել յետ աւուրցն աւելեացն՝ ամիսն առաջին կոչեցեալն Նաւասարդի: Վասն որոյ տգէտք արուեստի կանխել ասել նահանջի՝ վասն անգիտութեան ոչ Ն ամ (400°) յառաջ քան զնա, և մոլորեալ յաղագս են ստութեամբ կարկատեալ պատճառս, որպէս զի կարասցեն հաստատել զստութիւն: Են այժմ այդպիսի սխալման ՃԺԳ (113). վասն որոյ զյաւելեալ թիւն պակասեցուցաք 'ի կոչելոյ թուական, և երթամք 'ի բաց՝ ոչ ՇԼԲ, այլ ՇԼԳ (533), ոչ յամենայն ժամ, այլ յայսմ 'ի միում նուագի: Քանզի յայսմ հետէ ոչ փոխանցեալ լինին եղանակք աւուրց՝ յաւուրս, վասն զի կանոնեցաք համընթաց այլոց ազգաց ամսոց և մերոցն ունել կարգ շարժման ամսոցս, նմանապէս և եղանակաց նահանջիցն լուսնականաց և արեգակնային տօնից աստուածայնոց. այլ և վերադրաց և Ն երեկաց, ըստ այլոց ազգաց կամ խաղալ՝ որպէս և կանոնեալքս ցուցանեն: Ապա եթէ ոք առաջնով կամիցի վարել, նմանապէս 'ի բաց թքցէ զյաւելեալն թիւ 'ի նահանջիցն առաջնակի կողմանէ. քանզի ոչ միաբանի ըստ արուեստից ճշմարտութիւն, որպէս անհասացաւդ վերագոյն, և ոչ մտելոցն 'ի կանոն ազգացն բարեպաշտից՝ ընդ տարեկանս և ընդ տօնս համարոյ ժամանակաց և ընդ այլսն ամենայն»:*

*Իսկ երկրորդումն այսպէս կը խօսի. «Ցառաջնում ամի թագաւորութեան Փիլիպպոսի արքայի Հռովմայեցւոց, շինութեան քաղաքին Հռովմայ Ռ ամ լցաւ. և յերկրորդ ամէն միւսանգամ համարոյ թուոյ սկիզբն եղին, զոր և թուական Հռովմայեցւոցն անուանեմք: Եւ լինի անտի մինչև 'ի դիր Երկուհարիւրեկին Անդրէասայ այլ և ՂԵ եկին, քանզի 'ի միում ամի եղան՝ թէպէտև ոչ 'ի միոջէ, ՃԴ ամ. և իբրև լցան կանոնք Մ եկին՝ 'ի միում ամի առնի սկիզբն հայ թուականին. և էր Հռոմին ՑԴ ամն, որ է ԺԹ երեակք ԺՁ. եղև սկիզբն հայ թուականին: Դարձեալ լրումն Զատկի Ապրիլի ԺԳ էր. և յետ ինն ամի գտաւ անտարակուսելի օրինակն Աղեքսանդրացւոց քաղաքին Ղասայ, ՇԼԲ ամաց. և էր լրումն զատկաց Ապրիլի Դ, զոր և Ժ երրորդ կանոն անուանեմք. ԺԳ էն Ապրիլի. և զայն եդին սկիզբն բոլորի: Եւ էր յառաջնումն ամի թուականին հայոց հասարակածն գարնային՝ Ահկի ամսոյ ԺԳ ին: Իսկ յայնժամ 500 ըեակն եղաւ յետ ինն ամաց. 'ի ԺԵ էր հասարակածն. և էր Բ ամ այնր ոլիմբիատին, որ կոչի նահանջ: Արդ իբրև փոփոխելով ինն չորից ամաց հասարակածն որ ըստ հայ ամսոց կատարեաց յԱհկի ամսոյ տարին, և եկն էանց 'ի Նաւասարդի ամիսն, 'ի միւսն տարիդ թիւ մի (օր) յաւելուած արար: Քանզի ունիմք զնահանջ թուականին հայոց. և չորեքպատկեմք և լինի թուական. և յաւելուած միոյ թուոյն՝ շարժեաց զամենայն կանոնեալսն միով յառաջ: Զի եթէ Ն երեակ առնես կամ լրումն Զատկաց կամ զինչ և իցէ կանոն է՝ կանոնեալ գտանես միով թուով յառաջացեալ, ըստ հայումն. նմանապէս և զնահանջի ամն, որ զիւրն ածէ, յորում ամի ամի և լինի նահանջն. և անկանի ամիսն յԷ երեակս այլոց ազգաց, այլ միով ամով յառաջ ածէ սխալ ամենևին: Եւ զի անտեղեակ էին (մերքս) արուեստից՝ ոչ իմացան յառաջ ասել, թէ յորժամ կատարէ հասարակածն զտարիս զայս և անցանէ 'ի Նաւասարդ ամիսն. թիւ մի զաւելեալն պակասեցուցանել պարտ է, զի մի շփոթեսցին կանանոնեալքն վասն անմիաբանութեան հայոյն... Զի թէպէտ ոչ գովեմ զայսպէս անշարժ կարկատողս հայ ամսոցդ, և կարողութիւն է մեզ կամօքն Աստուծոյ և զմերս ընդ այլս զուգել, որպէս զի առանց խառնակութեան ընդ այլոց ազգաց տօնք և եղանակք տարւոյ ընթա-*

գործոյն[1] Դիւլօրիէի, զժամանակագրութիւնն Հայոց, զոր ընծայեն մեզ Ատղիկ, Սարկաւագ և 'ի մասնաւորի Սամուէլ Անեցի կը տեսնենք ակներև, որ Եւսեբիոսի կանոնին վերայ հաստատուած է այն, և Եւսեբիոսը՝ համաձայն է Աղեքսանդրեան և Ասորա-Մակեդոնական տումարին. իսկ երբ Ասորա-Մակեդոնականին փոխանակեց Յուլեան տումարն, նորա տարւոյն առաջին ամիսը, որ յառաջագոյն կը սկսէր 'ի նոր լուսնին հասարակածին ամարանի՝ հաստատուեցաւ 'ի 1ն. Հոկտեմբերի, և անուանք յունական կամ Ասորա-Մակեդոնական ամսոց անցան 'ի հռովմէական ամիսս՝ հետևեալ կերպով.

1. Hyperberatæus, *կամ* Tischrin I.er = Ὀκτόβριος.
2. Dius, *կամ* Tischrin II.e = Νοέμβριος.
3. Apellæus, *կամ* Kanoun I.er = Δεκέμβριος.
4. Audiæus, *կամ* Kanoun II.e = Ἰανουάριος.

*նայցեն և օրն նահանջից 'ի վերայ ԻՆ երեկի անկանիցի, և ամիսքն և վերադիրքն ԺԹ ամօք բովանդակեալ 'ի նոյնս դարձցի. և ԻՐ իւք Ի երեկին դարձեալ յանձնիւրսն…: Զայս միայն ասեմ, թէ յամս ՌՆԿ՝ ամ մի յաւել յառաջնծին ժողովմանէ նահանջիցն 'ի կիտէ մինչև 'ի կէտ. այսինքն, մինչև եկեսցեն եղանակքն 'ի նոյն քանիօնութիւն ամսոցն, յորում էին երբեմն յառաջ քան զՌՆԿ ամսն: Արդ յաւելեալ թիւ ամին, ոչ է արժան ընդունել 'ի համար թուականութեան. վասն զի խանգարեալ շփոթէ զվաղնջուց դրօշմեալ կանոնս, որպէս և գործեաց իսկ: Քանզի 'ի ՇԾԲ. յորմէ եղաւ թուական հայոց՝ ուղղապէս և միաբան ամենայն ազգաց գայր կանոնեալն կարգ. իսկ յորմէ հետէ սկիզբն առ հասարակածն գարնայնոյ մտանել 'ի Նաւասարդի ամիս, թիւր իմն և անմիաբան ըստ այսմ վարի՝ մինչև յամս յորում եմք, որ է հարիւրերորդ չորորդ. առանց միոյ յաւելլոյն յամսամտէ մինչև 'ի քսան և վեց ամսոյն Նաւասարդի 'ի Դ ամն. վասն զի յ'ԺԳ ամսոյն Արեկանի սկիզբն մտանելոյ 'ի նա, զոր ոմանք առաջին ամ կոչեն. զի չորս ամս 'ի նոյն քանիս ամսոյն գարնանային յեղանակին մինչև յելսն աւելեաց աւուրցն լինին ամք ՆԾԲ, ցամն Դ. և վասն այնորիկ ոչ ունիմք ԺԲ. յԱրեկանի ամսոյն, այլ յ'ԺԳ. և զայլ աւուրսն թուեմք մինչև ցհասարակածն: Քանզի առաջին ամն և չորս ամս՝ 'ի նոյն հարկ էր կալ: … Եթէ կամիս զի ընդ այլոց ազգաց և հայոցդ պահիցին այժմ Եօթներեակք և վերադիրք և ԺԴ երրորդ լուսնոյ Զատկաց և ամք նահանջիցն և այլք 'ի կանոնելոցն, այսպէս պատշաճեցուցանես. զլցեալ շրջան թուականին հայոց երթ 'ի բաց ՇԼԳ. զյաւելեալ թիւն ես գնալով ընդ ՇԼԲ ուցն, և մնացեալն 'ի քեզ՝ սկիզբն առնու 'ի ԺԳ իցն Ապրիլի, ըստ որում և էրն 'ի սկզբաննէ. և ածէ ուղիղ զամս նահանջիցն: Քանզի այս է ամ՝ յորում ԺԴ րորդ լուսնոյ ըստ հռոմին՝ վեց Մարտի հանդիպեցաւ, է ամն նահանջի, և ոչ զոր դոքայդ (հայք) բաջաղեն՝ զանցեալ ամն ասելով նահանջի, որ է Ժ. Ապրիլի ամսոյ, օր լրման լուսնոյ Զատկաց. և վկայ յիմարաց, զի յայսմ ամի Եօթներեակն հռոմին և այլոցն՝ կրկնապատիկ անեցին նախ քան զչորս կաղանդին Մարտի ամսոյ զօրն նահանջի՝ որ յաւելաւ յամսամտէն, յառաջ անկանելով զԵօթներեակն. և 'ի սմին ամի Զայինվերադիր պակասեաց միով թուով, և ոչ յանցելումն. քանզի անցելոյ ամին վերադիրն Թ էր և այսր ամի Թ, և նոր թուականս է 'ի Դ և ոչ 'ի Ե, և զհինն ՇԾԶ պարտ է ասել յայսմ ամի և ոչ ՇԾԵ »:*

1. Recherche sur la Chronologie arménienne. Paris, 1859.

| | | |
|---|---|---|
| 5. Peritius, *կամ* Schebat | = | Φεβρουάριος. |
| 6. Dystrus, *կամ* Adar | = | Μάρτιος. |
| 7. Xanthicus, *կամ* Nisan | = | Ἀπρίλλιος. |
| 8. Artemisius, *կամ* Iyar | = | Μάϊος. |
| 9. Dæsius, *կամ* Hasiran | = | Ἰούνιος. |
| 10. Panemus, *կամ* Thamus | = | Ἰούλιος. |
| 11. Lôüs, *կամ* Ab | = | Αὔγουστος. |
| 12. Gorpiæus, *կամ* Eloul | = | Σεπτέμβριος. |

*Արդ, ըստ վերոյիշեալ հատուածին Սարկաւագայ՝ ինչպէս յառաջ քան զհաստատութիւն Հայոց թուականին և 'ի թարգմանութեան Ս. Գրոց՝ Հայոց ամիսներն, եթէ ոչ « նմանապէս, սակայն համընթացս և զոյգս մտիցն և ելից՝ կը զուգէին Ասորամակեդոնական ամսոց. օրինակ իմն, Մեհեկան ԻԳ = Դիստրոս, կամ Ադար ԻԳ, Արեգ = Քսանդիկոսի՝ կամ Նիզանի. այսպէս ուրեմն և յետ հաստատութեան նորա և համաձայն կարգելոյն Յուլեան-տումարին: Իսկ որովհետև մէկ կողմէն հայերէն Ագաթանգեղոսի մէջ Սահմի ամիսը կը ներկայանար իբրև տարեմուտ ամսագլուխ, իսկ միւս կողմէն ալ Ասորամակեդոնական տարւոյն տարեմուտն կամ առաջին ամիսն էր Հիպերբերետեւս կամ Հոկտեմբեր* 1. *այն պատճառաւ ևս* Οκτόβριος *դրած է թարգմանիչն Հայոց Սահմի ամսոյն դիմաց: Իսկ ամսոյն օրը չգտնելուն պատճառն ամենապարզ է, որովհետև Հոկտեմբեր մէկով կը բացուէր տարին ըստ յիշեալ տումարին: Արդ աստի կը հետևի, թէ յունարէն Ագաթանգեղայ թարգմանութեան և* Οκτόβριος *և* Σεπτέμβριος *ամսոց ներմուծման ժամանակամիջոցը սերտիւ միացեալ է* **Հնգհարւր-երեկն** *կամ* 532 *ամաց շրջանի հաստատութեան ժամանակամիջոցին հետ. զոր հնարեց Էաս Աղեքսանդրացի Յոյն տումարագէտն՝ յաւուրս Յուստինիանոսի և հրամանաւ նորա. որովհետև յետ լրման Երկհարիւրեկին Անդրէասայ սկսան շփոթիլ տօնք Եկեղեցւոյ: Իսկ որովհետև այս թուականիս հաստատութիւնն և տումարի կարգաւորութիւնն, ըստ յուլեան տարւոյն և ամսոցն յորջորջման, առ Յոյնս՝ եղաւ յամի Տեառն* 563, *այսինքն է յետ* 11 *ամաց հաստատութեան թուականին Հայոց առ Մովսէս կաթողիկոսիւ, կամ լաւ ևս առ Ներսիսիւ Աշտարակեցւով. ուրեմն յունարէն Ագաթանգեղոսի թարգմանութիւնն և վերոյիշեալ ամսոց ներմուծումը կամ ճիշդ այս ժամանակամիջոցիս և կամ յետ ոչ բազմաց պէտք է մերձաւորապէս եղած համարել: Ուրեմն յունարէն Ագաթանգեղոսի թարգմանութեան ժամանակը պէտք է որոշել* 563–597 *ամաց մէջ:*

*Հասնելով յաւարտ Քննադատութեան Պատմագրութեանն Ագաթանգեղայ, ներուի ինձ ուղղել և երկու խօսք առ մեծարոյ վերծանողս գործոյս, թէ այս երկասիրութեանս մէջ՝ բաց 'ի Ագաթանգեղայ գրոց հարազատութեան, բնագրի և թարգմանութեանց խնկական խնդիրներէն, զորովք յառաջ քան զիս զբաղեցան և՛ այլք, մասնաւոր նպատակ և ջանք ևս ունեցել եմ Ա. քննել և ուղղել և*

թարգմանել, պատմական, աշխարհագրական, ժամանակագրական, դիցաբանական և այլ աւանդութիւնս, որոնք ցանկացեալ խուզարկութեանց պէտք ունէին և ունին տակաւին նորանոր յայտնութեանց: Բ. Ազգային վիպաց և վիպասանական ձևով գրուած հակապատմական դիպաց և լրողութեանց տալ և ագուցանել պատմական և իրական կերպարանս, զուգակշռելով տոհմային և արտաքին պատմագրութեան աւանդութեանց հետ, և մերձեցնելով քննադատութեան փորձաքարին: Գ. Մաքրելով Ագաթանգեղայ պատմագրութիւնն՝ իւր բազմակողմեան թերութիւններէն և ակնախտիղ երանգներէն, որովք յաւէտ անհաւատարմութեան և արհամարհանաց նիւթ եղած էր յաչս օտարաց, քան թէ ստուգապատում վիպաց. ներկայացնել զայն բազմահոլով դարուց և յեղափոխութեանց մէջէն իբրև հնագոյն և լուսաճաճանչ սիւն մի քրիստոնեայ Հայաստանի պատմութեան և նուիրական աւանդութեանցը, յորմէ առհասարակ և գրեթէ առանց բացառութեան լուսաւորեցան տոհմային մատենագիրք, և որում աւելի կամ պակաս հետևեցան: Դ. Ինչպէս միւս տոհմային մատենագրաց և գրաւոր կամ անգիր յիշատակաց ձեռքով, ուր նոցա աւանդածն արտաքնոց աւանդածին կը համաձայնի և կամ գէթ չի հակառակիր, ջանացի պարզել և հաւատարմացնել Ագաթանգեղայ պատմագրութեան դարական մթութիւնքն և նորա մէջ ծածկուած գանձուց մթերքն. այսպէս ևս սորայս քննասիրութեան առթիւ ստիպեցայ այնու առաջնոց երկասիրութեանց և նոցանէ բաղդատութեան համար մէջ բերուած տեղեաց ոմանց վաւերաբանութիւնն ընել, իսկ այլոց ոմանց անհարազատութիւնքը մատնանիշ ցուցանել. հարթելով միանգամայն և հորդելով թէ ինձ և թէ այլոց համար դիւրագնաց ճանապարհներ՝ ապագայ ուսումնասիրութեան գործոցն այնոցիկ, որոնք ոչ ինչ ընդհատ քան զԱգաթանգեղոս՝ քննութեան և ստուգութեան պէտք ունին: Այս պատճառաւ գործս կարծածէն աւելի ստուարացաւ, որում համար կը յուսամ հանդիպել ներողութեան քան կշտամբանաց բանիբուն արանց, նոցա ոսկեղինիկ ժամանակը գողանալուս համար, և կամ եթէ երբէք արդարասիրութեան աղագաւ՝ ոմանց ազգասիրական զգացմունքն և ներքին համոզմունքները վիրաւորեցի: Բայց թէ ո՛րքան յաջողեցայ արդեօք այսպիսի ջանից և վաստակոց մէջ, զայս կը թողում իմ ուշիմ ընթերցանելեացս դատել և որոշել, որոց կ՚ընծայեմ խոնարհաբար յարգանօք իմ փանաքիմաց մտացս զայս դոյզն երախայրիս, և որում 'ի փոխարէն ուրիշ բանի չեմ սպասեր, բայց 'ի խրախուսանաց և յընթերցանութենէ սորա:

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

# ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԳՐԻԳՈՐԻ ԿԱՐԾԵՑԵԱԼ ԸՆԴԱՐՁԱԿ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՆ

## ԵՒ ՆՈՐԱ ԱՆՀԱՐԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՔՆԱԴՐՈՒՄԸ

### Ա

*Յետ քննադատութեան երկուց գրոցն Ագաթանգեղոսի, դառնանք այժմ նախընթացաբար ըրած մեր խոստման համաձայն պարզել և ընդարձակ վարդապետութեան գաղտնիքն, որ Ե դարէն 'ի վեր մինչև ցայսօր՝ Լուսաւորչայ անուամբ ճանչցուած, յարգուած և հասած է առ մեզ: Ղազ. Փարպեցոյ և Ագաթանգեղոսեան գրոց խմբագրի յայտնի և մեկին վկայութենէն յետոյ՝ անտեղի պիտի լինէր, ըստ ինքեան, վերստին տարակուսել սորա հարազատութեան վերայ: Բայց աւելի զօրեղ և շօշափելի պատճառներ, որոնց լուսոյն դիմաց անկարելի է այլ ևս չտես լինել, առ այս կառաջնորդեն ճշմարտասէր և խուզարկու միտք:*

*Այլ նախ քան զամենայն պէտք է ասել, թէ Ղազարայ և գրոցս խմբագրի վկայութիւնքն՝ այնքան կը զօրեն յայսմ մասին, որքան արժեն 'ի հաստատել զանձնական գոյութիւն ատենադպրին Տրդատայ և նորա ամբողջ երկասիրութեան հարազատութիւնն. իսկ որովհետև այս վերջին կէտերու մասին, ինչպէս տեսնուեցաւ ականերև, նոցա վկայութիւնն անընդունելի է և այլընդայլոյ, այսպէս ուրեմն հասկանալի է նաև Լուսաւորչայ վարդապետութեան մասին: Ցիրաւի, եթէ լաւ ուշ դրած ենք, Ղազարայ վկայութեան՝ նա իւր գրոց Յառաջաբանի մէջ՝ Գրիգորի վարդապետութեան պարզ յիշատակութիւնը միայն կ'ընէ, առանց անտի հատուածներ մէջ բերելու, որով կարելի է այլ[1] ինչ իմանալ կամ գրաւոր և կամ անգիր,*

1. *Ստուգիւ. վարդապետութիւն Գրիգորի ըսելով՝ նախնիք մեր մերթ համառօտը կը հասկանային և մերթ ցանախապատում ճառերն իսկ: Ցիրաւի, ԻԵ ճառընտրի մէջ, էջ 157, կը գտնուի. «Ի վարդապետութենէ Ս. Գրիգորի հայոց Լուսաւորչի կատարելոյ 'ի Տէր, ամենարուեստ պահոց» վերնագրով ճառ մի, որ բառ առ բառ Ցանախապատումի Թ. ճառին (էջ 76 ըստ տպագրութեան) բանաքաղութիւն է: Այսպէս ԻԳ ճառընտրի մէջ, էջ 332. «Աւրհնեալ է Աստուած, աւրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւնն անբաժանելի» բառերով սկսող ճառն, որ ցա-*

որ նորադարձ Հայաստանը հրահանգելու համար Գրիգորի կողմանէ եղած կ'ենթադրուէր: Բ. Դիտելու ենք, որ Ղազարայ Յառաջաբանի հարազատութեան մասին՝ բանաւոր տարակոյսներ կան, որոնք իբրև ապացոյց կարելի է համարել նոյն իսկ նորա ներքին խառնափնթորութիւնն:

Իսկ գալով Ագաթանգեղոսեան գրոց խմբագրին, դիտելու ենք, որ Ա. Գրքին 189–193 էջ նախապատրաստիչ հատուածքն և վերջին գրքին առաջին և եկամուտ պարբերութիւնն աւելի կը մատնեն նորա եկամուտ անհարազատութիւնը, քան թէ Գրիգորի հարազատ գործ լինելն: Ու եթէ հարցուի, թէ ընդէ՞ր. սոյն երևոյթիս պատճառքն՝ արդէն նոյն էջերու քննութեան ժամանակ բացատրուած են, և այժմ աւելորդ է կրկնորդել:

Բ. Եթէ Գրիգորի կարծեցեալ վարդապետութիւնն՝ իրօք ևս նորա հարազատ գործն եղած լինէր, Յունաց սրբազան և մերձաւոր ժամանակի մատենագիրներն՝ անոր աւելի պէտք էին վկայութիւններ մէջ բերել, քան թէ 'ի համառօտէն, որովհետև առաջինը կարելի է աւելի ճոխ զինարան անուանել նոցա ժամանակակից հերետիկոսաց դէմ. և սակայն Ս. Նիկեփորէն սկսեալ նոքա ընդհակառակն 'ի վերջնոյն, այսինքն է համառօտէն՝ ընդարձակ հատուածներ մէջ բերած են, զորս մատնանիշ ըրինք այլուր:

Գ. Ագաթանգեղոս անունը, որ թէ՛ առաջին և թէ՛ վերջին գրոց ճակատին վերայ դրոշմուած է, աստ ընդ հակառակն կը պակսի. արդ այս երևոյթս յայտնի կերպով կը ցուցանէ մեզ, թէ այդ մասն՝ յունարէն Ագաթանգեղոսի նախկին բնագրի մէջ ևս տեղի ունեցած չէր բնաւ, ինչպէս և այժմ չգտնուիր հայերէնի վրայէն եղած յունարէն թարգմանութեանը մէջ, և թէ սորա գաղտնիքն Ագաթանգեղայ գրոց հայերէն թարգմանութեան ժամանակ և այն առթիւ եղած խմբագրութեան մէջ որոնելի է: Յիրաւի, ըստ իս, Ագաթանգեղոս անուան բացակայութիւնը Գրիգորի կարծեցեալ վարդապետութեան ճակատէն՝ ոչ միայն յայտնի ապացոյց համարելի է նորա անհարազատութեան, այլ թէ, ստուգիւ **Պատմութիւն Ագաթանգեղայ** կամ աւետեաց Աւետարանին՝ եղած է բուն տիտղոս առաջին և վերջին գրոց, և ոչ թէ յատուկ անուն ատենադպրին Տրդատայ:

Դ. Փաւստոսի երկասիրութիւնն իսկ՝ յայտնապէս կը ցուցանէ, թէ ստուգիւ Գրիգորի կարծեցեալ վարդապետութիւնը Դ դարուն ոչ գոյութիւն ունէր և ոչ այլ Բիւզանդացւոյն ծանօթ՝ Ագաթանգեղոսի յունարէն հին բնագրի մէջ իւր յատուկ տեղին գրաւած: Յիրաւի,

ճախապատումէն առնուած է, սակայն և այնպէս նորա հաւաքողն՝ «Ի վարդապետութենէ Ս. Գրիգորի Լուսաւորչի» մակագրած է: Սոյն երևոյթը կը տեսնուի նաև յԱմրդոլու վանքի ճառընտիր մատենին և ուրիշ հին մատենագրաց քով: Բ. Դիտելու ենք որ, Մովսիսի և Եզնկայ անուամբ մեզի հասած «Նշանագիր կարգաց և Գաւազանագրոց», ինչպէս և առ Սարկաւագ վարդապետի և Սամուէլի, Գրիգորի վարդապետութիւնն առնուած է իբրև դարագլուխ կամ թուական Աւետարանի քարոզութեան կամ դարձին հայոց 'ի քրիստոնէութիւն. այսպէս է և առ Փաւստոսի:

առ այս դիտելու ենք, որ բացի Փաւստոսի և Ղազարայ ակն յայտնի վկայութենէն, այդ պատմագրութեան սկզբնաւորութիւնն խսկ անժխտելի կերպով կը հաստատէ մեզ, թէ է՛ անմիջապէս շարունակութիւն Գրոցն Ագաթանգեղայ. իսկ որովհետև Բուզանդացւոյ պատմութիւնը երրորդ գրքով կամ Դպրութեամբ կը սկսի. ուրեմն աստի կը հետևի, թէ Փաւստոսի ծանօթ Ագաթանգեղոսն իսկ երկու Գիրքերէ կը բաղկանար և ոչ թէ երեք. ապա թէ ոչ, Փաւստոս Չորրորդ Դպրութեամբ պիտի սկսէր իւր պատմութիւնը կամ լաւ ևս Ագաթանգեղայ շարայարութիւնն:

Ե. Այս վարդապետութիւնս ոչ զնորադարձ երեխայս հրահանգելու համար կարէ խօսուած լինել և ոչ իսկ առ Գրիգորիւ գրուած. այլ ընդդէմ հերետիկոսաց, և զՔրիստոնեայ ժողովուրդն Հայաստանեայց՝ իրենց ուղղափառ հաւատոց մէջ հաստատելու համար՝ 'ի հովուական աթոռոյ վարդապետուած է: Այսպիսի մի եղելութեան ապացոյցներն՝ յետաձգելով, այժմ այսչափ միայն դիտելու՝ ենք, որ Ագաթանգեղոսի 188–189 և 545–546 էջերում, ուր խօսքը Գրիգորի ընդարձակ վարդապետութեան մասին է, գլուխիւն արտայայտող բացատրութիւն չկայ բնաւ, այլ լոկ «քարոզել, պատմել, խօսել, խրատել և ուսուցանել» բառերը գործածուած են: Իսկ 'ի վերջ կոյս համառօտ վարդապետութեան յէջ 89 ընդհակառակն կ'ըսուի որոշակի, թէ «Ու գրեցին ատենական դպիրքն նշանագրաց». և յէջ 657 ուր Յաճախապատում ճառերու վերայ խօսք կը լինի, դարձեալ «յարմարել և յերկարել» բառերը գործածուած են, որք հաւասար են գրելոյ և յօրինելոյ: Այնպէս որ Ագաթանգեղոսէն իսկ՝ Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութեան գրաւոր հաւաստիք մի չէ կարելի յառաջ բերել: Դիտելու երկրորդ կէտ մի է և այս. զի որ և է սուրբ Հօր գրութեան (այսպէս կարելի է ասել և՛ համառօտ վարդապետութեան և Յաճախապատումի հեղինակաց համար) մէջ՝ կը տեսնուի մի որոշ ուղղութիւն, դրութեան ամբողջութիւն և ամենուրեք դրական կարծեաց միութիւն. իսկ ընդարձակ վարդապետութիւնը բոլորովին ընդհակառակը կը ներկայացնէ մեզ, որով անկարելի է ըսել, թէ անդ ամենայն ինչ մի և նոյն մըտաց և գրչի ծնունդ եղած լինին, թող թէ Գրիգորի: Թէպէտև մեծ ջանք մի կը տեսնուի նորա հեղինակի կամ խմբագրի կողմանէ՝ մէկ գլխաւոր նպատակի և միութեան մի վերածելու զանոնք, սակայն հայկականը՝ յունականին և նորը՝ հնոյն հետ կը թուին մրցիլ:

Զ. Համառօտ վարդապետութիւնն և Յաճախապատումը Գրիգորի հարազատ գործեր վարկանելով, կը տեսնենք, որ ընդարձակ վարդապետութիւնն երկուքէն ևս կը տարբերի. զի առաջիններն պարզ են, հակիրճ և աւանց կրկնութեան. իսկ վերջինը բոլորովին հակառակ հանգամանքներով կը ներկայանայ մեզ. այսինքն է, ինչպէս Ագաթանգեղայ միւս երկու գրքերը յաճախ խմբագրի եկամուտ հատուածներով ընդհատուած, կրկնուած և ընդարձակուած են, այսպէս ևս կը տեսնուի ընդարձակ վարդապետութիւնն: Արդ այս աչքի զարնող երևոյթս՝ երկու կերպով և յերկուց պատճառաց

կարելի է յառաջ եկած համարել. այսինքն է կամ Գրիգորի յանպատրաստից խօսելէն առ Հայաստանեայս և բերանացի տեղ տեղ յեղյեղելէն, զոր 'ի գրի առնուին նշանագիրք. և կամ բոլորովին տարբեր ժամանակի և հանգամանաց մէջ գրուած համարել: Առաջին ենթադրութիւնն՝ անհիմն է և անընդունելի, նոյն իսկ Ագաթանգեղայ երկու գրոց մանրամասն քննութեամբն, և վերստին կը հաստատուի 657 իշի մէկ հատուածովն, որուն հեղինակն որոշակի յիշելով Գրիգորի Ցանախապատում ճառերու գրութիւնը, որ եղաւ Լուսաւորչի կենաց վերջին և նշխարեալ օրերում, այսինքն է Հայոց դարձէն և Գրիգորի վարդապետութենէն 39–40 տարի վերջ, յայտնապէս կը ցուցնէ, թէ նա ինքն չէր միանգամայն և չկարէր 'ի գրի առնուլ մ՛ զվարդապետութիւնն: Ահա այս և ասոնց նման դեռ ուրիշ բացասական փաստեր, որոնք ընդդէմ կը գինին Գրիգորի վարդապետութեան հարազատութեանն. ուրեմն կը մնայ վերջին ենթադրութիւնն, որուն դրական ապացուցութիւնքն իսկ խիստ յայտնի են և բազմաթիւ:

Բ

Այս տեսակէտիս մէջ նկատելով ընդարձակ վարդապետութեան խնդիրն՝ լսենք նախ մեզմէ առաջ ընթացող և նիրկայ բանասիրաց կարծիքն: Գուտշմիդինն՝ արդէն իսկ յառաջ բերուեցաւ Գրիգորի կենսագրութեան քննութեանը մէջ. մի ուրիշ գերմանացի՝ **Դօկտօր Վէտտէր** ամաւ առաջ կը ծանուցանէր ինձ, թէ ինքն ևս երկու տարւոյ չափ պարապելով Ագաթանգեղայ գրոց ուսումնասիրութեամբ, այժմ հիւանդութեան պատճառաւ անկարող վիճակի մէջ կը գտնուի շարունակել իւր աշխատութիւնն. բայց նորա խօսքերէն կը տեսնուի, թէ փոքր 'ի շատէ համակարծիք է իւր նախորդին նաև յայսմ, ինչպէս երբեմն Խորենացւոյ գործոց քննադատութեան մէջ: Կարապետ Թումայեան, որ վարդապետական պսակի համար իբրև Թեզիս գրած իւր մէկ երկասիրութեամբն[1] աւելի ընդարձակօրէն ուսումնասիրած է Գրիգորի վարդապետութեան գիրքն, և հետևեալ կերպով կ'արտայայտէ իւր ներքին համոզումը նորա մասին. «Prenant tout d'abord notre discours (այսինքն է զՎարդապետութիւնն) dans son entier, qui occupe exactement la moitié du livre, il est impossible qu'il soit de l'Agathangelos primitif... Par conséquent nous n'avons ici nullement la doctrine de Grégoire l'Illuminateur». Էջ 61, «Grégoire ne sait rien de ce discours, de même que l'Agathangelos primitif, son biographe. De sorte qu'il n'y a rien de commun entre ces deux parties, l'histoire du premier Agathangelos et ce discours». Եէջ 62 կրկին մասանց

1. Agathangelos et la doctrine de l'Église arménienne au cinquième siècle, ch. II. Lausannes, 1876.

կը բաժնէ վարդապետութեան ճառն, ընծայելով նոցա տարբեր առանձնայատկութիւնները, ասելով այսպէս. « Il y a dans ce discours un premier discours, qui fait le fond de tout le morceau et en donne le cadre; puis après, une ou plusieurs mains inconnues ont indignement défiguré cette œuvre du maître. Nous appellerons pour plus de netteté ce premier discours « la première partie » du discours actuel et toutes les interpolations, nous les appellerons « la seconde partie » en les réunissant toutes sous ce titre. Les caractères distinctifs de ces deux parties sont faciles à constater. La première est le chef-d'œuvre de l'Agathangelos actuel, tandis que la seconde lui fait tort. La première est très originale, riche de contenu et à certains égards instructive; la seconde ne l'est pas »... Ապա յէջ 68–69 այս եզրակացութիւնս կ'ընէ. « Le fait que notre Agathangelos est l'œuvre de différentes personnes, ne nous permet pas d'y voir quelque chose appartenant exclusivement à Agathangelos. Puis, comme il n'est pas l'œuvre première d'Agathangelos, mais plutôt postérieur a lui nous n'avons pas le droit de présenter notre travail, ni comme la Vie (authentique) de Grégoire l'Illuminateur, ni comme sa doctrine. En revanche, comme c'est un produit postérieur à lui et une œuvre de personnes à peu près contemporaines, appartenant au siècle d'or de la littérature arménienne, c'est-à-dire au cinquième siècle, et presque toutes du cercle ecclésiastique, nous avons cru y trouver la doctrine de l'Église arménienne de ce siècle. Naturellement, il n'est pas question ici de la doctrine officielle de cette Église, mais pourtant il faut remarquer que plus Agathangelos est interpolé par un grand nombre d'auteurs, plus sa doctrine se rapproche (ընդհակառակն հասկանալի է) de la doctrine officielle ».

Սոսկ այս տեղեաց յառաջբերութենէն կը տեսնուի, թէ Թումայեանի կարծիքով Ս. Գրիգորի կարծեցեալ վարդապետութիւնն՝ ոչ միայն ըստ ամբողջութեան, այլ մանաւանդ որ և է կերպով չկարէ վերագրիլ նմա, այլ գլխովին օտար է 'ի նմանէ: Բ. Նորա հնագոյն և լաւագոյն մասն իսկ, այսինքն է կենսագրութեան մէջ գտնուած համառօտ վարդապետութիւնն, և կամ համառօտէն ընդարձակի մէջ ներմուծուած հատուածներն իսկ՝ Ե դարէն և անդր չեն անցնիր, այլ նոյն դարու պարունակի մէջ գրուած եկեղեցական հայ վարդապետի մի գործ: Գ. Թէ մնացած ընդարձակագոյն միջոցն, զոր նա « երկրորդ մասն » կ'անուանէ, Ե դարէն վերջ եկող հետևակ հեղինակներու ձեռքով և անարժան կերպով խանգարուած և գլխովին կերպարանափոխ եղած է: Դ. Թէ այդ վարդապետութիւնը՝ իւր սկզբնական ձևոյն մէջ նկատելով, Հայաստանեայց եկեղեցւոյ պաշ-

տօնական դաւանանքը չէր ներկայացներ. այլ յետոյ ուրեմն անարժան հեղինակաց եկամուտ վարդապետութիւններով ընդարձակուելով պաշտօնական վարդապետութեան մօտեցաւ:

Դիտելու է, որ Կր. Թումայեան՝ ոչ այն հնագոյն և լաւագոյն մասին հեղինակ վարդապետը մատնանիշ ըրած է, և ոչ այլ միւս մասին հետևակ հեղինակները, նոցա այսպիսի մի դեր խաղալու ժամանակը, նպատակն և պարագաները: Երկրորդ, ծրի ենթադրութիւն է վարդապետութեան երկրորդ մասը՝ իբրև նոր և անօգուտ անհարարազատութիւն համարել, և նոցա Ե դարէն վերջ ապրող հեղինակներ և ժամանակներ սահմանել: Եւ յիրաւի, օրինակ մի միայն բաւական կը համարիմ մէջ բերել 'ի հաստատութիւն ըսածիս. Ագաթանգեղայ գրոց յէջ 264, ԼՁ գլխահամարով սկսող պարբերութեան մէջ Քրիստոսի այնքան ուշ գալստեան վերայ յարուցած հարցն և նորա պատասխանին, զոր անօգուտ կը համարի Թումայեան ուստի և յետին ժամանակաց եկամուտ. նոյնը մեծն Եզնիկ Ե դարու առաջին կիսում՝ մէջ կը բերէ (ԺԵ, էջ 231) իբրև մի կարևոր առարկութիւն՝ իւր ժամանակակից քրիստոնեայ աղանդաւորաց կողմանէ և զօրեղ բանիւք կը լուծէ զայն: Բայց որ զարմանալին է՝ Դ դարուն ապրող սուրբ Հարց մին ևս՝ նոյն հարցին կարևորութիւն տուած է, որոյ մասին վերջէն պիտի խօսուի: Արդ՝ ես ոչ Թումայեանի կարծեացը կարեմ համաձայնիլ այս նիւթիս մէջ, և ոչ այլ վարդապետութեանս հայեցողական խնդիրներով և մեկնաբանութեամբքը կ'ուզեմ պարապիլ և պարապեցուցանել. այլ միայն պատմական–ժամանակագրական և քննական հետազօտութեամբ և բաղդատութեամբք, որչափ որ կը ներեն ինծ անաչառ քննաբանութեան կանոնք և միջոցք: Դարձեալ զայս ևս կարևոր կը համարիմ ծանուցանել, թէ բաց 'ի մի քանի համառօտ բացատրութիւններէ և փոքրիկ հատուածներէ, որոնք կը թուին ունել զբնադրոշմ անհարազատութեան, բայց կարեն իրօք չլինել այնպէս, ոչ Կ. Թումայեանէն ենթադրուած և Ե դարէն վերջ հետ զհետէ ներմուծուած և ընդարձակագոյն տեղ գրաւած անհարազատութիւններ և խանգարմունք կը տեսնուին անդ, լեզուական և քննաբանական կանոնաց համեմատ, և ոչ իսկ Հայաստանեայց եկեղեցւոյ վարդապետութիւն կարելի էր կոչել զայն՝ նորա նախկին վարդապետին կամ դաւանութեանց անհաւատարիմ գտնուող մի քանի հետևակ հեղինակաց անպէտ և այլընդայլոյ յաւելուածոց համար. եթէ իրօք չպարունակէր իւր մէջ այդ ընդարձակ վարդապետութիւնը՝ Հայաստանեայց հաւատոյ Հօր սուրբ Լուսաւորչին և նորա յաջորդ սուրբ հօտապետաց դաւանանքն և վարդապետական մաստունքն: Յիրաւի, մէկ կողմէն գրութեան միակերպ հայկաբանական լեզուն, զոր Թումայեանն իսկ կը խոստովանի և չէ մարթ ընծայել թնաւ յետին ժամանակաց մէջ ապրող հեղինակութեանց. միւս կողմէն ալ « Ս. Գրիգորի առն Աստուծոյ » մակագրութիւնն 'ի ճակատ գրութեանս, ըստ ինքեան բաւական հիմնաւոր ապացոյցներ են այսպիսի մի եղելութեան, համարելով որ այդ մակագրութիւնը գլխակարգու-

թեանց հետ վերաբերութիւն չունի, որոնք յետոյ ուրեմն դրուած են, այլ կը գտնուէր արդէն 'ի հերուն հետէ, նոյն տեղում և այն պատճառաւ թերևս Ղազար ինքնին չի տարակուսեցաւ Ագաթանգեղոսի նիւթոց բովանդակութեան մէջ յիշել և զվարդապետութիւնն Գրիգորի: Սակայն այս կրկին փաստերէն աւելի եզրակացուցիչ են Յաճախապատում գրոց և համառօտ վարդապետութեան տեղեաց հետ ունեցած մեծ նմանութիւնքն և 'ի բազում ուրեք յօրինեալ ներդաշնակութիւնը: Այս նկատողութիւններէն յետոյ կարելի է ասել, թէ, գէթ այս տեսութեամբս, Թումայեանի վերոյիշեալ գործը՝ մեր ցանկացած նպատակին հասած չէ. ուստի հեղինակին մեզի գծած շաւղովն՝ անկարելի է պարզել ոչ Գրիգորի կարծեցեալ վարդապետութեան և ոչ իսկ նորա մակագրութեան խորհրդաւոր հանգոյցն, զոր կարծեմ, թէ առանց հիմնաւոր պատճառաց և պարզապէս զհայաստանեայս խաբելու համար վերագրած չեն «Գրիգորի առն Աստուծոյ» յաւէտ յիշատակաց արժանի թարգմանիչք մեր: Արդ թէպէտև ես իսկ համոզուած չեմ, ցայս վայր մէջ բերուած և յետ այսորիկ մէջ բերուելիք փաստերով, թէ այդ ընդարձակ վարդապետութիւնն՝ որուն վերայ կը խօսուի, ըստ այժմեան ձևոյն և ըստ ամբողջական պարունակութեան Գրիգորի կամ նորա ժամանակակից առենադպրի մի հարազատ գործ եղած լինի. այս բանս և ոչ իսկ մտքէ անցնելու է, ըստ իս, այլ Ե դարու մեծանուն թարգմանչի մի խմբագրութիւն կամ վարդապետարան. սակայն և այս իբրև անժխտելի մի ճշմարտութիւն ընդունելու է, թէ այդ ընդարձակ և երկնաբերձ շէնքն՝ իսկապէս պէտք է որ կամ Գրիգորի համառօտ վարդապետութեան և Յաճախապատումի և կամ ուրիշ յիշատակարանաց ձեռքով մինչև Ե դար պահուած, և գուցէ թէ իբրև հիմն համառօտ վարդապետութեան և Յաճախապատում ճառից ծառայած մի այլ վարդապետական գրութեան վերայ՝ իբր 'ի հիման դրուած, և յունական հարց վարդապետութեամբք ճոխացած և այս կերպարանքս առած է: Այս տեսակէտովս կը ցանկայի ուսումնասիրել Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութիւնն և ապացուցանել իրին ճշմարիտ եղելութիւնը, զոր Թումայեան առանց ապացուցութեան թողած է:

## Գ.

Վարդապետութեան սկզբնաւորութենէն, որ կը սկսի ԽԳ գլխահամարով յէջ 195՝ մինչև ցէջն 212, ուր կը խօսուի աստուածային ինքնութեան և Երրորդութեան, Արարչագործութեան և մարդկային և հրեշտակական բնութեան անձնիշխան ազատութեան վերայ այլովքն հանդերձ, դիտելու ենք, որ այս նիւթերէն իւրաքանչիւրը կրկնուած և երեքկնուած է, բայց միշտ տարբեր պարագայից և կարծեաց յառաջբերութեամբք. այնպէս որ կարելի չէ այս երևոյթս մի դիպուածական բան համարել և կամ հեղինակին իբրև յատուկ թերութիւն. որովհետև այս բնականէ դուրս՝ բայց հանճարեղ ոճը

կը տեսնուի նոյն խսկ վարդապետութեան բոլոր ընթացքի մէջ, զոր հետզհետէ մասնանիշ պիտի ընեմ: Երկրորդ, բաղդատելով այդ հատուածները Գրիգորի ընծայուած միւս գործոց և Գրիգորէն շատ վերջ երկասիրող յունական Հայոց գրուածոց հետ, կը տեսնենք որ նոցա այլեւայլ՝ բայց մի և նոյն նիւթոց վերայ ըրած վարդապետութեանց արծագանգ են կամ լաւ ևս հետեւութիւն, Ս. Գրոց և Հայոց գիտութեան յոյժ հմուտ եղող և ճարտարաբան գրչի մի հզօր ազդեցութեան ներքև: •

Ցիրաւի, Ա. պարբերութիւնն՝ համաձայն է Ցաճախապատումի Ա. ճառին առաջին պարբերութեանն և համառօտ վարդապետութեան Բ. պարբերութեանը, որ յէջ 55 Ագաթանգեղի: Իսկ երկրորդ պարբերութիւնն, այսինքն է 196–198 և 202–206 էջերը՝ ազատ հետեւութիւն են Ս. Բարսղի **Յաղագս Վեցօրէից** Բ. ճառին յէջ 36, Դ. 71, Զ. 124–125: ԽԴ. գլխահամարին Ա. պարբերութիւնն, ուր հրեշտակաց բնակութիւնը՝ հաստատութեան վերայ եղած ջրայարկի մէջ կը դրուի, կարծէք թէ Որոգինէսէն առնուած է, որ կ'ըսէր, թէ հաստատութեան վրայի ջուրերն ոչ են մարմնական և անշունչ տարերք, այլ Աստուծոյ իմացական զօրութիւններ կամ հրեշտակք: Սակայն Ս. Բարսղի հետևեալ խօսքերն (ճառ Գ. Յաղագս վեց. էջ 62). « Ասասցուք դարձեալ և ընդդէմ ուրումն՝ որ յեկեղեցւոյ է և դանդաչէ աննման առակօք … Ջուրքն ասէ, որ մեկնեցան եւին 'ի վերոյ քան զհաստատութիւն 'ի վերին զօրութեննէն և հոգևորք են … և վասն առաւելութեան սրբութեան իւրեանց՝ են փառաւորիչք: Եւ որ 'ի ներքոյ մնացին կալ 'ի վերայ երկրի՝ ժանտք են և գարշելիք … և այսք չարք զան հանգչին 'ի վերայ նոցա »: Կեսարացի հայրապետին « **առաւօտն որ յԵկեղեցւոյ է** » խօսքերը կարծէք, թէ աւելի ժամանակակից եկեղեցական մի կ'ակնարկեն, քան թէ զնոյն ինքն Որոգինէս, որ եթէ ոչ պաշտօնական դատապարտութեամբ՝ այլ գէթ կարծեաց տարաձայնութեամբը հերձեալ կը համարուէր յեկեղեցւոյ և ոչ յեկեղեցւոջ: Չեմ կարող ասել, թէ Բարսեղ ուղղակի զհաբազատն իւր Գրիգոր ուզած է պարսաւել աստ, որովհետև նա Բարսղէն վերջ գրեց իւր **Արարածոց** գիրքը. սակայն կարելի է ասել, թէ Գրիգորի վարդապետութեան վերոյիշեալ տեղին՝ ուղղակի Նիւսացիէն[1] առնուած է, որ խօտորելով 'ի Ս. Բարսղէ կ'ըսէ. Aqua profecto super qua ferebatur Spiritus Dei, diversa est ab istarum aquarum natura, quæ deorsum fluunt, et firmamento ab aqua gravi et ad inferiora tendente sejungitur. Quod autem in scriptura vocetur aqua etiam illa sublimiori contemplatione divinorum mentium plenitudo significatur, ne quis id alienum aut novum putet. Ստուգիւ այս բանին յայտնի ապացոյց է նախ Ագաթանգեղայ յիշեալ տեղին, ուր որոգինեան կարծիքը՝ ըստ մտաց Նիւսացւոյն չափաւորելով մէջ բերուած է, այսինքն է փոխանակ 'ի վերոյ հաստատութեան ջուրերն

1. In Hexameron liber, p. 15. Parisiis, 1638.

իմացական էակներ համարելու՝ իմացական էակաց բնակութիւնը հաստատութեան վերնայարկի ջրոց մէջ կը դնէ և մի և նոյն տեղին 307 իշում դարձեալ կը կրկնուի: Բ. Մի և նոյն պարբերութեան երկրորդ մասն իսկ, ուր ընդդէմ որոգինեան կամ լաւ ևս Երկուութեան վարդապետութիւնը կը հաստատուի, թէ չարն իրօք չի կայ և չկարէ լինել չարի արարած, զի ամենայն արարածք Աստուծոյ բարի ստեղծուեցան, նոյն է դարձեալ Նիւսացւոյ վերոյիշեալ տեղւոյն շարունակութեան հետ, ուր զՈրոգինեանս հերքելու և իւր կարծեաց ուղղութիւնը պաշտպանելու համար կ'ըսէ. « Nunquam enim ita delirarem, ut res a Deo factas malas esse ducerem... Quod si quæcunque Deus fecit, sunt bona, abyssus autem, quæque ad illam pertinent, a numero eorum quæ facta sunt a Deo non excluduntur ».

199–202 և 207–212 էջերն յորս կը խօսուի նախամարդոյն աստուածանմանութեան, նորա անձնիշխան տէրութեան և մարգարէաճրաշ գիտութեանը վերայ, մեծ նմանութիւն ունին Բարսղի վեցօրէից Թ ճառին և Նիւսացւոյն[1] հետ. սակայն հայազն վարդապետն ուղղակի օգտուած է Յովհ. Ոսկեբերանէ[2], որ իւր նախորդ վարդապետաց հետևելով՝ աւելի ևս ընդլայնած է: Եւ ստուգիւ այս անտի իսկ յայտ է, զի ուրեք ուրեք Ոսկեբերանի տեղեաց հետ ունեցած նմանութիւնն՝ բառ առ բառ է: Բ. Յէջ 207 Ագաթանգեղայ կ'ըսուի Աստուծոյ համար, թէ « Քանզի նմանութեամբ մարդոյ երևեալ Աստուծոյ ՚ի տեսլեանն զմարդն հող յերկրէ »: Արդ այս տեղիս ոչ ըստ Մարդակերպելոց մոլորութեան առնելու է, զոր Բարսեղ և Նիւսացի և նոյն իսկ վարդապետութեանս հեղինակն ՚ի բազում տեղիս կը հերքեն, և ոչ այլ Գրիգ. Լուսաւորչին ընծայելի է. որովհետև նա Յաճախապատումի Դ ճառին մէջ, յէջ 24, ընդհականակն կ'ըսէ, թէ մարդ պատկեր է Աստուծոյ, « Ըստ Քրիստոսի մարդանալոյն իմացեալ »: Ուրեմն յառաջ բերութիւն իմն համարելու ենք այն տեղին՝ Ոսկեբերանի մի ուրիշ տեղւոյն[3], ուր ուղիղ մտօք կը գրուի այսպէս. « Enim vero si hoc loco imaginem id apellavit, æqualem divinæ omni ex parte formæ similitudinem significans, et idcirco Dei imago vocatur homo, quia Deus hoc pacto figuratus est ». Իսկ 206–207 իջի Բ պարբերութիւնը՝ գրեթէ բառական կերպով նոյն է Նիւսացւոյն (In verba, Faciamus hominem, Oratio I, p. 141–142) մէկ տեղւոյն:

ԻԵ գլխահամարը՝ գրեթէ ամբողջովին կարելի է հայազգի վարդապետիս մտաց սեփական ծնունդ համարել, բաց յերկուց կամ յերից տեղեաց. այսինքն է 213 իջի Բ պարբերութիւնն, յորում նախամարդոյն պատրողը « Ի վերին զօրաց իշխանութեանց հրեշ-

1. In Hexam. lib. p. 15 և De hominis opificio, p. 142.
2. In cap. I Gen. Homel. VIII, p. 61, IX, 67–68 XIII, 102, XV, 112, 113 I20, 121, և In Gen. Sermo II, p. 653, 654, III p. 655. Venetiis, 1740, f. VI.
3. In Gen. Sermo II, p. 54.

տակաց » կ'անուանի, այլովք հանդերձ, և Ոսկեբերանի Ծննդ. Գ գլխոյն վերայ յօրինած ԺԶ ճառի 124 իջի հետ նոյն է: Իսկ 216 իջի Բ պարբերութեան հետագայ խօսքերն. « Քանզի բարերարն յանգէտս պատճառեալ ոտնածայն առնէ » և այլն, Ս. Եփրեմի Մեկն. Արարածոց գլ. Բ. էջ 19 տեղւոյն հետ նոյն է. այսպէս նաև 215 իջի Ա պարբերութիւնն՝ ուր խօսքը անօրէն իշխանին վերայ է, որ ուզեց աստուածանալ, բառ առ բառ կը համաձայնի ասորի Ս. Հօր Մեկն. Արարածոց գլ. Բ. էջ 13 տեղւոյն. միայն թէ առ Ագաթանգեղայ՝ սատանայի բանսարկութեան համար տուած պատճառն, « Թերևս հնար լիցի նմա զնորա (մարդոյն) տեղին ժառանգել » և կամ այլուր « զխոստացեալսն ըմբռնել », նոր իմն կը թուի, թէպէտև ոչ իսպառ օտար 'ի հետևեալ բանից Եփրեմի. « Որպէս զի Աստուած բարկասցի 'ի վերայ նոցա », այսինքն է նախամարդոյն:

Յէջ 225 ԻԶ գլխահամարի Բ պարբերութիւնն, ուր Ննովքայ և մարդկային ազգի անմահական վիճակին վերայ կը խորհրդածուի, բառ առ բառ Ոսկեբերանէն [1] առնուած կը տեսնուի և ոչ թէ Գրիգորի: Նւ ստուգիւ աստ կ'ըսուի, թէ « Աստուած ոչ 'ի բազմացուցանելն միայն, այլ անդէն և անդ կամէր զի 'ի մշտնջենակեաց անմահութիւն փոխեսցին որպէս և Ննովք ». մինչդեռ յէջ 67 համառօտ վարդապետութեան՝ սորա հակառակը կ'ըսուի, թէ յետ սերելոյն և բազմանալոյն փոխեսցին յանմահութիւն:

Յէջ 231 Բ պարբերութիւնն, յորում կը յիշատակուի Յակոբայ՝ հրեշտակին հետ ունեցած մենամարտութիւնն և կ'աւանդուի, թէ մարդակերպ երևցող հրեշտակն՝ Աստուած էր. Ս. Եփրեմի Արարածոց Մեկնութեան գլ. Ը. էջ 97–98 տեղւոյն փոխառութիւն համարելի է, չնայելով, որ Ոսկեբերանն ևս զայս վարդապետած է [2]. որովհետև Եփրեմ ինչպէս վարդապետութեան հեղինակին՝ այսպէս և յոյն վարդապետին նախագաղափար եղած է, որ և յատուկ կերպով հարց ևս յարուցանելով այս կէտիս վերայ, Իսրայէլ, այսինքն է աստուածային յանուանակոչութենէն կը հետևցնէ, թէ. « Ինքն հրեշտակն Աստուած էր, և մարդն Աստուած էր », զոր տեսաւ Յակոբ, ապա թէ ոչ Ս. Գիրքը ստած պիտի լինէր, կոչելով զնա աստուածատես, եթէ նորա տեսածն լոկ հրեշտակ լինէր մարդակերպեան: Այս վարդապետութիւնս՝ այսինքն է, Բանին Աստուծոյ հրեշտակակերպ և մարդակերպ երևումն առ նահապետս և մարգարէս, իրեն սեփականելով վարդապետութեան հեղինակն՝ ԼԱ. գլխահամարին մէջ աւելի ընդարձակած է և պէսպէս դիպաց հետ ներկայացուցած. բայց այս անգամ կը զուգէ նորա հետ Ս. Գրոց և Եփրեմին յաջորդող յունական Հարց այլևայլ տեղիքն և ասութիւնքը:

Յէջ 234 Բ. պարբերութեան մէջ կ'ըսուի, թէ Աստուած կոչեց զՄովսէս 'ի Սինա լեառն, « յանդիման առնել աստուածակերպ փառացն », և թէ Մովսէս « յաստուածացն » նկատեց զնա. մինչդեռ 235,

1. In cap. VII, Gen. Homel XXIV, p. 222.
2, In Cap. XXXIII Homel. LVIII, p. 564–566,

236 և 247 էջերում, ընդհակառակը կ'աւանդուի, թէ ամղոլ, հրոլ և ուրիշ տարրական երևոյթիւ կ'երևէր նմա Աստուած: Դիտելու է, որ այս դէմ ընդդէմ վարդապետութիւնքս՝ չկարեն լինել մի և նոյն վարդապետի: Արդ «աստուածակերպ տեսլեամբ», եթէ իմանանք զէութիւն Աստուծոյ, և «յստակագոյն ճկատել» բացատրութեամբս՝ զպայծառ տեսութիւն նորա, կը հակառակի այս ոչ միայն Բարսղէն սկսեալ յոյն Ս. Հարց, այլ նոյն իսկ Ցանախապատումի, ծառ Ա էջ 2 հեղինակին, որք ընդդէմ Եւնոմեանց և Մարդակերպեայց անկարելի կը համարին որ և է ստեղծական մտաց կամ զգալի աչաց բնաւորականաւն, տեսնել զէութիւնն Աստուծոյ: Ուստի պէտք է ասել, թէ կամ այս տեղիս Որոգինեսէն առնուած է, և կամ անով այլ ինչ ուզած է արտայայտել հեղինակն՝ քան ինչ որ մենք կ'իմանանք:

ԼԱ գլխահամարի առաջին երեք պարբերութեանց մէջ աւետեաց երկրի բնակ մարգարէից և Որդւոյն Աստուծոյ երևմանց վերայ խօսած ժամանակ՝ յանկարծ դարձեալ 228–229 իջի հատուածը մէջ կը բերուի՝ լեզուաց խառնակութեան և ազգաց բաժանման մասին, որոնց սահմանքն «ըստ թուոյ հրեշտակաց Աստուծոյ» կ'որոշուին: Դիտելու է որ, նախ այս տեղիս Երկր. Օրին. ԼԲ 8 տան յառաջբերութիւն է, ըստ Եօթանասնից թարգմանութեան, յորում սակայն փոխանակ հրեշտակաց՝ «որդւոց Աստուծոյ» գրուած է. իսկ Եբրայական բնագիրն և Վուլկատա՝ «որդւոց Իսրայէլի» կը դնեն: Կր. Թումայեան՝ հրեշտակաց բառը՝ յետոյ ուրեմն Եօթանասնից մէջ ներմուծուած կը համարի, և անտի անմիջապէս անցած յԱգաթանգեղոս, առանց որոշելոյ զժամանակն և զպատճառ այսպիսի մի եղելութեան: Սակայն այս անհաւանական կ'երևի. և յիրաւի իսկ, ապա թէ ոչ Եօթանասնից հայերէն թարգմանութիւնն ևս՝ պէտք էր այնպէս գրել: Ուստի կը մնայ ասել, թէ կամ Ս. Գրոց մի ուրիշ բնագրի և թարգմանութեանս ձեռքով մուտք գտած է յԱգաթանգեղոս և կամ եկեղեցական Ս. Հօրէ մի ուղղակի առնուած պէտք է որ լինի այդ տարբերութիւնն, որ Աղեքսանդրեան կամ լաւ ևս Անտիոքայ դպրոցին կը պատկանէր, որոնք Դանիէլի Ժ. գլ. 13 և Յովհաննու Յայտնութեան տեղեաց վերայ հաստատուած՝ կը վարդապետէին նաև 'ի Ե դարուն, թէ իւրաքանչիւր ազգի, և աշխարհի մի պահապան հրեշտակ կարգեալ է յԱստուծոյ. և թէ բաժանեալ ազգերն և լեզուք 70–72 էին: Եւ ստուգիւ առ Ս. Եպիփանի ('ի Գարուսնեան Աստեղաց թարգմ. հայերէն) և առ Ոսկեբերանի (Մեկն. Դանիէլի Ժ. 13) վերոյիշեալ տեղին մէջ բերուած է, յորում համաձայն Ագաթանգեղայ գրոց «հրեշտակաց Աստուծոյ» գրուած կը գտնենք: Ուրեմն Գրիգորի կարծեցեալ վարդապետութեան սոյն տեղին եթէ Եպիփանէն կամ Ոսկեբերանէն ուղղակի փոխ առնուած համարինք, և եթէ Ս. Գրոց նախկին և յանկարծագիւտ թարգմանութեան ձեռքով, կը հետևի թէ Ե և ոչ թէ Դ դարուն սկիզբները գրուած է ընդարձակ վարդապետութեան գիրքը:

Բ. Եզնիկ ևս որ այդ ժամանակամիջոցին կ'ապրէր և հաւանօրէն

Նպիփանի հետևողութեամբ՝ ուրիշ գրուած [1] մի եւ ունէր ընդդէմ ժամանակակից քրիստոնեայ աղանդաւորաց, որուն սակաւաթիւ մնացորդքը միայն ցաւալի կերպով խառնակուած են **Եղծ Աղանդոցէ** հատուածոց հետ, ԻՁ.ԲԴ գլխոյն մէջ մի և նոյն տեղին բառ առ բառ մէջ կը բերէ: Գ. դիտելու ենք որ վարդապետութեան վերոյիշեալ տեղին անյարմար կերպով աստ մէջ բերած է անծանօթ հեղինակն, որպէս զի հրեշտակաց ծեռքով կամուրջ մի կապէ, յարմար կերպով յետագայ նիւթին անցնելու. այսինքն է, հոգեկան ազգին բազմապիսի գործոց, և իսկական բնութեան վերայ խօսելու. և մէջ բերած է ճիշդ Դանիէլի տեղւով 'ի միասին. իսկ ազգաց բաժանման և թուոյն խորհրդական նմանութիւնն՝ յետոյ ուրեմն 457 իջում կը պարզաբանէ: Արդարև 'ի համառօտութիւն ըսածիս՝ բաւական է բանալ 243 և 252 էջերն, յորս հրեշտակաց հոգեղէն գոյացութեան, անձնիշխան ազատութեան, անհամար թուոյն և սպասահարկութեանց մասին տուած տեղեկութիւնքն ոչ միայն Ոսկեբերանի և Գրիգ. Աստուածաբանի լուսովը լուսաւորուած են, այլ նոյն իսկ նոցա հետ կը նոյնանան շատ անգամ: 241 իջի Բ. պարբերութիւնը « Զի ուրումն կառօք երևեալ իբրև զօրավար », այլովք հանդերձ՝ գրեթէ բառ առ բառ բանաքաղութիւն է Ոսկեբերանի Ե. Ներբողեանին 'ի Ս. Պօղոս յէջ 501–502 մէկ տեղւոյն. իսկ 242–252 էջերը ամենամեծ նմանութիւն ունին Եզնկայ 93, 94, 95 և 96 էջերու հետ՝ ըստ 1826 վենետկեան տպագրութեան: Արդ նմանութեան այս գեղեցիկ ներդաշնակութիւնս, որ ակներև կը տեսնուի Եզնկայ և Ագաթանգեղայ մէջ մէկ կողմէն, իսկ միւս կողմէն ալ վերոյիշեալ յունական Հարց հետ ունեցած համաձայնութիւնը, բաւական են ո՛ր և է տարակոյս փարատել. վարդապետութեան գրոց յետին ժամանակի և ոչ թէ Գրիգորին լինելու մասին: Սակայն մենք յառաջ վարենք աչալուրջ քննութեան ընթացքը:

## Դ

ԼԲ. գլխահամարին 249 իջէն մինչև ցէջ 264 ԼԶ գլխահամարին՝ չորիցս և դարձադարձ կը նկարագրուին մերթ մարդկային ազգի նախկին զառածիլն 'ի մեղս և մերթ Աստուծոյ բարերարութիւնքն և երևմունքն առ նա: Հեղինակս թէ և նիւթապէս Ս. Գրոց պատմութեան ընթացիցը կը թուի հետևել, բայց նորա գլխաւոր նպատակն է Լուսաւորչայ համառօտ վարդապետութեան գործադրական մասունքն՝ անկէ վերջ եկող մեծանուն սուրբ Հարցն Եփրեմի, Բարսղի, Նազիանզացւոյ, Նիւսացւոյն և այլոց հաստահիմն վարդապետութեամբք և իրեն յատուկ ոճով ճոխացնել և իւր ազգակցաց համար

1. Ցիրաւի, Պարոն Ցարութիւն Աղանուրեանի Հնդկաստանէն 'ի վանս մեր ղրկած գրչագրաց ցուցակին մէջ կը հանդիպինք այսպիսի մի երկասիրութեան՝ հետևեալ մակագրութեամբս. « Եզնկայ, Ցաղագս որոշման զանազան հերձուածոց »;

Կիւրեղներու **Կոչումն ընծայութեան** և **Պորտական** գրոց նման Վարդապետարան մի պատրաստել. այս պատճառաւ իսկ մասնաւոր դասաւորութենէ և կարգաւորութենէ աւելի՝ ջանացեր է բազմութիւն նիւթոց յառաջ բերել: Գործաւէր մեղուի նման մերթ վարդից 'ի թիւմ կը թևածէ, մերթ լերանց 'ի խորախորհուրդ հովիտս և մերթ 'ի վտակաց՝ 'ի հոսանս սրբազան պերճախօսաց. այնպէս որ, շատ անգամ դժուար կը լինի հետևել նորա թռչանաց և գտնել բոլոր այն աղբիւրներն, յորոց կը ծծէ և կը կազմէ նա իւր գործն 'ի սնունդ մանկանց Հայաստանեայց եկեղեցւոյ: Այլ հանդերձ այսու ամենայնիւ՝ կարեմք քաջ նմանեցնել այդ գործը մեղուաց բջիջներու, որոնց իւրաքանչիւրին խորշին մէջ հաւաքուած մեղրաբուխ վարդապետութիւնքը՝ գրեթէ տարբեր Հօր պարտիզի գրաւորական ծաղկանցմէ քաղուած են, որոնցմէ կը բաւականանամ մի քանիսը միայն մատնանիշ ցուցանել:

Ցէջ 257 վերջին պարբերութեան մէջ՝ Որդւոյն Աստուծոյ յետ այնչափ ժամանակաց յաշխարհս գալու մասին կ'ըսուի, օրինակ իմն, թէ « Չի ոչ եթէ յետոյ իմացեալ ամենագիտին՝ գայր երևել յաշխարհ և բարձրացուցանել զմարդիկ 'ի փառաւորութիւն, այլ ըստ առաջադրութեան 'ի սկզբանն՝ կատարեաց 'ի վախճանի », և այլն: Այս նիւթիս վերայ դարձեալ յէջ 264, ԼՁ գլխահամարով սկսող պարբերութեան մէջ հարց կը յարուցուի այսպէս. « Իսկ ընդէ՞ր արդեօք յերկարեալ Միածինն՝ այնչափ նեղութիւն արարածոցն հաւուցանէր » : Սակայն դիտելու ենք, որ առաջին տեղւոյն իբրև պատճառ հետևեալը կը տրուի. « Քանզի նմանութիւնք երևեալք առ ժամայնք արդարոցն՝ զուշակք ճշմարտութեանն յաւիտենականի որ գալոցն էր՝ լինէին » : Այս պատճառս գրեթէ ամբողջ տեղւովը կը գտնուի յէջ 69 առ Ագաթանգեղ, Գրիգորի համառօտ վարդապետութեան մէջ: Իսկ երկրորդ հարցին տուած պատճառն՝ բոլորովին այլ ինչ է, յասելն. « Չի նախ ազդ արարեալ յառաջագոյն ընդելականս առնիցէ. զի մի յանկարծ անծանօթն երևեալ՝ անընկալ լինիցի. այլ իբրև հարցողաց և սպասողաց՝ եկեալ ծանօթս տայցէ » : Այս վերջին տեղիս նման է, ըստ իմաստից, թէ Ոսկեբերանի « **Խօսք Յայտնութեան ընդ Կոչմնէ** » ճառի մէկ տեղւոյն [1], և թէ Նազիանզացւոյն [2]. ուստի նոցանէ 'ի միոյն կամ 'ի միւսէն առնուած է. թէ և ես վերջինը սկզբնական աղբիւր կը համարիմ, որուն Ոսկեբերան իսկ հետևած է յիշեալ գրութեանը մէջ: Այս բանս դեռ աւելի կը հաստատուի Եզնկայ ձեռքով, (որ ոչ միայն վերոյիշեալ հարցն և պատասխանիքը մէջ բերած է ԺՁ գլխահամարին 230–232 էջերում, այլ նոյն իսկ 233 կրկին պարբերութիւնքն իսկ վերոյիշեալ Հարց կարծեաց համաձայն կը գրէ), բժշկի և հիւանդի օրինակները մէջ բերելով: Բ. Ոչ միայն Ագաթանգեղոսի 264 իջի տեղւոյն նախըն-

1. Տպգ. Ս. Ղազարու, 1861, էջ 420:
2. Ի Պասքա և 'ի սուրբ Պասքայ (Բ), էջ 84: ՑՆ. և Լտ. Editio Coloniæ, 1690, T. I, p. 684. De Fide, Orat. XLIX, p. 734–735.

թաց պարբերութիւնքն, յորս Որդւոյն Աստուծոյ կերպակերպ երևմանց վերայ կը խօսուի, և հետևեալքն, այսինքն է 265–269 էջերն, յորս աստուածային անհաս բնութեան և նորա անքննութեանը վերայ կը խօսուի՝ հետևութիւնք են Աստուածաբանի Խթ ճառի 732–735 էջերուն և Ծննդեան ճառի 615–616 իջից, ըստ վերոյիշեալ յուն. և լատ. հրատարակութեան. այլ նոյն 266 իջի Բ պարբերութիւնը՝ ամենանման է Նազիանզացւոյ Երրորդութեան Ճառէ մէկ տեղւոյն, ըստ հայերէն թարգմանութեան (Ճառընտիր, ԻՁ. էջ 48):

Նէ գլխահամարի Բ պարբերութեան մէջ երկիցս կը լինի դաւանութիւն միոյ Աստուածութեան և երեք անձնաւորութեանց: Առաջին մասին մէջ կ'ըսուի. «Չի հաւատով ճշմարտեսցուք 'ի մի Աստուած և Տէր և արարիչ ամենայնի. և 'ի Միածին Որդին որ 'ի Հօրէ և առ Հօր և ընդ Հօր. և 'ի սուրբ Հոգին՝ որ 'ի Նորանէ Երևեցաւ և նովաւ արար զամենայն»: Այս վարդապետութիւնս համաձայն է Ագաթանգեղայ 66 և 71 էջերու տեղւոյն, և Ցանճախապատումի Ա և Բ ճառերու յէջս 1 և 4 տեղեաց. և է նիկիական դաւանութիւն և յատուկ ձև զոր վարէին Հարք Յունաց ընդդէմ Արիանոսաց մինչև ցԵ դար: Իսկ երկրորդ մասին մէջ ընդհակառակն յետ ըսելոյ, «Անպատում, անքննին միութիւն Երրորդութեան մի իսկութիւն, մի էութիւն, մի Աստուածութիւն», անդէն կը յարի. «Հայր և Որդի և Հոգին 'ի Նոցանէ»: Արդ այս վերջին բացատրութիւնս ոչ միայն չկարէ լինել Գրիգ. Լուսաւորչին, այլ և ոչ իսկ Բարսղի կամ Աստուածաբանին[1] և կամ Նիւսացի ժողովական Հարց միոյն. որովհետև Հոգւոյն Սրբոյ՝ յՈրդւոյն չի բղխելու մոլորութիւնը 'ի Նեստորականաց, այսինքն է Թէոդորետոսի ձեռքով առաջին անգամ սերմանեցաւ. այսպէս ուրեմն նաև նորա հակառակ ուղղամիտ դաւանութիւնն իսկ՝ վերոյիշեալ ժողովքէն վերջ բացայայտ կերպով սկսաւ քարոզուիլ, այնպէս որ Կիւրեղ Աղեքսանդրացին անգամ իւր Յաղագս Երրորդութեան Տրամախօսութեան մէջ դեռ. նախկին ձևը կը գործածէ, ասելով. «Որ 'ի Հօրէ բղխի՝ Որդւովն կամ 'ի ձեռն Որդւոյ»: Արդ դիտելու է, որ Արիոս, Եւնոմիոս և Մակեդոն յառաջագոյն քան զԹէոդորետոս չարաչար մոլորեցան Որդւոյն Աստուծոյ և ամենասուրբ Հոգւոյն բնութեան վերայ, զառաջինը լոկ արարած համարելով Հօր, իսկ զերկրորդն՝ ստեղծուած Որդւոյ՝ բղխմամբ կամ ըստ գընոստիկեան արտահոսման: Այս պատճառաւ ուրեմն Կ. Պօլսոյ Ա. Ժողովոյ սուրբ Հարք՝ այս մոլորութիւնները, մանաւանդ վերջինը, խայտառակելու համար ջանացին Հոգւոյն Սրբոյ՝ Հօր և Որդւոյն հետ

1. Թէպէտ և ԻՁ ճառընտրի մէջ յէջ 48 'ի ճառի ուրեք Աստուածաբանին, որուն վերնագիրն է Ցաղագս սուրբ Երրորդութեան, այսպէս գրուած է. «Հայր ամենակալ Աստուած կատարեալ. Որդի 'ի Հօրէ Աստուած բովանդակ. Հոգին սուրբ 'ի նոցունց 'ի նոսին Աստուած բաւական»: Բայց դիտելու ենք որ այս վերջին բացատրութիւնը 'ի նոցունց 'ի նոցին, յունարէն բնագրի մէջ կը պակսի. ուստի կամ թարգմանչէն և կամ գաղափարողի ձեռքով մուտք գտած է աստ:

ունեցած համազգութիւնը, կատարեալ անձնաւորութիւնն և համապատուութիւնը ցուցանել. ուստի զգուշացան ըսել, թէ Հոգին սուրբ կը բղխի նաև յՈրդւոյ, որպէս զի թէ՛ այն հերետիկոսաց ձեռքը նոր զէնք մ'ևս տուած չըլլին և թէ՛ բարեմիտ քրիստոնէից դիմաց զՀոգին սուրբ. փոքրկացուցած չհամարուին: Եւ ստուգիւ, բաց ՚ի վերոյիշեալ Հարց գրութիւններէն, Կ. Պօլսոյ Ա Սիւնհոդոսի Հանգանակն իսկ ամէն տարակոյս կը փարատէ առ այս. ուր Հոգւոյն Սրբոյ համար այսպէս կ'ըսուի. «Եւ ՚ի Հոգին սուրբ (հաւատամք) Տէր և Կենդանարար, ՚ի Հօրէ Բղխեալ, որ ընդ Հօր և ընդ Որդւոյ երկրպագելի և ՚ի միասին փառաւորի»: Ուրեմն աստի կարեմք եզրակացնել՝ առանց յերկուանաց, թէ Կ. Պօլսոյ Հանգանակին այս ձևն՝ ըստ ամենայնի նոյն է վարդապետութեան վերոյիշեալ Ա տեղւոյն:

Բ. թէ այն բանը՝ զոր ոչ Նիկիոյ սուրբ Ժողովոյն և ոչ Կ. Պօլսոյ Սիւնհոդոսի Հարք վճռեցին կամ վարդապետեցին, նոյնը կարելի չէ որ որոշակի վարդապետած լինէր Լուսաւորիչն մեր, մանաւանդ դիտելով որ Յովհ. Աւետարանին մէջ իսկ «՚ի Հօրէ Ելանէ» գրուած է, թէ և հասկանալով այլուր նաև յՈրդւոյ, յառնելն Քրիստոսի. «Յիմմէ անտի առնու», և թէ, «Ես և Հայր մի եմք», այսինքն է ըստ էութեան: Ուրեմն վարդապետութեանց մէջ բերուած երկրորդ տեղւոյն համար պէտք է ըսել, թէ կամ յետոյ ուրեմն ներմուծուած է, և կամ Եփեսոսի սուրբ Ժողովէն վերջը գրուած է, կամ նոյն ժամանակի եկեղեցական հօրէ մի փոխ առնուած: Յիրաւի, Սևերիանոսի Եմեսացւոյ Ճրագալուսի Ծննդեան ճառին մէջ այսպէս գրուած է. «Անծնին Հօր, և ծնելոյն ՚ի նմանէ Որդւոյն և սուրբ Հոգւոյն Ելելոյն ՚ի Նոյնանց Էութենէ»: Անտարակոյս, այս տեղիս համաձայն է վարդապետութեան երկրորդ տեղւոյն. բայց թէ իրօք յունարէն բնագրի մէջ ևս այդպէս էր, թէ ընդհակառակն հայու ձեռքով ներմուծուած է. այս բանս անկարելի է որոշել, քանի որ դեռ յոյն բնագիրն յայտնուած չէ: Այս միայն կ'ուզէի դիտել տալ, որ վարդապետք Յունաց՝ Հոգւոյն սրբոյ համար Բղխել բայն ՚ի գործ ածած են, զոր և տեսանք քիչ յառաջ Կ. Պօլսոյ Հանգանակին մէջ. իսկ աստ ընդհակառակն Ելանել բայը գործածուած է, և թէ ինչպէս Հայք բղխել բայէն կը խորշէին և կը զգուշանային, այսպէս ևս Յոյնք ելանել բայի նշանակութենէն, որ բոլորովին այլ պատճառ կամ սկիզբն կը ցուցանէ յունարէնի մէջ:

## Ե

ԼԸ գլխահամարին 272–275 էջերն, այսինքն է Բ. Գ. և Դ պարբերութիւնքն, յորս կը խօսուի աստուածային անքաւելիութեան, արարչագործ զօրութեան և ամենայն իրաց մէջ ներկայ գտնուելուն վերայ, գրեթէ բառ առ բառ հետևութիւն են փոփոխակի Ս. Բարսղի և Նազիանզացւոյ Յաղագս Հոգւոյն սրբոյ և ընդդէմ Եւնոմեանց ճառերուն [1]: Եւ իրօք բաց ՚ի այդ բառական նմանութենէն, հե-

1. De Spiritu Sancto, lib. V, p. 321–322.

տեսեալ պարագաներն իսկ զայս կը ցուցանեն յայտնապէս. այսինքն է Լուսաւորչայ կարծեցեալ վարդապետութեան հեղինակն՝ Ս. պարբերութեան մէջ թէպէտև Որդւոյն Աստուծոյ յաշխարհս գալուն և 'ի Կուսէն մարմնանալուն վերայ կը խօսի, բայց նորա նպատակն այս չէ, այլ միայն Հոգւոյն սրբոյ աստուածային գործակցութիւնն և ամենակարող զօրութիւնը ցուցնելու համար՝ նաև 'ի մարդեղութեան և փրկագործութեան աշխարհի ընդդէմ հերետիկոսաց, որք կ'ուրանային զայն՝ մէջ կը բերէ. ուստի շուտով խօսքը Հոգւոյն սրբոյ վերայ դարձնելով՝ կ'ըսուի այսպէս. «Վեց զօրութեամբ ճառագայթին վեց հազարեան դարքն. եօթներորդն՝ հանգիստ արդարոց»: Դիտելու ենք ու, աստ «Վեց հաւուրեան գործք» ոչ հազարամեայց վարդապետութիւնը կ'ակնարկուի, ինչպէս կ'ենթադրէ Թումայեան, և ոչ այլ «Վեց զօրութեամբ ճառագայթիւք» Հոգւոյն սրբոյ շնորհաց թուարկութիւնը կը լինի, որոնք Եօթն են և ոչ թէ վեց, ըստ խորհրդոց եկեղեցւոյ և ըստ առաքելական աւանդութեան. այլ ուղղակի արարչութեան վեց օրերն կամ լաւ ևս՝ վեցօրեայ արարչութիւնքը կը հասկացուին, յորս ներգործեց Հոգին ընդ Հօր և Որդւոյ և ած 'ի չգոյէ 'ի գոյ. և զհանգիստն եօթներորդ աւուր, որ է օրինակ յաւիտենական և հոգևոր շաբաթուն կամ դարուն, զոր թէ Ս. Բարսեղ[1] և թէ Բարսղի հետևողութեամբ Նազիանզացին[2] գեղեցիկ խորհրդածութեամբ բարգաւաճած են: Հայազգի հեղինակն՝ մեղուորէն նոցա կարծեաց կարևոր կէտերու յիշատակութեամբը միայն բաւականացած է, թողլով զամենայն ինչ 'ի մթութեան: Սակայն դիտելու ենք, որ «Վեց զօրութեամբ ճառագայթք» բացատրութիւնը՝ վերոյիշեալ նշանակութեամբ առնելով, մի ուրիշ գաղտնիք ևս կը թուի պարզել մեր դիմաց. այսինքն է Լուսաւորչայ կարծեցեալ վարդապետութեան այդ տեղին Ս. Գրոց երկրորդ թարգմանութենէն յառաջ գրուած կը տեսնուի. դիտելով, որ այս բացատրութիւնս համազօր է Ծննդոցէ Բ գլխոյն առաջին տան, ուր յետ յիշելոյ զօրն վեցերորդ՝ անդէն կ'ըսուի, թէ «Եւ կատարեցան երկինք և երկիր և ամենայն զարդ նոցա». զոր Ս. Եփրեմի Արարածոց մեկնութեան գլ. Ա. էջ 9 հայերէն թարգմանիչը կը դնէ. «Յաւուրն վեցերորդի կատարեցան երկինք և երկիր և ամենայն զօրութիւնք նոցա», փոխանակ զարդու: Ուստի ասկէ կը հետևի, թէ ինչպէս Եփրեմի թարգմանութեան՝ այսպէս և՛ վարդապետութեան այս տեղիս՝ Ս. Գրոց ասորերէն բնագրէն ուղղակի առնուած է ըստ առաջին և յանկարծագիւտ թարգմանութեան Մեսրովբայ, և կամ 'ի Ս. Եփրեմայ փոխառութիւն է:

Գ. Մի և նոյն իջի Բ. պարբերութիւնն, որ կը սկսի. «Մեւքակերպ զԱստուած քարոզեսցուք, յօղապատս անդամօք զանգեալ 'ի հողոյ» բառերով, և ապա կը նկարագրին առանձին գործողութիւնք իւրաքանչիւր անդամոց, որք անձեռնհաս են իրարու գործոց, ոչ միայն անհասկանալի մնացած են, այլ նոյն իսկ մոլորական են,

1. De Homini structura, Oratio II, p. 333–342
2. Oratio in Sanct. Pentecosten, p. 705 et seq.

եթէ բացատրութեամբ ընծայենք Աստուծոյ, որուն վերայ կը խօսուի իրօք անմիջապէս նախընթաց պարբերութեանը մէջ. որովհետև Որդւոյն Աստուծոյ մարդեղութեան վերայ յետոյ ուրեմն կը խօսուի 275 իջի պարբերութեան մէջ: Արդ բաղդատելով վերոյիշեալ տեղին Ս. Բարսղի մէկ տեղւոյն[1] հետ, այնուհետև ոչ միայն այն անտեղութիւնը կը վերնայ, այլ նոյն իսկ կատարեալ համաձայնութիւն կը կազմուի երկաքանչիւրին մէջ: Եւ իրօք աստ Կեսարացին կ'ըսէ, թէ ամենայն մարդիկ կը կազմեն զլրութիւն (խորհրդական) մարմնոյն Քրիստոսի՝ 'ի միութեան Հոգւոյն Սրբոյ. և նմանութեամբ այլևայլ գործողութեանց անդամոց՝ կը ներկայացնէ Հոգւոյն Սրբոյ բազմապիսի պարգևներն առ մարդիկ: Ուստի յայսմ իսկ հայազգի վարդապետն՝ անշուշտ զՑոյնը ունեցած է իբր նախագաղափար:

275 իջի երկրորդ պարբերութենէն մինչև ԻԵ գլխահամարն եղած ընդարձակ միջոցն՝ նուիրուած է Բանին Աստուծոյ մարդեղութեանը. յորում սակայն 10–11 անգամ կրկնութեան ձևով կը սկսի և կ'աւարտի աստուածաբանական ցուցակութիւն տնօրինական խորհրդոյն: Այս ոճով վարուած են Կիւր. Աղեքսանդրացի՝ 'ի **Պարապմանց Գիրս**, և Բարսեղ՝ **Ընդդէմ Անոմեանց** ճառին մէջ. սակայն առ վերջինս՝ յայտնի են այնպիսի վարման պատճառքն, այսինքն է մէկ կողմէն մէջ բերել հեթանոսաց, Հրէից և հերետիկոսաց մոլորութիւնքն և յաղթահարել. իսկ միւս կողմէն այլ Ս. Գրոց այլ և այլ վկայութեամբք և տրամախօսութեամբ՝ ուղիղ հաւատոյ մասունքն հաստատել: Սակայն առ Ագաթանգեղ, նկատելով որ եթէ այդ վարդապետութիւնն իրօք Գրիգորի լինէր, նորա հեղինակի վերոյիշեալ եղանակը գլխովին անհասկանալի կը մնայ. որովհետև դիտելու ենք, որ Գրիգորի միակ նպատակն էր նորադարձ երեխայից՝ պարզապէս և համառօտիւ հաւատոյ մասունքն ուսուցանել, նոցա հասկացողութեան չափով, ինչպէս որ ծանուցուած է արդէն յէջ 189 վարդապետութեան նախապատրաստից ծրագրի մէջ, և ոչ թէ Արիոսեանց, Եւնոմեանց, Մակեդոնեանց և Նեստորականաց հերքիչ խնդիրներով և ձեռնարկութեամբք պարապել, որք այն ժամանակամիջոցին տակաւին յայտնուած և Հայաստանի մէջ դեռ տարածուած չէին։ Եւ սակայն վարդապետութեան մէջ կան այնպիսի տեղիք, որոնք յայտնապէս վերոյիշեալ հերետիկոսութեանց դէմ դարձուած են՝ երկսայրի սուրերու նման և զանոնք կ'ակնարկեն: Օրինակ իմն, յէջ 276 այս բացատրութիւնս, « Որ 'ի մարմնոյն գթեցին, ուրացան զբնութիւն (այսինքն է աստուածայինն) նորա », Արիոսեան մոլորութիւնը կ'ակնարկէ: Իսկ յէջ 286 « Աջն Հօր և Բազուկն » պարբերութեամբ և յէջ 290 Բ պարբերութեամբն. « Այլ յառաջ քան զամենայն յաւիտեանս ծնաւ 'ի Հօրէ », և այլն խօսքերով՝ ուղղակի այն մոլորութեան հերքումը կը լինի: Յէջ 284 Բ պարբերութեան մէջ. « Բայց զԱստուած զոյիւ (գոյացութեամբ) ոչ տե-

1. Lib. De Spiritu Sancto, CXXVI, p. 51–52.

*սեալ[1] ուրուք, ոչ հրեշտակաց և ոչ հրեշտակապետաց », այլովք հանդերձ, զԾննդին և զհամախոհս կը հարուածէ, որ յանդգնեցաւ ըսել, թէ ինքն այնպէս ակներև կը ճանչնար զԱստուած բնաւորապէս, ինչպէս որ Աստուած անձամբ կը ճանաչէ զանձն իւր: Ցէջ 287. « Արդ առաքեաց Աստուած* **զՀոգին սուրբ 'ի նշան Մարդոյ, և նա** *Աստուածորդին մարմին 'ի Կուսէն », և յէջ 291 Բ. պարբերութեան մէջ. « Եւ յղացեալ այնուհետև* **'ի Հոգւոյն Սրբոյ** *շնորհագիտ Կուսին յանապական արգանդին* **զՄարդն Աստուծոյ** *», և աւելի բացայայտ կերպով յէջ 530, « Տես զհայրն կատարեալ, զՈրդին ճշմարիտ և* **զՀոգին հաւասար** *», և այլն. բացատրութեամբք կը հերքէ և կ'եղծանէ Մակեդոնի և Փոտինոսի, մոլորութիւնքը, որք զհոգին Սուրբ արարած կը համարէին Որդւոյ, և ոչ Աստուած ամենազօր և էակից: Ցէջ 281, խօսելով Բանին Աստուծոյ մարդեղութեանը վերայ՝ կ'ըսուի. « Սակայն* **խորով Աստուածութեամբ յերկինս է և յերկրի, ընդ Հօր և ընդ Հօր** *»: Այս բացատրութիւնս ստէպ 'ի վար արկանեն Աստուածաբանն և Բարսեղ. բայց վարդապետութեան հեղինակն՝ հաւանօրէն Նեստորականաց և Պաւղիկեանց մոլորութիւնը ցրելու համար մէջ բերած է զատ, որոնք ըստ վկայութեան Մ. Կաղանկատուացոյ (Բ. գլ. Ծ. էջ 95) Ծ դարուն երևեցան 'ի Հայս և կը վարդապետէին, թէ « Մինչ 'ի յերկրի էր Տէրն մեր Քրիստոս՝ յերկինս ոչ էր, և մինչ 'ի խաչին էր՝ չէր յաթոռ փառաց, և մինչ 'ի գերեզմանի էր՝ ոչ էր ընդ աջմէ Հօր ». զորս յետոյ ուրեմն Յովհաննէս Կաթողիկոս ևս հանգոյն Ս. Սահակայ նզովեց ընդ Նեստորի և ընդ Թէոդորետոսի:*

*Մի ուրիշ և ակն յայտնի ապացոյց վարդապետութեանս յետնութեան և անհարազատութեան՝ է ըստ իս, հետևեալն. արդ կը տեսնենք, որ թէ Յաճախապատումի և թէ Գրիգորի համառօտ վարդապետութեան մէջ ստէպ ստէպ աստուածային բնութեան և Բանին Աստուծոյ Աստուածութեան վերայ կը խօսուի, և այն պարզապէս Ս. Գրոց վարդապետութեամբք. իսկ մարդեղութեան մասին՝ հազիւ թէ երկիցս, և այն յոյժ համառօտիւ և առանց ընդդիմադրութեան վերոյիշեալ հերեսիովտութեանց: Այլ Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութեան մէջ, ընդհակառակն, հեղինակին ուշադրութիւնն և գրութեան ընդարձակագոյն մասը գրաւած է մարդեղութեան ճառը: Մանաւանդ թէ այնպիսի զէնքեր և նետեր բանից և բացատրութեանց գործածուած են Նեստորականաց դէմ, զորս անկարելի է չտեսնել, և որք ուղղակի Ծ դարը մատնանիշ կը ցուցանեն մեզ: Այս տեղեկացմէ չորիս միայն բաւական կը համարիմ մէջ բերել: Ցէջ 286 կ'ըսուի. « Հաւատք ճշմարիտ այս են. խոնարհեցաւ և* **խառնեցաւ զԱստուածութիւնն** *ընդ մարդկութեանս և զանմեռն ընդ մեռոտս ... յորժամ* **մարմնովն** *առ Հօր ընդ աջմէն եմուտ, և* **խառնեցաւ ընդ** *(իմա զբնութիւն մեր)* **յԱստուածութիւն նոր**

*[1]. Ըստ բնական կարողութեան հասկանալի է և ոչ թէ որ և է կերպով, հեղինակին այս բացատրութիւնը:*

միածին Որդին» : Ցէջ 283–284, «Հինաւուրցն վասն մեր մարմնացաւ ... Սակայն թէպէտ և զգեցաւ մարմին և էջ 'ի մեր նմանութիւն. այլ նոյն 'ի հայրենի բնութեան Աստուածութեան էր. որպէս և էր նոյն և է և կայ յաւիտեան ընդ Հօր 'ի բարձունս երկնից երկնեան՝ հանդերձ մարմնովն զոր 'ի մէնջ զգեցաւ» : Ցէջ 283, «Եւ ինքն ծնաւ (Բանն Աստուած) 'ի կուսէն, և երկոքին կամօք կատարեաց զկամս առաքչին իւրոյ ... զի ցուցցէ զմարմնաւորական, զանձն, անբաժին Աստուածութեան միութեան» : Եւ հուսկ ապա յէջ 282, «Զի թէպէտ ընկերական եղեւ և զմարմին մարդկան, այլ խառնեաց, միացոյց, ընկղմեաց[1] զմարմինն յԱստուածութեան էութեան» :

Արդ այս տեղեացս, բայց 'ի մասնաւորի վերջնոյն մէջ, հեղինակ վարդապետութեանն զնեստորականս առաթուր հարկանելու և աստուածային և մարդկային բնութեանց անքակ և անբաժանելի միութիւնն յանձն Բանին Աստուծոյ հաստատելու համար՝ այնպիսի սաստկութիւն ստիպուած է տալ իւր բացատրութեան, որով առանց իւր ուզելուն մինչև Եւտիքականութեան սահմաններուն մօտեցեր է, մանաւանդ թէ, քայլափոխ մի ևս առած է, «ընկղմել» բառին միջմամբ, թէպէտ և անուրանալի է, թէ նա ինքն յայլևայլ տեղիս վերջին մոլորութեան և անդնդոց դէմ իսկ կանխեր և անանցանելի պատուարներ կանգներ է : Բ. Դիտելու կարևոր կէտ մի է մ' այս, զի անշփոթ

1. Դիտելու է որ Մշոյ Առաքելոց վանքի հնագոյն և երկաթագիր ճառընտրի մէջ, զոր յօրինած է հաւաքաբար Ը դարու լուսաւոր հանճարներէն մին, այսինքն է Սողոմոն՝ Մաքենոցաց վանահայրն, ըստ վկայութեան յիշատակարանին, վարդապետութեան սոյն հատուածը մէջ կը բերուի բառ առ բառ. բայց աստ փոխանակ «Ընկղմեաց» ի «Վերացոյց» գրուած է : Առ Ս. Եփրեմի, Մեկն. Աւետ. Համաբարբառ, գլ. Բ. էջ 26 նման բացատրութիւն մի կը լինի վասն Քրիստոսի այսպէս. «Ի ժամանակին յայնմիկ՝ յորում էջ Աստուածութիւնն զգեցաւ զմարդկութիւնն, խաղաղութիւն յերկիր աղաղակէին հրեշտակքն: Եւ 'ի ժամանակին յորում Ա, վերացաւ մարդկութիւնն ընկղմեալ յԱստուածութիւն և նստեալ ընդ աջմէ, խաղաղութիւն յերկինս աղաղակէին մանկտին առաջի նորա. Օրհնութիւն, ասէին, 'ի բարձունս» : Ցամին 1876, Ս. Ղազարու լատին հրատարակութեան մէջ, «ընկղմեալ յԱստուածութիւն» բացատրութիւնը դուրս թողուած է՝ առանց ծանօթութեան, յասելն. Quando autem humanitas, unita Divinitati elevanda erat, ut sederet a dextris. Դիտելու ենք, որ լատին թարգմանիչք, այսինքն է Հ. Մկր. Աւգերեան և Մէսսինգէր, միաբնակացմէ ներմուծուած և իբրև Եւտիքական նկատել են սոյն բացատրութիւնս. ոյր աղագաւ բնագրի իմաստըն իսկ յեղաշրջած է : Սակայն ըստ իրին այնպէս չէ. որովհետև Եփրեմի յիշեալ տեղւոյն Բ. նախադասութեանը մէջ՝ Քրիստոսի մարդկային բնութեան վերայ կը խօսուի, ըստ որում համբարձեալ էր յերկինս և փառաւորեալ էր յԱստուածութեան իւրում, ըստ այնմ. «Եւ ընկղմեսցի մահկանացուն 'ի կենաց անտի» : Արդ Գրիգորի կարծեալ վարդապետութեան հեղինակն, եթէ Եփրեմէն իսկ օգտուած համարինք, պէտք է ըսել, թէ սխալ կողմէն առած է իւր նախորդին իմաստը. և կամ ըսել, թէ յետոյ ուրեմն ստուգիւ ներմուծուած անհարազատութիւն է : Եւ իրօք, թղթոց գրքի մէջ Սահակայ կաթողիկոսին ընծայուած անհարազատ թղթի մի մէջ գրուած է, թէ «Առ խառնեաց միացոյց յինքեան և ընկղմեաց զմարմինն յԱստուածութեան» :

բառն՝ զոր իբրև թակ կոչկոճիչ մոլորութեան Եւտիքէսի 'ի գործ ածեն ամենայն Հայք ժողովոյն Քաղկեդոնի, ասա բոլորովին զանց եղած. ուստի առանց երկբայութեան կը հետևի թէ այդ էջերն ստուգիւ այնպիսի ժամանակի մի մէջ գրուած են՝ երբ Եւտիքականութիւնը դեռ գոյութիւն չունէր, ապա թէ ոչ 'ի հարկէ զգուշանալու էր այնպիսի մրցութենէն, յորում իւր նախայարձակ թշնամին զՆեստոր զգետնած և զինաթափ ըրած ժամանակ՝ իւր զէնքերն հետազային ձեռքը տուած կը լինէր՝ զինքն զգետնելու համար: Ուրեմն պէտք է ըսել թէ, ճիշդ այն ժամանակ գրուած է՝ երբ Նեստորականութիւնն Հայաստանի մանկանց մէջ սկսած էր կամ սկսելու մօտ էր կրօնական նախճիրներ գործել, նոյն իսկ հեղինակին կենդանութեամբը: Յիրաւի, իբրև անժխտելի ապացոյց այս բանիս կը տեսնենք, որ Կեսարիոյ և Աղեքսանդրիոյ դպրոցի Հայոց[1] զիտու֊

1. Ստուգիւ յէջ 275 Բ պարբերութիւնն, յէջ 276 Ա պարբերութիւնն և 281–282 էջերու, այսինքն է Ժ գլխահամարով սկսող երկու պարբերութիւնքն, ինչպէս նաև 286 և 287 էջերը՝ Նազիանզացու ԼԵ և ԼՁ ճառերու հետևողութեամբ յօրինուած են, ըստ վերոյիշեալ յուն. և լատ. հրատարակութեան, որոց ոսկեդարեան կամ Ե դարու թարգմանութիւնն ևս ունինք ԻՁ և ԻԹ ճառընտրաց մէջ: Յիրաւի, այս բանիս ապացոյց են, մի յերկուց նոր խառնումն կամ պարզապէս խառնումն աստուածային և մարդկային բնութեանց բացատրութիւնը, զոր ըստ վկայութեան ոսկեդարեան շարականին և ամենայն Հարց, ուսոյց Ս. Գր. Աստուածաբան, և վարդապետութեան հեղինակն, ինչպէս տեսնուեցաւ, երիցս և չորիցս գործածել է: Ստուգիւ Գրիգ. Նազիանզացւոյ 'ի Ծնունդն Քրիստոսի ճառին մէջ այսպէս գրուած է. «Մի յերկուց ընդդիմակացն մարմնոյ և հոգւոյ, յորոց մինն աստուածացոյց և միւսն աստուածացաւ. Ո՜վ նոր խառնմանն. ո՜վ սքանչելի խառնուածոյն. խառնի, զի նմանեաւն, զնմանն մաքրեսցէ»: Բ. ամբողջական տողեր և աստուածաբանական բացատրութիւնք, բառ առ բառ նոյն են ընդ տեղեաց Նազիանզացւոյ. օրինակ իմն, յէջ 287 բանին Աստուծոյ համար զուրցուածը, թէ «Հարկ էր զի նովաւ սրբեսցին, որով հաստատեցան» համաձայն է ԼՁ ճառի 578 իջի մէկ տեղւոյն. այսպէս նա և հրեշտակաց երևման,– հովուաց զուշակման,– մսրոյն,– խանձարրոց և մոգուց վերաբերեալ գեղեցիկ խորհրդածութիւնքն, և յէջ 275 Բ պարբերութեան վերջին տողերը, նոյն են Նազիանզացւոյ ԼՁ ճառի 575 իջի տեղւոյն և ԼԸ ճառի 620 իջին: Յէջ 285. «Մի միայն Տէր, երեքանձնական զօրութիւն. երեք անձինք, մի զօրութիւն,» և այլն, ամբողջ տեղին, նման է Նազիանզացու Երրորդութեան ճառի մէկ տեղւոյն. (Տես 'ի Ճառընտիրն ԻՁ. էջ 48): Գ. Դիտելու է, որ ըստ վկայութեան Նիկեփորոսի (Պատմ. Եկեղ. Գիրք ԺԲ. գլ. ԺԳ) Ս. Գր. Նազիանզացի միաբանութեամբ ամենայն Հարց յօրինելով զՀանգանակն Կ. Պօլսոյ սուրբ ժողովոյն, աւելցուց ինչ ինչ 'ի Նիկիականն. այսինքն է Նիկիոյ Հանգանակին մէջ ըսուած էր Որդւոյն Աստուծոյ ծննդեան համար, «Ծնեալ 'ի Հօրէ» միայն. իսկ Աստուածաբանն յաւել, «Ծնեալ յառաջ քան զամենայն յաւիտեանս» Փոտինոսի մոլորութիւնն եղծանելու համար: Արդ այս վերջին ձևս ճիշտ գործածուած կը գտնենք առ Ագաթանգեղ, յէջ 290 Գրիգորի կարծեցեալ վարդապետութեան մէջ: Դարձեալ Նիկիական հանգանակի մէջ ըսուած էր, «Էջ և մարմնացաւ» պարզապէս. իսկ Կ. Պօլսականին մէջ աւելցուց Գրիգոր, «Էջ յերկնից և մարմնացաւ Հոգւով Սրբով 'ի Մարիամայ կուսէն»: Այս ձևս իսկ գործածուած է Ագաթանգեղայ 289 և 290 էջերում. որոնք անտարակուսելի նշաններ են 'ի վեր անդր ըսածիս:

թեամբ զինեալ քաջամարտիկ վարդապետն՝ յետ խայտառակելոյ զԹշնամիս ճշմարտութեան և ուղղափառ հաւատոյ դաւանութիւնքը հաստատելէն վերջ, կը փութայ անդէն և 288 իջի մէջ յորդոր ևս կը կարդայ արիւնարբու գայլերէն վարատեալ իւր հօտին, զոր հայրապետ սիրով կ'ուզէ ազատել 'ի զիշատիչ ժանեաց, չխոտորիլ բընաւ 'ի կարգաց իմաստութեան Եկեղեցւոյ « մի յաջ և մի յահեակ ». կը նզովէ այնպիսի մոլորութեան որոմնացան սերմանողս, ասելով այսպէս. « Զի որ սերմանեսցէ զայնպիսի սերմանիս 'ի լսելիս լսողացդ՝ այնպիսիքն նզովեալք են, թէ և հրեշտակ իցէ յերկնից, իբրև զօծ նզովեալ հողակեր » : Ամենայն ոք կը տեսնէ, թէ այս խօսքերս անհասկանալի կը մնան Գրիգորի կամ նորա ժամանակակցի մի բերանում. որովհետև այն ժամանակ դեռ ոչ սերմանացանք քրիստոնեայ աղանդաւորաց կը գտնուէին 'ի Հայս, և ոչ այլ Արիոսի մոլորութիւնը ծագած էր, երբ նա վարդապետեց զՀայաստանեայս յԱւետարանն Քրիստոսի Աստուծոյ: Սակայն մասնաւոր ուշադրութեան արժանի է հետևեալ երևոյթն. այսինքն է 290 իջում հեղինակ վարդապետութեանս՝ Կիւր. Աղեքսանդրացւոյ Պուրագմանց ԺԳ գլխոյն մէկ տեղւոյն յառաջբերութեամբը կը կնքէ Մարդեղութեան ճառն, այսպէս. « Նմա փառք ամենատեառնն, որ վասն մեր կենաց մարդացաւ և մարդակերպ շրջեցաւ », այլովք հանդերձ: Եւ ստուգիւ այս տեղիս յոյն վարդապետէն փոխ առնուած լինելու մէկ յայտնի ապացոյցն ևս է հետագայ բացատրութիւնը. « Եւ եւ և նստաւ ընդ աջմէ Ծնողին իւրոյ Աստուծոյ և Հօր ». որովհետև դիտուած է, որ այս Ս. Վարդապետս՝ իւր գրութեան մէջ գրեթէ միշտ Աստուծոյ առընթեր՝ և շաղկապով կը դնէ Հօր անունն ևս, հաւանօրէն Սաբէլեանց մոլորութիւնը եղծանելու նպատակաւ կամ տարտոնեան փողին հետ դաշնակաւորելու աղագաւ:

Ոչինչ ընդհատ ուշագրաւ է Գրիգ. Անաւարզեցւոյ՝ Օշնի համար յօրինած Յայտնութեան (Գ), որում յէջ 597, Դեկտ. ԻԵ (Քաղոց ԺԹ) այսպէս գրուած է. « Տաւն Ծննդեան Քրիստոսի Աստուծոյ մեր. Ի ճառէն Սրբոյն Յովհ. Ոսկեբերանի՝ — Աստուած Բան. « Տէր Աստուած մեր Յիսուս Քրիստոս Որդին Աստուծոյ, որ էրն սկզբանէ

Յէջ 290 Բ պարբերութեան մէկ տեղին, յորում Քրիստոսի յաւիտենական ծննդեան համար կ'ըսուի, թէ « Այն ծննդոյ Հայրն՝ որ զնայն ծնաւ՝ նա միայն գիտէ », և ժամանակաւոր ծննդեան նամար, թէ « իսկ երկրորդ ծնունդն, շնորհօք իւրովք 'ի մէջ մարդկան », բառ առ բառ նոյն է Գրիգ. Սքանչելագործի ընծայուած ծննդեան ճառի մէկ տեղւոյն հետ. որում հայերէնը միայն կայ (Տես Pitra, Anal. Sacra Spicil. Solesm. T. IV, p. 186, Parisiis, 1 83), և ըստ ամենայնի Գր. Աստուածաբանի բնադրոշմը կը կրէ իւր վերայ: Յէջ 284. « Նա եկն եղև մարդ՝ զի մարմնաւորքս տեսանել կարասցեն, » և այլն, տեղին՝ նոյն է քիչ առաջ յիշատակուած ճառի յէջ 141 տեղւոյն հետ, և յէջ 282. « Հինաւուրցն վասն մեր մանկացաւ, զի զմեզ փոխեսցէ յանմահութիւն իւր », նոյն է դարձեալ Յոյն սուրբ Հօր 138 իջի տեղւոյն հետ: Բաց 'ի մինչև հիմա յիշուած Հարց տեղեացմէ՝ կան դարձեալ Ս. Պրոկղի առ Հայս և Հայոց առ նա գրուած պաշտօնական թղթերէն ևս համանման տեղիք, թէ և ոչ այնպէս բառ առ բառ:

ճշմարիտ Աստուած՝ առ Աստուած, յորժամ կամեցաւ մտ. զմարդ֊կան կերպարանս » ..., և այլն: Այս ճառիս սկիզբը թէ և տարբեր բառերով կը սկսի, բայց շարունակութիւնը բոլորովին և բառ առ բառ նոյն է Ագաթանգեղայ 281, 282 և 283 էջերում Գրիգորի կար֊ծուած մարդեղութեան ճառին հետ: Այսպէս նաև յէջ 607 մի և նոյն Յայսմաւուրքի Դեկտ. ԻԸ (Քաղոց Ի) գրուած է. « Դարձեալ 'ի Նոյն ճառէ Յովհ. Ոսկեբերանի ». « Հինաւուրցն վասն մեր մարմնա֊ցաւ », այլովք հանդերձ, որ ըստ ամենայնի նոյն է Ագաթանգեղայ 283 իջին: Հուսկ ուրեմն յէջ 621 կը գտնենք. Դեկտ. Լ. (Քաղոց ԻԱ). « Վերստին տաւն Ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ 'ի Մարիամայ Կուսէն Հոգւով Սրբով 'ի Բեթղե֊հէմ Յուդայ. Երանելւոյն Յովհ. Ոսկեբերանի 'ի Ծնունդն Քրիստոսի ասացեալ». և կը սկսի. « Արդ տես զինչ պատմէ մեզ Միքիայն, շնորհք Հոգւոյն մարգարէութեան » բառերով, որ դարձեալ բառ առ բառ նոյն է Ագաթանգեղայ 288–290 էջերուն:

Թէպէտև Ոսկեբերանին մեզի ծանօթ Ծննդեան ճառերու մէջ ես չկարացի գտնել վերոյիշեալ հատուածները, սակայն շատ հաւա֊նական է, որ իրօք սուրբ հայրապետիս անյայտացած ճառերէն միոյն բանաքաղութիւն եղած լինին, զորս կը յիշեն բազմահմուտն Փոտ և այլք: Ստուգիւ հետևեալ պարագայքն իսկ այսպիսի մի եզե֊լութեան նպաստամատոյց կ'երևին: Ա. Դիտելու է, որ Ա[illegible] Յայսմաւուրքը՝ յունական մի Յայսմաւուրքի վերայ յօրինուած է և յարմարուած, պարունակելով իւր մէջ նոցա տօները և տօնական առուրց յիշատակութիւնքը: Բ. Նթէ այդ հատուածները Ոսկեբերանի անուամբ յունարէն Յայսմաւուրքի մէջ չգտնուէին, Գրիգ. Անաար֊զեցի չկարէր այն աստիճան տգիտանալ, մինչև Ագաթանգեղայ հայե֊րէն հատուածներն՝ նոյն սուրբ Հօր ընծայել, և ընծայել ոչ միայն ա֊ռանց՝ այլ և հակառակ բանաւոր պատճառաց: Գ. Վերոյիշեալ Յայս֊մաւուրքի մէջ զկնի Դեկտ. Լ. կարգեալ է տօն Ս. Ստեփանոսի նա֊խավկային հանդերձ մի ներբողենիւ, որ կը սկսի այսպէս. « Երևելի արեգակամբ ընդ երկնաւ ծագելով » : Արդ այս ներբողեանս Ս. Պրոկլի Կ. Պօլսոյ հայրապետին ընծայուած է ( Bibl. Patrum, T. VI, p. 609. Lugduni, 1677) և թարգմանուած է 'ի յունարէն բնագրէն: Դ. Ինչպէս Դեկտ. Իե յարմարցուցած հատուածին սկզբը֊նաւորութիւնն՝ այսպէս այլ Լ. երրորդ օրուան հատուածի վերջի ամ֊բողջ պարբերութիւնը, որ իբրև շարունակութիւն համարուած է Ագաթանգեղոսի 291 իջում « Տեսանե՞ս զեւսն յառաջընծայս » բա֊ռերով սկսող պարբերութեանը, կը պակսի առ Ագաթանգեղայ: Ե. 293 և նորա յաջորդող էջերում հատուածներն իսկ՝ ըստ պարու֊նակութեան և ըստ ոճոյն մեծ նմանութիւն ունին Ոսկեբերանի՝ Եսայեայ, Մ[illegible] և Յ[illegible] մեկնութեանց տեղեաց. օրինակ ըլլայ այսմ 207 իջի Բ պարբերութիւնը:

Սակայն զուցէ ըսուի, թէ Ագաթանգեղայ վերոյիշեալ հատուած֊ներն ինչպէս կրնան լինել բանաքաղութիւն Ոսկեբերանի կարծե֊ցեալ ճառի մի, մինչդեռ յայտնի կերպով տեսնուեցան առդ Նազիան֊

զացւոյ համանման տեղեր․ Այս բանս շատ դիւրահասկանալի է նոցա համար, որոնք բաղդատած են կամ բարեհաճին բաղդատել Ոսկեբերանի գրութիւնքը՝ Աստուածաբանի գրուածոց հետ, ուր յայտնապէս կը տեսնուի, թէ որքան վարդապետութեան հեղինակը՝ Ոսկեբերանին, նոյնքան ևս Ոսկեբերան հետևած է Գրիգորի և Բարսղի: Ուստի այս աւելի անհասկանալի կը մնայ, թէ Անաւարզեցւոյն մեզի ընծայած վարդապետութեան հատուածներն ինչպէս կարէին գտնուիլ Ոսկեբերանի անուամբ ծանուցեալ և յունարէն Ցայսմաւուրքին ընծայած ճառին մէջ: Արդ՝ այս պարագաներս ՚ի նկատի ունելով՝ այսպէս պէտք է եզրակացնել. կամ այն է, թէ վերոյիշեալ հատուածներն՝ իրօք Ոսկեբերանի ճառին բանաքաղութիւն են, և կամ ըսել, թէ Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութիւնն ևս յունարէն թարգմանուած էր, որ թէպէտև մինչև հիմայ անյայտացած կը մնայ, բայց անտի հատուածներ ներմուծուած էին նաև յունարէն Ցայսմաւուրքին մէջ, զոր ՚ի ձեռին ունեցաւ Անաւարզեցին. իսկ վերոյիշեալ հատուածներն համանման գտնելով Ագաթանգեղայ էջերուն, փոխանակ ամբողջապէս վերստին թարգմանելու զանոնք՝ հայերէնէն ընդօրինակեց:

## Զ

ԽԶ գլխահամարէն սկսեալ յէջ 303 մինչև Ծ գլխահամարն յէջ 331՝ կը պարունակուի Քրիստոսի Տեառն մերոյ Մկրտութեան ճառը, հանդերձ նախապատրաստութեամբ և սքանչելագործ արգասեօքն դէպի առ ազգս մարդկան: Ճառիս գլխաւոր նիւթը, հեղինակին դրած կարգաբանութեան համեմատ, թէպէտև Մկրտութիւնն է, բայց նա իւր յատուկ յառաջբերութեան ոճով՝ հին և նոր կտակարանի այնքան դէպքեր և վարդապետական մեկնութիւններ բերել միացուցել է անոր հետ, որ հազիւ թէ կարելի է գտնել առանձին մի յունական սուրբ հօր ճառի մէջ: Նորա վարդապետութեան ոճը՝ հեռի է բարգաւաճեալ և տրամաբանական ցուցակութենէ. այլ մէն մի պարբերութիւն՝ համառօտ և վսեմ ասութեամբք պէսպէս վճիռներ և նիւթեր յառաջ կը բերէ: Նա իւր խորին հմտութեամբն և ճարտար գրչաւ՝ թէպէտև տէր է իւր յառաջ բերած՝ վարդապետութեանց, և ազատ կը տեսնուի ծառայական նմանութենէ՝ այս կամ այն հօր, այս ինչ կամ այն դպրոցին, բայց հանդերձ այսու ամենայնիւ չէ մարթ ամէն բան անոր սեփական համարել, մանաւանդ ուր մի և նոյն նիւթի վերայ՝ իրարմէ տարբեր կարծիքներ կ՚արտայայտուին: Դիտելու ենք դարձեալ, որ հեղինակն վարդապետութեան պարզ հայեցողական տեսութեամբ կը պարապի, խիստ քիչ կամ բնաւ գործնական խնդիրներու չիջնար: Օրինակ իմն, հաւատացելոց զսուրբ մկրտութիւնը մինչև կենաց վերջին օրերն յետաձգելու կարևոր խնդիրն, որուն վերայ Բարսեղ, Նազիանզացին, Գր․ Նիւսացի և Ոսկեբերան մեծ ուշադրութիւն դարձուցած են՝ իրենց ճառերու մէջ, և միշտ կը յորդորեն զժողովուրդը փութալ

առ. այն. Հայազգի հեղինակս, ընդհանրապէս, և ոչ իսկ խօսակցութեան նիւթ կ'ընէ զայն. այլ երկիցս, այսինքն է 310 և 329 էջերում մկրտութեան հարկաւորութիւնը ցուցանելով՝ կ'անցնի: Արդ այս երևոյթս կարծէք, թէ վարդապետութեանս հնութիւնն ապացուցանող փաստ մի է, ենթադրելով, որ Գրիգորի՝ զ՚այս վարդապետած ժամանակ, ոչ այնպիսի զեղծումն գոյր և ոչ այլ պէտք ազդարարութեան. սակայն, ըստ իս, սորա հակառակն հետևցնելու ենք բոլորովին. որովհետև նախ եկեղեցական պատմութիւնը ամենէն աւելի չորրորդ դարը կը ներկայացնէ մեզ իբրև օրինակ այսպիսի զեղծմանց կամ սովորութեանց, յորում հաւատացեալք նիւթապէս կ'ուզէին Քրիստոսի օրինակին հետևելով չափահաս մկրտուիլ: Բ. Գրիգորի ժամանակ աւելի պէտք կար ազդարարութեան, երբ հեթանոս Հայաստանեայց շատերը՝ բռնի ընդունելով քրիստոնէութիւնը՝ դժկամակութիւն կը զգային մկրտուելու. շատեր ալ կամ միջոցներ չունենալով կամ մկրտութեան հարկաւորութիւնը չիմանալով կը յապաղէին զայն, քան թէ Ե դարուն, յորում Հայաստանեայց եկեղեցական կանոնաց զօրութեամբ ստիպուած էին ամենայն հաւատացեալք 'ի ծնանելն՝ ոչ միայն փութալ մկրտել զմանկունս, այլ մանաւանդ թէ տալ և զիւղն օծութեան կամ զկնիք Հոգւոյն սրբոյ: Այս բանս բացայայտ կերպով կը տեսնուի Ս. Սահակայ կանոնաց մէջ, յորս ստէպ կը յիշատակուի խորհուրդն մկրտութեան և վերածնութեան. բայց չկայ նոյնպէս յոյժ կամ ազդինչ առ ծնողս կամ պարզ հաւատացեալս. այլ քահանայից միայն կը պատուիրէ արժանապէս և մկրտարանի մէջ կատարել զայն, որ լինելու էր մօտ եկեղեցւոյն, և թէ կանայք չկարենան բնաւ, պատճառանօք մանկանց, կենալ առ ընթեր քահանային: Արդ այսպէս կամ այնպէս պէտք է ըսել, թէ այս ճառիս վերայ ևս կը տեսնուի յետին ժամանակի բնադրոշմը: Ցիրաւի, բաղդատելով զայն մէկ կողմէն Ոսկեբերանի՝ Յովհաննու Աւետարանի, Մատթէի և Եսայեայ Մեկնութեանց հետ, միւս կողմէն այլ նոյն սուրբ Հօր և Նազիանզացւոյ **Ճրագալուացի** և **Ցայգնաբլեան** ճառերուն հետ, այնուհետև կարելի չէ չնկատել նոցա հետ ունեցած ընդհանուր նմանութիւնն. թէպէտև 'ի մասնաւորի կը գտնուին ուրիշ տեսութիւնք և տեղիք՝ որք մերթ նոյն Հարց միւս ճառից և մերթ այլ Ս. Բարսղի և Եփրեմի հետևողութեամբ յօրինուած են: Յէջ 313 Բ պարբերութիւնն ուր Բանին Աստուծոյ համար կ'ըսուի. «Միթէ բարբառ լոկ իցէ» ... այլովք հանդերձ, գրեթէ բառ առ բառ նոյն է թէ՛ Ս. Բարսղի «**Ի սկզբանէ էր Բանն և Բանն էր առ Աստուած**՝ ճառին յէջ 136 (ըստ Պարիզեան հրատարակութեան) մէկ տեղւոյն հետ. և թէ՛ Ս. Եփրեմի, **Մէկն. Աւետ. Համաբարբառ**, գլ. Ա. էջ 7 մէկ տեղւոյն հետ, բայց տարբեր թարգմանութեամբ, ուր կ'ըսուի այսպէս. «**Աւելորդացէ բան դոյզն լսելոյ, և խոնարհեցուցանել առ յոյն, չէ յոյն չէ 'ի սկզբանէ: Քանզի յառաջ քան զաւէլն չէր նա, և յետ առնելոյն՝ դարձեալ չէ, որպէս ոչ եթէ յայն էր նա, այն՝ որ նա ինքն էր նմանութեան կերպարանաց Հօրն իւրոյ. և ոչ եթէ նա յայն Հօր, այլ պատկեր նորա**», և

պլն: Արդ, ես կարծեմ թէ ինչպէս վարդապետութեան հեղինակին՝ այսպէս և Ս. Բարսղի աղբիւր եղած է Եփրեմի այս տեղիս: Ուստի յորմէ ևս օգտուած համարինք ըստ իւրին, այս յայտ է թէ այս երկու սուրբ Հարցմէ շատ տարիներ վերջ ծաղկեցաւ նա: Յէջ 306, Ա պարբերութիւնն, յորում մկրտութեան սուրբ աւազանը՝ նախաստեղծ ջուրց կը նմանցուի, որոց վերայ երբեմն շրջելով Հոգին՝ բնական ծնանելու կենդանութիւն կուտար, այսպէս ևս գալով 'ի ջուրս աւազանին՝ հոգևոր կենդանութիւն կը պարգևէ մարդկան, Ս. Եփրեմի **Արարածոց Մեկնութեան** 3 իջի տեղւոյն յառաջբերութիւն է, զոր ստուգիւ յանուն Աստրի սուրբ Հօր մէջ կը բերէ նաև Բարսեղ 'ի **Մեկնութեան Վեցօրէից**: Սակայն ինձ աւելի հաւանական կ'երևի ասել, թէ հայ վարդապետն այս անգամ ուղղակի առ Ոսկեբերանի օգտուած լինի անտի: Եւ ստուգիւ, այս բանիս ապացոյց համարելի է այն տեղւոյն անմիջապէս նախորդ պարբերութիւնն, յէջ 305, որ « Եւ վասն զի զերկիր զառաջինն 'ի ջուրց փարատեցուցեալ » բառերով կը սկսի, և միայն յոյն վարդապետին քով կը գտնուի, գրեթէ բառ առ բառ: Բ. Առ Եփրեմի՝ համառօտ է այն տեղին, իսկ առ Ագաթանգեղ՝ ընդլայնուած:

Յէջն 326, ինչպէս նաև նախընթաց երկու էջերու հատուածները, յորս նմանութեամբ հարսի և փեսայի կը խօսուի Եկեղեցւոյ և Քրիստոսի վերայ, հետևութիւն է Ոսկեբերանի՝ Յովհաննու Աւետարանի մեկնութեան գլ. Գ. տեղեաց: Գեղեցիկ է Երգ երգոցի հարսին երկու ստեանց՝ հին և նոր Կտակարանաց նմանութիւնը: Յէջ 341 խօսելով աստուածային ընթրեաց և սուրբ Հաղորդութեան խորհրդոյն վերայ՝ վեց տողով և անձուկ տան մի մէջ կը վճարէ զայն: Տեղւոյս հնութիւնն անտարակուսելի է. զի երկու տեսակաւ խմ հաղորդելու գործածական սովորութիւնը յայտնի կերպով կը ծանուցանէ « փրկութիւնագործ մարմնոյ և արեան » Տեառն մերոյ, ըստ նախկին դարուց. այնպէս որ քաջ կը համաձայնի Ագաթանգեղայ 610–611 և 622 էջերու կրկին տեղեաց հետ: Արդ, այս հատուածիս վերջի խօսքերէն իսկ, որք կը գտնուին 342 իջում և ամենևին կապ չունին նախընթաց բանից հետ, կը տեսնուի, թէ պակասաւոր է: Ի Բ **Ճառընտրի** մէջ, յէջ 345, սքանչելի հատուածն, զոր աւրիթը բերաւ կանխել հրատարակել յամին 1889 « Բազմավիպի » Հոկտեմբերի Պրակին մէջ, եթէ որոշակի « **Եզնկայ՝ — Մաշտոց** » վերնագիրը իւր վերայ չի կրէր, կ'ախորժէի զետեղել աստ՝ հատուածիս թերին ամբողջացնելու համար. որովհետև այն կէտն՝ ուր առ Ագաթանգեղ կ'աւարտի Հաղորդութեան ճառը, անդէն ճիշտ կը սկսի Եզնկայն: Դժուարին է որոշել, թէ արդեօք Եզնիկը՝ [1] Գրիգորի կարծեցեալ վարդապետութենէն փոխ առած է այն, թէ ընդհակառակն, վերջնոյս հեղինակն՝ յԵզնկայ: Այս միայն կարելի է ըսել

1. Աղանուրի անգին ձեռագրաց ցուցակին մէջ, զորս յիսուն տարի առաջ յուղարկել էր նաւաւ դէպ 'ի վանս, բայց դժբաղդաբար մատնուեցան յանգիւտ կորուստ Հնդկային ովկիանոսի, Եզնկայ գրութիւն

աներկրայ, թէ երկաքանչիւրին թէ՛ ծագումն և թէ՛ հանգոյցը Ե դարուն մէջ ծրարուած է և անկէց անդին չի անցնիր: Ցիրաւի, Գրիգորի ժամանակին և պարագայից վերաբերութեամբ՝ բոլորովին անհասկանալի կը մնայ վերոյիշեալ տեղին. արդ եթէ նորա կախաղանի վրայէն ըրած առաւնձնախօսութեան մէջ՝ երեք էջ, այսինքն է 72–75 միջոց մի նուիրուած է 'ի խորհուրդ մարմնոյ և արեան Տեառն, աստ ընդհակառակն, ուր պատեհն և պահանջ ժողովրդեան կը ստիպէին զնա աւելի ընդարձակօրէն և պայծառ բանիւք մեկնել զայն, անկարելի էր այսպէս հարևանցի անցնել, եթէ իրօք վարդապետութիւնը նորա հարազատ գործ համարինք: Ուրեմն կը մնայ եզրակացնել, թէ այնպիսի ժամանակի մէջ և այնպիսի ժողովըրդեան համար գրուած են այդ էջերն, որոնք ոչ տարակոյս ունէին խորհրդոյս իրականութեան վերայ և ոչ այլ կ'անզիտանային զայն:

Այժմ կ'ուզեմ ես շօշափել մի այլ պարագայ, որ կարող է լինել հաստատութիւն նախընթաց եզրակացութեանն: Արդ հեղինակս Քրիստոսի մկրտութեան և նորա մկրտչին վերայ խօսած ժամանակ՝ յանկարծակի խօսքը կը դարձնէ Քահանայութեան կամ սուրբ օծութեան վերայ, զոր զուգահաւասար թագաւորականին, մանաւանդ թէ վեհագոյն քան զթագաւորութիւնը դնելով՝ կը ճառէ 318–321 և 343–345 էջերում, և կը վարդապետէ զայն յաստուածուստ Մովսիսի շնորհուած, – Մովսիսէն մինչև ցՅովնաննէս շարունակուած, – Յովհաննէս Մկրտչէն Քրիստոսի յանձնուած և Քրիստոսէն Ս. Պետրոսի աւանդուած, առնելով զնա «Վէմ հաւատարմութեան ամենայն եկեղեցեաց», և միւս առաքելոց՝ իբրև «[illegible]», – և Առաքելոցմէ՝ նոցա յաջորդ եպիսկոպոսաց:

Արդ, այսպիսի անսովոր ձկտում մի Գրիգորի համար անհասկանալի է, վասն զի այն ժամանակ երբ նա կը վարդապետէր զՀայս՝ դեռ ոչ քահանայական նուիրապետութիւն կար 'ի Հայս, և ոչ իսկ թագաւորական գաւազանի հետ պայքար. ուստի վերոյիշեալ էջերն եթէ Ոսկեբերանի Յաղագս Քահանայութեան ճառերու հետևութիւն համարինք և եթէ Սևերիանոսի Եմեսացւոյ Գ ճառին, և կամ Ս. Եփրեմի՝ Աւետարանի մեկնութեան մէկ տեղւոյն, յայտնի է, թէ նոցա հեղինակի դիտաւորութիւնն էր՝ վեր բռնելով միշտ զՔահանայապետական իշխանութիւնը՝ թագաւորականին հետ միաբանել, որք Դ դարուն վերջին կէսէն 'ի վեր իրարու նախանձընդդէմ կ'ընթանային: Եւ ստուգիւ այսպիսի նմանօրինակ ձկտում մի ևս ակներև կը տեսնուի Ս. Սահակայ Տեսլեան մէջ՝ որ առ Ղազարայ, և 'ի Սահմանադրութիւնս կամ կանոնս նորա, որք հրատարակուած են Հայկ. Սոփերաց Բ. հատորին մէջ, և վարդապետութենէն պէտք է որ գրուած լինին:

մի ևս կը յիշատակուի. այս վերնագրովս. «Եզնկայ Կողբացւոյ՝ թուղթ առ Մաշտոց վարդապետ Յաղագս հաւատոց», որով միայն կարելի էր պարզել հատուածիս և վարդապետութեան գաղտնիքը. սակայն մարդկանցմէ աւելի նհանգք ծովու զանիկայ ընթեռնլու բաղդն ունեցան:

Ցէջ 360, քառանկիւն խաչի նշանակութեան և նկարագրի հաստուածն՝ ուղղակի Գր. Նիւսացու 'ի Յովհաննու Քրիզոստոմի Ա ճառին[1] հետևողութիւն համարելի է. միայն թէ յոյն վարդապետն՝ առ Եփես. թղթոյն գլ. Գ. 18, 19 տանց և ՃԼԸ երրորդ Սաղմոսի « Ես յո՞ փախեայց յերեսաց քոց », և այլն, տան մեկնութեամբը կը բարգաւանէ. իսկ վարդապետութեան հեղինակը՝ ԺԺԷ երրորդ Սաղմոսի 25 տունը մեկնելով: Ցէջ 350, մեկնելով Զաքարիայ մարգարէութեան ԺԴ. 7 տունն, ուր կ'ըսուի. « Եւ օրն այն յայտնի Տեառն », և այլն, վարդապետութեան հեղինակը՝ Քրիստոսի մահուան և լուսաւորաց այն առթիւ խաւարման ժամուն կը յարմարցնէ, բերելով 'ի վկայութիւն և Դանիէլի այն տեղին. « Յետ վաթսուն և երկու եօթներորդացն՝ սպանցի օծեալն Տեառն »: Չկարեմ ասել ստուգիւ, թէ ո՛ր սուրբ Հօր կարծեաց արձագանգը տալով՝ այդ տեսութիւնը կընէ հայ հեղինակն. սակայն կը վստահիմ ըսել, թէ այդ տեղին պէտք է որ պակասաւոր լինի, որով և նորա խօսքերն անհասկանալի մնացել են: Եւ բարեբաղդաբար մեր ձեռագրաստան Գ. Ճառընտիրն՝ յէջ 673, ԻԳ Ճառընտիրն՝ յէջ 320, և ԻԵ Ճառընտիրն՝ յէջ 215–216 հետևեալ հատուածովն այդ պակասը կը լրացնեն, ասելով. « Զի արեգակն և լուսին իսկ եղեն քարոզք յայնմ ժամանակի, զի արեգակն իւրով խաւարելով բողոքելով զայն տեսիլ՝ խաւարեցաւ. զի ոչ կարաց տեսանել զՏեառն անարգանս: Իսկ լուսինն՝ մեծամեծս 'ի բարձանց ամենեցունց զփրկութիւն ամենայն արարածոց ցուցանէր »: Այս հատուածս անմիջապէս Ազաթանգեղայ 216 իջի « ցուցեալ » բային կը յաջորդէ, և է ընդլայնումն Գր. Նազիանզացւոյն 'ի սուրբ Պատա Բ ճառի էջ 97, (յուն. և լատ. էջ 696) մէկ տեղւոյն, ուր կ'ըսէ սուրբ վարդապետը, թէ Քրիստոսի Աստուծոյ մահուամբը՝ արեգակն և զգալի արարածք ևս սուգ զգեցան: Բայց թէ արդեօք ուղղակի Աստուածաբանէ՞ն, թէ առ Ոսկեբերանէ օգտուած է հեղինակս, 504 իջի քննութեամբը պիտի որոշուի, յորում այս տեղիս իւր պակասաւոր մասովն և մանր պարագայիւք՝ դարձեալ կրկնուած է:

# Է

Հոգւոյն սրբոյ Գալստեանը նուիրած ճառն, որ կը սկսի յէջ 366՝ ԾԹ գլխահամարով և կը հասնի ցէջն 477 Զb գլխահամարին, ամենէն աւելի խորհրդաւոր լեռներ և ձորեր կը բանայ հետախուզին առջև: Առաջին պարբերութեան մէջ կը ներկայացուի Հոգւոյն գալուստն և Առաքելոց անմահական բաժակաւ արբենալն. այս դիւրահասկանալի մի բան է, զի Տեառն մերոյ տնօրինական պատմութեան կարգն իսկ զայս կը պահանջէր, որուն հետևելով վարդապետութեան հեղինակը քայլ առ քայլ՝ հասաւ մինչև այս կէտս: Սակայն ԿԱ գլխահամարին հետ՝ մի տարօրինակ երևոյթ ևս կը բա‿

1. Editio Parisiis 1638, T. III, p. 396–397.

ցուի դիմացնիս. այսինքն է կրկին բաժակաց՝ ուրախութեան և դառնութեան, որոց միտքն, որ կը բղխի 'ի Հոգւոյն Սրբոյ, արդարք նոր կենդանութիւն կը զգենուն. իսկ միւսովը՝ մեղաւորք կը պատուհասին: Դիտելու ենք, որ այս կրկին դրուագաց նիւթը թէպէտ և նախորդ գլխահամարի վերջի պարբերութենէն առնուած է, բայց նորա պարունակութիւնն, ընթացքն և վախճանը՝ բոլորովին յայլ ինչ կը յանգին: Աստ յայտնապէս կը խօսուի առ հեթանոսիկ կամ հեթանոսական մոլորութեան մէջ պատուհասեալ Հայաստանեայս, ինչպէս ԿԽ գլխահամարի Բ պարբերութենէն իսկ քաջ կը տեսնուի, և խօսողն՝ է իբրև ժամանակակից ումն: Մատուակք վերոյիշեալ բաժակաց այլ ո՛չ ևս են երկոտասան Առաքեալներն և ոչ իսկ 72 աշակերտքն, զորս յառաջին իջում կը յիշէ հեղինակն. այլ են լուսափայլ կուսանք Հայոց՝ Հռիփսիմեանք և Գայիանեանք, որք առանց անուան կը յիշուին 378 և 416 էջերում. իսկ յէջ 400 ԿԷ գլխահամարին՝ նոցա թիւն ևս կը դրուի որոշակի, ասելով. « Ահա **Երեւեցան Եւ Եօթն** բաժակք քրիստոսեանք՝ որ եկին պաշտել զձեզ » :

Դիտելու կարևոր կէտ մի է և այս. յէջ 419, ՀԲ գլխահամարովը՝ մինչև ցայս վայր կարգաւ յառաջ վարեալ վարդապետութեան հետագայն ընթացքն յետս նահանջելով՝ դարձեալ կը սկսի անկեալ մարդկութեան մեղսամած դարուն վերայ ճառել: ՀԴ գլխահամարով կը բանայ ջրհեղեղի և աշտարակաշինութեան դրուագները, մէկ կողմէն մեղապարտ մարդկութեան, իսկ միւս կողմէն՝ աստուածախնամ տնօրէնութեանց պէս պէս արարուածներն, յորս գեղեցիկ են Բաբելոնեան աշտարակի և տէրունեան խաչին, նախկին լեզուաց բաժանման և Առաքելոց հոգեպարգև լեզուաց հրաշագործութեանց հակապատկերքը: ՁԱ գլխահամարով՝ դարձեալ կը կրկնուին սոյն կէտերը, որոնք արդէն իսկ կրկնուած էին ՀԴ գլխահամարին մէջ. և կը հասցնեն յէջ 469՝ ՁԳ գլխահամարին, զոր միայն կարելի է կոչել շարունակութիւն ԾԹ գլխահամարին, յորմէ անսովոր կերպով ընդհատուած է և ճարտարութեամբ մեռելոց յարութեան ճառին հետ սերտիւ կապուած:

Արդ այս տեղ հարկադրուած եմ զկայ առնուլ և հարցանել. ի՞նչ է պատճառ այսպիսի անսովոր երևութից, և ի՞նչ կը նշանակեն ճառիս ոճոյն և նիւթոց անակնկալ փոփոխութիւնքն, և վարդապետութեանս ընթացքին՝ այդպէս աչքի զարնող կերպով յետս նահանջումը:

Դիտելով մէկ կողմէն ԾԹ և ՁԳ գլխահամարներու միջանկեալ մասին անսովոր պարագաներն, իսկ միւս կողմէն այլ Ագաթանգեղայ զոյգ գրոց կամ Գրիգորի պատմութեան հետ ունեցած նմանութիւնքը, հետևեալը կարելի է եզրակացնել. այսինքն է, կամ այն է, թէ այդ միջանկեալ մասն՝ ամբողջապէս Ս. Գրիգորի հարազատ գործէ մի առնուած է և իրօք անոր ընծայելի է, կամ ամբողջապէս անհարազատ է, և նորա անծանօթ հեղինակը՝ դիտմամբ իբրև Լուսաւորիչ Հայոց կը ձևանայ. և կամ ըսել, թէ ստուգիւ մասամբ մի Գրիգորի հինաւուրց գործէ մի, և մասամբ այլ Ե դարու Հայոց հե-

տնտղութեամբ կազմակերպուած ճառ մի եղած է, զոր Հոգեգալըս֊տեան անմիջապէս յաջորդող սրբոց Հռիփսիմեանց տօնին առթիւ և ճեթանոսաբար ապրող ժողովրդեան մի առջև արտասանուած է, զանոնք հրահանգելու համար:

Առաջին նախադասութիւնը չկարէ լինել ճշմարիտ. որովհետև այն միջանկեալ ճառին մէջ կան այլ և այլ տեղիք, որոնք Ոսկեբե֊րանէն թանաքաղութիւնք են. օրինակի աղագաւ, 434, 435 և 382 էջերու պարբերութիւնքը՝ գրեթէ բառ առ բառ նոյն են յոյն սուրբ հօրս Հոգեգալստեան Բ ճառին[1] երկու տեղեաց հետ, որոց առաջ֊նոյն մէջ կ'ըսուի, թէ Հոգին Աստուծոյ ինչպէս երբեմն կործանմամբ աշտարակին՝ ազգերը բաժանեց, այս կէս ևս գալով յԱռաքեալս՝ զանոնք դարձեալ իրարու հետ միացոյց. իսկ երկրորդին մէջ, թէ ինչպէս նուաթակ երկիրս՝ թէպէտև ինքիրմէ պարարտ է և բեղ֊նաւոր 'ի պտղաբերութիւն, բայց առանց մշակութեան մարդոյ՝ փուշ և տատասկ կը բուսցնէ. այսպէս և բնութիւն մարդոյ, որ թէ և յԱրարչէն բարի ստեղծեալ՝ ընդունակ է առաքինութեաց, սակայն առանց աստուածային շնորհաց և ջանից մարդոյ՝ մեղաց փուշեր կը բուսուցանէ և բուսոյց իսկ, զորս Հոգին Սուրբ այրեց երկնատեղաց հրով լւրով: Նէջս 457 և 58 պարբերութիւնքը, յորս ԺԲ. առաքելոց վերայ խօսած ժամանակ՝ յանկարծակի 72 աշակերտաց հատուա֊ծը մէջ կը բերուի, զորս Հոգին սուրբ կը ղրկէ 72 բաժանեալ ազ֊գաց լեզուները միացնելու, կատարեալ նմանութիւն է Ս. Եպիփա֊նու Կիպրացւոյ Անկելոյ Ճառին, որ կը գտնուի ԻԶ Ճառընտրէ մէջ յէջ 77: Նէջ 414, Ա. պարբերութիւնն՝ ուր կ'ըսուի, թէ Քրիստոս ադամային մարմինը « խառնեաց միացոյց յԱստուածութիւն », որպէս զի անով յաղթէ սատանայի և պարտաւորէ, որով որ պարտեցաւ Ադամ և պարտաւորեցաւ, թանաքաղութիւն կը տեսնուի Նազիան֊զացւոյ Յայտնութեան Ճառէ[2] մէկ տեղւոյն. իսկ Բ պարբերութիւնը՝ նոյն է դարձեալ նոյն սուրբ հօր 'Ի Սուրբ Պասքայն Բ ճառին (Edit. Coloniæ, p. 685) մի այլ տեղւոյն հետ:

Երկրորդ նախադասութիւնն ևս անյարմար է և չկարէ լինել ճըշ֊մարիտ. ապ' եթէ ոչ՝ ուղղակի խարդախութիւն մի ենթադրած կը լի֊նինք հեղինակի կողմանէ, թէ՛ իւր ժամանակակիցքն և թէ՛ զմեզ խա֊բելու շահադիտութեամբ: Սակայն այսպիսի խաբէութիւն ոչ նորա կողմէն կարէր եղած լինել և ոչ նորա ժամանակակցաց համար հա֊ւատալի. որովհետև նա Հայաստանեայց եկեղեցական դասու բար֊ձրապատիւ և լաւագոյն անձնաւորութեանց մին էր, և իւր գրու֊թիւնը՝ պաշտօնական և գրեթէ բոլոր իւր ժամանակակցաց լիուլի համակրութեամբ և ընդունելութեամբ արժանացած մի գործ, Մով֊սիսի և Ղազարայ վկայութեամբ համեմատ: Ուստի նա չպիտի կա֊րենար բնաւ իբրև նոր ոմն Լուսաւորիչ Հայոց՝ խօսել առ Հայս, եթէ իրօք չունենար հիմն ինչ 'ի վարդապետութենէ Գր. Լուսաւորչի.

1. Fdit. Venetiis, 1784, T. 2, p. 472.
2. Edit. Coloniæ, 1690, p. 631.

չպիտի կարենար, դարձեալ, ստէպ ստէպ մատնացոյց առնելով, զՀռիփսիմեանս ժողովրդեան՝ և առանց անուան խօսել նոցա մասին և լինել հասկանալի, եթէ իրօք պատեհն և խօսքը նոցա վերայ չլինէր: Չպիտի կարենար, դառնութեան բաժակաց օրինակօք յորդորել զիւր ունկնդիրս ’ի լաւ անդր, եթէ նոցա կողմանէ դառն գործեր առիթ տուած չլինէին: Ուրեմն կը մնայ, ըստ իս, ընդունել իբրև ստոյգ եղելութիւն եզրակացութեանս երկոքն նախադասութիւնն և ապացուցանել զայն:

Ցիրափ, բաղդատելով այդ ճառը՝ Ագաթանգեղայ Ա և վերջին գրոց հետ, կը գտնենք նախ երկաքանչիւրին բովանդակութեանը մէջ՝ ընդհանուր կերպով ամենամերձաւոր նմանութիւններ և երկաքանչիւրին հասարակ տեղեր, որոնցմէ մի քանիսը բաւական կը համարիմ յիշել աստ: Ցէջ 385, դրօշելոց մասին մէջ բերուած հատուածը՝ նման է Ա գրոց 63 իջի հատուածին, և յէջ 176 Բ պարբերութեան վերջի մասին. յէջ 424 Բ պարբերութիւնը՝ նոյն է 178–179 էջերու կրկին պարբերութեանց հետ. յէջ 426–427 հատուածը՝ նոյն է 176 իջի Բ պարբերութեան հետ. յէջ 416 Բ պարբերութիւնը՝ յորում կ’աւանդուի սրբոց վկայուհեաց վերացումն՝ ’ի սէր Աստուածութեան և Աստուծոյ խոնարհումն առ նոսա, նոյն է Ագաթանգեղայ վերջին գրոց 552 իջի Ա պարբերութեան հետ. յէջ 418 Բ պարբերութիւնը՝ նման է 542 իջի Բ պարբերութեան. այսպէս նաև յէջ 400 ԿԷ գլխահամարի Ա պարբերութիւնն և 378–380 էջերու Հռիփսիմեանց մասին պարբերութիւնքն՝ հետևութիւն են Ագաթանգեղայ Ցառաջաբանի 14–17 էջերուն, յորս նոյնպէս առանց անուան սուրբ վկայուհեաց և բաժակաց վերայ կը խօսուի:

Բ. Ս. Գրքէն այդ ճառին մէջ բերուած տեղեացմէ շատերը բոլորովին կը տարբերին Եօթանասնից թարգմանութենէն՝ զոր այժմ կը գործածենք. օրինակ խմն յէջ 380, «Արդարև ասեմ ձեզ, զի թէ ոչ հատն ցորենոյ յերկիր անկանի և մեռանի՝ լոկ միայն հատ կայ. բայց ’ի մեռանելն՝ բազմապատիկ փառաւորի և պտղաբերէ տոհմականաւ», Յովհ. ԺԲ. 24: Ցէջ 395, «Ոչ ոք է ’ի դժոխս որ խոստովանի առ քեզ, և ոչ ոք է թէ յայնմ մահու յիշէ զքեզ». Սաղմ. Դ.: Այսպէս են յէջ 396, «Մի երկնչիր, երէ» բառերով սկսող տեղին. յէջ 393, «Հովուել զքեզ գաւազանաւ խստութեան», և այլն. յէջ 419, «Ծագեսցէ ձեզ», և այլն. յէջ 424, «Որ զձեզ ընդունի... ընդունի **զՀայրն** իմ». յէջ 427, «Միասանգամ շարժեցից... որ անշարժն իցէ». յէջ 428, «Վառեցից զնովաւ... թուով լիցին», և այլք ոչ սակաւք: Արդ պէտք է ասել, թէ այս և այսպիսի տեղիք նշան են այն հատուածոց հնութեան՝ յորս կը գտնուին. որովհետև նախկին թարգմանութիւն մի կ’ակնարկեն:

Իսկ ցուցնելու համար, թէ ստուգիւ ճառիս հեղինակին խօսքն ուղղեալ է առ Ե երորդ՝ և ոչ թէ Դ դարու ժողովուրդն, դիտելու ենք հետևեալ պարագայքը: Ցէջ 383, կ’ըսուի այսպէս. «**Վաղագոյն** սպառնալեօքն պատուհասիցն **կոչեաց** զձեզ ’ի դրունս ապաշխարութեան»: Արդ **վաղագոյն** բացատրութիւնը՝ թէ Գրիգորի և թէ նորա

*ժամանակ այն ինչ հարուածեալ և դեռ չըժշկուած ժողովրդեան համար անհասկանալի է: Յէջ 424, կ'ըսուի. «Ըստ խրատու առա_ քելակցին, ձերոյ առաքելոյ, Պաւղոսի», և այլն. դիտելու է որ, ձե_ րոց առաքելոց բացատրութեամբ՝ զԱռաքեալսն Հայոց զԹադէոս և զԲարդողիմէոս կ'ակնարկէ, որ քրիստոնեայ Հայաստանի համար միայն կարելի է հասկանալ և ոչ հեթանոս Հայոց, որոնք յընթացս երեք դարուց շարունակ հեթանոսութեան մէջ ապրելով, չկարէին հասու լինել այնպիսի հնաւանդ ակնարկութեան մի 'ի կողմանէ Գրիգորի: Յէջ 384, կը յորդորէ իւր ունկնդիրները՝ թողուլ իրենց «կռապաշտութեան» կամ հեթանոսական սովորութիւնքն, «որք 'ի նախնեաց հետէ դանդաչեցին», և ոչ թէ զկռապաշտութիւնը կամ զհեթանոսութիւնն իւրեանց. վասն զի քրիստոնեայք էին, թէպէտև հեթանոսական սովորութեանց համեմատ կ'ապրէին: Դիտելու ենք, որ այս բացատրութիւնս նման է Ս. Մեսրովբայ կենսագրութեան հեղինակին յէջ 7 հետևեալ բացատրութեանը. «Գերեալ զամենե_ սեան 'ի հայրենեաց աւանդելոց, և 'ի սատանայական դիւապաշտ սպասաւորութենէն՝ 'ի հնազանդութիւն Քրիստոսի մատուցանէր»: Բայց թէ արդեօք երկաքանչիւր տեղեաց հեղինակն մի և նոյն անձն է, եթէ ոչ, այս բանիս վերայ այլուր պիտի խօսուի։*

*Բ. Այս կերպով միայն կարելի է մեկնել ճառիս հնագոյն տեղեաց միացումը՝ վերջէն յերիւրեալ և յաւելեալ տեղեաց հետ. ինչպէս նաև Լուսաւորչէն շատ վերջ եկող յունական Հարցմէ փոխ առնուած տե_ ղեաց զուգութիւնը՝ Լուսաւորչայ վարդապետութեան և կենսագրու_ թեան տեղեաց հետ, զորս տեսանք մինչև ցարդ և դեռ պիտի տես_ նենք 'ի հետևեալն:*

## Ը

*ՁԳ գլխահամարն՝ որուն համար ըսուեցաւ, թէ շարունակութիւն է Հոգւոյ գալստեան ճառին, այսինքն է ԿԱ գլխահամարին. և ՁԴ գլխահամարն՝ ազատ հետևողութիւն է Ոսկեբերանի Առաքելոց և Հօ_ գեգալստեան ճառերուն. միայն թէ 477 իջի հատուածն, յորում նախասահմանելոց թուոյն համար կ'ըսուի, թէ են հաւասար ան_ կեալ հրեշտակաց թուոյն, չկարացի գտնել յոյն սուրբ Հօրս քով:_ Բայց դիտուած է, որ նա խնքն Ոսկեբերան՝ թէ Պօղոսի թղթոց Մեկ_ նութեան և թէ մեզի ծանօթ ճառերու մէջ՝ նախասահմանութեան վերայ խօսած ժամանակ, ընտրելոց կամ անարգելոց թուոյն հա_ մար մեծ զգուշութիւն ըրած է, որպէս զի մի՛ ընտրելոց սակաւու_ թեամբը՝ ժողովրդեան լքանելու պատճառ տուած լինի, ինչպէս և 'ի հակառակէն՝ զեղծանելու առիթ: Այսպէս ըրած են և Հարք Կե_ սարիոյ դպրոցին. ուստի աղեքսանդրեան Հարցմէ պէտք է որ ծա_ գումն առած լինի այսպիսի մի կարծիք:*

*ՁԵ գլխահամարէն մինչև ՁԹ գլխահամարն եղած միջոցը՝ կը պարունակէ Մեռելոց Յարութեան ճառը, որ ոչ միայն թերի՝ այլ և ոչ իսկ իւր բնական դրից մէջ կը գտնուի: Եւ ստուգիւ այսպիսի մի*

եղելութեան յայտնի ապացոյց համարելի են, նախ, զի յէջ 491, Զթ գլխահամարով դարձեալ կը սկսի Հոգւոյ գալստեան և համարով քարոզութեան ճառն, և կը շարունակուի մինչև ցէջն 537: Բ. Այս իջէս մինչև վերջ դարձեալ Քրիստոսի կենսաբեր վարդապետութեան, վերջին գալստեան և հատուցման վերայ կը խօսուի, զորս կամ իբրև ամբողջացուցիչ մասն համարելու ենք ԶԸ գլխահամարի վերջին պարբերութեանն, և կամ լաւ ևս սկիզբն նախապատրաստիչ Զէ գլխահամարով սկսող մեռելոց յարութեան ճառին: Այս պարագայքս մէկ կողմէն, և միւս կողմէն այլ դիտելով՝ որ մեռելոց յարութեան և Քրիստոսի կենսաբեր վարդապետութեան ճառը, որ առանց պատճառի կրկնուած է, թէ՛ ըստ բնական ընթացից Ս. Գրոց պատմութեան և թէ՛ վարդապետութեան հեղինակին յէջ 188 և 189 առաջարկեալ ծրագրի համաձայն՝ պէտք է որ Հոգւոյ գալստեան և առաքելական քարոզութեան ճառէն վերջ զետեղուած լինէր, կարենք եզրակացնել, թէ [illegible] վերոյիշեալ միջոցին և կամ էջերու և գլխակարգութեանց մէջ ստուգիւ խառնակութիւն մի և յետևառաջութիւն տեղի ունեցած է ժամանակաւ, որ ՚ի սկզբան անդ չկար. և կամ ըսել, թէ մեռելոց յարութեան ճառը՝ Հոգւոյ գալստեան ճառէն զատ մի առանձին և ամբողջական բան չէր. այլ այն առթիւ և անուղղակի կերպով նորա մէջ բարգաւաճեալ մասն մի:

Իսկ գալով այն ճառի պարունակութեանը, դիտելու ենք, որ Զէ և ԶԶ գլխահամարներն՝ գէթ ըստ մասին, այսինքն է 479–486 էջերն, յորս իբրև զգալի օրինակք մեռելոց յարութեան՝ մէջ կը բերուին բուսական և կենդանական արարածք՝ ձմեռուան և գարնանային կենաց նորաքանչ յեղափոխութեամբք՝ յայտնապէս հետևողութիւն են Ս. Բարսղի Յաղագս Վեցօրէից Ե ճառին. իսկ ԶԸ գլխահամարն, „որում օրինակաւ բնական գարնան և թռչնոց երամ երամ գաղթականութեանը կը նկարագրուին գարունն մեռելոց յարութեան և արդարոց յերկինս վերաչուելոյն, նոյն սուրբ հօր Ը ճառի նմանողութեամբ յօրինուած է, որուն մեծապէս սիրող եղած կը տեսնուի հայազն վարդապետը, ինչպէս նաև բանաստեղծական ներշնչութեամբ և աղուական բանահիւսութեամբք իսկ՝ իւր նախորդէն ստոր չի մնար: Սակայն հանդերձ այսու պէտք է խոստովանել, թէ վերջինն՝ կամ իւր ճառելիք նիւթոյն պահանջածին համեմատ և կամ անյայտ մի այլ պատճառաւ, շատ հեռի կը մնայ այն բնապատմական և բարոյագիտական խորին և ընդարձակ խորհրդածութիւններէն, որոնցմով առաջինը՝ Աստուածաբանի, Նիւսացւոյ և Ոսկեբերանի պէս լուսափայլ և մեծ հանճարներն իսկ առ ինքն յափշտակել է և նոցա գրութեանց մէջ տիրապետողն իսկ ինքն է: Իսկ համոզուելու համար, թէ այդ ճառի հեղինակը՝ ոչ թէ Կեսարացին Գրիգոր և կամ Իտալական երկնից ներքև և հողոյն վերայ բնակող Հռովմայեցի Ագաթանգեղոսն, այլ Հայաստանի բնակ ումն եղած է ստուգիւ, բաւական է ուշադրութեամբ կարդալ յէջ 481 նկարագրուած ձիւնաթաղ և սառնապատ ձմեռն և նորա հակա-

պատկեր գարունը. ինչպէս միւս էջերում յիշուած բուսոց և սերմանց, ծառոց և պտղոց և ծաղկանց անուանքն, որոնք զուտ հայկական են. 490 իջի դասադաս խորդոց գարնանային չուն, զոր փոխանակ յունական Իփսիլոն տառին՝ հարօրի կը նմանցնէ, յասելն. «Նրամացեալ Հաքօրանան», և երկրագործութեան և ընտանի կենաց և անասնաբուծութեան պարագաները, որոնք Հայաստանի միայն յատուկ են: Ցիրաւի, ոչք մեր հայրենի հողոյն վերայ ծնած կամ սնած են և այն ամենայն տեսած, դիւրաւ կարեն հաւատալ, թէ իրօք էջերուս գրողն ևս հոն ծնած, սնած և ականատես եղած է իր նկարագրած երևոյթներուն:

Դառնալով յաջորդ գլխակարգութեանց, հետևեալները մասնաւոր դիտողութեան արժանի են. այսինքն է 504 իջում վերատին մէջ բերուած է՝ 350 իջի մէկ տեղին, Քրիստոսի մահուան ժամուն լուսատրաց խաւարման մասին, հանդերձ այն քանի մի տող յառաջ ծով, որուն համար ըսուեցաւ, թէ թերի է. և թէ Գ, ԻԳ և ԻԵ Ճա-ընտրելները միայն կը լրացնեն, թէ և փոքր ինչ տարբերութեամբ: Սակայն այս անգամ հայազն վարդապետս՝ ոչ Դանիէլի տեղին մէջ կը բերէ և ոչ այլ Զաքարիայ մարգարէութեան ամբողջ տեղին, այլ այն տեղւոյն մէջ յիշուած «օրն այն յայտնի Տեառն», զոր ինքը օր փրկութեան կ'անուանէ, զուգելով ընդ նմա Յովելայ մարգարէութեան «զօրն Տեառն մեծ և երևելի», այսինքն է օր գալստեան և հատուցման: Արդ, դիտելու ենք, որ աստ՝ այսինքն է ՂԱ գլխահամարի մէջ, Յովելայ մարգարէութեան երկու տարբեր տեղեր մէջ բերելով, այսինքն է մին՝ Բ. գլխոյ 30 տանէն, յորում գրուած է, «Արիւն և հուր և մրրիկ ծխոյ». և միւսն՝ մի և նոյն գլխոյ 11 տանէն. «Ցաւուր յայնմիկ հեղից յոգւոյ իմմէ 'ի վերայ ամենայն մարմնոյ. և մարգարէասցին ուստերք ձեր և դստերք, և ծերք ձեր երազովք երազեսցին», և այլն, ուզած է կրկին գործ կատարել. այսինքն է, նախ Հոգւոյ գալստեան ճառը՝ մեռելոց յարութեան կամ վերջին գալստեան ճառին հետ կապել, յորմէ զգալի կերպով հեռացած էր. երկրորդ՝ վերջին դատաստանի օրուան և Քրիստոսի մահուան կամ փրկագործութեան օրուան մէջ համաձայնութիւն մի կազմել: Բայց թէ այս գեղեցիկ գիւտս իցէ՞ արդեօք հայ վարդապետիս ընծայելի. կարծեմ թէ ոչ: Եւ յիրաւի, ինչպէս Հոգւոյ գալստեան ճառէն խոտորելոյն՝ այսպէս նաև զանոնք իրալու հետ միացնելու իբրև բուն պատճառ՝ համարելու ենք Ոսկեբերանի Գործոց Առաքելոց Մեկնութեան և Հոգեգալստեան Բ ճառին հետևողութիւնը, յորս Յովելայ մարգարէութեան վերոյիշեալ տեղիքը կը մեկնուին. և ստուգիւ սոյն այս երևոյթը յայտնապէս կը տեսնուի Ագաթանգեղայ Ղ, և ՂԱ գլխահամարներում իսկ, այսինքն է 494–497 և 500–506 էջերն՝ յիշեալ մարգարէութեան կրկին տեղեաց մեկնութեամբ ընդարձակուած, և ուրեք ուրեք բառական կերպով իսկ Ոսկեբերանի կը համաձայնին:

Ցէջ 498–499 դարձեալ մէջ կը բերուի վեցհազարամեան կամ արարչութեան վեց աւուրց վարդապետական մէկ տեղին, յորում

մէՆ մի օր՝ 1000 ամաց կը համաձայնեցնէ, ըստ մարգարէագուշակ առածին: Արդ՝ այս տեղիս արդէն տեսանք 274 իջի քննութեան մէջ. բայց ինչ որ անծանօթ հեղինակս վարդապետութեան 274 իջում իբրև սոսկ կարծիք՝ երկու խօսքով արտայայտելով անցած էր, 498–499 իջում՝ ընդհականակն՝ ամբողջապէս մէջ կը բերէ, որով առանց երկբայութեան-կը հաստատէ մեր նախընթաց ենթադրութիւնն, այսինքն թէ այդ տեղին գրեթէ բառ առ բառ Աստուածաբանի **ի սուրբն Պենտեկոստէ** ճառէն ստուգիւ փոխ առնուած է, և թէ մի քանի նախանիկիական Հարց կամ **Հոգեգալստեայց** վարդապետութեան հետ վերաբերութիւն չունի:

Յէջ 508 մէկ տեղին՝ ուր Հոգին սուրբ դարբնաց ճարտարապետի, և Առաքեալներն՝ երկաթի կը նմանեցուին, որոնք մխուելով 'ի փուքս հնոցի պրդարութեան և սիրոյ՝ գլխովին տարբեր գոյն և շողիւն կ'ընդունին, բառ առ բառ նոյն է Ոսկեբերանի Կորընթացւոց ԺԵ գլխու մեկնութեան մէկ տեղւոյն հետ. միայն թէ առ Ոսկեբերանի՝ **ոգւովն** դրուած է փոխանակ երկաթի: Յէջ 526–527 ՂԷ գլխահամարով Ա պարբերութեան մէջ՝ Բանին Աստուծոյ մասին եղած գեղեցիկ ծեռնարկութիւնը՝ նման է թէ՛ Ոսկեբերանի Յովհ. Աւետարանի Ա. գլխոյ մեկնութեան մէկ տեղւոյն և թէ՛ Ս. Բարսղի **Ի սկզբանէ էր Բանն և Բանն էր առ Աստուած** ճառին. չկարեմ ստուգիւ ասել, թէ որո՛ւն հետևած է վարդապետութեան հեղինակն, որովհետև բառ առ բառ չէ. սակայն « Տեսանե՞ս զի չեթող 'ի միջի զաստուածագէտ իմաստութեան զպայման » հարցական ձևն, և անմիջապէս նորա յաջորդ էջերում շարունակուած մեկնաբանական ոճը՝ զՈսկեբերան կը թուին ցուցանել մեզ իբրև անմիջական աղբիւր: Յէջ 531 ՂԸ գլխահամարով սկսող պարբերութիւնը՝ ուր Հոգւոյն Սրբոյ համար կ'ըսուի, թէ « Հոգին ճշմարտութեան 'ի Հօրէ ելանէ. ելանէ և ոչ բաժանի, և **բղխէ** և ոչ ապառի », Գր. Նիւսացւոյ **Երրորդութեան** ճառէն փոխ առնուած է, զոր կ'ընծայէ մեզ ԻՁ ճառընտիրն յէջ 47: Եւ իրօք այս բանիս յայտնի ապացոյց են **ելանել** և **բղխել** բայերու՝ դիտմամբ գործածութիւնը. որովհետև ելանել բայը կը գործածեն Յոյնք՝ նկատմամբ Հօր կամ անսկիզբն պատճառի ելմանց, ինչպէս կը տեսնենք Յովհաննու Աւետարանէն մէջ բերուած տեղւոյն մէջ. իսկ Հոգւոյն Սրբոյ ելման համար՝ յՈրդւոյ, կամ լաւ ևս վերաբերութեամբ սկզբնաւոր պատճառին՝ բղխել բայը կը գործածեն միշտ. ինչպէս կը գտնենք և յէջ 66 Ագաթանգեղոսի: Յէջ 534 Առաքելոյն հետևեալ խօսքերով, թէ « Շնորհք Քրիստոսի 'ի վերայ անպատում պարգևաց նորա », կը գոցուի ընդարձակ վարդապետութեան ճառը, Վենետկեան 1862 ամի հրատարակութեան համեմատ, զոր 'ի գործ ածի. իսկ Ագաթանգեղայ Զ երրորդ օրինակն՝ սոյն տողերն ևս կ'ընծայէ մեզ. « Եւ մեք ընդ սրբոց դասուցն փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն »: Այս տողերուս հարազատութեան կամ անհարազատ լինելուն ապացոյց մի չունիմ 'ի ձեռին. բայց այսչափ դիտելի է, որ ինչպէս ուղղափառ դաւանու-

թեամբ ամենայնուրեք Նորոգութեան՝ սկսեալ վարդապետութեան ճառը, նոյնպէս եւ կը կնքուի. եւ թէ այսպիսի վերջաւորութիւն մի յատուկ է Ոսկեբերանի, որով կնքած է նա բոլոր իւր ճառերն:

Ի վերջկոյս դրուած համառօտագիծ յիշատակարանը, որ կը սկսի. «Կատարեցաւ վարդապետութիւն սրբոյն Գրիգորի» խօսքերով, յետոյ ուրեմն ներմուծուած է, ըստ իս, եւ պէտք չէ առնուլ իբրեւ ապացոյց իմն հարազատութեան վարդապետութեանս. բայց թէ երբ եւ ինչ պատճառաւ, չկարեմ որոշել. այլ այսչափս միայն դիտելու ենք, որ նման երեւոյթներ խիստ շատ են ձեռագրաց մէջ, յորս ընդօրինակողք նախնի հեղինակութեանց հասնելով 'ի վերջ գրութեանն՝ կը ծանուցանեն, թէ աւարտեցաւ այն. այսպէս ըրած են նաեւ վարդապետութեանս ընդօրինակողք՝ փոխադրելով նորա ճակատի վերնագիրն միւսանգամ 'ի վերջ գրութեանն:

Արդ՝ մինչեւ հիմայ վարդապետութեայն մասին եղած դիտողութեանց եթէ ոչ ամէնքը, այլ գէթ նոցա մեծագոյն մասունքը՝ դրական եւ աներկբայելի ապացոյցներ համարելի են նորա յետնութեանն եւ անհարազատութեանը: Բայց որպէս զի այդ հնադարեան եւ մեծանուն գործը՝ երկու կողմէն եւս լաւ քննուած լինի, դիտելու ենք և՛ այն կէտերն եւ պարագայք, որոնք թէ եւ յոյժ սակաւաթիւ՝ բայց կարող են նպաստամատոյց փաստեր համարուիլ նորա հարազատութեանը: Տոցանէ երեքը միայն կը յիշեմ աստ, այսինքն է, նախ, դիտուած է որ վարդապետութեան բոլոր ընթացքի մէջ, բայց 'ի մասնաւորի Նորոգութեան եւ Մարդեղութեան ճառերու մէջ, ուր պատեհն ինքնին կը պահանջէր, գէթ մի անգամ բառս Համագոյակից գործածուած չէ, որ ըստ իմքեան նշան է, թէ Նիկիոյ սուրբ ժողովքէն առաջ գրուած լինի այն եւ իրօք Գրիգորի հարազատ գործ: Բ. նշանաւոր է նոյնպէս Աստուածածին բառի կատարեալ բացակայութիւնը, զոր Եփեսոսի սուրբ ժողովն այնքան խնամքով եւ բարեպաշտութեամբ սեփականեց Տիրամօր սուրբ Կուսին 'ի ցոյց նորա ճշմարիտ Աստուածամայրութեանն. արդ այս երեւոյթս իսկ կարծել կուտայ, թէ այդ ժողովքէն առաջ աւարտած պէտք է որ լինէր վարդապետութեան գիրքը: Գ. վարդապետութեանս այլեւայլ էջերում, ինչպէս տեսանք, կը խօսուի առ հեթանոսակիր ժողովուրդ մի, զորս մերթ սպառնալեօք արդէն եկած հասած պատուհասին եւ մերթ այլ յորդորմամբ առաքինասիրաց 'ի Քրիստոս՝ կ'ուզէ հեղինակն ածել 'ի լոյս աւետարանին. այնպէս որ կարծէք թէ Դ դարուն միայն կը պատշաճի:

Վերջին դժուարութեան լուծումն՝ մասամբ մի տրուեցաւ արդէն Հոգւոյ գալստեան եւ մեռելոց յարութեան ճառերու քննութեանը մէջ. մնացածն եւս յետոյ ուրեմն առիթ պիտի ունենամ պարզելու: Իսկ գալով առաջին դժուարութեանը, դիտելու ենք որ, նախ Ագաթանգեղոսի ծԻԷ գլխահամարի մէջ Նիկիոյ ժողովոյն եւ նորա որոշողութեանց մասին կը խօսուի որոշակի, որով բնաւ տարակոյս չի վերցներ, թէ վարդապետութիւնն՝ այդ ժողովքէն վերջ գրուած է, եթէ ստուգիւ Ագաթանգեղայ մասն համարիցի ոք. ուստի վերոյի

շեալ պատճառաւսնօք ընաւ չի մեկնուիր համագոյակից բառին բացակայութիւնն: Երկրորդ, դիտելու ենք, որ նոյն իսկ մեծն Ներսէս[1] և Ս. Սահակ[2] այսպէս և այլք 'ի Ե երորդ դարու թարգմանչաց, որք վերյիշեալ սուրբ ժողովքէն շատ վերջ ծաղկեցան և իրենց վարդապետութիւնը գրաւոր կերպով մեզ աւանդեցին, նոյնպէս համագոյակից բառը գործածած չեն[3]. ուստի այս ընդհանուր երևութիս բնական և բանաւոր պատճառն՝ յունարէն ὁμοούσιος բառին մէջ որոնելու ենք, որ կը նշանակէ ունող մի և նոյն գոյացութեան կամ լաւ ևս բնութեան: Արդ՝ եթէ նախնիք մեր համագոյակից թարգմանէին զայն, ոչ միայն մեղանչած կը լինէին հայկական լեզուի դէմ, այլ նոյն իսկ ընդդէմ յունարէնին և նորա ճիշդ նշանակութեանն. որովհետև ὁμοούσιος=հ. համագոյ բառին, ինչպէս կը տեսնենք Ս. Աթանասայ և Կիւրղի գործոց հայերէն թարգմանութեանց մէջ. ուստի վարդապետութեան հեղինակն եթէ գրած լինէր Որդւոյն կամ ամենասուրբ Հոգւոյն համար՝ համագոյակից Հօր, լռելեայն նաև այսպիսի իմաստ մի տուած պիտի լինէր, այսինքն է ունող մի առանձին կամ անձնաւորական գոյութիւն կամ բնութիւն, որ կից կամ հաղորդ իցէ Երրորդութեան հասարակ եղող բնութեանը կամ գոյութեան: Ուրեմն այսպիսի մի երկդիմութեան առաջն առնելու համար՝ թէ՛ վարդապետութեան հեղինակն և թէ՛ վերյիշեալ մեր սուրբ հայրապետքը լաւ համարեցան 'ի գործ ածել էակից, էութակից, բնութենակից և միաբնական բառերն, ոյռնք թէ՛ աւելի հայկաբանական են և թէ՛ յունարէնին համազօր: Ստուգիւ, նոյն իսկ Լուսաւորիչն ազգիս մերոյ և սերմանողն ուղղափառ հաւատոցս, կ'աւանդուի թէ Նիկիոյ հանգանակի մէջ Որդւոյն համար փոխանակ համագոյակից դնելու՝ 'ի բնութենէ Հօր դրաւ:

Իսկ Աստուածածին բառին չգործածուելու պատճառը՝ դեռ աւելի յայտնի կը լինի, դիտելով, որ վարդապետութեանս մէջ ուղղակի կը խօսուի մերթ Բանին Աստուծոյ ժամանակաւոր ծննդեան մասին՝ 'ի Կուսէն, և մերթ այլ շնորհազիւտ Կուսին վերայ՝ 'ի ծնանել ըզԲանն Աստուած. ուստի երկու պարագայից մէջ իսկ հաւասարապէս զգուշալի էր. որովհետև չէր մարթ ասել, թէ Բանն Աստուած կամ Որդին Աստուած՝ ծնեալ յԱստուածածին Կուսէն կամ յԱստուածածնէ. և ոչ իսկ ասել, թէ Կոյսն Աստուածածին կամ պարզապէս Աստուածածինը՝ ծնեալ զԲանն Աստուած. որովհետև երկու կերպով իսկ կարծիս տուած կը լինէր, գէթ 'ի հայ լսելիս, թէ սուրբ Կոյսն երկիցս եղև ծնող. այսինքն է մի՝ Աստուծոյ, և միւս ևս՝ Բանին Աստուծոյ. որով Սաբելեան մոլորութեան դուռը բացած կը լինէր: Այս

1. Փ. Բուզանդացի Դ. Դպրութիւն, գլ. Ե. էջ 80–81:
2. Ի թղթին առ Ս. Պրոկղ. Սոփ. հայկ. հտ. Բ. էջ 40:
3. Հայրապետաց Շարականի մէջ յիրաւի բառս համագոյակից գործածուած է, բայց դիտելու ենք որ, նախ տարակուսական է, թէ այդ շարականի հեղինակն Մ. Խորենացին եղած լինի, և ոչ թէ Շնորհալին. հաւանական է թէ համագոյ բառին վերայ կից մասնիկն ընդօրինակողաց ձեռքով յետոյ ուրեմն աւելցուած իցէ:

բանաւոր պատճառս չղխտելով քաշ Կր. Թումայեան, մի ուրիշ անյայտ պատճառ եղած կը համարի բառիս անգործածութեանն, որուն համար զգուշացել են, կ'ըսէ, նոյնպէս Մ. Խորենացի և այլք 'ի թարգմանչաց: Սակայն դիտելու ենք, որ Մովսէս թէ 'ի պատմագրութեան և թէ իւր ճառերուն մէջ, ուր Տիրամօր պատմութիւնը կամ ներբողեանը կ'ընէ, կը գրէ և Աստուածածին. այսպէս և յետագայք։ Բ. Դիտելու ենք, որ թէ հին և թէ նոր Կտակարանաց մէջ փոխանակ Աստուածածնայ՝ Կոյս անունը միշտ 'ի վար արկած են սրբազան գրիչք, որոնց ուզած է հաւատարիմ մնալ վարդապետութեան հեղինակն: Գ. ըսելով Աստուծոյ համար, թէ ծնաւ 'ի Կուսէն, կամ վասն Կուսին՝ թէ ծնաւ զԱստուած, աւելի սքանչելի գաղափար մի տուած կը լինէր հեղինակն իւր ունկնդրաց, քան ըսել յԱստուածածնէ, որով կարէին նաև յամուսնացեալ կնոջէ և օրինօք բնութեան ծնած համարել ունկնդիրք, ինչպէս կ'ուզեն իմանալ հերետիկոսք, որ ոչ է պատիւ ոչ Տիրամօրն և ոչ իսկ Աստուծոյ մեծվայելչութեան: Այս դիտողութիւններէս վերջ կարեմք ասել, թէ այդ երեք դժուարութիւններն իսկ՝ բանաւոր չէ Գրիգորի կարծեցեալ վարդապետութեան հարազատութեան իբրև զօրեղ ապացոյցներ համարել:

Ուրեմն հեռագոյն տեսութիւննիս ամփոփելով 'ի մօտոյ՝ կարող եմք այսպէս դնել զկնիք ընդհանուր քննադատութեանցս. այսինքն, թէ Գրիգորի կարծեցեալ ընդարձակ վարդապետութիւնն՝ ըստ իւր այժմեան ձևոյն և պարունակութեանը, չէ և չկարէ լինել հարազատ գործ Ս. Գրիգորի Լուսաւորչին, և ոչ իսկ նորա ժամանակակից մի ուրիշ վարդապետի:



Յետ այսպիսի բացասական եզրակացութեան՝ հարկ կը լինի որոնել այժմ՝ ծանօթ երկասիրութեանս անծանօթ հեղինակն, և որոնել ոչ Դ դարուն և ոչ իսկ Զ երրորդին կամ Է երրորդին, որոց սահմանքն և բնադրոշմը անմատչելի կը մնան անհամեմատ կերպով երկասիրութեանս սահմաններուն. այլ Ե երրորդ դարու պարունակին մէջ, զոր իրաւամբ կարեմք կոչել դար սկզբնաւորութեան հայերէն գրականութեան և ոսկեղինիկ դպրութեան, ծնող ազգային պատմագրութեան և որ և է հայրենի գրաւոր աւանդութեան: Այս դարուս լուսափայլ հանճարները թէպէտ և բազմաթիւ, թէպէտ և շատերու գրաւոր երկանց հետ՝ անուանքն և ևս միգամածներու նըման տակաւին խորհրդաւոր քօղի տակ ծածկեալ կը մնան, բայց պէտք է ասել, թէ այսպիսի վսեմական հայկաբանութեամբ անդրանկածին երկասիրութեան հեղինակն իսկ՝ մինն 'ի յանդրանիկ թարգմանչաց միայն կարէր լինել, որ գործեց և վաստակեցաւ նաև 'ի խմբագրութեան գրոցն Ագաթանգեղայ: Այլ թէ ո՞վ էր այն բանիբուն և աստուածարեալ վարդապետն. ո՞ այն օրհնեալ բերանը՝ որ ներշնչեց գրչին արտադրել այսպիսի հոգելից և նոխ վարդապե-

տարան մի, 'ի սնունդ մանկանց Հայաստանեայց եկեղեցւոյ, և հաստուցանել մեզ մեր ամէնէն բարգաւաճ դարու եկեղեցական գանձերը. ի՞նչ առթիւ և ե՞րբ գրեց զայն: Ահաւասիկ դժուարակնճիռն հարցեր, զորս պէտք է քննել և լուծել, ըստ կարելւոյն:

Ինչպէս Գրիգորի պատմութեանն, այսպէս ևս վարդապետութեանս մէջ հանդիպեցանք արդէն նկատմամբ այսպիսի մի հարցի մեծ նշանակութիւն ունեցող երևութի մի. այսինքն է Եզնկայ Կողբացւոյ երկասիրութեան հասարակ տեղեաց, յորոց զոմանս ևեթ նշանակեցի. իսկ այժմ կ'ուզեմ մնացածներն ևս դնել աստ դիմացէ դիմաց, իրեն ճիշդ եղելութիւնն յայտնելու համար:

### ԵԶՆԻԿ [1].

Յէջ 6 կ'ըսուի զԱստուծոյ. «Եւ արդ քանզի մի էութիւն անքնին է և անհաս բնութեամբ, առ նորա անքննութիւնն՝ ընծայութիւն անգիտութեան մատուցանելի է, և առ էութիւնն նորին՝ դաւանութիւն գիտութեան և ոչ քննութեան»:

Յէջ 40–41 վասն անձնիշխանութեան. «Եւ արդ առեալ զանձնիշխանութիւնն, ո՜ւմ կամի՝ ծառայանայ, որ մեծ շնորհն պարգևեալ է նմա յԱստուծոյ. քանզի այլն ամենայն 'ի հարկէ ծառայէ աստուածական հրամանին»:

Նոյն. «Եթէ զերկնից ասես՝ կայ հաստատեալ և ոչ շարժի 'ի սահմանելոյ նմա տեղւոյն. և եթէ զարեգակնէ կամիցիս ասել՝ և նա կատարէ զզատուցեալ նմա շարժմունս և չիշխէ խուսափել յընթացիցն...: Նոյնպէս և զերկիր սեղմացեալ տեսանեմք և բարձեալ բերէ զհրաման հրամանատուին»:

Նոյն. «Եւ զայլսն ամենայն համակերտս ծառայացեալս հրա‿

### ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ.

Յէջ 285. «Մի միայն խկութեամբ... ճշմարտեցէք 'ի միութիւնն անշշունջ լռութեամբ, լուռ հաւատովք, բայց զանյոյզ զանքնինս՝ հողապատեանս 'ի հողոյ զիմ՞րդ քննել կարիցեմք և գիտել զբարձրելոյն և սկզբնաւորքս զանսկիզբն զանհասն զիա՞րդ կարիցեմք քննել»:

Յէջ 201–202. «Արդ զմարդիկ թողեալ 'ի կամս անձնիշխան կամաց, վասն զի իւրով կամօք անձնիշխանութեան՝ գիտացեալ ըստ բարեացն գործոց շնորհս գտանել 'ի բարերար Տեառնէն», և այլն:

Նոյն. «Տես զարեգակն և ըզլուսին և զաստեղս, մեծամեծս, ո՞րչափ (քան) զմարդն իցեն, և 'ի նորա կամացն կան պահեալ ըստ հրամանաւ պատուիրանադրին: Ոչ արեգակն յընթացից դադարէ, և ոչ լուսին կասէ 'ի մաշել և լնուլ և ոչ աստեղք զկարգ իւրեանց անցանեն. և ոչ երկիր բառնալ կրել դանդաղի զամենայն»:

Նոյն. «Զի ամենայն արարածք ըստ հնազանդութեամբ

1. Վենետկի յամին 1826 փոքրադիր Հրատարակութեան համեմատ կը լինին աստ յիշատակութիւնք տեղեաց:

մանաց Արարչին չիշխեն ա՛յլ ինչ քան զայն՝ յոր կարգեցան գործել: Բայց մարդոյ առեալ զանձնիշխանութիւն, ո՛ւմ կամի ծառայանայ, ոչ 'ի հարկէ բնութեան բռնադատեալ ոչ 'ի զօրութենէն՝ որ նմա վասն լաւութեանց շնորհեցաւ կասեալ. այլ 'ի հնազանդութենէ միայն շահի զօգուտն, և յանհնազանդութենէ զվնաս. և զայն ոչ եթէ առ եղեռանէ ինչ լեալ ասեմք մարդոյն, այլ վասն լաւութեանց»: Այսպէս և յէջն 173:

Ցէջ 144, 109. «Նոյնպէս և սատանայն անուն՝ ոչ բնութեան ինչ անուն է, այլ բարուց: Զի բամբասեալ 'ի չարութենէ սատանայ այն ամենեցուն յայտնի է»: Նւյէջ 53. «և իբրև զապըստամբ յետս կացեալ թիւրեցաւ յԱստուծոյ»: Այսպէս և յէջն 52:

Ցէջ 96 վասն հրեշտակաց. «Զի ցուցցէ թէ, որ ինչ երևի՝ մարմնաւոր է, և որ ինչ ոչ երևի՝ անմարմին»:

Ցէջ 92. «Եւ չեն ինչ զարմանք եթէ նոքա մերոց դրացեաց արարածոց անուամբքս անուանեն, ուր նոցա Արարիչն ոչ գարշի զայնպիսի անուանս զինքեամբ առնուլ վասն իրիք իրիք տեսչութեան»:

Ցէջ 93–94, Աստուծոյ երևմանց համար. «Եւ յորժամ երևել սրբոց իւրոց կամէր ոչ այլովք իւիք կերպարանօք՝ այլ մարդոյ կերպարանօք, զոր ըստ իւրում պատկերին արար յայտնէր. և այն ոչ վայրապար... զի

ծառայութեան են հարկեալք, զի մի ա՛յլ ինչ աւելի իշխեսցեն գործել քան զայն՝ որչափ ինչ նոցա հրամայեցաւ, հարկ 'ի վերայ իւրաքանչիւր կատարել զհրամանս: Բայց Աստուած զմարդն միայն բազմապատիկ փառաւորեաց և մտօք մեծացոյց... և եդեալ առաջի նորա զգիտութիւն պատուիրանաց հանճարին Աստուծոյ, զի գիտասցէ խոյս տալ 'ի չարէն և զբարին ընտրել իւրոց կամացն լաւութեամբ իբրև յինքեան քաջութենէ»:

Ցէջ 213. «Արդ մի ոմն 'ի վերին զօրացն իշխանութեանցն հրեշտակաց իւրովք կամօք չարացեալ չարն՝ չար անուանեցաւ, ուստի և յետս երթալոյն՝ զհակառակասէր սատանայ անուն ժառանգեաց»:

Ցէջ 246. «Բայց եթէ էին տարրաւորք, ապա երևելիք և ոչ աներևոյթք, և առ հասարակ, և ոչ ումեք երևեալք»:

Ցէջ 245–247. «Ճշմարտագոյն համարիմք այսուհետև զհոգեկան ազգին մարդակերպ նմանութիւն... առ 'ի պատգամաւորութիւն սպասաւորութեան հրամանաց Աստուծոյ»: Իսկ եթէ արարելոցն այսպիսի ո՛րչափ ևս առաւել բարձրագոյն անարար և անմատոյց աներևոյթ բնութիւն էականին Աստուծոյ իմանայցի»:

Ցէջ 249. «Թէ և նախաստեղծ մարդոյն զնոյն նմանութիւն երևեալ 'ի սկզբանն, որպէս և առ յապայ ամենայն աստուածատես կատարելոցն զնոյն պահեալ, զի մի օտարազգոյն ինչ և անծանօթ կերպարանօք զտե-

յառաջագոյն կրթեսցէ զմարդիկ ածել 'ի գիտութիւն. զի յորժամ զՈրդին իւր իբրև զմարդ յաշխարհ առաքեսցէ, մի օտարոտի ինչ զիրսն համարեսցին, մանաւանդ թէ գիտիցեն՝ թէ, ինքն իսկ այն կերպարանօք յայտնէր»:

Յէջ 73–74. «Զի ներող և արգահատող է Արարիչն... զի յետ յանցուցելոյ մարդոյն՝ իջեալ անմարմինն՝ իբրև մարմնաւոր ոք ոտնածայն առնէր 'ի դրախտին. և մեղմով և աղերսալից բարբառով ասէր ցյանցուցեալն. ո՞ւր ես Ադամ, զի մի՛ տագնապեցուցեալ չտացէ ուշաբերել նմա ապաշխարութիւն»:

Յէջ 94. «Եւ եկեալ Որդւոյ առ Աբրահամ երկու հրեշտակօք արժանի առնէր ճաշ 'ի վրանի նորա ուտել. և 'ի խօսս մատուցեալ 'ի լերինն ընդ Աբրահամու զերկուս պատանիս իւր՝ զհրեշտակս մարդակերպեալս առ Ղովտ արձակէր»:

Յէջ 95. «Եւ երբեք երբեք գրե՛թէ մարդացեալ իսկ բերան 'ի բերան և ձեռն 'ի ձեռն ընդ բարեկամին իւրում Մովսիսի խօսէր»:

Յէջ 31 վասն մարդկային հոգւոյ. «Զի նախ քան զպատկերանալն և լինել կենդանի, անմասն էր 'ի չարեաց. և յորժամ գայ 'ի չափ հասակի մարդոյ, յայնժամ մխտի 'ի չարիս յիւրմէ անձնիշխանութենէ: Նոյնպէս և 'ի բարերարութենէն, զոր ասեն յԱստուծոյ եղեալ հիւղսյն գտանի՝ զի 'ի յոռութիւն եկն»:

Յէջ 107–108 վասն պահապան հրեշտակաց. «Զհրեշտակս արքանեակս գիտեմք յօգնա_

սողսն հարթուցանիցէ. մանաւանդ թէ, առաւել լաւագոյն զի յաստուածատես Հօրէն՝ Որդւոյն տեղեկացեալ, դիւրագոյն պատրաստեսցին իբրև ընդունելականի»: Այսպէս և յէջս 247 և 250:

Յէջ 215 և 216. «Սակայն և անդ ('ի դրախտին) իբրև 'ի վերայ որդւոց հայրաբար գթացեալ բարեգործէ ... ձայն արկեալ թէ, ո՞ւր ես Ադամ: Քանզի բարերարն յանցէտս պատճառեալ, նախ ոտնածայն առնէ. զի յոտսն քաւութիւնաբերս հասեալ մարդոյն՝ ինքնապատում լինելով զյանցանացն փրկութիւն գտանիցէ»:

Յէջ 230. «Երևեալ Աստուած Աբրահամու և ուխտ եդեալ խօսէր և վերանայր: Դարձեալ հրեշտակօք երևեալ 'ի Մամբրէ, ընդ պարգևական զաւակն խոստացաւ. և զիւր Որդին գալ մտանել մարմնով»:

Յէջ 251. «Զի թէպէտև ձեռն 'ի ձեռն և բերան 'ի բերան յանդիմանախօս ընդ Աստուծոյ ճանաչէր Մովսէս»:

Յէջ 198. «Զի Աստուծոյ բարերարի զամենայն արարեալ, 'ի կարգիս լինելութեան հաստատեալ. իսկ չարն յանձնիշխան կամաց մտեալ՝ կործանիչ իւրաքանչիւր որ առանձինն, այլ յԱրարչէն բարի եղեալ ամենայնն հաստեցաւ»:

Յէջ 242. «Զի 'ի պղծագունդ այսոցն 'ի պատերազմական դիւացն՝ աստուածակարգ անուշա_

## ԵԶՆԻԿ.

կանութիւն մարդկան, ազգաց և թագաւորութեանց, ըստ այնմ զոր ասէն թէ, կացոյց սահմանս ազգաց ըստ թուոյ հրեշտակաց Աստուծոյ »:

Ցէջ 95. « Եւ Եզեկիէլի հրատեսիլ և բոցալեզու 'ի կառս ազգի ազգի կերպարանօք յօդեալ և կառավար մարդակերպեան երևեցուցանէր »:

Ցէջ 94. « Եւ հրացուցեալ և չայլայլեալ զհրեշտակն 'ի մորենւոջն, 'ի մարդկեղէն բարբառ ածեալ, տայր ընդ նախընծայացելոյ առն Աստուծոյ ընդ Մովսիսի խօսել »:

Նոյն. « Եւ այրակերպեալ զզօրավարն իւր զՄիքայէլ, զօրագլխին իւրում Յեսուայ 'ի դաշտին ցուցանէր »:

Ցէջ 230–231. « Այլ, ասեն. ընդէր յամեաց գալուստն Քրիստոսի, և կորեան այնչափ ազգք՝ առանց աստուածպաշտութեան »:

Նոյն. « Այլ նախ կրթեաց քարոզովքն և մարգարէիւք՝ իբրև կաթամբք և ապա եկն տալ զկատարեալ վարդապետութիւն »:

Նոյն. « Եթէ չէր աստուածաքարոզս աստուածպաշտութեան յաւիտենայն դարս առաքեալ, թերևս գոյր մուտ այնպիսի բանից. բայց զի ոչ դադարեաց 'ի վկայութիւն տալոյ՝ անձանց մեղդիցեն »:

Ցէջ 47. Կ'ըստի վասն սատանայի. « Ունեալ յԱստուծոյ պատուիրանէն՝ որ մարդոյն տուաւ արգելուլ զնա 'ի ճաշակելոյ 'ի տնկոյ յիմեքէ 'ի մահաբերէ »:

## ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ.

հոտ ոգիքն՝ զազգս մարդկան աներկիւղ պահեսցեն: Որ 'ի բաժանելն ազգացն և 'ի խառնակել լեզուացն և 'ի ցանել որդւոցն Ադամայ, կարգեաց սահմանս ըստ թուոյ Հրեշտակացն Աստուծոյ »:

Ցէջ 371. « Իսկ Եզեկիելի միանգամայն յայտնի արարեալ զազդողական զօրութիւն Հոգւոյն ըստ պատմութեան կառանշան տեսլեան »:

Ցէջ 233. « Երևեալ 'ի Քորեբ լերինն բոցանշան բոլորքեալ մորենոյն՝ ծանօթս տուեալ Մովսիսի, ընդ որ կարի հաճեալ և արժանի գտեալ աստուածային խորհրդոցն »:

Ցէջ 245. « Եւ Յեսու՝ բնաւ իբրև զմարդ յանկարծոյն (տեսեալ), և ապա տեղեկացեալ թէ, զօրավար է զօրացն Աստուծոյ՝ անկեալ երկիր պագանէր »:

Ցէջ 264. « Իսկ ընդէր արդեօք յերկարեալ Միածինն, այնչափ նեղութիւն արարածոցն հասուցանէր »:

Նոյն. « Եթէ ոչ զի նախ ազդ արարեալ յառաջագոյն ընդելականս առնիցէ, զի մի եկեալ անծանօթն՝ անընկալ լինիցի »:

Նոյն. « Զի եթէ յայնչափ ժամանակաց առ իւր արարեալսն եկեալ անընկալ եղև, որչափ ևս ոչ ազդեցելոցն. այլ կանխակալ խորհրդով ծանօթս տուեալ ամենայն ազգաց և յափտեանց »:

Ցէջ 213. « Իբրև տեսանէր զխոստումն բարեացն բարերարութեան Արարչին՝ առ մարդ, և մարդոյն կալ 'ի բանի Արարչին իւրոյ, և զգուշացեալ պահել ըզպատուիրանն »;

### ԵԶՆԻԿ.

Ցէջ 43. « Եւ արդ յայտ է թէ անձնիշխան եղև մարդն՝ առնել զբարի և ժտել 'ի չար. իբր ոչ թէ չար ինչ առաջի կայր՝ յոր ժտիցի, այլ այն ևեթ՝ կամ անսալ Աստուծոյ կամ չանսալ, և զնոյն ևեթ պատճառ չարին իմանալ »:

### ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ.

Ցէջ 214. « Որով յայտ իսկ է, թէ ունէր ազատութիւն Ադամ և անձնիշխան կամս և իմաստութիւն յԱստուծոյ. գիտելով զԱստուած պատուիրանատուր և զԱդամ պատուիրեալ. թերևս իսկապքանչ պատուիրանն ննջութեամբ երևեալ » . . . :
(Տեղիս պակասաւոր է):

Արդ այս և այսոնց համանման դեռ ուրիշ տեղերէ և բացատրութեանց, որք ստուգիւ կը տեսնուին Եզնկայ երկասիրութեան մէջ ցիր և ցան, կարելի՞ է արդեօք եզրակացնել, թէ Եզնիկ եղած լինի հեղինակ Գրիգորի կարծուած ընդարձակ վարդապետութեանն, և կամ վերջնոյս անծանօթ հեղինակն՝ ուղղակի Եզնկայ գործէն օգտուած լինի: Վարդապետութեանս այլևայլ տեղեաց աղբիւրներն, զորս ջանացի մատնանիշ ցուցանել՝ մէկ կողմէն. իսկ միւս կողմէն այլ այս բաղդատեալ տեղեացս տարբեր շարադրութիւնը՝ կը վրստահացնեն զիս պատասխանել թէ ոչ. մանաւանդ նկատելով, որ Ագաթանգեղայ Ա գրքէն իսկ փոխ առեալ տեղեր կը գտնուին առ Եզնկայ: Ուստի դիտելով աստի՝ Եզնկայ գրութեան ժամանակն և պարագաները, և անտի՝ Վարդապետութեան ներքին հանգամանքն և բնագրոշմը, որք աւելի հնութեան տիպ ունին, պէտք է ընդհակառակն հետևցնել, թէ կամ եղած է իրօք համառօտեալ և հնագոյն աղբիւր մի, յորմէ թէ՛ Եզնիկ և թէ՛ հեղինակ Վարդապետութեանն օգտուած են, ըստ յատուկէն բնագրէն. և կամ ասել, թէ վերջինն եղած է աղբիւր նախագաղափար Եզնկայ:

Առաջին ենթադրութեանը նպաստաւոր կ'երևի վերոյիշեալ երկոյթն, այսինքն է բաղդատուած տեղեաց նոյնութիւնն ըստ իմաստից, և տարբերութիւնն՝ ըստ շարաբանութեան: Իսկ վերջնոյն՝ կարելի է իբրև ապացոյց բերել Ագաթանգեղայ գրոց խմբագրութեան ժամանակամիջոցն, որ եղած է յամի Տեառն 425–431. համարելով որ Գրիգորի կարծեցեալ Վարդապետութիւնն, ըստ միապաղաղ ոճոյ գրութեան և լեզուին և Ղազարայ վկայութեան համեմատ, 'ի սկզբանէ 'ի վեր մի և նոյն տեղին ունէր Ագաթանգեղայ մէջ, և ոչ թէ յետոյ ուրեմն ներմուծեալ անդ:

## Ժ

Բնականապէս այժմ սոյն հարցս ընդ առաջ կը լինի մեզ. եթէ ստուգիւ Եզնիկ չէ վարդապետութեան անծանօթ հեղինակն, ո՞վ ուրեմն կարէ լինել այն: Ոչ այլ ոք, ըստ իս, եթէ ոչ ճայրն հայկական նշանագրոց և վերածնութեան Դպրութեան մերոյ՝ սրովբէա-

սարաս Ս. Մաշթոց կամ Մեսրովբ, զոր նախնիք մեր կոչած[1] են **Երկրորդ Լուսաւորիչ**: Եւ ստուգիւ այս բանիս եթէ ուրիշ ապացոյցներ ևս չունենայինք 'ի ձեռին, նորա համառօտ բայց հաւաստարիմ կենսագրութիւնը միայն բաւական էր հաւնզել զմեզ: Արդ, դիտելու ենք, որ այս երկասիրութեանս մէջ նախ մանր պարագայիւք կ'աւանդուի առաքելաշնորհ սուրբ Հօրս կրկին անգամ Աւետարանի քարոզութիւնն 'ի Հայս և նոցա դրացի ազգաց սահմաններուն վերայ. որոց մին՝ նշանագրոց գիւտէն յառաջ և բազում տառապանօք, իսկ միւսն՝ յետոյ ուրեմն կատարուեցաւ մեծ յաջողութեամբ: Հետևեալ պարագաներս իսկ աւագ աչօք դիտելու է. այսինքն է, ի՞նչ վիճակի մէջ կը գտնուէին այն ժողովուրդներն, որոնց նա քարոզեց. ի՞նչ քարոզեց և ինչպիսի՞ եղանակաւ և միջոցներով: Երկրորդ Լուսաւորիչս այս՝ նման առաջնոյն առաքելութեան վիճակեալ շնորհի, քարոզեց Գողթնեաց գաւառի հայ ժողովրդեան, Աղուանից և ուրիշ կովկասային վրանաբնակ ժողովրդոց, որոնց մէջ թէպէտև Երուսաղէմէն և Ասորիքէն ղրկուած քարոզչաց և զոյգ Գրիգորներու ձեռքով Աւետարանի կենսաբեր լոյսը ծագած, բայց այդ ժամանակին արդէն շիջած էր, թողլով զանոնք վերստին հեթանոսական խաւարի և չար սովորութեանց մէջ. այնպէս որ սոցա համար կարեմք առնուլ այն բանը, զոր Փաւստոս ամբողջ Հայութեան կը թուի վերագրել. այսինքն է իբրև հանդերձ և բռնի ունէին զքրիստոնէութիւն Դ դարու վերջին կիսում, և ոչ իբրև ուղղիչ վարուց և բարուց: Եւ այսպիսի մի եղելութեան վերայ պէտք չէ բնաւ զարմանալ. որովհետև Ս. Միսրովբէն վերջ ևս՝ Ս. Գրոց հայկական թարգմանութեան զօրեղ նպաստիւք հանդերձ՝ վերստին կրկնուած կը տեսնենք նոյն աղետալի վիճակն մեր հայրենեաց բացական սահմանաց վերայ, զորս Մանդակունին, Գիւտ և ուրիշ կաթողիկոսներ կը ջանան ուղղել: Արդ՝ այս պարագայովս ճիշդ կը մեկնուին Վարդապետութեան այն գլխահամարներն, յորս ինչպէս տեսանք, հեղինակը կը խօսի իբրև ժամանակակից և դեռ հեթանոսութեան անդընդոց բերանը թափառող ժողովրդեան մի, յիշեցնելով նոցա՝ իւրեանց նախկին Առաքեալներն և վկայուհիքը զսուրբ Հռիփսիմեանս, կը սպառնայ նոցա աստուածային ցասման պատուհասիչ բաժակը. զոր «յառաջագոյն» և «'ի նախնեաց հետէ», այսինքն է յաւուրս Տրդատայ ըմպեցին. և կը յորդորէ 'ի դարձ և յապաշաւ:

Բ. Դիտելու է, որ Ս. Մեսրովբայ առաջին քարոզութիւնն հանդիպելով նշանագրոց գիւտէն յառաջ, նա ստիպուած էր Ս. Գրոց ասորերէն կամ յունարէն բնագիր մի կրել ընդ իւր, ընթեռնուլ առաջի ժողովրդեան և ըստ այնմ ընել տեղեաց յիշատակութիւններն և մեկնութիւնքն: Այս բանս այնքան յայտնի է առ Մ. Խորենացւոյ[2], և առ Կորեան, որ և ոչ իսկ տարակոյս կը վերցնէ: Ուրեմն

1. Յովհ. Իմաստասէր յէջ 66, ըստ Վենետկեան հրատարակութեան: Յայսմաւուրն Ի:
2. Պատմ. Գ. գլ. ԽԷ էջ 480, կ'ըսէ. «Եւ 'ի վարդապետել երանելւոյն

այս պարագային մէջ քաշ կը մեկնուի **Վարդապետականն** մէջ բերուած Ս. Գրոց տեղեաց գաղտնիքն, որոց համար ըսուեցաւ, թէ բոլորովին կը տարբերին այժմու մեր Նոթանասնից թարգմանու_թենէն:

Գ. Ս. Մեսրովբ իւր առաքելութեան ժամանակ պէտք էր քարո_զել ոչ միայն զԱւետարանն Քրիստոսի պարզապէս, այլ և բոլոր հաւատոց և հին Կտակարանի մասունքը. այսինքն է աշխարհիս ա_րարչագործութենէն մինչև Քրիստոսի վերջին գալուստը. և քարոզել մանաւանդ իւր ժամանակի եկեղեցւոյ բարգաւաճեալ վարդապե_տութեան և ժողովրդեան պահանջմանց համեմատ. յորում ժամա_նակի ոչ միայն նորանոր հերետիկոսութիւնք և մոլորութիւնք տեղի ունեցել էին, զորս հարկ էր ջախջախել. այլ նոյն իսկ մէջ բերել Դ դարէն վերջ և այն հերետիկոսաց պատճառաւ գումարեալ Ժողովոց և Հարց վարդապետութիւններն և մեկնել: Արդ, այս պարագայովս միայն կարելի է մեկնել ոչ միայն Գրիգորի կարծեցեալ վարդապե_տութեան ընթացքն, այլ և հետզհետէ նորա մէջ բարգաւաճուած հաւատոյ դաւանութիւնքն և Հարց և Ժողովոց յատուկ ձևերն և կիր_առութիւնքը, զորս ջանացի կանխաւ փոքր 'ի շատէ մատնանիշ ցուցանել: Ցիրաւի, Կորիւն իսկ ուզելով Ս. Մեսրովբայ քարոզած վարդապետութեան որպիսութիւնը ցուցնել, փոխանակ իմաստուն վարդապետը մէջ բերելու՝ տգէտ ժողովրդենէն կը ձեռնարկէ, զորս նա լուսաւորեց, ըսելով. « Ամենայն իրացն եղելոց խելամուտ լի_նէին. ոչ միայն **ժամանակաւ դիպելոցն**, այլ ... և **զկնի եկելոցն** **սկզ_բանն և կատարածին և ամենայն աստուածատուր աւանդութեանցն** »:

Դ. Ս. Մեսրովբայ Կենսագիրն՝ [1] իւր երիցս երանեալ և յաւէտ յիշատակաց արժանի Վարդապետին մեծամեծ գործոց մէջ՝ բացա_յայտ կերպով կը յիշէ, թէ նա գրեց և **ճառս յաճախագոյնս** լի վար_դապետութեամբ և յարմարութեամբ Գրոց սրբոց. որոնց մէջ մաս_նաւոր կերպով կը շեշտէ մեռելոց յարութեան ճառը, զոր բարգա_ւաճած և բնական օրինօք ամէնուն դիւրահասկանալի ըրած էր Ս. Մեսրովբ: Արդ, այս ճառերս Կենսագրի վերոյիշեալ տեղւոյն վկայու_թեան համաձայն եթէ երկրորդ քարոզութենէն վերջ գրուած հա_մարինք, և եթէ 'ի ժամանակս քարոզութեան, ոչ միայն յայտնի

Մեսրովբայ ոչ փոքր կրէր վտանգս, քանզի ինքն էր ընթերցող և թարգ_մանիչ. և եթէ այլ ոք ընթեռնոյր՝ ուր նա ոչ հանդիպէր, զանխուլ 'ի ժո_ղովրդոցն լինէր »:

1. Կորիւն յէջ 21 այսպէս կը գրէ. « Ապա յետ (այսորիկ) այսինքն է բ քարոզութեան, դարձեալ այնպիսի առաւել և բարձրագոյն վարդա_պետութեամբն, սկսեալ երանելոյն Մաշթոցի ճառս յաճախագոյնս, դիւրապատումս շնորհագիրս, բազմադիմիս 'ի լուսաւորութենէ և 'ի հիւթոյ Գրոց մարգարէականաց կարգել և յօրինել. լի ամենայն ճշմա_կօք աւետարանական հաւատոցն ճշմարտութեան: Ցորս բազում նմա_նութիւնս և օրինակս 'ի յանցաւորացս աստի, առաւելագոյն վասն յա_րութենական յուսոյն առ 'ի հանդերձեալսն՝ յերիւրեալ կազմեալ, զի հեշտընկալք և դիւրահասոյցք ախմարագունիցն և մարմնական իրօք զբաղելոցն լինիցին, առ 'ի թափել և զարթուցանել և հաստահիմն առ_նել 'ի խոստացեալ աւետիսն քաջալերել »:

կերպով մարմնաւորուած կը տեսնենք զանոնք Գրիգորի կարծեցեալ վարդապետութեան մէջ. այլ նոյն իսկ այնու քաշ կը մեկնուին Ս. Գրոց միւս տեղեաց յիշատակութիւնքն 'ի Վարդապետութեան, որոնք ըստ ամենայնի Ս. Գրոց այժմու հայերէն թարգմանութեան կը համաձայնին: Եղան ոմանք, որք Դօկտոր Վէտտէրի հետ Կորիւնէն յիշուած « յաճախագոյն » ճառերով՝ Լուսաւորչայ ընծայուած Ցաճախապատումի ԻԳ ճառերն հասկացան և ընծայեցին զանոնք Ս. Մեսրովբայ, այլևայլ փաստերով. բայց ըստ իս ոչ այսպիսի ընծայութիւն մի կարէ ճշմարիտ լինել, և ոչ իսկ առ այն մէջ բերուած փաստերն: Որովհետև, նախ Ցաճախապատում գրոց լեզուն և ոճը գլխովին կը տարբերի՝ **Աստուածաշնչոյ** և միւս 22 յայտնի գրոց ոճէն և լեզուէն, որոնց թարգմանութիւնը Ս. Մեսրովբայ կ'ընծայեն Խորենացին Գ. գլ. ԾԳ, և Կորիւն: Բ. Ցաճախապատումի մէջ եա թէպէտև մեռելոց յարութեան վերայ կը խօսուի երկիցս, բայց հարևանցի կերպով, ուրիշ նիւթի նուիրեալ ճառերու մէջ և առանց Կորիւնէն շեշտուած բնական և հոծ օրինակաց և մանրապատում նկարագրութեանց: Իսկ Վարդապետութեան մէջ ընդհակառակն, Կորեան ըստծին համաձայն մեռելոց յարութեան ճառը ոչ միայն մասնաւոր առանձնայատկութեամբ ընդարձակ տեղ մի գրաւած է առ Ագաթանգեղ, այլ աստ միայն ստուգիւ կը հրաւիրուին քերթողական խանդիւ և աղու բանիւք ծառերն և պտուղներ, բոյսք և ծաղիկք, մայրք և անտառք, մարգագետինք և անդք, ձմեռն և գարուն, պարք թռչնոց և բոլոր նիւթական համագոյք՝ համօրէն իրենց մեռելութեամբք և վերածնութեամբքը, կու գան տալ մեզ ազդու վկայութիւն ապագայ յարութեան մերոյ, մեսրովբեան յափշտակիչ գրչի ներքև: Այնպէս որ սիրտ, միտք և լեզուական առանձնայատկութիւնք առ հասարակ կը թուին մատնանիշ ցուցնել մեզ զՍ. Մեսրովբ: Գ. Դիտելով որ Ագաթանգեղայ գրոց 657 իշի հատուածն իսկ, յորում նոյնպէս և նոյն բառերով **յաճախապատումն ճառից** յիշատակութիւն կը լինի, նոյն է բառ առ բառ Կորեան յիշեալ տեղւոյն հետ. մանաւանդ թէ, ինչպէս կանխաւ ըսուեցաւ, հաւանօրէն Կորիւն գրած է: Արդ Կորեան այս և դեռ ուրիշ երկու տեղիս քաշ 'ի նկատի ունելով, այսպէս կարեմք ձեռնարկել. կամ Ցաճախապատում Գիրքն և կամ Գրիգորի կարծեցեալ վարդապետութիւնը պէտք է որ անհրաժեշտ Ս. Մեսրովբայ լինի, որովհետև նորա կենսագրի ասածով՝ այնպիսի ճառեր գրած էր. իսկ այժմ այդ կրկին երկասիրութիւններէն դուրս նոյն սեռի ուրիշ անանուն գրութիւն մի ձեռքերնիս հասած չէ. և որովհետև Ցաճախապատում գիրքը՝ բոլոր իւր ներքին հանգամանքներովն և պարզ և միաձև վարդապետութեամբքն աւելի Գրիգորի և նորա ժամանակին, քան թէ Ս. Մեսրովբայ կարէ պատշաճիլ. ուրեմն հետևութիւնն յայտնի է:

Ե. Շահապիւանի ժողովոյն կանոնաց նախերգանքի մէջ Ս. Մեսրովբայ համար կ'ըսուի այսպէս. « Հոգելից ճշմարտասէր վարդապետին Մեսրովբայ, որ **լուսաւորեաց** զերկիրս Հայոց **Վարդապետութեամբ** »: Արդ՝ այս բացատրութեանս համանման բացատրութիւն

մ'այլ կ'ընէ Կորիւն Ս. Մեսրովբայ պատմութեան սկիզբն. այսինքն է յետ յիշելոյ զգիտ «աստուածապարգև գրոյն», կը յարէ «և վասն նորին լուսաւոր վարդապետութեան»: Ըստ իս, այս երկու ծանրակշիռ հեղինակութիւններս «Վարդապետութեամբ» զգրատրն կը հասկնան, և մեք իսկ պէտք է որ այնպէս հասկնանք, նկատելով քաջ, որ յետ նշանագրոց գիւտին եղաւ նորա քարոզութիւնն, որով նորա համար աւելի դիւրին և յարմար էր 'ի գրի առնուլ իւր վարդապետածը՝ քան թէ Գրիգորի: Սակայն որպէս զի ենթադրութիւն չի կարծուի ըսածս այլ ճշմարիտ եղելութիւն, կ'ուզեմ մէջ բերել Մեսրովբայ կենսագրութեան ուրիշ երկու տեղեր ևս, որոնք բաւական են փարատել ո՛ր և է տարակոյս: Ցէջ 12 կ'ըսուի Ս. Մեսրովբայ համար. «Եւ 'ի ձեռն առեալ այնուհետև աստուածագործ մըշակութեամբ զաւետարանական արուեստն՝ 'ի թարգմանել, 'ի գրել, և ուսուցանել... մանաւանդ հայեցեալ 'ի տեառնաբարբառ հրամանացն բարձրութիւն՝ որ առ երանելին Մովսէս եկեալ... աստուածեղէն պատգամացն բարձրութիւն աւանդելոցն՝ մատենագրել առ 'ի պահեստ յափտեանցն՝ որ գալոց էին»: Արդ՝ վերջին բացատրութիւնս «մատենագրել», և այլն, թէ և Մովսիսի համար ըսուած համարինք, սակայն օրինակիս բաղդատութիւնն և եզրակացութիւնն ուղղակի կը հային 'ի Մեսրովբ: Իսկ յէջ 18 կ'ըսուի. «Իսկ երանելոյն զիւր վարդապետութեանն պայման արարեալ՝ սակեալ վճարեալ, և բազում շնորհագիր մատեանս զՀայոցն Եկեղեցւոյ ստացեալ, ծովացուցանէր զվարդապետութեանն շնորհսն, և լցեալ զեզերս ամենայն քարոզութեամբ»: Անտարակոյս, Կորիւն այս վերջին բացատրութեամբս՝ որոշակի Մեսրովբայ գրատր Վարդապետութիւնը կը ցուցնէ մեզ, որովհետև յետ սակելոյն և վճարելոյն բերանացի վարդապետութեան և զգիրս Հայոց ստանալէն վերջ՝ վերըստին կը յիշէ զայն:

Զ. Մ. Խորենացւոյ (Գ. գլ. Ծէ, էջ 513) հետ 'ի միասին՝ ազգային ուրիշ մատենագիրք ևս կ'աւանդեն, թէ Ս. Մեսրովբ 'ի Բիւզանդիոն գացած ժամանակ՝ Ատտիկոս հայրապետէն Եկկլեսիաստիկէ կամ Եկլեսիաստիկոն մեծ պատուանունն ստացաւ: Արդ, ընդհանրապէս կարծուած է, թէ նշանագրոց գիւտի համար շնորհուած լինի Մաշթոցին այս մականունս, ինչպէս քիչ առաջ շնորհեցաւ յԱսորւոց, Մար–Սրոփէ (այսինքն է Տէր–Սերովբէ) պատուանունը, կամ նորա սրովբէաստրաս վարուցն և կամ հրեշտակաց գործակցութեամբ նշանագրերն հնարելուն համար: Սակայն դիտելու ենք, որ վերոյիշեալ յունական անունը բոլորովին ուրիշ բան կը յայտնէ, այսինքն է, «Վարդապետ ծովածաւալ բանից», ինչպէս կը գրուի Ի Յայսմաւուրքին մէջ, և թէ գլխովին ուրիշ բանի համար շնորհեցաւ նմա. այսինքն է Վարդապետական գրութեան և սրբոց Հայոց ժողովական բանից և մեկնութեանց համար, յորում հազիւ թէ սակաւք ոմանք կը յաջողէին. իսկ Ս. Մեսրովբ առաւելութեամբ հանդերձ պսակեալ պատուեցաւ. ուստի նորա արքայատուր կառօք և սակրաւորօք 'ի Հայս վերադարձած ժամանակ, Կաթողիկոսն անգամ ընդ առաջ

կ'երթայ, և յետ այնորիկ պաշտօնական թղթոց վերայ՝ առընթեր կաթողիկոսի անուան՝ Մեսրովբայն ևս կը գրուի, իբրև տիեզերալոյս և աստուածաբան վարդապետի: Արդ, այնպիսի մի գրուածքի բնագիրը՝ կարող էր յունարէն ևս եղած լինել, բայց հայերէն նշանագրերը գտնուելէն և Դպրութիւնը բացուելէն վերջ, շատ հաւանական է, թէ հայերէնի փոխած և ճոխացուցած էր, որով և Հայոց մէջ մեծ հռչակ տարածած. այնպէս որ Ս. Սահակ առ Ատտիկոս ուղղեալ թղթին մէջ. « Զատուցող մերոյ աշխարհիս » կ'անուանէ զՄեսրովբ:

Է. Առ սուրբ հայրապետուն Պրոկղ և Ակակ գլուած կրկին պատասխանական թղթերը, զորս Հայոց մատենագրութիւնն հասուցած է մեզի յանուն Սահակայ և Մեսրովբայ՝ հետևեալ պատճենիւ. « Առ ճշմարիտ և աստուածասէր, պատուական Տէր մեր և հայր սուրբ եպիսկոպոս Պրոկղոս, 'ի Սահակայ և 'ի Մաշտոցէ ողջոյն ». ըստ ներքին բովանդակութեան համառօտութիւն իմն է Վարդապետութեան մէջ եղած մարդեղութեան ճառին. մանաւանդ թէ, ինչպէս այլուր իսկ առիթ ունեցայ դիտել, կան տեղեր և բացատրութիւնք, որոնք գրեթէ բառական կերպով իսկ նման են իրարու: Արդ՝ ինչպէս յաւուրս Ղևոնդեանց՝ Վաղարշապատու ժողովքին մէջ առ մեծ հազարապետն Պարսից Միհրներսեհ գրուած թուղթը, զոր կ'ընծայէ մեզ Եղիշէ, Եզնկայ Եղծ աղանդոց երկասիրութեանն բանաքաղութիւն է և կը ներկայացնէ մեզ զԵզնիկ իբրև բուն հեղինակ իւր. այսպէս ևս յանուն Սահակայ գրուած թղթոյն բուն հեղինակն պէտք է որ Ս. Մեսրովբ եղած լինի. իսկ վարդապետութիւնը՝ իբրև աղբիւր նմին. և ստուգիւ զայս կը նշանակէ և Մեսրովբայ անուան գոյութիւնն 'ի նմին պատճենի:

Այս եղելութիւնս դեռ աւելի կը պարզուի մի ուրիշ յիշատակարանի ձեռքով. այսինքն է 'ի Թղթոց Գիրս յէջ 313. « Սրբոյն Սահակայ Հայոց կաթողիկոսի և մեծի թարգմանչի » անուամբ հաւատոյ դաւանութեան ընդարձակ թուղթ մի կայ երկարնակ նեստորականաց դէմ, որ Վարդապետութենէն ընդարձակ հատուածներ կը պարունակէ իւր մէջ՝ բառ առ բառ: Յէջ 321. « Որք 'ի մարմինն հաւատացին՝ ծանոյց նոցա զԱստուածութիւն, և որք 'ի մարմնոյն գըթեցին, ուրացան զբնութիւն նորա, զանկոխն գնացին և զարտաքի անկան » Վարդապետութենէն առնուած հատուածէն վերջ, կը յարէ հեղինակ թղթոյն այսպէս. « Արդ կամք մնամք մեք 'ի նոյն խոստովանութիւն հաւատոյ հաստատութեան մինչև ցայսաւր ճըշմարիտ աստուածընկալ աստուածապահ եղեալ: Վասն որոյ ըստ այսմ ուղղափառ և ճշմարիտ հաւատոյ բանի հետևող լեալ սուրբ Լուսաւորչին մերոյ և նորին որդւոյն որդւոց որդւոց ... որք զնոյն ճշմարիտ աստուածընկալ հաւատոյ հաստատեցին մեզ » : Իսկ յէջ 327. « Յետ յարութեան համբարձեալ կերակրոց », և այլն, և յէջ 343. « Բազում կերպարանաւք և պէսպէս տեսլեամբ խօսեցաւ Աստուած », երկու հատուածներն, որք յանուն Լուսաւորչայ մէջ կը բերուին մի և նոյն թղթի մէջ՝ տեղ տեղ բառ առ բառ նոյն են Ագաթանգեղայ 363 և

258 էջերում, և տեղ տեղ գլխովին կը տարաձայնին:- Պէտք չէ մոռնալ և զայս, թէ այս թղթոյս մէջ յէջ 351 կան այնպիսի պարագաներ, որ նորա հարազատութիւնը տարակուսի տակ կը ձգեն. ինչպէս օրինակի աղագաւ բառս փառանք, Հռովմայ եպիսկոպոսէն մէջ բերուած վկայութիւնը, հակաքաղկեդոնականաց վէճերն և Խորենացւոյ խնդիրն: Ուստի այս պարագայքս 'ի նկատի ունելով՝ կ'ախորժիմ ըսել, թէ կամ այդ թղթոյն մէջ անծանօթ ձեռքէ մի նոր յաւելուածներ ներմուծուած են. և կամ նորա հեղինակը ոչ թէ Սահակ պարթև, այլ կամ Սահակ Բ Հայոց Կաթողիկոսն և կամ ուրիշ համանուն մէկն եղած լինի: Սակայն երկու պարագայից մէջ իսկ կը հետևի, թէ նա վարդապետութենէն մեծապէս օգտուած է, և թէ նորա իբրև հեղինակ զՍ. Սահակ և Մեսրովբ կը ճանաչէ զոյգ ընդ Գրիգորի, յաւելն. « Հետևող եղեալ նորին որդւոց սորանց սրբոց, որք զնոյն ճշմարիտ դաւանութիւն հաւատոց հաստատեցին (գրով) մեզ »:

Ը. Ապացոյց մ'այլ կ'ընծայէ մեզ Եզնկայ անուամբ մեզի հասած հնագոյն յիշատակարանը զոր երկասիրութեանս ԺԶ գլխոյն մէջ յիշատակեցի: Այս համառօտ գրութեանս հեղինակն՝ Հայոց Դպրութեան բացուիլն և Կտակարանաց թարգմանուիլն յիշելէն յետոյ յաւուրս Սահակայ, անդէն կը յարէ. « Եւ կարգէ գործոյն Գրիգորի Նազիանզեայ արամբ միով երանելեաւ Տարօնացւով, որում անուն Մամբրէ ծանողիւ »: Այդ, Գրիգորի գործերով և Նազիանզեայ բացատրութեամբ, աստ ոչ միայն եկեղեցական պաշտաման կամ ժամակարգութեան այլևայլ մասունքն և նոցա հայերէն թարգմանութիւնը կ'իմացուին, այլ նոյն իսկ Ագաթանգեղայ գրոց և վարդապետութեան խմբագրութիւնն, հանդերձ պարտուպատշաճ նորոգութեամբք և ժամանակին պահանջած բարեկարգութիւններով: Ցիրաւի, չէր ինչ դըժուարին և ես իսկ 'ի սկզբան մտադիր էի ապացուցանել, դէմ առ դէմ բաղդատութեամբ առանձին մասանց, թէ ստուգիւ ինչպէս հայերէն խմբագրութեան առթիւ Ագաթանգեղայ յունարէն հին բընագիրն՝ մեծամեծ փոփոխութիւններ կրած և ընդարձակուած է նորանոր յաւելուածներով, այսպէս ևս Գրիգորի Լուսաւորչայ համառօտ և պարզ վարդապետութեան մասունքը, զոր կ'ընծայեն մեզ Ագաթանգեղայ Ա. գիրքն, Յաճախապատում ճառերն և Պատարագամատոյցը, ամենամեծ կերպարանափոխութիւններ կրած են Ս. Մեսրովբայ ձեռքով: Բայց որովհետև գործս կարծածէս աւելի ընդարձակուեցաւ, կը թողում զանոնք իմ ուսումնատենչ ընթերցողացս բաղդատել: Իսկ ես այսչափ միայն կը կրկնեմ աստ, թէ Ս. Մեսրովբայ վարդապետութիւնն առ Ագաթանգեղ՝ մի միայն այս պատճառաւ Գրիգորի ընծայուած է, որովհետև Լուսաւորչայ դաւանութիւնն և աւանդութիւնը իբրև հիմունք ծառայած է անոր:

Այլ թէ ե՞րբ և ի՞նչ պատճառաւ անցաւ այդ ընդարձակ վարդապետութիւնը Ս. Գրիգորի գործոց կամ Ագաթանգեղոս կոչուած գրոց մէջ և համարուեցաւ վարդապետութիւն Հայաստանեայց Եկեղեցւոյ, ցայս վայր եղած քննութիւններէս իսկ դիւրաւ կարէ գուշակուիլ. այս ինքն է Նեստորի մոլորութիւնը ծագելէն քիչ վերջ և կամ

վաւ ևս նորա դատապարտութենէն անմիջապէս յետոյ։ Եւ յիրաւի ճիշդ այս ժամանակամիջոցին, երկու գլխաւոր դէպքեր կատարուեցան թէ Հայաստանի սահմանաց մէջ և թէ անկէց դուրս, որոնք բաւական էին առիթ տալ նորա իմաստուն և ուղղափառ հօտին և հօտապետաց, վերոյիշեալ գործը կատարելու։ Այս դէպքերէն մին է Բարբարիանոս կոչուած չար աղանդին տարածումն 'ի Հայս և մեծ շփոթութիւնը մէկ կողմէն, իսկ միւս կողմէն այլ Թէոդորոսի կամ Թէոդորեստոսի նեստորականի ամպարիշտ գրոց մուտքն և գործած անհնարին նախճիրն։ Իսկ միւսն եղաւ Եփեսոսի սուրբ ժողովոյն՝ Նեստորականաց դէմ տուած վճիռն և ուղղափառ Վարդապետութիւնը, զոր առաջին թարգմանիչք մեր բերին 'ի Հայս։ Արդ, այսպիսի եղելութեանց շօշափելի ապացոյցները կու տան մեզ Ս. Պրոկղի առ Հայս գրուած ընդարձակ թուղթը[1], զոր լատիներէն թարգմանութեամբ և առանձին յառաջաբանով մի հասուցել է մեր ձեռքը Դիոնեսիոս կարճահասակ Զ դարու հեղինակ ումն, և մեր երանաշնորհ Հարց Սահակայ և Մեսրովբայ առ նա ուղղուած թղթերն, զորս յիշատակեցի։ Իսկ մերս Կորիւն՝ Մեսրովբայ կենսագրութեան մէջ այսպէս կը համառօտէ վերոյիշեալ դէպքերն. «Յայնմ ժամանակի բերեալ երևեցան Հայաստան աշխարհին գիրք ապաշնորհք, ընդունայնախօս աւանդութիւնք առն ուրումն Հոռոմի (Յոյնի), որում Թէոդորոս անուն։ Վասն որոյ ի նախնեացն հայրապետաց եկեղեցեացն սրբոց նշանակեալ այր առնէին ճշմարտահաւատ քահանայապետացն Սահակայ և Մաշթոցի։ Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն 'ի միջոյ բարձեալ՝ աշխարհահալած արտաքոյ լուսանոց մերժեցին. զի մի 'ի լուսաւոր վարդապետութենէն՝ ծուխ ինչ սատանայական յարիցէ»։ Իսկ յէջ 18 կը նկարէ Ս. Մեսրովբայ Բարբարիանոսաց աղանդի քննութիւնն և անոր դէմ մղած ահաւոր պատերազմը։ Խորենացին՝ սուրբ Սինհոդոսի վարդապետութեան և Կանոնաց բերուիլն ևս որոշ կերպով կը ծանուցանէ։ Ուրեմն սուրբն Սահակ և Մաշտոց այսպիսի ժամանակի և պարագայից մէջ՝ թէ իրենց ազգայիններէն և թէ 'ի պահանջմանց սինհոդոսական Հարց հարկադրուած էին վերոյիշեալ ամպարիշտ գրոց հակառակ՝ գրով արձանացնել և արձանացուցին իսկ իրենց լուսաւորութեան սուրբ հօր և յայնժամու Հայաստանեայց եկեղեցւոյ ուղղափառ վարդապետութիւնն, ըստ ամենայն մասանց հաւատոյ, և ներկայացնելով զայն իրենց համազգեաց՝ ըսել. Ահա այս է Հայաստանեայց Եկեղեցւոյ և ընդհանուր Հարց ուղղափառ վարդապետու-

1, Præfatio Dionysius Exiguus Romanus. Feliciano Pastori. Տես Maxima Bibl. Veterum Patrum, Lugduni, 1677, T. VI, p. 612. Այս յառաջաբանիս մէջ՝ թարգմանիչը Կորեան համաձայն, բայց ընդարձակ տեղեկութիւններ կու տայ, յայտնելով միանգամայն Ս. Պրոկլէսի առ Հայս գրուած թղթոյն պատճառներն և ժամանակը։ Սակայն դիտելու է, որ յոյն սուրբ Հօր գործոց ուրիշ հրատարակութեան մի մէջ, ուրիշ համառօտ թուղթ մի ևս կայ առ կղերս Հայոց և Պարսից, որուն յունարէնը կը պակսի, գէթ այս վերջին հրատարակութեանը մէջ։

թիւնն, ըստ աւանդութեան Աւետարանին և Ուղղափառ Եկեղեցւոյ, յորմէ չէ պարտ չէ արժան խոտորիլ յաջ կամ յահեակ: Եւ որպէս զի աւելի զօրեղ և բարեբար ազդեցութիւններ ունենար այն Վարդապետարանը հայ ազգաբնակութեան վերայ, կարելի էր վերագրել նոյն իսկ առաքելաշնորհ և ամենամեծ հեղինակութեան Գրիգորի. և վերագրելով նմա՝ բնաւ սուտ չէին լինէր. որովհետև, ինչպէս ըսուեցաւ, այդ մեծ շէնքը իրօք Գրիգորի աւանդութեանը վերայ բարձրացած է: Այսպէս ուրեմն այն օրէն 'ի վեր, այսինքն է յամէն 431 Մեսրովբայ և Սահակայ այդ մեծարելի գործը համարուեցաւ իբրև աստուածուստ Վարդապետարան և ներկայացուցիչ ուղղափառ վարդապետութեան Դ և Ե դարու Հայաստանեայց Եկեղեցւոյն և անոր ուսումնասէր մանկանց. զոր այժմեան և ապագայ դարուց հայ սերունդք ևս կարող են և պարտին մեծարել միշտ 'ի շահ հոգւոց, 'ի փառս Աստուծոյ և յօգուտ ազգին:

# ՑԱՆԿ

## ԳԼԽՈՑ ԵՒ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԵԱՆՑ ՆՈՑԱ

---

### ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

*ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ*

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

# ԿԱՐԵՒՈՐ ՈՒՂՂԱԳՐԵԼԻՔ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| էջ | 17 | տող | 32 | անյատացաւ | անյայտացաւ |
| էջ | 23 | տող | 20 | ոյն | յոյն |
| էջ | 28 | տող | 11 | Սարաբայ | Մարաբայ |
| էջ | 31 | տող | 11 | Շապուհ Ս | Շապուհ Ա |
| էջ | 36 | տող | 6 | րուն սահմանը | որուն սահմանը |
| էջ | 47 | տող | 26 | սի | մի |
| էջ | 72 | տող | 32 | ինչ | ինչ |
| էջ | 78 | տող | 25 | դիւրա. | դիւրաւ |
| էջ | 80 | տող | 8 | բազմել | բազմեալ |
| էջ | 82 | տող | 30 | gnotum | ignotum |
| էջ | 89 | տող | 34 | ես | ևս կը |
| էջ | 106 | տող | 6 | Ս գրոց | Ա գրոց |
| էջ | 107 | տող | 42 | « 1883 | 1833 |
| էջ | 129 | տող | 27 | Բինին | Նինին |
| էջ | 161 | տող | 34 | χώρος | χώρας |
| էջ | » | տող | 44 | զդիրակոյս | դենակորոյս |
| էջ | 257 | տող | 20 | յամին 313 | 312 |
| էջ | 256 | տող | 22 և 28 | Մաքսիմոս | Մաքսիմինոս |
| էջ | 259 | տող | 3 | icinio | Licinio |
| էջ | 286 | տող | 18 | և | են |
| էջ | 288 | տող | 24 | դպրութեան | դպրութիւն |
| էջ | 289 | տող | 23 | այու | այնու |
| էջ | 292 | տող | 23 | աղ | վաղ |
| էջ | 293 | տող | 38 | ζεριωαλς | ξεριουχρς |
| էջ | 302 | տող | 8 | իրեն | իրին |
| էջ | 305 | տող | 31 | նմանականք | նմանահանք |
| էջ | » | տող | 32 | յուսքախնդիրք | յուզախնդիրք |
| էջ | 306 | տող | 29 | զմարդկապէսն | չմարդկապէսն |
| էջ | 315 | տող | 8 | Ե | Է |
| էջ | » | տող | 23 | Ե | Է |
| էջ | 316 | տող | 25 | ոչ Ե | ոչ է Ե |
| էջ | » | տող | » | Ե | Է |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| էջ | 320 | տող | 44 | Ն | Է |
| էջ | 326 | տող | 27 | Ագաթանգեղոս | Ագաթանգեղոսի |
| էջ | 330 | տող | 22 | σταυπὸν | σταυρὸν |
| էջ | 332 | տող | 41 | facta, | facta ab ethnico quodam, |
| էջ | » | տող | 31 | συηλίτας | σπηλαῖτας |
| էջ | » | տող | 32 | σπηλαῖτας | στηλῖται |
| էջ | » | տող | 37 | στηλῖται | σπηλαῖτας |
| էջ | 333 | տող | 5 | յէջ | 78 |
| էջ | » | տող | 29 | πυροχαρία | πυροσχωρία |
| էջ | » | տող | » | γλοτταν | γλῶτταν |
| էջ | 334 | տող | 40 | գուցնէ | գուցնեն |
| էջ | 335 | տող | 8 | Αράζης | 'Αράξης |
| էջ | » | տող | 10 | βάθεος | βαθέως |
| էջ | » | տող | 44 | Համաձայնել | Համաձայնեցնել |
| էջ | 336 | տող | 11 և 12 | 'Αρταζάτ | 'Αρταζάτ – α |
| էջ | » | տող | 21 | էս | ես |
| էջ | 337 | տող | 27 | այլ | այլ ինչ |
| էջ | » | տող | 31 | ἐλθοῶσα. | ἐλθοῦσαι |
| էջ | 338 | տող | 3 | Θολγώμ | Θοργώμ |
| էջ | » | տող | 44 | πόλεων | πόλεως |
| էջ | 339 | տող | 20 | Ա՛ | Այ |
| էջ | » | տող | 26 | 28 | 30 |
| էջ | » | տող | 37 | τεθομένα | τεθυμένα |
| էջ | 342րս | տող | 3 | σεαῦτο | σεαυτῷ καί τῇ διδασκαλία ἐπίμενε αυτοῖς |
| էջ | 343 | տող | 13 | տողեր | տեղեր |
| էջ | 346 | տող | 36 | πανήγυρω | πανήγυριν |
| էջ | 352 | տող | 10 | ennéadecacteride | ennéadécaétéris |
| էջ | 355 | տող | 40 | Հռոմին | Հոռոմին |

